Հ. ԱՃԱՌՅԱՆ

# ՀԱՅՈՑ ԱՆՁՆԱՆՈՒՆՆԵՐԻ ԲԱՌԱՐԱՆ

ՀԱՏՈՐ Ա.

Армянская ССР
ЕРЕВАНСКИЙ ГОСУДАРСТВЕННЫЙ УНИВЕРСИТЕТ им. МОЛОТОВА

# НАУЧНЫЕ ТРУДЫ

ТОМ XXI

RSS d'ARMÉNIE
UNIVERSITÉ MOLOTOV à ERIVAN

# TRAVAUX SCIENTIFIQUES

VOLUME XXI

ИЗДАТЕЛЬСТВО ГОСУНИВЕРСИТЕТА
ЕРЕВАН 1942

Հայկական ՍՍՌ
ՄՈԼՈՏՈՎԻ անվան ԵՐԵՎԱՆԻ ՊԵՏԱԿԱՆ ՀԱՄԱԼՍԱՐԱՆ

# ԳԻՏԱԿԱՆ ԱՇԽԱՏՈՒԹՅՈՒՆՆԵՐ

ՀԱՏՈՐ XXI



ՊԵՏԱԿԱՆ ՀԱՄԱԼՍԱՐԱՆԻ ՀՐԱՏԱՐԱԿՉՈՒԹՅՈՒՆ
ԵՐԵՎԱՆ 1942

Վ. Մ. ՄՈԼՈՏՈՎԻ ԱՆՎԱՆ ԵՐԵՎԱՆԻ ՊԵՏԱԿԱՆ ՀԱՄԱԼՍԱՐԱՆ

Հ. ԱՃԱՌՅԱՆ

# ՀԱՅՈՑ ԱՆՁՆԱՆՈՒՆՆԵՐԻ ԲԱՌԱՐԱՆ



ՀԱՏՈՐ Ա.



ՊԵՏԱԿԱՆ ՀԱՄԱԼՍԱՐԱՆԻ ՀՐԱՏԱՐԱԿՉՈՒԹՅՈՒՆ

ԵՐԵՎԱՆ 1942

# ԱՌԱՋԱԲԱՆ

*Այս աշխատության նպատակն է հավաքել, դասավորել և ուսումնասիրել այն բոլոր անունները, որ պատմության ընթացքում, որևէ հայ անհատ կրել է երբևիցէ, անկախ իր ունեցած դիրքից ու աստիճանից, ընդունած կրոնից ու դավանանքից և ապրած շրջանից կամ երկրից։ Այս հավաքածոյի մեջ՝ տեղ են գտել ուրեմն մի կողմից Հայկը, որ հայ ազգի նախահայրն է համարվում ըստ ավանդության, և՛ Տիգրանը, որ հայ պետության քաղաքական ազդեցությունը Կովկասյան լեռներից մինչև Միջերկրականի ափը հասցրեց, և՛ Մեսրոպը կամ Մաշտոցը, որ հայ մատենագրության հիմքը դրավ, և մյուս կողմից Դավիթ Ծարեցի ջաղացպանը, դերձակ Խնդուբէգ, բաղնեպան Ցովհաննէս ևն։ Միևնույն ժամանակ, այս հավաքածոյի մեջ տեղ են գտել և՛ Վասիլ Ա կայսր հունաց, որ Բյուզանդական պատմության մեջ Հայկական հարստության հիմնադիրն է, Աբուլ-Ղալադ-Թալայի և Աբու-Խոջա-Ռուզէիք, հայ վեզիրներ Եգիպտոսի, Կոմս և Սամուէլ Դեւրջանցիք՝ Թագավոր Բուլղարիայի, Խալիլ փաշա, Սուլթան Ահմեդ Ա-ի եպարքոս, որ ուրացյալ հայ էր, Աննա-Շուանէթ՝ Լեզգիների առաջնորդ Շեյխ-Շամիլի կինը, որ Մոզդոկցի մի հայուհի էր ևն։ Հավաքածոյի մեջ եմ առել նաև Աղվանից պատմության բոլոր դեմքերը, ըստ որում այս ազգը այնպես էր խառնվել հայոց հետ, որ հայ ու աղվան շատ անգամ անկարելի է զանազանել և ինչ որ աղվան է կոչվում, կարող է նաև զուտ հայ լինել։ Այսպես՝ Աղվանից բոլոր վերջին կաթողիկոսները։ Բայց հավաքածոյի մեջ չեմ մտցրել բոլոր այն ան-*

ձինք (պարսիկ, հույն, արաբ են), որոնք մարզպան, կյուրապաղատ, ոստիկան են անուններով հայ երկրի կառավարության գլուխն են կանգնել թեև, բայց միշտ օտար են եղել հայ երկրին ու ժողովրդին։ Բացառություն եմ համարել միայն մի քանիսը, ինչպես՝ Շապուհ Թագավոր հայոց, Ցիգտրուղիտ Նահատակ, Սահակ պարսիկ Թավրիզեցի են։

Խալդական (Ուրարտական) անունները նույնպես չեն մտնում իմ ծրագրի մեջ։

Անձնանունների բառարանս ընդգրկում է հայ ազգի ամենահին շրջանից մինչև 1500 թիվը։ Այս ամբողջ շրջանում հիշատակված բոլոր անձինք, ամենանշանավոր դեմքերից սկսած մինչև հետին կիսագրագետ ոմն, որ ինչ որ ձեռագրի մի անկյունում պատահաբար արձանագրել է իր անունը, անպատճառ պետք է հիշատակված լինի այստեղ։ 1500 թվից մինչև 1700, առնում եմ միայն պատմության և գրականության համար կարևոր դեմքերը. ինչպես կաթողիկոսներ, պատրիարքներ, հեղինակներ, բանաստեղծներ, նշանավոր ճանապարհորդներ են։ 1700-ից այս կողմ, առնում եմ միայն Էջմիածնի, Աղթամարի, Սսի կաթողիկոսներն ու Երուսաղեմի և Պոլսի պատրիարքները։ Բայց 1500 թվից էլ մինչև այսօր գործածված ամեն մի անուն, եթե նոր և անսովոր է, նույնիսկ ամենաաննշան անձի անունը, հիշատակված է այստեղ։

Ամեն մի անվան վրա խոսում եմ հետևյալ ձևով.—Նախ տալիս եմ ԱՆՈՒՆԸ (ամբողջովին գլխատառ), որի մոտ գրված է լինում ար. կամ իգ. (այսինքն թե այդ անունը իբրև արական է գործածվում, թե իգական)։ Երբեմն միևնույն անունը երկու սեռի համար էլ գործածվում է։ Սրան հետևում են այդ անվան ծագումը կամ ստուգաբանությունը, նրա համապատասխան ձևերը մի քանի կարևոր լեզուներով և այդ անունով մի քանի նշանավոր անձնավորություններ օտար ազգերից (եթե անունը օտար է)։ Այնուհետև, այդ անվան փաղաքշական ու ժողովրդական ձևերը՝ մեր արդի բարբառներում։—Այս առաջին հատվածի սկիզբը դրված է լինում կամ մի խաչանիշ, որ նշանակում է թե այդ անունը հայկական ծագում ունի, և կամ մի աստղանիշ, որ նշանակում է թե այդ անունը օտար է։ Նշան չունեցող անունները անհայտ են ծագմամբ։

Այս առաջին հատվածին հետևում են ժամանակագրական կարգով, նույն անունը կրած բոլոր հայ անձինք (մինչև 1500

բոլորն անխտիր, 1500-ից հետո միայն նշանավորները)։ Տալիս եմ այդ անձերի սեղմ ու ամփոփ կենսագրությունը, որից հետո՝ այն բոլոր տեղերը (ըստ հարմարության գլուխ կամ էջ), ուր հիշատակված է նույն անձը ամբողջ մեր հին մատենագրության մեջ։ Աղբյուրների հիշատակությունը լիակատար է և չի կարող լինել մեր հին մատենագրությունից մի որևէ թեկուզ աննշան էջ, որ անտես առնված լինի։ Ավելին կա։ Անունները հիշատակված են թե ուղղական և թե մյուս հոլովներով՝ մի առ մի, առանձին առանձին, ամեն մեկը իր բոլոր վկայություններով։ Երբ վկայության տեղը ցույց տվող թիվը դրված է փակագծի մեջ, նշանակում է թե հեղինակը խոսում է նույն անձի մասին այդ տեղում, առանց անունը տալու։ Այսպիսի ընդարձակ ծավալով ու մանրամասնությամբ և բծախնդիր ճշտությամբ աշխատություն ոչ մի լեզվի մեջ գոյություն չունի։—Հին մատենագրությունից հետո հիշատակվում են ձեռագրաց ցուցակներից և նոր աղբյուրներից նրանք, որ առանձնապես կարևոր եմ համարում։ Կարիք չկար հիշատակելու թե օրինակ՝ Հայկը կամ Շնորհալին հայոց ազգային և եկեղեցական բոլոր պատմությունների ճը երեսներում է հիշված։

Ասացի թե հիշատակված անձերը դրված են ժամանակագրական կարգով։ Բայց շատ անգամ մեզ հայտնի է լինում մի անձի կյանքի միայն մի դեպքի թվականը. մինչդեռ նրա կյանքը տևել է մինչև 70—80 և ավելի տարիներ։ Ես դնում եմ միայն մեզ ծանոթ թվականների ժամանակագրական կարգով. իսկ երբ հայտնի է մի որևէ անձի ամբողջ կյանքը, նրա մահվան թվականի կարգով։ Ըստ այսմ, ընթերցողը իր ցանկացած անձի կենսագրությունը գտնելու համար՝ փոքր ինչ որոնումներ պետք է անի դրված թվականի շուրջը։

Այն անունները, որոնք հին հայ մատենագրության մեջ գործածված են, ունեն միօրինակ և ընդհանուր ընդունված ուղղագրություն, ինչպես Գրիգոր, Յովհաննէս ևն։ Այսպես են նաև այն անունները, որոնք հայկական ծագում ունենալով՝ ուղղագրության կողմից վեճի ենթակա չեն. ինչպես՝ Հերիքնազ, Նարէվարդ, Թուխծամ, Շաղոսկի ևն։ Բայց այն անունները, որոնք ԺԳ դարից հետո պարսկերենից, թուրքերենից, արաբերենից, կամ նույն իսկ եվրոպական լեզուներից են փոխ առնված, հաստատուն ուղղագրություն չունեին. և համաձայն հին (արևելյան) և նոր (արևմտյան) տառադարձության և ըստ այս կամ այն բար-

բառի, տարբեր ձևով են գրվում. այսպես՝ Տովլաք, Դովլաք, Տօլվաք են։ Այսպիսի անուններ հիշատակելու ժամանակ, առաջին տեղում (ամբողջ գլխատառ գրվածը) ես դրել եմ օտար աղբյուրին համապատասխան ձևը՝ հին տառադարձությամբ (օրինակ՝ Դովլաք), իսկ նրա ներքևի հիշատակության մեջ՝ ձեռագիրներում պատահած ձևը կամ ձևերը։

Պատմությունը առանց ժամանակագրության արժեք չունի. այս պատճառով հատուկ ուշադրություն եմ դարձրել թվականների ճշտության։ Հայոց պատմության ժամանակագրությունը կատարյալ ճշտությամբ ծանոթ չէ մեզ։ Զամչեանի տված թվականները վերջնական չեն. իսկ Հայկազանց շրջանի թվականները, ինչպես սպասելի էր, առասպելական են։ Լավագույն աղբյուրը հայոց պատմության թվականների մասին՝ Օրմանեանի Ազգապատումն է։ Այս հեղինակը աշխատել է պատմիչների տված թվականները ոչ միայն պատմական ու մատենագրական, այլև տոնական ու տոմարական հաշիվներով էլ ստուգել, և տվել է ամենաճիշտ թվականները։ Ես էլ ընդհանրապես հետևել եմ նրան։ Ընթերցողը իմ գրքի մեջ շարունակ պիտի տեսնի չակերտի մեջ դրված թվականներ. այդ բոլորը Օրմանեանից է վերցրած։ Իսկ ուր որ չակերտ չկա, ուրիշ աղբյուրից է և կամ ուղղակի բնագիր հիշատակարաններից։

Թվականները դրել եմ միշտ քրիստոնեականով. քիչ անգամ միայն գործ եմ ածել Հայոց թվականը, թեև մեր աղբյուրները միշտ էլ դնում են Հայոց թվականը։ Մեր թվականը քրիստոնեականի վերածելու համար ավելացրել եմ միշտ 551 թիվը։ Ուրիշներ խառն կերպով ավելացնում են 550, 551 և կամ 552։ Գումարման մեջ էլ շատ անգամ մեր գիտնականները սխալվում են։ Այս կողմից հիշատակության արժանի են Ալիշանը, Կարինեան ցուցակը, նույն իսկ Կոնիբիր անգլիացի հայագետը։

Որպեսզի միանգամ ընդմիշտ տված լինիմ երկու թվականների համապատասխան թվերը, գրքիս սկիզբը դնում եմ մի ցուցակ, որ ընդգրկում է Հայոց Ա թվից սկսած մինչև Ռ=1551 բոլոր տարիները։ Մնացյալը կրկնվում է Ա-ից սկսած. միայն պետք է ավելացնել Ռ-ի դեմ 1000։

Որովհետև մեր հին թվականը շարժական էր և մեր տարեգլուխը քրիստոնեական տարեգլխի հետ միասին չէր սկսում, ուստի միշտ էլ կարելի է սպասել 1 տարվա տարբերություն։ Այսպես օրինակ՝ Ռ թվի առաջին օրը (Նավասարդի 1) համապատասխա-

*նում է 1550 թվի սեպտեմբերի 11-ին և վերջին օրը (Ավելյացի 5) 1551 թվի սեպտեմբերի 10-ին. ուստի Հայոց Ռ թվի համապատասխանն է 1550—1551։ Ռ թվի դեկտեմբերի 31-ից առաջ եղած օրերը ընկնում են 1550 թվին, իսկ հունվարից սկսած՝ ընկնում են 1551 թվին։ Բայց որովհետև մենք շատ անգամ չգիտենք դեպքերի ամսաթիվը, ուստի սովորություն է եղած միշտ էլ դնել վերջին եզրը. այսպես Ռ=1551։*

*Անձնանունների բառարանս կազմելու համար օգտագործել եմ՝*

*1) Ամբողջ մեր հին մատենագրությունը, ինքնագիր ու թարգմանական, որ մեծ ու փոքր 800-ից ավելի աշխատություններից է բաղկացած։ Սրանց հիշատակությունը, ինչպես ասացի, լիակատար է։*

*2) Ձեռագրաց ցուցակները, որոնց թիվը հայերեն և օտար լեզուներով անցնում է 50-ից։*

*Այս առթիվ կարևոր եմ համարում հետևյալ նկատողությունը.—Ձեռագրաց ցուցակներից կատարյալ մանրամասնություն ունեն միայն Վիեննայի Մխիթարեանց ձեռքով հրատարակվածները (հատկապես Տաշյանի մեծ Ցուցակը և իմ 4 Ցուցակները, այն է Կարնոյ Սանասարյան վարժարանի, Թավրիզի, Նոր-Բայազետի և Թեհրանի)։ Սրանց մեջ հրատարակված են ձեռագիրների* բոլոր *(նույնիսկ ամենաաննշան) հիշատակարանները, որոնք էլ ինչպես լավագույն և ամենաճոխ աղբյուրներն են անձնանունների։ Այս բոլոր անունները ես քաղել ու հավաքել եմ իմ բառարանում։ Բայց ուրիշ ցուցակներ, հատկապես եվրոպացոց ձեռքով կատարվածները, չեն հետևում նույն սկզբունքին և նրանց մեջ ձեռագրաց հիշատակարանները մեծ մասամբ հապավված են։ Ավելացնենք նաև վրիպակների ծանր հարցը։ Ուշ ժամանակի անուններից շատերը լինելով անսովոր, հիշատակագիրների մեծ մասը տգետ, այդ անուններն էլ շատ խաթարված և տպագրյալ ցուցակների մեջ էլ բազմատեսակ վրիպակներով են տպված։ Վրիպակների կողմից նշանավոր է հատկապես Դաղեանի Ձեռագիրների ցուցակը, որի տպագրության ժամանակ ես էլ Էջմիածնի տպարանում սրբագրիչ էի և փորձով գիտեմ թե ինչեր տեղի ունեցան։ Ցուցակի հեղինակը (Թոփճեան) շատ վատ գիր ուներ, գրաշարներն էլ անգրագետ և ստացվեց շատ վատ արդյունք։ Օրինակի համար՝ այդ ցուցակում, մասն Բ, էջ 32ա կարդում ենք* Զարախան *անունը, որ հատուկ անունների ցանկումն էլ հիշ-*

ված է այս ձևով. Նույն էջ 32ա Ալախշուլի, էջ 46բ Քտօպօտին (ցանկում չկա), էջ 47ա Թուղքամեղ (ցանկում Թուղքաւիլ)։ Հայտնի է, որ այս վրիպակները պետք է կարդալ Ղարախան, Ալախդուլի, Քասպարին, Թօխթամիշ։ Իսկ էջ 32ա Շեդնիամ, որ ցանկում դարձել է Շիզնաս, հայտնի չէ թե ինչպես պետք է ուղղել։

Դադեանը, էջ 51 հիշատակում է նաև Թավրիզի № 66 ձեռագիր Ժողովածուն, որից մի քանի հիշատակարաններ էլ է արտագրում։ Նույն ձեռագիրը քննել եմ նաև ես, իմ Թավրիզի ձեռագրաց ցուցակում, և սրա համեմատությամբ կարելի է իմանալ թե ինչպիսի՜ ձախող արտագրություն է կատարված։ Հիշենք ի մեջի այլոց Քուռաք անունը (տես իմ Ցուցակի մեջ, էջ 15բ), որ Դադեանի մոտ դարձել է Թուրաք։

Շատ վրիպակներ կան նույնպես Կոնիբերի հրատարակած երկու ցուցակների մեջ, որոնց մի մասը անգլիացի գրաշարների հայերեն չիմանալու արդյունքն է (որ բարեբախտաբար կարելի է ուղղել հարակից դրված անգլերեն թարգմանության համեմատությամբ և կամ ցանկերի միջոցով), իսկ մյուս մասը հեղինակի անհմտության։ Օրինակ՝ Լոնդոնի ձեռագրաց ցուցակում, էջ 122ա մի հիշատակագիր գրում է. «Աւետիք աբեղայն սուղկուզէ»։ Անշուշտ գիրքը վաճառելու մասին է և Աւետիք աբեղան սուղ կուզէ, այսինքն թանկ է պահանջում։ Իսկ Կոնիբերը դարձրել է գրիչ և գրում է Sulkuz the writer *(Սուղկուզ գրիչը)* և այս ձևով էլ մտցրել է անվանացանկի մեջ։

Ինչքա՜ն այսպիսի վրիպակների զոհ եմ գնացել արդյոք... անհայտ և առանց մեկնության թողած անուններիս մեծագույն մասը բնականաբար այսպիսի վրիպակների արդյունք է։ Բարեբախտաբար ես չվստահելով ոչ մի անվանացանկի, անունները քաղել եմ միշտ բուն գրքից (միայն Տաշեանի մեծ ցուցակն է, որ այս կողմից բացառություն կազմեց)։

Շատ վատ է նույնպես Լալայանի անունով հրատարակված «Ցուցակ հայերեն ձեռագրաց Վասպուրականի» (կա միայն պրակ առաջին, Թիֆլիս 1915)։ Այս գործը մի խումբ վանեցի նորահաս պատանիների գործն է, որ Լալայանը իրեն է վերագրել։ Անփորձ պատանիների գործը ինչպե՞ս պիտի լիներ վերիվերո մի բան։ Գիտության տարրական պահանջները չեն լրացված այստեղ։ Ձեռագրերի էջերը համարագրված չեն։ Հիշատակարանները արտագրված են խառնիխուռն, առանց նշանակելու թե որն է բուն գրչից և որն է օտար գրիչներից։ Այսպեսով ուշ

ժամանակի մի հիշատակություն կարող է միշտ շփոթվել ու խառնըվել բուն գրչի հիշատակարանի հետ, որով անձերի թվականները սխալ են դուրս գալիս։ Տեղեկությանց բաժնում երբեմն հեղինակը տալիս է գրիչների և ստացողների անունները, բայց հիշատակարանները չկան։ Բազմաթիվ օրինակներից հիշենք № 161 ձեռագիրը, որի գրիչը դրվում է Մարգարէ, ստացողը՝ Սիոն եպիսկոպոս. բայց հիշատակարանում չկա այդպիսի բան. տրվում է միայն թվականը՝ 1435։—№170 ձեռագրի գրիչը նշանակված է Մարգարէ, բայց հիշատակարանում կա միայն տեղը, թիվը և ստացողը. գրիչը չէ հիշված։ Որտեղի՞ց դուրս եկավ այս Մարգարէն։ — № 178 ձեռագրի գրիչը դրվում է Մարտիրոս՝ բստ Լալայանի. բայց հիշատակարանում գրված է Իսրայէլ. ինչպե՞ս Իսրայէլը Մարտիրոս դարձավ. Մարտիրոս ամն հիշված է հիշատակարանում, բայց դա ստացողի որդին է և ոչ գրիչը։ —Այս կարգի բազմաթիվ սխալներ դժբախտաբար անվստահելի են դարձնում նույն գործը։

Ձեռագրերի հիշատակարաններում գտնված անունների հիշատակությունը լիակատար չէ։ Մինչև 1500 թ. եղած բոլոր գրիչների, ստացողների և նրանց հարակից բոլոր անձերի անունները անխտիր, առանց բացառության ցուցակագրել եմ։ Ձեմ դնում միայն այն հիշատակությանց անունները, որոնց թվականը անհայտ է. 1500 թվից հետո եղածներից էլ, ինչպես նաև թվականն անհայտ հիշատակություններից, հիշում եմ միշտ բոլոր այն անունները, որոնք անսովոր են կամ նոր են պատահում, և որոնց հնագույնների էլ թվականները նշանակել եմ։ Ձեմ հիշատակում միայն այն անունները, որ հին հայ մատենագրությունից արդեն լիովին ծանոթ են և ձեռագրի հիշատակությունը ոչինչ նոր բան չի ավելացնում։ Օրինակ ամեն մի ձեռագրում էլ Գրիգոր Լուսավորչի կամ ժամանակակից որևէ կաթողիկոսի անունը հիշատակված կլինի. ես դրանք ավելորդ համարեցի հիշատակել. բայց հիշատակված բոլոր թագավորների, կաթողիկոսների և պատրիարքների թվականները բարեխղճորեն ամեն անգամ էլ համեմատել եմ Օրմանեանի տված թվականների հետ և եթե որևէ տարբերություն կար, հատկապես նշանակել եմ։ Ընթերցողը կարող է այս կողմից լիովին վստահ և ապահով լինել։

Որքա՜ն ձանձրալի, դժվարին և ամենամեծ մասամբ անօ-

գուտ էր այս տասնյակ հազարավոր անունների կրկնությունը, հիշատակությունը, համեմատությունը և հաշվառումը։

3) Պատմական ու բանասիրական բազմաթիվ աշխատություններ, որոնցից ամենակարևորներն են Չամչեանի Հայոց Պատմութիւնը (նաև սրա շարունակությունը Աւետիս վրժ. Պերպերեանի աշխատությամբ), Օրմանեանի Ազգապատումը, Գարագաշեանի Քննական պատմութիւնը, Լէօի Հայոց Պատմութիւնը, Զարբհանալեանի Հին Դպրութեան պատմութիւնը և Մատենադարան Հայկական Թարգմանութեանց նախնեաց։ Այս 7 գործերը իմ հիմնական աղբյուրներն եղան, որոնց վրա պետք է ավելացնել նաև Տաշեանի փառավոր ցուցակը։

Օգտագործած գրքերիս ամբողջական ցուցակը տալիս եմ աշխատությանս վերջում։

Այս աշխատության ձեռնարկել եմ 1910 թվին, Նոր-Նախիջևանում։ 1923 թվից հետո, մանավանդ այս 1942 թվին, Երևանում, առանձնապես աշխատեցի նրա վրա։ Դժբախտաբար պատերազմը խանգարեց ձեռք բերել որոշ գրքեր, որոնց կարիք ունեի. այսպես՝

*Pape—Benseler*—Griechische Eigennamen.
*Förstemann*—Altdeutsches Namenbuch, 1916.
*Schulze*—Lateinische Eigennamen.
*Fick*—Die griechische Personennamen, 1894 *(Բ տպ.)*.

Բայց, ինչպես ասում են, լավագույնը լավի թշնամին է։ Աչքերիս հիվանդությունը և խպառ կուրանալու երկյուղը ստիպեցին ինձ շտապել հրատարակության տալ այն նյութը, որ բավական ստվար է արդեն։ Մնացյալը կարող է ապագային կազմել հավելվածական մի հատոր։ Պատմությունը երբեք վերջ չունի և պատմական գործերը երբեք չեն կարող լիակատար լինել. մանավանդ Հայոց Պատմությունը, որի աղբյուրները լիովին հրատարակության տրված չեն։ Էջմիածնի և Երուսաղեմի ձեռագրաց ցուցակներն ամբողջապես, Վենետիկինը մեծ մասամբ դեռ ըսպասում են հրատարակության։ Հատկապես անունների կողմից ինչպիսի՜ անսպառ նյութ կա նրանց մեջ, որ առայժմ մեզ համար փակված գանձ է մնում։

Անունների բառարաններ ուրիշ լեզուներով էլ կան, բայց նրանք ընդհանրապես պատմական-կենսագրական են (ինչպես օրինակ բոլոր Հանրագիտակ բառարանները) և ո՛չ թե լեզվաբանական—

քննասիրական։ Այս վերջին ուղղությամբ հայտնի է Justi, Iranisches Namenbuch (Marburg 1895), որից մեծագույն չափով օգտվել եմ իմ այս աշխատության մեջ։ Հունարեն, լատիներեն, եբրայեցերեն և արաբերեն անունների համար օգտվել եմ հետևյալ աղբյուրներից․

*Bailly*—Dictionnaire grec-français, 6 éd. Paris.

*Quicherat et Daveluy*—Dictionnaire latin-français, Paris 1913.

*Gesenius*—Hebräisches und aramäisches Handwörterbuch, Leipzig 1921.

*Կամուս.*— الاوقيانوس البسيط al-uqiyānūs al-basīṭ *(Ովկիանոս ընդարձակ․ Թարգմանությունն է* القاموس المحيط al-qāmūs al-muḥīṭ *(Համատարած անդունդք ծովու), Բ տպ. Պոլիս 1250, Թրք. և արաբ. (3 հատոր)։*

*Հայոց մեջ կամ հայերենի համար կազմված Անձնանունների բառարանները հետևյալներն են.*

*1) Մխիթար Աբբայի Բառարան յատուկ անուանց Աստուածաշունչ գրոց հին և նոր կտակարանաց, Վենետիկ 1769 թ. 232 էջ երկսյուն (պարունակում է միայն Ս. Գրքում գործածված եբրայական անունները)։*

*2) Հ. Մատթէոս Թէոփիլեանի Կենսագրութիւն երևելի արանց (Վենետիկ 1839)։*

*3) Ն. Ճիվանեան, Առձեռն բառարան յատուկ անուանց, Պոլիս 1879։ Շատ համառոտ։*

4) Dictionnaire historique, géographique, philologique et critique pour servir d'annotations à l'histoire d'Arménie *(Խորենացու Պատմութեան անվանացանկն է՝ դարձրած մանրամասն բառարան).*Paris, *էջ 210 երկսյուն (չունի թվական տպագրության)։*

5) P. de Lagarde. Armenische Studien, Göttingen 1877.

6) Hübschmann, Armenische Grammatik, Leipzig 1897.

*Ո՛չ մեկը այս բոլորից, նույնիսկ* Justi-*ի բառարանը, ընավ չի կարող հասնել իմ աշխատության ծրագրին ու ծավալին։*

*Իմ այս աշխատությամբ ես մեր բանասերներին տալիս եմ մի պատրաստի Տեղեկատու, որ նրանց սեղանի անհրաժեշտ գիրքը պիտի լինի և նրանց ամենօրյա խորհրդատուն։ Մեր համալսարանի նորավարտ ուսանողները, ասպիրանտները և բոլոր նը-*

րանք, որոնք պարապում են հայ բանասիրությամբ, մեծապես պիտի օգտվեն նրանից։ Աշխատությունս միջոց պիտի տա նաև կատարելու բազմաթիվ նորանոր ուսումնասիրություններ։ Նրա հիման վրա կարող է մեկը ուսումնասիրել անունների պատմությունը հայոց մեջ, մի ուրիշը՝ կազմել իշխանական և նախարարական տոհմերի ճյուղագրությունը և զանազան գավառանագրքեր, երրորդը՝ ազգանունների ձևավորումն ու ընթացքը ամբողջ մեր պատմական շրջանում։ Գրիչների և ստացողների մանրամասն ու թերևս ձանձրալի թվացող հիշատակությունը միջոց կտա ըստուգելու և երևան հանելու այն ձեռագրերի թվականները, որոնք հիշատակարանում չգտնվելու պատճառով անհայտ են մնում։ Վերջապես ամեն մի անունը կարող է նյութ հայթայթել մի ամբողջ մենագրություն կազմելու։

Բայց ոչ միայն սկսնակները, այլ և նույն իսկ փորձված բանասերները՝ հավաքված և ի մի ամփոփված գտնելով այստեղ առատ նյութ, պիտի կարողանան պատշաճորեն օգտագործել այն։ Օրինակ՝ մի այնպիսի բանասեր, ինչպես է Հ. Բարսեղ Սարգիսյանը, որ ծանոթ է մեր գրականության մեջ իր բազմաթիվ բանասիրական աշխատություններով, իր Վենետիկի հայերեն ձեռագրերի ցուցակում (հտ. Բ. էջ 302—3) Մխիթար Սասնեցու կենսագրության մասին ավելորդ ենթադրություններ է անում, որովհետև չի հիշում թե այդ գիրքը կա և մինչև անգամ տպված է Գ. վ. Հովսեփյանի աշխատությամբ՝ Վաղարշապատ 1899։ Անձնանունների բառարանս Մխիթար Սասնեցի անվան տակ պիտի հիշեցներ նրան այդ։—Արտաւազդ արքեպս. Սիւրմէեան Հալեպի ձեռագրների ցուցակում, հտ. Ա. էջ 146, մի ձեռագրից մեջ է բերում մի կարևոր վկայաբանություն, որի միջին մասն ու վերջին մասը կա, իսկ սկիզբը պակասում է և նույն իսկ նահատակի անունը չկա։ Իսկ նույն գրքի 207-րդ էջում կա մի ուրիշ ձեռագրից հանված մի վկայաբանություն, որ պարունակում է ճիշտ նույն վկայաբանության սկիզբը և միջին մասը։ Վերջավորությունը չկա։ Անձնանունների բառարանում երկու հատվածները բնականաբար իրար մոտ պիտի գային և իսկույն պիտի երևար, որ երկուսը իրար են լրացնում և ամբողջական բնագիրը պիտի վերականգնվեր։

Հ. ԱՃԱՌՅԱՆ

# ՀԱՄԱԴՐԱԿԱՆ ՏԱԽՏԱԿ ՀԱՅՈՑ ԵՒ ՔՐԻՍՏՈՆԵԱԿԱՆ ԹՎԱԿԱՆՆԵՐԻ

| | | | | | | | |
|---|---|---|---|---|---|---|---|
| Ա | 552 | ԽԳ | 594 | ՁԵ | 636 | ՃԻԷ | 678 |
| Բ | 553 | ԽԴ | 595 | ՁԶ | 637 | ՃԻԸ | 679 |
| Գ | 554 | ԽԵ | 596 | ՁԷ | 638 | ՃԻԹ | 680 |
| Դ | 555 | ԽԶ | 597 | ՁԸ | 639 | ՃԼ | 681 |
| Ե | 556 | ԽԷ | 598 | ՁԹ | 640 | ՃԼԱ | 682 |
| Զ | 557 | ԽԸ | 599 | Ղ | 641 | ՃԼԲ | 683 |
| Է | 558 | ԽԹ | 600 | ՂԱ | 642 | ՃԼԳ | 684 |
| Ը | 559 | Ծ | 601 | ՂԲ | 643 | ՃԼԴ | 685 |
| Թ | 560 | ԾԱ | 602 | ՂԳ | 644 | ՃԼԵ | 686 |
| Ժ | 561 | ԾԲ | 603 | ՂԴ | 645 | ՃԼԶ | 687 |
| ԺԱ | 562 | ԾԳ | 604 | ՂԵ | 646 | ՃԼԷ | 688 |
| ԺԲ | 563 | ԾԴ | 605 | ՂԶ | 647 | ՃԼԸ | 689 |
| ԺԳ | 564 | ԾԵ | 606 | ՂԷ | 648 | ՃԼԹ | 690 |
| ԺԴ | 565 | ԾԶ | 607 | ՂԸ | 649 | ՃԽ | 691 |
| ԺԵ | 566 | ԾԷ | 608 | ՂԹ | 650 | ՃԽԱ | 692 |
| ԺԶ | 567 | ԾԸ | 609 | Ճ | 651 | ՃԽԲ | 693 |
| ԺԷ | 568 | ԾԹ | 610 | ՃԱ | 652 | ՃԽԳ | 694 |
| ԺԸ | 569 | Կ | 611 | ՃԲ | 653 | ՃԽԴ | 695 |
| ԺԹ | 570 | ԿԱ | 612 | ՃԳ | 654 | ՃԽԵ | 696 |
| Ի | 571 | ԿԲ | 613 | ՃԴ | 655 | ՃԽԶ | 697 |
| ԻԱ | 572 | ԿԳ | 614 | ՃԵ | 656 | ՃԽԷ | 698 |
| ԻԲ | 573 | ԿԴ | 615 | ՃԶ | 657 | ՃԽԸ | 699 |
| ԻԳ | 574 | ԿԵ | 616 | ՃԷ | 658 | ՃԽԹ | 700 |
| ԻԴ | 575 | ԿԶ | 617 | ՃԸ | 659 | ՃԾ | 701 |
| ԻԵ | 576 | ԿԷ | 618 | ՃԹ | 660 | ՃԾԱ | 702 |
| ԻԶ | 577 | ԿԸ | 619 | ՃԺ | 661 | ՃԾԲ | 703 |
| ԻԷ | 578 | ԿԹ | 620 | ՃԺԱ | 662 | ՃԾԳ | 704 |
| ԻԸ | 579 | Հ | 621 | ՃԺԲ | 663 | ՃԾԴ | 705 |
| ԻԹ | 580 | ՀԱ | 622 | ՃԺԳ | 664 | ՃԾԵ | 706 |
| Լ | 581 | ՀԲ | 623 | ՃԺԴ | 665 | ՃԾԶ | 707 |
| ԼԱ | 582 | ՀԳ | 624 | ՃԺԵ | 666 | ՃԾԷ | 708 |
| ԼԲ | 583 | ՀԴ | 625 | ՃԺԶ | 667 | ՃԾԸ | 709 |
| ԼԳ | 584 | ՀԵ | 626 | ՃԺԷ | 668 | ՃԾԹ | 710 |
| ԼԴ | 585 | ՀԶ | 627 | ՃԺԸ | 669 | ՃԿ | 711 |
| ԼԵ | 586 | ՀԷ | 628 | ՃԺԹ | 670 | ՃԿԱ | 712 |
| ԼԶ | 587 | ՀԸ | 629 | ՃԻ | 671 | ՃԿԲ | 713 |
| ԼԷ | 588 | ՀԹ | 630 | ՃԻԱ | 672 | ՃԿԳ | 714 |
| ԼԸ | 589 | Ձ | 631 | ՃԻԲ | 673 | ՃԿԴ | 715 |
| ԼԹ | 590 | ՁԱ | 632 | ՃԻԳ | 674 | ՃԿԵ | 716 |
| Խ | 591 | ՁԲ | 633 | ՃԻԴ | 675 | ՃԿԶ | 717 |
| ԽԱ | 592 | ՁԳ | 634 | ՃԻԵ | 676 | ՃԿԷ | 718 |
| ԽԲ | 593 | ՁԴ | 635 | ՃԻԶ | 677 | ՃԿԸ | 719 |





| | | | | | | | |
|---|---|---|---|---|---|---|---|
| ՃԿԹ | 720 | ՄԺԱ | 762 | ՄԾԳ | 804 | ՄՂԵ | 846 |
| ՃՀ | 721 | ՄԺԲ | 763 | ՄԾԴ | 805 | ՄՂԶ | 847 |
| ՃՀԱ | 722 | ՄԺԳ | 764 | ՄԾԵ | 806 | ՄՂԷ | 848 |
| ՃՀԲ | 723 | ՄԺԴ | 765 | ՄԾԶ | 807 | ՄՂԸ | 849 |
| ՃՀԳ | 724 | ՄԺԵ | 766 | ՄԾԷ | 808 | ՄՂԹ | 850 |
| ՃՀԴ | 725 | ՄԺԶ | 767 | ՄԾԸ | 809 | Յ | 851 |
| ՃՀԵ | 726 | ՄԺԷ | 768 | ՄԾԹ | 810 | ՅԱ | 852 |
| ՃՀԶ | 727 | ՄԺԸ | 769 | ՄԿ | 811 | ՅԲ | 853 |
| ՃՀԷ | 728 | ՄԺԹ | 770 | ՄԿԱ | 812 | ՅԳ | 854 |
| ՃՀԸ | 729 | ՄԻ | 771 | ՄԿԲ | 813 | ՅԴ | 855 |
| ՃՀԹ | 730 | ՄԻԱ | 772 | ՄԿԳ | 814 | ՅԵ | 856 |
| ՃՁ | 731 | ՄԻԲ | 773 | ՄԿԴ | 815 | ՅԶ | 857 |
| ՃՁԱ | 732 | ՄԻԳ | 774 | ՄԿԵ | 816 | ՅԷ | 858 |
| ՃՁԲ | 733 | ՄԻԴ | 775 | ՄԿԶ | 817 | ՅԸ | 859 |
| ՃՁԳ | 734 | ՄԻԵ | 776 | ՄԿԷ | 818 | ՅԹ | 860 |
| ՃՁԴ | 735 | ՄԻԶ | 777 | ՄԿԸ | 819 | ՅԺ | 861 |
| ՃՁԵ | 736 | ՄԻԷ | 778 | ՄԿԹ | 820 | ՅԺԱ | 862 |
| ՃՁԶ | 737 | ՄԻԸ | 779 | ՄՀ | 821 | ՅԺԲ | 863 |
| ՃՁԷ | 738 | ՄԻԹ | 780 | ՄՀԱ | 822 | ՅԺԳ | 864 |
| ՃՁԸ | 739 | ՄԼ | 781 | ՄՀԲ | 823 | ՅԺԴ | 865 |
| ՃՁԹ | 740 | ՄԼԱ | 782 | ՄՀԳ | 824 | ՅԺԵ | 866 |
| ՃՂ | 741 | ՄԼԲ | 783 | ՄՀԴ | 825 | ՅԺԶ | 867 |
| ՃՂԱ | 742 | ՄԼԳ | 784 | ՄՀԵ | 826 | ՅԺԷ | 868 |
| ՃՂԲ | 743 | ՄԼԴ | 785 | ՄՀԶ | 827 | ՅԺԸ | 869 |
| ՃՂԳ | 744 | ՄԼԵ | 786 | ՄՀԷ | 828 | ՅԺԹ | 870 |
| ՃՂԴ | 745 | ՄԼԶ | 787 | ՄՀԸ | 829 | ՅԻ | 871 |
| ՃՂԵ | 746 | ՄԼԷ | 788 | ՄՀԹ | 830 | ՅԻԱ | 872 |
| ՃՂԶ | 747 | ՄԼԸ | 789 | ՄՁ | 831 | ՅԻԲ | 873 |
| ՃՂԷ | 748 | ՄԼԹ | 790 | ՄՁԱ | 832 | ՅԻԳ | 874 |
| ՃՂԸ | 749 | ՄԽ | 791 | ՄՁԲ | 833 | ՅԻԴ | 875 |
| ՃՂԹ | 750 | ՄԽԱ | 792 | ՄՁԳ | 834 | ՅԻԵ | 876 |
| Մ | 751 | ՄԽԲ | 793 | ՄՁԴ | 835 | ՅԻԶ | 877 |
| ՄԱ | 752 | ՄԽԳ | 794 | ՄՁԵ | 836 | ՅԻԷ | 878 |
| ՄԲ | 753 | ՄԽԴ | 795 | ՄՁԶ | 837 | ՅԻԸ | 879 |
| ՄԳ | 754 | ՄԽԵ | 796 | ՄՁԷ | 838 | ՅԻԹ | 880 |
| ՄԴ | 755 | ՄԽԶ | 797 | ՄՁԸ | 839 | ՅԼ | 881 |
| ՄԵ | 756 | ՄԽԷ | 798 | ՄՁԹ | 840 | ՅԼԱ | 882 |
| ՄԶ | 757 | ՄԽԸ | 799 | ՄՂ | 841 | ՅԼԲ | 883 |
| ՄԷ | 758 | ՄԽԹ | 800 | ՄՂԱ | 842 | ՅԼԳ | 884 |
| ՄԸ | 759 | ՄԾ | 801 | ՄՂԲ | 843 | ՅԼԴ | 885 |
| ՄԹ | 760 | ՄԾԱ | 802 | ՄՂԳ | 844 | ՅԼԵ | 886 |
| ՄԺ | 761 | ՄԾԲ | 803 | ՄՂԴ | 845 | ՅԼԶ | 887 |

| | | | | | | | |
|---|---|---|---|---|---|---|---|
| ՑԼԷ | 888 | ՑՀԹ | 930 | ՆԻԱ | 972 | ՆԿԳ | 1014 |
| ՑԼԸ | 889 | ՑՁ | 931 | ՆԻԲ | 973 | ՆԿԴ | 1015 |
| ՑԼԹ | 890 | ՑՁԱ | 932 | ՆԻԳ | 974 | ՆԿԵ | 1016 |
| ՑԽ | 891 | ՑՁԲ | 933 | ՆԻԴ | 975 | ՆԿԶ | 1017 |
| ՑԽԱ | 892 | ՑՁԳ | 934 | ՆԻԵ | 976 | ՆԿԷ | 1018 |
| ՑԽԲ | 893 | ՑՁԴ | 935 | ՆԻԶ | 977 | ՆԿԸ | 1019 |
| ՑԽԳ | 894 | ՑՁԵ | 936 | ՆԻԷ | 978 | ՆԿԹ | 1020 |
| ՑԽԴ | 895 | ՑՁԶ | 937 | ՆԻԸ | 979 | ՆՀ | 1021 |
| ՑԽԵ | 896 | ՑՁԷ | 938 | ՆԻԹ | 980 | ՆՀԱ | 1022 |
| ՑԽԶ | 897 | ՑՁԸ | 939 | ՆԼ | 981 | ՆՀԲ | 1023 |
| ՑԽԷ | 898 | ՑՁԹ | 940 | ՆԼԱ | 982 | ՆՀԳ | 1024 |
| ՑԽԸ | 899 | ՑՂ | 941 | ՆԼԲ | 983 | ՆՀԴ | 1025 |
| ՑԽԹ | 900 | ՑՂԱ | 942 | ՆԼԳ | 984 | ՆՀԵ | 1026 |
| ՑԾ | 901 | ՑՂԲ | 943 | ՆԼԴ | 985 | ՆՀԶ | 1027 |
| ՑԾԱ | 902 | ՑՂԳ | 944 | ՆԼԵ | 986 | ՆՀԷ | 1028 |
| ՑԾԲ | 903 | ՑՂԴ | 945 | ՆԼԶ | 987 | ՆՀԸ | 1029 |
| ՑԾԳ | 904 | ՑՂԵ | 946 | ՆԼԷ | 988 | ՆՀԹ | 1030 |
| ՑԾԴ | 905 | ՑՂԶ | 947 | ՆԼԸ | 989 | ՆՁ | 1031 |
| ՑԾԵ | 906 | ՑՂԷ | 948 | ՆԼԹ | 990 | ՆՁԱ | 1032 |
| ՑԾԶ | 907 | ՑՂԸ | 949 | ՆԽ | 991 | ՆՁԲ | 1033 |
| ՑԾԷ | 908 | ՑՂԹ | 950 | ՆԽԱ | 992 | ՆՁԳ | 1034 |
| ՑԾԸ | 909 | Ն | 951 | ՆԽԲ | 993 | ՆՁԴ | 1035 |
| ՑԾԹ | 910 | ՆԱ | 952 | ՆԽԳ | 994 | ՆՁԵ | 1036 |
| ՑԿ | 911 | ՆԲ | 953 | ՆԽԴ | 995 | ՆՁԶ | 1037 |
| ՑԿԱ | 912 | ՆԳ | 954 | ՆԽԵ | 996 | ՆՁԷ | 1038 |
| ՑԿԲ | 913 | ՆԴ | 955 | ՆԽԶ | 997 | ՆՁԸ | 1039 |
| ՑԿԳ | 914 | ՆԵ | 956 | ՆԽԷ | 998 | ՆՁԹ | 1040 |
| ՑԿԴ | 915 | ՆԶ | 957 | ՆԽԸ | 999 | ՆՂ | 1041 |
| ՑԿԵ | 916 | ՆԷ | 958 | ՆԽԹ | 1000 | ՆՂԱ | 1042 |
| ՑԿԶ | 917 | ՆԸ | 959 | ՆԾ | 1001 | ՆՂԲ | 1043 |
| ՑԿԷ | 918 | ՆԹ | 960 | ՆԾԱ | 1002 | ՆՂԳ | 1044 |
| ՑԿԸ | 919 | ՆԺ | 961 | ՆԾԲ | 1003 | ՆՂԴ | 1045 |
| ՑԿԹ | 920 | ՆԺԱ | 962 | ՆԾԳ | 1004 | ՆՂԵ | 1046 |
| ՑՀ | 921 | ՆԺԲ | 963 | ՆԾԴ | 1005 | ՆՂԶ | 1047 |
| ՑՀԱ | 922 | ՆԺԳ | 964 | ՆԾԵ | 1006 | ՆՂԷ | 1048 |
| ՑՀԲ | 923 | ՆԺԴ | 965 | ՆԾԶ | 1007 | ՆՂԸ | 1049 |
| ՑՀԳ | 924 | ՆԺԵ | 966 | ՆԾԷ | 1008 | ՆՂԹ | 1050 |
| ՑՀԴ | 925 | ՆԺԶ | 967 | ՆԾԸ | 1009 | Շ | 1051 |
| ՑՀԵ | 926 | ՆԺԷ | 968 | ՆԾԹ | 1010 | ՇԱ | 1052 |
| ՑՀԶ | 927 | ՆԺԸ | 969 | ՆԿ | 1011 | ՇԲ | 1053 |
| ՑՀԷ | 928 | ՆԺԹ | 970 | ՆԿԱ | 1012 | ՇԳ | 1054 |
| ՑՀԸ | 929 | ՆԻ | 971 | ՆԿԲ | 1013 | ՇԴ | 1055 |

ՇԵ 1056
ՇԶ 1057
ՇԷ 1058
ՇԸ 1059
ՇԹ 1060
ՇԺ 1061
ՇԺԱ 1062
ՇԺԲ 1063
ՇԺԳ 1064
ՇԺԴ 1065
ՇԺԵ 1066
ՇԺԶ 1067
ՇԺԷ 1068
ՇԺԸ 1069
ՇԺԹ 1070
ՇԻ 1071
ՇԻԱ 1072
ՇԻԲ 1073
ՇԻԳ 1074
ՇԻԴ 1075
ՇԻԵ 1076
ՇԻԶ 1077
ՇԻԷ 1078
ՇԻԸ 1079
ՇԻԹ 1080
ՇԼ 1081
ՇԼԱ 1082
ՇԼԲ 1083
ՇԼԳ 1084
ՇԼԴ 1085
ՇԼԵ 1086
ՇԼԶ 1087
ՇԼԷ 1088
ՇԼԸ 1089
ՇԼԹ 1090
ՇԽ 1091
ՇԽԱ 1092
ՇԽԲ 1093
ՇԽԳ 1094
ՇԽԴ 1095
ՇԽԵ 1096
ՇԽԶ 1097
ՇԽԷ 1098
ՇԽԸ 1099
ՇԽԹ 1100
ՇԾ 1101
ՇԾԱ 1102
ՇԾԲ 1103
ՇԾԳ 1104
ՇԾԴ 1105
ՇԾԵ 1106
ՇԾԶ 1107
ՇԾԷ 1108
ՇԾԸ 1109
ՇԾԹ 1110
ՇԿ 1111
ՇԿԱ 1112
ՇԿԲ 1113
ՇԿԳ 1114
ՇԿԴ 1115
ՇԿԵ 1116
ՇԿԶ 1117
ՇԿԷ 1118
ՇԿԸ 1119
ՇԿԹ 1120
ՇՀ 1121
ՇՀԱ 1122
ՇՀԲ 1123
ՇՀԳ 1124
ՇՀԴ 1125
ՇՀԵ 1126
ՇՀԶ 1127
ՇՀԷ 1128
ՇՀԸ 1129
ՇՀԹ 1130
ՇՁ 1131
ՇՁԱ 1132
ՇՁԲ 1133
ՇՁԳ 1134
ՇՁԴ 1135
ՇՁԵ 1136
ՇՁԶ 1137
ՇՁԷ 1138
ՇՁԸ 1139
ՇՁԹ 1140
ՇՂ 1141
ՇՂԱ 1142
ՇՂԲ 1143
ՇՂԳ 1144
ՇՂԴ 1145
ՇՂԵ 1146
ՇՂԶ 1147
ՇՂԷ 1148
ՇՂԸ 1149
ՇՂԹ 1150
Ո 1151
ՈԱ 1152
ՈԲ 1153
ՈԳ 1154
ՈԴ 1155
ՈԵ 1156
ՈԶ 1157
ՈԷ 1158
ՈԸ 1159
ՈԹ 1160
ՈԺ 1161
ՈԺԱ 1162
ՈԺԲ 1163
ՈԺԳ 1164
ՈԺԴ 1165
ՈԺԵ 1166
ՈԺԶ 1167
ՈԺԷ 1168
ՈԺԸ 1169
ՈԺԹ 1170
ՈԻ 1171
ՈԻԱ 1172
ՈԻԲ 1173
ՈԻԳ 1174
ՈԻԴ 1175
ՈԻԵ 1176
ՈԻԶ 1177
ՈԻԷ 1178
ՈԻԸ 1179
ՈԻԹ 1180
ՈԼ 1181
ՈԼԱ 1182
ՈԼԲ 1183
ՈԼԳ 1184
ՈԼԴ 1185
ՈԼԵ 1186
ՈԼԶ 1187
ՈԼԷ 1188
ՈԼԸ 1189
ՈԼԹ 1190
ՈԽ 1191
ՈԽԱ 1192
ՈԽԲ 1193
ՈԽԳ 1194
ՈԽԴ 1195
ՈԽԵ 1196
ՈԽԶ 1197
ՈԽԷ 1198
ՈԽԸ 1199
ՈԽԹ 1200
ՈԾ 1201
ՈԾԱ 1202
ՈԾԲ 1203
ՈԾԳ 1204
ՈԾԴ 1205
ՈԾԵ 1206
ՈԾԶ 1207
ՈԾԷ 1208
ՈԾԸ 1209
ՈԾԹ 1210
ՈԿ 1211
ՈԿԱ 1212
ՈԿԲ 1213
ՈԿԳ 1214
ՈԿԴ 1215
ՈԿԵ 1216
ՈԿԶ 1217
ՈԿԷ 1218
ՈԿԸ 1219
ՈԿԹ 1220
ՈՀ 1221
ՈՀԱ 1222
ՈՀԲ 1223

| | | | | | | | |
|---|---|---|---|---|---|---|---|
| ՈՀԳ | 1224 | ՉԺԵ | 1266 | ՉԾԷ | 1308 | ՉՂԹ | 1350 |
| ՈՀԴ | 1225 | ՉԺԶ | 1267 | ՉԾԸ | 1309 | Պ | 1351 |
| ՈՀԵ | 1226 | ՉԺԷ | 1268 | ՉԾԹ | 1310 | ՊԱ | 1352 |
| ՈՀԶ | 1227 | ՉԺԸ | 1269 | ՉԿ | 1311 | ՊԲ | 1353 |
| ՈՀԷ | 1228 | ՉԺԹ | 1270 | ՉԿԱ | 1312 | ՊԳ | 1354 |
| ՈՀԸ | 1229 | ՉԻ | 1271 | ՉԿԲ | 1313 | ՊԴ | 1355 |
| ՈՀԹ | 1230 | ՉԻԱ | 1272 | ՉԿԳ | 1314 | ՊԵ | 1356 |
| ՈՁ | 1231 | ՉԻԲ | 1273 | ՉԿԴ | 1315 | ՊԶ | 1357 |
| ՈՁԱ | 1332 | ՉԻԳ | 1274 | ՉԿԵ | 1316 | ՊԷ | 1358 |
| ՈՁԲ | 1233 | ՉԻԴ | 1275 | ՉԿԶ | 1317 | ՊԸ | 1359 |
| ՈՁԳ | 1234 | ՉԻԵ | 1276 | ՉԿԷ | 1318 | ՊԹ | 1360 |
| ՈՁԴ | 1235 | ՉԻԶ | 1277 | ՉԿԸ | 1319 | ՊԺ | 1361 |
| ՈՁԵ | 1236 | ՉԻԷ | 1278 | ՉԿԹ | 1320 | ՊԺԱ | 1362 |
| ՈՁԶ | 1237 | ՉԻԸ | 1279 | ՉՀ | 1321 | ՊԺԲ | 1363 |
| ՈՁԷ | 1238 | ՉԻԹ | 1280 | ՉՀԱ | 1322 | ՊԺԳ | 1364 |
| ՈՁԸ | 1239 | ՉԼ | 1281 | ՉՀԲ | 1323 | ՊԺԴ | 1365 |
| ՈՁԹ | 1240 | ՉԼԱ | 1282 | ՉՀԳ | 1324 | ՊԺԵ | 1366 |
| ՈՂ | 1241 | ՉԼԲ | 1283 | ՉՀԴ | 1325 | ՊԺԶ | 1367 |
| ՈՂԱ | 1242 | ՉԼԳ | 1284 | ՉՀԵ | 1326 | ՊԺԷ | 1368 |
| ՈՂԲ | 1243 | ՉԼԴ | 1285 | ՉՀԶ | 1327 | ՊԺԸ | 1569 |
| ՈՂԳ | 1244 | ՉԼԵ | 1286 | ՉՀԷ | 1328 | ՊԺԹ | 1370 |
| ՈՂԴ | 1245 | ՉԼԶ | 1287 | ՉՀԸ | 1329 | ՊԻ | 1371 |
| ՈՂԵ | 1246 | ՉԼԷ | 1288 | ՉՀԹ | 1330 | ՊԻԱ | 1372 |
| ՈՂԶ | 1247 | ՉԼԸ | 1289 | ՉՁ | 1331 | ՊԻԲ | 1373 |
| ՈՂԷ | 1248 | ՉԼԹ | 1290 | ՉՁԱ | 1332 | ՊԻԳ | 1374 |
| ՈՂԸ | 1249 | ՉԽ | 1291 | ՉՁԲ | 1333 | ՊԻԴ | 1375 |
| ՈՂԹ | 1250 | ՉԽԱ | 1292 | ՉՁԳ | 1334 | ՊԻԵ | 1376 |
| Չ | 1251 | ՉԽԲ | 1293 | ՉՁԴ | 1335 | ՊԻԶ | 1377 |
| ՉԱ | 1252 | ՉԽԳ | 1294 | ՉՁԵ | 1336 | ՊԻԷ | 1378 |
| ՉԲ | 1253 | ՉԽԴ | 1295 | ՉՁԶ | 1337 | ՊԻԸ | 1379 |
| ՉԳ | 1254 | ՉԽԵ | 1296 | ՉՁԷ | 1338 | ՊԻԹ | 1380 |
| ՉԴ | 1255 | ՉԽԶ | 1297 | ՉՁԸ | 1339 | ՊԼ | 1381 |
| ՉԵ | 1256 | ՉԽԷ | 1298 | ՉՁԹ | 1340 | ՊԼԱ | 1382 |
| ՉԶ | 1257 | ՉԽԸ | 1299 | ՉՂ | 1341 | ՊԼԲ | 1383 |
| ՉԷ | 1258 | ՉԽԹ | 1300 | ՉՂԱ | 1342 | ՊԼԳ | 1384 |
| ՉԸ | 1259 | ՉԾ | 1301 | ՉՂԲ | 1343 | ՊԼԴ | 1385 |
| ՉԹ | 1260 | ՉԾԱ | 1302 | ՉՂԳ | 1344 | ՊԼԵ | 1386 |
| ՉԺ | 1261 | ՉԾԲ | 1303 | ՉՂԴ | 1345 | ՊԼԶ | 1387 |
| ՉԺԱ | 1262 | ՉԾԳ | 1304 | ՉՂԵ | 1346 | ՊԼԷ | 1388 |
| ՉԺԲ | 1263 | ՉԾԴ | 1305 | ՉՂԶ | 1347 | ՊԼԸ | 1389 |
| ՉԺԳ | 1264 | ՉԾԵ | 1306 | ՉՂԷ | 1348 | ՊԼԹ | 1390 |
| ՉԺԴ | 1265 | ՉԾԶ | 1307 | ՉՂԸ | 1349 | ՊԽ | 1391 |

| | |
|---|---|
| ՊԽԱ | 1392 |
| ՊԽԲ | 1393 |
| ՊԽԳ | 1394 |
| ՊԽԴ | 1395 |
| ՊԽԵ | 1396 |
| ՊԽԶ | 1397 |
| ՊԽԷ | 1398 |
| ՊԽԸ | 1399 |
| ՊԽԹ | 1400 |
| ՊԾ | 1401 |
| ՊԾԱ | 1402 |
| ՊԾԲ | 1403 |
| ՊԾԳ | 1404 |
| ՊԾԴ | 1405 |
| ՊԾԵ | 1406 |
| ՊԾԶ | 1407 |
| ՊԾԷ | 1408 |
| ՊԾԸ | 1409 |
| ՊԾԹ | 1410 |
| ՊԿ | 1411 |
| ՊԿԱ | 1412 |
| ՊԿԲ | 1413 |
| ՊԿԳ | 1414 |
| ՊԿԴ | 1415 |
| ՊԿԵ | 1416 |
| ՊԿԶ | 1417 |
| ՊԿԷ | 1418 |
| ՊԿԸ | 1419 |
| ՊԿԹ | 1420 |
| ՊՀ | 1421 |
| ՊՀԱ | 1422 |
| ՊՀԲ | 1423 |
| ՊՀԳ | 1424 |
| ՊՀԴ | 1425 |
| ՊՀԵ | 1426 |
| ՊՀԶ | 1427 |
| ՊՀԷ | 1428 |
| ՊՀԸ | 1429 |
| ՊՀԹ | 1430 |
| ՊՁ | 1431 |
| ՊՁԱ | 1432 |
| ՊՁԲ | 1433 |
| ՊՁԳ | 1434 |
| ՊՁԴ | 1435 |
| ՊՁԵ | 1436 |
| ՊՁԶ | 1437 |
| ՊՁԷ | 1438 |
| ՊՁԸ | 1439 |
| ՊՁԹ | 1440 |
| ՊՂ | 1441 |
| ՊՂԱ | 1442 |
| ՊՂԲ | 1443 |
| ՊՂԳ | 1444 |
| ՊՂԴ | 1445 |
| ՊՂԵ | 1446 |
| ՊՂԶ | 1447 |
| ՊՂԷ | 1448 |
| ՊՂԸ | 1449 |
| ՊՂԹ | 1450 |
| Ջ | 1451 |
| ՋԱ | 1452 |
| ՋԲ | 1453 |
| ՋԳ | 1454 |
| ՋԴ | 1455 |
| ՋԵ | 1456 |
| ՋԶ | 1457 |
| ՋԷ | 1458 |
| ՋԸ | 1459 |
| ՋԹ | 1460 |
| ՋԺ | 1461 |
| ՋԺԱ | 1462 |
| ՋԺԲ | 1463 |
| ՋԺԳ | 1464 |
| ՋԺԴ | 1465 |
| ՋԺԵ | 1466 |
| ՋԺԶ | 1467 |
| ՋԺԷ | 1468 |
| ՋԺԸ | 1469 |
| ՋԺԹ | 1470 |
| ՋԻ | 1471 |
| ՋԻԱ | 1472 |
| ՋԻԲ | 1473 |
| ՋԻԳ | 1474 |
| ՋԻԴ | 1475 |
| ՋԻԵ | 1476 |
| ՋԻԶ | 1477 |
| ՋԻԷ | 1478 |
| ՋԻԸ | 1479 |
| ՋԻԹ | 1480 |
| ՋԼ | 1481 |
| ՋԼԱ | 1482 |
| ՋԼԲ | 1483 |
| ՋԼԳ | 1484 |
| ՋԼԴ | 1485 |
| ՋԼԵ | 1486 |
| ՋԼԶ | 1487 |
| ՋԼԷ | 1488 |
| ՋԼԸ | 1489 |
| ՋԼԹ | 1490 |
| ՋԽ | 1491 |
| ՋԽԱ | 1492 |
| ՋԽԲ | 1493 |
| ՋԽԳ | 1494 |
| ՋԽԴ | 1495 |
| ՋԽԵ | 1496 |
| ՋԽԶ | 1497 |
| ՋԽԷ | 1498 |
| ՋԽԸ | 1499 |
| ՋԽԹ | 1500 |
| ՋԾ | 1501 |
| ՋԾԱ | 1502 |
| ՋԾԲ | 1503 |
| ՋԾԳ | 1504 |
| ՋԾԴ | 1505 |
| ՋԾԵ | 1506 |
| ՋԾԶ | 1507 |
| ՋԾԷ | 1508 |
| ՋԾԸ | 1509 |
| ՋԾԹ | 1510 |
| ՋԿ | 1511 |
| ՋԿԱ | 1512 |
| ՋԿԲ | 1513 |
| ՋԿԳ | 1514 |
| ՋԿԴ | 1515 |
| ՋԿԵ | 1516 |
| ՋԿԶ | 1517 |
| ՋԿԷ | 1518 |
| ՋԿԸ | 1519 |
| ՋԿԹ | 1520 |
| ՋՀ | 1521 |
| ՋՀԱ | 1522 |
| ՋՀԲ | 1523 |
| ՋՀԳ | 1524 |
| ՋՀԴ | 1525 |
| ՋՀԵ | 1526 |
| ՋՀԶ | 1527 |
| ՋՀԷ | 1528 |
| ՋՀԸ | 1529 |
| ՋՀԹ | 1530 |
| ՋՁ | 1531 |
| ՋՁԱ | 1532 |
| ՋՁԲ | 1533 |
| ՋՁԳ | 1534 |
| ՋՁԴ | 1535 |
| ՋՁԵ | 1536 |
| ՋՁԶ | 1537 |
| ՋՁԷ | 1538 |
| ՋՁԸ | 1539 |
| ՋՁԹ | 1540 |
| ՋՂ | 1541 |
| ՋՂԱ | 1542 |
| ՋՂԲ | 1543 |
| ՋՂԳ | 1544 |
| ՋՂԴ | 1545 |
| ՋՂԵ | 1546 |
| ՋՂԶ | 1547 |
| ՋՂԷ | 1548 |
| ՋՂԸ | 1549 |
| ՋՂԹ | 1550 |
| Ռ | 1551 |

## ՊԱՏԿԵՐ ԱՒՈՒՐՆ

Հին հայոց տոմարական լեզվով պատկեր ավուրն նշանակում է ամսաթվի օրը։ Օրինակ՝ 1942 թվի հուլիսի 14-ի պատկեր ավուրն է երեքշաբթի։

Թվականները ստուգելու համար հաճախ անհրաժեշտ է իմանալ պատկեր ավուրն։ Օրինակ, մի հին հիշատակարանում, որ հրատարակված է REA 7, 106, ասվում է թե Լևոն Բ Ռուբինյան մեռել է 1219 թվի մայիսի 1-ին, չորեքշաբթի օրը։ Տոմարական հաշվով պատկեր ավուրն ստույգ է. ուստի ստույգ է նաև տրված թվականը։ Եթե թվականը ստույգ չլիներ, կարելի էր ուղղել օրվա պատկերի համաձայն։

Ահա այս նպատակով դնում ենք հատորիս վերջում մի ցուցակ, որով կարելի է Քրիստոսից առաջ և հետո հազարավոր տարիների բոլոր պատկեր ավուրները իմանալ։

Այս ցուցակը կազմել է դոկտոր ճարտարագետ Գրիգոր Հովեանը, որ ներկայացրել էր այն՝ Ֆրանսիայի աստղաբաշխական ընկերությանը։ Հրատարակված է Արարատ ամսագրի հուլիսի համարում, էջ 308—309, որից արտատպում ենք և մենք։

Ցուցակի ձախ կողմում գրված են դարերը թե հին տոմարով և թե նոր տոմարով. վերևում յոթնեքյակները։ Միջին մասում գրված են վերևում տարիները Քրիստոսից առաջ և հետո, կենտրոնում ամիսները, ներքևում շաբաթվա օրերը. իսկ աջ կողմում յոթնեքյակները և ամսաթվերը։

Ցուցակը գործ ենք ածում հետևյալ ձևով։

Ուզում ենք իմանալ թե 1942 թվի հուլիսի 14-ը նոր տոմարով ինչ օր է։ Դարերի մեջ գտնում ենք 19, ուղիղ գծով բարձրանում ենք վերև յոթնեքյակների գիծը և Յ.Ք. տարիների մեջ գտնելով 42, ուղիղ գծով գնում ենք ձախ դեպի յոթնեքյակները և նրանց հատման կետում գտնում ենք Դ, որ է Յ. Ք. 1942 թվի յոթնեքյակը (նոր տոմարով)։ Այժմ գալիս ենք աջ և յոթնեքյակների շարքում գտնում ենք Դ, որի դիմացը, ամիսների շարքում գտնում ենք հուլիսը։ Այստեղից ուղիղ գծով իջնում ենք ցած, դեպի շաբաթվա օրերը։ Սրանց դեմ աջ կող-

ժում, ամսաթվերն են. այստեղ գտնում ենք 14, որից ձախ գնալով՝ հուլիսի սյունակի հատման կետում գտնում ենք գշ. (երեքշաբթի)։

Հները հաշվում էին միշտ հին տոմարով։

Եթե տարին նահանջ է, յոթներյակները երկուսն են լինում. մինչև փետրվարի վերջը պետք է առնել առաջին յոթներյակը, փետրվարից հետո՝ երկրորդ յոթներյակը։

Այս ձևով կարելի է գտնել նաև Քրիստոսից առաջ եղած թվականների պատկեր աւուրը։

ՆԲ. Բառարանիս մեջ տրված բացատրությունները սխալ չհասկանալու համար՝ պարտք եմ համարում հայտնել, թե որ հարաբերականը գործածված է այստեղ բացարձակ քերականական ճշտությամբ։ Այսինքն, որ-ը հարաբերում է միայն անմիջապես իրանից առաջ դրված բառը և ոչ թե մի ուրիշ ավելի հեռավոր բառ։ Օրինակ, երբ ասում ենք, «Ապոլայ, ամուսին Ղրիմխաթուն տիկնոջ, որ Կիրակոս գրչին գրել տվեց մի Յայսմաւուրք...»,

այստեղ Կիրակոս գրչին Յայսմաւուրք գրել տվողը Ղրիմխաթուն տիկինն է և ո՛չ թե Ապոլան։ Եթե լիներ Ապոլան, կասէի՝ «Ապոլայ, ամուսին Ղրիմխաթուն տիկնոջ. Կիրակոս գրչին գրել տվեց մի Յայսմաւուրք...»։

## ՄՇՏՆՋԵՆԱԿԱՆ ՕՐԱՑՈՒՅՑ ԵՒ ՊԱՏԿԵՐ ԱՒՈՒՐՑ (Ըստ Գրիգոր Հովեանի)

| Ցուցերակներ | | | | | | | Ն. Դ. | | | | | | | | Յ. Դ. | | | | | | | | | | | | | | | | | |
|---|---|---|---|---|---|---|---|---|---|---|---|---|---|---|---|---|---|---|---|---|---|---|---|---|---|---|---|---|---|---|---|---|
| Գ | Բ | Ա | Է | Զ | Ե | | 45 | 40 | 34 | 28 | 23 | 17 | 12 | 6 | 0 | 5 | 11 | 16 | 22 | 28 | 33 | 39 | 44 | 50 | 56 | 61 | 67 | 72 | 78 | 84 | 89 | 95 |
| Դ | Գ | Բ | Ա | Է | Զ | | 44 | 39 | 33 | 28 | 22 | 16 | 11 | 5 | 0 | 6 | 12 | 17 | 23 | 28 | 34 | 40 | 45 | 51 | 56 | 62 | 68 | 73 | 79 | 84 | 90 | 96 |
| Զ | Ե | Դ | Գ | Բ | Ա | Է | 44 | 38 | 32 | 27 | 21 | 16 | 10 | 4 | 1 | 7 | 12 | 18 | 24 | 29 | 35 | 40 | 46 | 52 | 57 | 63 | 68 | 74 | 80 | 85 | 91 | 96 |

| Շաբաթվա օրեր | | | | | | | Ամսաթուերը | | | | |
|---|---|---|---|---|---|---|---|---|---|---|---|
| Գշ. | Դշ. | Եշ. | ուր. | Շբ. | Կիր. | Բշ. | 3 | 10 | 17 | 24 | 31 |
| Դշ. | Եշ. | ուր. | Շբ. | Կիր. | Բշ. | Գշ. | 4 | 11 | 18 | 25 | |
| Եշ. | ուր. | Շբ. | Կիր. | Բշ. | Գշ. | Դշ. | 5 | 12 | 19 | 26 | |
| ուր. | Շբ. | Կիր. | Բշ. | Գշ. | Դշ. | Եշ. | 6 | 13 | 20 | 27 | |
| Շբ. | Կիր. | Բշ. | Գշ. | Դշ. | Եշ. | ուր. | 7 | 14 | 21 | 28 | |

մում, ամսաթվերն են. այստեղ գտնում ենք 14, որից ձախ գնալով՝ հուլիսի սյունակի հատման կետում գտնում ենք գշ. (երեքշաբթի)։

Հները հաշվում էին միշտ հին տոմարով։

Եթե տարին նահանջ է, յոթնեբյակները երկուսն են լինում. մինչև փետրվարի վերջը պետք է առնել առաջին յոթնեբյակը, փետրվարից հետո՝ երկրորդ յոթնեբյակը։

Այս ձևով կարելի է գտնել նաև Քրիստոսից առաջ եղած թվականների պատկեր աւուրը։

NB. *Բառարանիս մեջ տրված բացատրությունները սխալ չհասկանալու համար՝ պարտք եմ համարում հայտնել, թե* որ *հարաբերականը գործածված է այստեղ բացարձակ քերականական ճշտությամբ։ Այսինքն,* որ-ը *հարաբերում է միայն անմիջապես իրանից առաջ գրված բառը և ոչ թե մի ուրիշ ավելի հեռավոր բառ։ Օրինակ, երբ ասում ենք, «Ապոլայ, ամուսին Ղրիմխաթուն տիկնոջ, որ Կիրակոս գրչին գրել տվեց մի Ցայսմաւուրք...»,*

*այստեղ Կիրակոս գրչին Ցայսմաւուրք գրել տվողը Ղրիմխաթուն տիկինն է և ոչ թե Ապոլան։ Եթե լիներ Ապոլան, կասեի՝ «Ապոլայ, ամուսին Ղրիմխաթուն տիկնոջ. Կիրակոս գրչին գրել տվեց մի Ցայսմաւուրք...»։*

## ՄՇՏՆՋԵՆԱԿԱՆ ՕՐԱՑՈՒՅՑ ԵՒ ՊԱՏԿԵՐ ԱՒՈՒՐՑ (Ըստ Գրիգոր Հովեանի)

| Տարեգրակներ | | | | | | | Ն. Դ. | | | | | | | | Ց. Դ. | | | | | | | | | | | | | | | | | |
|---|---|---|---|---|---|---|---|---|---|---|---|---|---|---|---|---|---|---|---|---|---|---|---|---|---|---|---|---|---|---|---|---|
| Դ | Գ | Բ | Ա | Է | Զ | Ե | 45 | 40 | 34 | 28 | 23 | 17 | 12 | 6 | 0 | 5 | 11 | 16 | 22 | 28 | 33 | 39 | 44 | 50 | 56 | 61 | 67 | 72 | 78 | 84 | 89 | 95 |
| Ե | Դ | Գ | Բ | Ա | Է | Զ | 44 | 39 | 33 | 28 | 22 | 16 | 11 | 5 | 0 | 6 | 12 | 17 | 23 | 28 | 34 | 40 | 45 | 51 | 56 | 62 | 68 | 73 | 79 | 84 | 90 | 96 |
| Զ | Ե | Դ | Գ | Բ | Ա | Է | 44 | 38 | 32 | 27 | 21 | 16 | 10 | 4 | 1 | 7 | 12 | 18 | 24 | 29 | 35 | 40 | 46 | 52 | 57 | 63 | 68 | 74 | 80 | 85 | 91 | 96 |
| Է | Զ | Ե | Դ | Գ | Բ | Ա | 43 | 37 | 32 | 26 | 20 | 15 | 9 | 4 | 2 | 8 | 13 | 19 | 24 | 30 | 36 | 41 | 47 | 52 | 58 | 64 | 69 | 75 | 80 | 86 | 92 | 97 |
| Ա | Է | Զ | Ե | Դ | Գ | Բ | 42 | 36 | 31 | 25 | 20 | 14 | 8 | 3 | 3 | 8 | 14 | 20 | 25 | 31 | 36 | 42 | 48 | 53 | 59 | 64 | 70 | 76 | 81 | 87 | 92 | 98 |
| Բ | Ա | Է | Զ | Ե | Դ | Գ | 41 | 36 | 30 | 24 | 19 | 13 | 8 | 2 | 4 | 9 | 15 | 20 | 26 | 32 | 37 | 43 | 48 | 54 | 60 | 65 | 71 | 76 | 82 | 88 | 93 | 99 |
| Գ | Բ | Ա | Է | Զ | Ե | Դ | 40 | 35 | 29 | 24 | 18 | 12 | 7 | 1 | 4 | 10 | 16 | 21 | 27 | 32 | 38 | 44 | 49 | 55 | 60 | 66 | 72 | 77 | 83 | 88 | 94 | 00 |

| | | | | | | | | | | | | | | |
|---|---|---|---|---|---|---|---|---|---|---|---|---|---|---|
| 0 | 1 | 2 | 3 | 4 | 5 | 6 | Հունվ. Հոկտ. | Մայիս | Օգոստոս | Փետր. Մարտ Նոյեմ. | Հունիս | Սեպտ. Դեկտ. | Ապրիլ Հուլիս | Է |
| 7 | 8 | 9 | 10 | 11 | 12 | 13 | | | | | | | | |
| 14 | 15 | 16 | 17 | 18 | 19 | 20 | | | | | | | | |
| 21 | 22 | 23 | 24 | 25 | 26 | 27 | Մայիս | Օգոստոս | Փետրվար Մարտ Նոյեմբեր | Հունիս | Սեպտ. Դեկտ. | Ապրիլ Հուլիս | Հունվ. Հոկտ. | Զ |
| 28 | 29 | 30 | 31 | 32 | 33 | 34 | | | | | | | | |
| 35 | 36 | 37 | 38 | 39 | 40 | 41 | | | | | | | | |
| 42 | 43 | 44 | 45 | 46 | 47 | 48 | | | | | | | | |
| 49 | 50 | 51 | 52 | 53 | 54 | 55 | Օգոստոս | Փետր. Մարտ Նոյեմ | Հունիս | Սեպտ. Դեկտ. | Ապրիլ Հուլիս | Հունվ. Հոկտ. | Մայիս | Ե |
| 56 | 57 | 58 | 59 | 60 | 61 | 62 | | | | | | | | |
| 63 | 64 | 65 | 66 | 67 | 68 | 69 | | | | | | | | |

| | | | | | | | | | | | |
|---|---|---|---|---|---|---|---|---|---|---|---|
| 1 | 2 | 3 | 4 | Փետրվար Մարտ Նոյեմբեր | Հունիս | Սեպտեմ. Դեկտեմ. | Ապրիլ Հուլիս | Հունվար Հոկտեմ. | Մայիս | Օգոստ. | Դ |
| 5 | 6 | 7 | 8 | | | | | | | | |
| 9 | 10 | 11 | 12 | | | | | | | | |
| 13 | 14 | 15 | 16 | Հունիս | Սեպտ. Դեկտ. | Ապրիլ Հուլիս | Հունվ. Հոկտ. | Մայիս | Օգոստ. | Փետր. Մարտ Նոյեմ. | Գ |
| 17 | 18 | 19 | 20 | | | | | | | | |
| 21 | 22 | 23 | 24 | | | | | | | | |
| 25 | 26 | 27 | 28 | Սեպտեմ. Դեկտեմ. | Ապրիլ Հուլիս | Հունվար Հոկտեմբեր | Մայիս | Օգոստ. | Փետր. Մարտ. Նոյեմ. | Հունիս | Բ |
| 29 | 30 | 31 | 32 | | | | | | | | |
| 33 | 34 | 35 | 36 | | | | | | | | |
| 37 | 38 | 39 | 40 | Ապրիլ Հուլիս | Հունվ. Հոկտ. | Մայիս | Օգոստ. | Փետրվար Մարտ Նոյեմբեր | Հունիս | Սեպտ. Դեկտ. | Ա |

Դ ա ր ե ր

| | | | | | | | | | | | |
|---|---|---|---|---|---|---|---|---|---|---|---|
| Կիր. | Բշ. | Գշ. | Դշ. | Եշ. | Ուր. | Շբ. | 1 | 8 | 15 | 22 | 29 |
| Բշ. | Գշ. | Դշ. | Եշ. | Ուր. | Շբ. | Կիր. | 2 | 9 | 16 | 23 | 30 |
| Գշ. | Դշ. | Եշ. | Ուր. | Շբ. | Կիր. | Բշ. | 3 | 10 | 17 | 24 | 31 |
| Դշ. | Եշ. | Ուր. | Շբ. | Կիր. | Բշ. | Գշ. | 4 | 11 | 18 | 25 | |
| Եշ. | Ուր. | Շբ. | Կիր. | Բշ. | Գշ. | Դշ. | 5 | 12 | 19 | 26 | |
| | | | | | | | 6 | 13 | 20 | 27 | |

# Ա

*ԱԲԱ, ար. < ասոր. ابا āwā անունից (գրվում է ābā, կարդացվում է āwā). բուն նշանակում է «հայր» (Հիւբշ. 288), հմմտ. Աբայ երեց ասորի՝ Գիրք Թղ. ը (Թուղթ Հայոց ի Պարսս, առ ուղղափառս), Աբա քաղաքապետ (Գորիա և Շմոն, էջ 63. հյ. թրգմ. տպ. Նաբայ). Նաև Մար Աբաս Կատինա (ասոր. Mār Awā Qaṭṭīnā) ասորի պատմիչը՝ ըստ Խորենացու. (բունն. «Տէր Աբա իմաստունն»)։ Այս անունով մեր մեջ ունինք միայն՝

— Աբա Գնունի, մին այն նախարարներից, որոնք ուղեկից եղան Յուսիկին, երբ սա գնում էր Կեսարիա՝ կաթողիկոս ձեռնադրվելու համար «341 թ».—Բուզ. Գ. ժբ։

*ԱԲԱՂ, ար. < թթր. Abaġa, Abaġ անունից. այս անունով հայտնի են՝ Աբաղա խան, որդի Հուլաղուի. Հեթում Ա-ի հետ միասին՝ թաթար զորքով մասնակցեց Սարիքի արշավանքին (1259),—Ապաղ անունով մի թուրք (Զքր. սարկ. Բ. 56)։ Բուն նշանակությունն է «հորեղբայր». հմմտ. չաղաթայ. اباغا abaġa, ույղուր. ابوغا abuġa «հորեղբայր»։ Անշուշտ գործածական էր Հայոց մեջ, որովհետև ունինք սրանից Աբաղեան ազգանունը (կա Վանում)։—Հմմտ. նաև Աբաղայի դաշտը։

ԱԲԱՑԻ. ծագումը անհայտ.

— Աբայի (աղվան), երէց Կաղբեցի. ներկա եղավ Աղուէնի եկեղեցական ժողովին, որ գումարեց Աղվանից Վաչագան Գ. Բարեպաշտ թագավորը (Զ դար).—Տաշեան Ցուցակ, էջ 653բ։—Նույն անձը Կղնտ. Ա. իզ, ինչպես նաև Կանոն. 192 կոչվում է Աբիկազ Բիբայ երեց։

*ԱԲԱՍ, ար. գործածական է Դ դարից սկսած մինչև ԺԳ դար. այնուհետև հազիվ է երևում. փոխ է առնված ասոր. Awā (տես Աբա) անվան հունական ձևից (Հիւբշ. 288 ծան.) հմմտ. Մար Աբաս Կատինա նշանավոր ասորի պատմագիրը, որից Խորենացին կազմել է իր «Հայոց Պատմութեան» նախնական շրջանը։ Բագրատունեաց ժամանակ, այն է իններորդ դարից սկսած, այս անունը ստանում է նոր կենդանություն։ Բայց որովհետև այս

ժամանակ ասորական ազդեցությունը ջնջված էր, ուստի այս անվան վերակենդանացումը պետք է վերագրել արաբական նոր ազդեցության։ Աբաս (< արաբ. عباس ʿAbbās) անունը շատ տարածված էր Արաբների մեջ, որոնցից էլ անցավ մյուս մահմեդական ազգերին։ Այս անունով նշանավոր են պատմության մեջ՝ 1. Աբբաս՝ հայր Մամուն-ալ-Ռաշիդ խալիֆայի, որ տապալելով դահակալող ցեղը, հիմնեց Բաղդադում նոր ամիրապետություն, որ և նրա նոր անունով կոչվեց Աբբասեան (750—1258)—2. Աբբաս որդի Ալի ամիրապետի, որ շիա դավանանքի մահմեդականների մեջ սրբազան անձնավորություն է և կոչվում է Հազրեթ-ի-Աբբաս.—3. Շահ-Աբբաս, պարսից Սեֆեան տան նշանավոր թագավոր, որ իշխում էր 1557—1628։—Արաբերեն عباس ʿAbbās բառը բուն նշանակում է «առյուծ», նաև «դժնէ, դժնեադեմ» (Կամուս, Բ. 258)։ Բայց անշուշտ պետք է առնել առաջին նշանակությամբ, որով համապատասխան է դուրս գալիս լտ. Leo, հուն. Ղևոնդ, արաբ. Ասադ, Հայդար, թրք. Ասլան, պրս. Ջիւանշիր և հյ. Կորիւն անուններին։

—1. Աբաս (կամ Աբեա), աշակերտ Գրիգոր Լուսավորչի. երբ Լուսավորիչը շինեց Ոսկեանց և Սուքիասեանց վկայարանը, առաջին անգամ նրա վանահայր նշանակեց Աբասին (Դ դար).—Վկ. ոսկ. 64.—Ալիշ. Լիակ. վարք սրբ. Բ. 111, Ալիշան, Արշալ. քրիստ. 65։

— 2. Աբաս երէց Մամիկոնէից. ազգան. մասնակից եղավ Կաղանոսի նշխարաց գյուտին (560).—Կղկնտ. Բ. գ։

—3. Աբաս կաթողիկոս Աղուանից «552—596». Մեծիրանց գավառից էր. եպիսկոպոս Պարտավի. հայրապետական աթոռը փոխադրեց Չողայից Պարտավ։ Նրան է ուղղված Երուսաղեմի Յովհաննէս եպիսկոպոսի թուղթը, որով հրավիրում է նրան քաղկեդոնական դավանանքին։—Կղկնտ. Բ. դ, դ-ը. Գ. իգ. Կիր. ը. Յհ. երուս. 1. Հայապ. 384. Մխ. այրիվ. 24,64.—սեռ. Աբասու՝ Գիրք թղ. ժթ.—Աբասայ՝ Կղկնտ. Բ. ե-ը. Յհ. երուս. 1.—տես նաև Լ. Մելիքսեթ-բեկ, Վրաց աղբյուրները. Ա. 37. 52.—գրված է Ապպաս՝ Տաշեան Ցուց. 113բ։

—4. Աբաս վանեցի Փարպոյ (հիշված է «607 թ»). ուրիշների հետ ստորագրում է այն ձեռնարկին, որ Մօրիկ կայսեր իշխանության տակ գտնվող մի խումբ կրոնավորներ ներկայացրին Աբրահամ կաթողիկոսին՝ մերժելու համար Քաղկեդոնի դավա-

նանքը և համաձայնում միանալու հայ եկեղեցուն—Ուխտ. Բ. լէ. Գիրք Թղ. խ։

—5. Աբաս, հայր Գրիգորի Բարունայ՝ թարգմանչի Ս. Սեղբեստրոսի վարուց պատմութեան (Է դար).—ըստ Սարգիսեան, Եւագր. ներած. ձգ՝ տարբեր է Պատճառաց գրոց հեղինակի հայր՝ Աբասից (տես տակը № 15)։

—6. Աբաս, որդի Աշոտ Արծրունի մեծ իշխանի Վասպուրականի, որին գերել էր Բուղան՝ 852 թ.—Իբն Մասկավա, Յալաթ. Արաբ. մատ. 78,98։

—7. Աբաս որդի Շերանիկին, հիշված է իբրև վկա՝ Տաթևի 881 թվի կալվածագրում.—Օրբ. լթ։

—8. Աբաս Բագրատունի, երէց որդի Սմբատ խոստովանողի և եղբայր Աշոտ Ա թագավորի Բագրատունեաց. սպարապետ հայոց. հաղթեց Ջահապ պարսիկին. ապստամբեց իր եղբորորդի Սմբատ Ա թագավորի դեմ, բայց պարտվեց ու հնազանդվեց «890 թ».—Յհ. կթ. լ. Ասող. Բ. բ.—սեռ. Աբասայ՝ Յհ. կթ. իը, լ. Արծր. Գ. ի. Ջամչ. Բ 676—678, 705—710։

—9. Աբաս Ա. Թագավոր Բագրատունի «930—954 թ». Սմբատ Ա-ի որդին էր. հորը մահից հետո, իր եղբոր՝ Աշոտ Երկաթի հետ միացած, հալածեց Պարսիկներին և ապստամբ հայ իշխաններին։ Աշոտ Բ-ի թագավորության ժամանակ՝ ապստամբեց նրա դեմ։ Աշոտ Բ անորդի մեռնելու պատճառով, թագավորական իշխանությունը անցավ Աբասին։ Գահը դրավ Կարսում, ուր շինեց հռչակավոր մի եկեղեցի (այս եկեղեցին մնում է մինչև այժմ)։ Խաղաղության դաշն կապեց Ատրպատականի Աֆշին ոստիկանի, ինչպես նաև Դվինի արաբ ոստիկանի հետ։ Այսպիսով խաղաղությունը հաստատվեց Հայաստանում։ Հաղթեց Աբխազների Բեր թագավորին, որով և կասեցրեց Կովկասյան ցեղերի ասպատակությունները։—Յհ. կթ. (լ), ծթ. Մխ. անեց. Գ. Ասող. Գ. գ, է. Արծր. Դ. թ. Վրդ. խգ, խը, ծ. Մաղ. Թղ. ժթ. Յայսմ. մայիս 27. Սամ. անեց. 99. Մխ. այրիվ. 19,71. Սմբ. պատմ. 21. Մին. համք. 32, 110 (այս վերջին օրինակում գրված է Աբաս).—Աբազ՝ Վրաց աղբյուրները, Բ 97.—սեռ. Աբասայ՝ Յհ. կթ. ծթ, կ. Մխ. անեց. գ. Ասող. Գ. է, ը. Արծր. Դ. թ. Կիր. 48, 49. Վրդ. խէ. Ուռհ. 3, 86. Միխ. առ. իթ(=իը). Օրբ. ծա, (ծբ). Յայսմ. մայիս 27. Սմբ. պատմ. 21, Մին. համք. 33.—գրծ. Աբասաւ՝ Յհ. կթ. ծ, ծէ.—Այրարատ 547—8, Ազգապ. 1075. Ջամչ. Բ. 709—836, 1036։ Օրբ. ժմ. 11։

—10. **Աբաս Ա. Բագրատունի**, *թագավոր Կարուց. նստել է «984 —1029 թ». որդին էր Մուշեղի, ընտիր և բարեպաշտ մարդ. վերջացրեց իր երկրից գողությունն ու ավազակությունը. շինեց Շիրմի վանքը. 988 թվին գնաց օգնական Սմբատ Բ-ի՝ ընդդեմ Ափխազաց. նույնպես Դավթի կյուրապաղատի՝ ընդդեմ Տաճկաց. 998-ին գնաց օգնական Դավթի՝ ընդդեմ Ատրպատականի Մամլան ամիրայի. նույնպես 1000 թվին գնաց Հունաց Վասիլ կայսեր բանակը, երբ նա եկել էր ժառանգելու Տայոց երկիրը։ Ըստ այսմ սխալ է Ասողիկի տված այն թիվը, թե թագավորել է 6 տարի՝ սկսած 984 թվից։ (Իսկապես նստել է 45 տարի)։ Իրեն հաջորդեց որդին Գագիկ։—Ասող. Գ. ժէ, իը, լը, խգ. Վրդ. ծբ. Ուռհ. 10, 17. Սմբ. պտմ. 28,32.—սեռ. Աբասայ՝ Ասող. Գ. ժէ, խա, Լաստ. ժզ. Վրդ. ծբ, ծը (սխալմամբ դնում է որդի Գագիկ Ա-ի). Ուռհ. 150, 155, 183, 220. Մագ. թղ. խ. Սմբ. պտմ. 86։ Չամչ. 867—879, 911։*

— 11. **Աբաս Բագրատունի**, *որդի Գագիկ Ա Բագրատունեաց թագավորի. հիշված է իր մոր՝ Կատրամիդէ թագուհու 1010 թվի արձանագրության մեջ. «Զարմից իմ և որդոց՝ Սմպատա, Աբասա և Աշոտո» (Շիրակ 68).—Վրդ. ծբ շփոթում է Կարուց Աբաս Ա թագավորի հետ (տես վերը № 10). հիշում է նաև Դուրեան, Ազգ. պտմ. 296 Բագրատունեաց ազգաբանական տախտակում և էջ 370։ Որովհետև կենդանի էր 1010 թվին, ըստ վերի արձանագրության, իսկ 1020 թվին՝ Գագիկ Ա-ի մահվան ժամանակ իր երկու որդիների՝ Յովհաննէս Սմբատի և Աշոտի հետ չի հիշվում, ուստի Աբասը մեռած պիտի լինի 1010—1020 թվի ընթացքում։*

—12. **Աբաս ոմն**, *որի դուստրը կինն էր Յովհաննէս—Սմբատ թագավորի Բագրատունեաց. հիշված է նույն թագուհու 1038 թվի արձանագրության մեջ (Շիրակ 171)։*

— 13. **Աբաս Ա. թագավոր Կիւրիկեան**. *որդի Կյուրիկէի Բ և եղբայր Դավիթ Բ-ի՝ թագավորի Մածնաբերդի։ Վրաց ձեռքով վտարվելով Լոռիից, ձեռք բերին Մածնաբերդը. Աբաս Ա իշխեց Տաուշում 1089—1145 թ։ Այս թվին, պարտվելով Զօլի ամիրայից, դիմեց Վրաց և իրանունք ստացավ բնակելու իր երկրում, ուր մեռնելով քիչ հետո, թաղվեց Հաղբատում.—Կիր. 72, Վրդ. խը, կա. Սամ. անեց. 133.—սեռ. Աբասայ՝ Վրդ. կը, Հայապ. 385—386.—իր մասին ընդարձակ տես ՀԱ 1922, 369—371։— Չամչ. Գ. 186։ Օրբ. ժմ. 14։*

— 14. **Աբաս Բ թագավոր Կիւրիկեան** *(1185—1192). որդի*

Կիւրիկէի Գ. 12 տարեկան էր, երբ հայրը մեռավ և Աբասը քրոջը խնամակալության տակ՝ անցավ Մածնաբերդի թագավորության գլուխը։ Ամուսնացավ Զաքարէ և Իւանէ մեծ իշխանների քրոջ՝ Նանայի հետ (1190), բայց 2 տարի հետո, 19 տարեկան հասակում վաղամեռիկ եղավ։—Կիր. 72.—ընդարձակ տես ՀԱ 1922, 337—379, Զամչ. Գ. 186։ Օրբ. Ժմ. 19։

—15. Աբաս՝ հայր Գրիգոր Բաբունեոյ՝ հեղինակի Պատճառաց գրոց (ԺԲ դար).—Տաշեան, Ցուց. էջ 213.—տես վերը № 5։

—16. Աբաս Ջանկեցի. Սիւնեաց Ստեփաննոս Գ եպիսկոպոսի քեռայրը (ԺԲ դար).—Օրբ. կե։

—17. Աբաս, որդի՞ Արտաշրի, որ Օշականի «ռայիսն» էր 1211 թվին. հիշվում է միայն Բագնայրի մի արձանագրության մեջ՝ հետևյալ ձևով. «ՈԿ.. ես Արտաշիր Աւշականոյ ռայիս եսու գիմ գանձագին այգին, որ Աշոտանց. կոչի, ի Ս. Աստուածածինս և պարտին սպասաւորք սորա ի տարին 8 օր պատարագ. 3 Արտաշրին, 2 Աբասա, 2 Սսին, 1 Գնդուտին» (Շիրակ, էջ 120)։

—18. Աբաս Սևտեհանց, հայր Կուկի, որի կինն էր Վանենի՝ դուստր Ջաջուռի Խաղբակեանց, հիշված 1222—36 թվերին.—Թորոս Աղբար, Բ. 272։

—19. Աբաս եպիսկոպոս, առաջնորդ Խծկոնից վանքի՝ 1233—1240. հիշված է երկու արձանագրության մեջ, առաջինը 1233 թվից և երկրորդը 1240 թվից (տես Շիրակ, էջ 128—130 և Գ. արք. Յովսեփեան, Նիւթեր և ուս. Ա 26—27)։

— 20. Աբաս կամ Աբրահամ, եպիսկոպոս Անիի. հիշված է 1240 թվին (Շիրակ 96)։

— 21. Աբաս քահանա, գրիչ. օրինակել է Ներսէս Լամբրոնացու Մեկնութիւն Առակացն Սողոմոնի՝ ՌՃԻԳ=1674 թ.—Ձեռ. կարին. 145։

*ԱԲԳԱՐ, ար. < ասոր. ܐܒܓܪ Abgar անունից (Հիւբշ. 288), որ ըստ Կարլիէր, Աբգարու գրոյցը, էջ 64՝ ասոր. abgārā «կաղ» (Brockelmann, Lex. syr. էջ 1բ) բառն է. հմմտ. լտ. Claudius ար. և Claudia իգ. անունները, որոնք նույնպես նշանակում են «կաղ»։ Աբգար անունն էին կրում Օսրոենէ երկրի կամ Ուռհայաստանի բոլոր թագավորները, որոնց տոհմը տևեց Ն. Ք. 136 թվից մինչև 217։ Անտոնինոս Կարակալլա կայսրը այս թվին գրավեց Եդեսիան և նույն թագավորության վերջ տվեց։ Խորենացին քմահաճ կերպով մեկնում է այս բառը «աւագ այր». «Կոչէր աւագ այր, վասն առաւել հեզութեանն և իմաստութեանն, որում

յետոյ և տիքն. զայս ոչ կարելով ուղղախօսել Յունաց և Ասորւոց կոչեցին Աբգարոս» (Խոր. Բ. իգ)։ Իսկ թե բառը ընիկ հայերեն է և նախապես աւագ այր ձեն է ունեցել, որ ասորիները և հույները աղավաղելով դարձրել են Աբգար։ Նույնը կրկնում է նաև Վրդ. ժե. «Որդի նորա Աւագայրն, զոր Ասորիք Աբգար կոչեն»։ Պատմական նմանություն ունի արաբ. عبقري 'abqarī «կատարյալ մարդ, ցեղի մեջ ամենից փառավոր և ազդեցիկ մարդը» (Կամուս, Բ. 20)։ Պատմության մեջ հայտնի է Աբգար Թ թագավոր Եդեսիայի, որ 207 թվին քրիստոնյա է դարձել (տես Եւս. պատմ. էջ 59—66)։ Այս անձն է որ Խորենացին հայացնելով դարձրել է Աբգար թագավոր Հայոց։ Այսպեսով Աբգար անունը մտավ մեր մեջ, բայց պատմության ընթացքում գործածական չէ եղած։ Վերջին դարերում կա մի քանի անձ Աբգար անունով. այժմ էլ գործածական է։

—1. Աբգար թագաւոր Հայոց, Ն.Ք. 1—33 (ըստ Զամչեանի). որդի Արշամի. նստում էր Միջագետքի Մծբին քաղաքում և հարկատու էր Հռովմայեցոց Օգոստոս կայսեր։ Հրեից Հերովդես թագավորը թշնամացավ Աբգարի հետ և բանակ ուղարկեց նրա դեմ։ Աբգարը չարաչար հաղթեց նրանց և զորավարին էլ սպանեց Բուզնան դաշտում։ Նույն միջոցին Հերովդեսը մեռավ և պատերազմը վերջ գտավ։ Նախատանք տեսնելով Հռովմայեցիներից, Աբգարը որոշեց ապստամբել նրանց դեմ. ուստի աթոռը Մծբինից փոխադրեց Եդեսիա, որ ամուր պարիսպներով պատեց։ Ապստամբության հաջողության համար մտածեց դաշն կապել Պարթևաց հետ։ Նույն միջոցին Պարթևաց Արշավիր թագավորը մեռավ և նրա երեք որդիների միջև գահակալության կռիվ սկսվեց։ Աբգարը գնաց Պարսկաստան, գահակալության գործը կարգադրեց և խաղաղության հաստատեց։ Բայց ինքն էլ ծանր հիվանդացած՝ իր երկիրը դարձավ։ Հռովմայեցիք կասկածեցին Աբգարի մտադրության վրա, ուստի նա ստիպվեց դեսպաններ ուղարկել Հռովմայեցոց Մարինոս վերակացուին, արդարացնելու համար իրեն։ Դեսպանները Երուսաղեմում պատահեցին Քրիստոսին և նրա հրաշագործությունները պատմեցին Աբգարին։ Աբգարը հավատաց, որ նա Աստված է և իր անբուժելի հիվանդությունը բժշկելու համար՝ իր Անանէ սուրհանդակի ձեռքով թղթակցություն մտավ նրա հետ և հրավիրեց Եդեսիա։ Քրիստոսի մահվանից հետո՝ Թադէոս առաքյալը եկավ Հայաստան, մկրտեց Աբգարին, որ եղավ այսպեսով աշխարհիս առաջին

քրիստոնյա թագավորը։ Ըստ Վարդանի՝ Աբգարը և Թադէոսը բերել տվին Ս. Գիրքը և հրեաների ձեռքով եբրայեցերենից ասորերենի թարգմանել տվին (տես Մառ, Ամսագ. ուղև. էջ 16)։ Այս մասին ավելի ընդարձակ տես Ձեռ. Հալէպի, Ս. 343 ա։ Քրիստոնյա դառնալուց հետո՝ Աբգարը նամակներ գրեց Հռովմայեցոց Տիբերիոս կայսեր, Պարթևաց Արտաշիր թագավորին և Ասորոց Ներսեհ թագավորին և հորդորեց նրանց ընդունել քրիստոնեությունը։ Այս նամակների պատասխանը չառաքած՝ մեռավ։—(Ըստ քննական պատմության, Աբգարի այս զրույցը և թղթակցությունը ամենևին պատմական հիմք չունին։ Դա Աբգար Թ-ի քրիստոնեության դարձի պատմությունն է, որ Եդեսիայի ասորիները փոխադրեցին Ա. դար և Քրիստոսի ժամանակակից դարձրին։ Այս տեղափոխության նպատակն էր Ասորական եկեղեցու արժանիքը բարձրացնել և Արևմուտքի առաջ գերիշխան ցույց տալ։ Զրույցը ձևացավ Դ դարի կեսերին և նրա հիման վրա կազմվեց Աբգարի առաջին պատմությունը, որ վերագրեցին Աբգարի քարտուղար Լաբուբնային։ Լաբուբնայի այս գրվածքը տեսել է Եւսեբիոս հույն պատմիչը Դ դարում և նրանից քաղվածքներ արել։ Գրվածքը նոր հավելումներով ճոխացավ Դ դարի կեսից հետո և ձևացավ Լաբուբնայի ասորերեն երկրորդ խմբագրությունը, որ հայերենի թարգմանվեց Ե դարի առաջին կեսին, ինչպես ցույց է տալիս ընտիր ոսկեդարյան լեզուն։ Հրատարակված է երկու անգամ. Վենետիկ 1868 «Լաբուբնեայ Թուղթ Աբգարու» վերնագրով և Երուսաղեմ 1868 «Ղերուբնա Եդեսացի» վերնագրով։ Խորենացին օգտագործել է թե այս Լաբուբնայի հայ թարգմանությունը և թե Եւսեբիոսի Եկեղեցական պատմությունը։ Բայց այս երկուսից ոչ մեկի մեջ մի բառ անգամ չկա այն մասին, թե Աբգարը հայ կամ հայոց թագավոր էր։ Սրանից հետևում է թե կամ Խորենացին ինքն է հայացրել Աբգարին և կամ կար հայոց մեջ այդպիսի մի ավանդություն, որի վրա հորինված է «Վկայաբանություն Սրբոյն Թադէի և Սանդխտոյ կուսին», որ Խորենացու Պատմությունից ավելի հին է։ Հիշենք նաև այն, որ հայոց մեջ այն կարծիքը կար թե Եդեսիան Հայոց ձեռքով է շինված. տես այս մասին Բուզ. Ե. լը։ Այս բոլորի մասին մանրամասն քննություն ունի Carrière, La légende d'Abgar, Paris 1895, թարգմ. Աբգարու զրույցը, Վիեննա 1897)։—Խոր. Բ. ժ. իգ, իթ, լա, լգ, լե, Սեբ. բ. ԵՏ. կթ. դ, է. Շիր. քրոն. 37. Նանայ 277. Մեսր. եր. 31. Վկ. թադ. 12. Պատմ.

թագ. 59. Ուխտ. Ա. լ, լա, լգ, լե, լզ, լը—խ, ծդ. Գիրք Թղ. ղ, ղէ. Անկ. գիրք նոր կտ. 375, 376. Ասող. Ա. ե. Մագ. Թղ. ժթ, հ. Արծր. Ա. գ. Շնորհ. վիպ. 238, 280. Վրդ. ժե. ժզ. Պտրգ. 649. Երզն. մոթ. 226. Անկ. գիրք առաք. 462, 468. Յայսմ. օգոստ. 16, դեկտ. 21, 23, 31. Տարօն. Բ. § 13. Մխ. անեց. գ, թ, ժ, ժբ—ժգ, ժը—ի. Տաթև. ձմ. ղէ. հարց. 549. Առաք. լծ. սահմ. 472. Վրք և վկ. Բ. 392. Միխ. աս. ա, է, իթ (=իը). Գր. եր. 373. Վրդն. սղ. բ. Մխ. այրիվ. 18, 57, 59. Սամ. անեց. 50, 52. Զքր. սարկ. Ա. 2, Գ. 3. Զքր. եպս. 279. Մին. համդ. 18. Ջուղ. 38, 158, Պարականոն շար. 19, 38. Հաւաք. 7, 8, 23.—Աբքար՝ Վրաց աղբյուրները Բ. 99.—սեռ. Աբգարու՝ Խոր. Բ. ժ, իդ, իզ—լէ, կը. պտմ. հռիփ. 299, Պարականոն շար. 19. Սեբ. բ. Ուխտ. Ա. լա—խա. Անկ. գիրք նոր կտ. 278. Վրթ. քերթ. պտկ. 301. Յհ. կթ. գ. Վկ. Թագ. 12. Պտմ. թագ. 60. Վկ. բարթ. 26. Արծր. Ա. գ, է. Գիրք Թղ. ղը. Տաթև. ամ. 466. հարց. 555. Կիր. իը. Վրդ. ժզ, ժէ, Առաք. 426. Միխ. աս. ա, ե, է, իթ (=իը), Թղթ. դաշ. 28. Ծշ. 745. Պտրգ. 547, 564, 691. Վրք. և վկ. Ա. 209. Այրիվ. 7ա. Մխ. անեց. գ, ե, ը—ժ, ժբ—ժը, ի. Ասող. Ա. ե, Գ. իա. Շնորհ. վիպ. 234, 243, 287, 310. Մխ. դտ. նխդր. է (ըստ մի ձեռագրի). Մ. մաշտ. 22ա. Եփր. համաբ. 259. Ժմ. 948. Երզն. մոթ. 594. Անկ. գիրք առաք. 353, 363. Յայսմ. օգոստ. 16, 27, դեկտ. 21, 23, 31, յնվ. 6. Լմբ. յայտ. կէ. Հեթ. պտմ. ժբ. Տարօն. Բ § 13. Սամ. անեց. 52, 54. Մին. համդ. 19. Առաք. լծ. սահմ. 472. Հաւաք. 10, 34. Ձեռ. Վասպ. 738 (անկար պատմուճանի մասին).—Աբգարայ՝ Միխ. աս. գ.—բցռ. յԱբգարէ՝ Խոր. լգ, լե. Յայսմ. դեկտ. 31.—յԱբգարու! (բացառական հոլով)՝ Մխ. անեց. թ, ժթ. Ողբ եդես. 80. Վրդն. սղ. իա.—գործ. Աբգարու՝ Ոսկ. գծ. 35.—Տուն Աբգարու (Եդեսիա) Ուռհ. 242, 271, 315, 327.—հունական ձևերով՝ Աբգարիոս՝ Խոր. Բ. իթ, լ, լգ. Մխ. անեց. ժբ. Մխ. դտ. Բ. ա. Միխ. աս. ե, իդ (=իգ), իթ (=իը). Ժմ. 599. Երզն. մոթ. 518. Յայսմ. դեկտ. 31. Վրդն. սղ. ճլէ. Սրճ. խորհ. 377.—Աբգարեա՝ Խոր. Բ. իզ.—Աբգարոս՝ Ուխտ. Ա. լբ.—Զարբ. Թրգմ. 674, Աւգերեան, Լիակ. վրք. սրբ. Ժ. 145—157, Պալճեան, Պատմ. կաթ. վարդ. էջ 3, Ազգապ. 19 շար. Զամչ. Ա. 276—294, Տաշեան Ցուց. 659ա։

—2. Աբգար, մին է հրեա Սողոմոնի 7 եղբայրներից, որոնք Փղշտացոց երկրից գաղթելով եկան Եկեղեաց գավառը և մկրտվեցին Հռաքել թագուհուց։ Նրանցից չորսը գնացին Վրաստան և

երեքը մնացին Հայաստան։ Սրանցից են ծագել հայ և վրացի Բագրատունիները (տես Վրաց աղբյուրները, Ա. 136—137, ըստ Վրաց պատմիչ Սմբատի)։—Բնագրում գրված է Աբգավար, իսկ հտ. Բ. 105՝ Ափքար։

—3. Աբգար եպիսկոպոս Գլակայ վանուց. ընդունեց և խնամում ու քաջալերում էր հայ փախստականներին՝ Լենկթիմուրի արշավանքի ժամանակ «1389 թ».—Մեծոփ. 22, Աղգապ. 1973։

—4. Աբգար պարոն, Բաղէշի Պոռ գյուղի տանուտերն էր. հայտնի մեծատուն. Մկրտիչ Նաղաշի կրտսեր եղբայրն է (ԺԴ դար).—տես Արրտ. 1898 յնվ. Աղգապ. 2065. Հայյապ. 571։

—5. Աբգար, ազգական տանուտեր բրուտ Ստեփաննոսի, որ Վանում գրել տվեց մի Ավետարան, 1435 թ.—Ջեռ. Վասպ. 370։

—6. Աբգար, որդի Էգիլշահի, որ Կտուց անապատում գրել տվեց մի Ավետարան, 1475 թ.—Ջեռ. Վասպ. 472։

—7. Աբգար, որդի Յովհաննէս քահանայի, որ իր եղբայր տանուտեր Արապշահի հետ մի Ավետարան գրել տվեց Աղբակ գավառի Էրընկանի գյուղում, 1490 թ.—Ջեռ. Վասպ. 511։

—8. Աբգար Եւդոկիացի, որդի Ամիրպէկի. Միքայէլ Սեբաստացի կաթուղիկոսի կողմից ուղարկվեց Հռոմ, Պիոս Դ պապից օգնություն խնդրելու և միևնույն ժամանակ տպագրության գործին հետևելու համար։ Վենետիկում տպագրեց Սաղմոսը «1565 թ», որ մինչև վերջերս առաջին հայ տպագրությունն էր համարվում։ Վախենալով Տաճիկներից, որոնք լուր էին տացել թե Աբգարը Եւրոպա է գնացել քաղաքական նպատակով, այլ ևս ետ չդարձավ և մնաց Վենետիկ։ Բայց տեսնելով որ պապը նրա տպագրելիք գրքերի մեջ դավանաբանական փոփոխություններ է ուզում մտցնել, թողեց և իր տպարանը փոխադրեց Պոլիս։ Պոլսում 3 տարի գործելուց և զանազան գրքեր տպելուց հետո, գնաց Էջմիածին «1569 թ»։ Այս տպագրությանց մեջ հիշատակելի է Տոմարականությունը։—Աղգապ. 2250, 2266, Ալիշան, Յուշիկք Ա. 519—537, Զամչ. Գ 519—524, Լէօ, Հայկական Տպագրութիւն, Ա. 46—60։

— 9. Աբգար սարկաւագ, տացել է մի Շարակնոց, 1610 թվից հետո.—Տաշեան, Ցուցակ, էջ 506 բ։

*ԱԲԴԱԼ, ար. <թրք. ابدال abdal «անհոգ, պարզամիտ ճըգնավոր մարդ». մի անգամ պատահում է ԺԵ դարում (այն էլ երեւ թուրք չէ). բայց ունինք Աբդալեան ազգանունը (Սեբաստիա), որ կարող է նաև լինել աբդալ ածականից, իբր մականուն և ոչ թե ազգանուն։

—Աբդալ, հայր Բուբաքրի, որ իբր վկա հիշվում է, Արզնկան 1449 թ. —Manus. brit. mus. 95 բ։

ԱԲԴԻՆ. ար. անշուշտ արաբ. عبد 'abd «ծառայ» բառից. հիշված է Ապտին ձևով 1517 թ. (Ձեռ. Վեննա. Բ. 481—2՝ երկու անձ) և 1650 թ. (Թորոս աղբար, Բ. 444)։

* ԱԲԴԻՇՈՅ, ար. < ասոր. عبديشوع 'Awdīšō' անունից, որ բուն նշանակում է «ծառայ Յիսուսի» (Հիւբշ. 289). հմմտ. Աբդիշոյ եպիսկոպոս Խառխասայ և Աբդիշոյ պարսիկ նահատակ (Յայսմ.)։

—1. Աբդիշոյ. այսպես է կոչված Բրքիշոյ կաթողիկոսը՝ ըստ Ասող. Բ. ա. (տես Բրքիշոյ)։

—2. Աբդիշոյ եպիսկոպոս Սասնոյ. ներկա էր Դվինի ժողովին, որ գումարվեց Հայոց Թվականի հաստատության համար. Մովսէս Բ կաթողիկոսը ձեռնադրեց նրան եպիսկոպոս (Վրդ. լ)։ Այլուստ գիտենք, որ այս անձը ասորի է և իր հասարակության կողմից ուղարկված էր Հայոց Ներսէս Բ կաթողիկոսի մոտ՝ եպիսկոպոս ձեռնադրվելու համար։ Այս մասին հմմտ. Ասող. Բ. բ, մանավանդ Գիրք Թղ. էջ 52—69. տես նաև Ջամին. Պատմ. եկեղ. Ա. 99—101, Վրաց աղբյուրները, Ա. 36, 37, 40, 48, 78, 107 (գրված է Աբդիսո կամ Աբդիբո)։

* ԱԲԴԻՈՒ, ար. < եբր. عبديه 'Obadiā կամ عبديهو 'Obadyāhu անունից, որից նաև ասոր. عبدو 'Abdū (Հիւբշ. 289), հուն. Ὀβδιού կամ Ἀβδειού, լտ. Obadia, ֆրանս. Abdias են։ Եբրայական բառը կազմված է عبد 'abd «ծառայել» և يه Yāh «Աստված» բառերից և նշանակում է բուն «ծառայ Աստուծոյ» (Gesenius 557 բ)։ Այս անունով նշանավոր է Աբդիա՝ փոքր մարգարեներից չորրորդը. ունինք նաև Աբդիու նահատակ ասորի և Աբդիու եպիսկոպոս պարսիկ։

—1. Աբդիու, իշխան Եդեսիոյ. հիվանդ էր պատագրոս ցավով և Թադէոս առաքյալի ձեռքով բժշկվեց.—Խոր. Բ. լգ. Մխ. անեց. ժե. Յայսմ. դեկտ. 23.—գրված Աբտիու՝ Ուխտ. Ա. լե։—Իր մասին մի գրույց տես Տաշեան, Ցուց. էջ 659 ա։—Իբրև ասորի՝ տես Լաբուբ. 7 են։

—2. Աբդիու Վայոցձորեցի, մասնակցեց Եղեգեաց վկայարանի հիմնարկության հանդեսին, որի հանդիսադիրներն էին Գիւտ կաթողիկոս և Անանիա եպիսկոպոս Սիւնեաց «468 թ».—Օրբ. ժը. Աղգապ. 424, Սիսական 130։

**ԱԲԴԻՍԱՐԷՍ.** *ավանդված է հունական* ’Αβδισσάρης *ձևով. իրանական անուն է, ծագումն անհայտ։*

— Աբդիսարէս, *թագավոր Հայոց Ծոփաց, որդի և հաջորդ Արշամի, հայր Քսերքսեսի. ժամանակակից Սելևկյանց (220 թ.)։ Կա այս թագավորի պատկերը—Լեո, Ա. 379,* Justi, Iran. Namenb. *1 բ։*

**ԱԲԴԼԱ, ար. <արաբ.* عبدالله ’Abd-ullah, *որ նշանակում է «ծառայ Աստուծոյ» և համապատասխանում է պրս.* خدابنده Xudābanda *և հունաց* Θεόδουλος>*լատ.* Theodulus *անուններին։ Շատ սովորական է մինչև այժմ էլ արաբների մոտ. հիշենք հատկապես* Աբդուլլահ՝ *Մուհամմեդի հայրը և* Աբդլայ՝ *առաջին արաբ ոստիկանը, որ 694 թվին արաբական բանակով եկավ Հայաստան և իր բնակությունը հաստատեց Դվին մայրաքաղաքում։ Ավելի ուշ նա ամիրապետ դարձավ։ Հայոց մեջ այս անունը գործածված կա ԺԵ դարից սկսած մինչև ԺԷ դարի վերջը։ Այժմ բոլորովին խափանված է. բայց Պոլսում կա* Ապտուլլահեան *ազգանունը։ Սովորական ձևն է* Աբդլա, *արևմտյան տառադարձությամբ՝* Ապտլա, *կրճատ ձևով՝* Աբդուլ *(կամ* Ապտուլ), Ապտօ, Ապտէ, *փաղաքշական՝* Ապտլիկ, *քրդական ձևով՝* Ադլա:

— *1.* Աբդլայ, *դեսպան, որին Գուրգէն Արծրունին ուղարկեց Բուղայի զորավարների մոտ (Թ դար).—հայ է.—Արծր. Գ. դ։*

— *2.* Ապտլայ, *ամուսին Ղըլըմխաթուն տիկնոջ, որ Կիրակոս գրչին գրել տվեց մի Յայսմաւուրք և նվիրեց Բաղէշի եկեղեցուն, 1438 թվին.—Նոտարք 118։*

— *3.* Ապտէ *(որոշիչ հոդով՝* զԱպտէն*), հայր Խասսայի, որ ստացավ մի հին Աւետարան, 1441 թ.—*Manus. brit. mus. *3 բ։*

— *4.* Աբդուլ, *ուսթա (վարպետ) Ոստանցի, եղբայր Ոստան քաղաքի տանուտեր՝ խոջա Աբդլաղիզի, որ ազատեց գերի ընկած մի Ճաշոց և նվիրեց Ոստանի եկեղեցուն, 1459 թ.—Նոտարք, էջ 194։*

—*5.* Ապտլա, *որդի Ֆարաճի, որ Հալէպում ստացավ մի Աւետարան, 1478 թ.—Ձեռ. Հալէպի, Ա. 97 ա (տպված է վրիպակով* Ապուլան, *շփոթելով բոլորգիր* ու՝ տ-*ի հետ. անունների ցանկում ոչ մի ձևով չէ նշանակված)։*

— *6.* Ապտալա *(երեք անձ) 1517 թ. (Ձեռ. Վեննա. Բ. 481—2)։*

— *7.* Ապտլիկ, *եղբայր Յոհաննէս սարկավագի, որ Տիգրանա-*

*կերտում, ինչպես գրված մի ճառընտիր և նորոգել տվեց 1581 թ. —Թորոս Աղբար, Բ. 430։*

— *Ավելի ուշ եղած հիշատակություններ են՝* Ապտուլ *1609 թ. (Ձեռ. Վասպ. 834),* Ապտըլյա *(հոդով՝* Ապտըլէճ*) 1615 թ. (*Manus. brit. mus. *297 բ),* Ապտուլ *1621 թ. (Ձեռ. Վենետ. Բ 1138),* Ապտուլա *1627 թ. (Ձեռ. Թեհր.=ՀԱ 1935, 395),* Ապտուլ *1634 թ. (Թորոս Աղբար, Բ 430),* Ապտոլա *1650 թ. (Ձեռ. Հալէպի, Ա. 327 ա),* Ապտլայ *1688 թ. (Սիւրմէեան, Պատմ. Հալէպի ազգ. գերեզմ. 30 բ),* Ապտըլյայ քահանայ *1688 թ. (Ձեռ. Հալէպի, Ա. 239 բ),* Ապտօ *1696 թ. (Սիւրմէեան, Պատմ. Հալէպի ազգ. գերեզմ. 31 բ)։*

— *8.* Ապտուլյայ, *տաղասաց հետին դարերից. ունի Աստվածածնի վրա մի տաղ (Տաշեան, Ցուց. 892 բ)։*

**ԱԲԴԼԱԴԻՄ, ար. <արաբ.* عبدالعظيم ‘Abd-ul-‘azīm, *որ բուն նշանակում է «ծառայ Մեծին (Աստուծոյ)»։ Անսովոր անուն է։ Մի անգամ գտնում եմ գործածված Հալէպում, 1681 թ.* Ապտըլատիմ *ձևով (Ձեռ. Հալէպի, Ա. 186 բ), ուր Տ համապատասխանում է արաբ.* ظ *շ արտասովոր հնչումին։*

**ԱԲԴԼԱԶԻԶ, ար. <արաբ. ձևն է* ‘Abd-ul-‘azīz, *որ բուն նշանակում է «ծառայ Նուիրականին (Աստուծոյ)»։ Մեր պատմության մեջ հայտնի է արաբացի Աբդլազիզ անունով 12 տարեկան մի մանուկ, որ բնակվում էր Դվինում։ Երբ արաբները պաշարեցին Դվինը, բայց չէին կարողանում գրավել, այդ մանուկը գիշերանց պարսպի նեղ անցքերից վերև մագլցեց և պահակներին բղավեց թե քաղաքը գրավված է։ Պահակները փախան և արաբները գրավեցին Դվինը։ Տարիներ հետո, այդ Աբդլազիզը Հայաստանի ոստիկան դարձավ և շատ բարյացակամ գտնվեց դեպի ժողովուրդը։ Նա նորոգեց և ավելի ամրացրեց Դվինի պարիսպները, ասելով թե ինքն է եղել նրանց կործանման պատճառը, ինքն էլ շինում է (Զամչ. Բ. 381, 402)։—Նոր ժամանակներից հայտնի է այս անունով Օսմանեան սուլթան Աբդուլազիզը, որ գահակալեց 1861 թ. և պալատական հեղափոխության ժամանակ սպանվեց 1876 թ.։*

— *1.* Աբդլազիզ, *որդի Ջաքարի, տանուտեր Ոստան քաղաքի, օգնում էր աղքատներին, շինեց մի եկեղեցի, փրկանքով ազատեց գերի ընկած մի ճաշոց, որ և նվիրեց Ոստանի եկեղեցուն, 1459 թ.—Նոտարք 193—5։*

— *2.* Աբդլազիզ, *հիշված է ԺԶ դարում.—Ձեռ. Դաշեան, Ա. 12 բ։*

— 3. Աբդլազիզ, որդի Հալեպցի վարպետ Սուլեյմանի (1654 թ.), որ ապա քահանա դարձավ Սողոմոն անունով (1661 թ.).—Ձեռ. Հալեպի, Ա. 75 բ, 127 բ։

*ԱԲԴԼԱՀԱԴ, ար. <արաբ. عبدالاحد ‘Abd-ul-aḥad, որ նշանակում է «ծառայ միոյն (Աստուծոյ)»։ Անսովոր անուն է։ Հայտնի է մեզ միայն երեք անձ, մին Եղեսացի (ԺԶ դարից) և երկուսը Հալեպցի (ԺԷ դարից)։

—1. Ապտլհաք, Եղեսացի ոմն, հիշված 1564 թ.—Bodleian 13։

— 2. Ապտլահատ, հայր Գրիգոր սարկավագի, Մուրատ գրչին գրել տվեց մի Ավետարան և նվիրեց Հալեպի եկեղեցուն, 1652 թ.—Ձեռ. Հալեպի, Ա. 85 բ։

— 3. Ապտլհատ, հայր մահտեսի Յակոբի, որ նորոգել տվեց 1636 թվին գրված մի հին Ճաշոց և նվիրեց Հալեպի եկեղեցուն (թվականն անհայտ).—Ձեռ. Հալեպի, Ա. 238 ա։

*ԱԲԴԼՄՍԵՀ, ար.<ասոր. عبدا ‘abdā «ծառայ»+مشيحا mšīḥā «Մեսիա» բառերից, անշուշտ գավառական արտասանությամբ, այնպես որ գրեթե համապատասխանում է արաբ. عبدالمسيح ‘abd-ul-Masīḥ ձևին, որ նշանակում է «ծառայ Մեսիայի (Յիսուսի)»։ Այս անունով հայտնի է նշանավոր հրեա մի նահատակ, որի վկայաբանության թարգմանությունը ունինք 873 թվից։ Անցել է նաև Յայսմաւուրքի մեջ (տես Ակինեան, Լիակ. վրք. սրբոց, Ե. 92—120)։—Աբդլմսեհի առաջին անունն էր Ասեր, որդի Ղևիի. ազգով և կրոնով հրեա, Պարսկաստանի Շիգար քաղաքից։ Ասերը 12 տարեկան երախա էր և իր հոր ոչխարներն էր արածացնում։ Որովհետև հրեա էր, ոչ քրիստոնյա երախաներն էին ընդունում նրան ճաշի ժամանակ, և ոչ էլ պարսիկ կրակապաշտ երախաները։ Քրիստոնյա երախաները համաձայնվում են ընդունել նրան, եթե մկրտվի։ Ասերը ընդունում է. և դաշտի ջրհորում, երախաները խաղով մկրտում են նրան, ասելով. «Մկրտի ծառայս Քրիստոսի, որ է Աբդ-էլ-Մէսիհ»։ Այնուհետև նորակնունք Աբդլմսեհը կատարելապես փարում է քրիստոնեության, խորշում հրեությունից, մայրը շփոթվում է, հայրը կատաղում, դանակը ձեռքին որդուն ետևից վազում և դաշտի մեջին սպանում նրան (մոտ «553 թ»)։ Որովհետև գրված է թե վաճառականները փոխադրեցին նրա մարմինը Շիգարի դաշտից և որովհետև հայ եկեղեցին է միայն տոնում նրան, ուստի պատշաճ կլինի ասել, որ նրա անունը հայ վաճառականները ծանոթացրին (Ազգապ. 543)։ Նրա անունով է դարձյալ Աբդլմսեհի վանքը՝ Խարբերդի դաշտում (տես

Տաշեան, Ցուց. էջ 1040 բ)։ Հմմտ. դարձյալ Գր. Նար. մատ. 385 «զեբրայեցի ընտրեալ պատանին զմարտիրոսն Աբդլմըսեհ»։ Համառոտյալ ձևն է Մսեհ, որ գործածական էր հատկապես Հընդկահայոց մեջ։ Աբդլմսեհ անունը գործածված է մեր մեջ Ե դարից մինչև ԺԵ դարի կեսը։ Այնուհետև կա երկու անգամ 1517 թ. (Ձեռ. Վենետ. Բ 481—2), մի անգամ Աբտուլմուսեհ ձևով 1640 թ. (Տաշեան, Ցուց. 703 բ) և ԺԸ դարում (Bodleian 167)։ Այժմ չկա։

— 1. Աբդլմսեհ, վաներէց էջմիածնի կամ Հռիփսիմէի. սրա օրով էր որ Ս. Սահակը նորոգեց Հռիփսիմէի և Գայիանէի տաճարները (Ե դար).—սեռ. Աբդլահի (պետք է ուղղել Աբդլմսեհի)՝ Եղն. երէց 268, Այրարատ 237։

— 2. Աբդլմսեհ Արծրունի, նահատակվեց մանուկ հասակում. իր բազուկը իբրև մասունք պահվում էր Աղթամարում (ԺԱ դար).—սեռ. Աբդլմսեհի՝ Արծր. Դ. ժբ։ (Արծրունին ասում է «և զբազուկ սուրբ մարտիրոսին տղային Աբդլմսեհի, ազգակցի և անուանակցի պատուկուրապաղատին», որ բառացի կրկնում է Հաւաք. 31։ Թեև վստահ ենք, որ այս «տղան» հրեա Աբդլմսեհն է, բայց «ազգակցի» ասելուց կարելի է ենթադրել, որ թերևս տարբեր անձ է)։

— 3. Աբդլմսեհ Արծրունի, որդի նահատակ Թոռնիկի, պատուկուրապաղատ. ամուսինն էր Մարիամ՝ դուստր Գրիգոր տուկի և թոռն Ալուզի. հայր Թոռնիկ իշխանի։ Սենեքերիմ Արծրունի թագավորի գաղթից (1021) հետո՝ նստավ Ամիւկ բերդում և իշխում էր շրջակայքի վրա։ Գրված է նաև Աբդլմսեհ՝ Արծր. Դ. ժբ։—Հաւաք. 35։

— 4. Աբդլմսեհ, իշխան Արծրունեաց, որդի Թոռնիկի Գ., թոռան թոռ նախորդ Աբդլմսեհի (№ 3) և հայր Դավիթ կաթուղիկոսի Աղթամարայ. մեռել է 1121 թ.—Արծր. Դ. ժբ.—սեռ. Աբդլմսեհի, բց. Աբդլմսեհե՝ անդ։—Հաւաք. 37, 38, 41 ? և 59 ունի Աբդլմսեհ, Աբդլմսեա, Աբդուլմուսեհ, սեռ. Աբդմսեհեան ձևերով և շփոթում է № 3-ի հետ։

—5. Աբդլմսեհ կրոնական, մի տուն է նվիրել Խծկոնից վանքին՝ 1213 թ. արձանագրությունը տես Այրարատ, էջ 113։

— 6. Աբդլմսեհ, որդի խոջա Մուրատբախշի, 1327 թ.—Ձեռ. Ագուլ. (Արրտ. 1911, 461)։

— 7. Աբդուլմսեխ, որդի տանուտեր Զատար Մկրտիչի, հիշված 1327 թ.—Ձեռ. Ագուլ. (Արրտ. 1911, 460—461)։

— 8. Աբդըլմսեխ, սարկավագ, թուղթ էր կոկում Կարապետ

գրչի համար՝ արտագրելու Աւետարանը, 1357 թ.—Ձեռ. Վասպ. 214։

— 9. Ապտլմսեհ քահանայ, որդի Ասիլի, գրել տվեց Թորոս գրչին մի Աւետարան՝ Ամիթ քաղաքում, 1373 թ.—Ձեռ. Վենետ. Ա. 617—8։

—10. Աբդլմսեխ, որդի Կարապետ քահանայի գրչի Վանեցւոյ. մանուկ հասակից, մայրը մեռնելով՝ որբ էր մնացել (1435 թ.), ինքն էլ մեռավ պատանի հասակում, 1451 թ.—Ձեռ. Վասպ. 369 և 412։

—11. Աբդլմսեհ, Թերևս եղբայր Զաքարիա Գ (1434—1464) կաթողիկոսի Աղթամարի. անորոշաբար հիշված է Հաւաք. 41։

—12. Աբդլմսեհ, սարկավագ Երուսաղեմի Եսայի արքեպիսկոպոսի. ուղարկվեց իբրև նվիրակ՝ Կոստանդին Զ Վահկացի կաթողիկոսի, և այստեղից էլ Ամդայ եպիսկոպոս Մկրտիչ Նաղաշի մոտ, գրել տալու համար Հովմի Եւգինէոս պապի պատասխանը «1434 թ».—տես. Աբդլմսեհի՝ Նշխ. լռ. 423.—Ազգապ. 2077, Չամչ. Գ. 474։

— 13. Աբդլմսեխ, ազգական Վանեցի տանուտեր բրուտ Ստեփաննոսի, որ գրել տվեց մի Աւետարան, 1435 թ.—Ձեռ. Վասպ. 370։

— 14. Աբդլմսեհ, որդի տանուտեր Խաչատուրի, որ գրել տվեց մի Աւետարան, 1453 թ.—Ձեռ. Վասպ. 419—420։

— 15. Աբդլմսեհ, եղբայր Վարդան կրոնավորի, որ գրել տվեց մի Աւետարան, 1456 թ.—Ձեռ. Վասպ. 425։

*ԱԲԴԼՆՈՒՐ, ար. Հարաբ. عبدالنور ‘Abd-ul-nūr, որ նշանակում է «որդի Լուսոյ»։ Անսովոր անուն է նույն իսկ մահմեդականների մոտ։ Մեր մեջ մի անգամ գտնում եմ գործածված, աղավաղյալ ձևով՝

— Ապտնոր, որդի Ֆարանճի, որ Հալէպում ստացավ մի Աւետարան, 1478 թ.—Ձեռ. Հալէպի, Ա. 97 ա։

*ԱԲԴԼՔԱՐԻՄ, ար. Հարաբ. عبدالكريم ‘Abd-ul-karīm, որ նշանակում է «ծառայ Ողորմածին (Աստուծոյ)»։ Անսովոր անուն է. գործածված է 2 անգամ, ԺԴ—ԺԵ դարերում. այժմ բոլորովին անգործածական։

— 1. Ապտուլքարիմ (ԺԴ դար). —Ձեռ. էջմ. № 1656։

— 2. Աբդըլքարիմ (կամ Ապտուլքարամ), որդի Ամիր-Հասանի և եղբայր Թաճդինի և Ամիրդոլի. սրանցից Թաճդինը մի ջաղաց է նվիրել վանքին և Արճէշում գրել է տվել մի Յայսմաւուրք, 1437 թ. իսկ Ամիրդոլը գրել է տվել մի Ճաշոց, Խլաթում, 1450 թ. և մի Աւետարան՝ Բաղէշի Ամիրդոլայ վանքում, 1455 թ.— Նոտարք 111, 112, 164, 178։

***ԱԲԵԴՆԱԳՈՎ**, *ար. ասորեստանյան անուն է, որ նշանակում է «ծառայ Նագովայ». հմմտ. Դան. Ա. 6—7. «Եւ էին ի նոսա յորդւոցն Յուդայ՝ Դանիէլ և Անանիա և Միսայէլ և Ազարիա։ Եւ եդ նոցա ներքինապետն (քաղդէացի) անուանս, Դանիելի՝ Բաղտասար, և Անանիայի՝ Սեդրաք, և Միսայելի՝ Միսաք, և Ազարեայ՝ Աբեդնագով»։ Այնուհետև վերջին երեքը՝ Նաբուքոդոնոսորի արձանը չպաշտելու պատճառով՝ բորբոքված հնոցը գցվեցին, բայց հրաշքով ազատվեցին (Դան. Գ.)։ Բառիս եբրայական ձևն է* عبد نجو ‘Abed nəgō, *հունարեն տառադարձված* ’Αβδεναγώ, *անգլիական պաշտոնական թարգմանության մեջ* Abed-nego։ *Հնում մեր մեջ գործածական չէ եղած, բայց նոր ժամանակներս կար Նովկասում և Պարսկաստանում՝* Աբեթնագով *ձևով, ուր* թ *ձայնը առաջացել է սխալմամբ, շփոթելով բառը* Յաբեթ *անվան հետ, որ ոչ մի կապ չունի սրա հետ։*

**ԱԲԵՂՈՅ**, *ար. ծագումն անհայտ. անշուշտ Խորենացու հնարած անուններից մեկն է,* Աբեղեան *նախարարական տոհմանվան վրայից սարքած։*

— Աբեղոյ, *նահապետ Աբեղինից տոհմի. կեղծավոր ու շողոքորթ մարդ էր։ Երբ Արտաշէս Բ թագավորը հիվանդացավ Մարանդ գավառի Բակուրակերտ ավանում, Աբեղոյ իշխանը ուղարկվեց Երիզա՝ Անահիտ աստվածուհուց բժշկություն և երկար կյանք խնդրելու թագավորի համար։ Բայց դեռ չդարձած, մեռավ Արտաշէսը (128 թ. ըստ Ջամչ. Ա. 350, ուր նույն նահապետի անունը գրված է* Աբեղի*).—Խոր. Բ. կ։*

**ԱԲԵՐԻՈՍ**, *անշուշտ աղավաղ անուն, որով ունինք՝*

—Աբերիոս *(լտ.* Aberius*) երեց, որին Սահակ կաթողիկոսը Ղեւոնդի հետ միասին ուղարկեց Պոլիս՝ Պրոկլ պատրիարքի մոտ, տեղեկանալու համար Նեստորական ուսման մասին (Ե դար).—տես Լիբերատ մատենագիր լատին, ըստ Ադոնց, ՀԱ 1925, էջ 198—202։ Ջամչեան, Ա. 527 կարծում է, որ այս անունով պետք է հասկանալ Աբրահամ ընկեր Ղեոնդի։ Երկուսով տարել են Սահակի այն թուղթը, ուր հերքվում էր Թէոդորոս Մոպսուեստացու աղանդը, և բերել նրա պատասխանը (435—436 թ.)։*

***ԱԲԷԺԱ**, *իգ. ըստ իս ծագում է միջին պրս.* *abēža *«մաքուր, պայծառ, ազնվական» բառից, որի ներկայացուցիչներն են՝ պհլ.* awēǰak *«մաքուր», պրս.* bīža, vīža, avīža *«զուտ, վճիտ»։ Ունինք մի անգամ ԺԳ/ԺԴ դարից։*

— Աբէժա, *կին Սարգսի՝ որդւոյ Սողոմոնի. իրենց ծնող-*

ների հիշատակի համար, Արփա գյուղում կանգնեցրին մի խաչքար, 1303 թվին.—Սիսական 184։

*ԱԲԷԼ կամ ՀԱԲԷԼ, աբ.< եբր. حبل ḥābel անունից, որ ըստ հների նշանակում է «սուգ». հմմտ. Ծնանի զԱբէլ, որ թարգմանի սուգ (Անկ. գիրք հին կտ. 24). Կայէն թարգմանի ստացուած և Աբէլ՝ սուգ (Մոլութ. 249ա). ԶԱբէլ որ թարգմանի սուգ (Գիրք առաք. 664 բ)։ Gesenius 173 ա դնում է «հոտի առաջնորդ»։ Այս անունով էր կոչվում Ադամ նահապետի երկրորդ որդին, որին սպանեց անդրանիկը՝ Կայէն (Ծն. Դ. 4—15)։ Եբրայականից տառադարձված են՝ ասոր. حبيل Hāwēl (գրվում է Hābēl) և հունարեն (հ չունենալու պատճառով) Ἄβελ, որից էլ բոլոր եվրոպական ձևերը Abel, ինչպես նաև ռուս. Авель. Մեր մեջ երկու ձևերն էլ գործածական են եղել հավասարապես։ Հաբէլ հնագույն ձևն է, որ առաջացել է Ս. Գրքի ասորական թարգմանությունից, և ապա փոխանակվել է հունական Աբէլ ձևով (Հիւբշ. 294)։ Այս անունը բնականաբար մտած պետք է լինի մեր մեջ քրիստոնեության դարձից հետո. հետևաբար Ն.Բ. երկրորդ դարում հիշված Աբէլը (տես № 1) Խորենացու հնարածն է, Աբեղեն բառի վրայից։—Աբէլ անունը այժմ էլ գործածական է, իսկ Հաբէլ իսպառ խափանված։

— 1. Աբէլ, իշխան, որին Վաղարշակ Ա Արշակունի թագավորը կարգեց «սպասարար և գահաւոր». սրանից առաջացավ Աբեղեն նախարարական տոհմը (Բ դար, Ն.Բ.)։—Խոր. Բ. է (2 ձեռ. Աբէլ), Ասող. Ա. ե.—Չամչ. Ա. 213.—նույնը սխալմամբ գրված է Գաբէղ՝ Սամ. անեց. 48։

— 2. Աբէլ, երեց, որին Սմբատ Բագրատունի մարզպան Վրկանաց և Թուրքեստանի՝ նշանակեց նույն տեղերի գաղթական պարսկացած հայերի (ինչպես նաև ասորիների և հույների) վրա իբր հովիվ՝ նորոգելու համար մոռացված հայ լեզուն ու կրոնը։ Այս առթիվ ուղարկեց նրան Մովսէս կաթուղիկոսի մոտ և եպիսկոպոս ձեռնադրել տալով՝ Վրկանը հայոց կաթուղիկոսության թեմ դարձրեց «599 թ».—Սեբ. իբ. Ցհ. կթ. ժէ. Մխ. անեց. իդ.—նույնը Հաբէլ՝ Ասող. Բ. բ. Կիր. 29. Վրդ. լա. Ցայսմ. հոկտ. 26. Սամ. անեց. 77. Մխ. այրիվ. 64.—սեռ. Հաբելի՝ Մխ. անեց. իդ։—Չամչ. Բ. 300, Ազգապ. 586—587։

— 3. Հաբէլ, եպիսկոպոս Ամատունեաց, անդամ Մանազկերտի հայ-ասորական եկեղեցական համագումար ժողովի «726

թ».—Ազգապ. 839, Տէր-Մինասեանց, Հայոց եկեղեցու յարաբ. 192)։

— 4. Հաբել, հայրն է Սահակ Հանձիթեցի զորավարի, որ գերի ընկավ Բուլղարների պատերազմում (991 թ.).—տես. Հաբելի՝ Ասող. Գ. լգ։

— 5. Հաբել, իշխան Պաղինի. սրա որդիներն են՝ Հարպիկ, Դավիթ, Լևոն և Կոստանդին (յիշված 1051 թ).—տես. Հաբելի՝ Ուռհ. 110, 112, 132։

— 6. Աբել աբեղայ. գրիչ. օրինակել է Գրիգոր Տաթևացու Մեկնութիւն աւետարանին Մատթէոսի, Սարկաւագաց վանքում, 1410 թ.—Ջեռ. Կարին. 156։

— 7. Աբել, պարոն, Թաղարցի. 160 տարեկան ծերունի էր. աչքերը կուրացած էին. գնաց Խուլէի վանքը. այստեղ աչքերը բժշկվեցին. քաջությամբ գնաց Լոյսալի գյուղի մոլլայի վրա, որ վանքապատկան հողերը խլել էր և նրանից հետ ստացավ (1443 թ).—Թորոս Աղբար, Բ. 350, Նոտարք 131։

— 8. Աբել, մեծ պապ Մատթէոս քահանայի, որ Անաւարզա քաղաքում գրել տվեց մի ճաշոց, 1466 թ.—Ջեռ. Հալէպի, Ա. 235 բ։

Աբիկազ տես Աբայի։

*ԱԲԻՄԵԼԷՔ, տր. < եբր. ابيملك Abīmelek անունից, որ կազմված է abi «հայր» և melek «թագավոր» բառերից և նշանակում է բուն «թագավորահայր»։ Այս անունով ծանոթ են մի խումբ փղշտացի թագավորներ, որոնցից նշանավոր է Աբիմելէք, որ Աբրահամ նահապետի կնոջը՝ Սառային իրեն կին առավ (Ծն. Ի)։ Իբրև փյունիկյան անուն հիշված է Ասորեստանյան արձանագրության մեջ՝ Abimilki ձևով (Gesenius, էջ 4 բ)։ Մեզանում, այս ձևով ունինք Աբիմէլէք ոմն 1534 թ. (Ջեռ. Վասպ. 649), Աբիմելէք սարկավագ՝ ԺԶ դար (Ջեռ. Վասպ. 760)։ Ավելի ուշ ժամանակ, շփոթվելով մահմեդական Մելիք անվան հետ՝ դարձել է Աբամելիք. ինչպես՝ Ափամելիք ոմն (հավանաբար ԺԷ դար. Ջեռ. Վասպ. 1022) և Աբամելիք Լազարեան, Մոսկվայի ճեմարանի հիմնադիրների տոհմից։

*ԱԲԻՋԱՆ, տր. կարծեմ թե կազմված է Աբիսողոմ անվան փաղաքշական Աբիկ, Աբի ձևից+ջան։ Մի անգամ գտնում եմ գործածված՝

— Աբիջան, 1720-ական թվերին (Աբր. երև. էջ 76)։

*ԱԲԻՍՈՂՈՄ, տր.<եբր. ابشلوم Abəšalom կամ ابيشلوم Abīšā-

lom անունից, որ նշանակում է «հայր խաղաղութեան». սրա համապատասխանն է ասորերէն. Abi-salām (Gesenius 5)։ Տառադարձված է հուն. 'Αβεσσαλώμ, ասոր. Awīšālōm, Awšālōm (Հիւբշ. 289), անգլիական պաշտոնական ձևը՝ Absalom, ֆրանս. Absalon. Այս անունով հայտնի է Հին Կտակարանում՝ Դավիթ մարգարեի ապստամբ որդին։ Հայերենում սովորական ձևն է Աբիսողոմ, բայց կան նաև Աբիսաղոմ, Աբեսաղոմ, և ըստ ասորականին՝ նաև Աբեսաղովմ ձևերը։ Այժմ քիչ անգամ գործածական է Արևմտահայոց մեջ (հիշենք օրինակ՝ Պարոնեանի Աբիսողոմ աղան), փաղաքշական ձևով՝ Աբիկ (հմմտ. Ազգապ. 5369), որից էլ Աբիկեան ազգանունը։

— 1. Աբեսողոմ, եպիսկոպոս Անձևացեաց, մին այն կրոնավորներից, որոնք ուղեկից եղան Ներսէսին, երբ սա գնում էր Կեսարիա, կաթուղիկոս օծվելու «353 թ».—Մեսր. եր. 26։

— 2. Աբիսողոմ, առաջնորդ Բերդկաներիչի վանքի, հիշված է իբրև վկա՝ Տաթևի 881 թվի կալվածագրում.—Օրբ. լթ. Սիսական 247։

— 3. Աբիսողոմ տանուտեր Լիմնայ (?), նրա խնդրանոք Տիրատուր կամ Մատթէոս վրդ. (ԺԴ դար) գրել է «Վասն հարցմանց անօրէնութեանց».—Ձեռ. Կարին. 138։

— 4. Աբիսողոմ վանեցի, հայր Սիմոնի, որ թողել է մի փոքր հիշատակություն 1445 թ.—REA 9, 140։

— 5. Ափիսողոմ (փ-ով գրված ըստ արևմտյան արտասանության), ժահդասի, որդի Խլղաթի, որ ստացել մի Աւետարան, 1668 թ.—Ձեռ. Վասպ. 932։

*ԱԲԼ-ԱԲԱՍ, ար. < արաբ. ابالعباس Ab-ul-'Abbās, որ բառացի նշանակում է «հայր Աբբասի». հմմտ. Abul-Abbas թուրք իշխան Սեբաստիոյ՝ ԺԴ դար (Այրարատ 322)։ Արաբական սովորությամբ այսպիսի անուն էր ստանում այն անձը, որ Աբաս անունով մի որդի ունենար։ Մեր մեջ էլ՝

— 1. Աբլաբաս է կոչված Սմբատ Խոստովանողը, սպարապետ Հայոց «824 թ.», որովհետև իր անդրանիկ որդին կոչվում էր Աբաս, Աշոտ Ա Բագրատունի թագավորի եղբայրը.—Արծր. Գ. Թ. Սամ. անեց. 91, 93։ (Աբուլբաղ ըստ Վրաց աղբ. Ա 200)։

— 2. Աբլաբաս է կոչված նաև Աշոտ Բ Երկաթը, ըստ Օրբ.-խթ. (տես. Աբլ-Աբասայ ձևով)։

ԱԲԼԱՇԱԲ, ար. Թվի թե կազմված է նախորդի ոճով, բայց առանձին Աշաբ անուն չունինք. չեմ գտնում նաև Կամուսի մեջ։

— Աբլաշաբ, Սիւնեցի ոմն, որի որդիներից գնեց Փիլիպպէ

*Սիւնին* Աղուերծ *անունով գյուղը և նվիրեց Տաթևի վանքին, 943 թ.—բցռ.* ի յԱբլասաբայ որդեացն՝ *Օրբ. ծ։*

**ԱԲԼԱՍԱԴ, ար. < արաբ.* ابالاسد Ab-ul-Asad, *բառացի նշանակում է «հայր Ասադի». արաբական սովորությամբ այս անունն է ստանում մեկը, երբ* Ասադ *(«առյուծ») անունով մի որդի ունենա։*

— *1.* Աբլասադ, *աղվան իշխան. օգնեց Բաբան պարսիկ իշխանին, Բաղասական գավառը գրավելու և կոտորելու ժամանակ (Ը դար)։ Նույն է* Ստեփաննոս Աբլասադ, *որ տես։ Տես նաև* Ապումուսէ.—*սեռ.* Աբլասադայ՝ *Օրբ. լը։*

— *2.* Ապլասաթ, *իշխան, որդի Տաճատայ՝ իշխանի Տարօնոյ. իր բազմաթիվ հեծյալներով օգնական գնաց Գող Վասիլին և նրա հետ միասին ջարդեցին Թուրքերին «1108 թ»։ Երկրորդ անգամ օգնական գնաց Եդեսիոյ Բաղտին և Թլպաշարի Ճոսլին կոմսերին և երեքով արշավեցին Խառանի վրա, որ այն ժամանակ Պարսից ձեռքն էր։ Թշնամու բազմությունից զարհուրելով՝ Բաղտին և Ճոսլին փախան, մենակ թողնելով Ապլասաթին թշնամու առաջ։ Ապլասաթը տեսնելով վտանգը և իր զորքի անխուսափելի կորուստը, չկորցրեց իրեն, այլ կատաղաբար ընկավ թշնամու վրա, փախցրեց նրանց և հաղթական վերադարձավ Գող Վասիլի մոտ։ Երրորդ պատերազմը ունեցավ Թուրքերի դեմ, որոնք մեծ բազմությամբ արշավել էին Կիլիկիա՝ Թորոս Ա-ի դեմ։ Թորոսը իրեն օգնական առավ իր եղբորը՝ Լևոնին և Տիգրան ու Ապլասաթ իշխաններին։ Կատաղի ճակատամարտում հայոց զորքը ջարդվեց, Տիգրանը և Ապլասաթը ընկան, բայց Լևոնը գրեթե խելակորույս ընկավ թշնամու վրա և այնպիսի ջարդ տվեց նրանց, որ թողեցին պատերազմի դաշտը և փախան (1112 թ).—Ուռհ. 307, 310, 311, 325, Զամչ. Գ. 28, 29, 31, Այրարատ 49։*

**ԱԲԼՂԱՐԻԲ, որ և* Ապլղարիբ, Ապլղարիպ, *ար. < արաբ* ابالغريب Ab-ul-ġarīb, *որ բուն նշանակում է «հայր Ղարիբի»։ Արաբական սովորությամբ, մեկն իր վրա է վերցնում այս անունը, երբ* Ղարիբ *«պանդուխտ, ղարմանալի, տարօրինակ» անունով մի որդի ունենա։ Մեր մեջ գործածական է եղել Ժ—ԺԳ դարերում. այնուհետև իսպառ խափանվել է։*

— *1.* Ապլղարիպ Հաւնունի, *քաջարի զորավար Վասպուրականի Գագիկ Արծրունի թագավորի։ Գագիկի հաջորդը՝ Աշոտ-Դերենիկ թագավոր Արծրունեաց՝ պաշտոնանկ արեց նրան։ Սրա վրա Ապլ-*

ղարխը բարկացավ և իր տիրոջը դավաճանորեն մատնեց Հերի և Զարևանդի Թուրք իշխան Ալփհաճին, որ նրան գերի տարավ ու բանտարկեց Հերում։ Ամեն օր, Ալփհաճը, զբոսանքի դուրս գալիս, իշխանին էլ դուրս էր բերում դաշտը և ծաղրելով զվարճանում։ Ապլղարիպի արարքից զայրացան Վասպուրականի վանականներն ու եպիսկոպոսները և նզովք կարդացին նրան։ Ապլղարիպը զղջաց և կռվի գնալով Թուրքերի վրա, անձամբ ազատեց Դերենիկին։ Թուրքերը փախան Հեր և պարսպի դռները փակեցին։ Ապլղարիպը զորք չուներ քաղաքը գրավելու համար, ուստի ի նշան իր քաջության, պողպատյա Թուրը ուժգին հարվածով խրեց երկաթի դռան և ետ դարձավ (շուրջ «945 Թ»).—Ուռհ. 30—33, Սմբ. պատմ. 37—39.—սեռ. Ապլղարիպայ՝ Ուռհ. 30—32, Սմբ. պատմ. 37 կամ Ապլղարիպի Սմբ. պատմ. 38.—Զամչ. Բ. 805, 826—827։

— 2. Աբլխարիբ Հաւնունի, իշխանաց իշխան Վասպուրականի, նախորդի եղբորորդին, սպարապետ Աշոտ Արծրունի Թագավորի, որի հրամանով, Գրիգոր և Տիգրան ընկերների հետ, գնաց դիմադրելու Գողթան Աբուսլուփ ամիրայի հարձակման։ Անփութության քնով էին ընկել. Թշնամին եկավ և ձիերը խլեց։ Սրանք փախան մի բերդ և ամրացան։ Ամիրան խոստացավ անվնաս ազատ արձակել նրանց, եթե զենքերն ու զրահները հանձնեն։ Հավատացին ու հանձնեցին։ Ամիրան դրժեց իր երդումը, բոլոր զորքը կոտորեց, միայն Աբլխարիբին իր երկու ընկերներով՝ փրկանքով ազատեց «983 Թ».—Ասող. Գ. ժգ.—Զամչ. Բ. 866—867։

— 3. Ապլղարիպ տես Տիգրան Պահլաւունի։

— 4. Ապլղարիպ (կամ Աբլխարիբ), Պահլավունի, որդի Գրիգորի, Թոռն Ապուղամր իշխանի, մայրն է Շուշան, քույրը Սեդա, եղբայրներն են՝ Վասակ իշխանաց իշխան, որ նահատակվեց Թուրքաց պատերազմում, Վահրամ իշխանաց իշխան, որ կառուցեց Մարմաշենը, և Համզա մարզպան Հայոց։ 1035 Թվին հրովարտակ հանեց Սմբատ Բ Թագավորից և գնալով Պոլիս՝ Միխայել Դ կայսեր (1034—1041) մոտ, մեծ ծախսով բերեց խաչի մասունքը և Անիում կառուցեց հռչակավոր Ս. Փրկիչ եկեղեցին, որ և ապահովեց գրադարանով, զանազան սպասներով, մելով և ապարանքներով (1036 Թ)։ Փոքր էր դեռ, երբ հայրը մեռել էր և չէր հիշում նրան, բայց որդիական սիրով շարժված՝ շինեց հոր համար մի հանգստարան (Թէպէտ և անտես էի ի հաւրէ իմէ յաղագս կրսերութեան, այլ հարկեցա ի ծնողական սիրոյն և շի-

նեցի զայս հանգստարան) և մորն ու քրոջը հիշատակին՝ վանական սենյակներ (1040 թ)։—Անիում մնում են իր արձանագրությունները։—Շիրակ 53, 81—89, 126, 139, 148։

— 5. Ապլղարիբ Արծրունի, որդի Հասանի, որդւոյ Խուլ Խաչիկի. Վասպուրականի Սենեքերիմ թագավորի իշխաններից էր. գաղթեց նրա հետ Սեբաստիա. գնաց Պոլիս և կայսեր սիրելի դառնալով՝ ստացավ Կիլիկիայում՝ Մսիսի, Ատանայի, Տարսոնի, Պապեռոնի և Լամբրոնի իշխանությունը։ Նորոգեց Լամբրոնը, ամրացրեց Պապեռոնը, ուր և դրավ իր աթոռը։ Իր փեսան է Օշին գանձակեցին, որ հետո ժառանգեց Լամբրոնը (1071)։ Իրեն փեսայացրեց նաև Գագիկ Բ թագավորի կրտսեր որդի Դավիթին, որին հետո թունավորելով սպանեց, կասկածելով դավաճանության մեջ։ Հյուրընկալեց Գևորգ Գ Լոռեցի կաթողիկոսին «1072 թ»։ Մեռել է 1080 թ.—Ապլխարիպ՝ Վրդ. կ. Պատմ. լմբ. 224. Հայաստ. 413.— Ապլղարիպ Ուռհ. 219.—Աբլղարիպ Սամ. անեց. 116.—սեռ. Ապլղարբի Վրդ. կ.—Ապլղարիպի Սմբ. պատմ. 86.—Ապլղարիպայ Ուռհ. 219.—Ապլխարպայ Պատմ. լմբ. 225.—հիշված է նաև 1720 թվին գրված մի ձեռագրի սկզբում (Տաշյան, Ցուց. 638բ).—Սիսուան 46 բ, 71ա, 74, 77, 248, 266, Ջամչ. Բ 925, 995, 1005։

— 6. Ապլղարիպ, որդի Վասակ Պահլավունու՝ հորեղբոր Ներսես Շնորհալու։ Իր եղբայր Լիկոսի հետ գրավեց Թուրքերից Թլպաշարն ու Պիրը։ Վերջինը, որ Եփրատի ափին էր գտնվում (այժմ Բիրեճիկ), հոյակապ և անառիկ պարսպով պատեց և իրեն աթոռանիստը դարձրեց։ Օգնության գնաց Եդեսիայի Պաղտին լատին իշխանին, երբ Խառանի Մամտուն Թուրք զորավարը Մուսուլից եկել և մեծ բանակով պաշարել էր այդ քաղաքը։ Բայց ապերախտ Պաղտինը, ավելի հետո գնաց Պիրի վրա, որ թեև անառիկ էր, բայց մի տարի պաշարված մնալուց հետո, սովից նեղված՝ անձնատուր եղավ, իսկ Ապլղարիպ, իր եղբայր Լիկոսի հետ, գնաց ապավինեց Թորոս Ա-ի մոտ, Անարզաբա քաղաքը «1115 թ».—Ուռհ. 314, 337, 338.—սեռ. Ապլղարիպի՝ Վրդ. կէ.—Ջամչ. Գ 29, 39, Սիսուան 50, 240, Ազգապ. 1357։

— 7. Ապլղարիպ ներքինի, սուտ պարծենում էր թե ինքն է սպանել Կիլիկիայի Մլեհ իշխանին. ուստի Ռուբէն Բ ջրահեղձ արեց նրան «1175 թ».—Սմբ. պատմ. 103, Սիսուան 57։

— 8. Ապլղարիպ գունդստապլ, տեր Կուտաֆոյ (կամ Կուտոյ), սպարապետ Հայոց. հաջորդեց Պաղտին գունդստապլին, որ

մեռել էր 1188 թ. Ներկա եղավ Լևոն Բ-ի թագադրության հանդեսին «1199 թ».—Սմբ. պատմ. 111, 137, Սիսուան 202, 471, 484։

— 9. Ապլղարիպ, պարոն և տեր Ցոռնոսի. Ներկա եղավ Լևոն Բ-ի թագադրության հանդեսին «1199 թ».—Սմբ. պատմ. 111, Սիսուան 192, 471։

— 10. Ապլղարիպ, մեծ իշխան, որի հետ միացավ Լևոն տեր Մոլևոնի և ապստամբեցին Լևոն Գ թագավորի դեմ. ձերբակալվեցին և մատնվեցին Թաթարների Փարվանա զորավարին, որ Փոքր-Ասիայի կուսակալն էր (1272 թ).—Ձեռ. օշ. 99բ, Սիսուան 142։

*ԱԲԼՀԱՍԱՆ, ար. < արաբ. ابالحسن Ab-ul-ḥasan, որ նշանակում է «հայր Հասանի»։ Արաբական սովորությամբ այս անունն է ստանում մեկը, որ Հասան («Սիրուն») անունով մի որդի է ունենում։ Այս անունով ծանոթ է Աբուլ-Հասան ամիրա Շեդդադյան տոհմից (Ժ դար, Շիրակ 98)։ Հայոց մեջ ունինք միայն մի անձ այս անունով՝ ԺԱ դարից։

— Ապլհասան, որդի Եղիդի. իր եղբայր Խատապի հետ միասին մի այգի նվիրեցին Տեկորի վանքին՝ 1033 թ. սրա արձանագրությունը գտնվում է Խծկոնից վանքի արտաքին պատի վրա (Շիրակ 127)։

*ԱԲՈՒ-ԱԼԻ, ար. < արաբ. ابوعلى Abū-ʻAli, որ բուն նշանակում է «հայր Ալիի»։ Արաբական սովորությամբ այս անունն է ստանում մեկը, որ Ալի անունով մի որդի ունենա։ Այս անունով ծանոթ է արաբների մեջ Աբու-Ալի-Իբն-Սինա նշանավոր բժիշկը։ Մեր մեջ կա միայն մի անձ՝ Թ դարից։ Կապ ունի՞ արդյոք Աբուլեթ և վրաց Աբուլաձե ազգանունների հետ։

— 1. Ապու-Ալի, հայկազուն իշխան Աղվանից. անդրանիկ որդի Գրիգորի և թոռ Սիւնեաց Ատրներսեհ իշխանի. սպանվեց իր ազգական Սմբատի ձեռքով (Թ դար).—Կղկնտ. Գ. իբ (այսպես հրատ. Շահնազարեան, իսկ հրատ. Էմինի՝ Պօլի).—ուղ. Ապուլի ձևով՝ Կղկնտ. Գ. իգ (այսպես հրատ. Էմինի, իսկ հրատ. Շահն. Ապու-Ալի)։

— 2. Աբու-Ալի-Ահմադ, որդի Շահնշահ-ալ-Աֆդալի, նշանավոր հայազգի վեզիր Եգիպտոսի, որի փառքից և մեծությունից վախենալով Հաֆիզ խալիֆան, սպանել տվեց նրան, 1130—1131 թ. կոչված է նաև Քաթիթաթ.—Աբուսահլ պատմ. էջ 44 և 72։

*ԱԲՈՒԼ-ՂԱԼԱԴ, զուտ արաբ անուն, որով ունինք՝

— Աբուլ-Ղալադ-Թալայի, հայ զորավար Եգիպտոսում. զսպեց տեղական ապստամբությունը և դարձավ վեզիր Եգիպտոսի՝ 1154—1161 թ. այս թվին սպանվեց.—Աբուսահլ պատմ. էջ 72։

*ԱԲՈՒ-ԽՈՋԱՑ. զուտ արաբական անուն, որով ունինք՝

— Աբու-Խոջայ-Ռուզիկ, որդի և հաջորդ Աբուլ-Ղալադ Թալայիի, հայազգի վեզիր Եգիպտոսի, սկսած 1161 թվից.—Աբուսահլ պատմ. էջ 72։

ԱԲՈՒԿԱՆ. ծագումը անծանոթ. մի անգամ հիշված է ԺԴ դարից՝

— Աբուկան, որդի Ալփիկի. իբր վկա կոչված 1387 թ.—Գ. արք. Յովս. Նիւթեր և ուս. Ա. 45, 61։

*ԱԲՈՒՀԱՅԱԹ < պրս. آب حیات āb-i-ḩayāt «կենդանության ջուր, կենաց ջուր». ըստ մահմեդական առասպելի՝ այս ջրից խմողը անմահ կմնար։ Նրա աղբյուրը գտնվում էր հյուսիսի խավար կողմերում։ Իսքանդար Զուլկարնեյնը (Աղեքսանդր Մակեդոնացին) գնաց հյուսիս, այս աղբյուրից խմելու, բայց իր փափագին չհասավ։ Այժմ Տաճիկների և Պարսիկների մոտ ամեն ընտիր ջուր այս անունով է կոչվում։ Երևանում էլ աբուհայաթ էր կոչվում հին աղբյուրի ջուրը, որ առուներով անցնում էր բակերից։ Ժողովուրդը սխալ ստուգաբանությամբ հասկանում էր «բակի ջուր», շփոթելով حیات ḩayāt «կենդանություն» բառը حیاط ḩayāţ «բակ» ձևի հետ։ Սրանից է՝

— Աբուհայաթ, իգական անսովոր անուն. հիշված եմ գտնում Խորհ. Հայաստ. 1940 հունվ. 6, վերջին էջ։

*ԱԲՈՒՂԱՄՐ, ար. նախորդների ձևով կազմված պիտի լինի արաբ. ابو غمر Abu-γamr «հայր Ղամրի» ձևից։ Այսպիսի մի ձև ծանոթ չէ ինձ. բայց կա արաբ. غمر Γamr իբրև անձնանուն, որի բուն նշանակությունն է «ազնվաբարո, առատաձեռն և շատ համբերատար մարդ» (Կամուս, Բ. 57)։

—1. Աբուղամր Պահլաւունի, որդի Արտակի և հայր Գրիգոր Համզայի (ծն. 941), որ Գրիգոր մագիստրոսի պապն էր։ Այս Աբուղամրի անունով է Անիի Ապուղամրենց Ս. Գրիգոր եկեղեցին (Ժ դար).—սեռ. Աբուղամրի՝ Մագ. թղ. ժա, Սամ. անեց. 103, Շիրակ 53։

— 2. Աբուղամր, վաղամեռիկ որդի Վասակ Հոլումի (մ. 1021 թ).—Ալիշան, Շնորհ. էջ 12 (տախտակը)։

— 3. Ապուղամր (Ապուխամր, Աբողամր), որդի Վահրամ

Պահլաւունի սպարապետի (մ. «1045 թ»), եղբայր Գրիգորի և Սմբատ մագիստրոսի. ունի մի արձանագրություն, որից երևում է թե Կաղնուտի արտը 1031 թվին նվիրել է Առաքելոց եկեղեցուն (Շիրակ 60)։ Հիշված է նաև 1034 թ.—Ալիշան, Շնորհ. էջ 12 (տախտակը) և Շիրակ 53։

— 4. Աբուղամր, մագիստրոս, հայր Գրիգոր արքեպիսկոպոսի Անիի՝ 1215 թ.—Ալիշան, Շնորհ. 13, Շիրակ 118, 150, 165։

— 5. Աբուղամր, հայր Գրիգոր մագիստրոսի՝ իշխանի Շիրակայ, որից մի արձանագրություն 1233 թվից՝ տես Շիրակ 119։

— 6. Աբուղամր Պահլաւունի, թոռն Վահրամ իշխանի և որդի Գրիգոր մագիստրոսի՝ տեառն Բագնայրի. հիշված է 1262 թ. (Ալիշան, Շնորհ. էջ 14). Թողել է երկու արձանագրություն՝ 1261 և 1262 թվերից, որոնց մեջ հայտնում է թե Կաղզուց կալվածի կեսը եկեղեցուն է նվիրում։ Գերեզմանը մնում է Մարմաշենում.—Շիրակ 119, 149։

— 7. Աբուղամր, հայր Յովհաննու հայրապետի Շիրակայ՝ 1308 թ.—Ձեռ. Կարին. 16։

— 8. Աբուղամր (որ և Պուղամ). Արծկեցի որբ պատանի էր, որին որդեգրեց Բունիաթ Սեբաստացին (1494 թ.)։ Սուլթան Սելիմ Ա-ի (1512—1520) արշավանքի ժամանակ գաղթեցին Ակն, ուր հիմնեցին Աղուչենի գյուղը։ Իր սերնդից է Ճեզայիրլեան ամիրայի տոհմը (Անահիտ 1931 սեպտ. էջ 141, 152)։

*ԱԲՈՒՄՐՈՒԱՆ, ար. կազմված է արաբ. ابو مروان Abū-Marvān ձևից, որ նշանակում է «հայր Մրուանի»։ Այս անունը անծանոթ է, բայց շատ սովորական է مروان Marvān անունը, որ ծագում է مرو marv «հրահան, կայծքար» բառից (Կամուս, Գ 927)։ Պատմության մեջ հայտնի են Մրուան Ա և Մրուան Բ արաբ ամիրապետները և Մրուան ոստիկան Հայաստանի (742). բոլորն էլ Է և Ը դարերում։

— 1. Աբումրուան, մեծ իշխան Վասպուրականի. սպանվեց իր զորքերից (Թ դար).—Կղկնտ. Գ. իբ (հրատ. Շահն. Աբու-Մրվան).—բայց հայ է թե պարսիկ։

— 2. Աբումրուան տես Գագիկ Աբումրուան։

*ԱԲՈՒՍԱՀԼ, ար. նախորդների ձևով կազմված է արաբ. ابو سهيل Abu-Sahīl ձևից, որ նշանակում է «հայր Սահլի»։ Այս անունն էր ստանում մեկը, որ Սահլ անունով մի որդի էր ունենում։ Այս անունով ծանոթ է Աբուսահլ սուլթան տաճկաց 811 թ. (տես Տաշեան, Ցուցակ, էջ 61 ա և 348 ա)։ Ավելի սովո-

րական է Sahīl անունը, որ բուն նշանակում է «Եմէնի մեջ երևացող մի աստղ, որի համար ասում են թե պտուղները, հակինթ քարը և ուրիշ առարկաներ իրենց կարմրությունը նրանից են առնում» (Կամուս, Գ. 251)։ Մահմեդական աշխարհում հայտնի են Sahīl-bin-Rāfi‘, Sahīl-bin-Omar, Sahīl-bin-Bayðā, Sahīl-bin-‘āmir և ուրիշ սրբեր (Կամուս, անդ)։ Կա նաև պարզ سهل Sahl ձևը, ինչպես Ibn-i-Batuta, I, էջ 225։ Մեր մեջ գործածվել է Ժ—ԺԱ դարերում։

— 1. Աբուսահլ Համազասպ, թագավոր Վասպուրականի. որդին էր Գագիկի և հայր Գուրգէն և Սենեքերիմ Արծրունի թագավորների. հաջորդեց եղբորը՝ Աշոտ—Դերենիկին «953—969 թ». սրա մոտ ապաստանեց Վահան կաթողիկոսը, որ յունադավան դառնալու պատճառով վտարվել էր իր աթոռից «969 թ». —Վրդ. ծա, կզ. Ասող. Գ. ը.—սեռ. Աբուսահլի՝ Գր. Նար. մատ. 367. Ասող. Գ. խզ.—Ապուսահլի՝ Ասող. Գ. ը. Ուռհ. 8, 34. Սմբ. պատմ. 27.—միայն Համազասպ՝ Օրբ. ծբ. Տաշեան, Ցուց. 13 բ (կոչված է «տիեզերակալ արքայից արքայ Հայոց»!)—Ջամչ. Բ. 827, 841, 1041. Ջարբ, Թրգմ. 452. Հայապ. 295։

— 2. Ապուսահլ, քեռորդի Գագիկ Ա թագավորի Բագրատունեաց. մոր կողմից թոռ Աշոտ Գ Ողորմածի. ըստ այսմ մոր կողմից Բագրատունի, բայց հոր կողմից թվում է Արծրունի։ Տերն էր Կոգովիտ և Ծաղկոտն գավառների։ Տայոց Դավիթ կիւրապաղատը մեռնելիս՝ իր երկիրը Հունաց Վասիլ Բ կայսեր (976—1025) կտակած լինելով, Վասիլը եկավ իր նոր կալվածները տեսնելու։ Իսկույն նրան այցելության շտապեցին Ափխազների Բագարատ, Վրաց Գուրգէն, Կարուց Աբաս և Վասպուրականի Սենեքերիմ թագավորները։ Վասիլ կայսրը բոլորին պատիվներ տվեց և գնաց բանակեց Վաղարշակերտի (Ալաշկերտի) դաշտը, սպասելով որ Գագիկ Ա Բագրատունի թագավորն էլ կգա իր ոտքը։ Բայց Գագիկը իր արժանիքից ցածր համարելով այդ՝ չգնաց։ Այս բանը առիթ բռնելով Ապուսահլը, որ իր մորեղբոր հետ թշնամացել էր, գնաց կայսեր մոտ և չարախոսեց Գագիկի մասին։ Սրա վրա Գագիկը ուղարկեց իր որդի Յովհաննէսին (հետագայում Յովհաննէս-Սմբատ թագավոր) և Ապուսահլի գավառները ավարի տվավ (1000 թ)։—Ասող. Գ. իգ.—սեռ. Ապուսահլի՝ Ասող. Գ. խգ.—Ջամչ. Բ. 882, Այրարատ 495։

— 3. Աբուսահլ Արծրունի, որդի Սենեքերիմ թագավորի Արծրունեաց. հոր հետ գաղթեց Սեբաստիա «1021 թ». երբ եղ-

բայրը՝ Ատոմ, Սեբաստիայի գահը բարձրացավ «1035 թ», Աբուսահլը նրան գահակից դարձավ և այսպես մնաց մինչև իր մահը։ Կյանքի հաջորդ դեպքերը տես Ատոմ։—Վրդ. ծա.—Ապուսահլ՝ Ուռհ. 55, 83, 133, 138, 160, 161, 198, 220. Անանուն Ժմ. 16. Ցայսմ. յուլ. 30. Սմբ. պատմ. 49, 73, 75, 79, 86. Առաք. պատմ. 479.—սեռ. Ապուսահլի՝ Ուռհ. 179 (տես և Տաշեան, Ցուց. 100 բ).—Աբուսահլայ՝ Ցայսմ. յունիս 1.—Ջամ. Բ. 902, 909, 915—916, 970, 984, 991, 1004—1005։

—4. Աբուսահլ, տէր Մեղրոյ բերդին. հիշված է 1083 թվին, երբ Տաթևի վանքին ընծայեց մի մեծ այգի Մեղրոյ ձորում.— Օրբ. ծթ. Սիսական 232, 303։

— 5. Աբուսահլ տես Բարթուղիմեոս։

— 6. Աբուսահլ, եգիպտահայ պատմիչ. թողել է Աֆրիկէի ազգերի քրիստոնեության պատմությունը. այն է՝ Եգիպտացոց (Ղփտի), Եթովպացոց (Հաբեշ), Նուբիացոց, Արաբների, Հնագույն Լիբիացոց, Նումիդացոց, Մավրիտանացոց, նաև Արևելյան Հնդկաց։ Իր Պատմությունը ընդգրկում է 1168—1337 թվերը, որով ինքն էլ համարվում է ԺԴ դարից։ Այս աշխատության սակավագյուտ արաբ ձեռագիրը գտնվում է Պարիզի մեծ գրադարանում և հրատարակվեց անգլերեն թարգմանությամբ Օքսֆորդում։ Այստեղից հայոց վերաբերյալ մասերը քաղելով Ալիշանը, հրատարակեց «Պատմութիւն եկեղեցեաց և վանօրէից Եգիպտոսի» վերնագրով (տպ. Վենետիկ 1895)։—Հայապատ. 121.—Անշուշտ նույն է «Ապուսահլ ոմն», որին հայ պատմիչների շարքում հիշում է Ջամ. Ա. 19։

*ԱԲՈՒՍԱՅԻԴ, ար. < արաբ. ابوسعيد Abū-Sa‘īd, որ նշանակում է բուն «հայր Սայիդի (երջանիկի)»։ Նշանավոր է արաբների մեջ Աբուսայիդ բժիշկը, որի Մարդակազմությունը խմբագրված է նաև հայերեն՝ Ասար Սեբաստացու ձեռքով (Տաշեան, Ցուց. 721—722)։ Այս անունով ունինք միայն՝

—1. Աբուսայիդ, բժիշկ ԺԲ դարում. սրա խնդրանքով գրեց Ներսէս Լամբրոնացին (1153—1198) «Անուանք քաղաքաց շինողաց»։ Այս աշխատությունը այժմ կորած է՝ ըստ Զարբ. Հին դպր. 660.— չի հիշատակում Տաշեան, Ցուց. 1134՝ Լամբրոնացու գործերի շարքում։

— 2. Ապսաիտ ձևով հիշված են երկու Տիգրանակերտցի աշխարհական անձինք՝ 1517 թ.—Ջեռ. Վենետ. Բ. 482։

*ԱԲՐԱՀԱՄ, ար. < եբր. ابرهم Abrāḥām, որ նշանակում է

«հայր ազգաց կամ հայր բազմութեան»: Եբրայեցոց նշանավոր նահապետի անունն է (Ն.Ք. 1996): Նախապես կոչվում էր Աբրամ (եբր. ابرم Abrām), որ է «հայր բարձր»: Այնուհետև Եհովան ուխտ կապեց նրա հետ և անունը փոխեց Աբրահամ. «Եւ իմ ահաւասիկ ուխտ ընդ քեզ և եղիցես հայր բազմութեան ազգաց: Եւ ոչ կոչեսցի այսուհետև անուն քո Աբրամ, այլ եղիցի անուն քո Աբրահամ, զի հայր ազգաց բազմաց եդի զքեզ» (Ծն. ԺԷ 4—6) (Gesenius 7բ): Հմմտ. նաև Փիլ. իմաստ. 55 «Բանզի Աբրամ թարգմանի հայր վերամբարձ, իսկ Աբրահամ՝ հայր ընտրեալ»: Տառադարձված է հուն. Ἀβραάμ, լտ. Abraham, նաև Abrahamus, եվրոպական լեզուներով Abraham, ռուս. Авраам, Абрам, ասոր. ابرهم Abrāhām, Awrāhām, արաբ. ابراهيم Ibrāhīm: Հայերենը առաջանում է ասորերեն ձևից, բայց ըստ Հիւբշ. 290 ավելի հավանաբար հունարենից է, αα վերածվելով ահա՝ հորանջից խուսափելու համար: Հին հայերեն կար նաև Աբրաամ, որ հունականի ուղիղ տառադարձությունն է և համարվել է գիտական ձև. այժմ բոլորովին խափանված: Արդի գործածական ձևերն են Աբրահամ (հնչվում է Ափրահամ), Ղրբ. ափրհամ, կրճատ ձևով Ղրբ. ափրամ, Ա՛փի, Պլ. Ապրօ (որից Ապրոյեան ազգանունը), Տփ. Աբրիօմ.—Աբրօ ձևով հիշված է ԺԷ դարից՝ · Զքր. սարկ. Բ 73:—«Ապրօ չէլէպի ասացեալ՝ այն է Աբրահամ» Զամչ. Գ. 699. նաև Աբրօ ձևով՝ 1608 թ. Ձեռ. Վասպ. 825:—Տես նաև Իբրահիմ:—Իբրև հատուկ անվան օրինակ հիշված է Աբրահամ Սիւն. քեր. 215 և Աբրաամ Թր. քեր. 44, Խոր. քեր. 179:—1689 թվին կա Աբրիհամ ձևը (տես Ձեռ. Թաւր. 84 բ):

— 1. Աբրահամ հռետոր, աշակերտ Սահակի և Մեսրոպի. մի քանի ընկերներով ուղարկվեց Պոլիս՝ թարգմանություններ անելու համար. հիշված է Դաւիթ անյաղթի առասպելի մեջ.— Զարբ. Հին դպր. 317. Հայապ. 195:

— 2. Աբրահամ սարկավագ, Այրարատի Արած գյուղից էր. հոգեորդի Սամուէլ քահանայի, որի հետ մի ատրուշան կործանելով Արտաշատում, երկուսն էլ բռնվեցին Վասակից և Ատրորմիզդ մարզպանի ձեռքով Պարսկաստան ուղարկվելով՝ նահատակվեցին Խորասանում, Վարգեսս կամ Վարդգէս կոչված տեղը «454 թ»: (Զամչեանը համարում է սրան՝ Սահակի և Մեսրոպի երեց աշակերտներից մեկը, որ Ղևոնդի հետ Պոլիս տարավ Պրոկղի թուղթը: Օտարների մոտ կոչված է Աբերիոս (կամ Աբէլ):— Եղիշ. 101, 111, 139. Փարպ. խբ, խգ, խէ, խը. Արծր. Ա. Ժ.

Վրդ. իէ. Յայսմ. յուլ. 31.—սեռ. Աբրահամայ՝ Փարպ. խգ.—Աբրահամու՝ Փարպ. խը։—Զամչ. Ա. 527, 536, Բ. 83, 84, 101, 102, 110, Այրարատ 445։

— 3. Աբրահամ խոստովանող, Տայոց Զենակս գյուղից, երեց և աշակերտ Ղևոնդեանց. իր ընկեր Խորէնի հետ չարչարվեց հավատքի համար՝ Պարսկաստանի Նիւշապուհ քաղաքում, ապա աքսորվեց Ասորեստան, ուր 12 տարի մնալուց հետո՝ վերադարձավ Հայաստան («462 թ. և կամ ավելի ուշ»). եղավ եպիսկոպոս Բզնունեաց և ճգնական կյանքով վախճանվեց։ Ասորերենից թարգմանել է Եփրեմի Վկայք Արևելից աշխատությունը, որ Պարսկաստանում նահատակված սուրբերի վկայաբանությունն է։ Բնագիրը շատ բանաստեղծական, նյութը սրտառուչ, թարգմանության լեզուն ընտիր ոսկեդարյան հայերեն է (Ե դար)։—Եղիշ. 142—144, 146. Փարպ. ծգ, ծը. Արծր. Գ. ժե. Յայսմ. դեկտ. 20, յուլ. 31. Սիմ. ապար. 48.—սեռ. Աբրահամու՝ Փարպ. ծգ. Արծր. Բ. ա. Կիր. 3. Ճշ. 620, 747, Յայսմ. դեկտ. 20.—Իբրև թարգմանիչներից մեկը հիշված է Կիր. 16. Վրդ. իե, Առաք. լծ. սահմ. 170, և պետք է հասկանալ նույն անձը։—Զամչ. Բ. 112—115, Ալիշ. Լիակ. վրք. սրբ. Ժ. 210—221, Զարբ. Հին դպր. 295 (նույն անձը կոչում է նաև Աբէլ), Կիւլէսէրեան, Եղիշէ, Վիեննա 1909, էջ 137—151։

— 4. Աբրահամ եպիսկոպոս, որի մոտ ցանկանում էր մընալ Ղազար Փարպեցին (Փարպ. թղ. էջ 202)։ Թվի լինել նախորդը (№ 3), որ երբ Փարպեցին Պատմությունն էր գրում, մեռած էր, բայց Թուղթը գրած միջոցին շատ ծեր։

— 5. Աբրահամ, եպիսկոպոս Մամիկոնէից և առաջնորդ Տարօնոյ։ Աղվանից Վաչագան Գ. Բարեպաշտ թագավորի խընդրանքով գրել է «Թուղթ առ Վաչագան արքայ Աղուանից» և «Կանոնք Աբրահամու Մամիկոնէից եպիսկոպոսի»։ Սրանք համառոտ խրատական գրվածներ են, հատկապես սրբերի նշխարները պատվելու և մեռելների հոգու համար աղոթելու մասին։ Կա նաև մի ուրիշ ավելի ընդարձակ գրվածք, որ կրում է «Պատմութիւն վասն ժողովոյն Եփեսոսի» վերնագիրը։ Այս գրվածքը հաճախ Աբրահամ Մամիկոնէից եպիսկոպոսի անունով է և երբեմն էլ անանուն։ Բայց կա նույն գրվածքի մի ուրիշ խմբագրությունը, որի վերնագիրն է «Պատճառ հաւատոյ վասն պատմութեան տիեզերական և ընդհանուր սուրբ ժողովոյն Եփեսոսի»։ Այս գրվածքը հեղինակությունն է Նաքովկ քաղաքի ասորի եպիսկոպոս

Փիլոքսենոսի, որ ըստ նույն գրության վերնագրի, գրել է այն՝ Հայոց Կոմիտաս կաթողիկոսի խնդրանքով։ Հրատարակված է Պոլիս (Իսքիւտար) 1855, «Երանելւոյն Զենոբայ սրբոյ եպիսկոպոսի ասացեալ ի մեծի չորեքշաբաթի աւուրն ընդդէմ Յուդայի մատնչի» գրքի մեջ, էջ 9—28, այսպիսի վերնագրով. «Երանելւոյն Փիլոքսենոսի Նաբովկայ եպիսկոպոսի Պատմութիւն ժողովոյն Եփեսոսի, ի խնդրոյ Տեառն Կոմիտասայ հայոց կաթուղիկոսի»։ Վեճի առարկա է թե այդ գրվածքը Աբրահամինն է թե Փիլոքսենոսի։ Զարբհանալեան, Հին դպր. 408—409 կարծում է թե Փիլոքսենոսինն է և ապա Աբրահամ անունով մի եպիսկոպոս թարգմանել է հայերենի։ Այս մասին առանձին ուսումնասիրություն ունի Հ. Բ. Սարգիսեան՝ այս վերնագրով. «Աբրահամ Մամիկոնէից եպիսկոպոսի Թուղթ առ Վաչագան և Պատմութիւն վասն ժողովոյն Եփեսոսի», Վենետիկ 1899 (արտատպված Բազմավէպի նույն տարեթվից)։ Իր եզրակացությունն այն է՝ թե Վաչագան Գ. գահակալել է 484 կամ 485 թվին, Աբրահամը եպիսկոպոս է նստել 489 թվին, Փիլոքսենոսը ժամանակակից չէ Կոմիտասին, որ ոչ մի առիթ էլ չուներ նրանից այդ գրվածքը խնդրելու. ուստի հեղինակն է Աբրահամը։—Նորայրի կարծիքով էլ Աբրահամը թարգմանել է Սոկրատի Եկեղեցական պատմությունը (տես Տաշեան, Ցուց. 927)։—Արծր. Բ. բ.—սեռ. Աբրահամու՝ Կանոն. 198, Կղկնտ. Ա. իե. Աբր. Մամիկ. էջ 1.—բցռ. յԱբրահամայ՝ Գիրք Թղ. ժը, ժթ.—յԱբրահամէ՝ Կղկնտ. Բ. է. Օրբ. իբ (այլ ձ. յԱբրահամայ).—Զամչ. Բ. 222։

— 6. Աբրահամ, ծայրագույն վարդապետ, աշակերտ Պօղոսի, որ էր աշակերտ Ղազար Փարպեցու.—Մ. մաշտ. 336 ա. տես և Տաշեան, Ցուց. 1032 ա։

— 7. Աբրահամ, վանէրէց կաթողիկէ Էջմիածնի. ուրիշ բազմաթիվ հունահայ կրոնավորների հետ ստորագրում է այն ձեռնարկին, որ մատուցել են Աբրահամ կաթողիկոսին՝ խոստանալով չհարել Քաղկեդոնականներին և հավատարիմ մնալ հայ եկեղեցուն («607 թ»).—Ուխտ. Բ. լէ. Գիրք Թղ. խ։

— 8. Աբրահամ, վանէրէց Փարպոյ, ստորագրում է նույն ձեռնարկին (տես № 7 ) «607 թ».—Ուխտ. Բ. լէ. Գիրք Թղ. խ։

— 9. Աբրահամ Ա. Աղբաթանեցի, կաթողիկոս Հայոց «607—615 թ». Ռշտունեաց գավառի Աղբաթանից գյուղից էր. եղավ նույն գավառի եպիսկոպոս. Դվինի նշանավոր ժողովում ընտրվեց կաթողիկոս, իբրև հաջորդ Մովսէս Բ. Եղիվարդեցու

(մ. 604 թ), մի այնպիսի ժամանակ, երբ Մօրիկ կայսեր բռնությամբ՝ քանդված էր հայ եկեղեցու միությունը և Վրացիք ու Աղվանները՝ անջատվելով հայ եկեղեցու դավանակցությունից, հարում էին հույն քաղկեդոնական եկեղեցուն։ Աբրահամ կաթողիկոսը աշխատեց վերացնել այս չարիքները՝ Սմբատ Վրկան մարզպանի պաշտպանությամբ։ Նա երեք անգամ թուղթ գրեց Վրաց Կյուրիոն կաթողիկոսին, աշխատելով համոզել և ետ պահել իր մոլորությունից։ Իր ջանքերի շնորհիվ՝ պառակտող հայ եկեղեցին նորից միացավ, Հունահայոց եպիսկոպոսները հավատարմության «ձեռնարկ» տվին Աբրահամ կաթողիկոսին (Գիրք Թղ. էջ 151—152), Աղվանները ետ կանգնեցին հույներից, միայն Կյուրիոնն էր, որ չլսեց և բացարձակ կերպով հարեց Քաղկեդոնի դավանության։ Սրա վրա Աբրահամ. կաթողիկոսը ստիպվեց պաշտոնապես բաժանված հայտարարել վրաց եկեղեցին հայկականից «608 թ», և երկու հարևան ազգերի կրոնական միությունը վերացավ։—Ուխտ. Բ. ա, գ, ե, ը, լ, լե, լը—խա, խգ, խդ, խթ, ծբ, ծգ, կա—կգ, կե, կը—հ. Սեբ. իե, լա, Եղն. եր. 268. Յհ. կթ. հյր. 275. Յհ. կթ. ժէ. Քհնպ. 271. Գիրք Թղ. լը, խբ, ծդ, ծէ. Կղկնտ. Բ. խդ—խը. Ասող. Բ. բ. Կիր. 26, 29. Անանուն ժմ. 13, 14. Մխ. այրիվ. 20. Մխ. անեց. դ, իդ. Օրբ. իա, իդ, իե, ծա, հա. Օրբ. հկճռ. ժբ. Վրդ. լա, լբ. Միխ. աս. իթ (=իը). Սամ. անեց. 76, 77, 79, Սիմ. ապար. 96, 105 (երկու անգամն էլ կոչում է Աբրահամ Ռշտունի).—սեռ. Աբրահամու՝ Կնիք հաւ. 139. Ուխտ. Բ. ե, ը, թ, իէ, լ, լդ, լզ, լէ, խ, խա, խգ, խե—ծա, ծգ, ծդ, կ—կգ, կը—հ. Յհ. կթ. ժէ. Գիրք Թղ խ—խբ, խդ, խե, ծ—ծդ. Մխ. անեց. իդ. Ասող. Բ. բ. Կղկնտ. Բ. խէ. Քհնպ. 271. Օրբ. իե, ծա. Կիր. 26, 29. Միխ. աս. իթ. (=իը).—Աբրահամայ՝ Ուխտ. Բ. ե. Յհ. կթ. հյր. 275.—բցռ. յԱբրահամայ՝ Ուխտ. Բ. ե, խբ, կէ. Գիրք Թղ. լթ, խգ, խդ, ծ, ծե. Կղկնտ. Բ. խթ (Շահն.)—յԱբրահամե՝ Ուխտ. Բ. լբ, լե, խդ, Կղկնտ. Բ. խթ (Լմին). Մամիկ. ա. Օրբ. իե.—գրծ. Աբրահամաւ՝ Օրբ. կը. —ածանցմամբ՝ յԱբրահամեան տանէ՝ Սեբ. լը, Յհ. կթ. ժէ. Մխ. անեց. իդ. Քհնպ. 271. Յհ. կթ. հյր. 275. Ասող. Բ. բ.—Չամչ. Բ. 302—324, Ազգապ. 615—658, տես և Տաշեան, Ցուց. 172 բ, 358 ա. Վրաց աղբ. Ա 37, 44, 78, 80 (կոչում է Արխառնեցի, այսինքն Ռշտունեցի), Ակինեան, Կյուրիոն կթղ. Վրաց, էջ 149—157 և 229—256։

— 10. Աբրահամ Ա. պատրիարք Երուսաղեմի. Նախապես

Երուսաղեմի հայոց առաջնորդն էր. 622 և 626 թվերին արաբներից ֆերման ստացավ Մուհամմեդ մարգարեի անունով։ Օմար — իբն — էլ — Խաթթաբ ամիրապետը (634—644) գրավեց 635 թվին Դամասկոսը, 636 թվին ամբողջ Ասորիքը և 637 թվին Երուսաղեմում, Սողոմոնի տաճարի տեղում մի մզկիթ շինել տվեց, որ կոչվում է Օմարի մզկիթը։ Հայերը և հույները ներկայացան Օմարին և խնդրեցին որ իրենց հոգևոր պետին պատրիարքության իրավունք տա։ Օմարը մերժեց հույներին, որով Երուսաղեմի հունաց պատրիարքությունը, որ սկսել էր 30? թվին, դադարեց 637 թվին։ Ընդհակառակը, հայերը սիրելի դառնալով Օմարին, ստացան նրանից առանձին և անկախ պատրիարքության հրովարտակ։ (Մինչև այժմ էլ կա Օմարի արաբերեն հրովարտակը, որ անշուշտ կեղծիք է)։ Օմարը որոշեց նաև հայոց կալվածները. Ս. Յակոբեանց վանքը իր կալվածներով հայոց ձեռքը մնաց։ Օմարը Բեթղեհեմի Ծննդեան տաճարի վրա աղոթելով՝ հրամայեց որ տաճարը հայոց սեփականություն գրվի և արգելվի որ երեքից ավելի մահմեդականներ այնտեղ մտնեն։ Հրաման տվեց հայերին կոչնակ զարնելու և ասորիներին, ղպտիներին և հաբեշներին հայոց պատրիարքության իրավասության ենթարկեց։ Իսկ հույները զրկվեցին պատրիարքությունից, մինչև որ 29 տարի հետո, նոր դիմում արին և ստացան պատրիարքության իրավունք։ Տրված արտոնությունների մի մասը անշուշտ ուշ ժամանակից է, որ հայերը վերագրել են Օմարին։ Այսպեսով Երուսաղեմի հայ և հույն պատրիարքությունները բաժանվեցին, որոնց վրա պիտի ավելանար հետո՝ նաև լատինական պատրիարքությունը։ Երուսաղեմի հայոց առաջին պատրիարքն է ուրեմն Աբրահամ Ա., որ նստել է «638—669 թ» և Ալի ամիրապետից (656—661) էլ ստացել է պաշտոնապես պատրիարք տիտղոսը։—Ազգապ. 1828։

— 11. **Աբրահամ**, եպիսկոպոս Սիւնեաց, հաջորդեց Մաթուսաղային, նրա մահվանից 8 տարի հետո (Է դար).—Օրբ. իԹ, հա։

— 12. **Աբրահամ** (կամ Աբտաւազդ), վանահայր Արծկէի Երաշխաւոր վանից. հյուրընկալեց Վահան Գողթնացուն (Ը դար). —Յայսմ. մարտ 28 (տես և Տաշեան, Ցուց. էջ 576 ա), Վկ. գողթ. 34, 55, 77։—Ձեռ. Վեննա. Բ. 498։ Ավելին տես Աբտաւազդ անվան տակ։

— 13. **Աբրահիմ**, որդի Ղեթայ, որին նվաճեց Բաբան պար-

ախկը՝ 830 թ. (գրված է այսպես՝ արաբական ձևով. ավելին է, թե մահմեդական իշխան).—Կղկնտ. Գ. ի։

— 14. Աբրահամ Բ. պատրիարք Երուսաղեմի «885—909» (ըստ Աղաւնունի)։

— 15. Աբրահամ, վանահայր Վանեվանուց՝ 903 թվին.— Օրբ. լգ, Սիսական 61։

— 16. Աբրահամ, եպիսկոպոս, քարոզիչ Իսլանդիայի. տես Պետրոս (ԺԱ. դար)։

— 17. Աբրահամ դոմաստիկոս, հույն. 1141 թվին հունարենից հայերենի թարգմանեց Ոսկեբերանի ներբող Լուսավորչի. այս ներբողը ապա սրբագրեց Ներսես Շնորհալին.—Ոսկ. ներբ. լա. էջ 826, Տաշյան, Ցուց. էջ 610 բ, Ցուցիկք, Բ. 57—61. Ձեռ. Վենետ. Բ. 572։

— 18. Աբրահամ ոմն, իր ծախսով շինեց Անիի պարսպի բուրգերից մեկը՝ ի հիշատակ իր ծնողների. Թվում է իր արձանագրությունը՝ 1160 թվից.—Շիրակ 41։

— 19. Աբրահամ, եպիսկոպոս Կարուց. ժամանակակից Ներսես Շնորհալու. երբ Աբրահամը վախճանվեց, Կարսեցիք ընտրեցին նրա ազգական Խաչատուր քահանային և ուղարկեցին Ներսեսի մոտ, որպեսզի եպիսկոպոս ձեռնադրի նրան. և որովհետև միայն կաթողիկոսն ունի իրավունք եպիսկոպոս ձեռնադրելու, ուստի ձեռնադրությունը պետք է դնել «1166—1173» թվերին, երբ նստում էր Ներսեսը։ Ալիշան, Այրարատ 76 դնում է նախքան 1167 թիվը. Թվում է ուրեմն դնել 1166 թ., երբ մեռել է Աբրահամը և ձեռնադրվել է Խաչատուրը։

— 20. Աբրահամ Գ. Երուսաղեմացի, պատրիարք Երուսաղեմի «1180—1191 թ». հաջորդեց Սահակին։ Այս ժամանակ Եգիպտոսում զորացել էր Սալահադդին սուլթանը, որ Երուսաղեմը գրավեց և լատինական թագավորության, որ 1099 թվին սկսելով ու արաբների հետ անդուլ կռիվներով մինչև այն ժամանակ իր գոյությունը պահել էր, վերջ տվավ։ Սալահադդինը Երուսաղեմ մտնելու ժամանակ՝ տեսնելով բարձր ու հոյակապ մի տաճար, որ իր փառավորությամբ Երուսաղեմի բոլոր շենքերը գերազանցում էր, կարծեց թե Օմարի մզկիթն է և երկրպագեց նրան։ Իսկույն լուր տվին իրեն թե դա հայոց Ս. Յակոբայ վանքն է։ Սուլթանը զայրանալով, որ հայոց վանքին երկրպագել է, հրամայեց կործանել։ Այն ժամանակ, հայերը, մեծ ու փոքր, կին ու երախա լալով աղաչելով ընկան Սալահադդինի ոտքը և նրա գութը

*հայցեցին։ Սուլթանը սրտաշարժվեց, ինքն էլ լաց եղավ և վանքը հայոց թողեց։ Իր հրամանը արաբերեն լեզվով արձանագրված տաճարի դռան վրա, մնում է մինչև այժմ։*

— 21. **Աբրահամ** *եպիսկոպոս, առաջնորդ Ղազարու վանից (1204 թ.).—Հայապ. 450—451։ Սրա հետ անշուշտ նույն է՝*

— 22. **Աբրահամ**, *առաջնորդ Ղազարու վանից Մշոյ՝ 1205 թ. —Ձեռ. Վեննա. Բ. 473։*

— 23. **Աբրահամ** *Լոռեցի, հայր Խաչերեսի, որ իր այգին, երեք տուն և 7 խանութ նվիրեց Բագնայրի Ս. Աստուածածին վանքին, 1209 թ.—Այրարատ 61, Շիրակ 117։*

— 24. **Աբրահամ**, *կազմարար. կազմել է Հաղբատի նշանավոր Ավետարանը, 1211 թ.—Գ. արք. Յովս. Նիւթեր և ուս. Ա. 15, 42։*

— 25. **Աբրահամ Գանձակեցի.** *սրա արդար վաստակից՝ իր եղբայրը Մխիթարիչ Գանձակեցի շինեց մի արձան, նրա հոգու փրկության և հիշատակի համար, Անիում, 1215 թ.—Շիրակ 41։*

— 26. **Աբրահամ Դ.** *պատրիարք Երուսաղեմի, հաջորդեց Մինասին. նստել է «1205—1218 թ». այս թվին հրաժարվեց՝ գահը հանձնելով Առաքելին («1218—1230 թ»)։*

— 27. **Աբրահամ** *երէց, որդի Սարկաւագ քահանայի, թոռն Սամուէլ երէցի Անեցւոյ (որին Ալիշան համարում է ծանոթ պատմագիրը). երկու նորաշեն տուն և երկու խանութ նվիրեց Խծկօնից վանքին, 1233 թ.—Շիրակ 128։*

— 28. **Աբրահամ** *վարդապետ. առաջնորդ Նոր-Գետիկ վանուց. հաջորդեց Յովասափին (1233 թվից հետո).—Կիր. ժե։*

— 29. **Աբրահամ** *առաջնորդ Բագնայրի, հաջորդեց Սիմէոնին (1240-ական թվերին).—Գ. արք. Յովս. Նիւթեր և ուս. Ա. 17։ Հիշատակվում է Բագնայրի 1262—1266 թվերի մի քանի արձանագրությանց մեջ, որ տես Շիրակ 116, 119։*

— 30. **Աբրահամ** *երէց, թվի թե Արճէշի երկրաշարժին անդընդասույզ եղավ՝ 1275 թ.—Ձեռ. Վեննա. Ա. 427։*

— 31. **Աբրահամ**, *առաջնորդ Ապլխընկալ վանից Արճէշի, 1281 թ.*—Manus. brit. mus. *8 բ։*

— 32. **Աբրահամ** *քահանայ, որդի Հայրուտի, ծնողների հիշատակին կանգնեցրեց մի խաչքար, Գյոլքյանդ (Ճագիւղ) գյուղում, 1284 թ.—Սիսական 54։*

— 33. **Տէր Աբրահամ**, *տեսուչ գաւառին Քաջբերունեաց, Ցարութիւն գյուղում Սահմադինից հող ստացավ և շինեց Ս.*

Աստուածածին և Ս. Յարութիւն եկեղեցիները, 1291 թ.—Սարգըսեան, Տեղագրութ. էջ 268։

— 34. Աբրահամ, վանահայր Կամրջաձորի. հաջորդեց Կիրակոսին (ԺԴ դար).—Այրարատ 549։

— 35. Աբրահամ, եպիսկոպոս Ղազարու վանից Տարօնոյ. հիշված է 1306 թվին.—Առաք. պատմ. 483։ Հմմտ. № 21—22։

— 36. Աբրահամ եպիսկոպոս, առաջնորդ Հարք գավառի, 1316 թ.—Ձեռ. Վեննա. Ա. 466։

— 37. Աբրահամ կրօնաւոր, գրիչ. օրինակեց մի Աստուածաշունչ, Լիմ կղզում, 1315 թ.—Ձեռ. Կարին. 14։

— 38. Աբրահամ աբեղայ միայնակեաց, միաբան Սկևռայ վանից. սրա համար Ստեփաննոս գրիչը Սկևռայ վանքում օրինակեց մի Ժողովածու 1321 թ. (տես Նորայր, Կորիւն վրդ. էջ 421)։ Նույնը Սիսուան, էջ 107 կոչվում է Վարք սրբոց՝ գրված 1324 թ.—իսկ ըստ Bodleian 71 Աբրահամ աբեղան Սկևռայ վանքում, Ստեփաննոս դպրին գրել տվեց Պրոխորոն գիրքը, 1324 թ.։

— 39. Աբրահամ, առաջնորդ Յովհաննավանից, 1352 թ.—Այրարատ 172, 174, Ջքր. սարկ. Գ. 30։

— 40. Աբրահամ եպիսկոպոս, աթոռակալ առաջնորդ մի վանքի, որի անունը չէ հիշատակված (1355 թ.).—Ձեռ. Վասպ. էջ 209։

—41. Աբրահամ՝ արքեպիսկոպոս, առաջնորդ Մերդինի Թուփին մենաստանի։ «Սովորութիւն էր մեր եկեղեցւոյս, որ հանապազ ծայրաքաղ աւէրին սաղմոս, վասն որոյ արքեպիսկոպոսն մեր տէր Աբրահամ վառեալ աստուածային նախանձու և սիրոյ Սաղմոսիս, եբարձ զայն սովորութիւն, և սահմանեաց բոլոր և ի վերայ գրոցս երգել զսաղմոսս՝ ըստ առաջին սրբոցն աւանդութեանն»։ Սրա համար էլ նույն վանքի միաբան Վարդ քահանային գրել տվեց մի Սաղմոս, որի թղթի գինն էլ ինքը տվեց, 1356 թ.—Ձեռ. Վեննա. Ա. 186։

— 42. Աբրահամ, «փեսայ» (որ է քեռայր) Յակոբ սարկավագ գրչի, որ օրինակել է Կիւրղի Կոչումն ընծայութեան (շուրջ 1358 թ).—Ձեռ. Թաւր. 28 բ։

— 43. Աբրահամ քահանայ Ծաղկաղբիւրցի (Հոռմկլա), որդի Հեթում քահանայի. ստացավ իր հորից մի Աւետարան, որ գրել էր Յովհաննէս գրիչը 1357 թվին և որ ինքը կազմել տվեց Ուռհա քաղաքում, Կարապետ աբեղայի ձեռքով, 1365 թ.—Ձեռ. Վեննա. Ա. 613—614։

— 44. Աբրահամ Ա. կաթողիկոս Աղթամարի. ունի միայն Հաւաք. 60, երբ հաջորդ Ներսէս Փոլատի և նախորդ Յովհաննէս Դ-ի. Օրմանեան և Ակինեան չեն ընդունում. և իրոք Դաւիթ Գ-ից հետո, որ մեռավ 1368-ին և Զաքարիա նահատակից առաջ, որ գահ բարձրացավ 1369-ին, Հաւաքարանը դնում է 14 կաթողիկոս, որոնք տեղ չունին։

— 45. Աբրահամ, դատավոր Հայոց Լեհաստանի, 1356—1378 (REA 7, 71)։

— 46. Աբրահամ աբեղայ, աշակերտ Գէորգ վարդապետի Երզնկացւոյ. սրա համար էր, որ Յակոբ Ղրիմեցին օրինակեց մի ձեռագիր (Համառօտ հաւաքումն յաղագս հոգւոյ և զօրութեանց նորին, Յաղագս առաքինութեանց հոգոյն, Վասն բնութեան հրեշտակաց), Եկեղեաց Կապոսի վանքում, 1389 թ.—Ձեռ. Սևան 40բ։

— 47. Աբրահամ եղբայր Սահակ քահանայի, որ ստացավ 1244 թվին գրված մի հին Աւետարան, 1389 թվին։—Ձեռ. Վենետ. Ա 652։

— 48. Աբրահամ Կամենիցացի, որդի պարոն Սինանի, որ շինեց Կամենիցի Ս. Նիկողայոս եկեղեցին, 1398 թ.—Կամենից, էջ 160։

— 49. Աբրահամ, հայր տանուտեր Դանիէլի, որ գրել տվեց մի Աւետարան, Աղթամար 1399 թ.—Ձեռ. Վասպ. 234։

— 50. Աբրահամ Բ. կաթողիկոս Աղթամարի. ունի միայն Հաւաք. 61, երբ հաջորդ Ղևոնդ Դ-ի և նախորդ Թադէոս Գ-ի. Օրմանեան և Ակինեան չեն ընդունում. և իրոք Զաքարիա Բ-ից հետո, որ նահատակվեց 1393 թվին, մինչև Զաքարիա Գ, որ գահ բարձրացավ 1434 թվին, ընդամենը 41 տարվա մեջ, Հաւաքարանը դնում է 30 կաթողիկոս, որոնցից 15-րդն է Աբրահամ Բ։

— 51. Աբրահամ եպիսկոպոս Երուսաղեմի. հիշված է Մեսրոպ եպիսկոպոսի հետ. «և յեպիսկոպոսութեան սուրբ քաղաքիս Երուսաղեմայ Տէր Մեսրոպայ և Տէր Աբրահամին» (Նոտարք 19)։ Հրատարակիչը՝ Փիրղալէմեան, դնում է 1402 թ., թեև յիշատակարանը ոչ մի թվական չունի. միայն դրվում է Կարապետ կաթողիկոսի ժամանակ։ Ճիշտ է որ Կարապետ Ա. կաթողիկոսը գահակալել՝ է 1392—1404 թվին, բայց այդ թվերին Երուսաղեմի պատրիարքն է Սարգիս Բ Եգիպտացի, որ նստել է «1394—1415 թ»։ Մեսրոպ անունով պատրիարք Երուսաղեմի ունինք «1454—1461 թ», որին ժամանակակից է Կարապետ կաթողիկոս Կիլիկիայ 1446—1477։ Ըստ այսմ վերոհիշյալ Մեսրոպ եպիսկո-

պոսը պետք է համարել Երուսաղեմի նույն պատրիարքը (1454—1461), իսկ Աբրահամը՝ նրա աթոռակից Աբրահամ Ե Մշեցին, որ տես։

— 52. Աբրահամ Անտերոն (Abraynus Anteron)․ Նախապես բնակվում էր Տրապիզոնում, վենետիկցոց ամրոցում․ ապա անցավ Վենետիկ, ուր խնդրեց ծերակույտից՝ 80 հայ ընտանիք գաղթեցնել Տրապիզոնից և Սեբաստիայից Կրետե և Նեկրոպոնտ կղզիները (1414 թ).—Հայ-Վենետ. 176։

— 53. Աբրահամ, հայր Մարտիրոս կրոնավորի, որ Բաղեշի Գոռ գյուղում գրել տվեց մի Ցայսմավուրք, 1418 թ.—Նոտարք, էջ 55։

— 54. Աբրահամ, եղբայր Մկրտիչ քահանայի, որ գրել տվեց մի Ճաշոց Աղթամարում, 1419 թ.—Նոտարք 58։

— 55. Աբրահամ կրոնավոր, Թումա աբեղային գրել տվեց մի Ավետարան, Պարկայ վանքում, 1419 թ.— Ձեռ. Վասպ. էջ 317։

— 56. Աբրահամ աբեղա. կազմարար. Շաթխոյ գավառի (=Շատախ) Ծղկունք գյուղում կազմեց ու նորոգեց մի Ժողովածու, 1420 թ.— Տաշեան, Ցուց․ 666 բ։

— 57. Աբրահամ, հոգևոր եղբայր Եղբայրիկ գրչի, որ օրինակել է մի Ավետարան, 1420 թ.—Ձեռ. Վասպ. 322։

— 58. Աբրահամ, միաբան Պարկի վանքի (Ոստան), 1420 թ.—Ձեռ. Վասպ. 324։

— 59. Աբրահամ կրոնավոր, ծաղկող․ նկարազարդեց մի Ավետարան, որ գրեց Մկրտիչ վանահայրը՝ Տէր Ցուսկան որդու վանքում, 1420 թ.—Նոտարք 61։

— 60. Աբրահամ եպիսկոպոս, առաջնորդ Մերդինի, 1426 թ․—Նոտարք 81։

— 61. Աբրահամ, ստացող․ Թումայի հետ միասին, Մարտիրոս քահանային գրել տվին մի Ճաշոց, Սխգայ գյուղում, 1427 թ.—Նոտարք 83։

— 62. Աբրահամ, վանահայր Մաղարդու վանից, իր հոգևոր որդի և «աշակերտ բանի» Դանիէլ կրոնավորի համար՝ Գրիգոր Արծկեցի գրչին գրել տվեց մի Ավետարան, Շամբի ձորի Մաղարդայ վանքում, 1427 թ.—Ձեռ. Վենետ. Ա. 413—414, Սիսական 518 բ։

— 63. Աբրահամ կրօնաւոր, ստացող․ Աղթամարում, Թու-

մայ աբեղային գրել տվեց մի Ավետարան և նվիրեց Գառնկի վանքին, 1428 թ.—Նոտարք 88։

— 64. Աբրահամ վարդապետ. ծաղկող. նկարազարդեց մի Ժամագիրք, Մեծոփի վանքում, 1432 թ.—Ձեռ. Մխնխ. 19 ա։

— 65. Աբրահամ աբեղայ, որ Յովհաննէս հաքիմի առաջնորդութեամբ կազմեց մի Բժշկարան, 1438 թ.—Տաշեան, Ցուց. էջ 740։

— 66. Աբրահամ աբեղայ, գրել տվեց Մաղաքիա աբեղային՝ մի Ավետարան, Սուրխաթ (կամ Կաֆա) քաղաքում, 1439 թ.—Նոտարք 120։

— 67. Աբրահամ, միաբան Այրիվանից (մոտ 1441 թ).—Այրարատ 346։

— 68. Աբրահամ աբեղայ, դասավար Եկեղեաց գավառի Ս. Լուսաւորիչ վանքի (Սեպուհ լեռ), 1442 թ.—Նոտարք 129։

— 69. Աբրահամ կրօնաւոր, միաբան Ոստանի Գոլկի վանից. առաջնորդեց Կարապետ քահանային գրելու Գանձարանը, 1444 թ. նույն թվին էլ վախճանվեց Աբրահամը.—Ձեռ. Նորբայազ. 40 բ։

— 70. Աբրահամ, աշակերտ Յովհաննէս վարդապետի և միաբան Սեպուհ լեռան Լուսաւորչայ վանքի, 1445 թ.—Նոտարք. 135։

— 71. Աբրահամ կրօնաւոր, Արճէշում Խալիֆայ քահանային գրել տվեց մի Ավետարան, 1446 թ.—Նոտարք 153։

— 72. Աբրահամ, առաջավոր հայոց Ամիթի. օգնեց Ս. Թէոդորոս եկեղեցու շինության (1447 թ).—Հայապ. 574։

— 73. Աբրահամ Ե Մարցի, պատրիարք Երուսաղեմի. ըստ Ազգապ.(հավելվածի ցանկը) գահակալել է 1441—1454 թվերին։—Ձեռ. Թաւր. 72 բ հիշատակութիւնից երևում է, որ Աբրահամ Մարցին, եպիսկոպոս Երուսաղեմի, եղել է Թավրիզում, 1444 թ.—ըստ այսմ պետք է փոխել պատրիարքության թվականը և ավելի ճիշտ համարել «1445—1454» թվականը, որ տալիս է Ազգապ. 2143։ Աբրահամ Ե հաջորդեց Յովհաննէս Ե-ին. մահմեդականների հափշտակության առաջքն առնելու համար՝ դիմեց Եգիպտոս և 1450 թվին Սուլթան-էլ-Զահիր-Աբու-Մուհամմեդ-Սայիդ-էլ-Զաքմաքից հաջողեց մի ֆերման ձեռք բերել, որով Սուլթանը անեծքներով արգելում էր Իսլամներին՝ Հայոց Ս. Յակոբեանց վանքի դեմ որևէ հարստահարություն. ոչ ոք չպիտի համարձակվի այդ վանքից որևէ իր կամ տուրք վերցնել։ Պատրիարքը այս ֆերմանը

փորագրել տվեց վանքի դռան վրա, ուր մնում է մինչև այժմ։ (Ըստ Ադամյանի, գահակալել է 1441—1454 թ)։

— 74. Աբրահամ, մեծ հայր կամ պապ Յովհաննէս քահանայի, որ Մոկաց Փառավանք գյուղում գրել տվեց մի Ավետարան, 1455 թ.—Ձեռ. Վասպ. 421։

— 75. Աբրահամ, որդի Յովհաննէս տանուտերի, որ իր եղբայր Յովհաննէս քահանայի հետ՝ Մոկաց Փառավանք գյուղում գրել տվեց մի Ավետարան, 1455 թ.—Ձեռ. Վասպ. 422։

— 76. Աբրահամ վարդապետ, գրիչ. օրինակեց Ագաթանգեղոսը Աղթամարում, 1457 թ.—տես Տաշեան, Ագաթանգեղոս ու Գէորգայ, էջ ժ։

— 77. Աբրահամ Անկիւրացի, մականուն Ղափլան (Թրք. «վագր»), տաղասաց ԺԵ դարի. Պոլսում էր, երբ Օսմանցոց Սուլթան Մեհեմմեդ Ֆաթիհը գրավեց այդ քաղաքը (1453 թ). այս առթիվ Աբրահամը, իբրև ականատես, գրեց մի ողբ, որ տպված է Նշխարք մատենագրութեան Հայոց, հրատ. Պատկանեան, Պետերբ. 1884։ Գրվածքի վերջին տներն են՝

Ես Աբրահամ մեղօք լցեալ,
Բազում ցաւօք զողբս յօրինեալ,
Թանզի զԿոստանդնուպոլիս
Ի բարութեան ժամն եմ տեսեալ։
Երեք ամիս անդ եմ կացեալ,
Եւ զարքութիւն ուխտ արարեալ,
Եւ զպատմուճանն Քրիստոսի՝
Բազում անգամ աչօք տեսեալ։

Իր անունը հիշված է Ղափլան՝ Նշխ. մատ. 64, 66, սեռ. Աբրահամու՝ անդ, էջ 59.—տես և Զարբ. Նոր մատ. 169, Տաշեան, Ցուց. 895, 913, Հայապ. 126։

— 78. Աբրահամ վարդապետ, «սպասաւոր սրբոյն Թումայի առաքելոյ գերեզմանին» (Ռշտունեաց գավառում, Գանձակ գյուղի մոտ), միաբան Աղթամարի, 1457 թ.—Նոտարք 186։

— 79. Աբրահամ, մեծ հայր Մատթէոս քահանայի, որ գրել տվեց մի Ճաշոց, Անաւարզա քաղաքում, 1466 թվին.—Ձեռ. Հալէպի, Ա. 235 բ։

— 80. Աբրահամ վարդապետ, միաբան Պոնտոսի (Տրապիզոնի) Ամենափրկիչ վանքի. նորոգեց և երկրորդ անգամ կազմեց 1269 թվին գրված մի Ավետարան՝ 1467 թ.—Ձեռ. Վենետ. Ա. 497։

— 81. Աբրահամ քահանա, հայր Մկրտիչ քահանայի, որ Բիւրականի մենարանում օրինակեց մի Ժողովածու, 1469 թ.—Ձեռ. Վենետ. Բ. 1113։

— 82. Աբրահամ եպիսկոպոս, առաջնորդ Սեբաստիայի (1469 թ).—Ձեռ. Սեբ. (ՀԱ 1929, 11)։

— 83. Աբրահամ քահանա Մարցի, աշակերտ և հոգևոր որդի Թադէոս սարկաւագի, որ Երուսաղեմի մօտ Ս. Սաբայի վանքում գրեց մի Աւետարան, 1455 թ. և ապա՝ 1471 թվին նվիրեց նույն Աբրահամ քահանային, երբ դեռ նորընծա էր.—Ձեռ. Հալէպի, Ա. 59։

— 84. Աբրահամ վարդապետ, միաբան Երուսաղեմի Ս. Սաբայի վանքի. հիշվում է իբրև վկա 1471 թ.—Ձեռ. Հալէպի, Ա. 59։

— 85. Աբրամ սարկավագ, որդի Ցարաճի, որ գրել տվեց մի Աւետարան, Հալէպում, 1478 թ.—Ձեռ. Հալէպի, Ա. 96 բ։

— 86. Աբրահամ աբեղայ Բոլորաձորեցի. գրիչ. օրինակել է Մանրուսմունքի մի ձեռագիր, 1484 թ.—Տաշեան, Ցուց. 855։

— 87. Աբրահամ, աշակերտ Ներսէս եպիսկոպոսի, նշանավոր փորագրիչ և քանդակագործ. Սևանի միաբան Դանիէլ վարդապետի հրամանով, 1486 թվին, ծաղկենկար քանդակել է Սևանի Առաքելոց տաճարի նշանավոր ընկուզե դուռը, որ այժմ Երևանի Պետական Թանգարանումն է.—Սիսական, էջ 84 և Սմբատեանց, Գեղարքունի, էջ 120 (երկու տեղումն էլ կա նույն դռան նկարը, բայց թվականը սխալ կարդալով դրված է 1557. պետք է ուղղել «Ջ Հայ Թուականի ԼԵ Թիւ աւելի», որ է ՋԼԵ=1486)։

— 88. Աբրահամ Զ. Բերիացի, պատրիարք Երուսաղեմի, 1479—1485 թ. հաջորդել է Մկրտիչ Իլովցուն, որին աթոռակից էր եղել նախապես. իր աթոռը թողեց Յովհաննէս Թավլիլին (Աղաւնունի).—ուրիշներ Մկրտիչին հաջորդ են դնում ուղղակի Թավլիլին և Աբրահամին չեն ճանաչում։ Աբրահամը կենդանի էր մինչև «1492 թ»։

— 89. Աբրահամ, ազգական Յովհաննէս քահանայի, որ գրել տվեց մի Աւետարան, Բերկրիի Առեղս գյուղում, 1488 թ.—Ձեռ. Վասպ. 508։

— ·0. Աբրահամ հայր Խաչատուրի, որ գրել տվեց մի Աւետարան, 1500 թ.—Ձեռ. Նոր-Բայազ. 29 բ։

— 91. Աբրահամ կրօնաւոր, ծաղկող. միաբան Բոլորաբեր-

դի անապատում, Սրկղունիք գյուղ. հիշված է ԺԵ դարի վերջը (հմմտ. № 86).—Սիսական 130 բ։

— 92. Աբրահամ քահանայ, հայր Առաքել կաթուղիկոսի Աղվանից (ԺԵ դար)—Հայապ. 126։

— 93. Աբրահամ, տաղասաց. ունի Ծննդեան վրա մի երգ, որ սկսվում է «Այսօր խորհուրդ մի մեծ յայտնեալ»։ Արդյոք Աբրահամ Անկիւրացի՞ն է (№ 77) թե մի ուրիշը.—Տաշեան, Ցուց. 866 բ։

— 94. Աբրահամ շէկ կամ դռնարար. ունի հանելուկներ (իբր ԺԶ դար կամ ավելի առաջ).—Տաշեան, Ցուց. 480 աբ։

— 95. Աբրահամ Գ. կաթուղիկոս Աղթամարի. ունի միայն Հաւաք. 63, իբրև հաջորդ Գրիգոր Թ-ի և նախորդ Յովհաննէս Ը-ի (ԺԶ դար). Օրմանեան և Ակինեան չեն ընդունում.—Կեղծիք։

— 96. Աբրահամ քահանայ. Ուռհայում նահատակվեց Ղարաեազիճի ձեռքով՝ 1600 թ.—Սամ. անեց. շար. 176=Առաք. պատմ. 490, Նոր վկ. 422։

— 97. Աբրահամ Գ. կաթուղիկոս Աղթամարի, հաջորդեց Գրիգորիսին՝ «1610 թ».—Հաւաք. 63, Ազգապ. 2393.

— 98. Աբրահամ Աթար, վաճառական հալէպցի, դարձավ կաթոլիկ և իր դավանակից Յակոբ վրդ. Յովսէփեանի հետ երկար ժամանակ Պաղեստին և այլուր պանդխտելուց հետո, քաշվեցին Լիբանան, ուր պաշտպանություն գտնելով կաթոլիկ Մարոնիներից, հիմնեցին Անտոնեան միաբանությունը՝ ս. Անտոն աբբայի անունով, 1705 թ.—Փափազեանց, Պատմ. եկեղ. 945։

— 99. Աբրահամ վարդապետ. կազմել է Գրիգոր Տաթևացու աշակերտ Գէորգ, Դաւիթ և Յակոբ վարդապետների Լուծմանց և Մեկնութեանց հաւաքածուն՝ Դիոնեսիոս Արիսպագացւոյ գրոց, 1733 թ.—Կնիք հաւատոյ, յոլ. 34։

— 100. Աբրահամ Բ Մշեցի, կաթուղիկոս հայոց «1730—1734 թ», հաջորդեց Կարապետ Բ-ի. աշակերտ ու եղբորորդին էր Գրիգոր Շղթայակրի, որ կարգել էր նրան Մշու Ս. Կարապետ վանքի առաջնորդ։ Էջմիածնում շինեց երկու խորան, փռատուն ևն։ Մեռավ 1734 թ. նոյ. 11 և թաղվեց Գայիանէի վանքում։ Կոչվում է նաև Խոշաբեցի, ըստ որում ծնված էր Խոշաբ գյուղում, նաև Քիւրդիստանցի, համարելով Խոշաբը Քիւրդիստանում։ Զարմանալի է որ մի տպագիր հիշատակարանում Աբրահամը կաթուղիկոս է հիշվում ՌՃՀ=1721 թվին (տես REA 6,

85).—Աբր. կրետ. 2—8, Մ. մաշտ. 336 բ. Ձամչ. Գ 805—806, Ազգապ. 2871--2882, Տաշեան, Ցուց. 1031։

— 101. **Աբրահամ Գ Կրետացի**, կաթուղիկոս Հայոց «1734—1737 թ». հաջորդեց Աբրահամ Բ-ին. ծննդյամբ Կրետացի էր, Կանդիա քաղաքից, մայրը հույն. Նախապես Ռոդոսթոյի առաջնորդն էր եղել և այդ պաշտոնը վարել էր ամբողջ 25 տարի, որի համար էլ կոչվում էր նաև Թէքիրդաղցի կամ Թրակացի։ Թահմազ-Ղուլի խանը այդ միջոցին Օսմանցոց ձեռքից գրավել էր Թիֆլիսը, Գանձակը, Երևանն ու Էջմիածինը։ Պարսից մեծամեծներին հավաքելով Մուղանի դաշտը, նա մի մեծ հանդես սարքեց և իրեն թագավոր պսակել տվեց Նադրշահ անունով։ Թագադրության հանդեսին ներկա էր նաև Աբրահամ կաթուղիկոսը, որ օրհնեց Նադրշահի սուրը և իր ձեռքով կապեց նրա մեջքին։ Սիրելի դառնալով թագավորին (թագավորը կոչում էր նրան «հայր»), նրա միջոցով կարողացավ թեթևացնել հայ ժողովրդի վիճակը, բռնի մահմեդականացած հայերին ազատեց, վանական հափշտակված կալվածները ետ ստացավ ևն։ Թողել է «Պատմագրութիւն անցիցն իւրոց և Նատրշահին», տպ. Էջմիածին 1870, ուր դրված է նաև նրա անունով մի Կոնդակ և «Պատմութիւն Անի քաղաքի»։ Մեռավ 1737 ապր. 18 և թաղվեց Շողակաթի վանքում։ Զարմանալի է որ տպագրված մի գրքի հիշատակարանում, 1738 թվին դեռ կենդանի է հիշվում (տես REA 6, 135)։—Աբր. կրետ. յուշ. հատկապես էջ 1, 19, 93, 101. Մ. մաշտ. 336 բ. Ձամչ. Գ. 806, 818. Ազգապ. 2878—2914. Զարբ. Նոր մատ. 184—186. Տաշեան, Ցուց. 24, 680—683, 1031։

— 102. **Աբրահամ Արծիւեան**, ծնվել է Անթապ քաղաքում, 1678 թ. դեռ 12 տարեկան էր, երբ կրոնական կարգ ընդունեց. Սսում կաթուղիկոսարանի գանձապահ և քարտուղար էր. Պետրոս կաթուղիկոսից վարդապետ ձեռնադրվեց (1706 թ.) և հետո եպիսկոպոս Բերիայի (1710 թ)։ Ընդունելով կաթոլիկ դավանանքը և քարոզելով ժողովրդի մեջ՝ Պոլիս կանչվեց և երկու անգամ աքսորի դատապարտվեց։ Լիբանանի կաթոլիկ հայոց միջոցով ազատվելով՝ քաշվեց Լիբանանի լեռները և ապրեց նրանց վանքի մեջ՝ մինչև 1738 թիվը։ Այս ժամանակ Բերիայի հայ կաթոլիկները առանձին եկեղեցի ձեռք բերին և Աբրահամի համար ազատության հրովարտակ հանելով՝ հրավիրեցին նրան Բերիա։ Այստեղ մի քանի կուսակիցներ հավաքեց և Բերիայում հայտարարեց իրեն կաթուղիկոս Կիլիկիայի «1740 թ», որի համար գնաց

Հռոմ և պապից հաստատություն ստացավ «1742 թ»։ Վերադարձավ Լիբանանի վանքը, ուր մնաց մինչև իր մահը «1749 թ»։ Կոչվում է Աբրահամ-Պետրոս Ա. և կաթոլիկ հայոց առաջին հովվապետն է։—Փափազեանց, Պատմ. եկեղեցական, 946—948, Ազգապ. 2943. ընդարձակ կենսագրությունը գրել է իտալերեն լեզվով՝ Davidian, Biografia di Abramo Pietro I, Cairo 1861։

—103. **Աբրահամ** Երևանցի. պատմիչ ԺԸ դարու. իր մասին կենսագրական տեղեկություններ չկան. թողել է «Պատմութիւն պատերազմաց» անունով մի գործ, ուր պատմում է Շահ Թահմազի և Նադիր շահի ժամանակ տեղի ունեցած պատերազմները՝ Պարսից և Օսմանցոց միջև՝ 1721—36 թվերին. տպված է Երևան 1938 թ.—Այրարատ 286, Հայապ. 136։

— 104. **Աբրահամ** վրդ. Աստապատցի. հիշատակագիր. մի Ավետարանի ետևում գրել է Աղա Մահմադ խանի արշավանքի պատմությունը, 1796 թ. որ հրատարակեց А. Тумановъ, Сборн. Матеріаловъ, հտ. 29, էջ 3—6, Ձեռ. Ագուլ. (Արար. 1911, էջ 122—127)։

—105. **Աբրահամ** եպիսկոպոս Գոլեան, Տաթևացի. էջմիածնի նվիրակ էր Պոլսում և իր հավաքած գումարները իր ուզած ձևով էր գործածում։ Յովհաննէս Բաբերդցի Զամաշըրճեան պատրիարքը ամիրաների կողմից հրավիրված լինելով հրաժարական տալու, իրեն հաջորդ նշանակեց Աբրահամ Գոլեանին՝ իբրև պատրիարք Պոլսի «1813 թ»։ Ավելորդ խստությամբ և անզորությամբ անցկացրեց իր ժամանակը և ամենքին էլ դժգոհություն պատճառելով՝ պաշտոնանկ եղավ «1815 թ»։ Իրեն հաջորդեց Պօղոս Ադրիանապոլսեցին։—Ազգապ. 3417, 3434։

—106. **Աբրահամ** վարդապետ. փոքր մատենագիր. ունի Մեկնութիւն Հայր մերի.—ժամանակն անհայտ.—Զարբ. Հին դպր. էջ 777։

*ԱԳԱԴՈՐՈՆ, ար. < հուն. իբր *'Ἀγαθόδωρον, որ նշանակում է «բարետուր». տես **Ագաթոն**։

*ԱԳԱԹԱ, իգ. < հուն. 'Ἀγαθή (որից լտ. Agathe) իգական անունից. այս էլ ծագում է ἀγαθός, իգ. ἀγαθή «բարի, լավ» բառից. իբրև իգական անուն գործածական է նաև հույնաց և լատինների մեջ. հայտնի է, օրինակ՝ լտ. Agathe (ֆրանս. Agathe)=հյ. **Ագաթի** կույս նահատակ, Սիկիլիայի Պալերմո քաղաքից, նահատակված 251 թ. (Յայսմ. փետր. 5)։ Անսովոր անուն է. մեր մեջ

գտնում եմ միայն մի անգամ հիշված 1796 թվին (Էֆիմ. 448 Ակասա ձևով) և մի անգամ էլ՝

— Ագապա, ապլա ոմն Բրգնիկցի, հիշված ԺԷ դարից հետո (Տաշեան, Ցուց. 874 բ).—Բրգնիկը Սեբաստիայի գյուղերից է, կաթոլիկ հայ բնակչությամբ. ուստի այդ անունն էլ լատիններից անցել է նրանց։

*ԱԳԱԹԱՆԳԵՂՈՍ, ար. < հուն. Ἀγαθάγγελος, որ նշանակում է «բարի հրեշտակ» (Հիւբշ. 333). հմմտ. Ագաթանգեղոս հույն նահատակը. «Որոյ անունն էր Ագաթանգեղոս, որ թարգմանի հայերէն՝ բարի հրեշտակն» (Ցայսմ. յնվ. 24)։ Ուրիշ հույն կամ հռոմայեցի անձեր այս անունով՝ քաղված արձանագրություններից, տես Սարգիսեան, Ագաթանգ. էջ 2 ծան.։

— 1. Ագաթանգեղոս, քարտուղար Տրդատ թագավորի. ազգով հռոմայեցի. մանկությունից սովորել էր լատիներեն և հունարեն. Տրդատը բերեց նրան իր հետ Հռոմից Հայաստան. գրեց Տրդատի և Լուսավորչի պատմությունը, ըստ Սեբէոսի նաև Հայկազանց պատմությունը և Արշակունիների ժամանակագրությունը մինչև Տրդատ։ Ըստ նորագույն քննության՝ Ագաթանգեղոսը Ե դարում ապրող հայ հեղինակ է, որ այս անվան տակ թաքնված՝ տալիս է մեզ զանազան վկայաբանական ու պատմական գրվածքներից մի նոր խմբագրություն։ Լեզուն Ե դարի առաջին կեսի ոսկեդարյան ընտիր հայերեն է, ճոխ ու պերճ, բայց հաճախ մութ և խրթին, նման Կորյունի, Փավստոսի և Եւթաղի։ Մեծ նշանակություն է ունեցել հայոց դարձի պատմության համար և հին ժամանակ թարգմանվել է հունարենի և արաբերենի։ Կա նաև վրացական խմբագրություն։ Նոր ժամանակ թարգմանվեց լատիներեն, իտալերեն, ֆրանսերեն։ Հայերեն հնագույն հրատարակությունն է Պոլիս 1709, իսկ վերջին լավագույն հրատարակությունը՝ Տփղիս 1909։—Ագաթանգեղոսին էր ընծայվում նաև «Դաշանց թուղթ» կոչված գրությունը, որ կաթոլիկական կեղծիք է և որի նպատակն է ցույց տալ թե հայ եկեղեցին ի սկզբանէ անտի կաթոլիկ և Հռոմի պապին հպատակ է եղել։ Կան այս առթիվ զանազան քննադատական գրվածքներ, որոնցից նշանավոր է Կ. վ. Շահնազարեանի քննությունը, տպ. Փարիզ 1862։ Գրքիս եզրակացությունն է հետևյալ կծու բառախաղը. «Դաշանց թուղթը—դա շանց թուղթ է»։ —Ագաթ. § 12. Փարպ. ա—գ. Խոր. Բ. կէ, հդ, հթ, ձ, ձգ, ձզ. պատմ. հռիփ. էջ 298. Սեբ. ա. Ցհ. կթ. ը. Գիրք թղ. ղէ. Մխ. անեց. ե. Ասող. Ա. ա. Ջեն.

19, 22. Կիր. 2. Վրդ. ժե. Խոսր. 143. Մագ. թղ. ե. Մխ. այրիվ. 37, 60. Տաթև. ձմ. ղէ. Սամ. անեց. 3. Զքր. սարկ. Ա. 1, 3, Գ. 3. —Ագաթանգեղ՝ Օրբ. ը. Տաթև. հարց. 549.—Ագաթանգեղոս՝ Տաթև. ձմ. զզ.—սեռ. Ագաթանգեղեայ՝ Ագաթ. §§1, 18 (Ագաթանգեղայ). Կնիք. հաւ. 303.—Ագաթանգեղոսի՝ Այրիվ. 20 բ. Օրբ. գ. Թղթ. դաշ. 30.—Ագաթանգեղայ (ոտանավորի չափի համար կրճատված)՝ Սիմ. ապար. 29.—Ագաթանգեղոյ՝ Կղկնտ. Բ. ա (ըստ Էմինի հրատ., իսկ ըստ հրատ. Շահն. Ագաթանգեղեայ).— ի յԱգաթանգեղայ պատմութեանցն՝ Խոր. պտմ. հռիփ. 303.—բցռ. ի յԱգաթանգեղոսէ՝ Սիմ. ապար. 17։—Ագաթանգեղոսի կյանքի ու գործի մասին տես Զարբ. Հին դպր. էջ իա և 202—233. մասնավոր ուսումնասիրություններից հիշենք Հ. Բ. Սարգիսեան, Ագաթանգեղոս և իւր բազմադարեան գաղտնիքը, Վենետիկ 1890. այս մասին մի լուրջ քննադատություն ունի Դուրեան, Ուսումն. և քնն. Երուսաղէմ 1935, էջ 83—108) և ավելի լավ՝ Տաշեան, Ագաթանգեղոս առ Գէորգայ ասորի եպիսկոպոսի, Վիեննա 1891։

— 2. Ագաթանգեղ, քարտուղար Խաչիկ Ա կաթողիկոսի Հայոց. ստորագրում է այն կոնդակին, որ նույն կաթողիկոսը տվել է Բարսեղ եպիսկոպոսին Նախավկայի առաջնորդ կարգելու թվին՝ 976 թ.—Արրտ. 1868, էջ 34։

3. Ագաթանգեղոս էր կոչվում նաև Շողակաթի եկեղեցին շինող Նախիջևանցի Աղամալի չորս որդիներից մեկը (մյուսներն են՝ Ալբերդիոս, Աղէքսանդրոս, Խարիսիմոս), ինչպես հիշատակված է նույն եկեղեցու արևմտյան դռան վրայի արձանագրության մեջ, 1694 թվից (Այրարատ 236)։

*ԱԳԱԹՈՆ, ար. < հուն. Ἀγάθων անունից, որ ծագում է ἀγαθός, չեզ. ἀγαθόν «լավ, բարի» բառից։ Այս անունով հայտնի են Հունաց մեջ Ագաթոն որդի Պրիամոսի (Իլիականում), Ագաթոն ողբերգակ բանաստեղծ և զանազան ուրիշ անձեր։ Սրանից են փոխառյալ լտ. Agatho, սեռ. Agathonis, ռուս. Агафон են։ Մեր մեջ ունինք հին ձևով Ագաթոն (տես տակը), կամ Ագաթան, որ հիշված է 1905 թ. (Ազգագ. 5352), նոր ձևով Աղաթոն, որով հայտնի է Մկրտիչ Աղաթոն, ազգային գործիչ Պոլսում, 1847 թ. (Ազգագ. 3818), ռուսերենին համապատասխան ձևով էլ Ագաֆոն (Ազգագ. 3862)։

— Ագաթոն (կամ Ագաթորոն, որ տես վերը), կեղծանուն հեղինակ, անշուշտ հայ, թաքնված նույն անվան տակ. ունի մի գրվածք «Վասն ժամանակին որ յայտնելոց է...» (հրատ. Բազմ.

1913, էջ 396—400), որի մեջ գուշակում է թե պիտի գա մի օր Վաղարշակ արքայ ոմն, որ պիտի վանե Նետողաց ազգը և հուր գետից մինչև Պոլիս պիտի տիրե։ Նույնը Ագադրոն անունով՝ «Տեսիլ Ագադրոնի վասն ազգին Նետողաց» վերնագրով տես Ձեռ. Բեռլինի, 59 բ։ Սխալ գրված Ակատրոն (Acatron) և դարձած մարգարե, որ գուշակել է իր մահվան անկողնում՝ Նետողների արշավանքը (ըստ Ռուբրուք կամ Ռուբրիկեզ սպանացի ճանապարհորդի ԺԳ դարու, տես Ուղեգրութ. Ա. 16, 21 և Հ. Բարսեղ Սարգիսեան, Ուս. հին կտ. անվաւեր գրոց, էջ 179)։ Նույնը Roger Bacon գրում է Akaton, անշուշտ Մեսրոպ երեցի Ս. Ներսէսի Պատմութեան ազդեցութեամբ, որի ձեռագիրը կազմըված պիտի լիներ Ագաթանգեղոսի հետ։ Ագադրոն անհաղթ փիլիսոփայի մասին խոսում է դարձյալ Սարգիսեան, իր վերոհիշյալ գործի մեջ, էջ 174—219, ուր այն կարծիքն է հայտնում, թե Հայոց Ագադրոնը Մեթոդիոսի մի նոր խմբագրությունն է՝ կազմված Հայոց մեջ և ժամանակակից է Յովհաննէս Կոզեռնի տեսիլքին։

*ԱԳԱՊԷՍ, ար. < հուն. Ἀγάπιος անունից (ըստ Հիւբշ. 333). հմմտ. Ագապիոս հայրապետ Հռոմի և Ագապիոս եպիսկոպոս՝ անդամ Անտիոքի ժողովի։ Կա նաև Ἀγαπαῖος բռնակալ Եւբէայի։ Բոլորն էլ ծագում են ἀγάπη «սէր», ἀγαπάω «սիրել» բառերից։ Այս անունով ունինք միայն՝

— Ագապես եպիսկոպոս. քուրմի որդի էր. Լուսաւորիչը սովորեցրեց նրան քրիստոնեական ուսումը և ապա եպիսկոպոս ձեռնադրեց (Դ դար).—Ագաթ. 845 (նույն անձը Ագաթանգեղոսի արաբական խմբագրության մեջ, էջ 72, կոչվում է Խաբիբա և դրվում է եպիսկոպոս Սուսբարետացւոց (=Սպեր)։

*ԱԳԱՊԻ, իգ. < հուն. ἀγάπη «սէր» բառից, որ նաև Հռմաց մեջ իգական հատուկ անուն էր. հայտնի են օրինակ՝ Ագապի կույս Թեսաղոնիկեցի և Ագապի դուստր Սոփիայի (սրանք երեք քույր էին, Պիստոս, Էլպիս, Ագապի, որ է «հավատք, հույս, սէր» և նրանց մայրը՝ Սոփիա «իմաստութիւն». տես Յայսմ. և Աւգերեան, Լիակ. վրք. սրբ. Դ. 398)։ Մեր մեջ Ագապի հիշված կա ԺԷ դարից (տես Ակզապ. 2364). սովորական անուն էր Պոլսում ԺԹ դարում, որից էլ Ագապեան ազգանունը։ Հայտնի էր օրինակ՝ Պոլսի Սամաթիա թաղում Ագապեան օրիորդաց դպրոցը, որ մեծ արժանիք ունեցավ աղջկանց դաստիարակության գործում։ Այժմ այս անունը խափանված է։

*ԱԳԳԷ, ար. < ասոր. ܐܓܝ Aggai, որի վրա տես Ագգէ անվան տակ։ Հնուց ավանդված չէ և ուշ ժամանակ կա միայն՝

— Ագգէ, տաղասաց նոր ժամանակներից. ունի Տաղ ի վերայ ս. Էջմիածնայ, որ սկսում է «Անճառելոյ Հօր միածին, փառօք լուսով Աստուածածին» (տես Տաշեան, Ցուց. 1008 բ)։ Բայց այդ ժամանակ ինչպե՞ս կարող էր գտնվել ասորական ձևը։

*ԱԳՆԷՍ, իգ. < հուն. ἁγνή «մաքուր, պարկեշտ» բառից, որ անցավ լատիններենի և իգական անձնանուն դարձավ Agnes ձևով։ Ժողովրդական դարձավ սրբուհի Agnes-ի անունով, որ 13 տարեկան հասակում նահատակվեց, Դիոկղետիանոս կայսեր ժամանակ, 303 թվին։ Մեր մեջ մի անգամ ունինք հիշատակված ԺԳ/ԺԴ դարում. անցյալ դարում բավական գործածական էր Պոլսում (հմմտ. մի հիշատակություն 1796 թվից՝ Էփրմ. 448)։ Այժմ խափանված է։

— Ագնէս դուստր Զաբելի (կամ Զապլունի)՝ քույր Հեթում Բ-ի և կին Լևոն Դ-ի՝ թագավորի Կիլիկիոյ. ամուսնացել են «1301 թ». (այսպեսով Լևոնը ամուսնացել է իր հորաքրոջ աղջըկա հետ)։—Ալիշան, Հայ—Վենետ. 90, Սիսուան 543 բ, Ազգապ. 1763։

*ԱԳՐԻՊՊԱՍ, ար. < հուն. Ἀγρίππας ձևից, որ իր հերթին փոխառյալ է լտ. Agrippa անունից։ Այս անունը սովորական էր Հռովմայեցոց մեջ. հնագույնն է Agrippa, որդի Տիբերինոսի, թագավոր Ալբայի։ Ծագում է agrippa ածականից, որ նշանակում է «ոտները առաջ ծնված»։ Ըստ Vendryes BSL 23, 21 առաջանում է agra «ծայր, դեպի առաջ» և p- «ոտք» բառերից։ Նախնական ժողովուրդները առանձին ուշադրություն էին դարձնում ծննդյան հանգամանքներին և նրանցից գուշակություններ հանում նորածնի ապագայի վերաբերմամբ։ Ագրիպպաս անունը մեզ ծանոթ է դարձել Ս. Գրքի միջոցով, ուր ունինք Ագրիպպաս արքայ, որ Բերենիկէի հետ «եկին ի Կեսարիա յողջոյն Փեստոսի» Գծ. իե. 13։ Այս անունը մեր մեջ ոչ հնից է ավանդված, ոչ էլ այժմ սովորական է։ Քիչ անգամ գործածվում էր Պոլսում (հնչվում է Ակրիպպաս)։ Այս անունն էր կրում օրինակ՝ Պետրոս Դուրեանի կրտսեր եղբայրը, որ հայտնի փաստաբան էր։

*ԱԴԱՄ, ար. < եբր. אדם Adām անունից. որոշիչ հոդով האדם Hādām. այս անունով էր կոչվում ըստ Ս. Գրքի մարդկության նախահայրը՝ Ադամ նահապետ։ Եբրայականից տառադարձու-

թյամբ անցել է շատ ուրիշ լեզուների, ինչպես՝ հուն. Ἀδάμ, լատ. Adam, արաբ. آدم Adam, ռուս. Адам. բուն նշանակում է «մարդ, մարդ էակը». հմմտ. սումեր. ádam «կենդանի էակ» (Autran, Sumer. et ind. էջ 152)։ Հները կարծում էին թե բուն նշանակությունն է «հող». հմմտ. «Ադամն կաւ ասի և Եւայն օձ» (Յայսմ. մրտ. 14)․ «Ադամ (նշանակէ) երկիր» (Տաթև. հարց. 299). նաև արաբ. آدم Adām «Ադամ նախահայրը, որ ասորական բառ է և բուն նշանակում է հող» (Կամուս, Գ. էջ 390)։ Հներից քիչ է ավանդված, այժմ էլ սակավ է գործածական և հնչվում է Արտմ, Հաքամ։

— 1. Ադամ (կամ Ասալ) Արծրունի, որի որդին՝ Եսայի ասպետը գրեց Յունան և Բարաքիաս (մ. 327) նահատակների ընդարձակ վկայաբանությունը, որ և անցավ հունաց, լատինաց և հայոց Յայսմաւուրքի մեջ (մարտ 20—21)։—Ալիշան, Լիակ. վրք. սրբ. ԺԲ 296։

— 2. Ադամ, գրիչ. օրինակել է Գանձարանը՝ Արծկէ քաղաքում, 1466 թ.—Ջեռ. Կարին. 28, Նոտարք 223։

— 3. Ադամ, կաթուղիկոս Աղթամարի 1496—1510 թ. սովորաբար կոչվում է Ասոմ, բայց կա նաև Ադամ անունով. այսպես օրինակ՝ Ջեռ. Վասպ. 637 (1509 թվին)։

— 4. Ադեմ (համաձայն թրք. Adem հնչման), հիշված է 1572 թ.—Թորոս Աղբար, Բ. 299։

— 5. Տեր Ադամ (կամ Տէր Ադամեան). այսպես էր կոչվում Յովհաննէս Զ Հաճնցի, կաթուղիկոս Կիլիկիայի (1730—1731). տես Յովհաննէս։

— 6. Ադամ, որդի Մելիք Իսրայելի. մելիք Ջրաբերդի. հաջորդեց իր եղբոր Ալլահղուլիի, երբ սա դավաճանաբար սպանվեց Շուշում՝ Փանահ խանի ձեռքով (1756). շատ պատերազմներ ունեցավ Փանահ խանի և Վրաց Թէյմուրազ թագավորի հետ, որոնց հաղթեց. ի վերջո հաշտվեց Փանահ խանի հետ՝ միջնորդությամբ Գանձակի Շահվերդի խանի, որ իր բարեկամն էր։ Մեռել է 1780 թ.—Րաֆֆի, Խամսայի մելիքութ. 18, 81, 90, 102 ևն։

— 7. Ադամ (կամ Ազբար-Ադամ), աշուղ ԺԹ դարի. երգել է Ակոռիի կործանումը (տես Գաման-Քաթիպա, Ազգ. երգարան 1856, էջ 139)։

— 8. Ադամ Նախաշով, աշուղ ԺԹ դարի. իր երգերից տես Գաման-Քաթիպա, Ազգ. երգարան, 1856, էջ 126։

*ԱԴԴԷ, ար. < ասոր. ܐܕܝ Addai անունից (Հիւբշ. 289). հրեական անուն է. հմմտ. Միխ. աս. 101. ըստ Լաբուբ. յոյն. էջ ժգ և Տաշեան, Ցուց. էջ 1053 ա Թադէոս առաքյալի ասորական անունն է։ Այս անունով մեր պատմության մեջ հիշվում են միայն՝

— 1. Ադդե եպիսկոպոս. նախապես Աբգար թագավորի մետաքսագործը և խույրարարն էր. Թադէոս առաքյալը ձեռնադրեց նրան Եդեսիայի եպիսկոպոս. նահատակվեց Անանունի ձեռքով (36 թ. ըստ Չամչ. Ա. 295).—Խոր. Բ. լգ, լդ. Յհ. կթ. դ. Ուխտ. Ա. լե, խ. Պատմ. թագ. 60. Կանոն. 215. Գիրք թղ. ղը. Մխ. անեց. ժե, ի. Ասող. Ա. ե. Յայսմ. դեկտ. 21, 23, 31. Տաթև. ձմ. ղէ. հարց. 546, 548.—գրված Ադե՝ Միխ. աս. իթ (=իը). Շիր. քրոն. 37.—սեռ. Ադդեի՝ Խոր. Բ. լգ, լե. Ուխտ. Ա. խ. Մխ. անեց. ի. Ասող. Ա. ե. Արծր. Ա. գ. ճշ. 739. Յայսմ. դեկտ. 21.—բցռ. յԱդդեէ՝ Ուխտ. Ա. խ.—նաև Թադդե՝ Զքր. եպս. 279։—Ըստ Լաբուբ. յոյն. էջ ժգ ասորի բնագրում այս Ադդէն կոչվում է Ագգե, որ է ասոր. ܐܓܝ Aggai. շփոթվելով նախորդի հետ՝ դարձել է Ադդէ (Հիւբշ. 289). տես և Ալգեր. Լիակ. վրք. սրբ. ժ. 141—144, Տաշեան, Վարդ. առաք. էջ 198 (ըստ այսմ ասորականում Թադէոս առաքյալի անունն է Ադդե, եպիսկոպոսի անունն է Ագգե. հայերենում երկուսն էլ դարձան Ադդե)։

—2. Ադդե, հոգևոր որդի Աստուածատուր աբեղայի. սկսնակ գրիչ էր Կեչառուքում (1184 թ).—Այրարատ 266—267. Հայապ. 399։

*ԱԴԵԼԱՅԻԴԱ, իգ. նորամուտ եվրոպական անուն.=ֆրանս. Adélaïde, գերմ. Adelheit են. հայտնի է օրինակ՝ Ադելայիդա կայսրուհի, կին Օթոն մեծ կայսեր. նշանավոր եղավ իր բարեպաշտությամբ. հիմնեց վանքեր ու եկեղեցիներ. մեռել է 999 թ. (Փափազեանց, Պատմ. եկեղ. 418)։ Կա նաև սրա կրճատ ձևը՝ Ադել < ֆրանս. Adèle, ռուս. Адель. հայտնի է օրինակ՝ Լատին եկեղեցում սրբուհին Ադել (շուրջ 734 թ)։

*ԱԴԻԲԷԳ, ար. < թրք. آديبك Adibeg, որ բուն նշանակում է «անունը բեգ» և ըստ իմաստի համապատասխանում է Իսմիխան անունին, որ տես։ Հմմտ. նաև Ադիխաթուն և Ադիփաշա։ Հաստատ թվականով գործածված է 1578 թ. (Ձեռ. Վասպ. էջ 11), 1626 թ. (Ձեռ. Դադեան, Բ. 32 բ)։ Կա նաև անթվական մի հիշատակարանում (Ձեռ. Սևան. 6 ա), որ գրված է 1490 թվից ուշ։ Երեքն էլ արևմտահայ տառադարձությամբ գրված Ատիբէկ կամ Ատիպէկ՝ Գործածական է այժմ էլ Կովկասում։

*ԱԴԻԼԽԱՆ, ար. < թրք. عادلخان Adilxan անունից, որ կազմըված է արաբ. عادل ʿādil «արդար, արդարադատ»+պրս. خان xān «խան, իշխան» բառերից: Հին հիշատակություն չունինք. բայց Կովկասում կա սրանից Ադիլխանեան ազգանունը: Տե՛ս նաև Էդիլ, Էդիլբէգ, Էդիլշահ անունները:

*ԱԴԻԽԱԹՈՒՆ, իգ. < թրք. آدی خاتون Adixatun, որ կազմված է ad+xatun բառերից և նշանակում է «անունը խաթուն (տիրուհի)»: Այս իմաստով համապատասխանում է Ադիբէգ, Ադիփաշա և Իսմիխան անուններին (տե՛ս այս անունները), որոնց իգականն է: Գործածված եմ գտնում երկու անգամ հետևյալ ձևով.

— 1. Ատիխաթուն, հիշված է 1475 թվից ուշ գրված անթվական մի հիշատակարանում.—Ձեռ. Մաշն. 35 (գրված է «քույրն ի խուրասի Խաթուն». Հրատարակիչը, էջ 38, անվանացանկում դնում է Իւրասի՝ իբրև հատուկ անուն! պետք է կարդալ «քույրն իւր Ատիխաթուն»):

— 2. Ատիխաթուն, հիշված է Բասենում, 1570 թ.—Ձեռ. Վենետ. Ա. 672:

*ԱԴԻՄԵԼԷՔ, իգ. < թրք. آدی ملك Adimelek, որ կազմված է թրք. آد ad «անուն» և արաբ. ملك malak «հրեշտակ» բառերից և նշանակում է «հրեշտականուն, անունը հրեշտակ» (ապա երկրորդ բառը շփոթված և դարձած melik «մելիք»):

— Ադմէլիք (իմա Ադիմէլէք), քույր Յովհաննէս կրոնավորի, որ գրել տվեց մի Ավետարան, Բերկրիում, 1422 թ.—Ձեռ. Վասպ. էջ 347:

*ԱԴԻՓԱՇԱ, իգ. < թրք. آدی پاشا Adipaša ձևից, որ կազմված է ad+paša բառերից և նշանակում է «անունը փաշա» (Փաշա անունը թե՛ արական է և թե իգական): Այս իմաստով համապատասխանում է Ադիբէգ, Ադիխաթուն և Իսմիխան անուններին, որ տե՛ս: Գտնում եմ մի անգամ, արևմտահայ տառադարձությամբ՝

— Ատիփաշա, հիշված անթվական մի հիշատակարանում (Bodleian 147):

ԱԴՈԼԻՈՍ, ար. այս անունը Justi, Iran. Namenbuch 5 բ, իրանական է համարում և համեմատում է Adalyā իրանական անվան հետ, որ գործածված է Եսթեր Թ. 8 եբրայական բնագրում (նույն թարգմանության մեջ դրված է Βαρσα և սրա հետևողությամբ էլ հայերենում Բարսա): Ծագումն անհայտ է:

— Ադոլիոս ('Αδόλιος), որդի Ակակիոս պրոկոնսուլի, հայ,

զօրավար հեծելազօրաց Բելիսարիոսի. ընկավ Անգլոնի ճակատամարտում (543 թ).—Հիշում են Պրոկոպիոս, Թէոփանէս և Կեդրենոս (Justi 5 բ)։

*ԱԴՈԼՖ, ար. նորաձուտ եվրոպական անուն. < ֆրանս. Adolphe ձևից, որ է գերմ. Adolf, հինը իբր Edel-wolf «ազնըվական գայլ». համմտ. Գուրգէն, որ նշանակում է «գայլի ձագ»։

ԱԴՈՆ, որ և Ադդոն, Ադդոս կամ Դոմնէս. տառադարձված է յն. Ἄδων, (Սարաբոն Հայոց մասին, էջ 59), Ἄδδων, Ἀδώρ, լտ. Addon, Adduus, Donnes, Domnes ձևերով (Դիոն են).— Justi էջ 5բ համեմատում է փռյուգ. Ἄδων անվան հետ (մի սըրընգահար) և ուզում է կցել սեմ. ادون adōn «տէր» բառին։ Այս անունով ունինք՝

— Ադոն, բերդապահ Արտագերսի, կարգված էր Արտաւազդից. խաբեությամբ հրավիրեց Հռովմայեցոց Գայիոս զորավարին պարսպի մոտ՝ իբրև թե գաղտնի խոսելու համար։ Մատուցեց նրան մի թուղթ և կարդալու միջոցին չարաչար վիրավորեց նրան ու փախավ։ Հռովմայեցիք պաշարեցին բերդը, շուրջը կրակ վառեցին և գրավեցին։ Ադոնը տեսնելով որ թշնամու ձեռքը պիտի ընկնի, պարսպից ցած՝ կրակի մեջ գցեց իրան։ Հռովմայեցիք բռնեցին և սպանեցին (2 թվին)։ Վերքից մեռավ նաև Գայիոսը, որ Օգոստոս կայսեր սիրելի թոռն էր ու հույսը. ուստի մեծ սուգ պատճառեց կայսերական ընտանիքին։ Սրա վրա հռովմայեցիք զայրացած՝ ոչ միայն մեծ տուգանք դրին, այլ և բերդի պարիսպները քանդեցին։—Չամչ. Ա. 280—281, Գրգշ. Բ. 189, Լէօ, Ա. 450, Այրարատ 57։

*ԱԴՐԱԶԱՐ կամ ավելի լավ՝ ԱԴՐԱԱԶԱՐ, ար. < եբր. הדרעזר Hadarʻezer ձևից, որ սակայն ד և ר տառերի նմանությունից առաջացած վրիպակ է և պետք է ուղղել ըստ արձանագրության՝ הדדעזר Hadad-ʻezer (Gesenius, էջ 174 բ)։

— Ադրազար, որդի Արայի, թագավոր Ծոփաց, որի դեմ արշավեց հրեից Դավիթ թագավորը (մ. Ն.Ք. 1083) և հաղթելով՝ 20,000 հետևակ և 7000 ձիավոր սպանեց և 1000 պատերազմական կառք ավար առավ (Յովսեպոս պատմիչ, գիրք Է, գլուխ Ե 1, գրված Ἀδράζαρος τὸν Ἀράου μὲν υἱὸν).—ՀԱ 1930, 165։ ‖ Ս. Գրքում կոչվում է «Ադրազար որդի Ռովաայ, արքայ Սուբայ» և շրջակա երկրների, մինչև Եփրատ։ Դամասկոսի ասորոց հետ միացած՝ կռվեց Դավթի դեմ և երեք անգամ հաղթվելով՝ նըվաճվեց (Բ Թագ. Ը, Ժ, Գ Թագ. ԺԱ, Ա Մնաց. ԺԸ, ԺԹ)։

*ԱԴՐԱՄԵԼԷՔ, ար. < եբր. ادرملك Adram-melek, որ է ասորեստանցոց լեզվով Ադար-մալիք և նշանակում է «Ադար իշխան է» (Սանդալճեան, Ասորեստ. սեպագիր արձ. էջ 62)։

— 1. Ադրամելէք, որդի Սենեքերիմ թագավորի Ասորեստանցոց։ Հրեից Եզեկիա թագավորի դեմ ձախող արշավանքից հետո, երբ Սենեքերիմը դարձավ Նինուէ, նրա երկու որդիները՝ Ադրամելէք և Սանասար, վախենալով թե գուցե զոհվեին Նեսրաք աստուծուն, սպանեցին իրենց հորը և փախան Հայաստան (3295 թ. ըստ Չամչ. Ա. 98=Ն.Ք. 681 թ)։ Սկայորդի՝ Հայոց նահապետը, ընդունեց նրանց և բնակեցրեց Հայաստանի հարավային կողմերում (Դ Թագ. ժԹ. 37, Ես. լէ. 38, Տոբ. Ա. 24)։ Այս երկուսից սերվեցին Արծրունի և Գնունի նախարարությունները և Սասունք։ Կոչվում է նաև Արգամոզան (որ Նորայր ուղղել է Արդամոզան. տես Մալխասեան, Թրգմ. Խոր. ծան. 77)։— Մխ. անեց. գ. Սամ. անեց. 46.—սեռ. Ադրամելայ՝ Խոր. Ա. իգ. —կոչված է Աբիմ՝ Միխ. աս. դ.—Աբդիմելէք՝ Պատմ. մծբ. 63 և Ձեռ. Վենետ. Բ. 23.—բցռ. յԱդրամոզանէ՝ Սամ. անեց. 46։

—2. Ադրամելէք Արծրունի. հաջորդ Տիգրան Արծրունու. ժամանակակից էր Պարսից Քսերքսէս թագավորին (485—465 Ն.Ք.) —Արծր. Ա. գ։

— Ավելի ուշ Ադրամելիք անունը գործածական է դարձել Վասպուրականի շրջանում. այսպես ունինք Ասրամելիք ոդ̃ Մոկացի, 1638 թվին (Ձեռ. Վասպ. 828) և Անգրամելիք Վանեցի, 1689 թվին (Ձեռ. Վասպ. 971=975)։

*ԱԴՐԻԱՆՈՍ, ար. < հուն. ’Αδριανός և այս էլ լտ. Adrianus կամ ավելի հին Hadrianus ձևից, որ նշանակում է «Ադրիական ծովից կամ Hadria քաղաքից»։ Այս անունով հայտնի են պատմության մեջ՝ Ադրիանոս կայսր Հռոմայեցոց 117—138, Ադրիանոս Ա պապ 772—795, Ադրիանոս Բ պապ 867—872, Ադրիանոս Գ պապ 884—885, Ադրիանոս Դ պապ 1154—1159, Ադրիանոս Ե պապ 1276 թ., Ադրիանոս Զ պապ 1522—1523 թ։ Այժմ անգործածական է. իսկ հնից ավանդված է միայն երեք անգամ։

— 1. Ադրիանոս Սպերցի, հայ պատրիկ՝ հունաց կայսերական պալատում. սրա աղջիկը Հեղինէ՝ ամուսնացավ հունաց Ռոմանոս Լիկապէն հայազգի կայսեր որդի Կոստանդինի հետ, որ կայսեր գահակիցն էր։ Ըստ այսմ Ադրիանոսը կայսրորդի Կոստանդինի աներն էր։ Միացավ Բարերդի իշխող Վարդան վուլի հետ և երկուսով ապստամբեցին կայսեր դեմ. բայց հաղթվեցին

Յովհան Գուրգէն հայազգի զորավարից (935 թ).—Զամչ. Բ. 817, 825։

— 2. Ադրիանէ. արտագրել է Կաղանկայտուացու Պատմութիւնը կամ Վենեիկի տեսիլքը. իր լուսանցագրութիւնն է, որ իբրև մաս Պատմության, մտել է բնագրի մեջ։—Կղկնտ. Բ. գ։

— 3. Անդրիանոս (այսպես Ն հավելվածով), հայր տանուտեր Յովհաննէսի, որ Վան քաղաքում գրել տվեց մի Մաշտոց՝ 1418 թ.—Տաշեան, Ցուց. 383 բ։

*ԱԶԱԹԼՈՒ, իգ. < Թրք. عزتلو izzetlu «մեծարգո, մեծահարգ» (կազմված է արաբ. عزت ʻizzat «փառք, պատիվ, մեծություն» բառից՝ -lu «-ավոր» թուրքական մասնիկով)։ Իբրև իգական անուն գործածված եմ գտնում մեր մեջ մի անգամ ԺԷ դար (Ձեռ. Գեորգ. № 613)։

*ԱԶԱՄԱԹ, իգ. < արաբ. عظمت ʻazamat «մեծություն, պերճություն, վեհություն»։ Իբրև իգական անուն գտնում եմ գործածված մեր մեջ միայն երկու անգամ.

— 1. Ազամաթ, դուստր Տէրպարոնի, քույր Յովհաննէս վարդապետի, որ Սանահինում գրել տվեց մի գեղեցիկ Շարակնոց, 1497 թ.—ՀԱ 1887, 56 բ։

— 2. Ազամաթ, կին մահտեսի Աւետիսի և մայր՝ Բաղէշի առաջնորդ Մեսրոպ վարդապետի, որ գրել տվեց Վարք հարանցը, 1644 թ. (Տաշեան, Ցուց. 304 ա)։

— 3. Ազամաթ հիշված կա նաև 1635 թ. (Թորոս Աղբար, Բ. 414), 1638 թ. (անդ, էջ 440), 1638-ից ավելի ուշ գրված անթվական մի հիշատակարանում (Ձեռ. Վասպ. 830)։

† ԱԶԱՏ, ար. և իգ. հայերեն ազատ բառն է, որ իրանական փոխառություն է և իրանականում էլ գործածական է իբր հատուկ անուն. ինչպես՝ զնդ. Azāta որդի Karasna-ի, Ազատ՝ Ներքինի Շապուհ Բ Թագավորի և նահատակ, Azād կին սուտ մարգարե Ասվադի (մ. 632) ևն։ Հին հայոց մեջ չէ գործածված։ (Սիսական 498 ա հիշված Ազատ Խորխոռունին պետք է ուղղել Ասատ)։ Հնուց ունինք միայն 1304 և ապա 1498 թվին (տես տակը)։ ԺԶ դարում ունինք 1533 թ. (Ձեռ. Վեննա. Ա. 717—718), 1534 թ. (Ձեռ. Վասպ. 648), 1549 թ. սարկավագ ոմն Ազատ (Ալիշան, Կամենից, էջ 18), 1575 թ. (Թորոս Աղբար, Բ. 410).—ԺԷ դարում ունինք՝ 1630 թ. (Թորոս Աղբար, Բ. 451), 1678 թ. (Միւրմէեան, Պատմ. Հալէպի ազգ. գերեզմ. 29 բ), մի ուրիշ Ազատ ոմն՝ անթվական մի հիշատակարանում, որ գրված

է 1331 թվից ավելի ուշ (Manus. brit. mus. 58 բ) են։—Թերևս այստեղ պետք է դնել նաև 'Αζῶτος ոճն, որ տես տակը։—Մեր դարում, հեղափոխական գաղափարների աձմամբ, ազատ գործածություն ստացավ Ազատ անունը՝ թե արական և թե իգական (վերջինիս համար Պոլսում ստեղծվեց Ազատուհի)։

— 1. 'Αζῶτος (Ազոտոս) հայ հսկա, առաջնորդ հունաց Լևոն Զ կայսեր թիկնապահների․ ընկավ Բուլղարների դեմ պատերազմում՝ Սիմէոն թագավորի ժամանակ (890 թ).—Justi 54 բ (ըստ Կոստանդին Ծիրանածնի)։

— 2. Ազատ քահանա, նկարիչ․ հիշված է 1304 թ.—Bodleian 3։

— 3. Ազատ, որդի Աստղի, որ իր Հարիր կնոջ հետ գրել տվեց մի Ավետարան, Աղբակի Նրնկանի գյուղում, 1498 թվին. —Ձեռ. Վասպ. 527—8։

*ԱԶԱՏԽԱՆ < պրս. آزادخان Azād-xān ձևից․ նշանավոր էր Պարսկաստանում Աֆղանների առաջնորդ Ազատխանը՝ 1747 թ։

— 1. Ազատխան, պր․ որդի Ֆրանգիուլի, որ գնեց մի Ավետարան, 1660 թ.—Ձեռ. Վասպ․ 553։

— 2. Ազատխան, իգ․ հիշված է 1689 թ. (Bodleian 163)։

*ԱԶԱՏՇԱՀ, ար․ < պրս․ آزاد āzād «ազատ»+ شاه šāh «թագավոր» բառերից։ Անսովոր անուն է։

— 1. Ազատշայ, որդի Աստուածատուրի և եղբայր մահտեսի Ստեփաննոսի, որ գրել տվեց մի Յայսմաւուրք, Լիմ կղզում, 1457 թ.—այս թվին Ազատշահը արդեն մեռած էր։—Ձեռ. Թավր. 103 ա։

— 2. Ազատշահ, հիշված է անթվական մի հիշատակարանում, որ գտնվում է 1311 թվին գրված մի Ավետարանում։—Ձեռ. Թավր. 71 ա։

† ԱԶԱՏՈՒՀԻ. նորակերտ իգական անուն, որ կազմված է հյ. ազատ բառից՝ իգականակերտ ուհի մասնիկով (տես վերը՝ Ազատ)։ Պատահական նմանություն ունի պրս. آزاده Azāda՝ Բահրամ Գուրի հարճը (Շահն. Ե. 405)։

† ԱԶԱՏՏԻԿԻՆ, իգ․ < հյ. ազատ+տիկին բառերից կազմված։ Մի անգամ գործածված եմ գտնում ԺԳ դարում։

— Ազատտիկին, մերձավոր Գրիգոր գրչի, որ օրինակեց Ավետարանը Կարինում, 1230 թ. Ազատտիկինը դրամական օժանդակություն էր ցույց տալիս նրան։—Ձեռ. Վեննա. Ս. 573։

*ԱԶԱՐԻԱ, ար․ < եբր․ עֲזַרְיָה ʻAzariāh անունից, որ բուն

նշանակում է «օգնութիւն Աստուծոյ» (կազմված עזר ‘zr «օգնել» և Yāh «Եհովա» բառերից (Gesenius 578—9)։ Այս անունը սովորական էր հրեաների մեջ. հիշենք օրինակ՝ Ազարիա, թագավոր Յուդայի (Ն.Ք. 803—752), Ազարիա՝ Բաբելոնի հնոցը գցված երեք մանուկներից մեկը (Դան. Ա. 6—7)։ Սրանից են փոխառյալ հուն. Ἀζαρίας, լտ. Azarias ևն։ Այս անունը մեր մեջ գործածական է եղել հնուց մինչև այժմ. անցյալ դարում Պոլսում փաղաքշական ձևն էր Ազարիկ. բայց կա նաև Ազար, որ հիշված է 1793 թվին (Տաշեան, Ցուց. 183 ա)։

— 1. Ազարիա, որդի Ենանոս Բագրատունու. Արշամ թագավորը զայրացել էր Ենանոսի վրա և ուզում էր նրա աչքի առաջ սպանել երկու որդիներին. Ենանոսը վախեցավ և թողեց հրեական կրոնը, ինչպես պահանջում էր Արշամը (Ն.Ք. 30—1 ըստ Չամչ.)—Խոր. Բ. իզ. Ուխտ. Ա. ը. Չամչ. Ա. 275։

— 2. Ազարիա, աշակերտ Անանիա Շիրակացու. իր դասընկերներ Հերմոնի, Տրդատի, Եղեկիէլի և Կիրակոսի հետ գնաց Երուսաղէմ և ընդունելով երկաբնակ դավանանքը, դարձան Հայաստան. Անանիան չընդունեց նրանց «713 թ».—Սամ. անեց. 85, Չամչ. Բ. 361, 384, Ազգապ. 814։

— 3. Ազարիա, վանական Եղեգեաց Ս. Գրիգոր եկեղեցու, աշակերտ Ահերմոնի (936 թ).—Օրբ. խթ. Սիսական 125 ա։

— 4. Ազարիա եպիսկոպոս, առաջնորդ Կեսարիայի, 1206 թ.—Ձեռ. Կես. սրբ. էջ 9 բ։

— 5. Ազարիա, թոռ Շահնշահի, որ Գողթան գավառի Կոպատոսի անապատում, Թումայ Արճիշեցուն գրել տվեց Աւետարանը՝ 1336 թ.—Ձեռ. Ազուլ. (Արար. 1911, 387)։

— 6. Ազարիա աբեղա, միաբան Եկեղեաց գավառի Ս. Կիրակոսի անապատի. հիշատակագիր. 1351 թ?—Թորոս Աղբար, Բ. 357։

— 7. Ազարիա քահանա, որդի Կարապետ քահանայի, որ Արճէշում օրինակեց Մաշտոցը, 1437 թ. Նախապես կոչվում էր Ստեփաննոս, երբ դեռ սարկավագ էր. օգնում էր իր հորը՝ գրչության մեջ. քահանա դառնալով՝ եղավ նշանավոր գրիչ.—Նոտարք 112 ծան։

— 8. Ազարիա, գրիչ. Բարթուղիմէոս առաքյալի վանուց առաջնորդ Յովհաննէս արքեպիսկոպոսի համար օրինակեց Յայսմաւուրքը՝ 1438 թ.—Ձեռ. Թաւր. 41—42։

— 9. Ազարիա եպիսկոպոս Գանձասարի, «ասիւր կաթուղի-

կոս Աղուանից». անգամ էջմիածնի աթոռի փոխադրության մեծ ժողովին՝ 1441 թ.—Մեծոփ. յիշ. ա. Զամչ. Գ. 487։

— 10. **Ազարիա** երէց, օգնական Ղազար գրչի, որ օրինակեց Շարակնոցը, 1464 թ. (տես Ղազար).—Ձեռ. Սևան. 47 բ։

— 11. **Ազարիա** արքեպիսկոպոս Գողթան գավառի. իր ծախսով՝ Թադէոս կրոնավորին նորոգել տվեց մի հին Ավետարան, 1471 թ.—Ձեռ. Ագուլ. (Արրտ. 1911, 388)։

— 12. **Ազարիա** քահանա, գրիչ. օրինակեց Ավետարանը՝ տանուտեր Պետրոսի համար, Վան, 1475 թ.—Ձեռ. Վասպ. 476։ Անշուշտ նույն անձն է նաև **Ազարիա** երեց, որ Վանում օրինակել է Ավետարանը՝ տանուտեր Բարխշահի համար, 1484 թ.—Ձեռ. Վասպ. 493, 497։

— 13. **Ազարիա** որդի Ալթունդաշի, եպիսկոպոս Երնջակի, 1475 թ. Յիշում է իր խաչքարը.—Սիսական 379։

— 14. **Ազարիա** քահանա, գրիչ. օրինակել է Մայր Մաշտոցը՝ Վասպուրականի Սղգայոյ վանքում, 1487 թ.—Ձեռ. Կարին. 137, Սեդրակեան, Հայ եկեղ. պատկերյարգութիւնը, էջ 106։

— 15. **Ազարիա**, եղբորորդի Զաքարիա աբեղայի, որ էր երկրորդ ստացող Շարակնոցի, 1487 թ.—Ձեռ. Հալէպի, Ա. 27 բ։

— 16. **Ազարիա** քահանա, գրիչ. օրինակել է Գանձարանը, 1489 թ.—Ձեռ. Կարին. 28։

— 17. **Ազարիա** աբեղա, որդի Սահակի, Վայոցձորի Եղեգիս քաղաքում գրել տվեց մի Ավետարան, 1495 թ. և ապա վաճառեց Բարսեղ եպիսկոպոսին.—Ձեռ. Վենետ. Ա. 586։

— 18. **Ազարիա** Ջուղայեցի, կաթուղիկոս Սսի՝ «1584—1601 թ». հաջորդեց Խաչիկ երաժշտին, որի աթոռակիցն էր. շարունակեց կրոնական բանակցությունները Հռոմի պապի հետ, որ Խաչիկ կաթուղիկոսն էր սկսել։ Սրա վրա գահից զրկվեց և Տիրատուր Սսեցին անցավ նրա տեղը «1586 թ»։ Ազարիան գնաց Պոլիս և Յովհաննէս Բ Ուլնեցի պատրիարքին գահընկեց անելով՝ գրավեց Պոլսի պատրիարքական աթոռը «1591 թ»։ Բայց մի տարուց հետո, Սիս վերադարձավ, Տիրատուրին հեռացրեց և տիրեց գահին («1592 թ»), որ պահեց մինչև իր մահը «1601 թ»։ Մեռել ու թաղվել է Հալէպում. տապանի արձանագրությունը տես Սիւրմէեան, Պատմ. Հալէպի ազգ. գերեզմ. էջ 13 ա։ Ունի «Դաւանութիւն ս. հաւատոց Ազարիա կաթուղիկոսի, գրեալ ի Սիս, 1585 թ». (Ձեռ. Վատիկ.=ՀԱ 1892, 245 ա)։—Զամչ. Գ 528, 536, Սիսուան 185, 218, 536, 539, 541, Ազգապ. 2278,

2284, Ձեռ. Հալէպի. Բ. 31 ա, Պալճեան, Պատմ. կաթող. վրդ. 302—313։—Համարվում է գավաղան Մխիթար վարդապետ Գոշի՝ Թորոս Աղբար, Բ. 484։

— 19. Ազարիա Սեբաստացի, տոմարագետ. ունի տոմարական երկու գրվածքներ. «Ցաղագս գիտութեան արեգական թաւալմանց» և «Վասն գիտութեան Ե աւուրց արարչութեան», գրված 1607 և 1608 թվերին։ Կոչում է իրեն Ազարիա աշակերտ։ —Տաշեան, Ցուց. 839 բ և Tübingen 118։

— 20. Ազարիա վարդապետ Ջուղայեցի, տոմարագետ. 551 թվի տոմարական շրջանը երրորդ անգամ լրանալու ժամանակ, հիմնեց մի նոր թվական, որ կոչվում է «Փոքր թիւ Ազարիայի» և գործածվում է հատկապես Ջուղայեցոց մեջ։ Սկսվում է 1616 թ.—Էփիմ. էջ 89—90, Ցուցիկք, Բ. 291, Ջուղ. 118, Հայապ. 406։

— 21. Ազարիա Ջահկեցի, հայ կաթոլիկ քահանա. 1669 թվին, Անտոն Նազարոսի հետ ճամբորդեց Եվրոպա, մատուցանելու համար Պարսից թագավորի թղթերը եվրոպական վեհապետներին.—Օգոստ. բաղ. 25, Ցովսէփեան, Խաղբակեանք 276։

— 22. Ազարիա Կարկառեցի Գանըրպեանց, մականուն ղարբանի («ձյութի պես սև»), հակաթոռ կաթուղիկոս Սսի. Նստավ Բերիայում «1679 թ», իբր հաջորդ Դավիթ Կարկառեցու։ Հարեց լատին դավանանքին և 1683 թվին գնաց Հռոմ, պապից նպաստ խնդրելու համար. այնտեղ էլ մեռավ։—Ազգապ. 2590, 2647, Սիսուան 218, 539, Ձեռ. Հալէպի, Ա. 183 բ, 186 բ (հիշված է 1679 և 1681 թվերին)։

— 23. Ազարիա կաթուղիկոս Աղվանից. կաթոլիկ է դարձել և Հռոմի Իննովկենտիոս ԺԱ պապից ողորմություն է խնդրել, 1688 թ.—Տաշեան, Ցուց. 113 ա։

— 24. Ազարիա Ջուղայեցի, տաղասաց (ԺԷ դար). իր տաղերից տես Նոր ժողովածու, Դ. էջ 29—36. հմմտ. նաև անդ՝ էջ 74։

***ԱԶԱՐՄԻԴՈՒԽՏ**, իգ. < պրս. آزرمی‌دخت Azarmīduxt, որ ծագում է պրս. آزرم āzarm < պհլ. āžarm «ամոթ, պատկառանք, պարկեշտութիւն»+duxt «դուստր» բառերից։ Այս անունով հայտնի է Խոսրով Բ Փարվեզի դուստրը, որ հոր մահից հետո թագավորեց Պարսկաստանում, մոտ մի տարի (631 թ)։ Հայոց պատմության մեջ ավանդված է Ազարմիդուխտ, Ազարմիկ և Ազրմիկ, Ամրիկ ձևերով (Հիւբշ. 38, Justi 54 ա, Գէորգ դպիր, Բառ. պրս. 4 ա)։ Հայոց մեջ գործածված ունինք, աղավաղյալ ձևով՝

— Ազիզմիճղուխ, իգ. երկու տարբեր անձինք, հիշված 1551 թ. (Матер. Арх. Кавк. III, 93, 94)։

***ԱԶԲԱՀԱՐ**, իգ. ըստ իս ենթադրում է թրք. یازبهار *yaz-bahar «գարուն» բառը, որից և ծագել է։ Տաճկերենի մեջ «գարուն» և «աշուն» շփոթված են իրար հետ և երկուսն էլ կոչվում են պարսիկ բառով՝ համառաբար bahār. բայց զանազանելու համար ասում են ilk-bahar «առաջին բահար=գարուն» և son-bahar «վերջին բահար=աշուն»։ Երևի հայոց մոտիկ մի բարբառում կար նաև մի ուրիշ ձև, այն է՝ yaz-bahar «ամառ բահար=գարուն» և qəš-bahar «ձմեռ բահար=աշուն»։ Ավանդված է մեր մեջ՝

— Ազպահար, իգ. մի անգամ հիշված 1655 թ. (Rapport Arm. էջ 18)։

† **ԱԶԳԱՆՈՑՇ**, իգ. նորակերտ անսովոր անուն, որ կազմըված է հյ. ազգ+անոյշ բառերից. հիշված է Խորհ. Հայաստ. 1935 թ. հոկտ. 14 (վերջին էջ)։

† **ԱԶԳԱՍԷՐ**, ար. նորակերտ անսովոր անուն. գործածական է եղել Պոլսում (տես Կարապետեան, Ցիշատ. Սամաթիայի 306)։

† **ԱԶԳԱՏԻԿԻՆ**, իգ. կազմված է հյ. ազգ+տիկին բառերից. հիշված է Վայոց ձորի Գլաձոր վանքում 1334 թվին գրված մի Ավետարանում.—Թորոս Աղբար, Բ. 375։

***ԱԶԳՈՒԼ**, իգ. գտնում եմ գործածված մի անգամ աղավաղված ձևով՝ Ազկէօլ 1553 թ. (Տաշեան, Ցուց. 532 բ)։ Պետք չէ կարծել թէ կազմված է հյ. ազգ+պրս. گل gul «վարդ» բառերից, իբրև «ազգի, ցեղի կամ գերդաստանի վարդը», ինչպես թելադրում են կէ ձայները, այլ պարզապես Աղ-կուլ, որ կա 1636 թ. (Ձեռ. Հալէպի, Ա. 355). առաջանում է երկու ձևով. առաջին՝ իբրև կրճատում Ազիզ-գուլ անվան (տես առանձին) և երկրորդ՝ իբրև Յազ-գուլ, այն է թրք. yaz-gul «ամառնային վարդ» (տես Եազգուլ ձևի տակ)։

† **ԱԶԳԵՐ**, իգ. < հյ. ազգ «ցեղ, գերդաստան» բառի հոգնակին է։ Մի անգամ միայն ունինք գործածված ԺԳ դարում՝

— Ազգեր, դուստր Խաչատուր քահանայի և քույր Գրիգոր գրչի, որ Կարինում օրինակեց մի Ավետարան, 1230 թ.—Ձեռ. Վենետ. Ա 572 (այս Գրիգորի 3 քույրերն են՝ Թանկեր, Ազգեր, Ակներ)։

***ԱԶԴԻՆ**, ար. կարելի էր կարծել արաբ. عزالدین Izz-ad-dīn անունից, որ նշանակում է «փառք կրոնի» և սովորական գործածություն ունի մահմեդականների մեջ։ Հայտնի է օրինակ՝

Իզզեդդին-Քեյքաուս սուլթան Իկոնիայի, որ դաշնվեց Կիլիկիայի Լևոն Բ թագավորի հետ (1217 թ)։ Կրճատ ձևով ասվում է Ազեդդին։ Բայց որովհետև մեր մեջ Ազդին շատ անսովոր անուն է, ուստի կարծում եմ որ կապ չունի նույն արաբ. անվան հետ, այլ պետք է կցվի Ազդին, Եզդին, Էզդին անվան հետ, որ հատուկ էր ԺԴ դարի քուրդ ամիրաներին (տես Նոր վկայք, էջ 737 ա ցանկում) և ունի իրանական ծագում։ Մեծոփեցին էլ հիշում է (էջ 30) «ամիրայն Եզդին յազգէն Սենեքերիմեանց» (Վանի բերդում)։ Ավելի մանրամասն տես Յազդ անվան տակ։ Հմմտ. նաև Ամիր-Եզդին, Ազիտան։

— 1. Ազդին ոմն, որ իր կնոջ՝ Նազխաթունի հետ միասին գրել է տվել մի Ավետարան (ԺԵ դար).—Ձեռ. Վասպ. 608։

— 2. Ազտան, հայր Մասրուպի, վերջին ստացողի՝ 1538 թվին գրված մի Ճառընտիրի։—Ձեռ. Վեննա. Բ. 536։

*ԱԶԵՐ, ար. < կամ պրս. آذر āzer «Աստված, հուր, փայլակ, կայծակ» կամ պրս. آزر āzer «արժեք, գին» և կամ արաբ. آزر Azer «հայր Աբրահամի հոր անունը, որ է ըստ Ս. Գրոց՝ Թարա»։ Մի անգամ գտնում եմ գործածված մեր մեջ՝

— Ազեր (սեռ. Ազերու), հայր Ստեփաննոսի, որ Կեցանայ ձորի Սորավանք գյուղում գրել տվեց մի Ավետարան, 1458 թ. —Ձեռ. Վասպ. 426, 428։

ԱԶԻԱ, ար. Թերևս Ս. Գրքի Ոզիա անունն է. այս անունով գիտենք Ոզիա արքայ Յուդայի (808—756), որի կյանքը տես Բ. Մնաց. իզ։ Այս անվան ընիկ ձևն է եբր. עזיה 'Uziyāh (> հուն. 'Οζίας), որ ծագում է عز 'zz «զորություն» և Yāh «Աստված» բառերից (Gesenius 578 ա)։ Սովորական անուն չէ։ Հայերենում պատահում ենք միայն մի անգամ, այն է՝

— Ազիա, որդի Պարսամի և եղբայր Նուկզար աղայի, որ գնեց 1450 թվին գրված մի Ավետարան։ Հիշատակության թվականը հայտնի չէ, բայց ԺԵ դարի կեսից հետո է։—Ձեռ. Թավր. 67 բ։

*ԱԶԻԶ, ար. և իգ. < արաբ. عزيز 'azīz «փառավոր և վեհաշուք անձ, հազվագյուտ բան, թագավոր» (Կամուս, Բ. 187)։ Մեր բարբառներում նշանակում է «սիրելի, գուրգուրալի, չքնաղագյուտ»։ Գործածվում է թե իբրև իգական և թե իբրև արական հատուկ անուն, սկսած ԺԲ դարից և կա մինչև այժմ էլ գյուղական վայրերում։ Էֆիմ. 448 ունի Էզիզ ձևով։ Կան և սրանից կազմված

զանազան ձևեր. ինչ. Ազիզտիկին, Ազիզխաթուն, Ազիզբեգ, Ազիզմելիք, Ազիզգուլ, որոնք տես առանձին։

— 1. Ազիզ, իգ. իր որդի Գրիգորի հիշատակին օրհնել է տվել Ս. Գրիգոր եկեղեցին Բագնայրում և այս առթիվ թողել է մի արձանագրություն՝ 1145 թ.—Շիրակ 114։

-- 2. Ազիզ, կին Գորգ քահանայի, եղբոր Կոստանդին Ա կաթուղիկոսի. հիշված է 1256 և 1262 թ.—Թորոս Աղբար, Ա. 187, Ձեռ. Հալէպի, Բ. 140 ա, Ձեռ. Սեբ. (ՀԱ 1924, 333)։

— 3. Ազիզ, քույր Թորոս վարդապետի, որ Դրազարկի վանքում, Բարսեղ գրչին գրել տվեց մի Ավետարան, 1282 թ.— Manus. brit. mus. 18 ա։

— 4. Ազիզ, կին ոմն, հիշատակված է անթվական մի հիշատակարանում, որ ավելի հին է 1420 թվից.—Տաշեան, Ցուց. 666 ա։

— 5. Ազիզ, կին Յովհաննէսի և մայր Ստեփաննոս աբեղայի, որ գրել տվեց մի Ավետարան՝ Խիզանում, 1417 թ.—Ձեռ. Վասպ. 305։

— 6. Ազիզ, դուստր տանուտեր Յովհաննէսի, որ գրել տվեց մի Մաշտոց՝ Վանի Ցմտականց գյուղում, 1418 թ.—Տաշեան, Ցուց. 383 բ։

— 7. Ազիզ, ղավակ(!) Կարապետ միայնակյացի, որ Ցիպնայ-Դաստակ վանքում գրել տվեց մի Ավետարան, 1450 թ.— Ձեռ. Վասպ. 405։

— 8. Ազիզ, կին Մարտիրոսի, որդւոյ Յովհաննէս քահանայի, որ Մոկաց Փառավանք գյուղում գրել տվեց մի Ավետարան, 1455 թ.—Ձեռ. Վասպ. 422։

— 9. Ազիզ, կին Յովհաննէսի՝ որդւոյ Ստեփաննոսի, որ գրել տվեց մի Ավետարան՝ Կեցանայ ձորի Սորավանք գյուղում, 1458 թ.—Ձեռ. Վասպ. 427—8։

— 10. Ազիզ, կին Խէրադինի. ընծայեց մի Ավետարան՝ Նորագիւղի եկեղեցուն, 1465 թ.—Այրարատ 320, Նօտարք 221։

— 11. Ազիզ, քույր Ազնեբի, որ գրել տվեց մի Ավետարան, Աշոտաձորի Անկիւնեաց վանքում, 1477 թ.—Ձեռ. Ազուլ. (Արրտ. 1911, 219)։

— 12. Ազիզ, քույր Վարդան աբեղայի, որ Կտուց անապատում գրել տվեց մի Ավետարան, 1481 թ.—Ձեռ. Վասպ. 488։

— 13. Ազիզ, կին Յովհաննէս քահանայի և մայր Մելքի-

ակէթ քահանայի, որ Բաղէշում օրինակեց Յայսմաւուրքը՝ 1484 թ. —Rapport Belgique 40։

— 14. Ազիզ, ար. հիշված է 1555 թ.—Матер. Арх. Кавк. III, էջ 96։

— 15. Ազիզ, հայր Հայրապետ քահանայի, որ Բասենի Ծար գյուղում գրել տվեց մի Աւետարան, 1585 թ.—Թորոս Աղբար, Բ. 368։

— 16. Ազիզ, իբր իգ. հիշված է 1626 թ. սեռ. Ազըզին ձեվով։—Ձեռ. Վասպ. 869։

— 17. Ազիզ, իբր ար. հիշված է 1629 թ. Կամենից 180։

— 18. Ազիզ Արփայեցի. Նահատակուհի. 1669 թ. կյանքը տես Պատուական անվան տակ։

*ԱԶԻԶԲԷԳ, ար.< թրք. Azizbeg անունից, որ կազմված է արաբ. ʻazīz և թրք. beg բառերից։ Գործածված է մեր մեջ ԺԴ դարից. այժմ խափանված։

— 1. Ազիզբէկ Եղվարդեցի, պաշտոնյա Շահանշահի Զաքարեանց. շինեց Եղվարդ գյուղի եկեղեցին, առում էն (1301 թ). —Այրարատ, 197, 199։—Իր կնոջ Վախախի հետ՝ Ներսէս քահանային գրել տվեց մի Աւետարան, 1318 թ.—Ձեռ. Կարին. 17։

— 2. Ազիզբէգ Եղվարդեցի, Նախորդի ցեղից. ուսումնասեր և ազգասեր անձ. հրավիրեց Սիմոն վարդապետին Եղիվարդ գյուղի Փոքր վանքը, ուր դպրոց բաց արեց և 10 տարի աշակերտներ հասցրեց (ԺԴ դարի սկիզբը).—Այրարատ 197—198, Հայապ. 569։

— 3. Ազիզբէկ, հայր Զաքարիայի, որ գնեց Մուղնի գյուղը՝ 1425 թ.—Նոտարք 77։

— 4. Ազիզբակ, մորեղբայր Մկրտիչ քահանայի, որ Արճէշում գրել տվեց մի Ճաշոց, 1441 թ.—Թորոս Աղբար, Ա. 223, Նոտարք 123։

— 5. Ազիզպէկ, հայր Ասլիմելիքի, որ Ծառէկու վանքում գրել տվեց մի Աւետարան, 1447 թ.—Նոտարք 157։

— 6. Ազիզբէկ, տանուտեր Նորգեղի (կամ Նորագիւղի), 1465 թ.—Նոտարք 221, Այրարատ 320։

— 7. Ազիզբէգ անունը հիշված ենք գտնում նաև 1506 թ. (Տաշեան, Ցուց. 55 ա), 1507 թ. (Կամենից 161), 1595 թ. (Ձեռ. Վեննա. Ա. 695), 1757 թ. (Նոր վկայք 568)։

— Ազիզբէգ անվան կրճատ ձևն է ներկայացնում Ազբէկ,

որ հիշված է 1444 թվից ավելի ուշ գրված մի հիշատակարանում (Ազբէկ տանուտեր Գաւաշի).—Ձեռ. Վասպ. 395։

*ԱԶԻԶԳՈՒԼ, իգ. < արաբ. ʻazīz «ազիզ»+պրս. گل gul «վարդ» բառերից. գործածական է այժմ Ղարաբաղի գյուղերում Ազիզգիւլ ձևով։ Սրա կրճատ ձևն է Ազգուլ, որ տես վերևը։

*ԱԶԻԶԽԱԹՈՒՆ, իգ. < կազմված Ազիզ (արաբ.) և խաթուն, (թթր.) բառերից։ Հիշատակված է 1506 թ. (Տաշեան, Ցուց. 55 ա), 1507 թ. (Կամենից, 161), 1551 թ. (Матер. Арх. Кавк. III, 94), 1615 թ. (Ձեռ. Վասպ. 795)։

*ԱԶԻԶԽՆԱԹ, իգ. կազմված է Ազիզ+խնաթ բառից, որ ինձ անծանոթ է (եթե չկա գրչության սխալ)։ Գտնում եմ մի անգամ հիշված 1486 թ. Ձեռ. Վասպ. 501 (ստուգման կարոտ)։

*ԱԶԻԶՄԵԼԷՔ, իգ. կազմված Ազիզ+մելէք «հրեշտակ» բառերից (հետո դարձած Ազիզմելիք). ավանդված է ԺԴ—ԺԶ դարերից։

— 1. Ազիզմելիք, կին Բեհնամշահի և մայր Ստեփաննոս Լալուկ վարդապետի, որ Թավրիզի առաջնորդն էր. հիշված է 1311 թվին Թավրիզում գրված մի Ավետարանի հիշատակարանում.—Ձեռ. Թավր. 71 ա։

— 2. Ազիզմելիք, կին Խաչիկի և մայր Թումա գրչի, որ Աղթամարի վանքում օրինակեց Ճաշոցը, 1421 թ.—Նոտարք 67։

—3. Ազիզմէլէք, կին Սարգիս քահանայի և տատ Ստեփաննոս կրոնավորի, որ Վանում գրել տվեց մի Ավետարան, 1421 թ. —Ձեռ. Վասպ. 340։

— 4. Ազիզմելիք, կին Մկրտիչ քահանայի և մայր Յովհաննէս տանուտերի, որ Խլաթում գրել տվեց մի Ավետարան, 1443 թ.—Ձեռ. Նոր-Բայազ. 19 ա։

— 5. Ազիզմէլէք, դուստր Ստեփանոսի և քույր Փաշայի, որ Վանում գրել տվեց մի Ավետարան, 1451 թ.— Ձեռ. Վասպ. 412։

— 6. Ազիզմէլէք, կին Խաչիկի և մայր Գրիգոր քահանայի, որ Աղթամարում օրինակեց մի Ավետարան, 1452 թ.—Ձեռ. Վասպ. 415։

— 7. Ազիզմելիք, հարս մահտեսի Ստեփաննոսի, որ գրել տվեց Ցայսմավուրքը՝ Լիմ կղզում, 1457 թ.—Ձեռ. Թավր. 103 բ։

— 8. Ազիզմէլիք, կին Յովսէփ քահանայի և մայր Ալեքսիանոս եպիսկոպոսի, որ Արքայի վանքում օրինակեց Ավետարանը, 1486 թ.—Ձեռ Նոր-Բայազ. 10 բ։

*ԱԶԻԶՇԱՀ, իգ. < Ազիզ+պրս. شاه šāh «թագավոր» բառերից (իբր թե Շահ-ազիզ անվան հակադարձը լիներ)։ Ունինք մի անգամ

— Ազիզշայ, իգ. հիշված անթվական մի հիշատակարանում (Ձեռ. Դաղեան, Բ. 31 ա)։

*ԱԶԻԶՏԻԿԻՆ, իգ. կազմված է Ազիզ+տիկին բառերից, զանազանելու համար Ազիզ արական անունից։ Գործածված է ԺԴ, ԺԵ դարերում։

— 1. Ազիզտիկին, դուստր Նէքնէքի, որ Բերկրիում գրել տվեց մի Աւետարան, 1307 թ.—Ձեռ. Վասպ. 151։

— 2. Ազիզտիկին, կին Սարգսի և մայր Ապրէլուսի, որ ստացավ մի Աւետարան, 1347 թ.—Ձեռ. Ագուլ. (Արրտ. 1911, էջ 465)։

— 3. Ազիզտիկին (սեռ. Ազիզտիկնայ!), կին Աւագ քահանայի և մայր տանուտէր Յովհաննէսի, որ գրել տվեց մի Աւետարան՝ Աղթամարում, 1436 թ.—Ձեռ. Վասպ. 373։

*ԱԶԻԶՓԱՇԱ, իգ. կազմված Ազիզ+փաշա բառերից. չորս անգամ գտնում եմ գործածված ԺԶ/ԺԷ դարում։

— Ազիզփաշա, 1) հիշված է 1553 թվին գրված մի հիշատակարանում (Ձեռ. Վենետ. Ա 578), 2) 1595 թ. գրված մի հիշատակարանում (Այրարատ 295 ծան.), 3) նույն թվին (Ձեռ. Վենետ. Ա 696) և 4) 1609 թ. (Boldleian 111)։

ԱԶԻԼ, ար. ծագումն անհայտ։

— Ազիլ, իշխան, որ Կապանի կռվում հաղթվելով՝ գերի ընկավ Քայքաուս սուլթանի ձեռքը (1216 թ).—Սմբ. պատմ. 118 (տպ. Մոսկուայի ունի Ասիլ. տես այս անունը)։

*ԱԶԻՋԱՆ, ար. < կրճատ Ազի (իմա Ազիզ)+ջան բառերից, ինչպես ունինք Աղաջան, Միրզաջան, Յակոբջան, Միրիջան, Նուրիջան են անունները։ Հիշատակված ունինք երկու անգամ ԺԶ դարում։

— 1. Ազիջան, որդի Ղարամելիքի. ստացավ մի Աւետարան 1553 թվին և ժառանգություն թողեց իր Ղարամելիք անուն որդուն.—Ձեռ. Վենետ. Ա 578)։

— 2. Ազիջան, պապ Խոջա Պետրոսի, որ Պոլսում ստացավ մի Աւետարան, 1627 թ. (այս թվին խոջա Պետրոսն էր. պապը կլինի ԺԶ դարից).—Ձեռ. Վասպ. 874 (տպված է Աղիջան. բայց որովհետև Վենետիկի ձեռագրում 3 անգամ հիշված է Ազիջան, որ և ունի իր հարմարավոր բացատրությունը, ուստի գտնում եմ որ Աղիջան ձևը վրիպակ է)։

*ԱԶԻՏԱՆ, ար. < պրս. Yazdān, Yazdīn անունից, որի վրա մանրամասն տես Ազդին և Յազդ։

— Ազիտան, ազատորդի Արարատեան գավառի Աղցից գյուղից. բռնությամբ Թավրիզի կուսակալ՝ Լէնկթիմուրի թոռ Էօմէրի եղավ մահմեդական. բայց հետո դարձավ իր կրոնին (1405 թվերին).—Մեծոփ. 68, 73, Ազգապ. 2035։

† ԱԶՆԱՒՈՐ, ար. < հյ. գավառական ազնաւոր «հսկա, վիթխարի մարդ, դյուցազն» բառից (արմատն է ազն), որից փոխառյալ են նաև վրաց. ազնաւուրի «ազնվական, իշխանավոր», ուտ. Ազնաւուր, թուշ. Ազնաւր «ազնվական», ռուս. азнагур «վրացի ազնվական», պրս. آزناور āznāvur։ Իբրև արական անուն գործածական է եղել ԺԴ—ԺԷ դարերում, որից և Ազնաւուրեան ազգանունը, հիշված 1807 թվից (Ազգապ. 3354)։

— 1. Ազնաւոր, իր մերձավորների հետ գնեց մի Ավետարան և նվիրեց Սեբաստիայի Ս. Նշան վանքին, 1397 թ.—Ձեռ. Սեբ. (ՀԱ 1926, 45)։

— 2. Ազնաւուր, ամուսին Մելիքխաթուն տիկնոջ, որ Վանում գրել տվեց մի Ավետարան, 1453 թ.—Նոտարք 171։

— 3. Ազնաւուր, որդի Փաշայի, որ Թովմա առաքյալի վանքում գրել տվեց մի Ավետարան, 1471 թ.—Ձեռ. Վասպ. 463—464։

— 4. Ազնաւուր, որդի տանուտեր Մարտիրոսի, որ Բերկրիում գրել տվեց մի Ավետարան, 1473 թ.—Ձեռ. Վասպ. 467։

— 5. Ազնաւոր, հիշված 1653 թ. տես Երեմ. չել. օրագր. 36։

ԱԶՆԵՐ, ծագումն անծանոթ. բայց արդյոք ձևը ստույգ է և չկա վրիպակ. հմմտ. Եղներ, որ իբրև իգական անուն հիշված է երկու անգամ։

— Ազներ, ստացող. Աշոտաձորի Անկիւնեաց վանքում, Մխիթար նորընծա քահանայի համար, գրիչ Զաքարիա քահանային գրել տվեց մի Ավետարան, 1477 թ.—Ձեռ. Ագուլ. (Արար. 1911, 219)։

† ԱԶՆԻՒ, իգ. < հյ. ազնիւ «ընտիր, պատվական» բառից. տարածված է Արևմտահայոց մեջ. հնագույն հիշատակությունը 1554 թ. (տես Վիեննայի Ազգ. մատ. հտ. ՀԸ, էջ 2)։

ԱԶՈՒՔԱՐ (կամ Աղիքար), իգ. ծագումն անհայտ։ Գործածված է երկու անգամ միևնույն հիշատակության մեջ, որ թեև անթվական է, բայց գրված է 1488 թվից ավելի ուշ։—Ձեռ. Վենետ. Ա 492։

*ԱԹԱ, ար. < Թրք. اتا ata «հայր» բառից. հմմտ. Հայր և Բաբա նույնանիշ արական անունները։ (Կա նաև արաբ. عطاالله ʻAṭa-ullah «Նուէր Աստուծոյ (Աստուածատուր)» արական անձնանունը (տես Իբն-ի-Բատուտա, հտ. Բ, 151), բայց մեր բառը սրանից չէ)։ Աթա անունը գործածական է այժմ Ղարաբաղի գյուղերում. նույնից է կազմված նաև Աթայեան ազգանունը, որ գործածական է Կովկասի զանազան վայրերում։ Հների մեջ Աթա անվան չենք հանդիպում. մի անգամ գտնում եմ հիշատակված Զքր. սարկ. Ա, ԺԵ՝ Աթա անունով մի հովիվ, Միափոր գյուղից. Շահաբբասը ծպտված իջավ նրա տունը և այնքան գոհ մնաց նրա հյուրասիրությունից, որ նրան մելիքության տիտղոս տվեց։

*ԱԹԱԲԷԳ, ար. < Թրք. اتا ata «հայր»+ بك beg «իշխան» բառերից։ Այս բառը նախապես «տնային ուսուցիչ կամ դաստիարակ» իմաստն ուներ։ Սելճուք սուլթանների որդիները պալատում ունեին իրենց աթաբեկները։ Այնուհետև բառը ընդհանրապես «հսկող, վերակացու» և վերջապես «առաջին նախարար» իմաստն ստացավ։ ԺԲ դարում, Սաադ-բին-Զենգի, որ Սանջարի սուլթանի որդիների դաստիարակն էր, Շիրազում իրեն թագավոր հայտարարեց՝ Աթաբէգ տիտղոսով։ Այսպես սկսվեց Աթաբէգների հարստությունը Պարսկաստանում և աթաբեգ բառը հավասարվեց սուլթան տիտղոսին։ Պարսից մեծ բանաստեղծ Մուշարրիֆ-էդ-դին շեյխ Սաադին (1184—1291) իր հռչակավոր Գուլիստանի հառաջաբանում մեծ գովասանք ունի Շիրազի աթաբէգ Սաադ-բին-Զենգիի մասին (Будагов, Сравн. словарь 9 ա)։ Մեր մեջ էլ գործածվում էր իբրև մեծ տիտղոս՝ հատկապես Վրաց տիրապետության շրջանում. ինչ. Իւանէ աթաբէկ, Վահրամ աթաբէկ, Շահնշահ աթաբէկ են։ Իբրև արական անուն գործածված է ԺԳ դարից սկսած մինչև ԺԶ դար՝ Աթաբեգ, Աթապակ, Աթապեկ, Ադապեկ, սեռ. Աթայպեկի են ձևերով։ Սրանից է նաև Աթաբեգեան ազգանունը, որ ծանոթ է Կովկասում։

— 1. Աթապեկ, որդի Հասան-Ջալալի, իշխան Խաչենի. իր նահատակ հոր մարմինը պատվով թաղեց Գանձասարում՝ «1261 Թ» և հաջորդեց նրան.—Կիր. կա. Նոր վկ. 102. Օրբ. ժմ. 30. Յիշատ. ИИАН 1909, էջ 425։—Իբր Դոփեան տոհմի նախահայր հիշված է Նոտարք 40=Կարապետ եպս., Դոփեանք, էջ 185 (ՊԿ =1411 թվի հիշատակարանից)։—Ջամչ. Գ. 260, 264։

— 2. Աթաբեկ, որդի Խութլուխի և եղբայր Մելքիսեթ կրո-

նավորի, որ Սանահնի վանքում գրել տվեց մի Մանրուսմունք, 1421 թ.—Տաշեան, Ցուց. 873 բ։

— 3. Աթաբեկ, որդի Ջալալի, եղբայր Աղվանից Յովհաննէս կաթուղիկոսի և թոռն «մեծ Աթաբէկի» (ո՞վ է այս մեծ Աթաբէկը)։ Աթաբէկի որդիքն են Մատթէոս (որ եղավ կաթուղիկոս Աղվանից), Այդին և Խիմշայ։ Այս բոլորը հիշատակված են 1458, 1462 և 1467 թվերին.—Նոտարք 187, 188, 206, 228։

— 4. Աթապակ, հայր Սպահանի, որ Սաղմոսավանքում գրել տվեց մի Ավետարան, 1496 թ.—Ձեռ. Թաւր. 22 բ։

*ԱԹԱՄԵԼԻՔ, իգ. < թրք. اتا ata «հայր»+արաբ. ملك melik «թագավոր» բառերից։ Ունինք միայն երկու անգամ գործածված ԺԵ դարում։

— 1. Աթամելիք, կին Յովհաննէս քահանայի, որ Կարապետ քահանային մի Ավետարան գրել տվեց, Վանում, 1422 թ.—Նոտարք 69։

— 2. Աթամելիք, կին տանուտեր Արապշահի, որ Աղբակի Էրընկանի գյուղում գրել տվեց մի Ավետարան, 1490 թ.—Ձեռ. Վաստ. 511։

— 3. Աթայմելիք, այր? հիշված է 1486 թվից ուշ գրված անթվական և անգրագետ մի հիշատակարանում.—Ձեռ. Նոր-Բայազ. 11 բ։

*ԱԹԱՆԱԳԻՆԷՍ, այր. < հուն. Ἀθηνογένης անունից, որ բուն նշանակում է «Աթենածին, ծնունդ Աթենաս աստվածուհու»։ Այս անունը հունաց մեջ էլ սովորական չէ. չունի Bailly, թեև գիտե Ἀθηναγόρας (լատ. Athenagoras), Ἀθηνάδας, Ἀθήνιππος, Ἀθηνόδωρος (լատ. Athenodorus), Ἀθηνοφάνης անունները։ Կա նաև լատ. Athenodotus. Այս բոլոր անունները, իբրև հիշատակ հեթանոսության, շուտով ջնջվեցին հունական աշխարհից։ Հունաց մեջ հայտնի է հատկապես Աթանագինէս եպիսկոպոս Պիտակտիոյ կամ Սեբաստիոյ. սրա ընդարձակ վկայաբանությունը տես Վարք և վկ. Վենետ. 1874, հտ. Ա. էջ 46—67 և Աւգեր. Լիակ. վրք. սրբ. Դ. 319։ Այս նահատակը մեծ հարգ ստացավ մեր մեջ նրանով, որ Լուսավորիչը Սեբաստիայից Հայաստան փոխադրեց նրա մասունքները (302 թ)։ Մտել է Յայսմաւուրքի և Գանձարանի մեջ։ Կա նաև Առաքել Սիւնեցու ներբողականը նրա վրա։ Հայերենում գործածված է Աթանագենէս, բայց մանավանդ Աթանագինէս և Աթանագինէ ձևերով։ Ունինք հիշված միայն երկու անգամ մեր

պատմության մեջ (Դ դարում և ԺԵ դարում)։ Այժմ էլ գործածական չէ (Հիւբշ. 333—334)։

— 1. Աթանագինես, որդի Յուսիկ կաթողիկոսի և հայր մեծն Ներսէսի. ծնվել է «313 թ». իր եղբոր Պապի հետ, իրենց անարժան վարքի համար, երկուսն էլ մեռան շանթահար «349 թ».—Բուզ. Գ. ե, ժգ. Խոր. Գ. ժզ. Յհ. կթ. ժա. Մեսր. եր. 11. Վրդ. իր. Մխ. այրիվ. 61. Քհնպ. 270.—Աթանագենես՝ Բուզ. Գ. ժե, ժթ.—Աթանագինէ՝ Յհ. կթ. ժա. Մեսր. եր. 13. Կիր. 11.—Աթանագէն՝ Վրաց աղբ. Ա. 75.—սեռ. Աթանագինեայ՝ Խոր. Գ. ի. Յհ. կթ. ժբ. Ասող. Բ. ա. Մեսր. եր. 19. Յայսմ. սեպտ. 9.—Աթանագենի՝ Բուզ. Գ. ժե, ժթ. Դ. պ. Խոր. Գ. ժգ, իթ. Վկ. շուշ. 49.—հոլով՝ Աթանագենին՝ Բուզ. Գ. ժթ.—Աթանագինեի՝ Բուզ. Գ. ժթ (ցանկում). Պատմ. ներս. 5. Վրդ. իր. Յայսմ. նոյ. 19. Սամ. անեց. 66. Եղն. եր. 266—267. Քհնպ. 270. Յհ. կթ. հյր. 273.—Աթանագինի՝ Կիր. 11. Քհնպ. 270։

— 2. Աթանագինէ Սեբաստացի, կրոնավոր. գրիչ. օրինակել է Սամսոնում Մաշտոցը, 1419 թ.—Նոտարք 58։

***ԱԹԱՆԱՍ**, ար. < հուն. 'Αθανασίος անունից, որից փոխառյալ են նաև լտ. Athanasius, ֆրանս. Athanase, ռուս. Афанасий. բուն նշանակում է «անմահ» և ծագում է α բացասականով՝ θάνατος «մահ» բառից։ Իբր հատուկ անուն գործածական էր Բիւզանդական շրջանում. նշանավոր է հատկապես Ալեքսանդրիայի հայրապետ Ս. Աթանասը (296—373 թ), որին տոնում է ամբողջ քրիստոնեական եկեղեցին և որի գործերից շատերը թարգմանված են նաև հայերեն. ինչ. Կանոնք, Դաւանութիւն Աթանասի, Խոստովանութիւն, Հարցմունք Աթանասի, Պատարագամատոյց, Ներբողեանք են։ Մեր մեջ սովորական ձևն է Աթանաս, բայց օտարների համար գրված է նաև Աթանասիոս, ուշ ժամանակ (արդեն ԺԳ դարում) դարձել է Աթանես (ազդվելով Յովհաննէս, Վրթանէս և նման ձևերից), փաղաքշական ձևով դարձել է Աթանիկ (անցյալ դարում Պոլսում կար Թանիկ ձևը. ժողովրդական հունարեն ձևով էլ ասում էին Thanaš), կրճատ ձևն է Աթան, որ հիշված է 1680 թվից ավելի ուշ գրված անթվական մի հիշատակարանում (Ձեռ. Ագուլ.=Արրտ. 1911, էջ 1007)։ Նորագույն շրջանում այս անունը ջնջվեց։

— 1. Աթանաս քահանայ, որ Ս. Մեսրոպի աշակերտների հետ եկել էր Երուսաղէմից և նահատակվեց Աստղաբլուրում (Ե դար).—Յայսմ. մրտ. 29 (ըստ Զամչ. Բ. 126՝ 465 թ)։

— 2. Արտեմաս *Տարօնեցի, վանահայր Գլակայ վանուց, հաջորդ Բարթուղիմէոսի. առմարագետ. Մովսէս Բ Եղիվարդեցի կաթուղիկոսի հրամանով, Դուինի երրորդ ժողովում նորոգեց հայոց թվականը «584 թվին».—Մաղիկ. ա. Կիր. 24. Մխ. այրիվ. 63. Չամչ. Բ 239։*

— 3. Արտեմաս, *եպիսկոպոս Հայոց, օգնեց Պոլսի հունաց Սարգիս պատրիարքին՝ տարածելու միակամեան վարդապետութիւնը (Է դար).—Ազգապ. 695։*

— 4. Արտեմաս, *նշանավոր կրոնավոր (թերևս եպիսկոպոս և առաջնորդ Վանեվանից), որին հիշատակում է Օրբելեանը՝ Վանեվանից մեջ թաղված անձերի շարքում (Ժ դար).—Օրբ. լզ. Սիսական 61։*

— 5. Արտեմաս, *Տարօնի Ղազարու վանքից ուղարկվեց Խլաթ՝ Ֆօնականի գնման գործով (1204 թ).—Հայապ. 450։*

— 6. Արտեմաս *քահանայ, հոգևոր զավակ Վարդան և Սարգիս քահանաների, որոնք Կապոսի անապատում (Երզնկա) գրել տվին «Հաւաքումն բանից նախնեաց», 1230 թ.—Ձեռ. Վենետ. Բ. 1214։*

— 7. Արտեմաս, *առաջնորդ Կեչառուի վանից, 1272 թ.—Այրարատ 267։*

— 8. Արտեմս, *որդի Մխիթարի. իր եղբայրների՝ Արիստակէսի և Յովհաննէսի հետ, իրենց հոր հիշատակին, Մարտիրոս գյուղում կանգնեցրին մի խաչքար, 1284 թ.—Սիսական 177, Յովսեփեան, Խաղբակեանք 146։*

— 9. Արտեմաս *ոմն ունիթոռական հայ, իր անկարգութեանց համար վռնդվեց Հայաստանից, գնաց հաստատվեց Հռոմ, ուր հայտարարեց իրեն եպիսկոպոս Վրաց կամ Վարագայ վանից։ Ամբաստանում էր հայերին իբրև հերետիքական, անկնունք և ուրացող։ Պապը՝ Բենեդիկտոս ԺԲ (1334—1342), որ այն ժամանակ նստում էր Ավինիոնում, իր Հռոմի փոխանորդ Անագնի միջոցով բանտարկեց նրան.—Փափազեանց, Պատմ. եկեղ. 590։*

— 10. Տէր Արտեմաս, *ուսուցիչ Եղիա աբեղա Հաղրուբեցու, որ* Ճգնաւորի քար *անապատում օրինակեց Աւետարանը՝ 1428 թվին.—Ձեռ. Ագուլ. (Արրտ. 1911, 567)։*

— 11. Արտեմաս, *կաթուղիկոս Աղուանից, հաջորդել է Մատթէոսին՝ 1440 թ. և նստել է միայն մի տարի.—Ձեռ. Դաղեան, Ա. 89 բ։*

— 12. Արտեմս, *ազգական Մատթէոս քահանայի, որ Եղե-*

*գնաց անապատում գրել տվեց մի Ավետարան, 1496 թ.—Ձեռ. Նոր-Բայազ. 7 բ։*

— *13.* Աթանես (*ե-ով*) *ձևը հիշվում է ավելի ուշ, 1501 թ. (Ձեռ. Դաղեան, Ա. 46 ա), 1595 թ. (Ձեռ. Վենետ. Ա. 695), 1601 թ. (Ձեռ. Վասպ. 794)։*

— *14.* Աթանաս *վարդապետ, տաղասաց ԺԸ դարու. ունի Տաղ ի վերայ հրեշտակաց.—տես Տաշեան, Ցուց. 467, 986։— Սրանից տարբեր է՝* Աթանաս *եպիսկոպոս Տայի-Սիմոնեան, տաղասաց ԺԸ դարու. ունի Տաղ ի վերայ ազգին Հայոց կամ Տաղ առ Ս. Գրիգոր Լուսաւորիչ (տես Տաշեան, Ցուց. 468, 965, 986)։*

**ԱԹԱՆԱՍԻԱ, իգ. < հուն.* ’Αθανασία *«անմահություն» բառից. հմմտ. Յայսմ. փետր. 6. «Որոյ անունն էր Աթանասիայ, որ թարգմանի անմահութիւն»։ Այս իգական անունը հիշված եմ գտնում մեր մէջ Ձքր. սարկ. Ա. 55՝ Ժէ դարից։*

**ԱԹԱՋԱՆ, ար. < թրք.* اتا ata *«հայր» > հյ.* Աթա *անունից, որին միացել է պրս.* جان jān *«հոգի» փաղաքշականը, ինչպես ունինք Աղաջան, Միրիջան, Նուրիջան, Յակոբջան ևն։ Գործածված է ԺՋ—Ժէ դարերում. այսպես՝* Աթաճան *1592 թ. (Միսաքեան 509),* Աթաճան*՝ հայր Նիկողայոս այվազ Պրուսացու, որ նահատակվեց 1694 թ. (Նոր վկայք 531),* Աթաջան*՝ 1667 թ. կամ ավելի ուշ (Ձեռ. Վասպ. 930)։ Սրանից* Աթաջանեան *ազգանունը կազմված է։*

**ԱԹԵՆԱԴՈՐՈՍ, ար. < հուն.* ’Αθηνόδωρος *անունից, որ բուն նշանակում է «տուրք կամ պարգև Աթենաս աստվածուհու» (> լտ.* Athenodorus*)։ Իբրև անձնանուն գործածված է նաև հույների և լատինների մեջ. հայտնի է օրինակ՝* Աթենադորոս *կրոնավոր, նահատակված Դիոկղետիանոսի ժամանակ (Յայսմ.)։ Տես վերը՝* Աթանաս*։ Մեր մեջ սովորական չէ եղած այս անունը և այժմ էլ չկա։ Ունինք միայն՝*

— Աթենադորոս*, որդի Սուրէն իշխանի Սալահունեաց, որ բնակում էր Դերջանի արևելյան կողմը, Սուրէն կամ Սուրէնաշէն ավանում (այժմ Զուրուն)։ Աթենադորոսը 15 տարեկան էր և 7 տարուց ի վեր ցավագար։ Մայրը՝ Ագուբիթա, բարեգործ կին էր և Արբենուտ աղբյուրի մոտ՝ մի հիվանդանոց էր բաց արել, ուր 30-ից ավելի հիվանդներ էր խնամում։ Դրանց մեջ կար Դասիոս անուն մի քահանա, որ ծածուկ քրիստոնեություն էր քարոզում և հիվանդներին դարձի բերում։ Երբ Գրիգոր Լուսաւորիչը Երզնկայից Արտաշատի վերադարձ էր տարվում, Դասիոսը*

*և ուրիշները ընդառաջեցին նրան։ Աղուփթան էլ Աթենադորոսին տարավ նրա մոտ։ Գրիգորը բժշկեց նրան։ Սրա վրա, մայր ու որդի քրիստոնյա դարձան ու Դասիոս քահանայից մկրտվեցին։ Լուսավորչի հրամանով Աթենադորոսը կոչվեց Թէոդորոս։ Հայրը բռնացավ որդու վրա, նա էլ տնից փախավ և Սեղեճնուտ ձորակում թաքնվեց։ Հայրը երկար որոնեց, 7 օր հետո գտավ նրան և մի ծառի տակ նահատակեց «288 Թ»։ Դասիոսը թաղեց նրան նույն տեղում։ Երբ քրիստոնեությունը տարածվեց Հայաստանում, նրա մարմնի վրա մատուռ շինեցին, որի գավթում թաղվեցին նաև Դասիոսը և Աղուփթան։ Ավելի ուշ, մատուռի մոտ շինվեց Գորոփու Ս. Թէոդորոս վանքը, որ այժմ կոչվում է՝ Սըրըքլը Ս. Թորոս, Դերջանի Դժնիկ գյուղի մոտ։—Ցայսմ. մայ. 11 (հիշված է* Աթենադորոս *և* Թեոդորոս, *սեռ.* Աթենադորոսի *և* Թեոդորոսի *ձևերով)։—Զամչ. Ա. 376, Ալիշան, Արշալ. քրիստ. 91, Ցուցիկք, Ա. 216—238, Աճգապ. 65։*

*ԱԹԻԿ, ար. ծագումն անհայտ։*

— *1.* Աթիկ *քահանա Բջնեցի. երգմնեցուցիչ եղավ այն ժողովում, ուր առաջին անգամ Վահան Մամիկոնյանը որոշեց ապստամբել Պարսից դեմ «481 Թ».—Փարպ. կզ. Զամչ. Բ. 163, Աճգապ. 455։*

— *2.* Աթիկ *տեր Շոռոթեցի, հիշված է 1670—80 թվերին, Վենետիկում.—Սիսական 357 բ։*

**ԱԹԻՆԷ, իգ. հունալատինական անուն. հմմտ. «Կին մի էր ի Հռոմ քաղաքի… անուն նորա Աթենայ» (Ցայսմ.) < հուն.* Ἀθηνᾶ *Աթենաս աստվածուհին,* Ἀθηναῖα *«աթենուհի», լտ.* Athenaea *«աթենուհի»,* Athenais *(իգական անուն)։ Լսել եմ Պոլսում* Աթինէ *ձևով իգական անուն։*

*ԱԺԱՌՈՍ, ար. ծագումն անհայտ։*

— Աժառոս, *պարոն և տեր Մոլևոն բերդի (Կիլիկիա). ներկա եղավ Լևոն Բ-ի թագադրության հանդեսին «1199 Թ».—Սմբ. պատմ. 112 (Սիսուան 142 ա և 471 ա համարում է հույն, բայց հպատակ Լևոնի)։*

**ԱԺԴԱՀԱԿ, ար. < զնդ.* aži-dahāka, *պհլ.* aždahāk, *պրս.* اژدها aždahā *(Պարսից առասպելական թագավորներից մեկը, Վիշապն Դահակ) (Հիւբշ. 32)։*

— Աժդահակ, *թագավոր Հայոց, որ նահատակել է Բարթուղիմէոս առաքյալին (ըստ* F. Vigouroux, Dict. de la Bible, Paris *1895,* I. *1472. տես Աճգապ. 32).—առասպել։*

*ԱԼԱԳՈԶ, ար. < Թրք. الاگوز ala-göz «երկնագույն ծավի աչքեր ունեցող»։ Հմմտ. Ղարագոզ։ Անսովոր անուն. մեկ անգամ ունինք՝

— Ալակյաւզ, մահտեսի ոմն, հիշված ԺԶ դարում (Ձեռ. Հալեպի, Բ. էջ 140 բ)։

*ԱԼԱՄ, իգ. գործածական է սկսած ԺԵ դարից (օրինակը տես տակը). շարունակվում է հաջորդ դարերում. իբրև օրինակ հիշենք՝ 1649 թ. (Թորոս Աղբար, Բ. 463), 1652 թ. (Տաշեան, Ցուց. 458բ), 1688թ. (Սիւրմէեան, Պատմ. Հալէպի ազգ. գերեզմ. 30 բ), 1701 թ. (Ձեռ. Վասպ. 205) և անցյալ դարումն էլ գործածական էր Պոլսում, հին սերնդի մեջ, Ալեմ ձևով, որ ապա խափանվեց։ Ծագած պետք է լինի արաբ. الم alam «ցավ, վիշտ» կամ علم ʻalam «նշան, կնիք, դրոշ» և կամ عالم ʻālam «աշխարհ» բառից։ Առաջինից չի կարող լինել, որովհետև Պոլսում պիտի ունենար Էլեմ ձևը (արաբ. alam «ցավ» Պոլսում արտասանվում է elem)։ Երկրորդից կարող էր լինել, ինչպես որ ունինք Նշան անունը. բայց ես հարմարագույն եմ կարծում երրորդը, որովհետև նույն բառից ունինք Ալամխաթուն, Ալամշահ, Ալամշադ և Ալամտիկին, որոնք դժվար կլինի կապել «նշան» բառի հետ, բայց շատ լավ կապվում են «աշխարհ» բառին (տես տակը)։ Կարծում եմ նաև որ Ալամ անունը ոչ թե անկախ ձև է, այլ կրճատված է Ալամխաթուն կամ Ալամտիկին ձևերից։

— Ալամ, դուստր Յովհաննէս քահանայի կամ սրա եղբոր՝ տանուտեր Յովհաննէսի, որոնք Մոկաց Փառավանք գյուղում գրել տվին մի Ավետարան, 1455 թ.—Ձեռ. Վասպ. 422։

*ԱԼԱՄԽԱԹՈՒՆ, իգ. < արաբ. عالم ʻālam «աշխարհ»+Թրք. خاتون xatun «տիկին» բառերից, իբր «աշխարհի տիկինը կամ իշխանուհին»։ Հմմտ. Ալամ։

— 1. Ալամխաթուն, կին Յակոբ քահանայի և մայր Յովսէփ կրոնավորի, որ Կիւրղի անապատում օրինակեց մի Ավետարան, 1432 թ.—Ձեռ. Սեբ. (ՀԱ 1926, 47)։

— 2. Ալամխաթուն, կին Յակոբի՝ եղբոր տանուտեր Արապշահի, որ Մարգարայ գրչին գրել տվեց մի Ավետարան, Աղբակի Էրընկանի գյուղում, 1490 թ.—Ձեռ. Վասպ. 511։

— 3. Ալամխաթուն, կին Սպահանշահի և մայր Նիգար-խաթունի, որ Դաւիթ աբեղային գրել տվեց մի Ավետարան, Լիմ կղզում, 1573 թ.—Ձեռ. Վասպ. 28։

*ԱԼԱՄԽԱՆ, ար. < արաբ. عالم ʻālam «աշխարհ»+պրս. خان

xān «իշխան» բառերից, իբրև «աշխարհի իշխան»։ Անշուշտ գործածական էր իբրև արական անուն, որից առաջացել է Ալամխանեան ազգանունը Կովկասում։

*ԱԼԱՄՇԱՀ, ար. և իգ. < արաբ. عالم ʿālam «աշխարհ»+պրս. شاه šāh «թագավոր» բառերից, իբրև «աշխարհի թագավոր»։ Գործածված է ԺԵ—ԺԶ դարերում։ Հիշված է Ալեմշահ ձևով (իբր ար.), Սաղմոսարանի մեկնութեան մեջ, տպ. Պոլիս 1801, էջ 110։

— 1. Ալամշա (սեռ. Ալամշի), կին Թանգրինի, որ Արճէշում Կարապետ քահանային գրել տվեց մի Յայսմաւուրք, 1437 թ.— Նոտարք 111—112։

— 2. Ալամշա, որդի Յակոբշի և քեռորդի Յովհաննէս աբեղայի, որ Աղբակի Ասփսթան գյուղում ստացավ մի Աւետարան, 1458 թ.—Ձեռ. Թաւր. 69 ա։

— 3. Ալամշահ, որդի Խուրովի, որ Բռնաշէն գյուղում, Մխիթար քահանային գրել տվեց մի Աւետարան, 1478 թ.— Ձեռ. Վասպ. 485։

*ԱԼԱՄՇԱԴ, իգ. < արաբ. عالم ʿālam «աշխարհ»+պրս. شاد šād «ուրախ» բառից, իբրև «աշխարհի ուրախություն կամ աշխարհ ուրախացնող»։ Մի անգամ գտնում եմ ԺԵ դարում, եթե չէ վրիպակ՝ փոխանակ Ալամշահի։

— Ալամշատ, կին Պետրոս քահանայի և մայր Մանուէլ քահանայի, որ Կուքի գյուղում օրինակեց Գանձարանը, 1478 թ.—Ձեռ. Դաշեան, Ա. 39 բ։

*ԱԼԱՄՏԻԿԻՆ, իգ. < արաբ. عالم ʿālam «աշխարհ»+հյ. տիկին բառերից, իբրև համապատասխան Ալամխաթուն օտար ձևին։ Մի անգամ գտնում եմ գործածված անթվական մի հիշատակարանում, որ տես Թորոս Աղբար, Ա. 329։

*ԱԼԱՅԲԷԳԻ < թրք. الای بکی alay-begi «գնդապետ» (կազմված է alay «զորագունդ» և bey «բէգ» բառերից)։ Ըստ իմաստի պիտի լիներ արական, բայց թվի թե իգական է՝

— Ալայբէկի, հիշատակված է անթվական մի հիշատակարանում, որ գրված է Վանում, 1617 թվից ուշ.—Ձեռ. Վասպ. էջ 854։

*ԱԼԱՅԽԱԹՈՒՆ, իգ. < թրք. الای alay «զորագունդ»+xatun «տիկին» բառերից, իբրև Ալայբէգի ձևի իգականը։ Մի անգամ հիշված է Ալայխաթուն ձևով անթվական մի հիշատակարանում, որ գրված է 1470 թվից ավելի ուշ.—Ձեռ. Վեննա. Ա. 589։

*ԱԼԱՅՆՈՐՇԱՀ, ար. < թվի թրք. الای alay «գունդ»+հյ. նոր

+պրս. شاه šāh «արքա» բառերից. իբրև զորաբանակի նոր հրամանատար»? Մեկ անգամ հիշված է անթվական մի հիշատակարանում, որ գրված է 1655 թվից ավելի ուշ.—Ձեռ. Նոր-Բայազ. 43 ա (Ալայնորշայ ձևով):—Նուրշահ անունը տես առանձին:

ԱԼԱՆՁԻ, ար. ծագումն անհայտ: Մի անգամ գործածված է 1638 թ? հետևյալ ձևով. «Ալանձուն որդին Տէր Խաչատուրն գնեց... ի թվ. ՌՁԷ. Լ. ՂՁ» (Ձեռ. Սեբ.=ՀԱ 1926, 245):

ԱԼԱՒԻԿ, ար. < պրս. الاو alāv «բոց, հուր» բառից? Ծանոթ է միայն սեռ. Ալաւկայ ձևով՝ հայր Դաւիթ վարդապետի Գանձակեցւոյ (ԺԲ դարի սկիզբները). այսպես՝ Դաւիթ որդի Ալաւկայ՝ Կիր. 66, ը. Վրդ. հ. Օրբ. ժմ. 17. Մխ. այրիվ. 77. Տաշեան, Ցուց. 751 բ.—սխալ գրված Ալուկայ՝ Սամ. անեց. 130:

*ԱԼԲԵՐՏ, ար. < եր. Albert անունից, որի հին ձևն է գերմ. Albrecht և նշանակում է բուն «ազնվափայլ»: Այս անունով նշանավոր են՝ Մեծն Ալբերտ, դոմինիկյան աբեղա, աստվածաբան, փիլիսոփա և ալքիմիստ (1193—1280), որի Աստուածաբանութիւնը թարգմանվեց հայերենի ԺԸ դարում և հայտնի էր «Ալբերդ գիրք» անունով,—Ալբերտ Ա կայսր Գերմանիայի 1298—1308, Ալբերտ Բ կայսր Գերմանիայի 1438—1439 թ: Հին հայոց մեջ գործածված չէ. ունինք միայն՝

— Ալբերդիոս, որդի Աղամալի Նախիջևանցւոյ, որ 1694 թվին շինեց Շողակաթի տաճարը: Սրա որդիներն էին Ալբերդիոս, Ագաթանգեղոս, Աղեքսանդրոս, Խաչիկիոս (բոլորն էլ անսովոր անուններ):—Այրարատ 236:

— Ալբերտ ձևով մտավ վերջերս մեր մեջ (Կովկասում), իսկ Արևմտահայերը գրում են Ալպեր:

*ԱԼԵՔՍ, ար. մեկնությունը տես Աղեքսանդր անվան տակ: Քիչ անգամ գործածված է ԺԳ—ԺՁ դարերում. այնուհետև խափանված: Այժմ չկա:

— 1. Ալեքս հայ, որին Վասիլ Ա կայսրը (867—886) կարգեց Կիպրոսի փոխարքա.—Տ-Սահակեան, Հայ կայսերք, Ա 346:

— 2. Ալեքս պարոն, որդի Վարդանի, Գրիգոր կրոնավորին կազմել, նորոգել և նկարազարդել տվեց մի հին Ավետարան, 1220 թվին.—Ձեռ. Կարին. 18, Rapport Arm. 53:

— 3. Ալեքս, որդի Ղազարի. մի խանութ նվիրեց Հոռոմոսի վանքին, 1266 թ.—Շիրակ 26—27:

— 4. Ալեքս, հիշված է պարոն Ալեքս ոմն, որ մեռել է 1270 թ. (տես Ֆ. Մուրատ, Ցայտ. յովհ. էջ յհէ):

— 5. Ալեքս, հայր Բաւուն կրոնաւորի, որ գրել տվեց մի Աւետարան, 1330 թ.—Ձեռ. Վեննա. Ա. 770։

— 6. Ալեքս, որդի Ամիրշահի, միակեաց և եկեղեցպան Խոզկերտ գյուղի եկեղեցու. իր ծախսով Սիմէոն գրչին գրել տվեց մի Ճաշոց, 1335 թ.—Սիսուան 119 ա։

— 7. Տէր Ալեքս, միաբան Խարտիշարի վանից, 1511 թ.—Տաշեան, Ցուց. 407 բ։

*ԱԼԵՔՍԱՆ, ար. մեկնությունը տես Աղեքսանդր անվան տակ։ Գործածվել է ԺԴ դարից սկսած և այժմ էլ կենդանի է։

— 1. Ալեքսան, օգնեց գրել տալու Զաքարիա աբեղային՝ Մեկնութիւն պատարագի, Անապատիկ գյուղում, 1361 թ.—Ձեռ. Սանաս. շար. (ՀԱ 1912, 57)։

— 2. Ալեքսան քահանա, հայր Յովհաննէս Հուսոր վարդապետի, որ Խիզանի Ս. Խաչ վանքում օրինակեց Ագաթանգեղոսը՝ 1402 թ. և Գրիգոր Տաթևացու Քարոզգիրքը՝ 1413 թ.—Նոտարք 17, 42։

— 3. Էլեքսան, ամուսին Գոհարմելիքի, որ Աղթամարում Գրիգոր քահանային գրել տվեց մի Աւետարան, 1452 թ.—Ձեռ. Վասպ. 413։

— 4. Էլեքսան քահանա, հայր Կիրակոս գրչի, որ Բաղէշում օրինակեց Յայսմաւուրքը 1438 թ., Աւետարանը 1454 թ. և մի ուրիշ Աւետարան էլ՝ 1463 թ.—Նոտարք 118, 173, 215։

— 5. Ալեքսան, միաբան Գետարգելայ վանից Եղիվարդի, 1465 թ.—Նոտարք 221։

— 6. Ալիքսան քահանա Բիւրական գյուղի, հիշված է 1469 թ.—Ձեռ. Վեննա. Բ. 1114։

— 7. Էլեքսան, որդի Աւետիսի, ազգական Փաշայի, որ գրել տվեց մի Աւետարան՝ Թովմա առաքյալի վանքում, 1471 թ.—Ձեռ. Վասպ. 465։

*ԱԼԵՔՍԻԱՆՈՍ, ար. գրված նաև Ալեքսիանոս, Ալեքսանոս, կրճատ ձևով Սանոս, որ տես առանձին։ Գործածված է ԺԴ դարից սկսած։ Մեկնությունը տես Աղեքսանդր անվան տակ։

— 1. Ալեքսիանոս, որդի Գրիգոր քահանայի և եղբայր Յոհան վարդապետի, որ Սուրխաթում, Ստեփաննոս գրչին գրել տվեց Եսայի և Թուղթք Պօղոսի, 1356 թ.—Ձեռ. Բեռլինի, էջ 4ա։

— 2. Ալեքսանոս, եղբայր Ավրամի՝ մեծ հօր Յակոբ սարկավագի, որ մոտ 1358 թ. օրինակեց Կիւրղի Կոչումն ընծայութեան.—Ձեռ. Թաւր. 28։

— 3. Ալեքսիանոս *քահանա, պաշտոնակից Սարգիս եպիսկոպոս գրչի, որ օրինակեց Աւետարանը՝ 1416 թ.—Ձեռ. Թաւր., էջ 31 բ։*

— 4. Տէր Ալեքսիանոս, *հիշատակված է իբրև «հանդուցեալ», մի Ցայսմաւուրքի մեջ, որ Գուգարաց Ընկուզագոմ վանքում օրինակեց Սա՛րգիս եպիսկոպոսը՝ 1427 թ.—Նոտարք 85։*

— 5. Ալեքսիանոս *քահանա, Արղնի գավառի Բագուր գյուղում, Յովհաննէս սարկավագին գրել տվեց մի Մաշտոց, 1434 թ.—Թորոս Աղբար, Բ. 413, Նոտարք 103։*

— 6. Ալեքսիանոս, *ոսկերիչ, Ամիթ քաղաքի Հայոց առաջավորներից. մեծապես նպաստեց Ս. Թէոդորոս եկեղեցու շինության (1447 թ),—Հայապ. 574։*

— 7. Ալէքսիանոս, *միաբան Պառուագրակ անապատի, 1455 թ.—Տաշեան, Ցուց. 425 բ։*

— 8. Ալեքսանոս, *եղբորորդի Յովհաննէսի, որ մի այգի կտակեց Ամիրատինի հոգուն՝ Ս. Նշան վանքին, 1461 թ.*—Manus. brit. mus. *31 բ։*

— 9. Ալեքսանոս, *որդի Մելքիսեթ քահանայի. ծնվեց 1469 թ.—Ձեռ. Դաշեան, Բ 31 ա։*

— 10. Ալեքսանոս, *որդի Ստեփաննոս քահանայի, որ Հերմոնի վանքում գրել տվեց մի Աւետարան, 1469 թ.—Ձեռ. Թաւր. 132 բ։*

— 11. Ալեքսանոս *եպիսկոպոս, որդի Յովսէփ քահանայի. գրիչ. Արքայի վանքում օրինակեց Աւետարանը, 1486 թ.—Ձեռ. Նոր-Բայազ. 10 բ։*

— 12. Ալեքզանոս *աբեղա, գրիչ. Խորոտկայ վանքում, Խոնտքար տիկնոջ համար օրինակեց մի Աւետարան, 1490 թ.—Ձեռ. Նոր-Բայազ. 23 ա։*

— 13. Ալեքսանոս, *որդի Աւետիք քահանայի, որ Զաքարիա երեցից գնեց մի Աւետարան, 1500 թ.—Ձեռ. Հալէպի, Ա. 68 բ։*

— 14. Ալեքսիանոս *վարդապետ ի Թէադինեանց, վարիչ Լեմբերգի Լեհահայոց կղերանոցի. գրել է Ս. Հռիփսիմէի ողբերգութիւնը՝ 1668 թ.—Տաշեան, Ցուց. 959։*

— 15. Ալեքսանոս, *մականուն Օքսուզ, տաղասաց ԺԷ՞ դարի.—Տաշեան, Ցուց. 791 ա։*

***ԱԼԹԱՂԱՆ,** *իգ. կարելի էր դնել չաղաթ.* آلطای altay *«կարմիր աղվեսի մորթով շինված մուշտակ» բառից. բայց ավելի լավ եմ համարում դնել* Altay *լեռնաշղթայի անունից, իբր «Ալթայի*

խանը կամ իշխանը»։ Մի անգամ գտնում եմ ԺԴ դարում։

— Ալթաղան, կին տւագ Սարգսի, որ Թուրքմանների ձեռքից ազատեց մի Աւետարան, 1384 թ.—Տաշեան, Ցուց. 934 բ (հիշված է ուղ. Ալթաղան և քիչ հետո սեռ. Ալթաղին ձևով՝ փխ. Ալթաղանին)։

*ԱԼԹՈՒՆ, ար. և իգ.<թթր. և թրք. آلتون altun «ոսկի» բառից, որ Թուրքերի մոտ էլ արական անձնանուն է. հմմտ. Ալթուն խան՝ թագավոր Չինաց (Les mille et un jours, Paris 1844, էջ 125), Ալթուն-Բուղա՝ ոստիկան կամ նայիբ Հալէպի, որ 1335 թվին ապստամբեց Մոլևոն և Ատանա (Սիսուան 142 բ, 559 ա)։ Մեր մեջ էլ Ոսկի անունը գործածվում է թե իբր արական և թե իբր իգական անձնանուն։ Ալթուն անունը ավանդված է մեր մեջ ԺԵ դարից սկսած և գործածական էր մինչև անցյալ սերունդը։ Սրանից է Ալթունեան ազգանունը։ Հմմտ. նաև Ալթունբէգ և Ալթունջան։

— 1. Ալթուն, հորեղբորորդի Մխիթար աբեղայի, որ Նախավկայի վանքից էր և Շահռուխ միրզայի արշավանքից փախավ Սևերակ և այնտեղ գրեց Աւետարանը՝ 1437 թ. Ալթունը աշակերտում էր նրան և ձեռագրի համար թուղթ էր կոկում.—Ձեռ. Հալէպի, Ա. 65 ա։

— 2. Ալթուն, կին Կիրակոս քահանայի, որ Ամ գյուղում Ցովհաննէս քահանային գրել տվեց մի Աւետարան, 1497 թ.—Ձեռ. Նոր-Բայազ. 16 բ։

— 3. Ալթուն, կին Գրիգորի՝ եղբոր Կիրակոս քահանայի (տես նախորդը), որ Ամ գյուղում օրինակել տվեց Աւետարանը, 1497 թ.—Ձեռ. Նոր-Բայազ. 16 բ։

— Ալթուն անվան ավելի ուշ հիշատակություններ են՝ Ալթուն, ար. 1517 թ. (Թորոս Աղբար, Բ. 275), Ալթուն, ար. 1586 թ. (Նշխ. մատ. 45), Ալթուն, ար. 1596 թ. (Ձեռ. Թաւր. 75 բ), Ալթուն, իգ. 1604 թ? (Ձեռ. Հալէպի, Ա. 48 բ), Ալթուն, ար. 1617 թ. (Ձեռ. Վիեն. 26 բ), Ալթուն, ար. 1647 թ. (Ձեռ. Վասպ. 269), Ալթուն, իգ. 1648 թ. (Տաշեան, Ցուց. 376 բ), Ալթուն, ար. 1678 թ. (Տաշեան, Ցուց. 731 բ), Ալթուն, իգ. 1691 թ. (Ձեռ. Վասպ. 246), Ալթուն Սեբաստացի, ար. 1733 թ. (Տաշեան, Ցուց. 621 բ) են։

*ԱԼԹՈՒՆԲԷԳ, ար.<թրք. Altun անունից+beg «իշխան»։ Մի անգամ գտնում եմ հիշատակված՝

— Ալթունպէկ, որդի Թումայի և եղբայր Նաէֆ տիկնոջ, որ

Արտամետում Աստմ քահանային գրել տվեց մի Ավետարան, 1569 թ.—Ձեռ. Վասպ. 671 ա։

*ԱԼԹՈՒՆՋԱՆ, ար. < Ալթուն անունից+ջան փաղաքշականով։ Իբրև առաձին անուն գտնում եմ գործածված՝

— Ալթունջան, որդի Իշխանի, որ գնեց մի հին Ավետարան, 1503 թ.—Ձեռ. Վասպ. 280 բ։

*ԱԼԹՈՒՆՏԱՇ, ար. ⊲ Թրք. التونطاش Altun-taš բառից, որ նշանակում է «ոսկեքար»։ Մի անգամ գտնում եմ գործածված ԺԵ դարում։

— Ալթունտաշ, ոսկերիչ. հայր Ազարիա արքեպիսկոպոսի Գողթան գավառի, 1471 թ.—Ձեռ. Ագուլ. (Արար. 1911, 388)։

*ԱԼԻ, ար. < արաբ. علی ‘Alī անունից, որի բուն նշանակությունն է «բարձր, վսեմ»։ Այս անունով հայտնի է Մուհամմեդի փեսան՝ Ալի, որ ապա եղավ ամիրապետ և նստավ 656—661 թ։ Արաբների մեջ գահակալության համար ժառանգական օրենք չգտնվելով, երբ Օսման ամիրապետը մեռավ, նրան հաջորդ ընտրելու համար արաբները երկու կուսակցության բաժանվեցին. մի մասը պահանջում էր, որ Մուհամմեդի փեսան՝ Ալի լինի ամիրապետ, մյուս մասը կողմնակից էր Մուավիեի, որ Ասորիքի կառավարիչն էր։ Հինգ տարվա արյունահեղ կռիվներից հետո, վերջապես Մուավիեն հաղթեց, Ալի ամիրապետին և նրա որդի Հասանին սպանեց և ինքը գահ բարձրանալով՝ հիմնեց նոր խալիֆայություն, որ իր անունով կոչվեց Ումեյյան (661)։ Քաղաքական բաժանումը մահմեդականության մեջ առաջ բերավ կրոնական երկու մեծ հերձված, որ մինչև այժմ էլ շարունակվում է։ Առաջինը կոչվում է սուննի. սրանք Մուավիեի հետևորդներն են և կրոնի մեջ ընդունում են Ղուրանի հետ նաև չորս խալիֆաների ժամանակ գրված ավանդությունները։ Երկրորդը կոչվում է շիա. սրանք Ալիի հետևորդներն են և մերժում են ավանդությունները, իբր սրբազան գիրք ընդունելով միայն Ղուրանը։ Տաճիկները սուննի են, պարսիկները շիա։ Շիաները քրիստոնյաներին, ինչպես նաև սուննիներին համարում են հարամ և նրանց հետ ուտել կամ կենակցել չունին։ Իսկ սուննիները այդպիսի սովորություն չունին և քրիստոնյաների հետ ուտում ու խմում են։ Շիաների մոտ Ալին ամենամեծ մարգարեն է, գրեթե հավասար Մուհամմեդի։ Կա նույն իսկ պարսկական մի ուրիշ հերձված, որ Ալիին համարում է Աստված. սրանք կոչվում են Ալալլահի (այսինքն Ալի-Ալլահ ասողներ), որոնք սա-

*կայն քրիստոնյաների և մահմեդականների մեջ խտրություն չեն դնում։ Այսպիսի բացարձակ կրոնական մի անուն պետք չէ որ հայոց մեջ մտած լիներ. ուստի զարմանալի է, որ ԺԷ դարում, Տփղիսում ունինք մի հայ,* Ալի *անունով։ Տե՛ս և* Ալիխան*։*

— *1.* Ալի-իբն-Եահիա-ալ-Արմանի *(նշանակում է «Ալի որդի Յովհաննէսի, հայ»). մահմեդական դարձած հայ էր և Արղնիի և Նփրկերտի կուսակալ էր դրված։ Արաբների կողմից նշանակվեց Հայաստանի ոստիկան (862 թ)։ Ինքն էր որ բերեց Աշոտ Ա-ին իշխանաց իշխանի տիտղոսը։ Սպանվեց 863 թվին, հունաց դեմ պատերազմում, Դկլաթ գետի մոտ.—Յուշիկք, Ա. 452, Խալաթեան, Արաբ. մատ. 119, 123, 141, Տոմաշեկ, Սասուն, էջ 31—32, Զամչ. Բ. 676 (կոչում է «որդի Վահէի»,* Եահիա *համարելով ըստ հնչման Վահէ, բայց արաբ.* يحي Yahya=*Յովհաննէսն է, և հայոց պատմության մեջ, բացի վերջին Հայկազանց Վահէից, ուրիշ Վահէ չէ եղած), ՀԱ 1929, 720։*

— *2.* Ալի *Տփղիսեցի, ստացել է մի Մաշտոց, 1667 թ.—* Tūbingen *41։*

**ԱԼԻԲԱՐ, ար. ենթադրում եմ պրս.* علی بار ‘Ali-bār *«Ալիի պտուղը» ձևից, որ այլուստ ինձ անծանոթ է։*

— Ալիպար, *հիշված է ԺԷ դարում.—Ձեռ. Հալէպի, Բ. 8բ։*

**ԱԼԻԽԱՆ, ար. < պրս.* علی‌خان ‘Ali-xān *ձևից, որ կազմված է նախորդ* Ալի *անունից+*խան*։ Գործածված է մեր մեջ ԺԶ? դարից։ Սրանից է* Ալիխանեան *ազգանունը (Տփխիս)։*

— *1.* Ալիխան, *նվիրատու Աւետարանի, 1533 թ. կամ ավելի ուշ.—Ձեռ. Վենետ. Ա. 622։*

— *2.* Ալիխան, *հիշված 1647 թ.—Թորոս Աղբար, Ա. 220։*

**ԱԼԻԾ, իգ. եվրոպական անուն, որ Կիլիկյան շրջանում մտավ Հայոց մեջ և գործածական էր ԺԲ—ԺԴ դարերում։ Հմմտ.* Ալիծ՝ *դուստր Պալտինի* (Baudouin de Bourg), *երկրորդ թագավորի Երուսաղեմի, ի մօրէն Մարփիլ կամ Մորֆիա, որ էր դուստր Գաբրիէլի՝ հայ քաղաքապետի Մելիտինէի (Սիսուան 48 ա).—*Alix de Champagne, *թագուհի Ֆրանսիայի, կին Լուի Է թագավորի. մեռավ 1206 թ. այժմ ասվում է ֆրանս.* Alice, *որից և ունինք* Ալիս *(տե՛ս այս անունը)։*

— *1.* Ալիծ *իշխանուհի, դուստր Ռուբէն Բ-ի՝ եղբոր Լևոն Բ թագավորի. վեց տարեկան մանուկ հասակում, իր հորեղբայր Լևոնի հրամանով ամուսնացավ Զորտուանել Սամնեցու որդի Հեթում իշխանի հետ։ Վեց տարի հետո, Հեթումը մեռավ (1193)*

և Ալիծը 12 տարեկան այրի մնաց։ Երկրորդ տարին ամուսնացավ Անտիոքի բրինձ Բոհեմոնդի անդրանիկ որդի Ռեմոնդի (Raimond III) հետ (1194), որից ունեցավ մի որդի՝ Ռուբէն-Ռայմոնդ անունով։ Այս Ռուբէնի գահակալության համար էր, որ Լևոն Բ. 12 տարի հաղթական պատերազմ մղեց Անտիոքի իշխանության հետ։ Ալիծը երկրորդ անգամ այրիացավ (1196) և ամուսնացավ Վահրամ մարաջախտի հետ։ Ալիծի մայրը Իզաբել, կին Ռուբէն Բ-ի, իր Ֆրանկ եղբայր Հմֆրէից ժառանգել էր Տիւրոսի մոտիկ Թորոն բերդը. Եգիպտոսի սուլթան Սալահէդդինը գրավեց այն. բայց 40 տարի հետո՝ եվրոպացիք ետ առացան (1229) և Տևտոնեան ասպետները ուզեցին գրավել։ Ալիծը պահանջեց իբրև մայրենի ժառանգություն։ Երուսաղէմի վերին ատյանը ճանաչեց նրա իրավունքը, բայց Ֆրեդերիկ Բ կայսեր պայլը ասպետների կողմը բռնեց և զրկեց Ալիծին։ Ալիծը Թորոնի ճորտերին ապստամբեցրեց, որպեսզի կայսեր հարկերը չվճարեն։ Կայսրը զիջեց և բերդը Ալիծին դարձրեց։ Ալիծի վերջին հիշատակն է այն հրովարտակը, որ տվել է 1234 թվին, Երուսաղեմի Ս. Ղազար բորոտանոցի տուրքերի կարգադրության համար։—Սմբ. պատմ. 105, 108. Պատմ. կիլ. 208—209. Զամչ. Գ. 141 (կոչում է Աղիտա, որ և մոռացել է հիշել ցանկում). Սիսուան 58, 441, 494, 526, 552, 553. Հայապ. 437։

— 2. Ալիծ տիկին, եղբայր Հեթումի, իբրև հանգուցյալ հիշված է 1259 թվին՝ իշխանաց իշխան Ճոֆրէի (սա է Սարվանդի քարի տերը, մ. 1261 թ), նրա որդի Կոստանդինի և ուրիշների հետ.—Թորոս Աղբար, Բ. 437։

— 3. Ալիծ իշխանուհի, դուստր Հեթումի՝ եղբոր Ներսէս Լամբրոնացու, քույր Կոստանդին Լամբրոնացու, կին Կոստանդին պայլի (մ. 1262), մայր Հեթում Ա. թագավորի (1226—1270) և Սմբատ Գունդստաբլի (ծն. 1208). կոչվում է նաև Վիծ կամ Տամա Վիծի (տես այս անունը).—սեռ. Ալիծի՝ Անսիզք 93։

— 4. Ալիծ, դուստր Պաղտինի և քույր Կոստանդին Դ թագավորի. ծնվել է 1312 թ.—Սիսուան 272 բ։

— 5. Ալիծ տիկ. որ մեռել է 1316 թվին և որի տապանաքարը մնում է Տարսոնի Ս. Պօղոս եկեղեցում. նմանահանությունը՝ իր արձանագրությամբ տես Սիսուան 272։

— 6. Ալիծ, դուստր Հեթմոյ (Գ)՝ տեառն Լամբրոնի, եղավ սինեջալէս Կիպրոսի, այսինքն Կիպրոսի թագավորության սենեկալ Փիլիպպոս Իպլինեանի կինը։ Կիպրոս կղզու Մագուսա

*քաղաքում, ճարտար գրիչ Ստեփաննոս Գոյներ Երիցանց քահանային, որին առել էր իր խնամակալության տակ, գրել է տվել Ավետարան և այլ գրքեր՝ 1304, 1310, 1312 թվերին։ Իր քույրն է Կեռան թագուհի, կին Լևոն Գ-ի։—Մխուան 85ա, 272, 519, Հայապատում 503, Գովրիկեան, Դրանսիլուանիոյ հայոց մետրապոլիսը, էջ 343—348։*

*— 7.* Ալիծ, *կույս Տարոնում. նշանավոր գեղագիր էր. սրա համար պատմում են, թե գրել է այբուբենը և ասել.*

*Ով որ գրէ*
*Ջծայրն ճային, զծակն ծային,*
*Նա կու լինի փեսայ Ալծին։*
*Դիմողներին չի հավանել, ասելով թե*
*Ծայրն ճային, ծակն ծային՝*
*Չի նմանիր գիրն Ալիծին։*
*Բայց վերջապես գտել է մեկին, որին հավանելով ասել է*
*Ծայրն ճային, ծակն ծային՝*
*Կու նմանի գիրն Ալիծին։*

*Ժամանակակից է Լևոն Գ-ի (1236—1289)։—Մխուան 520։*

*— 8.* Ալիծ, *հարսն Թանգեր տիկնոջ, որ նրա մահվան հիշատակին գրել տվեց մի Ավետարան, 1327 թ.—Ձեռ. Հալէպի, Ա. 396—397։*

*—9.* Ալիծ, *դուստր Օշին պայլի և կին Լևոն Ե թագավորի։ Լևոն հետևելով իր լատին ազգականների խորհրդին, հակառակ կանգնեց հայ ազգային կուսակցության պաշտպաններին և գլխատել տվեց ոչ միայն սույն Օշինին, այլ և իր կնոջ՝ Ալիծ թագուհուն «1329 թ», որից հետո ամուսնացավ Սիկիլիայի թագավորի աղջկա հետ։—Ազգապ. 1834, 1848, Ալիշան, Հայ-Վենետ., էջ 112։*

*—10.* Ալիծ, *երկրորդ կին Ստեփանոսի՝ հոր Վասիլ Թղթագրի, որի կյանքը տես առանձին (1337).—Շահազիզ, Պատմ. պատկ., էջ 118։*

*ԱԼԻՆ, իգ. ծագումն ինձ անծանոթ է (չեմ կարծում որ կապ ունենա չաղաթ.* آلين *«կաթով լիքը ստինք» բառի հետ)։ Մի անգամ գտնում եմ 1586 թ. սեռ.* Ալինին *ձևով.—Ձեռ. Նոր-Բայազ. 15 բ։*

**ԱԼԻՆԱԽ, ար. թաթարական անուն է, բայց ծագումն ինձ անհայտ. (չեմ կարծում որ թրք.* آلیکاق al-yanaq *> արդի Պոլսահայ ամկ.* ալեանալս *«կարմրայտ» բառից լինի)։ Այս անունով հայտ-*

նի է Ալինախ քաջ զորավար Թագուդար Ահմադ սուլթանի, որ Աբաղա խանի հաջորդ Արղուն խանի հակառակորդն էր. Ալինախը 100,000-անոց բանակով գնաց Արղունի վրա (1284 թ). սկզբում հաղթեց, բայց ապա չարաչար կոտորվեց և սպանվեց (տես Նորատիպ ժամանակագրութիւն Սմբ. Օրբէլեանի, Երևան 1942, էջ 29)։ Այս անունը մեր մեջ գործածված է ԺԳ և ԺԴ դարերում։

— 1. Ալինախ, որդի Լևոն Գ-ի, երկվորյակ (խեղեփ) Օշինի և եղբայր Հեթում Բ-ի. ծնվել է 1272 թ. (Ձեռ. օշ. 99 բ, մինչդեռ Ազգաբ. դնում է «1283 թ»). տեր Լամբրոնի և Տարսոնի. գնաց Խարբանդա խանի մոտ և սպանել տվեց Լևոն Դ-ի և Հեթում Բ-ի սպանիչ Բիլարղուին «1307 թ». ներկա էր Ատանայի եկեղեցական ժողովին «1317 թ»։ Տարսոն գետում լողանալու ժամանակ՝ ձիուց քացիի հարված ստանալով՝ մեռավ «1317 թ»։ Օշին թագավորը պատվով թաղեց նրան Դրազարկում։—Սմբ. պատմ. 127—128. Ձեռ. օշ. 100 ա. Սամ. անեց. շար. 153, 156, Ալիշան, Հայ-Վենետ. 98, Հայապ. 490. Չամչ. Գ. 270, 279, 310, 312, 314, 317. Միսուան 85 բ, 130 ա, 142 ա, 232 ա, 258 բ, 271 բ։—Կոչված է նաև Ռուբէն, որ տես։

— 2. Ալինախ, որդի Օշին թագավորի Ռուբինեանց («1308—1320»). մեռավ մանուկ հասակում.—Հայապ. 544։

— 3. Ալինախ, երկրորդ անուն (ինքն ասում է «համանուն») Յովհաննէս եպիսկոպոսի Սուրբ-Կարապետցու, որդի պարոն Ներսէսի. այլազգիների նեղության պատճառով տարագիր եղավ Եկեղեաց գավառի Թլակ ավանը, ուր գրեց, ծաղկեց, ոսկեց ու կազմեց մի Աւետարան, 1370 թ.—Ձեռ. Վենետ. Ա. 779—780։

*ԱԼԻՍ, իգ. < ֆրանս. Alice անունից. սրա հին ձևն է Ալիծ, որ գործածական էր Կիլիկյան շրջանում։ Ալիս ֆրանսերեն ձևը զուգադիպելով Փոքր-Հայոց Ալիս գետի անվան հետ, սխալմամբ հայերեն համարվեց և տարածվեց նոր սերնդի մեջ, հատկապես Սեբաստիայում, որի միջով հոսում է նույն գետը։

— Ալիս, մայր Թորոս քահանայի, Հռոմկլա 1262 թ.—Նաթանեան, Տեղեկ. Սեբաստ. 83։

*ԱԼԼԱՀԲԱՇԽ, ար. < արաբ. الله Allah «Աստուած»+պրս. بخش baxš «պարգև» բառերից և նշանակում է «Աստուածապարգև»։ Գործածված է ԺԷ դարում։

— Ալահբաշխ, ամուսին Ղիմաթի, որ գրել տվեց մի Աւետարան, 1663 թ.—Ձեռ. Թեհր. (ՀԱ 1935, 406)։

*ԱԼԼԱՀԴԱԴ, ար. < պրս. الله‌داد Allahdād անունից, որ կազմված է արաբ. Allah «Աստված»+պրս. dād «տվեց» բառերից և նշանակում է «Աստուածատուր»։ Այս անունով հայտնի են Լէնկթիմուրի զորավարներից մեկը (ԺԴ դար) և մի պատմագիր (ԺԷ դար).—Justi 13 բ։

— Ալլահդատ, որդի Աղիլշահի. մի Յայսմաւուրք նվիրեցին Սակաբերդի եկեղեցուն, 1491 թ.—Այրարատ 443 ա։

*ԱԼԼԱՀԻ, ար. < պրս. الهی Allahī «աստվածային» բառից։ Գործածված կա ԺԷ դարից՝

— Ալահի (տր. Ալահուն), անհայտ ոմն, որ հիշված է 1692—1765 թ. շրջանում.—Ձեռ. Թաւր. 133 բ։

*ԱԼԼԱՀՂՈՒԼԻ, ար. < արաբ. الله Allah+թրք. قل qul «ծառայ» բառերից. նշանակում է «ծառայ Աստուծոյ». հմմտ. պրս. Խուդաբանդա և հուն. Θεόδουλος նույն նշանակությամբ։ Իբրև արական անուն գործածվում էր նաև թուրքերի մեջ. օր. Ալլահղուլի խան, կառավարիչ Երևանի՝ 1709 թ. (Այրարատ 305 ա)։

— 1. Ալլահղուլի, հիշված է 1607 թ.—Ձեռ. Դաղեան, Բ. 32 ա (տպ. Ալախշուլի. այսպես և ցանկում)։

— 2. Ալլահղուլի, որդի մելիք Իսրայէլի. հաջորդեց իր եղբոր՝ Մելիք Եսայուն, իբրև մելիք Ջրաբերդի (1728). իր քաջության համար Նադիր շահից ստացավ սուլթան տիտղոսը. դավաճանությամբ բռնվեց Փանահ խանից և Շուշի բերդում գլխատվեց (1756)։ Նրան հաջորդեց եղբայրը Մելիք-Ադամ։—Րաֆֆի, Խամսայի մելիքութ. 18, 51, 80, 81։

*ԱԼԼԱՀՎԵՐԴԻ, ար. < թրք. الله‌وردی Allahverdi անունից, որ կազմված է արաբ. Allah+թրք. verdi «տվեց» բառերից և նշանակում է «Աստուածատուր» (տես այս անունը)։ Հայտնի է օրինակ՝ Ալլահվերդի կառավարիչ Շիրազի, Շահաբասի օրով (Ջամչ. Գ. 555)։ Գործածական է եղել մեր մեջ ԺԸ—ԺԹ դարերում. օրինակ՝ Ալլահվերդի՝ 1723 թ. (Ձեռ. Վենետ. Ա. 220), Ալահվերդի 1742 թ. (Հաւաք. 51), Ալլահվերդի 1758 թ. (Ձեռ. Դաղեան, Բ. 14 ա), 1793 թ. (Այրարատ 315), անթվական (Ձեռ. Թաւր. 59 ա), ԺԹ դարից (Սիսական 262 ա)։ Սրանից է Ալլահվերդեան ազգանունը։

— 1. Ալլահվերդի Հասան-Ջալալեան, մելիք Խաչենի. որդի Մուլքի բէկի (մ. 1716). հաջորդեց իր եղբոր Մելիք Գրիգորին, երբ սա իշխանությունից հրաժարվելով՝ վանք մտավ.—Րաֆֆի, Խամսայի մելիքութ. 20—21, 27։

— 2. Ալլահվերդի, աշուղ Նոր-Ջուղայի Լիվասեան գյուղից, 1820—1890 թ. կյանքն ու գործերը տես Երեմեան ՀԱ 1924, 234 շար։

*ԱԼԽԱԹՈՒՆ, իգ. < Թրք. آل al «վարդագույն կարմիր» + xatun «տիկին» բառերից։ Մի անգամ գտնում եմ հիշված 1629 թվից հետո (Կամենից 183 = ՀԱ 1890, 21 բ)։

*ԱԼԽԱՍ, ար. < արաբ. الخاص Al-xaṣṣ «ընտիրը, ազնիվը»։ Պատմության մեջ հայտնի է Ալխաս (կամ Էլխաս)՝ եղբայր Պարսից Թահմասպ թագավորի, որ Օսմանցոց սուլթան Սուլէյմանի հետ միացած՝ ասպատակեց Հայաստանն ու Ատրպատականը (ԺԶ դար)։ Այս անունը գործածված է եղել մեր մեջ ԺԷ և ԺԸ դարերում։ Հիշատակված ունինք Ալհաս ոմն 1609 թ. (Ձեռ. Վասպ. 833) և Ալխաս՝ 1751 թ. (Ձեռ. Վասպ. 281)։ Սրանից է Ալխազեան ազգանունը Կովկասում։

*ԱԼՂՈՒ, ար. < Թթր. يالقى yalqə, yalġə «փայլուն, պայծառ, լուսավոր» բառից (Будагов, II 340 բ)։ Մի անգամ գտնում եմ գործածված ԺԵ դարում։

— Ալղու, զավակ Սելչուկ խաթունի, որ Հայրապետ քահանային գրել տվեց մի Մաշտոց, 1466 թ.—Թորոս Աղբար, Ա. 232. նույնը անփոփոխ կրկնված՝ Բ. 337։

*ԱԼՄԱ, իգ. < Թրք. الما alma «խնձոր» բառից. սրանից ունինք ԺԶ դարում Ալմայ խաթուն՝ 1582 թ. (Ձեռ. Վասպ. 696) և կրճատ ձևով՝ Ալմօ՝ անթվական մի հիշատակարանում (Ձեռ. Վասպ. 780)։

*ԱԼՄԱՍ, < Թրք. الماس almas «ադամանդ» բառից։ Սկզբում արական էր. այսպես ունինք մի անգամ Ալմաս՝ ար. 1599 թ. (Տաշեան, Ցուց. 922 բ)։ Ավելի ուշ ստացավ Ալմաստ ձևը և դարձավ իգական։ Բառավերջում ս-ից հետո ավելացված տ-ի մասին օրինակ են՝ Սաղամաս > Սալմաստ, սուս > ստավել «լռել», կալբաս > կալբաստ, սիֆիլիս > սիֆիլիստ, էսպէս > էսպէստ, նույն իսկ Ռուս > Ուռուստ։ Իբրև իգական ունինք Ալմաս 1656 թ. (Ձեռ. Թաւր. 51 բ), 1657 թ. (Ձեռ. Վասպ. 835), 1684 թ. (անդ 963), 1690 թ. (անդ 974), 1733 թ. (անդ 1040), 1760 թ. (Ձեռ. Նոր-Բայազ. 10 բ), 1791 թ. (Ձեռ. Թաւր. 87 բ) և անհայտ թվականով՝ Ձեռ. Վիեննա. Ա. 790, Ձեռ. Վասպ. 268 և 489։ Սակայն թվի թե արական են Ալմաստ 1639 թ. (Ձեռ. Հալէպի, Ա. 229 ա), 1675 թ. (Ձեռ. Թաւր. 133 բ) և անհայտ թվականով Ձեռ. Վասպ. 752։ Մինչև վերջին սերունդն էլ կար Կովկասում

Ալմաստ և Արևմտահայոց մեջ Էլմաս ձևով, որից էլ Էլմասեան ազգանունը։

ԱԼՆԱՑՂՈՒ, անստույգ անուն. ծագումն անհայտ. արդյոք թրք. آلن آقا alən-aġə «ճակտի սպիտակություն, պարզերեսություն» բառից է։ Մի անգամ գտնում եմ գործածված՝

— Ալնայղու, մր. թե իգ. հիշված է 1490 թվից ավելի ուշ գրված անթվական մի հիշատակության մեջ (Ձեռ. Սևան. 5 բ)։

ԱԼՃԱՏ, իգ. ծագումն ինձ անհայտ։ Մի անգամ գտնում եմ գործածված 1575 թ. (Թորոս Աղբար, Բ. 410)։

ԱԼՈՍ, իգ. ծագումն անհայտ. հմմտ. Ալուզ։

— Ալոս, կին Գրիգոր քահանայի, որ ստացավ մի Ավետարան (տեղն ու թվականը անհայտ).—Ձեռ. Վասպ. 157։

ԱԼՈՒԶ, ար. ծագումն անհայտ. Justi 13 բ նույնպես հիշում է այս անունը, բայց որևէ մեկնություն չի տալիս. հմմտ. սակայն թթր. آلص կամ آلوس alus, آليص alis կամ آلوز aluz «հեռու, հեռավոր» (Будагов, I. 84 ա)։

— 1. Ալուզ, իշխան Ծաղկոտն, Կոգովիտ և Անգեղտուն գավառների. սրա որդին Գրիգոր՝ Ամիւկի իշխան Աբդլմսեհի աներն էր (ԺԱ դար).—սեռ. Ալուզի՝ Արծր. Դ. ժբ. Հաւաք. 35. Այրարատ 495.—Ա՞յս է նաև Ալուզ, որի դուստրը X՝ կինն էր Վասակ Հոլումի, ըստ Ալիշան, Շնորհ. էջ 12 (տախտակը)։

— 2. Ալուզ տե՛ս Ստեփաննոս Ալուզ։

— 3. Ալուզ, հայր Խեդենեկի, որ իր Թեղանոյ շամբ կոչված կալվածը նվիրեց Հոռոմոսի վանքին, 1245 թ.—Շիրակ, էջ 22, 26։

— 4. Ալուզբեկ արքայ (իմա իշխան), եղբայր Աբդլմսեհ կիւրապաղատի, երկուսն էլ որդի Թոռնիկ Բ-ի. Աբդլմսեհը մեռել է 1121 թվին. Աբդլմսեհի որդին է Դաւիթ Ա կաթուղիկոս Աղթամարի «1113—1165? թ». որով Ալուզբեկը լինում է հորեղբայր Դաւիթ Ա կաթուղիկոսի.—Հաւաք. 38, 59։

ԱԼՈՒՄ, ար. ծագումն անհայտ. մի անգամ միայն ունինք՝

— Ալում, հիշված 1738 թ.—Ձեռ. Դաղեան, Բ. 14 բ։

*ԱԼՎԱՆԴ, ար. <պրս. الوند Alwand անունից. այս անունով հայտնի է Ուզուն Հասանի թոռնորդի Ալվանդը, որ Հայդարի մահից հետո տիրող անիշխանության ժամանակ ուզեց ամբողջ Պարսկաստանին տիրել. բայց Հայդարի որդի Իսմայելից վտարվեց, 1499 թ։ Մեր պատմության մեջ էլ հիշատակված է Ալվանդ փաթշահը՝ 1500 թ. (Սիսական 76)։ Այս անունով հայտնի է

նույնպես նշանավոր մի սար, մշտնջենական ձյունով ծածկված. գտնվում է Համադանի արևմտյան կողմը և հաճախ հիշատակվում է բանաստեղծական գրվածքների մեջ։ Justi 235 բ պրս. Alwand ձևը գտնում է պհլ. arwand «հզոր, քաջ» բառից և միացնելով զնդ. aurwand ձևին, կապում է հին իրան. Orontes անվան հետ։ Այս անունը գտնում եմ մեր մեջ գործածված մի անգամ ԺԸ դարում։

— Ալվանդ ոմն, հիշված է 1768 թ. (Ձեռ. Նոր-Բայազ. 39ա)։

ԱԼՎԱՐ, իգ. ծագումն անհայտ. այս անունով կա նաև մի գյուղ Բասենում. մի անգամ ունենք գործածված ԺԷ դարից՝

— Ալվար. հիշված 1674 թ.—Ձեռ. Դադեան, Բ. 46 բ։

*ԱԼՓԱՍԼԱՆ, ար. < թթր. الپ ارسلان Alp-aslan անունից, որ բուն նշանակում է «քաջ առյուծ» (կազմված alp «քաջ, հերոս» +arslan, aslan «առյուծ» բառերից)։ Նշանավոր է պատմության մեջ Տուղրիլի եղբայր սուլթան Ալփասլան, որ հույների ձեռքից գրավեց Անի մայրաքաղաքը՝ մեծ կոտորածով (1064 թ)։

— Ալփասլան, նվիրատու Նորավանից (ԺԴ դար).—Օրբ. կգ (գրված Արփասլան), Սիսական 198։

ԱԼՓԻԱՐ, ար. այս անունը կա երկու ձևով՝ Ալփիար և Արփիար. այս երկուսից ո՞րն է նախնականը. առաջին հայացքով նախնականն է Արփիար, -ենթադրելով թե բառը ծագած պիտի լինի արփի «արեգակ» բառից։ Բայց արփի սովորական բառ չէ և ժողովրդական գործածություն ունեցած չէ. միևնույն ժամանակ -ար վերջավորությունը դժվար է բացատրել։ Զանազանօրեն կարելի չէ որոշել թե ո՞րն է նախնականը. ըստ որում թե Արփիար կարող է տարանմանությամբ դառնալ Ալփիար, և թե Ալփիար կարող է համանմանությամբ դառնալ Արփիար։ Պատմականորեն հնագույնն է Ալփիար, որ ավանդված է երկու անգամ ԺԷ դարից.—1625 թվին (Թորոս Աղբար, Ա. 372) և 1659թ. (Ձեռ. Սեբ.=ՀԱ 1926, 546)։ Միևնույն ժամանակ կա Ալփիկ, որ եթե սրա փաղաքշականն է, բառը տանում է մինչև ԺԴ դար։ Իսկ Արփիար անունը ավանդված է միայն անցյալ դարից. այսպես՝ Փիլիպպոս Արփիարեան՝ 1801 թ. (Ազգատ. 3296), և Արփիար Արփիարեան՝ նշանավոր հրապարակախոսը՝ 1852—1908 թ։

ԱԼՓԻԿ, ար. ծագումն անծանոթ. թերևս փաղաքշականն է Ալփիար անվան, որ տես։ Հայտնի է միայն մի անգամ ԺԴ դարից՝

— Ալփիկ, հայր Աբուլանի, որ իբրև վկա հիշվում է 1387 թ.—Յովսէփեան, Նիւթեր և ուս. Ա 45, 61։

*ԱԽԱՆ, ծագումն անհայտ։*

— Ախսան, *մր. թե իգ. հիշված է 1708 թ.—Ձեռ. Դաղեան, Ա. 45 ա։*

Ախկուլ *տե՛ս* Աղգուլ։

**ԱԽԹԻԱՐ*, *ար. < թրք.* اختیار ixtiyar *«ծեր, ծերունի» բառից (որ ծագում է արաբ.* ixtiyār *«կամք, կամավոր ընտրություն» բառից). հմմտ. հյ.* Ծեր, Ծերուն, *պրս.* Փիր *անունները, որ ըստ իմաստի համապատասխանում են իրար։—Անսովոր անուն է. մի անգամ արական և մի անգամ էլ իգական ձևով գտնում եմ գործածված՝ առաջինը ԺԷ դարում և երկրորդը ԺԶ կամ ԺԷ դարում։*

*—1.* Ախթիար *ոմն Շոռոթեցի, որի անունով կա մի խաչքար՝ 1626 թվից.—Սիսական 356։*

*— 2.* Աղթիար, *կին՝ Յովհաննէս սարկավագի, հիշված 1507 թվից ավելի ուշ գրված անթվական մի հիշատակարանում.—Ձեռ. Վաստ. 627։*

**ԱԽԻ*, *ար. արաբ. <* أخي axī *«եղբայր իմ» ձևից (հմմտ. հյ.* Եղբայր, Եղբայրիկ, Աղբրաց *անունները)։ Սրանից են փաղաքշաբար* Ախիջան *(որ տե՛ս առանձին) և* Ախիկ, *որ թեև չունինք ավանդված, բայց սրանից ունինք* Ախիկեան *ազգանունը (Վան, Նոր-Նախիջևան)։* Ախի *ձևը գործածված է ԺԴ—ԺԶ դարերում, թեև շատ սակավ. իսկ* Ախիջան՝ *ԺԶ—ԺԷ դարերում, բավական հաճախ։*

*— 1.* Ախի, *եղբայր տանուտեր Զատար Մկրտիչի, 1327 թ. —Ձեռ. Ապուլ. (Արրտ. 1911, 461)։*

*—2.* Ախի *(սեռ.* յախոյն *ձևով հիշված), հայր Արղուան Արծկեցու, որ Յովհաննէս գրչին գրել տվեց մի Ավետարան, 1482 թ.—Ձեռ Պետերբ. (ՀԱ 1892, 85 ա)։*

*— 3.* Ախի, *ար. հիշված 1517 թ. (Թորոս Աղբար, Բ. 275)։*

*ԱԽԻՆԻՄ, ար. ծագումն անհայտ. անսովոր անուն, որ գտնում եմ գործածված անթվական մի հիշատակարանում-*

— Ախինիմ, *հայր Աբրահամ աբեղայի.—Ձեռ. Թաւր. 109ա։*

**ԱԽԻՋԱՆ*, *ար. կազմված է նախորդ* Ախի+ջան *բառերից. առաջին անգամ երևում է ԺԴ դարում. հետո ԺԶ—ԺԷ դարերում և բավական հաճախ է գործածվում։*

*— 1.* Ախիջան, *որդի խոջա Մուրատբախշի, 1327 թ.—Ձեռ. Ապուլ. (Արրտ. 1911, 461)։*

— 2. Ախիջան, որդի Միրիջանի՝ եղբոր խոջա Ադրշահի, որ վանում, Աղաբիա գրչին գրել տվեց մի Աւետարան, 1484 թ.— Ձեռ. Վասպ. 496։

— Ախիջան անունը ունինք դարձյալ 1534 թ. (Ձեռ. Վենետ. Ա. 717), 1570 թ. (Ձեռ. Վասպ. 672, Ահիջան ձևով), 1585 թ. (Ձեռ. Թաւր. 74 բ), 1590 թ. (Ձեռ. Վասպ. 716, Ահիջան ձևով), 1595. թ. (անդ 745), 1596 թ. (Ձեռ. Թաւր. 75 բ), 1607 թ. (Տաշեան, Ցուց. 465 բ գրված սխալմամբ Ախսիջան), 1608 թ. (Ձեռ. Վասպ. 831), 1609 թ. (անդ 835), այլ ոմն մատնիչ Ախիջան 1613 թ. (Առաք. պատմ. 116), 1638 թ. (Ձեռ. Վասպ. 892), 1642 թ. (անդ 765), Ախիջան բարեգործ վանեցի 1648 թ. (Զամչ. Գ. 627), Ախիճան 1656 թ. (Ձեռ. Վենետ. Բ. 954), 1657 թ. (Տաշեան, Ցուց. 355 բ), 1661 թ. (Ձեռ. Վենետ. Ա. 301)։

*ԱԽԼՓԱՇԱ, իգ. <արաբ. عاقل ʻāqil «իմաստուն»+փաշա բառերից. ունինք նաև արաբ. ʻAqil և عقيل ʻAqīl անձնանունները (Կամուս, Գ. 292 և 294)։ Մեր մեջ այս անունը հիշված է մի անգամ 1588 թ. (Տաշեան, Ցուց. 736 բ)։

ԱԽՆԱՄՈՒՂ, իգ. հիշված 1739 թ. (Ձեռ. Դաղեան, Բ. 14 բ).—այսպես ցանկում, իսկ բնագրում Ախտնումուղ. երկուսն էլ կասկածելի։

ԱԽՆԻ, իգ. ծագումն անհայտ։

— Ախնի, ազնվական կին, քույր Կամարայի. քարոզչուհի Թոնդրակեցոց աղանդի (ԺԱ դար).—Լաստ. իգ. Տաշեան, Ցուց. 358 ա։

Ախսի տես Նախսի։

ԱԿԱԹԷԼ, ծագումն անհայտ և անսովոր անուն։

— Ակաթէլ, ազնվական հայ Տփղիսեցի «1858 թ».—Ազգապ. 3983։

*ԱԿԱԿ կամ ԱԿԱԿԻՈՍ, ար. <հուն. Ἀκάκιος անունից, որ բուն նշանակում է «անմեղ» (կազմված է α բացասականով՝ κακός «չար, վատ» բառից)։ Հայտնի են օրինակ՝ Ակակիոս պատրիարք հունաց Կոստանդնուպոլսի (Ե դար), Ակակ եպիսկոպոս Մելիտինէի, ժամանակակից Ս. Մեսրոպի, Ակակ պարսիկ, ընկեր Բարծումա նեստորական ասորի քարոզչի (Ե դար)։ Մեր մեջ բոլորովին անսովոր է։

—1. Ակակ (կամ Ակաս), առաջնորդն էր Արարատեան վկաների, որոնք՝ թվով 10,000 հոգի, քրիստոնյա էին դարձել և մերժելով Ադրիանոս կայսեր հրամանը, չընդունեցին կռապաշ-

*տուԹյունը և բոլորն էլ նահատակվեցին (118 թ), Արարատ լեռան վրա։ Լատին եկեղեցին տոնում է նրանց հիշատակը՝ հունիսամսի 22-ին։ Նշխարները սփռված են շատ տեղեր և հատկապես Վենետիկ։ Այստեղ,* Carpaccio *իտալացի նշանավոր նկարիչը (մ. 1522) նկարել է նույն նահատակների մեծ և նշանավոր պատկերը, որ գտնվում է Վենետիկի նկարչական ակադեմիայում։ Նահատակների առաջնորդն էր Ակակ կամ Ակատ տրիբունը, երկրորդն էր Գարկեր (*Garcere*)։—Այրարատ 476 (ուր կա նաև նույն նշանավոր նկարի օրինակը և լատիներեն մի ոտանավոր՝ Այրարատեան վկաների մասին), Ալիշան, Արշալ. քրիստ. Բ. տպ. էջ 72։*

— 2. Ակակիոս *եպիսկոպոս Տիգրանակերտի, 250—280 թ. (տես Սարգիսեան, Ագաթ. և իւր բազմ. գաղտնիքը 185)։*

† *ԱԿԱՆՑ, իգ. ծագում է հյ.* ակունք *«թանկագին քարեր» բառի սեռ.* ականց *ձևից։ Այս հնագույն ձևով ավանդված է 1256 թ. այնուհետև դարձել է* Ակաց*. հմմտ. նաև* Ակներ *անունը։ Կիլիկիայում* Ականց *և* Ակներ *անունով մի մի վանք կար։ Գործածական էր Կիլիկյան շրջանում, ԺԳ—ԺԴ դար։ Ապա խափանված։*

— 1. Ականց *տիկին, կին Սիր Լիկոսի՝ եղբոր Հեթում Ա թագավորի Հայոց և մայր Սիր Լևոնի, որ Յովհաննէս գրչին գրել տվեց մի Աւետարան, 1256 թ.—Ձեռ. Վենետ. Ա. 447։*

— 2. Ակաց, *ազնվական տիկին, կին պարոն Ստեփաննոսի, «իշխանական պատուով զինուորեալ ի դրան արքայի», որ էր որդի Թորոս քահանայի, եղբօրորդւոյ Կոստանդին Ա կաթուղիկոսի. հիշված է 1256 և 1262 թ.—Ձեռ. Հալէպի, Բ. 140 ա (Թորոս Աղբար, Ա. 188 նույնը գրում է* Աղոյ*, որ վրիպակ է), Ձեռ. Սեբ. (ՀԱ 1924, 333)։*

— 3. Ակաց, *կին Օշին մարաջախտի Թագաւորութեան Հայոց, որդւոյ Կոստանդին Լամբրոնացւոյ. հիշված է 1274 թ., երբ ամուսինը՝ Օշին գրել տվեց մի չքնաղ Աւետարան.—ՀԱ 1898, 246 և 248։*

— 4. Ակաց, *կին սիր Օշինի Պայլենց, մայր Թորոսի և Վասակի, որոնց բոլորի հիշատակին ժառանգները գնեցին մի Աւետարան՝ 1292 թ.—Ձեռ. Մխ. Նխ. 8 բ։*

— 5. Ակաց, *քույր Կոստանդին գրչի, որ Սիսում օրինակեց մի Ճառընտիր (ԺԳ դար).—Ձեռ. Վենետ. Բ. 486։*

— 6. Ակաց, *դուստր Գունդստաբլի Հայոց. մայրն է Ջալալուն իշխանուհի, որ ստացավ մի Աւետարան, 1309 թ.—Ձեռ. Սեբ. (ՀԱ 1924, 519)։*

ԱԿԻԹ, ար. ծագումն անհայտ և անսովոր անուն. մի անգամ ունինք հիշատակված Ե դարից։

— Ակիթ, կրոնավոր, որ առաջ Գարդմանի վանքումն էր և ապա եկավ Էջմիածին՝ Ղազար Փարպեցու մոտ, իբր վերակացու ծառայելու. (Ե դար).—Փարպ. էջ 196։

*ԱԿԻՒԼԻՆԷ, իգ. < հուն. 'Ακυλῖνα ձևի վրայից լտ. Aquilina անուններից, որի արականն էլ կա՝ լտ. Aquilinus, հուն. Ἀκυλῖνος ձևով. սրանցից են ֆրանս. Aquiline, ռուս. Акулина. բոլորն էլ ծագում են լտ. aquila «արծիվ» բառից և բուն նշանակում են «արծվային»։ Յայսմաւուրքից հայտնի է Ակիւլինէ կույս նահատակուհի (գրված նաև Ակիւլինա, Ակեղինէ և Ակիլինէ)։ Մեր մեջ գործածական էր անցյալ դարում. այժմ խափանված։

†ԱԿՆԵՐ, իգ. < հյ. ակներ «թանկագին քարեր, ակունք» հոգնակի ձևից. հմմտ. Ականց։ Միայն մի անգամ գտնում եմ գործածված՝ ԺԳ դարում։

— Ակներ, դուստր Խաչատուր քահանայի և քույր Գրիգոր գրչի, որ Թէոդուպոլիս (Կարին) քաղաքում գրեց Աւետարանը՝ 1230 թ.—Ձեռ. Վենետ. Ա. 572։

ԱԿՈՒՆ, ար. և իգ. ծագումն անհայտ. անսովոր անուն՝ ԺԶ/ԺԷ դարից. սրանից է Ակունեան ազգանունը։

— 1. Ակուն, ար. հիշված 1591 թ.—Ձեռ. Հալէպի, Բ. 9 բ։

— 2. Ակուն, իգ. հիշված է 1605 թ.—Manus. brit. mus. 71ա։

*ԱԿՔԷՈՍ, ար. թերևս սխալ տառադարձված հուն. 'Αγγαῖος ձևից, որ եբր. חגי Xaggai > լտ. Haggaeus, հյ. Անգէոս անունն է։ Այս անունով հայտնի է 12 փոքր մարգարեներից մեկը, որ մարգարեացավ 520 թ։ Բուն նշանակում է «խնջույք», ըստ Բառարան Ս. Գրոց, Պոլիս 1881, էջ 38։

— Ակքէոս, աշակերտ Թադէոս առաքելոյ. քարոզել է Կորճայք գավառում, ապա վերադարձել Եդեսիա, ուր և վախճանվել է (Ա դար).—Ալիշան, Արշալ. քրիստ. 22։

*ԱՀԱՐՈՆ, ար. < եբր. אהרן Aharon, որ ըստ Բառարան Ս. Գրոց, Պոլիս 1881, էջ 19, նշանակում է «լեռնաբնակ»։ Հներից մեկնված է «Ահարոն որ թարգմանի հոգի» (Սարկ. լուս. 29), «Ովր՝ որ թարգմանի լոյս, նշանակէ զվարդապետս. և Ահարոն՝ զօրեղ և լեռնային, և նշանակէ զսուրբս» (Մոլութ. 230 ա)։ Տառադարձված է հուն. 'Ααρών, լտ. Aaron, Aron, ասոր. اهرون A-haron (Հիւբշ. 291), արաբ. هارون Hārūn։ Նշանավոր են պատմության մեջ՝ Ահարոն, երեց եղբայր Մովսէս մարգարեի և առաջին

*քահանայապետ Հրեից (Ն.Բ. 1574), Հարուն-առ-Ռաշիդ՝ Աբբասյան արաբ ամիրապետ Բաղդադի 765—809. (ըստ Կամուս, Գ. 719՝ Հարուն եբրայական լեզվով նշանակում է «սիրելի, բարեկամ»)։ Մեր մեջ այս անունը գործածվել է Դ—ԺԵ դարերում. պատահում է նաև այժմ. սրանից է* Ահարոնեան *ազգանունը. ունինք նաև կրճատ ձևով՝* Հարոն, *որից* Հարոնեան *ազգանունը (Ղարաբաղ)։ Գրված է* Ախարոն՝ *Ձեռ. Վասպ. 393 (անթվական)։*

— *1.* Ահարոն *եպիսկոպոս, ժամանակակից Խոսրով Գ. թագավորի, որ գահակալում էր «384—389 թ» և մեռավ «415 թ»։ —Բուզ. Զ. ժդ.—սեռ.* Ահարոնի՝ *Բուզ. Զ. ժդ (ցանկում սխալմամբ գրված* Արշարունեաց*)։*

— *2.* Ահարոն, *եպիսկոպոս Աշմուշատի. Զ դարի սկիզբը. հայ է թե ասորի.—Տոմաշեկ, Սասուն, էջ 13։*

— *3.* Ահարոն, *եպիսկոպոս Մեհնունեաց. անդամ Դվինի ժողովի «607 թ».—Ուխտ. Բ. լ, Գիրք Թղ. լը.—սեռ.* Ահարոնի՝ *Ուխտ. Բ. լէ. Գիրք Թղ. խ.—բց.* յԱհարոնէ՝ *Ուխտ. Բ. լը. Գիրք Թղ. լթ։*

— *4.* Ահարոն, *կաթուղիկոս Աղվանից, 779—781 թ. հաջորդեց Մովսեսի.—Կղկնտ. Գ. իդ. Կիր. ը. Մխ. այրիվ. 24 բ, Հայապ. 384։*

— *5.* Ահարոն, *վանական Երիցու վանից. հիշված է իբրև վկա՝ Տաթևի 844 թվի կալվածագրում.—Օրբ. լը, Մխական 281 ա։*

— *6.* Ահարոն, *քահանայ Նորեաց. հիշված է իբրև վկա՝ Տաթևի 844 թվի կալվածագրում.—սեռ.* Ահարոնի՝ *Օրբ. լը։—Մխական 247 ա, 289 ա։*

— *7.* Ահարոն, *երեց. հիշված է իբրև վկա՝ Տաթևի 881 թվի կալվածագրում.—Օրբ. լթ։*

—*8.* Ահարոն *Վանանդեցի, Իջաւանից գյուղից, Թոռն Ղևոնդ երեցի. վանահայր, 885—900 թվերին. գրել է Նունեի խաչի պատմությունը. մեռել է նախ քան 912 թ.—Այրարատ 54, 104, (որ սրա հետ նույն է դնում Հայր* Ահարոն, *հիշված Մխ. այրիվ. 70՝ 885—901 թվերի միջև), Հայապ. 78, Զարբ. Հին դպր. 530։*

— *9.* Ահարոն, *եղբայր Սամուէլ Դերջանցու, որ Բուլղարիայի թագավոր եղավ (տես Սամուէլ)։—Տէր Սահակեան, Հայ կայսերք, Բ. 278։*

— *10.* Ահարոյն *կրոնավոր, գրիչ. օրինակեց Ավետարանը՝ Եգիպտոսի Աղեքսանդրիա քաղաքում, 1099 թ.—*Rapport Arm. *59, Ձեռ. Կարին. 18, Զարբ. Թրգմ. 159։ (Ըստ Տաշեան, Ակնարկ*

22 «յայտնապէս ի Կիլիկիա» գրված է, որովհետև հիշատակարանում տեղեկություն է տրվում Թաչակիրների մասին։ Ըստ Macler գրված է Եգիպտոսում։ Բայց Եգիպտոսում էլ կարելի էր խոսել Թաչակիրների մասին)։

— 11. Ահարոն, հռչյն թե հունահայ իշխան. Բալուի Ճանճիպրկայ գյուղից. Թէոփիստէս հայ-հոռոմ փիլիսոփայի միջոցով հայոց դավանանքի դեմ գրել տվեց վիճաբանական մի գրվածք և ուղարկեց Օսսունի Զորտուանել իշխանին (1101 թ). սրա դեմ Պօղոս Տարօնեցին գրեց մի ընդարձակ հերքում.—տես. Ահարոնի՝ Տարօն. յիշ։

— 12. Ահարոն բժիշկ, որդի Ստեփաննոս բժշկի (ըստ Գալուստ Ամասիացու տված տեղեկության, որ տես Տաշեան, Ցուց. 1012 ա). իր որդին է Ստեփաննոս բժիշկ (ըստ Ամիրտովլաթի) և իր տոհմից են Ճոսլին, Սարգիս, Յակոբ, Դեղին են բժիշկները։ Ստեփաննոս որդին հիշված է 1232 թ., Ահարոնը հիշված է Մխիթար Հերացուց (1184) հետո, ուստի Ահարոն բժիշկը ապրած պիտի լինի 1200-ական թվերին։ (Բասմաջեանը, Ամիրտ. անգ. յուշ. իր ասում է թե Ստեփաննոս և Ճոսլին ապրում էին ՆՁԱ=1032 թվին. անշուշտ այդ թիվը ճիշտ չէ, որովհետև նրանք Մխիթար Հերացուց հետո են)։—Ամիրտ. անգ. 2. Տաշեան, Ցուց. 129 ա, 199 ա, 1012 ա. Յովսեփեան, Հետազօտ. Բ 410—413. Ակինեան ՀԱ 1931, 708 ծ. (ըստ այս վերջինի՝ Ահարոնի որդիներն են Միքայէլ վաղամեռիկ, Ճոսլին և Ստեփանոս)։

— 13. Ահարոն վրդ. օրինակել է Իգնատիոս վարդապետի «Մեկնութիւն Ղուկասու», Անիում, 1292 թ.—Ձեռ. Կարին. 157։

— 14. Ահարոն, ստացող. Երզնկայում, Շահինշահ գրչին գրել տվեց Եւագրի գործերը, 1298 թ.—Manus. bibl. nat. էջ 56։

— 15. Ահարոն դպիր, եղբորորդի Մխիթար քահանայի, որ Ներսէս գրչին գրել տվեց մի Աւետարան, 1325 թ.—Թորոս Աղբար, Բ. 295։

— 16. Ահարոն միայնակեաց, Թաչատուր եպիսկոպոսին գրել տվեց Աւետարանը, Լիմ 1333 թ.—Ակինեան, Գաւազանագիրք 57։

— 17. Ահարոն, միաբան Վարագայ վանից, 1454 թ.—Նոտարք 176։

*ԱՀԴԻԲԷԳ, ար. < պրս. عهد بيگ ʻahd-i beg «բեգի ուխտը». մի անգամ գտնում եմ գործածված ժԵ դարում։ (Բայց գուցե պետք է հասկանալ Աղբէգ)։

— Ահդիբեկ, թոռն պղնձագործ Ըռուզբեկի, որ հուքի գյու-

ղում, Մանուէլ քահանային օրինակել տվեց Գանձարանը, 1478 թ.—Ձեռ. Դադեան, Ա. 39 բ։

*ԱՀԵՆ, ար. < պրս. آهن ahen «երկաթ» բառից։ Գործածված է միայն մի անգամ. աղբյուրն էլ վստահելի չէ. գուցե պետք է կարդալ Ամեն։ Պարսկականում Ahen անուն չի պատահում. Justi այս բառով կազմված ոչ մի անուն չգիտե։ Նույնպես տառադարձությունը ուղիղ չէ և սպասելի էր *Ահան։

— Ահեն, որդի Պետրոսի, եղբոր Մարտիրոսի, որ նորոգել տվեց մի հին Ավետարան, 1735 թվին.—Ձեռ. Վասպ. 546։

*ԱՀԵՐՄՈՆ, որ և Հերմոն, Հրէաստանի նշանավոր մի սարի անունն է. Անտի-Լիբանան լեռնաշղթայի ամենաբարձր գագաթն է. պերճ ու փառահեղ լեռ, որ գրեթե մշտնջենական ձյունով ծածկված է. հին անունն է եբր. חרמון Xermon, որ տառադարձված է հուն. Ἀερμών, լտ. Hermon. այժմ կոչվում է jabal-aš-šaix. Այս սարի անունով է կոչված Եղեգեաց Ս. Գրիգորի վանքը, որ հիմնվել է 936 թվին։ Այս անունով է կոչվել՝

— Ահերմոն, նույն վանքի առաջին վանահայրը՝ ըստ Օրբ. խթ։—Այս անունով ուրիշ անձ չէ պատահած մեր պատմության մեջ, բայց կա Հերմոն, որ տես։—Վանքի հիմնարկության և հաջորդ շրջանների պատմությունը տես Սիսական, էջ 125։

*ԱՀԻԱՑ, ար. < եբր. אהיה Ehyeh «Աստված» բառն է (Gesenius 13 բ), որ սխալ ձայնանիշներով կարդացվում է Ահիան, ինչպես ունինք ավանդված Ոսկ. ես. ծա. գրված է նաև Ահյան կիւրղ. ել։ Շատ անսովոր անուն, որ մի անգամ գտնում եմ հոդով գրված՝

— Ահիայն, աշխատավոր Առնջուց վանքում. Դաւութի և Տէր Զաքարիայի հետ թուղթ էին կոկում Յովհաննէս եպիսկոպոսի համար, օրինակելու Ավետարանը՝ 1594 թ։—Ձեռ. Վեննա. Ա. 696։

ԱՀԻՊԱՐ, ար. ծագումն անհայտ. մի անգամ գտնում եմ գործածված՝

— Ահիպար, որդի Մկրտիչի և եղբայր Մատթէոս քահանայի, որ Եղեգեաց անապատում գրել տվեց մի Ավետարան, 1496 թ.—Ձեռ. Նոր-Բայազ. 7 բ։

*ԱՀԼԻ, հայտնի չէ թե ար. է թե ևգ. կրճատ ձևն է հաջորդ Ահլիջան, Ահլիմելիք, Ահլիման և Ահլիփաշա անունների։ Գործածված է մի անգամ անթվական մի հիշատակարանում, որ գրված է 1821 թվից հետո (Թորոս Աղբար, Բ. 346)։

*ԱՀԼԻԽԱԹՈՒՆ, իգ. ծագումը նոյն է նախորդի հետ։

— Ահլիխաթուն, կին Ղազարոսի, որ գնեց մի հին Աւետարան, 1424 թ.—Ձեռ. Վիեննա. Ա. 645։

*ԱՀԼԻՄԱՆ, ար. < արաբ. اهل‌ایمان ahl-i īmān «հաւատացեալ» (բուն նշ. «մարդ հաւատոյ»)։ Մեր մէջ գտնում եմ գործածված մի անգամ ԺԷ դարում՝

— Ահլիման, ար. հիշված 1650 թ.—Ձեռ. Դաղեան, Բ. 33ա։

*ԱՀԼԻՄԵԼԻՔ, իգ. < արաբ. اهل‌ملیك ahl-i melik «մելիքի մարդկանցից, մելիքի ժողովրդից»։ Իբրև անձնանուն գտնում եմ մի անգամ գործածված՝ ԺԵ դարում։ Համտ. վարը Ահլիփաշա։

— Ահլիմելիք, դուստր ոսկերիչ Յովհաննէսի. Բալուի մէջ Աւետիք աբեղայէն գրել տվեց մի Աւետարան, 1437 թ.—Manus. brit. mus. 30 բ։

*ԱՀԼԻՋԱՆ, իգ. < պրս. اهل‌جان ahl-i ǰān «հոգու անձը, սիրելի, հոգեհատոր». մի անգամ գտնում եմ գործածված ԺԷ դարում։

— Ահլիջան, կին Սարգսի. հիշված 1637 թ.—Manus. brit. mus. 27 ա։

*ԱՀԼԻՓԱՇԱ, իգ. < պրս. اهل‌پاشا ahl-i pāšā «փաշայի մարդը, փաշայի ժողովրդից». յոթն անգամ գտնում եմ գործածված ԺԵ, ԺԶ, ԺԷ դարերում. համտ. Ահլիմելիք։

— Ահլիփաշա, երկրորդ կին տանուտեր խոջա Խդրշահի, որ Վանում, Աղարփա երեցին գրել տվեց մի Աւետարան, 1484 թ.—Ձեռ. Վասպ. 496։

— Մյուսները հիշված են 1534 թ. (Ձեռ. Վասպ. 649), 1579 թ. (Ձեռ. Վասպ. 690), 1605 թ. (Ձեռ. Ագուլ.=Արրտ. 1911, 316), այլ ոմն + 1678 թ. (Ձեռ. Ն. Բայազ. 2 բ), և երկու ուրիշը՝ անհայտ թվականով (Ձեռ. Վասպ. 372 և 765)։

*ԱՀԿԻ, իգ. ըստ Տաթև. ձմ. ա և հարց. 200, Հայկ Նահապետի երեք աղջիկներից մեկի անունն է, որով կոչված է հին հայոց ահկի ամիսը։ (Ահկի, ավելի ճիշտ ահեկան ամսանունը ծագում է պհլ. *āhrakān կամ *āϑrakān ձևից (տես Արմատական բառարան). ուստի Տաթևացու տված տեղեկությունը զուտ առասպել է)։

*ԱՂԱ, ար. < թրք. آغا aġa պատվանունից։ Նկատելի է, որ այս պատվանունը թեև Տաճկաստանում տրվում է սովորական մարդկանց (հատկապես արհեստավորներին), բայց Պարսկաստանում մեծ տիտղոս է և տրվում է միայն խաներին (գրվում է նաև آقا āqā)։ Իբրև արական անուն գործածված եմ գտնում մեր

մեջ՝ հաստատ թվականով, 1654 թ. (Սուրմէեան, Պատմ. Հալէպի ազգ. գերեզմ. 26 բ), իսկ անորոշ թվականներով՝ 1470 թվից ուշ (Ձեռ. Վասպ. 461—462), 1617 թվից հետո (Տաշեան, Ցուց. 482 ա). մի անգամ էլ իբրև իգական անձնանուն, 1421 թվից հետո (Ձեռ. Վասպ. 344)։ Սրանից է Աղայեան ազգանունը (Կովկաս) և սրանից են կազմված բազմաթիվ անձնանուններ. կա նաև սրա փաղաքշական ձևը։ Այս բոլորը տես վարը։

*ԱՂԱԲԱԲԱ, ար. < Թրք. aġa պատվանունից + بابا baba «հայր»։ Այս հնագույն ձևով հիշված է 1610 թ. (Հայապ. 615= Տաշեան, Ցուց. 181բ)։ Վերջին ձայնավորի անկումով՝ ԱՂԱԲԱԲ, հիշված 1639 թ. (Չքր. սարկ. Գ. 21 > Այրարատ 173 ա)։ Արևմտյան տառադարձությամբ՝ գրված Աղապապ 1663 թ. (Ձեռ. Մեր.=ՀԱ 1926, 336) և 1776 թ. (Ձեռ. Մեր.=ՀԱ 1925, 578)։ Սրանից է Աղաբաբեան ազգանունը։

*ԱՂԱԲԷԳ, ար. և իգ. < Թրք. آغابك aġabeg բառից, որ aġa և beg բառերից բարդված պատվանուն է։ Ամենահին հիշատակությունն ունինք 1470 թվից, բայց գրված է Աղբէկ, որ սակայն թերևս ուրիշ անուն է (տես առանձին)։ Սրանից հետո գալիս են Աղաբէկ մելիք Սալթաղի՝ հիշված 1540 թ. (Սիսական, էջ 368 բ), Աղայպէկ ար. 1568 թ. (Ձեռ. Վասպ. 668), Աղաբէկ ար. 1569 թ. (Tübingen 37), Աղաբէկկի իգ. 1575 թ. (Ձեռ. Վասպ. 688), Աղայբէկկի (սեռն անորոշ) 1582 թ. (Ձեռ. Վասպ. 696), Աղաբէկկի իգ. 1592 թ. (Ձեռ. Վասպ. 724), Աղաբէկկի իգ. 1596 թ. (Ձեռ. Վասպ. 243)։ ԺԷ դարում շատ հաճախակի է դառնում, մեծ մասամբ Աղաբէկկի (Աղապէկկի), բայց նաև Աղաբէկ (Աղապէկ), քիչ անգամ էլ Աղաբակ (Աղապակ), Աղապակի (Տաշեան, Ցուց. 662 բ) ձևերով։ Մինչև այսօր էլ շարունակվում է այս անունը, որից էլ ունինք Աղաբէգեան ազգանունը։

*ԱՂԱԳՈՒԼ, ար. < պրս. آغاگل aġagul բառից, որ կազմված է aġa և gul բառերից և նշանակում է «աղայի վարդը»։ Մի անգամ գտնում եմ գործածված 1660 թ. (Ձեռ. Վասպ. 553).— Սրանից տարբեր է Աղգուլ անունը։

*ԱՂԱԶԱԴԷ, ար. < պրս. آغا aġa + زاده zāda «ծնյալ» բառերից. բուն նշանակում է «աղայի ծնունդ, աղայի որդի»։ Իբրև արական անուն գործածված է 1721 թ. (Աբր. Երև. էջ 16) Աղազատէ ձևով։ Որից Աղազատեան ազգանունը։

*ԱՂԱԶԱՐ, ար. հակառակ արտաքին երևույթին, թրքական բառ չէ. կարծում եմ որ հայոց սովորական Եղիազար անունն

է, աղավաղությամբ այս ձևին հասած։ Սրան ապացույց եմ համարում այն՝ որ 1327 թվից հետո գրված անթվական մի հիշատակարանում (Ձեռ. Ագուլ.=Արրտ. 1911, 461) կարդում ենք. «Եւ որդոց մերոց. քահանան Աղազար յիրիցս...»։ Եթե Աղազար թրքական անուն լիներ, չէր կարող քահանայի անուն լինել։ Ուստի Եղիազար անունն է։ Հնագույն հիշատակություններն են հետևյալները՝

— 1. Աղազար Ըղերձեցի, հիշված է Սիւնեաց Տարսայիճ իշխանի մի արձանագրության մեջ, 1292 թվից կամ քիչ առաջ (Սիսական 191)։

—2. Աղազար, տանուտեր Վանում, 1448 թ.—Նոտարք 158։

— 3. Աղազար Շոռոթեցի, որդի Խութլիբէկի. մեռել է 1493 թ. մնում է իր անունով մի խաչքար՝ Շոռոթ գյուղի եկեղեցում (Սիսական 356)։

— Ավելի ուշ եղած հիշատակություններն են՝ 1586 թ. (Սիւրմէեան, Պատմ. Հալէպի ազգ. գերեզմ. 25 ա), 1587 թ. (անդ, էջ 12 բ), 1610 թ. (Ձեռ. Վիեննա. Ա. 684), 1653 թ. (Ձեռ. Հալէպի, Ա. 171 բ), 1666 թ. (Ձեռ. Հալէպի, Բ. 8) և 1560 թվից հետո գրված մի հիշատակություն (Տաշեան, Ցուց. 314 բ՝ երկիցս)։—Սրանից է Աղազարեան ազգանունը։

*ԱՂԱԹՈՆ, տես Ագաթոն։

— Աղայթոն երէց Ցարենւոյ, որդի Մնդարայ. գնել է Խառբելանց այգին և նվիրել Յովհաննավանքին, ուր մնում է իր արձանագրությունը՝ առանց թվականի.—Այրարատ 172 ա և 180 բ (համարում է ԺԴ դարու)։

*ԱՂԱԼԱՐ < թրք. آغالار ağalar «աղաներ» բառից, որ ağa բառի հոգնակին է, ճիշտ ինչպես ունինք Բեգլար, Խանլար անունները (հոգնակի ձևով)։ Իբրև արական անուն գործածված է ԺԸ դարից. հնագույն վկայությունը 1749 թ. (Գալէմքեարեան, Կենս. Սարգ. արքեպս. 248)։

*ԱՂԱԼՈՒՄ, ար. < թրք. آغالم ağalum «աղա ունեցողս». գործածական է Ղարաբաղում։

*ԱՂԱԽԱՆ, ար. < պրս. آغا ağa և خان xān պատվանուններից բարդված, ինչպես ունինք Աղաբեգ։ Հիշատակված է ԺԵ դարում։ Սրանից է Աղախանեան ազգանունը (Շուշի)։

— 1. Աղախան, հայր Գրիգոր քահանայի, որ Աղթամարում, Ատոմ քահանայի համար գրեց մի Աւետարան, 1454 թ.—Ձեռ. Բուլղ. (ՀԱ 1937, 580)։

— 2. Աղախան, 1626 թվից հետո գրված անթվական մի հիշատակարանում.—Ձեռ. Վասպ. 870։

*ԱՂԱԽԱՆՈՒՄ, իգ. կազմված է նախորդ ձևով՝ aġa+xanum պատվանուններից և կարծես նախորդի իգականն է։ Անսովոր անուն է, թվականն անհայտ։

— Աղախանում, իգ. հիշված է 1526 թվից ավելի ուշ գըրված անթվական մի հիշատակարանում (Ձեռ. Մաղն. 15)։

*ԱՂԱՂՈՒԼԻ, ար. < Թրք. آغاقولی aġaquli «աղայի ծառան» բառից (կազմված aġa+qul «ծառա» բառերից)։ Սովորական անուն, որ բարեբախտաբար շատ անսովոր է. միայն մի անգամ եմ գտնում ԺԶ դարի վերջում։

— Աղաղուլի, հիշված 1595 թ. Ջուղայեցի ոմն (Սիւրմէ-եան, Պատմ. Հալէպի ազգ. գերեզմ. էջ 25 ա)։

*ԱՂԱՄ < Թրք. آغام aġam «իմ աղան» (ինչպես կա Շանում «իմ շահը»). իբրև արական անուն գործածված է 1576 թ. (Ձեռ. Դաղեան, Բ. 31 բ), 1658 թ. (Ձեռ. Թաւր. էջ 13 բ), 1664 թ. (Bodleian 252)։ Սրանից է Աղամեան ազգանունը։

*ԱՂԱՄԱԼ, ար. < Թրք. آغامالی Aġamali անունից, որ կազմըված է aġa+mal «ապրանք» բառերից և նշանակում է բուն «աղայի ապրանքը»։ Մեր մեջ իբր արական անուն գործածված է առաջին անգամ 1553 թ. (Ձեռ. Վենետ. Ա. 578). հետո 1648 թ. (Ձեռ. Վենետ. Ա. 41), 1649 թ. (Հայ-Վենետ. 320), 1661 թ. (Ձեռ. Ագուլ.=Արրտ. 1911, 118), 1660 թ. (Աղամալ Ագուլեցի, Սիսական 333 բ), 1694 թ. (Աղամալ Նախիջևանցի, շինել է Շողակաթի վանքը՝ Այրարատ 235). չեմ գտնում ԺԸ դարի հիշատակութիւնները։ Այժմ այս անունը խափանված է. բայց կա սրանից Աղամալեան ազգանունը, որ բավական տարածված է Կովկասում։

*ԱՂԱՄԵԼԻՔ, ար. կազմված է Թրք. aġa+արաբ. melik պատվանուններից։ Նման կրկնությամբ կազմված անուններ են Շահ-ամիր, Աղա-միր, Աղա-սուլթան, Սուլթան-շահ, Աղա-բէգ, Աղա-փաշա, Աղա-խան, Խան-աղա ևն։ Աղամելիք ձևը գործածված եմ գտնում մի անգամ 1602 թ. (Ձեռ. Վասպ. 442, գրված Աղայ-մելէք. որ պետք է ուղղել վերի ձևով) և մի անգամ էլ 1224 թվից ավելի ուշ գրված անթվական մի հիշատակարանում (Թորոս Աղբար, Բ. 273, ուր գրված է ճիշտ Աղայ Մելիք։

*ԱՂԱՄԻՐ, ար. < պրս. آغا aġa+میر mīr «իշխան» բառերից։ Կազմության համար տես Աղամելիք։ Իբրև արական անուն հիշված է ԺԶ—ԺԷ—ԺԸ դարերում և այժմ էլ կենդանի է Ղարա-

բաղում։ Այսպես ունինք 1554 թ. (Manus. brit. mus. 193 ա), 1601 թ. (Ձեռ. Վասպ. 793), 1609 թ. (Ձեռ. Վասպ. 835), 1627 թ. (Ձեռ. Թեհր.=ՀԱ 1935, 395), ԺԷ դարի կեսից առաջ (Առաք. պատմ. 146), նույն դարի վերջում (Տաշեան, Ցուց. 591 բ), 1723 թ. (Ձեռ. Վեննա. Ա. 220) և 1689 թվից հետո գրված անթվական մի հիշատակարանում (Ձեռ. Վասպ. 972)։

*ԱՂԱՄԻՐԶԱ, տր. < պրս. آقامیرزا aġamīrzā բառից, որ Պարսկաստանում սովորական պատվանուն է և տրվում է ուսուցիչներին. կազմված է aġa+mīrzā «գրող, գրագիր, քարտուղար» բառերից։ Իբրև անձնանուն պետք է որ գործածված լինի մեր մեջ, որովհետև ունինք սրանից Աղամիրզեան ազգանունը (Կովկաս)։

*ԱՂԱՄՋԱՆ, տր. < նույն Աղամ անունից+ջան. գործածված է ԺԷ դարում (տես Ջքր. ազուլ. 116). հիշված է նաև 1762 թ. (Սիւրմէեան, Պատմ. Հալէպի ազգ. գերեզմ. 42 ա). սրանից է ծագել Աղամջանեան ազգանունը (օր. Աղամջանեան ոմն Հաշտարխանում. տես Պռօշեան, Հուշեր, էջ 191, ծան. 243)։

*ԱՂԱՅԻ, իգ. < պրս. آقایی aġayī «աղայական» բառից. մի անգամ գտնում եմ հիշված սեռ. Աղայուն ձևով, 1224 թվից հետո գրված անթվական մի հիշատակարանում (Թորոս Աղբար, Բ. 273)։

*ԱՂԱՅԻԿ, տր. < Աղա բառի փաղաքշական ձևից. գործածված եմ գտնում 1700 թ. (Ձեռ. Սեբ.=ՀԱ 1926, 336), 1710 թ. (անդ՝ էջ 48)։ Սրանից է Աղայիկեան ազգանունը (Կարապետեան, Յիշատ. Սամաթիոյ 185)։

†ԱՂԱՆ, տր. ծագում է հյ. աղան բառից, որ հասարակ անուն է և նշանակում է «ազնվական, իշխան». փոխառյալ է ասոր. ܥܠܢܐ ʿalānā «իշխան. 2. եկեղեցական հովիւ» բառից։ Այս բառը պահված է միայն աղանազգի «ազատազգի, իշխանազգի» բարդ բառի մեջ, որ մի անգամ գործ է ածում Բուզ. Դ. բ. «Նոյնպէս ստրատելատութեան սպարապետութեանն զօրավարութեանն մարտի կռուելոյ, գործոյ ռազմիկ ճակատամուղ նիզակին, իրավառն աղանազգիք պատուադրօշք արծուենշանք վարժնականիչք... Մամիկոնեան ազգին»։ Այնուհետև աղան «իշխան» հասարակ անունը դարձավ հատուկ անուն, ինչպես ունինք Իշխան, Իշխանիկ։

— 1. Աղան Արծրունի, որդի Վասակ Արծրունու և մորեղբայր Վահան Մամիկոնեանի. ժամանակից եղավ Արտաշատի ժո-

ղովին «449 թ», պատասխանելու համար Միհրներսեհի նամակին։ Երիտասարդ հասակում սկսեց ճգնական կյանք վարել և հասցըրեց աշակերտներ, որոնցից նշանավոր է Ղազար Փարպեցի պատմիչը։ Թաղվել է Հաղամակերտում։—Փարպ. էջ (186), 188 (ձեռ. ալան), Դաւ. անյ. էջ 99. Պատմ. սահ. 14. Արծր. Ա. ժա.— Ալան՝ Սիմ. ապար. 7.—սեռ. Աղանայ՝ Փարպ. (էջ 185) և գ, լգ. թուղթ, էջ 202 (ձեռ. ալանայ), Արծր. Ա. ժա. Բ. ա, բ.—գրծ. Աղանաւ՝ Փարպ. իգ. (նույն անունը Վրդ. ին սխալմամբ գրում է Արձան).—Զամչ. Ա. 540, Բ. 28։

— 2. Աղան եպիսկոպոս Արծրունեաց, ժամանակակից Բաբգէն կաթողիկոսի. անդամ Դուինի «506 թվի» եկեղեցական ժողովի։—Բգռ. ի յԱղանայ՝ Գիրք թղ. ը։

— Աղան հիշված է նաև 1282, թերևս և 1425 թվից հետո գրված անթվ. մի հիշատակարանում.—Manus. brit. mus. 18 բ։

*ԱՂԱՆԱՆԷ, իգ. < թրք. aġa+nene «մայր». հիշված է մի անգամ 1555 թ. REA 10, 37։

*ԱՂԱՆՈՒՐ, ար. < պրս. آغا aġa+արաբ. نور nūr «լույս» բառերից. իբր «աղայի լույսը». գործածական էր հատկապես Հնդկահայոց մեջ՝ ԺԷ դարում (տես Գուշակեան, Հնդկահայք 61, 276)։ Այս անունով հայտնի է Վիկտորիա Աղանուր, նշանավոր իտալացի բանաստեղծուհին (ծագմամբ հայ)։

*ԱՂԱՉԱ, ար. < պրս. آغاجه aġača ձևից, որ aġa բառի փաղաքշականն է, իբր համապատասխան հյ. Աղայիկ, Ոսկանիկ և Պարոնիկ անունների։ Պարսից մեջ այս բառը գործածական չէ. բայց կա քաշգարի aġača «օրիորդ» և ույղուր. aġača «գյուղապետ» (Будагов, I 60 բ)։ Գործածվում է Լեհահայոց և Հունգարահայոց մեջ իբրև սովորական պատվանուն։ Իբր հատուկ անուն գտնում եմ գործածված ԺԵ դարում։

— 1. Աղաչա, որդի խոջա Յովհաննէսի, հօրեղբօրորդւոյ Պօղոս վարդապետի, որ Մուշում, խոջա Յովսէփի համար օրինակեց Աւետարանը, 1479 թ.—Ձեռ. Սեբ.=ՀԱ. 1925, 263։

— 2. Աղաչա Եղիսաբեթուպոլսեցի (կամ Պաշպալովցի), Հունգարահայ տաղասաց վերջին դարից. ունի Ողբ ի վերայ վաճառականաց, որ տպված է ՀԱ 1895, էջ 278—280։

†ԱՂԱՊԱՐՈՆ, ար. կազմված է աղա+պարոն բառերի բարդությամբ. տես Աղամելիք. մի անգամ հիշված է ԺԵ դարում։

— Աղապարոն, պապը Լիանոսի, որ ստացավ մի Աւետարան, 1491 թ.—Թորոս Աղբար, Ա. 120։

*ԱՂԱՋԱՆ, ար. < պրս. آغاجان āġāǰān «աղա հոգյակս» ձևից, որ գործածական է այժմ էլ Կովկասում և Պարսկաստանում։ Հնագույն վկայությունները ԺԶ դարից են. այսպես՝ 1534 թ. (Ձեռ. Գետերբ.=ՀԱ 1892, 52 ա), 1544 թ. (Ձեռ. Վատ. 286), 1554 թ. (անդ՝ 98), 1557 թ. (անդ՝ 659), 1586 թ. (Հայ-Վենետ. 314), 1587 թ. (Ձեռ. Սեբ.=ՀԱ 1925, 260), 1588 թ. (Ձեռ. Վատ. 706), 1594 թ. (անդ՝ 736), 1596 թ. (Ձեռ. Թաւր. 76 ա)։ Չեմ հիշում ԺԷ դարում հիշատակվածները, որոնք ավելի շատ են։ Կենդանի է նաև այժմ. և սրանից է Աղաջանեան ազգանունը։ Արևմտահայ տառադարձությամբ Աղաճան։

*ԱՂԱՍԱՐ, ար. (որ և Աղասէր) < պրս. آغاسر āgāsar «աղաների գլուխը (կամ գլխավորը)» բառից։ Մի անգամ գտնում եմ գործածված անթվական մի հիշատակարանում՝ Ձեռ. Վատ. 450։ Կենդանի էր Պոլսում՝ անցյալ դարում։ Սրանից էլ կա այժմ Աղասէրեան ազգանունը Պոլսում և Աղասարեանց գերդաստանը Երևանում (տես Շահազիզ, Հին Երևանը 222)։

*ԱՂԱՍԻ, < թրք. آغاسی aġasi «իր աղան» բառից, ճիշտ ինչպես կա Բաբասի < թրք. باباسی babasi «իր հայրը» ձևից։ Առաջինից տարցվում է Աղասեան ազգանունը, ինչպես որ երկրորդից էլ կա Բաբասեան։—Աղասի անունը գործածվում է ԺԷ դարից ըսկըսած և նախապես իգական է. այսպես՝ իգական են Աղասի 1602 թ. (Ձեռ. Վատ. 802), 1610 թ. (անդ՝ 838), 1666 թ. (Ձեռ. Դադեան, Ա. 10 բ), 1674 թ. (անդ՝ Բ. 46 բ), 1698 թ. (Ձեռ. Վատ. 984), անծանոթ թվականով Աղասի անունով կանայք՝ Ձեռ. Վատ. էջ 182, 450, 682, 773, 829, ինչպես նաև Աղայաայ խաթունն՝ հիշված 1224 թվից հետո գրված անթվական մի հիշատակարանում (Թորոս Աղբար, Բ. 274)։ Արական սեռով Աղասի պատահում ենք առաջին անգամ 1700 թ. (Ձեռ. Ագուլ.=Արրտ. 1911, 566), ավելի ուշ՝ 1799 թ. Աղասի ամիրա Պոլսում (Ազգատ. 3260), 1808 թ. (Ձեռ. Վատ. 360), ինչպես որ այժմ էլ արական է գործածվում Կովկասում։ Արևմտահայերը այս անունը չգիտեն։

*ԱՂԱՍՈՒԼԹԱՆ, իգ. < թրք. آغا aġa+արաբ. سلطان sultān «սուլթան կամ սուլթանուհի» բառերից բարդված։ Գործածված է միայն ԺԷ դարում. այսպես՝ 1610 թ. (Ձեռ. Վատ. 838), 1618 թ. (Ձեռ. Վենետ. Ա. 594, գրված Աղայսօլթան), 1638 թ. (Ձեռ. Նոր-Բայազ. 15 ա), 1651 թ. (Ձեռ. Վենետ. Ա. 734, գրված Աղասօլթան), դարձյալ 165[illegible] թ. մի ուրիշ կին (անդ, էջ 735),

*իսկ անհայտ թվականով՝ իբրև իգական ունինք՝ Թորոս Աղբար, Բ. 273, Ձեռ. Մաղն. էջ 15 (1526 թվից հետո), Ձեռ. Վասպ. 215 (գրված* Աղա բօլքան*), *Աղայ սուլթան *(Ձեռ. Թաւր. 113 ա)։ Սեռն անորոշ է (թվի արական)* Աղասուլթան՝ *Ձեռ. Վասպ. 344 (անհայտ թվականով)։—Զպետք է շփոթել* Աղսուլթանի *հետ, որ տարբեր անուն է։*

**ԱՂԱՎԱԼ (կամ* Աղավել, Աղավելի*), ար. < պրս.* آغا aġa+ *արաբ.* ولى valī, velī *«ազգական, մերձավոր. 2. սուրբ. 3. տեր. 4. պաշտպան» բառերից (վերջինը հմմտ. նաև Միրվելի, Միրզավելի, Փիրվելի)։ Այս անունը գործածական էր Պարսից մեջ. օրինակ՝* Աղավալ *փաղիշահ Թավրիզում (Հայապ. 587),* Աղավալի՝ *Շահնամէի մի ընտիր ձեռագրի գրիչը՝ 1828 թ. (տես Խորհ. հյստ. 1934, մայ. 27)։ Մեր մեջ հիշատակված է ԺԷ—ԺԸ դարից. այսպես 1606 թ. (Ձեռ. Թաւր. 21 բ, գրված* Աղայվալ *ձևով),* Աղավելի *1683 թ. (*Manus. brit. mus. *36 ա),* Աղավել՝ *ԺԷ դար (Ջքր. ագուլ. 92),* Աղավելի՝ *1719—1724 (Այրարատ 305)։ Սրանից է* Աղաւելեան *ազգանունը (Կովկաս)։*

*ԱՂԱՒԷՏ, ար. ծագումն անհայտ. անսովոր անուն. գտնում եմ մի անգամ հիշված՝* Աղաւէտ *կամ* Աղապէկ *ոմն Ագուլեցի, որդի Աղամալի, 1660 թ.—Սիսական 333 բ։*

*†ԱՂԱՒՆԻ, ի գ. առնված է համանուն թռչունի անունից, որ Ս. Հոգու խորհրդանշանն է։ Իտալացոց մեջ էլ կա* Colomba *անունը, որ նշանակում է «աղավնի»։ Հնագույն հիշատակությունը մեր մեջ ԺԷ դարու վերջից է. այսպես՝* Աղաւնի *դուստր նահատակ Կոմիտաս քահանայի, ծն. 1691 թ. (ՀԱ 1929, էջ 440)։ Անշուշտ ավելի հին է* Աղաւնի, *հիշված մի Գանձարանում, որի գրչության թվականը հայտնի չէ, բայց կազմված է մի Տաղարանի հետ, որ գրված է 1421 թ. (Ձեռ. Սեբ.=ՀԱ .1927, 312)։ Սովորական է Արևմտահայոց մեջ, ուր կա նաև կրճատ* Աղաւ։ *Նորերս մտել է նաև Պարսկահայոց մեջ՝ ուր ստացել է փաղաքշական* Աղաւնիկ *ձևը։*

**ԱՂԱՓԱՇԱ, իգ. < Թրք.* آغا aġa+پاشا paša *պատվանուններից (տես* Աղամելիք*). մի անգամ գտնում եմ գործածված 1666 թ. (Ձեռ. Վասպ. 928)։*

**ԱՂԱՓԻՐ, ար. < պրս.* آغا aġa+پیر pīr *բառից, որ ունի թե «ծեր» և թե «սուրբ» նշանակությունը։ Գործածված է ԺԶ դարից սկսած. հնագույններն են* Աղափիր՝ *1576 թ. (Ձեռ. Նոր-Բայազ. 9 ա), 1577 թ. (Ձեռ. Վասպ. 687), 1648 թ. (Ձեռ.*

Վենետ. Ա. 41), Աղափիրէ 1667 թ. (Ջեռ. Թեհր.=ՀԱ 1935, 403), Աղափիր ոմն Նոր-Ջուղայեցի (Ջուղ. 150)։ Այժմ խափանված է, բայց կա Աղափիրեանց ազգանունը (Կովկասում)։

ԱՂԱՔ. հիշված է 1269 թվին գրված Աստուածաշնչի կազմի վրա, հետևյալ ձևով. «Աղաք. ես կազմող յիշ ի Տր» (տես Խալաթեան, Մնաց. էջ դ)։ Բառիս անսովոր ձևը ինձ կարծել է տալիս, որ պետք է կարդալ Առաք (Ռ փոխանակ Ղ) և սրանով հասկանալ Առաքել։

*ԱՂԲԱԹ, ար. < արար. عاقبت ʿāqibat «վերջ, վախճան, ելք». այս բառը Ղարաբաղում հնչվում է աղբաթ և հատկապես ասվում է աղբաթդ խեր, այսինքն «վախճանդ բարի լինի»։ Իբրև հատուկ անուն մի անգամ գտնում եմ գործածված՝

— Աղպաթ, որդի Մկրտիչի և եղբայր Մարգարէ երէցի, որ Տանծիկավանքում օրինակեց Մաշտոցը 1593 թ.—Ջեռ. Սեբ.=ՀԱ 1926, 341։

*ԱՂԲԱԼ, ար. կարելի էր համարել արաբ. اقبال iqbāl «բարեբախտություն, բախտավորություն» բառից, բայց ձևը թույլ չի տալիս։ Ավելի հարմար է թրք. آق بال aq bal «սպիտակ մեղր», իբրև տիպար մաքրության, անբծության և քաղցրության։ Մի անգամ գտնում եմ գործածված 1619 թվին, բայց անշուշտ ավելի սովորական էր, որովհետև ունինք սրանից Աղբալեանց ազգանունը (Կովկաս)։

— Աղպալ ապաշխարող, որդի Թաղրիղուլի. իր եղբայր Յովսէփի հետ միացած՝ գնեց մի Աւետարան, 1619 թ.—Ջեռ. Վենետ. Ա. 722։

Աղբայր տես Եղբայր։

*ԱՂԲԱՇ, ար. < թրք. آق باش aq-baš «սպիտակագլուխ». հիշված է 1618 թ. (Karst, Դատաստ. էջ III).

*ԱՂԲԱՍՏԻ, ար. < թրք. آق باصدى aq basdi «սպիտակը կոխեց, ալևոր դարձավ» ձևից? Երեք անգամ միայն գործածված է ԺԵ դարում։

— 1. Աղբաստ ոմն, Հերհեր գյուղի եկեղեցում կանգնեցրել է մի խաչ՝ Գամբեկեկի հիշատակին, 1447 թ.—Սիսական 111։

— 2. Աղբաստի (կամ Աղբաստ), որդի պարոն Ջալալի. իր եղբայրներն են Յովհաննէս (որ եղավ Գանձասարի կաթողիկոս), Աթաբէկ և Ամիր-Հասան. հիշվում է իբրև վկա սահմանի արձանագրության մեջ 1457 թ.—Նոտարք 188 (երկիցս)։

— 3. Աղբաստ, հայր Սայտունի, որ երկու անգամ հող կամ

կալված է նվիրել Գանձասարի վանքին. առաջինը 1457 թվին և երկրորդը՝ 1467 թ.—Նոտարք 185 և 228։

ԱՂԲԱՐՈՍ, ար. ծագումն անհայտ և անսովոր անուն. հիշված է ԺԳ դարում։

— Աղբարոս ոմն, որ իր որդի Շահակի հիշատակին մի խաչքար է կանգնեցրել, 1291 թ.—Սիսական 117։

† ԱՂԲԵՐԱՆԻ, ար. եղբայր բառի հոգնակի ձևն է. հիշված է մի անգամ 1579 թ. Ջուղայեցի ոմն (Սիւրմէեան, Պատմ. Հալէպի ազգ. գերեզմ. էջ 25 ա, գրված սեռ. Ախբերանու)։—Նոր-Ջուղայի բարբառում -անի վերջավորությամբ հոգնակի բառեր շատ կան (տես իմ Քննութ. Նոր-Ջուղայի բարբ. էջ 175). բայց արդի բարբառում չկա աղբերանի ձևը։—Համմտ. Աղբերիկ։

†ԱՂԲԵՐԻԿ, ար. < եղբայր բառի ժողովրդական աղբայր > աղբեր ձևից. համմտ. Եղբայրիկ և Աղբերանի։

— 1. Աղբայրիկ, հայր Աստուածատուր Մեռելյարոյց վարդապետի Արճիշեցւոյ (ԺԲ դար).—սեռ. Աղբայրկայ՝ Կիր. ե։ Սրա գերեզմանի վրա տապանաքար է դրել Մեծոփի միաբան Մարտիրոս քահանան. արձանագրությունը 1432 թ. տես Նոտարք 100։

— 2. Աղբայրիկ, ճարտարապետ. շինեց Տեղերի վանքը՝ 1221 թ.—Յովսէփեան, Նիւթեր և ուս. Ա 74։

— 3. Աղբարիկ, եղբայր Պօղոս արքեպիսկոպոսի, որ էր առաջնորդ Սարայ մայրաքաղաքի՝ 1319 թ.—տես Տաշեան, Ցուց. 885 ա։

+ ԱՂԲԵՐՇԱՀ, ար. < հյ. եղբայր + պրս. شاه šāh «թագավոր» բառերից։ Անսովոր անուն. կա միայն մի անգամ ԺԷ դարում։

— Աղբերշահ Գեղամեցի, պապ Մխիթարի, որ Գեղամայ երկրի Բարկիս գյուղում Գորիսեցի Սարգիս գրչին գրել տվեց մի Աւետարան, 1657 թ.—Սիսական 75 բ։

*ԱՂԲԷԿ, ար. < թրք. آق بك aq-beg «սպիտակ բէգ» բառից, ինչպես կա և Ղարաբէգ, որ է «սև բեգ» (տես այս անունը)։ Մեկ անգամ գտնում եմ հիշված ԺԵ դարում. բայց՝ թվում է թե արտագրողները ուրիշ դեպքերում շփոթած պիտի լինեն Աղաբէկ անվան հետ, որ շատ սովորական է, ինչպես նաև Ազբէգ անվան հետ, որ Ազիզբէգ անվան կրճատ ձևն է (տես Ազիզբէգ)։

— 1. Աղբէկ, որդի Շիրազմամայի, որ նորոգել տվեց մի հին Աւետարան, 1470 թ.—Թորոս Աղբար, Բ. 356։

— 2. Աղպէյ, հիշված 1654 թ. Տրանսիլվանիայի առաջին գաղթողների թվում (Գովրիկեան, Հայք յԵղիսաբ. Բ. 74)։

*ԱՂԲԷՈՍ,ար. ծագումը տես Աղբիանոս։

— Աղբէոս, եպիսկոպոս Հարքի. անդամ Մանազկերտի ժողովի «726 թ».—Կանոն. 149, Գիրք թղ. ծէ, Տաշեան, Ցուց. 768 բ.—Նույնը Ալփէոս ձևով՝ Զամչ. Բ. 398 և Ցովսէփեան, Խաղբ. էջ 66։

*ԱՂԲԻԱՆՈՍ, ար. < հուն. Ἀλβῖνος, որ ծագում է լտ. Albinus անունից. սրա հետ նաև Albinius, Albina, Albius, Albucius զանազան անձնանուններ են, որոնք ծագում են album «սպիտակ» բառից. albinus նշանակում է «պատի սպիտակ ծեփ» (Հիւբշ. 334)։ Ձեռագրերում այս անունը գրված է նաև Աղբեոս, Աղբէոս, Աղբեոս, Աղբիոս, Աղբոս, Ալբիանուն, Ալբինոն, Ալբինոս, Ալբիոս, Ալբիուն ձևերով։

— Աղբիանոս, եպիսկոպոս Հարքայ. քրմի որդի էր, որին Լուսավորիչը սովորեցրեց և կարգեց եպիսկոպոս Մանազկերտի «303 թ» և ապա «վերակացու արքունական դրան բանակին»։ Խոսրով Բ թագավորը ուղարկեց նրան իբրև միջնորդ՝ հաշտեցնելու համար Մանավազեան և Որդունեան տոհմերը և այդ տոհմերի բնաջնջումից հետո, նրան պարգևեց Մանազկերտ գավառը։ —Ագաթ. 845, 846, 873. Արար. Ագաթ. 71, 73. Բուզ. Գ. դ, ժէ. Ե. իթ. Զ. բ, դ. Ուխտ. Ա. հգ. Ջեն. 33, 41. Եղն. եր. 267.—սեռ. Աղբիանու՝ Խոր. Գ. խ.—Աղբիանոսի՝ Խոր. Գ. լթ. Բուզ. Գ. դ, ժէ (ցանկում). Պտմ. նկրս. 27. Սամ. անեց. 67. Փհնպ. 270.— Ալբիանոսի՝ Յհ. կթ. ժգ. Արծր. Ա. ժա. Յհ. կթ. հյր. 273.—Ալփիանոսի՝ Կիր. 13.—Զամչ. Ա 396, 408 դնում է Ալբիանոս և Ա 396 Ալբոս՝ իբրև իրարից տարբեր անուններ.—Տաշեան, Ցուց. 680 ունի Հաղբիանոս ձևով.—Աղբիանոսի մասին ընդարձակ տես և Տէր-Մինասեանց, Հայոց եկեղ. յարաբերութ. 37—40։

*ԱՂԲԻՈՍ, ծագումը տես Աղբիանոս։

— Աղբիոս եպիսկոպոս. վարժված էր «յայլ և այլ գիտութիւնս ի հռովմայեցւոց և ի հեթանոսաց բարբառս»։ Լուսավորիչը կարգեց նրան Մամիկոնեանց երկրի եպիսկոպոս. իր տեսչության տակ էին Տարոնը և Բզնունիքը.—Արար. Ագաթ. 72 (հյ. Ագաթանգեղոսի մեջ § 845 պակասում է այս անձը)։

*ԱՂԲՈՒՂԱ, ար. < թրք. آق بوغا aq-buġa «սպիտակ ցուլ» ձևից։ Այս անունով հայտնի է Aqbuġa կամ Gümüš-Buġa եգիպտացի կուսակալ Սսի և շրջակայից՝ 1394 կամ 1395 թ. (Սխուան 228 ա, 542 բ). համտ. նաև Բուղա ոստիկանը և հյ. Ցլիկ Ամրամ իշխանը։ Մեր մեջ գործածված է ժԳ—ժԵ դարերում, բայց շատ

սահմանափակ ձևով, որից հետո բոլորովին խափանված է։

— 1. Աղբուղա, որդի Վահրամի, թոռն Պլու Զաքարէի և հայր Վահրամի, Զաքարէի և Իւանէի. տէրն էր Գագի և Շամքորի. հպատակվեց թաթարներին և նրանց բանակը մտնելով՝ մասնակցեց Իկոնիայի սուլթանի դեմ մղված արշավանքին (1240).—Աղբուղայ՝ Կիր. լգ. Մաղաք. աբ. 14.—Աղպուղայն՝ Կիր. իէ, լբ.—սեռ. Աղբուղին՝ Կիր. բ.—Աղգուղին՝ Կիր. լգ.—Աղբուղային՝ Կիր. իա.—գրծ. Աղբուղայիւ՝ Վրդ. ձե (հրատ. Էմինի՝ Ախբուղայ)։—Զամչ. Գ. 208, 217, 218 հիշում է այս անձը, բայց իզուր գրում է Ալբուղ, իբր թե հին հունական կամ լատինական անուն լիներ։

— 2. Աղպուղա, որդի Իվանէի, թոռն Շահանշահի, եղբայր ամիրսպասալար Շահանշահի. կինն է Սթիխաթուն. վերացրել է Թալինի գինու հարկը՝ 1267 թ. տես իր արձանագրությունը՝ Այրարատ 141։—Նույն է հաջորդը, միայն խանգարում է «որդի Իվանէի»։

— 3. Աղբուղա, որդի Զաքարէ Գ-ի, թոռն Շահանշահի և թոռան որդի Զաքարէ Բ. ամիրսպասալարի, հիշված 1280 թ. ըստ Հայապ. 447, տէր Թալինի. կինն է Սիթի խաթուն։

— 4. Աղբուղա, որդի Շահանշահի, թոռն Զաքարէ Բ ամիրսպասալարի (ԺԳ դար).—Հայապ. 447, Շիրակ 62, 101։

— 5. Աղբուղայ, եղբայր Շահինշահի, Ելիկումի և Տարսայիճ-Ստեփաննոսի, որ Պօղոս վարդապետ Կիլիկեցուն գրել տվեց մի Աւետարան, 1314 թ.— Ձեռ. Դաղեան, Բ. 30 ա։

— 6. Աղբուղայ, որդի Իւանէի՝ թոռան Զաքարիայի մեծ ամիրսպասալարի, եղբայր Վահրամ աթապակ պատրոնաց պատրոնի. թողել է Անիում մի արձանագրություն, որով հայտնում է թե Անիի հարկերը թեթևացրել է, 1301 թ.—Շիրակ 28, 62, 101։

— 7. Աղբուղա, որդի Հասանի Դոփեան, իշխանի Ծար երկրի. այս Հասանը ունէր վեց որդի, որոնք են՝ Գրիգոր, Սարգիս, Շահնշահ, Ջհանշահ, Աղբուղա և Շրվանշահ։ Հասանը սպանվեց իր երեք որդիների (Սարգսի, Աղբուղայի և Շիրվանշահի) հետ՝ Լէնկթիմուրի ձեռքով 1384 թ. ըստ Հայապ. 529 կամ 1387 թ. ըստ Ալաթ. յիշ. 6.—Հիշատակված են նաև 1411 թվին Ծարի Գետամէջ վանքում գրված մի ճաշոցում (Նոտարք 40)։—Այս Աղբուղան, որդի Հասանի Դոփեան, թոռան թոռն է Գրիգոր Բաբի իշխանի Խաչենոյ. նրանով է սկսվում Դոփեան ցեղի Այ-

դինեցուց ճյուղը.—Ձեռ. Դադեան, Ա. 89բ, կարապետ եպս. Դոփեանք, էջ 45, 85, 86, 91, 101—2, 185։

— 8. Ազպուղա, հայր Ստեփաննոսի, Գողթան արքեպիսկոպոսի, որ Մաթէոս քահանային գրել տվեց Տօնականը՝ Ագուլիս 1447 թ.—Ձեռ. Թաւր. 121 բ, 123 ա։

— 9. Աղբուղա, հորեղբայր Աղարիա աբեղայի, որ Վայոց ձորի Եղեգիս մայրաքաղաքում գրել տվեց մի Աւետարան, 1495 թ.—Ձեռ. Վեննա. Ա. 586։

+ԱՂԲՐԱՑ, իգ. կարծում եմ ծագած Աղբրացու (=Եղբայրացու) ձևից, այսինքն թե մի այնպիսի քույր, որ մի եղբայր արժե։ Գործածված է ԺԴ—ԺԵ դարերում. հետո խափանված։

— 1. Աղբրաց, կին Գրիգոր քահանայի, մայր Վարդան քահանայի, որ Խոտինանց գյուղի Ս. Աստուածածին եկեղեցում օրինակեց Աւետարանը, 1317 թ.—Թորոս Աղբար, Ա. 218։

— 2. Աղբրաց, կին Յակոբի և մայր Վարդան արքեպիսկոպոսի, որ Արգելանի վանից առաջնորդ կարգվեց 1331 թ.—Manus. brit. mus. 58 բ—59 ա։

— 3. Աղբրաց, դուստր Կարապետի, կին Գրիգորի և քույր Պօղոս քահանայի, որ գրել տվեց մի Աւետարան, 1334 թ.—Ձեռ. Վեննա. Ա. 698։

— 4. Աղբրաց, կին Խաչատուրի և մայր Կարապետ դպրի, որ Արծկէում օրինակեց մի Ճառընտիր, 1428 թ.—Տաշեան, Ցուց. 583 բ։

— 5. Աղբրաց, կին Խաչատուրի և մայր Թումա քահանայի, որ գրեց մի Ճաշոց, 1441 թ.—Ձեռ. Սեբ.=ՀԱ 1926, 244։

— 6. Աղբրաց, դուստր տանուտեր Մանկտաւագի, որ գրել տվեց մի Աւետարան, 1455 թ. (այս թվին Աղբրացը արդեն «տարաժամ կենօք» վախճանած էր).—Ձեռ. Վեննա. Ա. 582։

— 7. Աղբրաց, կին Թաւաքալի, հորեղբոր Սարգսի, որ գրել տվեց մի Աւետարան, Խիզանի Գամաղիէլ վանքում, 1468 թ.—Ձեռ. Վասպ. 451 (գրված է «հաւրեղբաւրն Յովանիսին, Թաւաքալին և Աղբրայինս»։ Այստեղ նախ՝ վրիպակ է Աղբրայ՝ փոխանակ Աղբրաց. երկրորդ՝ թեև Աղբրաց հիշված է Սարգսի հորեղբայրների շարքում, բայց որովհետև մյուս դեպքերում Աղբրաց միշտ իգական է, ուստի պետք է առնել իբրև Թաւաքալի կինը)։

— 8. Աղբրաց, կին Մարտիրոսի և մայր Յովհաննէս քահա-

նայի, որ ստացավ մի Ավետարան (թվականն անհայտ, բայց 1276 թվից ուշ).—Ձեռ. Վեննա. Ա. 428։

†ԱՂԲՐԱՑԵՂ, ար. < հյ. եղբայր+ցեղ բառերից, իբր «եղբոր ցեղից»։ Մի անգամ գտնում եմ գործածված 1631 թ. (Bodleian 139, սխալմամբ Աղբրասեղ ձևով)։

*ԱՂԳՈՒԼ, իգ. < Թրք. آق گل aq-gul «սպիտակ վարդ» բառից. տես նաև Ազգուլ, որի հետ կարող է շփոթված լինել միշտ։

— 1. Աղկուլ, դուստր Պահատուրի և քույր Բաղդասարի, որ Սեբաստիայում գրել տվեց մի Ավետարան, 1593 թ.—Ձեռ. Սեբ. (ՀԱ 1925, 473)։

— 2. Աղքկուլ, հարս Նավրուզի, որ գնեց մի հին Ավետարան, որ գրված էր 1630 թվին.—Ձեռ. Վեննա. Ա. 778։

— Աղգուլ, գործածված ունինք Ախկուլ ձևով՝ ԺՉ դարից հետո (Տաշեան, Ցուց. 544 բ) և ԺԷ դարում՝ Ձեռ. Կես. սարգ. էջ 13։

+ԱՂԵԱԿ < միջ. հյ. աղեակ > գվռ. աղէկ «լավ» բառից. Ժ դարում արական էր, ԺԵ դարում իգական. սրանից է կազմված Աղէկեան ազգանունը։

— 1. Աղեակ քահանայ, գրիչ կամ ստացող Ավետարանի, 986 թ.—Ձեռ. Սանաս. 1 բ։

— 2. Աղէկ, կին Սիմէոնի և մայր տեր Ստեփաննոսի, որ գնեց մի հին Ավետարան, 1430 թ.—Ձեռ. Հալէպի, Ա. 71 ա։

*ԱՂԵՂ, իգ. կապ չունի հյ. աղեղն բառի հետ և ծագում է արաբ. عقيق ʿaqīq «սարդիոն (քարը)» բառից։ Այս բառը գործածական է այժմ էլ Պոլսի Թուրքերենում, ուր դարձել է hakik «կեղծ ակունք»։ Ուշ ժամանակի հայերենում ունինք աղեղ «ակունքի տեսակ». համտ. Առաք. պատմ. 457 «Աղեղն կարմիր լինի, բաց կարմիր և ալ լինի» (տես Արմ. բռ)։

— Աղեղ, հորաքույր պարոն Վարդանի, որ Մոկաց Բոլենց գյուղում Բաղդասար գրչին գրել տվեց մի Ավետարան, 159: թ. —Ձեռ. Վասպ. 730։

*ԱՂԵՔՍԱՆԴՐ, ար. < հուն. Ἀλέξανδρος անունից, որ արձանագրությանց մեջ գործածված է նաև իբրև հասարակ անուն և նշանակում է բուն «մարդկանց պաշտպան» (կազմված է ἀλέξω «պաշտպանել, պահպանել»+ἀνήρ «այր, մարդ» բառերից)։ Սրանից են փոխառյալ նաև լտ. գերմ. անգլ. Alexander, ֆրանս. Alexandre, ռուս. Александр, արաբ. اسكندر Iskandar: Նույնարմատ արական անուններ են հուն. Ἀλεξᾶς, Ἀλεξίας, Ἀλεξῖνος,

Ἄλεξις, Ἀλεξίων, Ἀλέξων, *որոնց դեմ ունինք հյ.* Ալեքս, Ալեքսիանոս, Ալեքսան *(կամ* Ալիքսան*) և ամենակարճ ձևով՝* Ալեք։ *Պատմության մեջ հայտնի են Աղեքսանդր Մակեդոնացին (Ն.Ք. 356—323), Աղեքսանդր հայրապետ Աղեքսանդրիայի (313—326), Ալեքս Ա—Ե՝ Բյուզանդական կայսրներ (1081—1204), որոնցից Ալեքս Գ. եղավ թագադիր Լևոն Բ-ի Ռուբինեանց, և վերջապես Ս. Ալեքսիանոս կամավոր աղքատը։ Այս բոլոր անունները մտել են մեր մեջ քրիստոնեությունից հետո. հնագույն ձևն է* Աղեքսանդր, *որ և համապատասխանում է հունարենին, Բյուզանդական շրջանից են* Ալեքս, Ալեքսիանոս. *կրճատ ձևեր են* Ալեք, Սանոս, *արաբականից փոխառյալ* Սքանդար, *վրացերենից փոխառյալ* Սանդրօ, Սանդրիկ *և այժմ էլ ռուսերենից՝ փաղաքշական ձևով՝* Սաշա։

— 1. Աղեքսանդր *եպիսկոպոս Ամատունեաց, անդամ Նիկիայի Բ. ժողովի՝ 787 թ.—Ցոփյանեան. Պատմ. տիեզ. ժող. 493։*

— 2. Աղեքսանդր, *երրորդ որդի հունաց Վասիլ Ա հայազգի կայսեր, եղբայր Լևոն Զ Իմաստասերի (886—912) կայսեր։ Ծնվել է 871 թ։ Գահակից եղավ իր եղբոր՝ Լևոնին, որի մահից հետո, 912-ին եղավ միայնակ կայսր, որովհետև Լևոն Զ-ի մեռած ժամանակ՝ նրա 7-ամյա որդին՝ Կոստանդին Պերփեռուժէն գահ բարձրանալու համար դեռ շատ փոքր էր։ Ամբողջ կյանքը անցկացրեց հարբեցողությամբ, անառակությամբ և խնջույքներով։ Մի խոզի նկարի առաջ եկեղեցական խորան կանգնեցրեց։ Ծերակույտը կազմեց նշանավոր հարբեցողներից, որոնք ամեն րոպե գլորվելու վտանգի տակ, պետության գործերն էին վճռում։ Այս ծերակույտն էր, որ մի օր էլ, խեղկատակության համար, կայսեր նախագահությամբ, Եւթեմիոս պատրիարքին դատի կանչեց պալատում և վեղարավոր կրոնավորների ձեռքով ծաղրի ու ծեծի ենթարկելով .արյունլվա աքսոր ուղարկեց, ուր և մեռավ։ Մեկ և կես տարվա խայտառակ գահակալությունից հետո՝ մեռավ Աղեքսանդր 913 թ.—Զամչ. Բ. 697, 753, Տէր Սահակեան, Հայ կայսրեր, Ա. 246—258, 383—6։*

— 3. Աղեքսանդր, *գրիչ. օրինակել է Գանձարանը՝ 1474 թ. —Ձեռ. Կարին. 28։*

— 4. Աղեքսանդր, *աբեղայ գրիչ. արտագրել է Աւետարանը ՋԽԸ=1499 թ.—Ձեռ. Կարին. 18 (տպված էր ՋԽԸ=1499. ուղղեցի այսպես)։*

— 5. Աղեքսանդր, *գրել է «Գիրք վկայութեանց», քաղելով*

հին հայ և օտար աղբյուրներից. ինչ. Լուսաւորիչ, Ոսկեբերան, Ն. Լամբրոնացի, Գր. Տաթևացի, Ալբերթ գիրք են (ԺԷ դար).— Ջեռ. Ներս. էջ 28—30։

— 6. Աղեքսանդր Ա. Ջուղայեցի, կաթուղիկոս Էջմիածնի «1706—1714 թ». աշակերտ Դաւթի. նախապես առաջնորդ Նոր-Ջուղայի «1699—1706», երբ ընտրվեց կաթուղիկոս՝ երբ հաջորդ Նահապետ կաթուղիկոսի։ Կաթոլիկական ոտնձգությունների առաջքն առնելու համար՝ գրեց Կղեմէս ԺԱ պապին («1709»), բայց տեսնելով նրա վատ վերաբերմունքը, դիմեց Պարսից Հիւսէին շահին և նրա հրովարտակով հալածեց կաթոլիկ քարոզիչներին և կաթոլիկ դարձած հայերին։ Քաջալերեց Օրիի ազատագրական շարժումը և թողեց զանազան շինություններ Էջմիածնում։ Գրել է Գիրք ատենական, որ ասի վիճաբանական (1682), Աղօթամատոյց (1687).—Մ. մաշտ. 336 բ, Տաշեան, Ցուց. 180, 788—789, 1055, Ջուղ. 210, 219, 222, 236, Աբր. կրետ. 2, Ջամչ. Գ. 749, 768. Ազգապ. 2749—2800, Ջամին. Հայ. եկեղ. պատմ. Բ. 40—41։ (Տպագրված մի գրքի հիշատակարանում, 1715 թվին, Աղեքսանդրը դեռ կաթուղիկոս է հիշվում. տես REA 6, 134)։

—7. Աղեքսանդր Բ. Պոլսեցի (կամ Բիւզանդացի), մականուն Քարաքաշ, կաթուղիկոս Հայոց «1753—1755 թ». հաջորդեց Մինաս Ա. Ակնեցուն և կարճատև ու խաղաղ կյանք ունեցավ.— Ազգապ. 2983—2986, Ջամչ. Գ. 821, 827, 831, 865. Մ. մաշտ. 336 բ. Տաշեան, Ցուց. 911 բ. Այրարատ 224։

† ԱՂԷԿՄԱՆՈՒԿ, իգ. կազմված է հյ. աղէկ+մանուկ բառերից. մի անգամ գտնում եմ գործածված 1420 թվից բավական առաջ գրված անթվական մի հիշատակարանում.—Տաշեան, Ցուց. 666 ա (տպված է Աղէկմամուկ, ցանկումն էլ Աղէկմուկն, որ պետք է ուղղել այսպես։ Բարբառներում աղէկմանուկ նշանակում է «քաջք, փէրի»)։

† ԱՂԷԿՏԻԿԻՆ, իգ. կազմված հյ. աղէկ+տիկին բառերից. մի անգամ գտնում եմ գործածված ԺԴ դարում։

— Աղէկտիկին, կին Յովհաննէսի, եղբայր Հեթում քահանայի, որ Հռոմկլայի Ծակաղբիւր գյուղում, Յովհաննէս գրչին գրել տվեց մի Աւետարան, 1357 թ.—Ջեռ. Վեննա. Ա. 613։

*ԱՂՐՋ, իգ. < Թրք. آغز á qəz «ճ՛վ աղջիկ». այսպես են կոչում Ղարաբաղցիք Թուրք աղջիկներին. բայց նաև հայոց մեջ գործածական իգական անուն է։

† ԱՂԹԱՄԱՐ, ար. նույնանուն կղզու և վանքի անունից, որի ծագումը անհայտ է։

— Ախթամար Արփայեցի. խլեց Հրասիկ բերդը պարսիկներից և հանձնեց Վայոց ձորի Նորավանքից՝ հրամանով Իւանէ Աթաբէգի (ԺԳ դար).—Օրբ. կգ.—սեռ. Ախթամարի՝ Օրբ. կգ.—Ախթամարեանք՝ Օրբ. կդ, հ։—Սիսական 180, 201։

*ԱՂԻԴԱ, ար. և էգ. < արաբ. عقيدة ʻaqīda «շաքարեղէն» բառից։

— 1. Աղիտա, այսպես է կոչվում Ալիծ իշխանուհին (ԺԳ դար. տես Ալիծ № 1), ըստ Զամչ. Գ. 141։

— 2. Աղիտան, իշխան Աղցից (Արարատ), ազատ ցեղից. Լէնկթիմուրի թոռ Իօմէրի բռնադատությամբ մահմեդականություն ընդունեց, բայց հետո դարձավ իր կրոնին (ԺԵ դարի սկիզբը).—Մեծոփ. 68 (գրված Աղիտան), Այրարատ 148 բ, 323 բ (գրված Աղիգան, Ղիգան, Ղիտան), Զամչ. Գ. 443 (գրված Աղիգան)։

ԱՂԼԻՄ, ար. ծագումն անծանոթ. մի անգամ հիշված է Աղլիմ ոմն ԺԷ դարից հետո՝ Ջեռ. Սանաս. 20 ա։

*ԱՂԼՈՒԲԱԲ, ար. Թրք. < عقلّو aqəllə «իմաստուն, խելոք»+ بابا baba «հայր» բառերից. հիշված է մի անգամ ԺԷ դարում՝ Զքր. սարկ. Բ. 131։

*ԱՂՄՈՒՐ, ար. < Թրք. ياغمور yağmur «անձրև» բառից. տես Եաղմուր անունը։

— Աղմուր ոմն, հիշված 1311 թվից հետո գրված անթվական մի հիշատակարանում.—Ջեռ. Թաւր. 74 ա։

ԱՂՈՒԽԱՆ, ար. ծագում է Աղուխան ազգի անունից. գործածվում է այժմ էլ Կովկասում, բայց շատ հազվագյուտ է. սրանից է Աղուխանեան ազգանունը։

*ԱՂՈՒԲ, ար. < արաբ. يعقوب Yaʻqūb=Յակոբ անվան հին ձևն է. ավելի ուշ դառնում է Եաղուբ, որ տես։ Գործածված է ԺԶ—ԺԷ դարերում. այսպես՝ Աղուպ՝ 1561 թ. (Թորոս Աղբար, Ա. 228), 1592 թ. (Ջեռ. Վասպ. 736), Աղուբ 1619 թ. (անդ, էջ 859), Աղուպ 1633 թ. (անդ, էջ 882), և անհայտ թվականով՝ Ջեռ. Վասպ. 570 և Թորոս Աղբար, Բ. 355։ Սրանից է Աղուպեան, որ տես։

ԱՂՈՒԲԻՈՍ, ար. ծագումն անհայտ։

— Աղուբիոս եպիսկոպոս, առաջնորդ Արտազի. ժողովրդի խնդիրքով՝ Լուսաւորիչը կարգեց նրան այս պաշտոնին, ուր և

ծևաց 25 տարի, երևի 302—327 թ. ըստ Զքր. եպս. 280։

*ԱՂՈՒԲՇԱՀ, ար.< արաբ. يعقوب Ya'qūb (որ է Աղուբ)+պրս. شاه šāh «թագավոր» բառից, որ շատ անգամ գտնում ենք հատուկ անունների ծայրին։ Գործածված է ԺԵ—ԺԷ դարերում, ընդհանրապես Աղուպշա (տես. Աղուպշին) ձևով։

— 1. Աղուպշա, ռէս (գյուղապետ) Գաւաշի, 1444 թ.— Ձեռ. Վասպ. 389. (այս միևնույն հիշատակարանը քաղվածքներով տալիս է նաև Նոտարք 46, բայց թվականը սխալմամբ դընում է 1415)։

— 2. Աղուպշայ, քեռի (այն է մորեղբայր) Թումայ Ղուզիկ Գաւաշեցու, որ Աղթամարում Հայրապետ աբեղային գրել տվեց մի Աւետարան, 1444 թ.—Ձեռ. Վասպ. 387։

— 3. Աղուպշայ, եղբայր Պօղոս վարդապետի, որ ժողովարարութեան է գնացել Բաղէշ և արդյունքը պայմանագրով հանձնել Ամրդոլու վանքին, 1461 թ.—Նոտարք 199։

— 4. Աղուպշայ, որդի Սուլթանշահի՝ որդւոյ Գոնդուլ փաշայի, որ Կոոց անապատում Խաչատուր աբեղային գրել տվեց մի Աւետարան, 1475 թ.—Ձեռ. Վասպ. 472—3։

— 5. Աղուպշայ, հանգուցյալ եղբայր տանուտեր Ղարիպշայի, որ Արծկէում գրել տվեց մի Աւետարան, 1486 թ.—Ձեռ. Վասպ. 501։

— Աղուպշայ անունը ավելի ուշ հիշվում է 1534 թ. (Ձեռ. Վասպ. 647), 1542 թ. (Manus. brit. mus. 34 բ), 1633 թ. (Ձեռ. Վասպ. 883), մի քանիսն էլ անթվական (Տաշեան, Ցուց. 531բ և 544 ա)։

*ԱՂՈՒԹ, իգ.< Թրք. պրս. یاقوت yāqūt «հակինթ քարը» բառի հին ձևն է, որ ավելի ուշ դառնում է Եաղութ (տես այս բառը)։

— 1. Աղութ խաթունն, գրել տվեց մի Աւետարան Վարդան երէցին՝ Վարագայ վանքում, 1260 թ.—Ձեռ. Դաղեան, Բ. 46 բ։

— 2. Աղութ խաթունն, կին Սարգսի, որ Թումա գրչին գրել տվեց մի Աւետարան, 1336 թ.—Ձեռ. Վասպ. 196։

— 3. Աղութ խաթունն Կոնիռապատցի, օգնեց գնելու մի Աւետարան, 1435 թ.—Ձեռ. Թաւր. 13 ա։

— 4. Աղութ, կին Ցովսէփ «միայնակեացի», որ Լիմ անապատում, 1439 թ. գրեց, ծաղկեց ու կազմեց մի Աւետարան, որ գրել սկսել էր Ցովհաննէս վարդապետը։—Ձեռ. Վասպ. 380։

— 5. Աղութ, կին Թումայ Ղուզիկ Գաւաշեցու, որ Աղթա-

մարում գրել տվեց մի Ավետարան, 1444 թ.—Ձեռ. Վասպ. 385։

— 6. Աղութ խաթուն, մայր Մելիք խաթունի, որ Արճէշում գրել տվեց մի Ավետարան, 1453 թ.—Նոտարք 171։

— 7. Աղութ, քույր տանուտեր Մանկասաւագի, որ գրել տվեց մի Ավետարան և ընծայեց Մցի գյուղի նորընծա Ղազար քահանային, 1455 թ.—Ձեռ. Վենետ. Ա. 582։

— 8. Աղութ, կին Յորդանանի և մայր Խաչատուր քահանայի Ուրծեցւոյ գրչի (1460-ական թվերին).—Այրիվ. 16 ա։

— 9. Աղութ, կին տանուտեր խոջա Խդրշահի, որ Վանում, Աղարիա երեցին գրել տվեց մի Ավետարան, 1484 թ.—Ձեռ. Վասպ. 496։

— 10. Աղութ, կին Ամենատիրի՝ որդւոյ Ներսէս քահանայի Բարերդցոյ, որ Մովսէս աբեղային գրել տվեց մի Յայսմաւուրք, 1489 թ.—Manus. brit. mus. 165 բ։

ԱՂՈՒԻԹՈՍ, իգ. անշուշտ հունական ծագում ունի. Ալիշան (Հայապ. 85) մեկնում է հուն. ἀγαπητή «սիրուն, դուրեկան» բառից. ավելի նման են հնչում հուն. ἀλώβητος (ար. և իգ.) «վնասից զերծ» և ἀλώφητος (ար. և իգ.) «անդադար». բայց բոլորն էլ անստույգ։

— Աղուիթոս, կին Սուրէն իշխանի Սալահունեաց և մայր Ս. Թէոդորոսի. մեռել է «295 թ». կյանքը տես Աթենադորոս.—Աղվիթոս՝ Յայսմ. մայ. 11, Աղվիթաս՝ Ջամչ. Ա. 376, Աղուիթա՝ Ազգապ. 65. տես և Յուշիկք, Ա. 221։

ԱՂՈՒԼՄԵԼԻՔ, իգ. ծագումն անհայտ. մի անգամ միայն գտնում եմ ԺԵ դարում։

— Աղուլ-մելիք, կին Շահնազարի, որդւոյ Սուլթանի՝ եղբոր Մանուէլ քահանայի, որ Գեղարքունեաց Կած գյուղում, Յովհաննէս Արծկեցուն գրել տվեց մի Ճաշոց (ԺԵ դար).—Ձեռ. Սևան, էջ 18։

*ԱՂՈՒՄ, ար. հիշված է մի անգամ ԺԷ դարի կեսին (Սիսական 342 ա). ըստ իս պետք է ուղղել Աղամ։

† ԱՂՈՒՈՐ, ար. և իգ. < հյ. ժղ. աղվոր «գեղեցիկ, սիրուն» բառից. գործածված է ԺԳ—ԺԷ դարերում. այնուհետև խափանված է։

— 1. Աղվոր Խարբերդցի, նվիրատու Կապոսի Ս. Լուսաւորիչ վանքի, 1295 թ.—Ձեռ. Վենետ. Բ. 35։

— 2. Աղուոր տիկին, մայր Կոստանդին Պեհլեւնեցի եպիս-

կոպոսի, որ էր առաջնորդ Սկևռայ վանից և գրել տվեց Առակք Սողոմոնի, Սիրաք և Յոբ, 1314 թ.—Ձեռ. Վասպ. 60։

— 3. Աղվոր, կին Պաղտասարի և մայր Խանտէրի, կնոջ Մարտուանցի մահտեսի Նորհատի, որ Սեբաստիայում գրել տվեց մի Աւետարան, 1659 թ.—Ձեռ. Սեբ. (ՀԱ 1936, 546)։

*ԱՂՋԱ, իգ. < Թրք. آقجه aqǰa «դրամ, սաակ», բայց բուն նշանակությունն է «սպիտակավուն, ճերմկոտիկ». և անշուշտ այս իմաստով է որ դարձել է անձնանուն։ Գործածված է ԺՁ և ԺԷ դարերում, մի մի անգամ։

— 1. Աղճա, մայր Հեթումի, որ Ջէյթունում Վահան դպրին գրել տվեց մի Աւետարան, 1580 թ.—Ձեռ. Հալէպի, Ա. 47 ա։

— 2. Աղճա, իբրև իգական անուն հիշված 1666 թ.—Ձեռ. Հալէպի, Բ. 8։

*ԱՂՍԱՐԹԱՆ, wր. սրա հետ նույն են վրաց. Աղսարթան և պրս. Axsatān. այս անունով հայտնի են Պարսից մեջ՝ Ախսաթան որդի Մինուչիհրի, շիրվանշահ (մ. 1188), Ախսաթան որդի Ֆերիբուրզի, շիրվանշահ (ԺԳ դար)։ Justi 12 բ չի տալիս այս բառի ծագումը։ Իբր Թուրք-Թաթարական բառ՝ կարծում եմ որ ծագում է آقساتمق aqsatmaq «կաղալ» բայից (Будагов 69 բ), որի ներկա դիրքայն է آقساتان aqsatan «կաղացող»։ Ըստ այսմ Աղսարթան համազոր է դառնում սոռը. Աբգար և լտ. Claudia անուններին։

— 1. Աղսարթան որդի Գագիկի՝ որդւոյ Դաւիթ Անհողինի. որդեգրվեց Կախեթի Կիւրիկէ Գ. Թագավորից (մ. 1029). իշխեց 1058—1084 թ.—Brosset, Hist. 2, 143, Justi 12 բ։—Երևի այս է այն Աղսարթանը, որ ըստ Օրբ. Ժմ. 15 մեռել է ՇԻԸ=1079 թ. (առանց ուրիշ բացատրության)։

— 2. Աղսարթան որդի Կորիկէ Գ-ի, եղբայր Աբաս Թագավորի (ԺԳ դար).—Հայապ. 392։

— 3. Աղսարթան որդի Աբասի, իշխան Մածնաբերդի. մայրն էր Նանա՝ քույր մեծն Զաքարէի և Իւանէի. սոնդյա մանուկ հասակում որբ Յնաց և Աբասի քույրը Բաւրինա սնուցեց նրան, որ և ժառանգեց Մածնաբերդը։ Նոր բերդի իշխան Դաւիթ Բագրատունին խաբեությամբ Աղսարթանին փեսայացրեց իրեն և մի քանի օր հետո փեսային վռնտելով՝ խլեց Մածնաբերդը։ Ժողովուրդը ապստամբեց, Դաւթին դուրս քշեց և բերդը նորից հանձնեց Աղսարթանին։ Քիչ ժամանակ հետո, Աղսարթանը իշխանությունը հանձնեց իր որդի Կիւրիկէ Դ-ին և ինքը կրոնա-

վոր դառնալով՝ Գետակիցք վանքը քաշվեց (ԺԳ դար).—Կիր. 72, 73.—տես. Աղսարթան՝ Կիր. 73 և իտ.—Չամչ. Գ. 186, Կարապետ եպս. Դուխեանք, էջ 31, 32, 57։

— 4. Աղսարթան որդի Կիւրիկէ Դ-ի, եղբայր Փահլաւանի և Թաղիաթինի (ԺԳ դար).—Կիր. 73.—տես. Ասխարթան՝ Վրդ. ձե։

— 5. Աղսարթան, հայր Յովհաննէս Գ եպիսկոպոսի Հաղբատայ (ԺԳ դար).—տես. Աղսարթան՝ Կիր. 56։

— 6. Ասխարթան, Վարդան Բարձրբերդցու երկրորդ անունն է. «Ասխաթան, որ և Վարդան» Վրդ. տպ. ճժը, էջ 420։

*ԱՂՍՈՒԼԹԱՆ, իգ. < Թրք. آقسلطان aq-sultān «սպիտակ սուլթանուհի». մի անգամ գտնում եմ հիշված ԺԷ դարի սկիզբը՝

— Աղ-սօլթան գուսար խոջա Մելքի, որ Վանում գրել տվեց մի Աւետարան, 1602 թ. (սույն Աղսօլթանի մայրն էլ կոչվում էր Սօլթանաղա)։

ԱՂՎԱՐ, իգ. հիշված է 1737 թ. Զեյթունում (ՀԱ 1894, էջ 50 բ)։—Հավանաբար աղւոր բառն է, որ և անձնանուն է։

ԱՂՎԱՐԴ, իգ. կարելի՞ է համարել Աղգուլ անունից կիսահայ թարգմանություն, իբր աղ < Թրք. aq «սպիտակ»+gul «վարդ»։ Այս անունով ունինք միայն՝

— Աղվարդ, կին Ախիջանի և մայր Խաչատուր քահանայի, որ Պարսկաստանի Արդաբիլ քաղաքում օրինակեց մի Աւետարան, 1638 թ.—Ձեռ. Վասպ. 891։

*ԱՂՏԱՀԱՐ, իգ. անշուշտ պարսիկ կամ արաբական անուն է. հմմտ. Աղտափառ (որ և Աբդլաղիզ)՝ Տիսբոնի ամիրա, որի վրա 100 էջ պատմություն կա գրված մեր հին մատենագրության մեջ «Պատմութիւն սրբոյն Մակարայ միայնակեցին և խօսք երանելի ամիրային ի Տիսբոն քաղաքի» վերնագրով (տես Տաշեան, Ցուց. 172)։ Բայց այլազգի բառի ձևն ու ծագումը անհայտ է։ Չունի Justi։

— Աղտահար, կին ոմն, որ իր Նանաֆար և Աճապխան անուն ընկերների հետ միացած՝ երեքով մի Տղայաւետարան նվիրեցին Դաւիթ աբեղային, 1710 թ.—Տաշեան, Ցուց. 504 բ։

*ԱՂՏԻՇԱՀ, ար. անշուշտ իրանական անուն է. երկրորդ մասն է պրս. شاه šāh. բայց առաջինը անծանոթ է։ Գործածված է ԺԵ դարից ավելի ուշ գրված մի հիշատակարանում, Աղտիշայ, տես. Աղտիշի ձևով (Ձեռ. Թաւր. 42 բ—43 ա)։

ԱՂՕՏ, ար. թե իգ. ծագումն անծանոթ. մի անգամ հիշված

է 1586 թվին գրված մի Ավետարանի ստացողի անունը կեղծելով «...և ամուսնին իւր Աղաւտն».—Ձեռ. Վենետ. Ա. 668։

*ԱՄԱԴԻՆ, ար. < արաբ. عمادالدين ‘Amād-ad-dīn անունից. բուն նշանակում է «սյուն հավատոյ»։ Մի անգամ գտնում եմ գործածված ԺԴ դարում։

— Ամադին Շահունեցի, իշխում էր Վայոց ձորի Հերհեր գյուղում և շրջակայքում և «նիզակակալ և կորովաձիգ ասպարապետ» էր «ի դրան Թագաւորաշուք իշխանաց Բուրթելին (Օրբելեան) և Վախախին» (Յովսէփեան, Խաղբակեանք 21)։ Բուրթել և Վախախ հիշված են 1322 թ. (Սիսական 182), ուստի Ամադինն էլ այս թվերից պիտի լինի։ Բայց ունինք ես երկու արձանագրություն, 1295 և 1345 թվերից (Սիսական 116, 199), որոնց մեջ հիշվում է թե Ամադին որդի Վահրամ Շահունեցու, վախճանված է եղել փոքր հասակում և մայրը Գոնցա նրա հիշատակին նվերներ է արել Հերհերի Ս. Սիոնին և Նորավանից։

*ԱՄԱՂԷԿ, ար. < եբր. עמלק ‘Amāleq, որ Եսաւի թոռան անունն է (Ծն. լզ 12)։ Այսպես է կոչված ասորեստանցոց Սենեքերիմ թագավորի որդին Ադրամելէք, ըստ Սուտ-Շապհ. 21։

ԱՄԱՄԳԱՍ, իգ. ծագումն անծանոթ. մի անգամ հիշված է ԺԸ դարում.—Ձեռ. Դաղեան, Ա. 93 բ։

ԱՄԱՆՈՍ, ար. անշուշտ Կիլիկիայի համանուն լեռնաշղթայի անունից է. մի անգամ գտնում եմ գործածված ԺԲ դարում։

— Ամանոս, պարոն, տեր Աստառոսի. Ներկա եղավ Լևոն Բ-ի թագադրության հանդեսին «1199 թ».—Սմբ. պատմ. 112։

+ ԱՄԱՆՈՐ, ար. < հյ. ամ «տարի»+նոր բառերից, իբր «նոր տարի». հին հայոց հեթանոսական կրոնում նոր տարվա աստվածը, նշան հունձքի և առատության. «Դիցն Ամանորոյ ամենաբեր նոր պտղոց տօնին, հիւրընկալ դիցն Վանատրի» (Ագաթ. § 836)։

Ամանփաստ տես Զամանփաստ։

*ԱՄԱՍԻԱ, ար. հարմարեցված է Խորենացու կողմից՝ դուրս բերելու համար Մասիս լեռան անվան ստուգաբանությունը, համեմատությամբ Հրեից Ամասիա թագավորի անվան։ Ամասիան Յուդայի 8-րդ թագավորն էր. գահակալել է Ն.Ք. 838—809 թվերին. հաղթվեց Իսրայելի Յովաս թագավորից և մարդասպանների ձեռքով սպանվեց (Բ Մնաց. իդ. 27, իե. 1)։ Այս անվան եբր. ձևն է אמציה Amaşyāh, որ կազմված է amş «զորավոր»+Yāh «Եհովա» բառերից և նշանակում է «աստուածազօր կամ զօրութիւն Աստուծոյ»։ Տառադարձված է հուն. 'Αμασίας, որից էլ հյ. Ամասիա (Gesenius 50 ա)։

— Ամասիա, որդի Արմայիսի, նահապետ Հայկազանց (Ն.Ք. 1940—1908). նստավ Արմաւիր. ունեցավ 3 որդի՝ Գեղամ, Փառոխ և Ցոլակ. վերջին երկուսի համար գնաց շինեց Փառախոտ և Ցոլակերտ ավանները. լեռը կոչեց իր անունով Մասիս. կյանքի մնացյալ մասը անցրեց Արմաւիրում։—Խոր. Ա. ե, ժբ. Սեբ. Ա. էջ 3, 5. Ուխտ. Ա. է, ժգ. Կղկնտ. Ա. ժե (հրատ. Շահն. Ամասիա). Յհ. կթ. բ. Վրդ. է. Շնորհ. վիպ. 130. Մխ. անեց. գ. Մխ. այրիվ. 17, 45. Սամ. անեց. 11, 42. Մին. համդ. 4. Նհպտք. 88. —սեռ. Ամասեայ՝ Խոր. Ա. ե.—Ամասիայ՝ Մագ. թղ. ժթ. Սամ. անեց. 42.—Ամասիայի՝ Մին. համդ. 4.—բց. յԱմասիայն՝ Շնորհ. վիպ. 131.—Վրաց աղբ. Ա. 74։

†ԱՄԱՍԻԱ, իգ. որի կրճատ ձևն է Ամաս. այս անունը բոլորովին տարբեր է նախորդից. համարվում է Համասփիւռ անունից, որ տես։

— 1. Ամաս, Թիլի արական. որդի Հաղրպէկի. հիշված է 1655 թ.—Թորոս Աղբար, Բ. 372։

— 2. Ամասիա, կին Խոփեարի և մայր տէր Մեսրոպի, որի աղջիկն էլ կոչվում է Ամաս. հիշված են 1666 թ.—Ձեռ. Վասպ. էջ 925։

— 3. Ամաս, կին Փոխանի. հիշված է 1786 թ. սեռ. Ամասեայ ձեռվ։—Ձեռ. Վասպ. 262։

*ԱՄԲԱԿՈՒՄ, ար. <եբր. חבקוק Xabaqquq, որ 12 փոքր մարգարեներից մեկն է. հունարենում տառադարձված է Ἀμβακούμ, որից էլ կազմվել է մեր ձևը։ Եբրայական բառը համեմատվում է ասուր. ḫambaḳūḳu բառի հետ, որ պարտեզներում մշակվող մի բույս է (Gesenius 211)։ Թեև այս անունը հին հայոց մեջ սովորական չէր, բայց իբրև հատուկ անվան օրինակ հիշված է Թր. քեր. 44, Խոր. քեր. 179։

— 1. Ամբակում եպիսկոպոս Տաքիի, մին այն ադվան եպիսկոպոսներից, որոնց Յովհաննէս Բ Գաբեղեան կաթուղիկոսը («557—574 թ») թուղթ գրեց և զգուշացրեց նեստորական քարոզիչներից.—սեռ. Ամբակումայ՝ Կղկնտ. Բ. է. Գիրք թղ. ժթ։

— 2. Ամբակում (կամ Պակէ), հայր Ստեփաննոս արքեպիսկոպոսի Տարոնի (մ. 1301 թ).—Սիսուան 74 բ։

— 3. Ամբակում, մահտեսի, Ակնի Նավրէբ գյուղից. մանուկ հասակից որբ մնաց. պանդխտեց Պոլիս, ուր հացթուխի աշակերտ դարձավ. բարեպաշտ և աղքատասեր մարդ էր. Եղիազար եպիսկոպոսի (ապա կաթուղիկոս) հորդորով Պոլսում, Յովհան-

նէս գրչին գրել տվեց մի Ցայսմաւուրք (1651 թ), որ և նվիրեց Արղնիի Բարձրահայեաց Աստուածածին եկեղեցուն։ Սրա ընդարձակ պատմությունը տես Թորոս Աղբար, Բ. 398—410։

— 4. Ամբօ ոմն, հիշված է 1824 թվին. կրճատ ձևն է Ամբակում անվան.—Ձեռ. Վասպ. 208։

*ԱՄԲԱՐ, իգ. < արաբ. عنبر ‘anbar անուշահոտ ծաղկի անունից, որ հին հայերենում յամբար ձևն ունի և թրք. էլ դարձած է amber.—Մեր մեջ իբրև իգական անուն գործածված է ԺԵ դարից սկսած և անցյալ դարում էլ Պոլսում դեռ գործածական էր Ամպեր ձևով։ Օտարներից հմմտ. عنبري ‘anberi հնդկուհի ոմն (ԺԴ դար, Ibn-i-Batutah 4, 142)։

— 1. Անբար, կին մահտեսի Ղազարի և մայր Թումայ Մեծոփեցու, որ Թովմա վրդ. Մեծոփեցու ձեռքի տակ, Մեծոփայ վանքում օրինակեց մի Տօնացոյց, 1441 թ։ Ութ տարի հետո էլ օրինակեց մի Աւետարան, 1449 թ. երբ Անբարը մեռած էր։—Նոտարք 124, 162։

— 2. Ամբարխաթուն, դուստր Էդիլշահի, որ Արծկէում գրել տվեց մի Աւետարան, 1463 թ.—Ձեռ. Վեննա. Ա. 620։

— 3. Ամբար, քույր Սարգսի, որ Խիզանի Գամաղիէլ վանքում գրել տվեց մի Աւետարան, 1468 թ.—Ձեռ. Վասպ. 452։

— 4. Ամբարխաթուն, կին Յովհաննէսի և մայր Զուլալի, որ Աղթամարում գրել տվեց մի Աւետարան, 1470 թ.—Ձեռ. Վասպ. 459։

— 5. Ամբար, անհայտ ոմն, հիշված 1476 թ.—Տաշեան, Ցուց. 915 բ։

*ԱՄԲՐՈՍԻԱՆՈՍ, ար. < լտ. Ambrosianus ձևից, որի վրա տես հաջորդը։

— Ամբրոսիանոս, լատին եկեղեցու սրբերից, պաշտպան Ֆոնտենի (Fontaine-les-Dijons, Ֆրանսիա), որ Ս. Բեռնարդոսի հայրենի գյուղն է։ Ըստ նույն գյուղի ավանդության և եկեղեցու ժամագրքի, հայ եպիսկոպոս էր. ծնողները Սարմատաց կամ Վրաց կողմերից էին. հեթանոսության ժամանակ հալածանքից փախչելով եկավ Արտամէտ, ուր ծնվեց սուրբը։ Եղավ Սասլատուն(?) քաղաքի եպիսկոպոսի օգնականն ու հաջորդը, ապա գնաց իր հայրենի երկիրը քարոզելու, ուր և նահատակվեց։ Ժամանակն անհայտ է։ Հայտնի չէ նույնպես թե իր նշխարները երբ և ինչպես փոխադրվեցին Ֆոնտեն։—Ալիշան, Ցուցիկք, Ա. 73 և Շնորհ. էջ 175—176։

*ԱՄԲՐՈՍԻՈՍ, ար. < Ἀμβρόσιος > լտ. Ambrosius անունից, որ բուն ածական է և նշանակում է «աստվածային, անմահ, անմահական»։ Կազմված է ἀ բացասականով՝ *μβροτός > βροτός «մահկանացու» բառից։ Եկեղեցական հայրերի մեջ նշանավոր է Ս. Ամբրոսիոս եպս. Մեդիոլանի կամ Միլանի (340—397). Թեսաղոնիկէի կոտորածի վրա՝ Թէոդոս կայսեր հրապարակային ապաշխարանքի ենթարկեց։ Նշանավոր գրող էր և ոճի ազնվության համար կոչվում է «մեղրածորան վարդապետ» (Փափազեան, Պատմ. եկեղ. 205)։ Հայոց մեջ հնից ավանդված չէ. հիշված կա 1698 թ. Ամբրոզիոս ձևով (REA 6, 100). անցյալ դարում գործածական էր Պոլսում (Կարապետեան, Յիշատ. Սամաթ. 131)։

ԱՄԲՐՈՒՄ, ար. ենթադրում եմ այս անունը, քանի որ ունենք Ամբրումեան ազգանունը (Շուշի)։ Իրոք հիշված էլ կա Ամբրում անձ 1688 թ.՝ Սիսական 401 ա։ Տես Ամրում։

ԱՄԵՆԱՏԱՐ, ար? արդյոք հյ. Ամենատար բառն է, «ամեն բան տանող, ամեն բանի համբերող» իմաստով։

— Ամենատար, հիշված է 1475 թվից հետո գրված անթվական մի հիշատակարանում.—Ձեռ. Մաղն. 35։

+ԱՄԵՆԱՒԱԳ, ար. հյ. ամեն+աւագ բառերից, իբր «բոլորից մեծը». իբր անձնանուն գործածված եմ գտնում երկու անգամ ԺԴ դարում և մի անգամ ԺԵ դարում։

— 1. Ամենաւագ Դերջանցի, Կաունբերդակ գյուղից հասարակ երկրագործ էր. Թուրքերը զրպարտեցին նրան թե մահմեդականություն է ընդունել. դատավորը պահանջեց ուրանալ իր կրոնը. Ամենաւագը մերժեց, բանտի ու տանջանքի դատապարտվեց և ապա քարկոծությամբ նահատակվեց, «1335 թ»։ Վկայաբանությունը գրել է Յովհաննէս վրդ. Դերջանցին։—Յայսմ. Ազգապ. 1860. Նոր վկ. 129—133։

— 2. Ամենաւագ, հայր Ասատի և Սիմէոնի, որոնք Ներսէս գրչին օրինակել տվին «Հաւաքումն տօնական ճառից», 1397 թ.—Ձեռ. Վենետ. Բ. 1284։

— 3. Ամենաւագ, գյուղապետ. իբրև վկա ստորագրում է մի կտակագրի, 1461 թ.—Manus. brit. mus. 31 ա։

+ԱՄԷՆ, ար. կրճատ ձևն է Ամենաւագ անվան, որ տես։ Ըստ այսմ Ձեռ. Վենետ. Բ. 1284 հիշատակված Ամենաւագը՝ էջ 1285 կոչվում է Ամէն։ Զարմանալի է սրա իգականը՝ Զամէնտիկին, որ կրճատ դառնում է Զամէն։

+ԱՄԷՆՏԻԿԻՆ, իգ. < հյ. ամէն+տիկին բառերից, իբր

«ամենից մեծ տիկին»։ Գործածված է թե Ամենտիկին և թե Զամենտիկին ձևով, որոնք երբեմն էլ շփոթվում են իրար հետ։ Հմմտ. տակը։ Գործածված է եղել ԺԴ—ԺԵ դարերում. ապա խափանված։

— 1. Ամենտիկին ոմն, մերձավոր Թանգեր տիկնոջ, որ գրել տվեց մի Ավետարան, 1327 թ.—Ձեռ. Հալէպի, Ա. 397 ա (հիշված է հետևյալ ձևով. «Ցիշեսջիք և զծերունին զամենտիկին, որ և սա... ողորմեսցի սմա». որից չի իմացվում թե բառն է Ամէնտիկի՞ն թե Զամէնտիկին)։

— 2. Ամենտիկին, կին Յովհաննէսի և մայր Վարդան կրոնավորի, որ Աղթամարում, Թումայ աբեղային գրել տվեց մի Ավետարան, 1420 թ.—Ձեռ. Վասպ. 322 (սեռ. Ամենտիկնայ ձևով)։

— 3. Ամենտիկին, կին Աստուածատուրի և մայր Ղազար րաբունապետի՝ ուսուցչի Պօղոս աբեղայի, որ Ամիրդոլի խընդրանքով գրեց Բաղէշում մի Ավետարան, 1455 թ.—Նոտարք 178։

*ԱՄԻ, ար. Հարևել. Թրք. عمی «հորեղբայր», որ ձևափոխված է արաբ. عم ‘amm հոմանիշից։ Իբրև անձնանուն գտնում եմ գործածված մի անգամ՝

— Ամի, եղբայր Սարգսի, որ Խիզանի Գամաղիէլ վանքում գրել տվեց մի Ավետարան, 1468 թ.—Ձեռ. Վասպ. 454։

ԱՄԻԱԴ, ար. ծագումն անհայտ։

— Ամիադ ոմն Վանեցի, գնեց մի հին Ավետարան, 1607 թ. —Ձեռ. Վասպ. 614։

*ԱՄԻՆԱԴԻՆ, ար. Հ արաբ. امين الدين amīn-ad-dīn «ապահով կամ վստահ ի կրօնս» ձևից։ Հայոց մեջ իբրև անձնանուն գործածված է ԺԵ դարում, Ամենադեն, Ամենադին և Ամինատին ձևերով։

— 1. Ամենադին, դավաճան հայ, որ կաշառվելով Վրաց Ալեքսանդր Ա թագավորից՝ թունավորեց Պեշգինէ Օրբելեանին «1438 թ». հայ իշխանները ի պատիժ նրա ոտներն ու մատները կտրատեցին.—Մեծոփ. 118.—սեռ. Ամենադենի՝ Մեծոփ. 119=Նոտարք 114, Ազգաբ. 2068։

— 2. Ամինատին, որի հոգուն Յովհաննէսը՝ իր եղբորորդիների և իր հարսի հետ մի այգի նվիրեց Ս. Նշանի վանքին, 1461 թ.—Manus. brit. mus. 31 ա։

— 3. Ամինատին, որդի՞ Ներսէս քահանայի Բաբերդցոյ, որ Մովսէս աբեղային գրել տվեց մի Յայսմաւուրք, 1489 թ.—Manus. brit. mus. 165 բ։

— 4. Ամենադին հիշված է անթվական մի հիշատակության մեջ, որ գրված է 1321 թվից հետո.—Թորոս Աղբար, Բ. 347։

*ԱՄԻՆԻԱ, իգ. < արաբ. امينة Amīna (Emine) անունից, որ امين amīn բառի իգականն է և նշանակում է «ապահով, վստահ, հաստատ»։

— Ամինիա, կին Առաքելի և մայր Յոհանի, որ Մեծոփայ վանքում օրինակեց Տաթևացու Քարոզգիրքը՝ 1414 թ.—Rapport Belgique 181։

ԱՄԻՍԹԷ, իգ. ծագումն անհայտ. կա հուն. ἀμισθί «առանց վարձատրության, ձրի»։ Ունինք միայն՝

— Ամիսթէ, կին Ամլիկի. որդին Մխիթար կանգնեցրել է մի խաչքար նրանց գերեզմանի վրա (թվականն անհայտ).—Սիսական 150։

*ԱՄԻՐ, ար. < արաբ. امير amīr «իշխան» բառից, որի բուն իմաստն է «հրամայող» (امر amr «հրաման» արմատից)։ Իբրև արական անուն գործածվում է մեր մեջ՝ սկսած ԺԳ/ԺԴ դարից. ձեռագրերի մեջ գնում է մինչև ԺԸ դար. օրինակի համար Ձեռ. Վասպ. վերջին հիշատակությունն է 1710 թ. (էջ 1032). և մինչև այժմ էլ գործածական է Ղարաբաղում։ Մահմեդականների մեջ amir հաճախ պատվանուն կամ տիտղոս է. այսպես էր նաև հայոց մեջ. բայց ավելի ուշ՝ միացավ անվան հետ և կազմեց մի բառ. այսպես օրինակ՝ Ամիրներսեհ, Ամիր-Սարգիս են։

— 1. Ամիր, որդի պարոն Յովհաննէսի, որ ստացավ Ժ դարում գրված մի Աւետարան (ԺԳ դար).—Ձեռ. Սանաս. 9 բ։

— 2. Ամիր, ի հիշատակ պարոն Նէքնէքի, ստացավ Բերկրիում մի Աւետարան, 1307 թ.—Ձեռ. Վասպ. 151—152։

— 3. Ամիր տես Ամիր-Փոլին։

— 4. Ամիր, քեռի Ցակոբ սարկավագ գրչի, որ օրինակեց Կիւրղի Կոչումն ընծայութեան. Ամիրը մեռել էր 1358 թվից առաջ.—Ձեռ. Թաւր. 28 բ։

— 5. Ամիր, հոգևոր եղբայր Սիմէոն գրչի, որ Մեծոփի վանքում օրինակեց «Դաւթի լուծմունք ճառից Աստուածաբանի», 1370 թ.—Տաշեան, Ցուց. 757 ա։

— 6. Ամիր, հորեղբայր Յովհաննէս կրոնավորի, որ Բերկրիի Եղավանքում, Ցակոբ արեղային գրել տվեց մի Աւետարան, 1422 թ.—Ձեռ. Վասպ. 347.

— 7. Ամիր, տանուտեր Նորագիւղի (Երևանի մոտ), 1465 թ.—Նոտարք 221, Այրարատ 320 բ։

— 8. Ամիր, հայր Ստեփանոս քահանայի, որ Հերմոնի վանքում, Անանիա գրչին գրել տվեց մի Ավետարան, 1469 թ.— Ձեռ. Թավր. 132 բ.

— 9. Ամիր, հայր պարոն Յովհաննէսի, որ Շեղղին գյուղից էր և գրել տվեց մի Ցայսմավուրք, 1469 թ.—Ձեռ. Սեբ. (ՀԱ 1929, 11)։

— 10. Ամիր, որդի Փանիկի և հորեղբայր Խդրշահի, ու Կեսարիայում, Յովհաննէս Երզնկացուն գրել տվեց մի Ավետարան, 1476 թ.—Rapport Belgique 34։

*ԱՄԻՐԱ (կամ Ամիրայ), ար.< ասոր. أميرا amīrā «կուսակալ» բառից, որ ինքն էլ փոխառյալ է արաբ. أمير amīr «իշխան» բառից։ Ամիրայ անունով էին կոչվում մեր մեջ Հայաստանի մահմեդական իշխողները։ Իբրև անձնանուն գործածված է ԺԹ դարից։ 1818 թվին կենդանի էր դեռ Հունգարահայոց մեջ. տես Գովրիկեան, Հայք յՇղխսաբեթուպոլիս, հտ. Գ. էջ 435։

— 1. Ամիրայ Առփայեցի, որդի Ջուրջի, եղբորորդի Մահևանի, Բաղաց Ջուրջեանց իշխանական ցեղից (ԺԳ դար).—Օրբ. հ.— սեռ. Ամիրայի՝ Օրբ. կդ։

— 2. Ամիրայ Թոռն Ջուրջի, նվիրել է Նորավանքին մի այգի և 3 ջորի, 1291 թ.—Սիսական 93 ա, 168 բ, 181 բ, 200։

— 3. Ամիրայ Մամիկոնեան, որդի Մարզպանի, եղբայր Գրիգոր իշխանի, Ասլանպէկի և Սարգսի (ԺԳ դար).—սեռ. Ամիրային՝ Կիր. լ։

— 4. Ամիրայ անունով մի անձ էլ կա հիշված շատ ուշ՝ 1591 թ. դա է Ամիրայ, որդի Պետրոս քահանայի և եղբայր Առաքել եպիսկոպոսի, որ գրել է տվել մի Ցայսմավուրք 1591 թվին։—Տաշեան, Ցուց. 568 ա (տպված է Ամիրօց, որ այլուստ ծանոթ ձև չէ. պետք է կարդալ Ամիրայ, ինչպես արված է անունների ցանկում, էջ 1056 բ)։

*ԱՄԻՐԱԶԱՏ, ար.< արաբ. أمير amīr «իշխան»+պրս. آزاد āzād «ազատ» բառերից. իբր անձնանուն գործածված է մեր մեջ ԺԵ և ԺԶ դարերում։ Շփոթվում է Ամիրզադ և Ամիրզադէ անունների հետ, որ տես առանձին։

— 1. Ամիրազատ, որդի Աստուածատուրի, եղբորորդի Ցակոբ աբեղայի Հերմոնի վանից, 1421 թ.—Ձեռ. Պետերբ. (ՀԱ 1892, 82 բ) (գրված է սխալմամբ Ամիրազահ)։

— 2. Ամիրազատ, հիշված է 1475 թվից հետո գրված անթվական մի հիշատակարանում.—Ձեռ. Մաղն. 35։

— 3. Ամիրազատ, որդի Մկրտիչի. հիշված է 1477 թվից հետո գրված անթվական մի հիշատակարանում.—Ձեռ. Վեննետ. Ա. 628։

— 4. Ամիրազատ, հիշված 1521 թ.—Manus. brit. mus. 139 բ։

*ԱՄԻՐԱԶԻԶ, ար. < արաբ. امیر amīr «իշխան»+عزیز ʻazīz «նվիրական» բառերից։ Իբր անձնանուն գործածվել է ԺԵ—ԺԷ դարերում։

— 1. Ամիրազիզ, պարոն ոմն, որին հիշում է Սարգիս եպիսկոպոսը՝ իր օրինակած Յայսմաւուրքի հիշատակարանում, 1427 թ.—Նոտարք 85։

— 2. Ամիրազիզ, որդի Սողոմոնի և եղբայր Յովհաննէս, Ստեփաննոս և Գրիգոր քահանաների, որոնք Սկեռայ վանքում, Ստեփանոս գրչին գրել տվին մի Աւետարան, 1444 թ.—Ձեռ. Վասպ. 112։

— 3. Ամիրազիզ, որդի Ջահանշահի և եղբայր խոջա Սղատի, որ Վանում, Զաքարիա քահանային գրել տվեց մի Աւետարան, 1533 թ.—Ձեռ. Վեննետ. Ա. 717։

— 4. Ամիրազիզ, հիշված 1605 թ.—Ձեռ. Ազուլ. (Արարատ 1911, 316)։

*ԱՄԻՐԱԼԻ, ար. < արաբ. امیر amīr+علی ʻalī բառերից, որով բուն նշանակում է «բարձր իշխան»։ Մի անգամ գտնում եմ գործածված ԺԵ դարում։

— Ամիրալի, հորեղբայր պարոն Ամիրդոլի, որ Խլաթում, Յովհաննէս քահանային գրել տվեց մի Ճաշոց, 1450 թ.—Նոտարք 164։

*ԱՄԻՐԱՂԱ, ար. < արաբ. امیر amīr և թրք. آغا aġa բառերից, որոնք երկուսն էլ պատվանուն են։ Ամենահին հիշատակությունն է 1481 թվին, երկրորդը՝ 1508 թվին, այնուհետև հաճախ է պատահում ԺԶ, ԺԷ, ԺԸ դարերում։ Կենդանի է այժմ Վրաստանում Ամիրաղօ ձևով. հակադիրն է Աղամիր, որ տես առանձին։

— 1. Ամիրաղա, մականուն լալ, գնացել է Փաթշահի դուռը և իր կողմից շատ ծախս անելով՝ հաջողել է Ռստանի թամղան Աղթամարի Ս. Խաչ վանքին դարձնել, 1481 թ.—Ձեռ. Վասպ. էջ 482։

— 2. Ամիրաղա, հիշված է 1508 թ. (բայց արդյոք իգական է).—Ձեռ. Վասպ. 632։

*ԱՄԻՐԱՄԱԴ, ար. < պրս. امیرآمد amīr-āmad ձևից, որ նշա

նակում է «իշխանը եկավ». անսովոր անուն է, որ գործածված եմ գտնում երկու անգամ՝ ԺԵ—ԺԶ դարերում։

— 1. Ամիրամադ, Թոռ Խոսրովի, որ Բռնաշէն գյուղում, Մխիթար քահանային գրել տվեց մի Ավետարան, 1478 թ.— Ձեռ. Վասպ. 486։

— 2. Ամիրմեծ, որդի Ամիրջիհանի, որ նորոգել տվեց մի հին Մաշտոց, 1576 թ.—Ձեռ. Սեբ. (ՀԱ 1926, 339)։

ԱՄԻՐԱՍ (կամ Ամիրասի), ծագումն անհայտ. անսովոր անուն. մի անգամ գտնում եմ ԺԷ դարում։

— Ամիրաս (կամ Ամիրասի) Երզնկացի, որդի Պալիի, գրիչ 1638—1657 թվերին, Տրապիզոնում արտագրեց մի Ժողովածու, որ գումարն է զանազան և բազմատեսակ գրվածքների (Տաշեան, Ցուց. 355 և Ոսս. Ստ. Կալիսթ. էջ 160—162) և գրեց նույն ժամանակ՝ 1656 թվին էլ մի Ոսկեփորիկ (Կանոնագիրք, Դատաստանագիրք և Աստղաբաշխութիւն), դարձյալ նույն քաղաքում (Ձեռ. Վենետ. Բ. 953)։

Ամիրասադ տես Ասադ։

*ԱՄԻՐԱՍԼԱՆ, ար. < արաբ. امیر amīr+թրք. آسلان aslan «առյուծ» բառերից. մի անգամ հիշված եմ գտնում ԺԶ դարում։

— Ամիր-Ասլան, կազմարար. շինեց կողերն այն Ավետարանի, որ օրինակեց Յակոբ եպիսկոպոսը՝ Առնջուց վանքում, 1595 թ.—Ձեռ. Վենետ. Ա. 696, Այրարատ 295 ծան։

† ԱՄԻՐԱՐԵԻ, ար. < արաբ. امیر amīr+հյ. Արև բառերի բարդությամբ։ Անսովոր անուն. մի անգամ գտնում եմ հիշված 1856 թվին (եթե այս թիվը ճիշտ է).--Ձեռ. Ապուլ. (Արրտ. 1911, 222)։

*ԱՄԻՐԲԱԲԱ, ար. < արաբ. امیر amīr+թրք. بابا baba «հայր» բառերից. մի անգամ գտնում եմ հիշված՝

— Ամիրբաբա, որդի Ղարամելիքի և եղբայր Աղիջանի, որ գնեց մի հին Ավետարան, 1553 թ.—Ձեռ. Վենետ. Ա. 578։

*ԱՄԻՐԲԱՐ, ար. < արաբ. امیر amīr+պրս. بار bār «պտուղ» բառերից. իբրև անձնանուն գործածված է ԺԶ—ԺԷ դարերում։

— 1. Ամիրպար, ազգական Շնահւոր տիկնոջ, որ Բաստակալայ վանքում գրել տվեց մի Ավետարան, 1576 թ.—Ձեռ. Նոր-Բայազ. 9 ա։

— 2. Ամիրբար, որդի Բարմի, տանուտեր. իր ծախսով հանեց գյուղի վերի աղբյուրը և վերի առուն ջոկեց Սալթաղեցոց առվից։ 2000 դահեկանով գնել է մի Ավետարան, 1590 թ.—Ձեռ. Վասպ. 282։

— 3. Ամիրպար, որդի Վարդանի, որ գնեց մի հին Աւետարան, 1662 թ.—Ձեռ. Վենետ. Ա. 653։

*ԱՄԻՐԲԷԳ, ար. < արաբ. أمير amīr+թրք. بك beg բառերից, որոնց երկուսն էլ պատմանուն։ Գործածվում է ԺԳ դարից ըսկըսած և շարունակվում է ԺԷ—ԺԸ դարերում։ Գրված է նաև Ամիրբակ ձևով՝ 1570 թ. (Ձեռ. Վենետ. Ա. 672)։

—1. Ամիրբեկ, եղբայր տանուտէր (Զ)ատար Մկրտիչի, 1327 թ.—Ձեռ. Ագուլ. (Արրտ. 1911, 461)։

— 2. Ամիրբէկ, թոռ Շահնշահի, որ Գողթան գաւառի Կոպատափ անապատում, Թումայ Արճիշեցուն գրել տվեց Աւետարանը՝ 1336 թ.— Ձեռ. Ագուլ. (Արրտ. 1911, 387)։

— 3. Ամիրպէկ, հայր Մովէս երեցի, որ Կամախի Աւագվանքին նվիրեց մի հին Աւետարան, 1407 թ.—Թորոս Աղբար, Բ. 304։

— 4. Ամիրբէկ, որդի տանուտէր Թաթարբէկի, որ Նարեկ գյուղում գրել տվեց մի Աւետարան, 1420 թ.—Ձեռ. Վասպ. 326։

— 5. Ամիրբէկ, հայր Իգիտ կրոնավորի, որ Նարեկ գյուղում գրեց Աւետարանը՝ Թաթարբէկի համար, 1420 թ.—Ձեռ. Վասպ. 327 և Նոտարք 62։

— 6. Ամիրբէկ Կաֆացի և

— 7. Օլպէյ Ամիրբէք Կաֆացի, երկուսն էլ ազնվական քաղաքացիներ, որոնց ի մէջի այլոց գրեց Կոստանդին կաթուղիկոսը Ֆլորենտիայի կրոնական ժողովի առթիվ (1438).—Պալճեան, Պատմ. կաթող. վարդ. 87։

— 8. Ամիրբէկ, տանուտէր, սանահայր տանուտէր Յովհաննէսի, որ Ոստանում, Կարապետ քահանային գրել տվեց մի Ճաշոց և նվիրեց Նահգենց գյուղի եկեղեցուն, 1439 թ.—Նոտարք, էջ 119։

— 9. Ամիրպէկ Մանդուկանց, ունէր Մոխրաբերդում մի այգի, որ Սիմէոն վարդապետը գնեց ուրիշ կալվածների հետ և նվիրեց Ոշտունեաց Ս. Յակոբայ վանքին՝ 1412—1445 թվերի ընթացքում.—Նոտարք 139։

— 10. Ամիրբէկ, հայր Շահփաշայի, որ Վանում, Վարդան քահանային գրել տվեց մի Աւետարան, 1453 թ.—Ձեռ. Վասպ. 136=Նոտարք 171։

— 11. Ամիրբէկ, աղքատիկ մարդ էր՝ Արճէշ քաղաքի Գայթիս գյուղից, «ոչ ի յաւելորդաց և կամ ի փարթամութենէ, այլ բաղում տվայտութեամբ», Մինաս դպրին գրել տվեց մի Աւետարան, 1456 թ.—Ձեռ. Վասպ. 423=Նոտարք 183։

— 12. Ամիրպեկ, *ազգական Ասլպէկի, որ ստացավ մի Ա-ւետարան՝ գրված Բալուի Նեխրի գյուղում, Մարգարէ քահա-նայի ձեռքով, 1475 թ.— Ձեռ. Վեննետ. Ա. 624։*

— 13. Ամիրբեգ, *հայր Մանուէլ քահանայի, որ Գեղարքունե-նաց Կած գյուղում, Յովհաննէս Արծկեցուն գրել տվեց մի Ճաշոց (ԺԵ դար).— Ձեռ. Սևան. 18։*

— 14. Ամիրբեկ, *թոռն նախորդ Ամիրբէկի և որդի Մանուէլ քահանայի, որ Գեղարքունեաց Կած գյուղում Յովհաննէս Արծկեցուն գրել տվեց մի Ճաշոց (ԺԵ դար).—Ձեռ. Սևան. 18։*

**ԱՄԻՐ-ԳՈՒՐԳԷՆ*, *ար. < արաբ.* امير amīr *«իշխան»+հյ.* Գուր-գէն *անունից։*

— *1.* Ամիրա-Գորգին, *որդի Գագիկ Ա Թագավորի Արծրունե-աց, հաջորդեց իր հորը՝ 973 թ.—ըստ Հաւաք. 33։*

— *2.* Ամիր-Գուրգէն, *որդի Սեփեդինի Ա, իշխան Աղթամա-րի և եղբայր Զաքարիա կաթուղիկոսի Աղթամարի (ԺԴ դար).— Արծր. յաւել. որ և* Ամիր-Գուրգի՝ *Թովմա Արծրունու ձեռագրի հիշատակարանում, հրատ. Պատկ. էջ 76 ծան.—*Ամիր-Գուրգին՝ *անդ, էջ 319, Արծր. յաւել. կամ պարզապես՝* Գուրգին, Գուրգոյ *(երկուսն էլ իբր սեռ.)՝ Արծր. յաւել։*

**ԱՄԻՐԴԱԴ*, *ար. < պրս.* اميرداد amīr-dād *ձևից, որ նշանա-կում է «իշխանատուր, ամիրի տվածը»։ Իբրև անձնանուն գոր-ծածված ունինք ԺԵ—ԺԶ դարերում, երկու անգամ։*

— *1.* Ամիրդատ, *ազգական Լիանոսի, որ ստացավ մի Աւե-տարան, 1491 թ.—Թորոս Աղբար, Ա. 120։*

— *2.* Ամիրդատ *ոմն ունիթոռական, հիշված 1517 թ.—* Manus. brit. mus. *160 ա։*

**ԱՄԻՐԴԱՐ*, *ար. < պրս.* اميردار amīrdār *բառից, որ նշանա-կում է «հրամայող»։ Մի անգամ գտնում եմ գործածված իբրև անձնանուն՝ ԺԳ դարում։*

— Ամիրտար, *որդի Սարգսի և եղբայր Աղութ խաթունի, որ Վարդան երեցին մի Աւետարան գրել տվեց՝ Վարագայ վան-քում, 1260 թ.—Ձեռ. Դաղեան, Բ. 47 ա։*

† *ԱՄԻՐԴՈՂ*, *ար. < հյ.* ամլորդի *բառից է, որ նշանակում է «ամուլ կնոջ որդի». այսածականը իբրև վերադիր տրվեց Յով-հաննէս Մկրտչին, որի մայրը՝ Եղիսաբեթ մինչև այն ամուլ էր։ Ըստ այսմ, Բաղեշում գտնված Ս. Յովհաննու վանքն էլ կոչվեց* Ամիրգոլու վանք։ *Տեղանունը այնուհետև դարձավ անձնանուն, ինչ որ անսովոր երևույթ չէ։ (Սխալվում է Փիրղալէմեանը, որ*

Նոտարք, էջ 111 և 164 ծան. ընդհակառակը Ամիրդոլի վանքի անունը հանում է հաջորդ Ամիրդոլ անձի անունից։ Այս Ամիրդոլը որևէ մեծ արժանիք չունի, որպեսզի նրա անունով կոչվեր վանքը։ Բացի սրանից, Նոտարք, էջ 178, հենց Ամիրդոլի գրած հիշատակարանում արդեն ասվում է թե «գրեցաւ ս. Աւետարանս ի վանքս Բաղիշոյ, որ Ամիրդոլ վերաձայնի»։ Եթե Ամիրդոլ անձնանունը վանքի անունից առաջ լիներ, ուրիշ անձեր էլ նույն անունով պիտի կոչված լինեին անշուշտ։ Սխալվում է նաև Նոտարք, էջ 164, Ամիրդոլի հիշատակարանի գրիչը, որ մի քանի անգամ Ամիրդոլ կամ պարոն Ամիրդոլ գրելուց հետո, մի անգամ էլ ասում է «պարոն Դոլ»։ Սրանից երևում է որ ինքը Ամիրդոլ անունը մեկնում էր ամիր «իշխան» բառից+դոլ, որ իմաստ չունի)։

— Ամիրդօլ, որդի Ամիր-Հասանի, եղբայր Թանգլինի, Արճիշեցի, պարոն. հիշված է 1437 թ. իր եղբոր հիշատակարանում։ 1450 թ. Խլաթում, Յովհաննէս քահանային գրել է տվել մի Ճաշոց և նվիրել եկեղեցուն։ 1455 թվին էլ՝ Բաղէշի Ամիրդոլու վանքում, Պօղոս աբեղային գրել է տվել մի Աւետարան։—Նոտարք, 111—112, 164, 177—178։

*ԱՄԻՐԴՈՎԼԱԹ, ար. < արաբ. امير amīr «իշխան»+دولت dovlat «հարստություն, ինչք, պետություն» բառերից։ Անսովոր անուն է. գտնում եմ գործածված երկու անգամ ԺԵ դարում։

— 1. Ամիրտովլաթ Ամասիացի, նշանավոր բժիշկ. որդի Եղիայի. ծնվել է շուրջ 1415—25 թթ., Ամասիա քաղաքում (Փոքր-Ասիա). ման եկավ շատ տեղեր. մի ժամանակ ապրում էր Մակեդոնիա (Ֆիլիպէ քաղաքում), ապա հաստատվեց Պոլսում, ուր Սուլթան Մէհէմմէդ Ֆաթիհի (1451—1481) պալատական բժիշկն եղավ և այս առթիվ ստացավ «Ճառահպաշի Ռամազան» տիտղոսը։ Հավաքելով բազմատեսակ գրքեր և հարկապես ուսումնասիրելով արաբական բժշկությունը, կազմեց 10 աշխատություն՝ բոլորն էլ ժամանակի աշխարհիկ լեզվով։ Այս գործերն են՝ 1) Օգուտ բժշկութեան, որ գրել է 1466—9 թ. Մակեդոնիայի Փիլիպպոպոլիս քաղաքում (հրատ. Ստ. Մալխասեանց, Երևան 1940)։ Այս գիրքը ունի երկու մաս. առաջինն է Մարդակազմութիւն, երկրորդը՝ Ախտաբանութիւն, ուր հիշում է հիվանդությունները սկսած գլխից և իջնելով հետզհետե ցած՝ մինչև վեներական հիվանդությունները և վերջացնում է մաշկային հիվանդություններով։ Տալիս է այս բոլոր հիվանդությանց նկարագիրը և առաջարկում

նրանք դարմանելու դեղատոմսերը։ 2) Անգիտաց Անպէտ, որ գրել է Պոլսում՝ 1478—1482 թ. «4 տարի դուխ և գիշեր աշխատելով»։ Սա մի բժշկական բառարան է, ուր խոսում է 3754 բժշկական նյութի մասին (բույս, մետաղ, կենդանական նյութ), նկարագրելով ամեն մեկի օգուտը կամ վնասը, գործածության ձևը, տալու չափը ևն։ Բառերը հիշվում են 5 լեզվով (հայերեն, հունարեն, պարսկերեն, թուրքերեն, արաբերեն), որոնց ավելանում է երբեմն նաև լատիներենը։ Այս աշխատությունը հրատարակեց Կ. Բասմաջեան (Վիեննա 1926), ամեն մի բառի մոտ ավելացնելով համապատասխան ֆրանսերենը՝ գիտականօրեն ճշտըված։ 3) Ախրապատին, որ կազմել է Պոլսում, 1481 թ. այս գիրքը, որ դրված է իբրև հավելված Օգուտ բժշկության գրքին, խոսում է դեղագործության մասին և պարունակում է 800-ից ավելի դեղատոմս զանազան հիվանդության համար, ինչպես և դեղաբանական բառարան՝ 5 լեզվով։ 4) Գիրք ռամ(կ)ական, որ է Géomancie, գրել է Ֆիլիպէում, 1474 թ. (այս կախարդական գրքի մասին խոսել է Պասմաճեան, Պոլսի Երկրագունտ հանդեսի մեջ ,1884, էջ 552—553).—5) Ուսումն բժշկութեան, գրել է Պոլսում, 1459 թ. պարունակում է անատոմիա, առողջապահություն, ընդհանուր ախտաբանություն և դեղաբանություն։ Այս գործը «Օգուտ բժշկութեան»-ի նախատիպն է։ 6) Բառք տյրութենական ի վերայ ցաւոցն, կազմել է 1468 թվին, հավանաբար Ֆիլիպէ քաղաքում. դեղերի անունների համառոտ բառարան է, ընդամենը 26 էջ, որի միակ օրինակը գտնվում է Երևանի պետական Ձեռագրատան մեջ։ 7) Ախրապատին, գրել է 1481 թ. հրեա բժիշկ Մուսա-բին-Մայմունի արաբերեն Դեղագիտության հետևողությամբ։ Այս բժիշկը ապրել է 1135—1204 թ. իր Դեղագիտությունը մի շատ նշանավոր գործ է, որից օգտվել են շատ ուրիշներ և շարունակ նրանից կոչումներ են արել։ Այդ Դեղագիտությունը, որ պարունակել է 2600 դեղ, այժմ կորած է։ Ամիրդովլաթը ոչ թե թարգմանել է այդ գործը կամ ստրկօրեն հետևել նրան, այլ ե՛լ ավելի ընդարձակել և բացատրած դեղորայքի թիվը հասցրել է 3700-ի։ 8) Ախրապատին, Նախորդից բոլորովին տարբեր. կազմել է նույնպես 1481 թ. Պոլսում։ Մինչդեռ առաջինը արաբական բժշկության հետևողությամբ էր, երկրորդը հետևում է հին հայ բժշկության. ունի բազմաթիվ վկայություններ հին հայ բժիշկների գործերից, որով և կարող է մեծ ծառայություն մատուցանել հայ բժշկության պատմության համար։ 9) Վասն Ճշտնաց

հիւանդին, զկենաց և զմահուն։ *Այս աշխատության միակ օրինակը գտնվում է Փարիզի Ազգային Մատենադարանում. ոչ ոք ուսումնասիրած չէ և նրա բովանդակությունն էլ մեզ հայտնի չէ։* *10).* Աղիւսակերպ բառարան, *փոքրիկ աշխատություն, որ հաճախ կցված է լինում իր «Օգուտ բժշկության» գրքին։— —Այս բոլոր աշխատությունները կազմել է նա արաբական բժշկական գործերից. նույն իսկ հույն բժիշկների գրվածքներին նա ծանոթ է արաբերեն թարգմանության միջոցով։ Իր աղբյուրներն են՝ 1. Արճիճանիս կամ Արճիանիս (Արխիգենէս, հույն), 2. Արդիասուս (Օրիբազիոս, հույն), 3. Աբուճարեհ (արաբ), 4. Աբու-Սահլ-էլ-Մեսիհի (պարսիկ), 5. Աբուլ-Հասան-Հիբաթ-Ալլահ-իբն-ալ-Տամիդ (արաբ), 6. Բադիրատ կամ Բուկրատ (Հիպոկրատ, հույն), 7. Գեղիանոս կամ Ճալինոս (Գալենոս, հույն), 8. Դեճանիս (Դիոգինէս, հույն), 9. Դիոսկրիտէս (հույն), 10. Զաքարիայի որդին (Աբու-Բէքիր-Մուհամմէդ-Իբն-Զաքարիա-էռ-Ռազի, պարսիկ), 11. Էհաննա (Յուհաննա-բին-Մասուա, ասորի), 12. Իբն-Պայտար (Զիա-էդ-Դին-Աբու-Մուհամմէդ-Աբդալլահ-բին-Ահմէդ-էննաբաթի-էլ-Մալաքի, արաբ), 13. Մասուային որդին (Աբու-Զաթքար-Մուհամմէդ-բին-Մուսա, արաբ), 14. Մասրճուէ (Մասերջուէ-իբն-Ջալջալ, հրեա), 15. Յեսէ, Յիսու (արաբ), 16. Յունան (Աբու-Զայիդ-բին-Սուլէյման-բին-Յաղուբ-էլ-Իրաղի կամ Հոնէյն-բին-Իսակ), 17. Ռուֆոս (Եփեսացի հույն), 18. Սահակ (Իսհակ-բին-Հոնէյն, արաբ), 19. Սապիթ-Կուռան (Սաբիտ-բին-Կորրահ, արաբ), 20. Սինային որդին (Էլ-Հուսէյն-Աբու-Ալի-բին-Աբդալլահ-իբն-Սինա), 21. Փլուս (Պավլոս Եգինացի, հույն), և ուրիշներ։ Ամիրդովլաթը թեև հաճախ իր գործը կոչում է թարգմանություն, բայց իրոք նա չի թարգմանում, այլ խմբագրում է զանազան հեղինակների գործերը և շատ անգամ էլ դնում է իր սեփական փորձերի արդյունքները և տալիս է իր կարծիքները։ Ամիրդովլաթը հիշում է նաև իրանից առաջ եղած հայ բժիշկներին, այն է՝ Մխիթար Հերացին, Ահարոն, Ստեփաննոս, Ծոլին, Սարգիս, Յակոբ, Դեղին, Սիմեոն, Վահրամ, բայց նրանց գործերին նա չի հավանում, և գրեթե ինքն է հիմնում հայ բժշկության նոր դպրոց։ Իր ազդեցությունը հայ բժշկական գրականության վրա շատ մեծ է. իրեն են հետևել, 300 տարի շարունակ, զանազան հայ բժիշկներ՝ անվերջ արտագրելով նրա գործերը՝ համառոտելով կամ ընդարձակելով։ Մեր նորագույն ուսումնականներից Ամիրդովլաթով զբաղվեցին հատկապես՝ դեղա-*

գետ և բանասեր Կ. Բասմաջեան (ունի ընդարձակ հառաջաբան «Անգիտաց անպէտի» իր հրատարակության մեջ, էջ ա—լա), բժիշկ Վ. Թորգոմեան (ունի զանազան հոդվածներ և Ներբողեան Ամիրտովլաթ բժիշկին, Պոլիս 1922), Մալխասեան (ունի ընդարձակ հառաջաբան «Օգուտ բժշկութեան» իր հրատարակության մեջ, էջ ա—լգ)։ Երևանում երկու նշանավոր բժիշկներ՝ պրոֆ. Լևոն Յովհաննիսեան և հայտնի ակնաբույժ Բաբգէն Մելիք-Մուսեան առանձին ուսումնասիրության ենթարկեցին Ամիրդովլաթի գործերը։ Առաջինը կազմեց (ռուսերեն լեզվով) История медицины в Армении, որ հրատարակված է Երևան՝ 1928 թ. և Врач Амиртовлат, как представитель арм. средневековой медицины—Ամիրդովլաթի մասին ամբողջական մենագրություն, որ դեռ անտիպ է։ Երկրորդը՝ ունի 1) Глаз и зрительный нерв по манускриптам врачей Армян XII—XV веков և 2) Глазные болезни и их лечение по трудам Амирдовлата։ Առաջին աշխատության մեջ բժ. Մելիք-Մուսեանը բացատրում է թե հին բժիշկները ինչպես էին ըմբռնել աչքի ներքին կազմությունը և գտնում է, որ արդի գիտությունից 200 տարի առաջ, Ամիրդովլաթը շատ ճիշտ է հասկացել այդ և տալիս է նրա ուրվագծած նկարը։ Երկրորդ աշխատության մեջ բժ. Մելիք-Մուսեանը տալիս է Ամիրդովլաթի քննարկած աչքի հիվանդությանց մանրամասն մեկնաբանությունը, կատարում է նրանց կլինիկա-փորձառական ուսումնասիրությունը և գործնականի է վերածում նրա առաջարկած դեղանյութերը՝ ժամանակակից բժշկության տեսակետով։ Այսպեսով բժ. Մելիք-Մուսեանը գտնում է, որ Ամիրդովլաթի առաջարկած դեղանյութերը կարող են ապագային իրական ծառայություն մատուցանել արդի բժշկության և մարդկության։—Ամիրդովլաթը մեռել է 1496 թ. (ըստ հիշատակարանի ՋԽԵ դեկտ. 8, հինգշաբթի օրը՝ Manus. brit. mus. 318 ա), հավանաբար Բրուսա քաղաքում, ուր գնացել էր թերևս՝ բուժվելու ջերմուկներում։—Ամիրտ. օգ. բժշ. 5, 7—9, 166, 200, 215, 515—516. Ամիրտ. անգ. 2, 24, (322, 394, 555). Մխ. աս. տպ. 1870, էջ ա (ծանոթության մեջ ասվում է թե Ամիրտովլաթ բժիշկը Պոլսում, 1480 թվին, Ամասիացի Ներսէս քահանային արտագրել է տվել, իր որդի Ամիր-Էդիլի գործածության համար՝ Միխայէլ ասորու ժամանակագրությունը, որից և կատարվել է այդ առաջին հրատարակությունը։ Երկրորդ հրատարակության մեջ, տպ. 1871, այս մասին ոչ մի հիշատակու-

թյուն չկա)․ Զամչ. Գ. 508. Տաշեան, Ցուց. 1056 ա. Ցովհաննեսեան, Հետազօտ. Բ. էջ 339—375, Ազգապ. 2188, Միրաքեան, Խորհ. Հայաստ. 1937, փետր. 18, Լ. Հովհաննիսյան, Բժիշկ Ամիրդովլաթ Ամասիացի (Արմֆանի Տեղեկ. 1941, № 3—4, 117—126)։

— 2. Ամիրդովլաթ, հայր Մեսրոպ Երզնկացու, որ Երզնկայի Կայծոսի վանքում օրինակեց մի Աւետարան , 1473 թ.—Թորոս Աղբար, Բ. 328։

*ԱՄԻՐ-ԵԶԴԻՆ, ար.<արաբ. امیر amīr «իշխան»+պրս. Եզդին բառից, որի ծագումը տես Ազդին։ Այստեղ ամիր բառը միացել է հաջորդին և մի բառ է ձևացրել։ Այս անունը շատ անգամ է հիշատակված ձեռագրերում, բայց միշտ անթվական. այսպես՝ Ջեռ. Վեննետ. Բ. 269—270՝ Ամիր Եզդին, որոշյալ՝ Ամիր Եզդինն, սեռ. Ամիր Եզդինին ձևերով, Bodleian 148 Ամիր Եզդի ձևով, և Անկ. գիրք նոր կտ. էջ ժ՝ Ամիրեզտի ձևով։

*ԱՄԻՐ-ԵՍԱՅԻ, ար.<արաբ. امیر amīr+Եսայի՝ իբր մի բառ առնված։

— Ամիր-Եսայի, խոջա, իբր վկա հիշվում է այն պայմանագրում, որ Պօղոս վարդապետը կնքել է Ամրդոլու վանքի հետ՝ 1461 թ.—Նոտարք 199։

† ԱՄԻՐ-ԵՐԿԱԹ, ար.<արաբ. امیر amīr «իշխան»+հյ. երկաթ բառերից։ Մի անգամ ունինք ԺԳ դարից՝

— Ամիր-Երկաթ, հայր Բարսեղ եպիսկոպոսի, որ առաջնորդ էր Հոռոմոսի վանից, 1229.—Շիրակ 23—24։

*ԱՄԻՐԶԱԴԷ. ար.<պրս. امیرزاده amīr-zāde ձևից, որ նշանակում է բուն «իշխանածին»։ Այնուհետև շատ է կրճատվել բառը և դարձել վերջապես պրս. میرزا mīrzā, որ անձնանունից հետո դրվելով նշանակում է «արքայորդի» (օր. Աբբաս միրզա՝ Ֆաթալի շահի որդին), իսկ անձնանունից առաջ դրված՝ հասարակ պատվանուն է (օր. Միրզա Աբբաս)։ Մեր մեջ այս անունը դառնում է նախ Ամիրզադէ, ապա կրճատ Ամիրզադ և վերջապես ավելի կրճատ՝ Ամիրզա։ Ունինք դարձյալ Էմիրզէ և Միրզա, որոնք տես առանձին։ Ամիրզաս անունը գործածված է ԺԶ դարում և ավելի շատ ԺԷ դարում, որ չեմ հիշատակում։ Ամիրզասայ անունը կենդանի էր դեռ ԺԹ դարում (տես Սմբատեանց, Գեղարքունի 86)։ Սրանից է Ամիրզադեան ազգանունը (Կովկաս)։

— 1. Ամիրզայ (կամ Յոհանէս), որդի Աւետիսի, հյուսն, որ Ցաղէթի Ս. Յակոբի վանքում ստացավ մի Ճաշոց, 1421 թ.—Ջեռ. Թաւր. 112—113։

— 2. Ամիրզա *(կամ Ամիրզէկ), Սպարկերտի Կեղեսու գյուղից, որդի Առոմի. հասարակ դարբին էր. 18 տարեկան հասակում հավատքի համար նահատակվեց Թուրքերի ձեռքով, 1432 թ. իր նահատակության պատմությունը գրեց Առաքել Բաղիշեցին, որից արտագրեց Առոմ գրիչը՝ Նույնը համառոտել է Նոտարք 98, բայց սուլթանական գրաքննությունից վախեցած այնչափ է կըրճատել, որ ոչինչ չի մնում։*

— 3. Ամիրզադէ, *Թոռ Կարապետ քահանայի, որ Ամկու գավառում, Մարկոս աբեղայի՛ն գրել տվեց մի Մաշտոց, 1562 թ. —Ձեռ. Հալէպի, Ա. 157 ա։*

— 4. Ամիրզադ, *Մոկաց Սեպ գյուղից. հիշված 1594 թ.— Ձեռ. Վասպ. 737։*

— 5. Ամիրզադ, *եղբայր Յովհաննէս քահանայի, որ Սորււայ վանքում, Սիոն քահանայի՛ն գրել տվեց մի Աւետարան, 1597 թ.—Ձեռ. Վասպ. 753։*

*ԱՄԻՐ-ԷԴԻԼ, *ար. < արաբ.* امير amīr *«իշխան»*+عادل ‘ādil *«արդար» բառերից։ Անսովոր անուն է. մի անգամ միայն ունինք՝*

— Ամիր-էդիլ, *որդի Ամիրզոլլաթ բժշկի. գտնվում էր Պոլսում և նրա համար Ներսէս քահանան օրինակել է Միխայէլ ասորու Պատմությունը, 1480 թ.—Միխ. աս. (Ա. տպ.) էջ ա, Յովհաննեան, Հետազօտ. Բ. 364։*

*ԱՄԻՐ-ԹՈՒՂԱ, *ար. < արաբ.* امير amīr *«իշխան»*+طغا ṭuġa *«ձայն» (Կամուս, Գ. 893) բառից և կամ գուցե* طغيان ṭuġyān *«հորդում, զեղում, ապստամբություն»։ Երկու անգամ հիշված է անթվական մի հիշատակարանում, որ գրված է 1336 թվից հետո.—Ձեռ. Վասպ. 186։*

† ԱՄԻՐԼՈՅՍ, *ար. կազմված է արաբ.* امير amīr *«իշխան» +հյ.* լոյս *բառերի բարդությամբ, իբր համապատասխան հյ.* Պայծառլույս *և* Լույսպայծառ *անուններին։ Կա միայն երկու վկայությամբ.*

— 1. Ամիրլույս, *ազգական Կարապետ կրոնավորի, որ Սըղկայու վանքում օրինակել տվեց Հին Կտակարանը, 1381 թ.— Ձեռ. Ազուլ. (Արրտ. 1911, 850)։*

— 2. Ամիրլուս *հիշված է դարձյալ 1311 թվից հետո գըրված անթվական մի հիշատակարանում՝ Ձեռ. Թաւր. 73 ա։*

*ԱՄԻՐԽԱԼԻԼ, *ար. < արաբ.* امير amīr *«իշխան»+* خليل xalīl *«բարեկամ» բառից, որ Աբրահամ նահապետի տիտղոսն է։*

— Ամիրխալիլ, պարոն Աղուանից երկրի (Ղարաբաղ), 1438 թ. իր որդին է Վահրամ.—Ձեռ. Դաղեան, Բ. 44 ա։

*ԱՄԻՐԽԱՆ, ար. < արաբ. امیر amīr + պրս. خان xān, որոնք երկուսն էլ պաշտոնանուն են։ Նման կազմությունը տես Աղամելիք։ Գործածվել է սկսած ԺԴ դարից, չորս վկայություն ունենք ԺԶ դարից, իսկ ԺԷ դարից բավական շատ, որ չեմ հիշում. և այժմ էլ գործածական է. սրանից է Ամիրխանեան ազգանունը։

— 1. Ամիրխան, հայր Վան քաղաքի ռէս Կարապետի, որ ազատեց գերի ընկած մի Աւետարան և վերադարձրեց Աղթամարի Ս. Խաչ եկեղեցուն, 1308 թ.—Ձեռ. Վասպ. 152։

— 2. Ամիրխան Վանեցի, նախորդի թոռը և նույն ռէս Կարապետի որդին. հիշված է 1308 թ.—Ձեռ. Վասպ. 152։

— 3. Ամիրխան ոմն, հիշված 1517 թ.—Manus. brit. mus. 160 ա։

— 4. Ամիրխան, հայր Մկրտիչ քահանայի, որ Վանում գրեց մի Տօնացոյց, 1580 թ.—Ձեռ. Վասպ. 31։

— 5. Ամիրխան ոմն Վանեցի, որին «բերդ են գցել», 1585 թ.—Ձեռ. Թաւր. 74 բ։

— 6. Ամիրխան, որդի Խանիկ բարեբար տիկնոջ, որին հիշում է Առաքել սարկավագ Գեղամեցին, որ Կարնոյ Թուանճ գյուղում գրեց մի Մաշտոց, 1589 թ.—Ձեռ. Հալէպի, Ա. 167։

*ԱՄԻՐԽԱՍ, ար. < արաբ. امیر amīr «իշխան» + خاص xāṣṣ «ականավոր անձ, ընտիր»։ Գտնում եմ գործածված երկու անգամ և երկուսն էլ անթվական հիշատակարանում. առաջինը՝ Ձեռ. Նոր-Բայազ. 51 ա (գրված 1418—1651 թվերի միջև), երկրորդը՝ Ձեռ. Վասպ. 136 (գրված 1430 թվից հետո)։

*ԱՄԻՐԽԷՐ, ար. < արաբ. امیر amīr «իշխան» + خیر xayr «բարիք» բառերից. վերջինից կազմված անուններ են خيرالله Xayrullah և خيرالدين Xayr-ad-dīn, որոնք սովորական անուններ են մահմեդականների մեջ։ Մեր մեջ Ամիրխեր գործածված է մի անգամ ԺԵ դարում, մի անգամ ԺԶ դարում և երեք անգամ անթվական հիշատակարաններում։ Այսպես՝ Ամիրխեր ոսկերիչ ոմն՝ հիշված ԺԶ դարում (Bodleian 4), Ամիրխեր կամ Ամըրխեր՝ անթվական (Manus. brit. mus. 55 ա և 56 բ), Ամիրխեր որդի Շէրի և եղբայր տանուտէր Ամիրբէկի՝ անթվական (Թորոս Աղբար, Բ. 346), Ամիրխեր որդի ոսկերիչ Կարապետի՝ անթվական (անդ, էջ 361)։

— Ամիրխերի Դերջանցի, որի երկու աղջիկներին գերի

տարին Ջհանշահի հեծյալները. Երզնկայի կրոնավորները վկայական տվին նրան ողորմություն հավաքելու և փրկանք տալով ազատելու աղջիկներին (1460-ական թվերին).—Ալիշան, Հայվենետ. 194, Այրարատ 327։

*ԱՄԻՐ-ՀԱՍԱՆ, ար. < արաբ. امیر amīr «իշխան»+حسن ḥasan «Հասան». սկզբում ամիր տիտղոս էր, ապա կցվեց անվան և մի բառ ձևացավ։ Գործածված է ԺԳ—ԺԴ դարերում, ապա խափանված է։

— 1. Ամիր-Հասան, թոռն Հասանի և որդի Գրիգորի, որ մի գյուղ նվիրեց Հոռոմոսի վանքին, 1201 թ.—Շիրակ 23 ա։

— 2. Ամիր-Հասան Ա. տես Հասան։

— 3. Ամիր-Հասան Բ. որդի Ճաչքի, թոռն Ամիր-Հասանի (№ 2) և թոռնորդի Պռոշի՝ իշխանի Խաչենոյ. եղբայր Ջումիի (ԺԴ դար). հիշված է 1318 թվին իբր իշխան Վայոց ձորի (Տաշեան, Ժողով. առ. Վարդանայ 119 և Ձեռ. Վենետ. Բ. 858), 1321 թվին իբրև իշխան Սիւնեաց (Manus. brit. mus. 22 բ), 1334 թվին իբր իշխան Վայոց ձորի (Ձեռ. Դաշեան, Բ. 30 բ)։ Ծագուգրությունը տես Այրարատ 269։—Սիսական 138, Յովսէփեան, Խաղբակեանք 189, 199, 202—3, 206, 208, 213—4 (իշխած է գնում 1318—1351?)։

— 4. Ամիր-Հասան, Անիի գդակ կարողների շուկայի իր մի խանութը վաճառել էր Տապադինին, որ և նվիրեց Անիի Առաքելոց եկեղեցուն, 1348 թ.—Շիրակ 63։

— 5. Ամիր-Հասան, որդի Սուլէմանշահի, Արճիշեցի. Ամիր-Հասանի որդիքն են Թաճդին, Ամիրդոլ, Աբդուլքարիմ, Կարապետ, Մկրտիչ, աղջիկներն են՝ Շիրին խաթուն, Տատի, Ամիրմելիք, որոնց մասին տես առանձին. հիշված է 1437, 1450 և 1455 թվերին.—Նոտարք 111, 112, 164, 178։

— 6. Ամիր-Հասան, որդի Ջալալի՝ մեծ իշխանի Խաչենի. Ջալալի մյուս որդիքն են Յովհաննէս (կաթուղիկոս Գանձասարի), Աթաբէկ և Աղբաստ. հիշվում է իբրև վկա սահմանի արձանագրության մեջ, 1457 թ.—Նոտարք 188։

*ԱՄԻՐՂՈՉ, ար. < արաբ. امیر amīr «իշխան»+թրք. قوچ qoč «խոյ» (նշան առնականության). գործածված է մի անգամ ԺԶ դարում։

— Ամիրղոչ, ազգական Մարտիրոս քահանայի, որ ստացավ մի հին Աւետարան, 1579 թ.—Ձեռ. Վենետ. Ա. 390։

*ԱՄԻՐՄԵԼԷՔ, իգ. < արաբ. امیر amīr «իշխան»+ملك melek

«Հրեշտակ» բառերից, իբր «Հրեշտակների իշխանը»։ Այնուհետև վերջին բառը շփոթվել է մելիք-ի հետ և դարձել է Ամիրմելիք, ինչպես որ մի անգամ էլ Ամիրմելիք (ար.) ձևը շփոթվելով՝ դարձել է Ամիրմելէք (եբ.), այսպես անթվական մի հիշատակարանում (Ձեռ. Սեբ.=ՀԱ 1926, 335) գրված է խօջայ Ամիրմելէք, որ պետք է կարդալ «խոջա Ամիրմելիք»։

— Ամիրմելիք (կարդա Ամիրմելէք), դուստր Ամիր-Հասանի (№ 5), որ տես վերը, 1455 թ.—Նոտարք 178։

*ԱՄԻՐՄԵԼԻՔ, ար. Հարաբ. امير amīr և ملك melīk «իշխան» հոմանիշներից կազմված. զույգ պատվանուններից կազմված անուններ մասին տես Աղամելիք. գործածված է ԺԵ—ԺԶ դարերում։

— 1. Ամիրմելիք, որդի պարոն Սիմէոնի և եղբայր Էլմէլիքի, հիշված Արծկէում, 1428 թ.—Տաշեան, Ցուց. 583 բ։

— 2. Ամիրմելիք, որդի Միրզայի, եղբայր Մելէք խաթունի՝ կնոջ տանուտեր բրուտ Ստեփաննոսի, որ Վանում, Կարապետ քահանային գրել տվեց մի Ավետարան, 1435 թ.—Ձեռ. Վասպ. էջ 369։

— 3. Ամիրմելիք, ուսուցիչ Յովհաննէս քահանայի, որ գրեց Մեռելյարոյց Ավետարանը Արճէշում, 1445 թ.—Նոտարք 147։

— 4. Ամիրմելիք, որդի ուէս Կիրակոսի՝ եղբոր ուէս Յովասափի, Անգղ գյուղացի, որ փրկանքով ազատեց գերի ընկած մի Ավետարան, 1596 թ.—Ձեռ. Վասպ. 243—4։

*ԱՄԻՐՄՈՒԼՔ, ար. Հարաբ. امير amīr «իշխան»+ملك mulk «հարստություն, ինչք, պետություն» բառերից։ Իբրև անձնանուն գործածված է մեր մեջ ԺԴ—ԺԵ դարերում։ Այնուհետև խափանվել է։

— 1. Ամիրմուլք, որդի Մուրատի, որ Աղթամարում, Գրիգոր գրչին գրել տվեց մի Ավետարան, 1355 թ.—Ձեռ. Վասպ. էջ 203։

— 2. Ամիրմուլք, պարոն, հայթայթեց թուղթ Յովհաննէս վարդապետին, արտագրելու համար Կիւրղի Պարապմանց գիրքը, 1394 թ.—Bodleian 161։

— 3. Ամիրմուլք, խոջա և մահդասի, հայր խոջա Աստուածատուրի, որ ազատեց Նարեկը Թուրքմանի գերությունից և նվիրեց Վարագի վանքին, 1425 թ.—Ձեռ. Դաղեան, Ա. 55 ա։

— 4. Ամիրմուլք, հայր ոսկերիչ Յովհաննէսի, որի մահվան հիշատակին՝ իր կինը Թուրվանդա գրել տվեց Աղթամարում,

Գրիգոր քահանային, մի Աւետարան, 1449 թ.—Ձեռ. Վասպ. էջ 404։

*ԱՄԻՐՄՈՒՍԷ, ար. < արաբ. امير amīr «իշխան»+موسى Mūsa «Մովսէս». մի անգամ գտնում եմ հիշված՝

— Ամիրմուսէ նաղաշ, տաղասաց ԺԵ դարու.— Ցուցիկք, Բ. էջ 125։

*ԱՄԻՐՅԵՍԷ, ար. < արաբ. امير amīr «իշխան»+عيسى ʿIsa «Յիսուս». մի անգամ գտնում եմ՝

— Ամիրեսէ, հիշված ԺԶ դարում.—Ձեռ. Դաշեան, Ա. 12 բ (երկիցս)։

*ԱՄԻՐՆԵՐՍԵՀ, ար. < արաբ. امير amīr «իշխան»+հյ. Ներսեհ անունից. սխալ ձև. ուղիղն է Ասրներսեհ, որ տես վարը։

*ԱՄԻՐՇԱՀ, ար. < արաբ. امير amīr «իշխան»+պրս. شاه šāh «թագավոր». սրա հակադիրն է Շահամիր։ Այլազգի ամիրաներից հայտնի է Ամիրշահ եղբայր Փադլուն Գ-ի. կոչվում է նաև Ամիր-Մահմուդ. իշխում էր Անիում 1132 թ. և երկրորդ անգամ՝ 1156 թ. (Շիրակ 98)։ Այս անունը մեր մեջ գործածված է ԺԴ—ԺԷ դարերում. սրանից է Ամիրշահեան ազգանունը (Կովկաս)։

— 1. Ամիրշահ, նվիրել է Թանատի վանքի ավանդատան շինության ծախսը՝ 1278 թ.—Սիսական 120, Յովսէփեան Խաղբակեանք 119։

—2. Ամիրշահ, հայր Ալեքս միակեցի, որ Խոզկերտի եկեղեցու համար, Սիմէոն գրչին գրել տվեց մի Ճաշոց, 1335 թ.—Սիսուան 119։

— 3. Ամիրշահ, քեռի Քրիստոսատուր կրոնավորի, որ Սուրխաթ քաղաքում (Ղրիմ), Ստեփաննոս քահանային գրել տվեց մի Աստուածաշունչ, 1352 թ.—Ձեռ. Վասպ. 7։

— 4. Ամիրշահ, հայր Իսրայէլ գրչի, որ Մոկաց Փառավանք գյուղում, տանուտեր Թովմայի համար դրեց մի Աւետարան, 1447 թ.—Ձեռ. Վասպ, 400=Նոտարք 156։

— 5. Ամիրշահ, հայր Ղազար գրչի, որ Լիմ կղզում, մահտեսի Ստեփաննոս Ղարիպշահի համար օրինակեց մի Յայսմաւուրք, 1457 թ.—Ձեռ. Թաւր. 103 ա։

— 6. Ամիրշահ սարկավագ, հիշված է 1622 թ.—Ձեռ. Կարին. 182։

— 7. Ամիրշահ, որդի Սահակի և եղբայր Տէր Աստուածատուրի, որ Հալէպում գրել տվեց մի Յայսմաւուրք, 1650 թ.—Ձեռ. Հալէպի, Ա. 327 ա։

*ԱՄԻՐՇՈՒՄ*, *ար. ծագումն անհայտ. (բայց հմմտ. Սմբատ Բագմայաղթի պարսկական տիտղոսը՝ Շում կամ Շնում). ծանոթ է միայն՝*

— Ամիրշում, *խոջա ոմն, որ Պոլսում օրինակել տվեց մի Տոմար և Տաղարան, 1647 թ.—Ձեռ. Նոր-Բայազ. 49 բ։*

Ամիրոց *տես* Ամիրայ։

**ԱՄԻՐ-ՈՒՄԷՏ*, *ար. < արաբ.* امیر amīr *«իշխան»+պրս.* امید umīd *«հույս» բառից, որ փոխառությամբ հայ բարբառներում դարձել է* ումետ։ *Գործածված է իբրև անձնանուն՝ մի անգամ ԺԵ դարում։*

— Ամիր-Ումետ, *որդի խոջա մահդասի Ամիրմուլքի և եղբայր խոջա Աստուածատուրի, որ ազատեց Նարեկը Թուրքմանի գերությունից և նվիրեց Վարագի վանքին, 1425 թ.—Ձեռ. Դադեան, Ա. 55 ա։*

**ԱՄԻՐՋԱՆ*, *ար. < արաբ.* امیر amīr *«իշխան» բառից՝ պրս.* جان jān *«հոգյակ» փաղաքշականով. հմմտ. Միրիջան, Աղաջան, Նուրիջան, Յակոբջան են։ Հնագույն գործածությունը սկսվում է ԺԵ դարից, երբ ունինք երկու վկայություն (տես տակը)։ Հաջորդ ԺԶ դարից հիշատակված ունինք 1549 թ. (Ձեռ. Վատպ. 652), 1573 թ. (անդ 678), 1575 թ. (*Rapport Belgique *24), 1575 թ. (Ձեռ. Վատպ. 688), 1579 թ. (անդ 575), 1585 թ. (անդ 699), 1590 թ. (անդ 714 և 716)։ Չեմ հիշում ԺԷ դարի վկայությունները։ Սրանից է* Ամիրջանեան *ազգանունը։*

— *1.* Ամիրջան, *մեծ հայր Սահփաննոսի, որ Տրապիզոնում, Յակոբ կրոնավորին գրել տվեց մի Յայսմաւուրք, 1437 թ.—* Труды вост. комм. ИМАО, *հտ.* II, *3, էջ 55։*

— *2.* Ամիրջան, *որդի տանուտեր խոջա Բարխմշահի, որ Վանում, Աղարխա երեցին գրել տվեց մի Աւետարան, 1484 թ.—Ձեռ. Վատպ. 496։*

**ԱՄԻՐ-ՋԻՀԱՆ*, *ար. < արաբ.* امیر amīr *«իշխան»+պրս.* جهان jihān *«աշխարհ, տիեզերք» բառերից կազմված և նշանակում է «իշխան աշխարհի»։ Իբրև անձնանուն ունինք գործածված մեր մեջ ԺԵ—ԺԷ դարերում. ապա խափանված։*

— *1.* Ամիրջիհան, *որդի Աստուածատուրի, եղբորորդի Յակոբ արեղայի Հերմոնի վանից, 1421 թ.—Ձեռ. Պետերբ. (ՀԱ 1892, 82 բ)։*

— *2.* Ամիրջիհան, *հայր Ամիրմէլիքի, որ կազմարար Յակոբ աբեղային նորոգել տվեց մի հին Մաշտոց, 1576 թ.—Ձեռ. Սեբ. (ՀԱ 1926, 339)։*

— 3. Ամիրջիհան, *սարկավագ ոմն, հիշված 1601 թ.—Աթան. յուշ. ժէ։*

**ԱՄԻՐ-ՍԱՐԳԻՍ, ար. < արաբ.* امير amīr *«իշխան»*+Սարգիս *բառերից. իբրև անձնանուն գործածվել է մեր մեջ ԺԲ—ԺԵ դարերում։*

— 1. Ամիր-Սարգիս, *մորեղբայր Իւանէ և Զաքարէ սպասալարների, հայր Խաւռաս իշխանաց իշխանի (ԺԲ դար).—Յովսէփեան, Նիւթեր և ուս. Ա. 16, Խաղբակեանք, Ա. 14։*

— 2. Ամիր-Սարգիս, *որդի Աւետիս քահանայի, որ Հռոմում, Թորոս գրչին գրել տվեց մի Աւետարան և նվիրեց նրան, 1242 թ.—Թորոս Աղբար, Բ. 441։*

— 3. Ամիր-Սարգիս, *նորածին տղայն Խութլուի, որ միաբանել է մի Աւետարանի՝ 1324 թ.—Ձեռ. Թաւր. 73 բ (նորածին տղայի* ամիր *կոչվելը՝ ցույց է տալիս, որ ամիրը այլ ևս տիտղոս չէր, այլ միացած էր անունին)։*

—4. Ամիր-Սարգիս *Արճիշեցի, սովի պատճառով Բաջբերունեաց գավառից գաղթեց Վայոց ձոր, ուր ամուսնացավ Փարպեցի մի աղջկա հետ. իր որդիներից է նշանավոր Գրիգոր Տաթևացին, որ ծնվել է «1346 թ».—Ցայսմ. ապր. 27=Նոտարք 36։*

— 5. Ամիր-Սարգիս, *որդի Մուրատի, որ Աղթամարում, Գրիգոր գրչին գրել տվեց մի Աւետարան, 1355 թ.—Ձեռ. Վասպ. էջ 203։*

— 6. Ամիր-Սարգիս, *ազգական Կարապետ կրոնավորի, որ Սղկայու վանքում օրինակել տվեց Հին Կտակարանը, 1381 թ.—Ձեռ. Ագուլ. (Արար. 1911, 850)։*

— 7. Ամիր-Սարգիս *(կամ Սարգիս), որդի Աւետիսի և եղբայր հիւսն Յովհաննէսի, որ ստացավ մի Ճաշոց, Ցաղէթի Ս. Յակոբի վանքում, 1421 թ.—Ձեռ. Թաւր. 111, 113։*

— 8. Ամիր-Սարգիս, *հայր Էվատշահի, որ Ոստանում, Կարապետ գրչին գրել տվեց մի Աւետարան, 1428 թ.—Ձեռ. Վասպ. էջ 355։*

— 9. Ամիր-Սարգիս, *որդի Խդրշահի, որ Կեսարիայում, Յովհաննէս Երզնկացուն գրել տվեց մի Աւետարան, 1476 թ.—* Rapport Belgique *34։*

**ԱՄԻՐՍԷԹ, ար. < արաբ.* امير amīr *«իշխան»*+Սէթ *անունից. հիշատակված է երկու անգամ ԺԷ դարում։*

— 1. Ամիրսէթ, *հիշված է 1605 թ.—Ձեռ. Ագուլ. (Արար. 1911, 316)։*

— 2. Ամիրսաթ, *հիշված է 1629 թ. Նոր-Ջուղայում (տես Կնիք հաւ. յուշ.* IV*)։*

*ԱՄԻՐ-ՍՄԲԱՏ, *ար. < արաբ.* أمير amir+*Սմբատ անունից. մի անգամ գտնում եմ գործածված՝ ԺԴ դարում.*

—Ամիր-Սմբատ, *որդի Ջաջուռի. հոր հետ միասին մի Ավետարան նվիրեցին Հոռոմոսի ուխտին՝ 1347 թ.—Ցովսէփեան, Մի էջ հայ արվեստի, 37, 39։*

*ԱՄԻՐՍՈՒԼԹԱՆ, *ար. < արաբ.* أمير amir+ سلطان sultān *բառերից, որոնք երկուսն էլ պատվանուն են։ Իբրև անձնանուն գործածված եմ գտնում ԺԵ դարում։*

— 1. Ամիրսուլթան, *եղբորորդի Խոնդքար տիկնոջ, որ Խորանկայ վանքում գրել տվեց Ավետարանը, 1490 թ.—Ձեռ. Նոր-Բայազ. 23 ա։*

— 2. Ամիրսուլթան, *հիշված է 1490 թվից հետո գրված անթվական մի հիշատակարանում.—Ձեռ. Նոր-Բայազ. 23 ա։*

+ ԱՄԻՐՍՕՍ, *ար. < արաբ.* أمير amir *«իշխան»*+սօս *բառերից։ Մի անգամ գտնում եմ գործածված ԺԵ դարում։*

— Ամիրսօս, *որի որդին է Ամիլ բէկ և թոռը Ամիր. այս Ամիրը՝ որ Լուսաւորչի աջը գողացող Վրթանէս եպիսկոպոսի եղբորորդին է, մեռել է 1501 թվին. իր գերեզմանը գտնվում է Ածոփայ եկեղեցու բակում.—Ցովսէփեան, Խաղբակեանք 248։*

ԱՄԻՐՎԱԶ, *ար. ծագումն անհայտ. մի անգամ գտնում եմ գործածված անթվական մի արձանագրության մեջ, ԺԵ դարից.—Ձեռ. Վասպ. 570։*

*ԱՄԻՐ-ՎԱՀԱԲ, *ար. < արաբ.* أمير amir *«իշխան»*+ وهب Vahab *անունից, որ նշանակում է «պարգև»։ Մի անգամ ունինք՝*

— Ամիր-Վահապ, *որ զանազան կալվածներ է նվիրել Կնեվանքին, Գանձակի Արլաճ գյուղում գտնված մի Ավետարանի հիշատակարանի համաձայն. Թվականն է ՌՃՂ=841, որ սխալ ընթերցման արդյունք համարելով իրավամբ՝ Սիսականը, էջ 145 ուղղում է ԹՃՂ=1541։*

*ԱՄԻՐ-ՎԱՍԱԿ, *ար. < արաբ.* أمير amir *«իշխան»*+Վասակ *բառերից. գործածված է մի անգամ ԺԵ դարում։*

— Ամիր-Վասակ, *եղբորորդի Ջումայի, Պռօշեան ցեղից. հիշված 1476 թ. Ցովսէփեան, Խաղբակեանք 232, 236, 238։*

+ ԱՄԻՐ-ՎԱՐԴ, *ար. < արաբ.* أمير amir *«իշխան»*+Վարդ *բառերից։ Անսովոր անուն. գործածված եմ գտնում երկու անգամ ԺԶ դարում։*

—1. Ամիր-Վարդ, *որդի Մկրտիչի և եղբայր Մարգարէ*

երեցի, որ Տանձիկավանքում օրինակեց Ջեռնադրութեան Մաշտոցը, 1593 թ.—Ձեռ. Սեբ. (ՀԱ 1926, 341)։

— 2. Ամիր-Վարդ, հիշված է անթվական մի հիշատակարանում.—Ձեռ. Վենետ. Բ. 682։

*ԱՄԻՐՎԵԼԻ, ար. < արաբ. amīr «իշխան»+Վելի բառից, որի ծագումը տես Աղավալ անվան տակ. հմմտ. Նաև Փիրվելի, Միրվելի, Միրզավելի։ Հիշված է 1490-ից հետո գրված մի հիշատակարանում (Ձեռ. Սևան. 5 ա)։

*ԱՄԻՐ-ՓԻՐԻ, ար. < արաբ. أمير amīr+պրս. پير pīr «ծերունի» բառից. մի անգամ գործածված է Վաղաղնի կամ Որոտան Ս. Կարապետ վանքի մի արձանագրության մեջ, իբր Սիւնեաց Սմբատ Ա. Թագավորի անունը? (Սիսական 525)։

ԱՄԻՐ-ՓՈԼԻՆ, ար. < արաբ. أمير amīr «իշխան»+Փոլին, որի ծագումը անհայտ է։ Շատ անսովոր անուն. մի անգամ միայն գտնում եմ գործածված ԺԴ դարում։

— Ամիր-Փոլին (կամ պարզապես Ամիր), Թաւրիզեցի, երէց Կոստանդին Երզնկացու բարեկամն էր. արտագրեց Կոստանդինի տաղերը՝ 1336 թ. Կոստանդինը ունի մի տաղ՝ նվիրված նրա անվան. Կոստ. Երզն. էջ 153։

Ամիր-Զահման տես Բահման։

*ԱՄԼԻԿ, ար. < Թրք. املك ämlik «փոքրիկ գառնուկ», որից էլ Ղրբ. ամլիկ «նորածին գառնուկ»։ Իբրև անձնանուն ունինք հիշված մի անգամ՝

—Ամլիկ (սեռ. Ամլկան ձևով), Եղեգիս ավանի մի խաչքարի արձանագրության մեջ, որի թվականն անհայտ է. բայց կողքերքի խաչքարերը Ձ-ական թվերից են. այն է ԺԳ դար։—Սիսական, էջ 150։

*ԱՄՈՆ (կամ Ամոն), ար. < եբր אמון āmon անունից, որ նշանակում է «վարպետ» կամ ըստ այլոց «բազմություն» (Gesenius 47 բ)։ Այս անունով հայտնի է Հրեից մեջ Ամոն թագավոր Յուդայի, հաջորդեց իր հոր Մանասէի՝ 642 թ. ամբարիշտ կյանք ունեցավ և երկու տարի հետո սպանվեց իր ծառաների ձեռքով՝ 640 թ. Ն. Ք. (Դ Թագ. իա. 18—26)։ Հույն թարգմանության մեջ տառադարձված է 'Αμώς, որ սխալ է։ Ունինք դարձյալ Ամոն անունով նահատակներ՝ Յայսմաւուրքում և Հարանց վարքում։ Մեր մեջ նշանավոր է եղած Ամոն Աղեքսանդրացի, հիմնադիր նոր-պղատոնական փիլիսոփայական դպրոցի (Գ. դար)։ Ունի Կանոնք, որ հաճախ գտնում ենք Աւետարանի սկիզբը՝

Բայց այս Ամոնը տարբեր է առաջինից և տառադարձված է հուն. ʼΑμμώνιος (լտ. Ammonius) անունից, որ եգիպտական ծագում ունի. հմմտ. Ἄμμων (Զևսի եգիպտական անունը, որից էլ Լիբիայի երկիրը)։ Մեր մեջ այս անունը շատ անսովոր է. գտնում եմ միայն մի անգամ՝

— Ամոն (գրված է Ամուն, ինչպես գտնում ենք նաև ձեռագիրներում՝ ըստ Տաշեան, Ցուց. 1056 գ), որդի Թորոսի, որ Բոնաշէնում գրել տվեց մի Աւետարան, 1478 թ.—Ձեռ. Վասպ. էջ 486։

*ԱՄՈՎՍ, ար. < եբր. עמוס ʻāmos անունից (տառադարձված հուն. ʼΑμώς, լտ. Amos). ըստ Բառ. Ս. Գրոց, էջ 29, նշանակում է բուն «ծանր» (եբր עמס ʻms «քաշել, բեռնավորել» արմատից՝ Gesenius 601 ա)։ Այս անունով նշանավոր է փոքր մարգարէներից երրորդը (Ն. Ք. իբր 787)։ Մեր մեջ այս անունը շատ անսովոր է. ունինք միայն՝

— Ամովս եպիսկոպոս Բզնունեաց, մին այն հոգևորականներից, որոնք ուղեկից եղան Մեծն Ներսէսին՝ Կեսարիա օծվելու գնացած ժամանակ «353 թ».—Մեսր. եր. 26։

† ԱՄՊԱԿ, ար. համարվում է Խորենացու հնարած անուններից մեկը. կազմված հյ. ամպ բառից. գրվում է նաև Ամբակ։ Ծանոթ է միայն Հայկազանց շրջանից և այլևս երբեք չէ գործածված։

— 1. Ամպակ Ա, նահապետ Հայկազանց, հաջորդեց Հայկակ Ա-ի. իրեն հաջորդ ունենալով Առնակին.—Խոր. Ա. ժթ.—Ամբակ՝ Կղկնտ. Ա. ժե. Մագ. Թղ. ժթ. Մխ. այրիվ. 18, 50. Սամ. անեց. 45. Մխ. անեց. գ. Մխն. համդ. 9.—Համբակ՝ Վրդ. է.—Ամբայկ՝ Վրաց պղբ. Ա. 74.—Յհ. կթ. բ գրում է Ամբակ և դնում է Հռնակից հետո. Վաշտակ և Հայկակ չկան. բայց անշուշտ սա մի հասարակ սխալմունք է և այդ երկու անունները մոռացված են, որովհետև գլուխ գ ասում է «մինչև Հայկակ»։ Վարդան պատմիչն էլ դնում է Յոնակ և ապա Համբակ։—Չամչ. Ա. 84 (իշխել է Ն.Ք. 1363—1349 թ. իբր 14 տարի)։

— 2. Ամբակ Բ. նահապետ Հայկազանց, հաջորդեց Յուսակի, իրեն էլ հաջորդ ունենալով Կայպակին. գահակալել է ըստ Չամչ. Ա, 92՝ Ն.Ք. 910—883, իբր 27 տարի։—Չունին Խոր. և այլ պատմիչներ։

ԱՄՍԱԶԱՆ, ար. (ըստ Justi 15 բ իբր պրս. همساز hamsāz «համաձայն, միաբան»)։ Անսովոր անուն։

— Ամսաճան, որդի Գրիգորի, հայ ոճն ժամանակակից
Վրաց Գէորգի-Լաշա թագավորի (1184—1212).—Զաքարիա առ
Brosset, Collect. 2, 173 (Justi անդ)։

*ԱՄՐԱՄ, ար. <եբր. עמרם ‘Amrām, որ տառադարձված է
հուն. ’Αμβράμ. (ըստ Բառ. Ս. Գրոց, էջ 32 նշանակում է «ծա-
ռայ Բարձրելոյ»· բայց Gesenius. 602 ա հիշում է միայն ընեռ,
Amramu և ծագումը անհայտ է թողնում)։ Այս անունով հայտ-
նի է Ամրամ՝ հայր Մովսէս մարգարէի և Ահարոն քահանայա-
պետի (Ել. զ. 18, 20)։

— Ամրամ, իշխան Ուտեաց. իր ուժեղության համար կոչ-
վում էր ցլիկ. ապստամբեց Աշոտ Երկաթի դեմ և Վրաց օգնու-
թյամբ և Աշոտի զինվորների դավաճանության պատճառով՝
հաղթեց «925 թ».—Յհ. կթ. կգ.—սեռ. Ամրամայ՝ Յհ. կթ. կգ։

*ԱՄՐՈՒՄ, ար. < արաբ. أمير amīr «իշխան» բառից՝ Թրք.
-um «իմ» ստացական հոդով. նշանակում է բուն «իշխանս». հմմտ.
Բեգում «բեգս»,Շահում «թագավորս»։ Իբրև անձնանուն հիշված
է 1609 թ. (Զքր. սարկ. Գ. 22)։ Այս անունն է որ դարձել է
Ամբրում և սրանից էլ ձևացել է Ամբրումեան ազգանունը (Շուշի)։

*ԱՅԲԻԿԷ, իգ. < Թրք. آی ay «լուսին»+չաղաթ. بیکه bike «տի-
կին, տիրուհի» բառերից։ Բնականաբար գործածական էր Լեհաս-
տանի և Խրիմի հայոց շրջանում։ Ունինք՝

— Այպիքէ, հիշված 1651 թ. (Труды Вост. Комм. ИМАО,
հտ. II, 3, էջ 75)։

*ԱՅԳՈՒՆ, իգ. < Թրք. آی ay «լուսին»+گون gün «արեգակ»
բառերից· գործածված է մի քանի անգամ ԺԶ դարում։

— 1. Այիգուն, կին Խլղաթի՝ ազգականի Յակոբ եպիսկո-
պոսի, որ Արջակու վանքում, Կարապետ եպիսկոպոսին գրել
տվեց մի ճառընտիր, 1521 թ.—Ձեռ. Վեննա. Բ. 382։

— 2. Այգուն, ազգական տիկին Մարգարիտի, որ Սալնապա-
տի վանքում, Մխիթար վարդապետին գրել տվեց մի Աւետարան,
1570 թ.—Ձեռ. Վասպ. 672։

— 3. Այգուն, կին խոջա Պուտախի, որոնք իբր երկրորդ
ստացող շատ անգամ հիշվում են նախորդ ճառընտիրում, ան-
թվական հիշատակարաններում, որոնք գրված են 1521 թվից
ուշ։—Ձեռ. Վեննա. Բ. 384։

+ԱՅԳՎԱՐԴ, ար. < հյ. այգ+վարդ բառերից, իբր «առավոտ-
վա վարդ» նորակերտ անուն. շատ քիչ գործածական (Վան)։
*ԱՅԴԱՄՈՒՐ, ար. < Թրք. آیدموری ay-damuri (գիշեր, ծակիչ

գործիք, գայլիկոն» (Будагов I 171 բ)։ Գտնում եմ միայն մի անգամ գործածված ԺԶ դարում։

— Այդամուր, հիշված է 1572 թ. մի Մաշտոցի գնման մեջ, Մելիտինեի Աղջախալա գյուղում.—Թորոս Աղբար, Բ. 299։

*ԱՅԴԻՆ, ար. < Թրք. آیدین aydən «լուսավոր» բառից, որ Թուրքերի մեջ էլ անձնանուն է. ծանոթ է օրինակ՝ այս անունով Թուրք մի իշխան ԺԴ դարից (Իբն-ի Բատուտա, II. 309)։ Իմաստի կողմից ճիշտ համեմատելի է պրս. روشن rušan «լուսավոր», որից ունինք Արուշան, Ռուշան անունը։ Հիշատակված է մեր մեջ՝ ԺԵ դարից սկսած մինչև ԺԸ դար. այժմ խափանված է. բայց մնում է սրանից Այդինեան ազգանունը (Երևան), որի հետ նույն է Արևմտահայոց Այտնեան ձևը (օրինակ՝ Հ. Արսէն Այտընեան՝ Վիեննայի Մխիթարեան նշանավոր բանասերը՝ 1825—1902 թ. Պոլսեցի)։

— 1. Այտին, եղբայր Մելքիսեթ երեցի, որ օրինակեց Գանձարանը՝ Աւան գյուղում, 1453 թ. այս թվին մեռավ Այտինը.—Bodleian 134։

— 2. Այտինբէկ, որդի Աթաբէկի և եղբայր Մատթէոս կաթողիկոսի Գանձասարի. հիշված է 1462 թ.—Նոտարք 206։

— 3. Այտին, որդի Աթաբակի. իր եղբոր Խիմշայի (կամ Խրիմշահ) հետ միասին Ալմաճատափ կալվածը նվիրեցին Գանձասարին, 1467 թ.—Նոտարք 229։

— 4. Այտին, որդի Տուրսունի, թոռն Աղբուղայի, որ էր թոռան թոռ Գրիգոր Բարի իշխան Խաչենոյ, Դոփեան ցեղից։ Սրա ժամանակ, ինչպես առհասարակ հայ իշխանները, նույնպես և Դոփեան ցեղի իշխանները ցրուցան էին եղել և մահմեդականները նրանց կալվածները գրավել։ Այտինը գնաց դիվանները և 3 տարի աշխատելով՝ կարողացավ թե այդ կալվածները և թե գյուղերն ու վանքերը ազատել (ԺԵ դարի կեսերին).—Ջեռ. Դադեան, Ա. 89 բ. Կարապետ եպս.՝ Դօփեանք, էջ 45, 87, 89—93, 96, 101—4, 107, 129։

— Սրանցից ավելի ուշ՝ Այդին անունը հիշատակվում է 1554 թ. (Manus. brit. mus. 193 ա), 1577 թ. (Հայ-Վենետ. 446), 1590 թ. (Նշխ. մատ. 46), 1694 թ. (Ջեռ. Վասպ. 998՝ գրված Յայտին) և 1720-ական թվերին՝ Աբր. Երև. 76։

*ԱՅԵԱՆ, ար. կամ արաբ. عیان ʿayān «հայտնի, ակներև» և կամ արաբ. اعیان aʿyān «ավագանին, երևելի մարդիկ»։ Մեր մեջ իբրև անձնանուն հիշված է մի անգամ, ԺԷ դարում, հետևյա

ձևով. «Կեսարացի Այեանի որդի մահտեսի Կարապետ» (Ազգ. մատ. ՀԸ, էջ 224)։

*ԱՅԼԱ, իգ. < Թրք. لا ela «երկնագույն, ծալի» (աչքերի համար է ասվում)։ Հայերենի այ նախաձայնը ներկայացնում է Թուրքերենի ā հնչումը։ Իբրև անձնանուն գործածված է մեր մեջ ԺԶ—ԺԷ դարերում։ Այսպես՝ 1570 թ. իգական անուններ մի շարքում՝ Ջեռ. Վեննետ. Ա. 672, որ հրատարակիչը չի հասկացել և հարցականի տակ է դրել («և զխարսն իւր զԱտիխաթուն այլ եայ (?) Մելիքն Ուստիանեայն»).—1608 թ. (Ջեռ. Վեննետ. Ա. 632), 1652 թ. (անդ 740՝ գրված Այլաին), և անթվական (ԺԵ—ԺԶ դարից), երեք անգամ հիշատակված՝ Տաշեան, Ցուց. 996 բ։

*ԱՅԽԱԹՈՒՆ, իգ. < Թրք. آی ay «լուսին»+xatun «տիկին» բառերից. հիշված է մի անգամ ԺԳ դարում.

— 1. Այխաթուն (գրված Աիխաթուն), Բագնայրի եկեղեցու 1234 թվի արձանագրության մեջ.—Շիրակ 118։

— 2. Այխաթուն հիշված է մի անգամ էլ 1311 թվից հետո գրված անթվական մի հիշատակարանում.—Ջեռ. Թաւր. 73 բ։

+ԱՅԾԵԱՄՆ, իգ. < հյ. այծեամն կենդանու անունից, որի նախատիպը տես Այծեմնիկ։ Այս անունով ունենք միայն՝

— Այծեամն Անեցի, հայ հերոսուհի, որ Անիի պարիսպների վրայից քաջաբար կռվում էր Փադլուն ամիրայի զորքի դեմ և նրանց արձակած նետերը իր վերքերից դուրս քաշելով՝ նրանց դեմ էր արձակում (1126 թ).—Սամ. անեց. 127, Զամչ. Գ. 45։

+ ԱՅԾԵՄՆԻԿ, իգ. գործ է ածված Գծ. Թ. 36, 39, իբր թարգմանություն օտար անվան. «Եւ ի Յոպպէ էր կին ոմն աշակերտեալ անուն Տաբիթա, որ թարգմանեալ կոչի Այծեմնիկ...։ ցուցանէին զձորձս և զհանդերձս, որչափ առնէր նոցա Այծեմնիկն»։ Բուն բառն է ասոր. طبيتا ṭbītā, եբր. ṣbi, ṣəbāim, ասուր. ṣabītu, որոնք նշանակում են «այծեամ, gazelle» (Gesenius 672 բ)։ Թեև հին հայոց մեջ ավանդված չէ, բայց այժմ գործածվում է Այծեմնիկ, որի փաղաքշականն է Այծիկ։

*ԱՅՄԵԼԷՔ, իգ. < Թրք. آی ay «լուսին»+արաբ. ملك melek «հրեշտակ» բառերից։ Այս մաքուր ձևով հիշված է 1321 թվից ավելի ուշ գրված անթվական մի հիշատակարանում (Manus. brit. mus. 24 ա)։ Նույնպես 6 անգամ հիշված է Այմելէք ձևով՝ 1413 թվից հետո գրված անթվական մի հիշատակարանում (Ջեռ. Հալէպի, Ա. 272, 274)։ Մյուսները ձևափոխված դարձած են Այմիլիք ևն (տես տակը)։

—1. Այմելիք (գրված է կրկին հայցական՝ զԱյմելիք ձևով), դուստր Ապակի և քույր Խասայի, որ ստացավ մի հին Ավետարան, 1441 թ.—Manus. brit. mus. 3 բ։

—2. Այմելիք, կին Խութլուշահի և մայր Տէր Գրիգորի, որ Յովհաննէս գրչին գրել տվեց մի Յայսմաւուրք, 1458 թ.—Նոտարք 190։

—3. Այմելիք, քույր Սալչուկ խաթունի. որ Հայրապետ քահանային գրել տվեց մի Մաշտոց, 1466 թ.—Թորոս Աղբար, Բ. 338։

—4. Այմելիք, հոգևոր մայր Ջուլալ տիկնոջ, որ Աղթամարում Գրիգոր աբեղային գրել տվեց մի Ավետարան, 1470 թ.—Ձեռ. Վասպ. 459։

—5. Այմելիք, կին Ավետիք քահանայի, որ գրել տվեց մի Ավետարան, 1480? թվին.—Ձեռ. Հալէպի, Ա. 68 բ։

*ԱՅՆԻԶԱԴ, իգ. < արաբ. عینی 'aynī «ճիշտ նույն»+պրս. زاده zāda «ծնված», որով ամբողջի իմաստն է լինում «նմանածին»։ Հիշված է մի անգամ, 1450 թվից հետո գրված անթվական մի հիշատակարանում.—Ձեռ.—Թավր. 67 բ (սխալ տպված այն ի զատ),

*ԱՅՆԻՄԵԼԷՔ, իգ. < արաբ. عینی ملك 'aynī-melek «ճիշտ ու ճիշտ հրեշտակ». մի անգամ գտնում եմ աղավաղ ձևով գրված Այնամելիք, 1517 թ. (Թորոս Աղբար, Բ. 275).

*ԱՅՆՈՒԼՄԵԼԻՔ, ար. < արաբ. عين الملك 'ayn-ul-melīk «Թագավորի աչքը», որ մերձավորապես համապատասխանում է պարսկական Շահնազար անվան։ Մի անգամ գտնում եմ հիշատակված՝

— Այնըլմլք (կրճատ գրչությամբ), մահտեսի երեսփոխան, որ նորոգել տվեց մի Ավետարան, 1630 թ.—Ձեռ. Վենետ. Ա.428։

ԱՅՍԱԽՈՒԽ, ար? ծագումը ինձ անհայտ. մի անգամ հիշված ենք գտնում Վայոց ձորի մի խաչքարի վրա՝ 1264 թ.—Սիսական 144։

ԱՅՎԱԶ. ար. ծագումն անծանոթ (որովհետև չեմ կարծում թե ծագած լինի թրք. آیواز ayvaz «խոհարար» բառից, թեև այս էլ անհնարին չէ)։ Այս անունը տաճիկների մեջ էլ ենք գտնում. օրինակ՝ Այվազ փաշա, որի անունով մի բլուր հիշված է Երեմ. չել. օրագր. 383։ Մեր մեջ հնագույն գործածությունները են՝ 1555 թ. (Матер. Арх. Кавк. III, էջ 97), 1635 թ. (Զքր. սարկ. Բ. 9, Այրարատ 161, 179), 1666 թ. (Ձեռ. Վասպ. 928).—գրված

է նաև Էյւազ՝ 1634 թ. (Ձեռ. Վիեննա. Բ. 548).—և վերջապես Էվազ՝ 1621 թ. (Ձեռ. Դաշեան, Ա. 47 ա), 1650 թ. (անդ, Բ. 33 բ), 1658 թ. (Ձեռ Թաւր. 13 բ)։—Սրանից է Այվազեան ազգանունը, որ շատ տարածված է և կարող է լինել թե Այվազ անձնանունից և թե մանավանդ թրք. ayvaz «խոհարար» բառից (իբր արհեստի անուն)։

ԱՅՎԱՏ, ար. ծագումն անծանոթ։ Գործածված է ԺԵ—ԺԷ դարերում, Այվատ, Եւաս և Էվաս ձևերով։ Այժմ խափանված է, բայց կա Այվատեան ազգանունը։

—1. Այվաս, որդի Յեպապոյի կամ Պապայի, ազնվական Անկիւրացի. 1453 թվի հոկտ. 28-ին գաղթեց Պոլիս՝ Տաճիկների հրամերով.—Նշխ. մատ. էջ 63 (սխալատիպ), Տաշեան, Ցուց. 895 ա։

— 2. Եայւատ ոմն, հիշված է մի կտակագրում, 1461 թ.— Manus. brit mus. 31 ա։

— 3. Այվատ, հիշված է Համիթ քաղաքի բնակիչների շարքում, Եաղարաճի Այվատ, 1517 թ.—Ձեռ. Վիեննա. Բ. 481։

— 4. Այվաս (մի անգամ այս ձևով) կամ Եւաս (8 անգամ էլ այս ձևով), որդի Յակոբի. գրել տվեց Գաբրիէլ գրչին մի Յայսմաւուրք և նվիրեց Հալէպի եկեղեցուն, 1554 թ.—Ձեռ. Հալէպի, Ա. 323—324։

—Ունինք նաև Այւաս՝ 1655 թ. (Ձեռ. Նոր-Բայազ. 42 բ), Այվաս՝ 1659 թ. Երեմ. չել. օրագր. 331, և Էվաս՝ անթվական մի հիշատակարանում (Ձեռ. Թաւր. 22 ա)։

ԱՅՎԱՏ-ՄԵԼԻՔ, իգ. մի անգամ ունինք՝

— Այւաս-Մէլիք, կին Հընայի և մայր խոջա Միրաքի, որ տաճիկ զինվորների ձեռքից մի Աւետարան է գնել և նորոգել ու նկարազարդել տալով նվիրել է Ամիթի եկեղեցուն, 1605 թ.—Թորոս Աղբար, Բ. 439.

+ԱՅՐԵԼԻՔ < հյ. այրելիք բառից. անհուն է. մի անգամ գտնում եմ հիշատակված Ձեռ. Կարին. 126, հետևյալ ձևով. «Գրեալ ձեռամբ Յովհաննէս գրչի. ի յիշատակ Էրելիքին և Նորոգեալ ձեռամբ Գրիգոր քահանայի». Թիվն անհայտ։

+ԱՅՐՈՒԿ, ար. < հյ. այր «մարդ» բառի փաղաքշականից (Justi 11 բ հանում է այրեկ բառից, իբր թե Athro-բառով սկըսվող մի բարդ բառից կրճատված)։

—Այրուկ, նախարար Սլկունի, որ մասնակցեց Վարդանանց պատերազմին՝ 451 թ.—Եղիշ. 77. Յայսմ. օգոստ. 7, Ջամչ. Բ. 68։

*ԱՅՐՈՒՍԻ, իգ. < արաբ. عروسی ʿcarūsī «հարսանիք». ըստ այսմ պետք է կարդալ Արուսի. շատ անսովոր անուն է. մի անգամ գտնում եմ գործածված 1724 թ. (Ձեռ. Թաւր. 41 բ)։

*ԱՆԱ, իգ. թեև կարելի է հասկանալ իբրև Աննա, բայց ավելի լավ է դնել թրք. انا ana «մայր» ձևից, ինչպես կա بابا baba > Բաբա «հայր» արական անունը։ Գործածված է ԺԶ—ԺԷ դարերում, կամ առանձին Անա ձևով և կամ թրք. خاتون xatun, չաղաթ. بيكه bike «տիկին» բառի հարադրությամբ։

— 1. Անա, որոշիչ հոդով՝ ԱՆԷՆ, անթվական մի հիշատակարանում, որ գրված է 1421 թվից հետո.—Ձեռ. Վասպ. 344։

— 2. Անախաթուն, հարս Ալեքսիանոս եպիսկոպոսի, որ Արքայից վանքում օրինակեց Ավետարանը, 1486 թ.—Ձեռ. Նոր-Բայազ. 11 ա։

— 3. Անա (որոշյալ հյց. զԱՆԷՆ ձևով), 1511 թ.—Ձեռ. Վենետ. Բ. 622։

— 4. Անախաթուն, հիշված 1553 թ.—Ձեռ. Վենետ. Ա. 578։

— 5. Անապիքէ, հիշված 1695 թ.—Ձեռ. Վասպ. 982։

*ԱՆԱԲԷԿԻ, իգ. < թրք. انا ana «մայր»+بك beg «բեգ» բառերից. իբր «բեգի մայր». մի անգամ գտնում եմ հիշված 1702 թ.—Manns. brit. mus. 167 բ։

*ԱՆԱՀԻՏ, իգ. < զնդ. Anāhita, հպրս. Anāhitā (գրված Anahata), պհլ. Anāhit, պազ. Anāhīδ. ներկայացնում էր իգական մի աստվածություն (տես Դուրեան, Կրօնները պատմ. 1935, էջ 335). բուն նշանակությունն է «անբիծ, անարատ» և կազմված է an բացասականով՝ āhita «պիղծ, կեղտոտ» բառից (Bartholomae, Wört. 125, 345)։ Ավելի ուշ դարձավ Արուսեակ մոլորակը. այսպես՝ պրս. آناهید anāhīd կամ ناهید nāhīd «արուսյակ», որից փոխառությամբ ասոր. anāhēδ, հունարեն տառադարձված Ἀναῖτις, արաբ. آناهيذ anāhīδ «արուսյակ, լուսաստղ» (Կամուս, Ա. 740)։ Այս իմաստն ստանալուց հետո դարձավ իգական անուն. հմմտ. պրս. Nāhīd՝ կին Գուշտասպ թագավորի Պարսից. դուստր կայսեր Յունաց (Շահն. հտ. 4, էջ 289), Nāhīd դուստր Ֆէյլէքուս (=Փիլիպպոս) թագավորի Յունաց, Դարեհի կինը, որից ծնվեց Ալեքսանդրը (Շահն. հտ. 5, էջ 44)։ Մինչև իսկ դարձավ հասարակ գոյական արաբների մեջ, ուր ունինք ناهد nāhid «նարինջի պես ստինքներով աղջիկ» (Կամուս, Ա. 701)։ Մեր մեջ, հին ժամանակ հատուկ էր միայն աստվածուհուն, իսկ վերջին շրջանում դարձավ սովորական իգական անուն և մեր գեղեցկագույն ազ-

գային անուններից մեկն է համարվում (Հիւբշ. 18, Սարգիսեան Ագաթ. և իր բազմ. գաղտ. 133)։

— Անահիտ աստվածուհի հայոց, դուստր Արամազդի. իր տիտղոսներն են «Մեծն Անահիտ տիկին, ծնունդ մեծին արին Արամազդայ, մայր ամենայն զգաստութեանց, բարերար ամենայն մարդկան բնութեան, որ է փառք ազգիս մերոյ և կեցուցիչ. որով կեայ և զկենդանութիւն կրէ երկիրս Հայոց»։ Նրա ոսկեձույլ արձանը գտնվում էր Եկեղեաց գավառի Երիզա գյուղում, որի համար էլ կոչվում էր «Ոսկեմայր Ոսկեծին Ոսկեհատ դիք» (Ագաթ. § 809, Շնորհ. վիպ. 524)։ Նրա անունով մի ուրիշ տաճար էլ կար Դարբնաց քար կոչված տեղում (Խոր. պատմ. ածած. 294)։ Մեր Անահիտի պաշտամունքի մասին խոսում է նաև Ստրաբոն և տալիս է հետևյալ կարևոր տեղեկությունը. «Պարսից բոլոր աստվածությունները պաշտվում են նաև Մարաց և Հայոց կողմից. բայց Անահիտի պաշտամունքը Հայոց մեջ գերազանցում է բոլորից. զանազան տեղեր նրա անվան տաճարներ են կանգնեցրած և հատկապես Եկեղիքում։ Նշանակել են այդ տեղերում ստրուկներ և ստրկուհիներ. այս բոլորը զարմանալի չէ. այլ այն՝ որ ժողովրդի ամենանշանավոր մարդիկը իրենց կույս աղջիկներին նվիրաբերում են աստվածուհուն և նրանք ըստ օրենքի երկար ժամանակ պոռնկում են աստվածուհու համար, որից հետո ամուսնանում են, և ոչ ոք անվայել չի համարում կենակցել նրանց հետ։ Գրեթե նույնը պատմում է Հերոդոտը Լիւդիացոց մասին. բոլորն էլ պոռնկում էին։ Այնքան բարեհաճ են վերաբերվում այն հայ կույսերը իրենց սիրահարներին, որ ո՛չ միայն հյուրընկալություն են ցույց տալիս, այլ և տալիս են նրանց նվերներ, հաճախ ավելի շատ քան թե իրենք են ստանում, ըստ որում մեծահարուստ տներից են և լավ հասույթ ունին։ Բայց ամեն մի պատահական անձի հյուրասիրություն չեն ցույց տալիս, այլ հատկապես իրենց աստիճանի մարդկանց» (Ստրաբոն Հայոց մասին, Երևան 1940, էջ 69 և 79)։—Ուղ. Անահիտ ձևով՝ Ագաթ. § 59, 68, 127. Վկ. Թադ. 23, 38. Վրթ. քերթ. պտկ. 304.—սեռ. Անահտայ՝ Ագաթ. § 53, Խոր. պատմ. ածած. 294. Վկ. Թադ. 23, 50. Յայսմ. օգ. 25, նոյ. 18.—Անահտի՝ Ուխտ. Ա. կ.—ածականաբար՝ Անահտական (դիք, պատկեր, մեհեան)՝ Ագաթ. § 48, 49, 778—779, 786. Գիրք Թղ. ղե. Ուխտ. Ա. կ, կբ, կը. Շնորհ. վիպ. 519. Յայսմ. մայ. 11. Ծարկ. լուս. 18 (կցում է Ռէասի և Աթենասի). Տաթև. ձմ. ղդ, ղէ։—Սրա համեմատ ունինք Աթոռ Նահատոյ՝ Բուզ. Ե. իե, որ Վենետիկի հրատարակիչները դարձրել են Անահտայ։

+ԱՆԱՀՕԿ (Թվի ար.) < հյ. անահօկ «անխիստ» բառից. իբրև անձնանուն հիշված է մի անգամ անթվական մի արձանագրության մեջ, որ գտնվում է Տեկորի մոտիկ Ագրակ գյուղի եկեղեցում (Շիրակ 126 ա)։

ԱՆԱՄԱՐԻԱ, իգ. հնդկահայ անուն. ծագումն անծանոթ. արդյոք թրք. انا ana «մայր»+լտ. Maria «Մարիամ», իբր «մայր Մարիամ (Աստուածածին)», ինչպես ասում են թրք. Meryem ana «մայր Մարիամ Աստվածածին»։

— Անամարիա, քույր Հնդկահայ Գրիգոր Խոջաջանեանի, որ հիմնեց Էջմիածնի տպարանը, 1771 թ.—Արարատ 228։

ԱՆԱՅԻ, իգ. ծագումն անհայտ, որովհետև չեմ կարծում թե լինի պրս. انایی anāyī «տգետ, հիմար, անփույթ» բառից. Թեև ունինք մեր մեջ Անպետ, Յիմար և նման նախատական անուններ։ Այս ձևով ունինք՝ Անայի, հիշված 1678 թ. (Ձեռ. Ն. Բայազ. էջ 2 բ) և 1689 թ. (Bodleian 163)։ Նույնը գործածական է այժմ էլ Ղարաբաղի գյուղերում՝ Անայի կամ Ընայի ձևերով։ Սրա տարբեր գրչությունն եմ կարծում Անոնէ՝ իգ. որ հիշված է ԺԵ դարում (Տաշեան, Ցուց. 18 ա) և ԺԷ դարում (Էջմիածնի Գէորգեան ցուցակ, № 613)։

*ԱՆԱՆ, իգ. ծագում է գվռ. ա՛նան «ո՛վ մայր» ձևից, որ է թրք. ay nana! իբրև անձնանուն գործածված եմ գտնում մի անգամ, 1658 թ. (Ձեռ. Թուր. 51 բ)։

*ԱՆԱՆ, ար. մեկնությունը տես Անանիա։

— Անան, հավատարիմ կամ սուրհանդակ Աբգար թագավորի, որ ուղարկեց նրան իբրև պատգամավոր Ասորեքի կուսակալ Մարինոսի և ապա Յիսուսի մոտ (ըստ Ցայսմ. նախարարն էր Ապահունեաց).—Խոր. Բ. լ, լբ. Ցհ. կթ. գ. Ասող. Ա. ե. Մխ. աս. է. Մխ. անեց. ժբ, ժգ.—գրված նաև Անանէ՝ Վրդ. ժգ. Մխ. աս. է, իթ. (=իբ). Ցայսմ. դեկտ. 31.—Ենան՝ Ուխտ. Ա. լբ.—սեռ. Անանայ՝ Ցհ. կթ. գ. Անանեայ՝ Ցայսմ. դեկտ. 31.—հիշված իբրև սուրբ՝ Լաբուբ. 2 են.—Ջամչ. Ա. 286—288։

*ԱՆԱՆԷ, ար. մեկնությունը տես Անանիա։

— Անանէ, երեց եղբայր Խաչիկ Բ կաթուղիկոսի և քեռորդի Պետրոս Գետադարձի. երբ հույները Պետրոսին բանտարկեցին, Անանէին էլ աքսորեցին Պոլիս «1047 թ». կայսրը այնտեղ տվեց նրան սինկելոս (σύγκελλος պատրիարքի տեղակալ) տիտղոսը (1049 թ). Պետրոսի հետ վերադարձավ Սեբաստիա «1051 թ»։—Ուռհ. 106.—գրված է Անանիա՝ Լաստ. ժ, Ջամչ. Բ. 944—945.

— 2. Անանէ *եպիսկոպոս, ուղեկից եղավ Պետրոս Գետադարձին՝ Պոլիս ուղևորության ժամանակ «1047 թ».—ըստ Ազգապ. 1236 տարբեր է նախորդից, որովհետև նա արդեն Պոլիս էր տարված։—Ուռհ. 105։*

— 3. Անանէ *Նարեկացի, նշանավոր վարդապետ ԺԱ դարում. թվի թե նույն Անանիա Նարեկացին է, որ տես վարը.—Ուռհ. 179։*

— 4. Անանէ *Հաղբատացի, նշանավոր վարդապետ ԺԱ դարում.—Ուռհ. 179 (հմմտ. վարը Անանիա Սանահնեցի)։*

— 5. Անանէ, *օգնեց Դավիթ գրչին, որ 1434 թվին Ջմըշկածագի Ընկուզեաց անապատում օրինակեց Ավետարանը.—Ջեռ. Թաւր. 12 բ։*

***ԱՆԱՆԷՍ**, *ար. մեկնությունը տես* Անանիա։

— Անանէս, *աղանդապետ Թոնդրակեցոց, հաջորդ Թոդրոսի (Ժ դար).—Մագ. թղ. կէ.—կոչված է* Անանէ՝ *Հայապ. 551։*

***ԱՆԱՆԻԱ**, *ար.< եբր.* הנניה Xananyāh, *որ նշանակում է «Աստվածաշնորհ» (կազմված է* xnn *«շնորհ անել, կարեկցել» արմատից+* Yāh *«Աստված»* Gesenius *246 ա)։ [Սխալ է մեկնութ. ամ. 692 «ոչխար»]։ Տառադարձված է ասոր.* [illegible] Ananiā *և հուն.* Ἀνανίας, *որոնցից էլ հայ ձևը (Հիւբշ. 334)։ Ս. Գրքից հայտնի են այս անունով Անանիա սուտ մարգարե, որ իր հանդգնության համար մահացավ (Երեմ. իը. 15—17), Անանիա անուն բարեպաշտ մի մարդ՝ Նեեմիայի ժամանակ (Նեեմ. է. 2), Անանիա ոմն հրեա, որ իր Սափիրա կնոջ հետ գողության մեջ բռնվելով՝ մահացավ Պետրոս առաքյալի հրամանով (Գծ. ե. 1—10), Անանիա Դամասկացի՝ որ բժշկեց Սողոսի կուրացած աչքերը (Գծ. թ. 10—17), Անանիա քահանայապետ Հրեից (Գծ. իգ. 2, իդ. 1) և վերջապես Անանիա, որ Բաբելոնի երեք մանուկներից մեկի՝ Սեդրաքի բուն եբրայական անունն է (Դան. Ա. 6—7)։ Մեր մեջ գործածված է սովորաբար* Անանիա *ձևով, բայց ունինք նաև* Անանէս, Անանէ, Անան *ձևերով։ Եբրայեցին բացի վերի* Xananyāh *ձևից, ունի նաև* הנני Xanānī, *որ տարբեր անուն է և նշանակում է «շնորհալի»։ Բայց մեր* Անան, Անանէ *ձևերը սրանից չեն, այլ պարզապես կրճատված Անանիայից։ Սակավ գործածական է այժմ։ Սրանից է կազմված* Անանեան *ազգանունը։ Առաջ եղել է նաև փաղաքշական* Անանիկ *ձևը (հիշված է 1788 թ. Ջեռ. Սանաս. 5 բ), որից և* Անանիկեան *ազգանունը։*

—1. ԱՆԱՆԻԱ Ա. եպիսկոպոս Սիւնեաց, հաջորդ Մաշտոցի. առաջնորդ կարգվեց Ս. Մեսրոպի ձեռքով. մասնակից եղավ Արտաշատի ժողովին՝ պատասխանելու համար Միհրներսեհի նամակին. կենդանի էր դեռ «468» թվին, երբ Գիւտ կաթուղիկոսի հետ օծեց Եղեգեաց վկայարանը։—Եղիշ. 22. Փարպ. իգ. Օրբ. դ, ժդ—ժզ, ժը, կը, հա. Օրբ. հկճռ. ժբ.—ԱՆԱՆԻԱՍ՝ Կոր. 14.—սեռ. ԱՆԱՆԻԱՅԻ՝ Խոր. Գ. ծզ: Օրբ. ժե, ժթ.—ԱՆԱՆԵԻ՝ Կղկնտ. Բ. դ. —Զամչ. Ա. 536, Բ. 27, Սիսական 7, 1', 20, 23, 130։

—2. ԱՆԱՆԻԱ քորեպիսկոպոս Աղուանից, անդամ Աղուէնի ժողովի՝ Վաչագան Գ թագավորի օրով (Զ դար).—Կղկնտ. Ա. իզ. կանոն. 192։

—3. ԱՆԱՆԻԱ Շիրակացի (որ և Շիրակունի կամ Անեցի), ծն. 610-ական թվերին, Շիրակաւան գյուղաքաղաքում. նշանավոր տոմարագետ և մաթեմատիկոս. այս գիտությունները ուսումնասիրելու համար գնաց Կարին՝ Եղիազար ուսումնականի մոտ, Չորրորդ Հայք՝ Քրիստոսատուրի մոտ, և ապա Տրապիզոն։ Տրապիզոնում, Տիւքիկոս հույն գիտնականի մոտ 8 տարի սովորելուց հետո, վերադարձավ Հայաստան և դպրոց բաց արավ, նույն գիտությունները տարածելու համար մեր մեջ. բայց հաջողություն չունեցավ։ Անաստաս կաթուղիկոսը «665 թվին» հրավիրեց նրան՝ հայոց շարժական տոմարը վերածելու անշարժի, բայց կաթուղիկոսը մեռնելով («667 թ»), հիշյալ ձեռնարկը խափանվեց։ Թողել է բազմաթիվ գրական գործեր, որոնցից հիշենք Ինքնակենսագրութիւնը, Ցաղագս չափուց և կշռոց, Թուաբանականք, Աստեղագիտութիւն, Ժամանակագրութիւն, Տարականներ, ևն (տես Տաշեան, Ցուց. էջ 1057), նաև Աղօթք Անանիայի Շիրակացւոյն (Manus. brit. mus. 244 բ. հմմտ. Թորոս Աղբար, Բ 396)։—Շիր. 1, 26. Յհ. կթ. ի. Ասող. Ա. ա. Կիր. 35. Վրդ. լղ. Սամ. անեց. 84, 85. Գր. տղ. 23, 24. Եփր. խոն. 215. Յայսմ. մրտ. 20. Տաթև. հարց. 451, 637. Մխ. այրիվ. 66. Առաք. լծ. սահմ. 169.—սեռ. ԱՆԱՆԻԱՅԻ՝ Շիր. 1, 4, 15, 27, 34. Շիր. տիեզ. էջ 1. Անան. գիտ. 5, 20, 39. Ասող. Ա. ա, Բ. բ. Մագ. թղ. բ. Սամ. անեց. 85. Տար. (սկիզբը հիշված իբր հեղինակ), Տաթև. հարց. 637. Մեծոփ. 38 (համարում է աստուածաբան, Ստեփաննոս Սիւնեցու և այլոց հետ).—Զամչ. Բ. 360—361, 552—555, Զարբ. Հին դպր. 456—465, Թրգմ. 463, Ալիշան, Հայ-Վենետ. 19, Հայապ. 232, Դուրեան, Ուսում. և քննադ. Երուսաղէմ 1935, էջ 519—523։ Առանձին հիշատակության արժանի է նորահաս բանասեր

Աշոտ Աբրահամյանի աշխատությունը (Խորենացուն վերագրվող Աշխարհացույցի հեղինակի հարցի շուրջը, Երևան 1940), ուր հեղինակը շատ համոզիչ և շոշափելի փաստերով ապացուցանում է որ 1) Անանուն Ժամանակագրութիւնը Անանիա Շիրակացու գործն է. 2) Այս ժամանակագրության մեջ Շիրակացին օգտվել է և քաղվածքներ է անում Խորենացուց. 3) Շիրակացին իր Տիեզերագիտության մեջ (էջ 76) օգտվել է Խորենացուց. 4) Ուստի Խորենացին ապրել է Շիրակացուց ավելի առաջ. 5) Խորենացուն վերագրված Աշխարհագրութիւնը Շիրակացու գործն է. 6) Այս Աշխարհագրության մասն է կազմում Մղոնաչափքը, որի շարունակությունն է Օդաչափք կամ Աստեղաբաշխական Երկրաչափութիւնը (երկուսն էլ հրատարակված նույն գրքում, էջ 97 և 100)։—Աշ. Աբրահամյանը պատրաստել է նաև ընդարձակ մի գործ, բաղկացած 2 հատորից՝ Ուսումնասիրություն Անանիա Շիրակացու մասին և Անանիա Շիրակացու երկերը (ամբողջական հրատարակություն)։ Այս գործը դեռ մամուլին հանձնված չէ։—Անանիա Շիրակացու վրա մի անեկդոտ տես Bodleian 205—206։

—4. **Անանիա** Բ եպիսկոպոս Սիւնեաց, հաջորդ Մովսէսի. Ստեփաննոս Սիւնեցին (մ. 735) տարավ նրան Եղիա կաթողիկոսի մոտ («703—717») և ձեռնադրել տվեց.—Օրբ. իթ, լ, հա։

—5. **Անանիա**, եպիսկոպոս Մերդինի, շինեց Անանեանց վանքը, 753 թ.—Bodleian. 247։

—6. **Անանիա** Ա Մոկացի, կաթողիկոս հայոց «946—968 թ». նախապես Վարագայ վանքի վանահայր էր և Աղթամարի ժողովում կաթողիկոս ընտրվեց՝ իբրև հաջորդ Եղիշէի։ Իր ժամանակ քաղկեդոնական դավանանքը տարածվում էր հայոց մեջ և Սիւնեաց առաջնորդ Յակոբ եպիսկոպոսն ու Աղուանից Սահակ կաթողիկոսը ապստամբել էին հայոց հայրապետական աթոռի դեմ։ Անանիա աննկուն եռանդով քանիցս ճամբորդեց Սիւնիք և Աղուանք, ժողովներ գումարեց, թղթեր գրեց և վերջապես քաղաքական իշխանության վրա հենված դադարեցրեց վեճերը։—Ասող. Գ. է, ը. Կիր. 48, 49. Վրդ. խէ. Վրդն. աշխ. 515. Յայսմ. մայ. 27. Սամ. անեց. 99. Մխ. անեց. դ. Օրբ. ծա, ծե, ծզ, հա. Ուռհ. 3. Միխ. տա. իթ (=իը). Մխ. այրիվ. 21, 71. Սմբ. պատմ. 28, 39. Բհնպ. 272.—սեռ. **Անանիայ**՝ Կիր. 49.—**Անանիայի**՝ Ասող. Գ. է, թ. Կիր. 50. Վրդ. խը. Մագ. թղ. կէ. Ուռհ. 33։ Յայսմ. մայ. 27. Օրբ. խդ, ծա, ծբ, ծգ. Օրբ. հկճռ. ժ. Օրբ. ժմ. 11, 12.

Սամ. անեց. 100, 101. Սմբ. պատմ. 21.—բցռ. յԱնանիայէ՝ Կղկտ. Գ. իգ. Օրբ. ծզ. Կիր. ը։—Զամչ. Բ. 827—840, Ազգապ. 1083—1110, Սիսական 19, 230։

—7. Անանիա Նարեկացի, վանահայր Նարեկայ վանքի և հիմնադիր նոյն դպրոցի. Գրիգոր Նարեկացու մօր հօրեղբօրորդին է. մեր պատմիչներից գովաբանված է իբրև գիտուն, փիլիսոփա և մեկնիչ։ Իր խնդրանոք գրեց Ուխտանէսն իր Պատմութիւնը։ Կասկածվելով Թոնդրակեցի աղանդավոր լինելու մեջ, գրեց «Գիր խոստովանութեան» (հրատ. Միաբան, Վաղարշապատ 1892, արտատպված Արարատից, էջ 6—18), որի մեջ նզովում է այդ աղանդը։ Բացի սրանից ունեցել է նաև Թոնդրակեցոց դեմ ավելի ընդարձակ մի Ընդդիմաբանութիւն, որ գրել է հավանաբար իր ժամանակ Անանիա կաթողիկոսի առաջարկությամբ և որ հիշատակում են մեր ժամանագիրներից ոմանք (այս մասին տես Սարգիսեան, Ուս. Թոնդրակեց. աղանդին, էջ 6—7 և 73)։ Գրել է դարձյալ Ճառ Շողակաթի, Հաւատարմատ («973 թ»). Հայոց պատմութիւն և Ճառ Ս. Կաթողիկէի (Օրբ. ողբ. յոջ. էջ 14)։ Վերջին երկուսը կորած են։ Մեռել է 986 թվից առաջ։—Ասող. Գ. է. Մագ. թղ. կէ, Յայսմ. փետր. 27.—սեռ. Անանիայի՝ Գր. Նար. մատ. 422.=Զեռ. Հալէպի, Ա. 245, Ուխտ. Ա. ա (ցանկում). Գիրք Թղ. դր. Մագ. թղ. կէ, Անան. խոստ. 1, 13. Շնորհ. Թղ. 269. Օրբ. հկճռ. ժ.—Զարբ. Հին դպր. 532—534, Կնիք հաւ. յոջ. էջ 108. Զամչ. Բ. 824, 887։

—8. Անանիա վարդապետ. սրա անունով ունինք «Անանիայի հայոց վարդապետի ի խորհուրդ Յովնանու մարգարէի» և «Յաղագս Յովհաննու Մկրտչի, Անանիայի վարդապետի ասացեալ»։ Երկուսը միասին հրատարակեց Հ. Բ. Սարգիսեան (Անանիա Թարգմանիչն և իւր գրական գործոց նմոյշներ, Վենետիկ 1899)։ Հրատարակիչը այս Անանիան համարում է Անանիա Ա. եպիսկոպոս Սիւնեաց. ուրիշներ դնում են Նարեկացին. իսկ Զարբ. Հին դպր. 590 համարում է Անանիա Սանահնեցին։

—9. Անանիա, եպիսկոպոս Վրշարունեաց, Ճակատուց և Այրարատեան գաւառի, 1012 թ. (Այրարատ 10 բ, 56 բ). Յում է իր արձանագրությունը Խծկօնքում, 1006 թվից (Այրարատ 113)։ Եղել է դարձյալ առաջնորդ Հոռոմոսի, ինչպես երևում է, ըստ Ալիշանի (Շիրակ 28), իր մի արձանագրությունից՝ 1013 թվից (Շիրակ 32) և մի ուրիշ անթվական արձանագրությունից (Շիրակ 31)։—Սրա հետ նույն պետք է կարծել՝

—10. Անանիա եպիսկոպոս Վաղարշակերտցի, որի խնդրա-
նոք Յովհաննէս Կոզեռնը գրել է Մեկնութիւն տոմարի (ԺԱ դար).
—Զաժչ. Բ. 907, Զարբ. Հին դպր. 571։ Ինչպես և՝
—11. Անանիա եպիսկոպոս Արշարունեաց, որի խնդրանոք
Սամուէլ Կամրջաձորեցին գրեց Տօնապատճառը (Ժ դարի վերջը).
—Զարբ. Հին դպր. 790։

—12. Անանիա մեծ վարդապետ. Պետրոս վարդապետի հետ միասին բնակեցին Արշարունիքում. ապա գնացին Նարեկայ վանքը. նախապես բնակվում էին Անտաք (ԺԱ դար).—Այրարատ 52։

—13. Անանիա վանահայր Տիրուայ վանուց Ծոփաց, թղթակից Գրիգոր Մագիստրոսի, որ գրել է նրան Թ. ԽԹ—ԾԲ նամակները (ԺԱ դար).—Մագ. Թղ. խթ.—ծբ. (Կ. Կոստանեան համարում է նոյն Անանէն, որ Պետրոս Գետադարձ կաթուղիկոսի քեռորդին էր)։

—14. Անանիա, մերձավոր Իբրահիմ արաբ ամիրայի. Գրիգոր Մագիստրոսը իր գրած խրթին թղթերի վերծանութեան համար առաջարկում է դիմել այս Անանիային.—Մագ. Թղ. հա։

—15. Անանիա քահանա Ակոռեցի. Թուրքերի արշավանքի պատճառով՝ իր ընտանիքով Ակոռիից փախավ Սեբաստիա (1066 Թ). հինգ տարի հետո Անանիան իր ընտանիքը թողնելով Սեբաստիայում, գնաց Պոլիս, ուր և մեռավ.—Rapport Arm. 45։

—16. Անանիա ժամասուն, որ գտել է առասպելական համասփիւռ ծաղիկը՝ Սուրմարիի Զողկերտ գյուղում.—Վրդ. առ. 300. Այրարատ 123 (համարում է Շիրակացին)։

—17. Անանիա վրդ. Սանահնեցի, «գիտող տոմարական արհեստից և աստուածայնոց գրոց». աշակերտ Դիոսկորոսի և դասընկեր Յակոբ Սանահնեցու. միաբան Սանահնի վանից. ունի մի քանի կրոնական գրվածքներ. Պետրոս կաթուղիկոսի հրամանով գրել է Պօղոսի 14 թղթերի համառօտ մեկնութիւնը (հետևողությամբ Եփրեմի, Ոսկեբերանի և Կիւրեղի). ունի և Ներբողեան Շողակաթի, Ընդդէմ երկաբնակաց կամ Յունաց, Համեմատութիւն չորից Աւետարանչաց են (ԺԱ դար).—Կիր. 64. Վրդ. հ.—սեռ. Անանիայի՝ Խարվկ. էջ 1.—Իր գործերը տես Զարբ. Հին դպր. 588, 590, Տաշեան, Ցուց. 1057 գ, Զեռ. Դաշեան, Ա. 91 բ. Կնիք հաւ. յոչ. էջ 109, Հայապ. 383, Գ. վ. Յովսէփեան, Խարվկ 24, Սեդրակեան, Հայ եկեղ. պատկերյարգութիւնը, էջ 127—131. Զաժչ. Բ. 929։

— 18. **Անանիա** վարդապետ. գրել է Եփրեմի Մեկնութիւն Աւետարանի Համաբարբառ (նախ քան 1195 թիվը), Հաղբատի ժառանգավորաց համար։ (Արդյոք Անանիա Հաղբատացին կամ Սանահնեցին չէ՞ և իր գործն էլ Համեմատութիւն չորից Աւետարանչացը չէ՞)։—Զարբ. Թրգմ. 447, Հայապ. 371?

— 19. **Անանիա** արքեպիսկոպոս կամ պատրիարք Հայոց Եգիպտոսի. հաջորդեց Գրիգորի՝ առաջին պատրիարքին Եգիպտոսի. նստում էր Զահիր կամ Զահրատ կոչված տեղը՝ Հայոց վանքում. նույն միջոցին ապստամբություն ծագելով Հայոց դեմ՝ արաբները վանքը գրավեցին և բոլոր կրոնավորներին սպանեցին Անանիայի հետ (1137).—տես Արուսահլի Պատմ. էջ 19, Ալիշան, Շնորհ. և պրգյ. էջ 165։

— 20. **Անանիա** Դվինեցի, ուրիշ վրացական իշխանների հետ ուղարկվեց Պարսկաստան, օգնական զորք խնդրելու համար՝ Վրաց Գէորգի Գ (1156—1184) և Դեմետր թագավորների կռվի ժամանակ.—Վրաց աղբ. Բ. 10։

— 21. **Անանիա** Անեցի, աշակերտ Յովհաննէս Սարկաւագ վարդապետի (ԺԲ դար).—Զարբ. Հին դպր. 615։

— 22. **Անանիա** վարդապետ, անծանոթ պատմիչ, որին հիշում է Մխ. Այրիվ. 37՝ հա՛յ պատմագիրների շարքում, Մատթէոս Ուռհայեցի և Մխիթար Անեցի պատմիչների միջև։ Այս երկուսն էլ ԺԲ դարից լինելով, Անանիա պատմիչն էլ պիտի լինի ԺԲ դարից։

— 23. **Անանիա**, աշակերտ Արիստակէս վարդապետի (տես այս անունը), որ աշակերտ էր Ներսէս Շնորհալու (մ. 1173)։ Այս երկուսը (Անանիա և Արիստակէս) համառոտեցին Շնորհալու կազմած Մեկնութիւն Մատթէի, որ հետո Յովհան Ծործորեցին լրացրեց։—Ձեռ. Դաշեան. 91 բ։

— 24. **Անանիա** խստակրոն ճգնավոր և մեծ վարդապետ Վարագայ վանից. ուսուցիչ Արտամետցի Յուսիկ քահանայի (1224 թ.), որ նրա քրոջ որդին էր.—Պետ տէր յուսկ. 198—203։

— 25. **Անանիա** Սեբաստացի, չհամաձայնվելով Յովհաննէս Մեծաբարոյի ընտրության («1203 թ»), հակաթոռ կաթուղիկոս նստավ Սեբաստիայում. վախճանվել է 1256 թվին, ինչպես երևում է իր տապանագրից՝ ըստ Նաթանեան, Տեղեկ. Սեբ. էջ 42։

Բայց տապանագիրը ամբողջությամբ մեջ է բերում Թորոս Աղբար, Ա. 179, որտեղից երևում է որ վախճանվել է 1207 թվին, որ ավելի ճիշտ է. (Չամչ. դնում է 1206 թ)։—Կիր. ա. Չամչ. Գ.

165, 175—177, 183. Սիսուան 471, 507, Ազգապ. 1562—4. Նոր վկ. 92—93.—**Անանի**՝ Կիր. 70.— **Անանիաս**՝ Վրք. և վկ. ա. 561, Նոր վկ. 84։

— 26. **Անանի**, անհայտ անձ, որի հետ միասին Մխիթար Այրիվանեցին գրել է «ի վիմի քաղաքին», ծածուկ գրքերի մասին. ինչպես գրում է ինքը՝ իր Պատմության մեջ, էջ 33։ Ըստ Տաշյան, Մատեն. մանր. ուս. Ա. 148 և ՀԱ 1891 161—7 դա է Պրոկղի գործերը, որ Այրիվանեցին գրել է Գեղարդի վանքում, 1272—86 թվերին։ Այդ ձեռագիրը գտնվում է այժմ Էջմիածնի մատենադարանում։ Նույն է անշուշտ՝

— 27. **Անանիա** գրիչ, օգնել է Մխիթար Այրիվանեցուն Ճառընտրի օրինակության մեջ՝ 1280-ական թվերին.—Յովսէփեան, Մխիթ. այրիվ. էջ 3։

— 28. **Անանիա** սարկավագ. գրիչ. օրինակել է Մաշտոցը Բաջանջ գյուղում, ՉԽԵ=1296 թ.—Ձեռ. Կարին. 140։

— 29. **Անանիա**, թոռն Շահնշահի, որ Գողթան գավառի Կոպատոսի անապատում, Թումա Արճիշեցուն գրել տվեց Աւետարանը՝ 1336 թ.—Ձեռ. Ագուլ. (Արրտ. 1911, 387)։

— 30. **Անանիա**, գրիչ. իր մորեղբայր Նորոգէսի համար օրինակեց մի ժողովածու, Ըրզնկայի Ս. Կիրակոս անապատում, 1364 թ.— Ձեռ. Վիեն. 17 բ։

— 31. **Անանիա**, որդի Իվանի Պահլաւունու, հայր Պետրոսի, որ շինեց Թէոդոսիայի բերդը (ԺԴ դար).—Հայապ. 582։

— 32. **Անանիա** վարդապետ, իր եղբայր Եղիա կրոնավորի հիշատակին կանգնեցրեց մի խաչքար, 1402 թ.—Նոտարք 16։

—33. **Անանիա** դպիր, որդի Մովսէս երէցի, որ Կամախի Աւագ վանքին նվիրեց մի հին Աւետարան, 1407 թ.— Թորոս Աղբար, Բ. 304։

— 34. **Անանիա** կրոնավոր, գրիչ. Հռոմկլայի Խալիֆի գյուղում օրինակեց Աւետարանը, 1464 թ.—Թորոս Աղբար, Բ. 463։

— 35. **Անանիա** արքեպիսկոպոս, նվիրակ գնաց Էջմիածնից Իլվով, «1467 թ».—Ազգապ. 2175, Նոտարք 228։

— 36. **Անանիա** աբեղա. գրիչ. Հերմոնի վանքում. Ստեփաննոս քահանայի համար օրինակեց Աւետարանը, 1469 թ.—Ձեռ. Թաւր. 132։

— 37. **Անանիա** դպիր, եղբորորդի Զաքարիա աբեղայի, որ ստացավ մի Աւետարան, 1487 թ.—Ձեռ. Հալէպի, Ա. 27 ա։

— 38. **Անանիա** կաթողիկոս, հիշված է 1653 թ. Տրապի-

զոնում գրված մի հիշատակարանում (Թորոս Աղբար, Բ. 340). բայց այս թվին այս անունով կաթողիկոս չկա ոչ էջմիածին, ոչ Սիս և ոչ էլ Աղթամար։

+ԱՆԱՆՈՒԽ, մր. < հյ. անանուխ «նանա, mentha» բուսանունից. Թվում է թե իբրև անձնանուն գործածվել է երբեմն, որին ապացույց եմ համարում Անուխենց ազգանունը Ակնում, ԺԸ դարից (տես Տաշեան, Ցուց. 703—704)։ Անանուխ բառը կրճատմամբ դարձել է նախ Անուխ, ապա Նուխ. բայց այս բառը կարող էր նաև լինել մականուն և ոչ թե անձնանուն։

+ԱՆԱՆՈՒՆ, ար. < հյ. ան-անուն «անուն չունեցող» բառից։ Համարվում է Աբգարի որդին, որ թագավորեց Եդեսիա քաղաքում, 34—37 թ. (ըստ Զամչ.)։ Ուրացավ քրիստոնեությունը, մեհյանները նորից բաց արեց և նահատակեց Ադդէ եպիսկոպոսին։ Ինքն էլ իր պալատի նորոգության ժամանակ մի սյունի տակ մնալով՝ ջախջախվեց։—Խոր. Բ. լգ, (լե). Ուխտ. Ա. խ. Արծր. Ա. գ. Ասող. Ա. ե. Սամ. անեց. 54. Շնորհ. վիպ. 302. Մխ. անեց. ի. Յայսմ. դեկտ. 21.—որ և Անանէ՝ Յայսմ. դեկտ. 21.— Անան՝ Զքր. սարկ. Ա. 2. Մին. համդ. 19.—(Միխ. աս. գ՝ Աբգարի որդի Անանունին կոչում է Սեւերոս.— ըստ Լաբուբ. էջ 30՝ Աբգարի որդին է Մաանու. բայց գահակալած ժամանակ անունը չի տրված (անդ՝ էջ 48), որի համար էլ Խորենացին կոչում է Անանուն (տես Կարրիէր, Աբգարու դրույցը, էջ 101.—Մխ. այրիվ. 18 բնավ չի հիշում Անանունին և Աբգարից անցնում է անմիջապես Սանատրուկին)։—Զամչ. Ա. 294—5, 587։

+ԱՆԱՆՑ, մր. < հյ. ան-անց «որ չի անցնի, չի վերջանալ, մնայուն» բառից. ըստ այսմ համազոր է հյ Մնացական, թրք. Դուրսուն, Ղալասան և իտալ. Dante (իմա durante «տևական») անուններին։ Այս գեղեցիկ անունը միայն մի անգամ գտնում եմ գործածված ԺԴ դարում։

—Անանց, հիշված է 1334 թվին Վայոց ձորի-Գլաձոր վանքում գրված մի Ավետարանի հիշատակարանում, որ կրճատ ձևվով մեջ է բերում Թորոս Աղբար, Բ. 375։

*ԱՆԱՍՏԱՍ, ար. < հուն. 'Αναστάσιος անունից, որ է ἀνάστασις «հարություն»։ Սրանից են առաջացած լտ. գերմ. անգլ. Anastasius, ֆրանս. Anastase, ռուս. Анастасий են։ Պատմության մեջ հայտնի են օր. Անաստաս Ա կայսր Բյուզանդիոն 491—518 թ., Անաստաս Բ կայսր Բյուզանդիոն 713—716 թ., Անաս-

**տաս** *պատրիարք Անտիոքի 561—599 թ.,* **Անաստաս** *Ա պապ Հռոմի 398—402 թ.,* **Անաստաս** *Բ պապ Հռոմի 496—498 թ.,* **Անաստաս** *Գ պապ 911—913 թ.,* **Անաստաս** *Դ պապ Հռոմի 1153—4 թ.,* **Անաստաս** *պատրիարք Հունաց Կոստանդնուպոլսի 730—754,* **Անաստաս** *Ա պատրիարք Հունաց Երուսաղեմի 458—478,* **Անաստաս** *Բ 639—706,* **Անաստաս** *պատմիչ լատին (Թ դար) ևն։ Մեր մատենագրության մեջ հայտնի է Անաստաս քահանա Սինայեցի միայնակեաց, որի աղոթքներից մի քանիսը թարգմանված են հայերենի (տես Տաշյան, Ցուց. 1058 ա, Ձեռ. Հալեպի, Ա. 347 ա, Թորոս Աղբար, Բ. 396, Ձեռ. Թավր. 85 ա)։ Այս անունը մեր մեջ գործածվել է Զ—ԺԴ դարերում, այնուհետև թարգմանվեց հայերեն* Յարութիւն *և հունական ձևը վերացվեց։*

— 1. **Անաստաս** *եպիսկոպոս Գողթն գավառի (Զ դար).— Օրբ. ի։*

— 2. **Անաստաս** *Ա. Ակոռեցի, կաթողիկոս Հայոց «661—667 թ». հաջորդեց Ներսես Շինողին, որի սենեկապետն էր և նրա կենդանության ժամանակ Զվարթնոց եկեղեցու շինության վերահսկիչ։ Կաթողիկոս ժամանակ Ակոռիում շինեց մի վանք, հյուրատուն և աղքատանոց։ Հրավիրեց Անանիա Շիրակացուն՝ Հայոց շարժական տոմարը վերածելու անշարժի («665 թ»), բայց շուտով մահը վրա հասնելով՝ գործադրությունը խափանվեց։ Իրեն հաջորդեց Իսրայելը։—Ցհ. կթ. ի. Ցհ. կթ. հյր. 275. Եղն. եր. 268. Կղկնտ. Բ. իէ. Վկ. դաս. 87. Ասող. Բ. բ. Սամ. անեց. 84։ Փճնպ. 271. Մխ. անեց. դ. Օրբ. հա. Կիր. 35. Վրդ. լղ. Մխ. աս. իթ (=իը). Մխ. այրիվ. 21. Ցայսմ. մրտ. 31 (կոչում է Անաստաս կաթողիկոս Արճոյ). Տաթև. հարց. 545.—սեռ.* **Անաստասայ**՝ *Ցհ. կթ. ի. Ասող. Բ. բ. Կիր. 35. Վրդ. լզ. Վկ. դաս. 87.— Վրաց աղբ. Ա. 47, 78, 80. Չամչ. Բ. 360—61, 377. Ազգապ. 745—750, Այրարատ 472 բ։*

— 3. **Անաստաս** *վարդապետ, եղել է Երուսաղեմ, տեսել Պաղեստինի հայոց 70 վանքերը և Համազասպ Կամսարական Պահլավունի իշխանի խնդրանոք գրել նրանց նկարագրությունը։ Այս գրվածքը կոչվում է «Վասն վանորէից, որ ի Ս. քաղաքն յԵրուսաղէմ»։ Այնուհետև այս գրվածքը բերել է Ծոփաց գավառը (Է դար).—Ջարբ. Հին դպր. 229—30, Թրգմ. 296, Ազգապ. 1153, 1827, Հայապ. 74 և 227—9, Ձեռ. Վենետ. Բ. 829։*

— 4. **Անաստաս** *կաթողիկոս Աղուանից՝ 742—746. հաջոր-*

դեց Միքայէլի.—Կղկնտ. Գ. իդ. Մխ. այրիվ. 24. Հայապ. 384.—Կիր. ը կոչում է սրան Անանիա։

— 5. Անաստաս վարդապետ, նշանավոր գիտնական (775 թ).—Կիր. 40, Սամ. անեց. 89. Մխ. այրիվ. 67.—Ազգապ. 1153 նույն է համարում Երուսաղեմի Անաստաս վարդապետի հետ (№ 3)։

— 6. Անաստաս, որդի Ներսէս քահանայի, որ Մկրտիչ երէցին գրել տվեց Մանրուսմունքը՝ 1340 թ.—Տաշեան, Ցուց. 499 բ։

*ԱՆԱՍՏԱՍԻԱ, իգ. < հուն. Ἀναστασία, որ Ἀναστάσιος> Անաստաս անվան իգականն է և նշանակում է «յարուցեալ»։ Սրանից են ֆրանս. Anastasie, ռուս. Анастасия ևն։ Այս անունով հայտնի է Անաստասիա նահատակուհի հովմայեցի, որ նահատակվեց Ներոնի ժամանակ։ Մեր մեջ հիշված եմ գտնում միայն մի անգամ ԺԸ դարից՝ Ձեռ. Թաւր. 18 բ (Ռնաստասիայս ձևով)։

ԱՆԳԵՂ, ար. ծագումն անհայտ։

— 1. Անգեղ, հին հայկական մի աստվածություն էր ըստ Դարագաշեան, Քնն. պատմ. Ա. 250, ըստ որում Դ Թագ. ժէ 30 սեմականների נרגל Nergāl աստվածը, որ հունարեն տառադարձված է Ἐργέλ, հայերեն Ս. Գրքում զարմանալի կերպով թարգմանված է Անգեղ։ Ադոնց ևս REA 7, 187 համարում է Տորք-Անգեղ աստվածը, որ տես Տորք։

— 2. Անգեղ, երկրորդ անուն Փառնաւազ հայկազն թագավորի որդի Բազարատի (տես այս անունը)։

+ԱՆԳԻՆԷ, իգ. < հյ. անգին «գին չունեցող, շատ թանկագին» բառից՝ նորահնար անուն, որ ձևավորված է այսպես, Եւգինէ, Վերգինէ անունների նմանությամբ։ Գործածական է Պոլսում (օրինակ՝ Կարապետեան, Ցիշատ. Սամաթիայի, էջ 245)։

ԱՆԴՈՎԿ, ար. ծագումն անհայտ։

— Անդովկ Սիւնի, Արշակ Բ-ի կնոջ՝ Փառանձեմ թագուհու հայրն էր և փեսա Մամիկոնեանց։ Խոսրով Բ թագավորի («330—339») վերջին տարիներում նշանակվեց Արտաւազդ Մամիկոնեանի խնամակալ։ Տիրան Բ-ի հրամանով ուղեկցեց Փառէնին Կեսարիա՝ կաթողիկոսական ձեռնադրության համար «348 թ»։ Դեսպան ուղարկվեց Բիւզանդիոն՝ խնդրելու Արշակ Բ-ին թագավորեցնել Հայոց վրա («350 թ»)։ Արշակը թագավոր դառնալով նշանակեց նրան նահապետ Սիւնեաց, Վաղինակ Սիւնու փոխանն։ Երբ Մեծն Ներսէս ընտրվեց կաթողիկոս, Կեսարիա օծման

տանող շքախմբի անդամներից մեկն էլ ինքն էր («353 Թ»)։ Եղավ Տիգրանակերտի վերակացու և հետ մղեց Շապուհի պաշարումը. բայց երկրորդ անգամ չարաչար հաղթվեց։ Ապստամբեց Շապուհի դեմ և 2½ տարի Սիւնիքը անկախ պահեց։ Այնուհետև գնաց Հունաստան, ուր և մեռավ։ Իր որդին է Բաբիկ Սիւնի և թոռն է Վասակ Սիւնի մարզպանը։—Անունը ավանդված է բազմազան ձևերով.—Անդովկ՝ Բուզ. Գ. ժգ, իա. Դ. դ, ի.—Անդոկ՝ Օրբ. գ—ը.—Անդուովկ՝ Բուզ. Գ. իա.—Անդոյկ՝ Բուզ. Դ. ի.—Անդուկ՝ Մեսր. եր. 25.—Անտիոք՝ Խոր. Գ. իդ, իզ.—սեռ. Անդովկայ Բուզ. Գ. ժա. Դ. ժե, ի.—Անդոկայ՝ Կղկնտ. Բ. ա. Ասող. Բ. ա, Օրբ. ը, թ, ժբ. ժե, լը, ծդ.—Անդոկեայ՝ Մեսր. եր. 43.—Անդուկայ՝ Բուզ. Դ. ի, ծը.—գրծ. Անդուկաւ՝ Բուզ. Դ. ծա։—Չամչ. Ա. 444—452, Սիսական 10, 11, 17, 210, 294։

+ԱՆԴՈՒԼ, տր. < հյ. Անդուլ «անդադար» բառից։ Այս անունով հայտնի է միայն՝

—Անդուլ ոմն կրոնավոր, որի մոտ գնաց Ակիթը՝ Ղազար Փարպեցուց հեռանալուց հետո (Ե դար).—սեռ. Անդլոյ՝ Փարպ. էջ 196։

+ԱՆԴՐԱՆԻԿ, տր.<հյ. անդրանիկ «մեծ, երեց, ավագ» բառից։ Մեծոփ. 26 ասում է թե Մակաբայեցի 7 եղբայրներից առաջինի անունն էր Անդրանիկ (մյուսներն էին Ակար, Մակար, Խորէն, Խորսէն, Ամինադար, Գադիէ)։ Մակաբայեցոց Բ գրքի Ե գլխում պատմվում է 7 եղբայրների նահատակությունը. նրանց անունները են Ակար, Մակար, Խորէն, Խորսէն, Ամինադար, Գալիլէ և Գադիգէ։ Սրանք բոլորն էլ նույնն են Մեծոփեցու տված անունների հետ, բացի վերջինից, որ կրտսերն է և պակասում է Մեծոփեցու մոտ։ Մեծոփեցին առաջին որդին կոչում է Անդրանիկ, որ գոյություն չունի Մակաբայեցոց գրքում, ուր առաջինն է Ակար։ Բայց Անդրանիկ անվան հիշատակությունը ցույց է տալիս, որ Մեծոփեցու ժամանակ (ԺԵ դար) այս անունը գոյություն ուներ մեր մեջ և իրոք էլ ունինք մի վկայություն այս ժամանակից, և նույն իսկ Ժ դարից (տես տակը)։ Ավելի ուշ հիշատակված գտնում եմ 1789 թվին (տես Կարապետեան, Յիշատ. Սամաթիոյ, էջ 301)։ Պոլսում աղավաղյալ ձևով ասվում է Անթառանիկ։ Չպետք է շփոթել Անդրոնիկ անվան հետ, որ բոլորովին տարբեր է (տես առանձին)։

—1. Անդրանիկ Մոկացի, զորավար. Գրիգոր, Բագրատ և

Ռոմանոս Տարօնցիների հետ մտել էր Վարդ Սքլերոսի բանակը և կռվում էին Հունաց Վասիլ Բ Բուլղարասպան կայսեր դեմ (976)։—Տէր Սահակեան, Հայ կայսերք, Բ. 236։

— 2. Անդրանիկ արքեպիսկոպոս Թէոդոսիայի, որին գրեց Կոստանդին կաթուղիկոսը՝ Ֆլորենտիայի պապական ժողովի առթիվ (1438).—Գալճեանց 87, 90։

*ԱՆԴՐԷԱՍ, ար. < հուն. Ἀνδρέας անունից, որ ծանոթ է Հերոդոտի ժամանակից. բուն նշանակում է «առնական»։ Հմմտ. ἀνδρεία «առնականություն» և ἀνδρεῖος «առնական»։ Սրանից են լտ. գիրմ. Andreas, ֆրանս. André, անգլ. Andrew, ռուս. Андрей, փաղաք. Андрюша են։ Այս անունով հայտնի են՝ Անդրեաս առաքյալը, որ Պետրոս առաքյալի եղբայրն էր, Անդրեաս եպիսկոպոս Կեսարիոյ, կոչված Անդրէաս մեծն, որ ունի Յովհաննու Յայտնութեան մեկնութիւնը, որ և հայերենի թարգմանեց Ներսէս Լամբրոնացին (Տաթև. ձմ. ճլը)։ Կա նաև Անդրեաս Բ թագավոր Հունգարիայի (1205—35), որ մասնակցել է Խաչակրաց հինգերորդ արշավանքին։ Մեր մեջ գործածական է եղել Ե դարից և մինչև այժմ էլ կենդանի է։ Ժողովրդական ձևով ասվում է Անդրիաս (որի վկայությունը ունինք 1208 թվից՝ Ձեռ. Վենետ. Ա. 389, 1442 թվից՝ Ձեռ. Նոր-Բայազ. 17), Պոլսում Անդիրյաս, Ագայում՝ Ընդրյազ, Կովկասում՝ ռուսականի օրինակով ասվում է հաճախ Անդրե, Անդրեյ, Անդրյուշա։ Գրված եմ գտնում նաև Անդրաս՝ 1330 թ. (Ձեռ. Թուր. 2 ա), 1469 թ. (Ձեռ. Վենետ. Բ. 1113), Ընդրիաս, Ընդրաս՝ 1321 թվից հետո գրված անթվական մի հիշատակարանում (Ձեռ. Ագուլ.=Արրտ. 1911, 565)։

— 1. Անդրեաս երեց, աշակերտ Ս. Սահակի, վանական Մշու Առաքելոց վանքի. Վարդան Մամիկոնեանի դուստր Շուշանիկից ստացավ Ս. Նունէի խաչը և Վրաստանից տարավ թաքցրեց Գարխար լեռներում։ Ավելի ուշ հայտնեց Հմայեակ Մամիկոնեանի թոռ Գրիգորին, որ նույն խաչը փոխադրեց Կապոյտ բերդը։ Անդրէասը ճգնական կյանքով ապրեց ու մեռավ (Ե դար)։—Յայսմ. մրտ. 30. Մխ. այրիվ. 62. —սեռ. Անդրեասայ՝ Վրդ. կղ.—Զամչ. Ա. 536, Բ. 87. Զարբ. Հին դպր. 297. Հայապ. 44, 66։

— 2. Անդրեաս վանահայր Գլակայ վանից, հաջորդ Գրիգորի (Զ դար)։—Մամիկ. ա. Հայապ. 69։

— 3. Անդրեաս եպիսկոպոս Արցախու, հաջորդեց Մեհրի (Է դար).—Կղկնտ. Բ. ծ.—սեռ. Անդրեի՝ Կղկնտ. Բ. ծ. (հրտր. Շահն. ուղ. Անդրէ ձևով)։

—4. **Անդրեաս** քահանա, իր եղբայր Գէորգ քահանայի հետ Մլքե թագուհուց նվեր են ստացել մի Ավետարան՝ Վարագայ վանքի համար, 902 թ.—Ձեռ. Վենետ. Ա. 385։ Այս հիշատակությունը կեղծ է, որովհետև նույն երկու քահանաները հիշատակում են նաև, որ Մլքե թագուհու սույն Ավետարանը ազատել են հափշտակիչների ձեռքից և նվիրել Վարագայ վանքին, 1208 թ. (Ձեռ. Վենետ. Ա. 389 և Տաշեան, Ակնարկ 19)։ Այդ քահանաները չէին կարող ապրել 300 տարի, ուստի գոնե առաջին հիշատակությունը սուտ է։

—5. **Անդրեաս** առաջնորդ Մրենի վանքի. հիշված է մի կիսկատար արձանագրության մեջ, իբր ժամանակակից Գագիկ Ա Շահնշահի («990—1020 թ»).—Շիրակ 136։

—6. **Անդրեաս** Թոնդրակեցի, առաջնորդ Ծզնավորաց մենաստանի, որ հիմնեց Թոնդրակեցի Վրվէռ իշխանը (ԺԱ դար).—Լաստ. իգ, Տաշեան, Ցուց. 358 ա։

—7. **Անդրեաս** վարդապետ Խծկօնից վանքի, 1208 թ.—Շիրակ 129, որից Նոր վկ. 94։

—8. **Անդրեաս** վարդապետ, առաջնորդ Հոռոմոսի վանից. հիշատակված է երկու արձանագրության մեջ (Շիրակ 21 բ, 23 ա), որոնք թեև թվական չունին, բայց ժամանակակից լինելով Անիի արքեպիսկոպոս Գրիգորի Ապուղամրենց (1215—27), որոշում են թվականը։

—9. **Անդրեաս** իմաստասեր, ատենադպիր Հեթում Ա «1226—70» թագավորի. հիշված է ջանցլերների շարքում, 1243—1261 թվերի միջև.—Սիսուան 485, 516։

—10. **Անդրեաս** կրոնավոր, ազգական Մխիթար Սասնեցու, որ 1270 թվին աշակերտ մտավ նրա մոտ՝ Բաջբերունեաց Կերմանից գյուղում.—Մկ. մեծոփ. 28։

—11. **Անդրեաս** վանահայր և առաջնորդ Բագնայրի վանից, 1289 թ.—Շիրակ 123 բ։

—12. **Անդրեաս** քահանայ, որդի Թորոսի և եղբայր Վարդան քահանայի, որ Թորոս գրչին գրել տվեց մի Ավետարան, 1280—1320 թվերին.—Ձեռ. Թաւր. 27 բ։

—13. **Անդրեաս** եպիսկոպոս Հարգանի, անդամ Սսի կրոնական ժողովի «1307 թ».—Չամչ. Գ. 309, Սիսուան 164, Ազգապ. 1786։

—14. **Անդրեաս** կրոնավոր, եղբայր Գրիգոր գրչի, որ Ակ-

ների վանքում օրինակեց Պօղոսի Թղթերի Մեկնութիւնը՝ 1325 թ.—Ձեռ. Վենետ. Բ.572։

— 15. Անդրաս որդի Սարգիս քահանայի, որ Բզնունեաց Աղէթ գյուղում ստացավ մի հին Ավետարան, 1330 թ.—Ձեռ. Թաւր. 2 ա։

— 16. Անդրեաս եղբայր Գրիգոր գրչի, որ օրինակեց Ավետարանը Ձորոյ վանքում, 1334 թ.—Ձեռ. Վենետ. Ա. 698.

— 17. Անդրեաս կուսակրոն քահանա, Այրարատի Կոշ գյուղից. որդի Բոխիթի. գնացել էր Կիլիկիա և այնտեղ, Սիս քաղաքում, Սարգիս քահանային գրել և ծաղկել տվեց մի գեղեցիկ Ավետարան, 1336 թ.—Ձեռ. Վասպ. 184—5։

— 18. Անդրեաս, հայր Գրիգոր գրչի, որ Աղթամարում օրինակեց Ավետարանը՝ 1355 թ.—Ձեռ. Վասպ. 204։

— 19. Անդրեաս եպիսկոպոս. եկավ Սիս և Մխիթար կաթուղիկոսի մոտ տեսնելով մի շատ գեղեցիկ ոսկենկար ծաղկազարդ Ավետարան, որ գրել էր Սարգիս քահանան 1350 թվին, գնեց և նվիրեց եկեղեցուն։— Ձեռ. Թեհր. (ՀԱ 1935, 312)։ Նույն է արդյոք՝

— 20. Անդրեաս եպիսկոպոս. գրել տվեց Սարգիս քահանային մի Ավետարան, 1350. թ.—Ձեռ. Դաշեան, Բ. 55 բ։

— 21. Անդրեաս վարդապետ, տաղասաց. ունի տաղեր ու գանձեր, որոնք մտել են Manus. brit. mus. 117 ա, որ գրված է 1412 թվին, և մի Գանձարանի մեջ, որ գրված է 1424 թվին (Ձեռ. Լվով=ՀԱ 1937, 118)։ Ըստ այսմ հեղինակը պետք է լինի ամենաուշը ԺԴ դարից։ Հմմտ. տակը երկու ուրիշ տաղասաց՝ Անդրէաս անունով։

— 22. Անդրեաս, եկեղեցպան Երուսաղէմի Ս. Փրկիչ տաճարի, հոգևոր եղբայր Բաբերդցի Վարդան քահանայի (վերաբնակյալ Խրիմ), որ Երուսաղէմում օրինակեց Ավետարանը և նվիրեց նույն Անդրէասին, 1372 թ.—Ձեռ. Վասպ. 222։

— 23. Անդրեաս, գրիչ. օրինակեց Ավետարանը Խողձայ երկրում, 1391 թ.—Ձեռ. Վասպ. 225։

— 24. Անդրեաս աբեղայ Սուխարայ վանից, 1414 թ.— Rapport Arm. 6։

— 25. Անդեաս, հայր խոջա Ասոմի, որ միջնորդել է Թումա գրչի մոտ՝ գրելու Աղթամարում մի Ավետարան՝ Խաչատուրի համար, 1418 թ.—Ձեռ. Վասպ. 312։

— 26. Անդրիան կամ Անդրիանոս, կրոնավոր, եղբայր

«մեծ հռետոր»․ Յակոբի, որ էր առաջնորդ Կոզուց վանից՝ 1428 թ.—Տաշեան, Ցուց. 583 բ, 584 բ։

— 27. Անդրէաս, հայր Մեծխաթունի, որ Երզնկայում, Ղազար աբեղային գրել տվեց մի Աւետարան, 1431 թվին.—Ձեռ. Վեննետ. Ա. 663։

— 28. Անդրէաս, հայր Յարութիւնի, որ Կաֆայի ազնվական քաղաքացիներից էր և որին ի մէջի այլոց գրեց Կոստանդին կաթուղիկոսը՝ Ֆլորենտիայի ժողովի առթիվ (1438).—Գալճեան 87։

— 29. Անդրէաս։ որդի Մկրտչի. գնեց մի հին Աւետարան, 1442 թ.—Ձեռ. Նոր-Բայազ. 17 բ, Սմբատեանց, Գեղարքունի 55։

— 30. Անդրէաս, որդի Մելքիսեթ երեցի, որ օրինակեց Գանձարանը՝ Աւան գյուղում, 1453 թ.—Bodleian 134։

— 31. Անդրէաս կրոնավոր, օգնեց Ղազար գրչին՝ արտագրելու Յայսմաւուրքը Լիմ կղզում, 1457 թ.—Ձեռ. Թաւր. 102—103 ա։

— 32. Անդրէաս քահանա, որդի գրակալ Վարդանի, որ Արճէշում, Յովհաննէս քահանային գրել տվեց մի Աւետարան, 1460 թ.—Ձեռ. Թաւր. 66 բ։

— 33. Անդրէաս երեց Եւդոկիացի, որդի Շնորհաւորի, գրիչ. օրինակեց Աւետարանը՝ պարոն Կոստանդի համար, 1463 թ.—Ձեռ. Սեբ. (ՀԱ 1925, 132—133)։

— 34. Անդրէաս հայր Աստուածատուր տանուտերի, որ Ուշտունեաց Բերդաձորի վանքում, Մարգարէ գրչին գրել տվեց մի Աւետարան, 1463 թվին.—Ձեռ. Վասպ. 443։

— 35. Անդրեաս, կրոնավոր, միաբան Տեղերի վանուց. մեռած էր արդեն 1469 թ.—Ձեռ. Վեննետ. Բ. 1113։

— 36. Անդրէաս եպիսկոպոս Կեսարիայի, 1476 թ.—Rapport Belgique 34։

— 37. Անդրէաս քահանա, որդի Շնոփորպարոնի և եղբայր Գրիգոր նկարչի, որ Սեբաստիայում, Փիլիպպոս եպիսկոպոսին գրել տվեց մի Աւետարան, 1485 թ.—Ձեռ. Վեննետ. Ա. 598։

— 38. Անդրէաս երեց. գրիչ. Կաֆայում օրինակել է Գր. Տաթևացու Լուծմունք Պորփիւրի Ներածութեան, 1492 թ.—Ձեռ. Կարին. 196։

— 39. Անդրէաս Մերդինցի, պարոնտէր. հորեղբորորդի և աթոռակից Աստուածատուր Բ Մերդինցի պատրիարքի Երուսաղէմի, որ նստեց «1562—1564 թ». (իսկ «ըստ այլ աղբյուրի»

նստել է «1542 թ». գնաց Պոլիս «1555 թվին» և հունաց Գերմանոս պատրիարքի դեմ դատ բանալով՝ Երուսաղեմի կալվածները ետ առավ։ Աստուածատուրի մահից հետո ինքը գահակալեց «1564—1593 թվերին»։ Դիմելով Տաճկաց կառավարության, ջընջել տվեց բաշ կոչված տուրքը, որ մահմեդականները պահանջում էին միաբաններից և ուխտավորներից, և առհասարակ վանքի բոլոր կալվածների համար այլազգիների ոտնձգությունների դեմ հրամանագիրներ հանեց։ Վերջին տարիներում գահակից ուներ իր եղբորորդի Դավիթ Մերդինցուն։—Ազգապ. 2235։

— 40. **Անդրէաս** վարդապետ. գանձասաց. իր գանձերից մեկը տես Ձեռ. Դաշեան, Մ. 32 ա.—ժամանակն անհայտ է. բայց ամենաուշը պիտի լինի ԺԶ դարից, որովհետև ձեռագիրը ԺԶ դարումն է գրված։ Տաշեանն էլ իր Ցուցակում (տես էջ 467, 964, 986 և 311) ունի **Անդրէաս** ոմն տաղասաց (ԺԷ դարից), որ թվի թե նույն անձն է։ Բայց սրանից տարբեր է երևում Անդրէաս Արծկեցին (№ 43)։

— 41. **Անդրէաս** քահանա. ծնվել էր Նախիջևանում. երբ Շահաբաս Ա. ավերեց այս քաղաքը, Անդրէասի ծնողները փախան Ագուլիս և մանուկ Անդրէասին ուսման տվին։ Ուսումը ավարտելուց հետո դարձավ քահանա և Ագուլիսի դպրոցի դպրապետ կարգվեց։ Օսմանցոց Օքուզ Ահմէդ փաշայի դեմ արշավելու ժամանակ՝ Շահաբասը եկավ Ագուլիս. ամբողջ ժողովուրդը, եկեղեցական դասը, ինչպես և Անդրէաս քահանան իր աշակերտներով մեծ ընդունելություն ցույց տվին շահին։ Աշակերտների մազերը խուզած էին. շահը մտածեց թե այդ դիտմամբ է արած, որպեսզի աշակերտները տգեղանան և շահը չխլի նրանց։ Ուստի հրամայեց նրանց, որոնք խուզել են աշակերտների մազերը, բռնել և սպանել։ Անդրէաս քահանան տեսնելով որ բազմաթիվ ծնողներ պիտի սպանվին, հանցանքը իր վրա առավ։ Շահը հրամայեց ծեծել, բանտարկել և չարաչար տանջել նրան, և կամ հավատքը ուրանալ ու ազատվել։ Անդրէասը չուրացավ իր հավատքը և դաժան տանջանքներով նահատակվեց «1617 նոյ. 18»։—Սամ. անեց. շար. 177=Առաք. պատ. 165, 215, 492. Ջամչ. Գ. 590—591։ Ընդարձակ վկայաբանությունը տես Առաք. պատ. գլ. ԻԷ, որից Նոր վկ. 423—433։ Մտել է նաև Յայսմաւուրքի մեջ։

— 42. **Անդրէաս** քահանա, մականուն Ճէհէննէմ մէրտիվէնի (դժոխքի սանդուխ). գլուխ Թըլթըլեան կուսակցության. ամբո-

խավար. տապալեց Պոլսի Յովհաննէս Թոփալ պատրիարքին և գահ բարձրացավ «1675 թ». բայց մի տարուց տապալվեց։— Չամչ. Գ. 715—7. Երեմ. չել. օրագր. 129, 163, 165, 185—6, 199, 408. Ազգապ. 2604։

— 43. **Անդրէաս** Արծկեցի, տաղասաց. սրա թրքախառն աշուղական մի տաղը հիշում է Տաշեան, Ցուց. 862 բ՝ 1765 թվից։ Սրանից տարբեր են № 21 և № 40 նույնանուն տաղասացները։

*ԱՆԴՐԻԱՆՈՍ, տես **Ադրիանոս**։

— **Անդրիանոս** (կամ Ադրիանոս) Սպերացի, Տաճատ Բաբերդցու հետ միասին ապստամբեցին Հունաց Ռոմանոս Լեկաբենոս հայազգի կայսեր դեմ (936)։ Այս կայսեր Կոստանդին որդին ամուսնացավ Ադրիանոսի դստեր Հեղինէի հետ, որ սակայն երեք շաբաթից մեռավ (941)։—Տէր Սահակեան, Հայ կայսրեր, Բ. 483—484։

+ԱՆԴՐԻԿ, ար. այժմ փաղաքշական ձևն է համարվում **Անդրոնիկ** անվան. բայց հնում կարող էր լինել նաև **Անդրէաս** անունից. հիշատակված է ԺԶ—ԺԷ դարերում։

— 1. **Անդրիկ** մահտեսի, հայր Գրիգոր երեցի, որ Տոմարզծայ գյուղում օրինակեց Գանձարանը՝ 1576 թ.—Ձեռ. Սեբ.= ՀԱ 1927, 314։

— 2. **Անտրիկ** (սեռ. Անտրեկան), հայր Սսեցի Գրիգորի, որ Մելքոն քահանային գրել տվեց մի Ավետարան, 1636 թ. Ձեռ. Հալէպի, Ա. 355 բ—356 ա։

*ԱՆԴՐՈՆԻԿՈՍ, ար. < հուն. Ἀνδρόνικος անունից, որ նշանակում է «արանց յաղթանակ» (ծագում է ἀνήρ ἀνδρός «այր, տղամարդ»+ νικάω «հաղթել» բառերից). սրանից են նաև լտ. Andronicus, ռուս. Андроник, ֆրանս. Andronic, իտալ. Andronico են։ Հայտնի են պատմության մեջ **Անդրոնիկոս** հնագույն լատին դրամատիկական բանաստեղծը՝ ծագմամբ հույն (Ն. Ք. Գ դար), **Անդրոնիկոս**՝ քերականագետ Սիւրիացի, **Անդրոնիկոս** հրյաքրիստոնյա, բանտակից Պօղոս առաքյալի (Հռովմ. ԺԶ 3), **Անդրոնիկոս** Նահատակ, ընկեր Տարագոսի (Յայսմաւուրքից), **Անդրոնիկոս** փիլիսոփա, որի գրության հայ թարգմանությունը հիշում է Մագիստրոսը, **Անդրոնիկոս** Ա Կոմնենոս, կայսր Հունաց 1183—1185, **Անդրոնիկոս** Բ Պալէոլոգ, կայսր Հունաց 1283—1328, **Անդրոնիկոս** Գ. (մոր կողմից հայ. Հեթում Բ թագավորի Մարիամ քրոջ որդին էր, Չամչ. Գ. 296, 325), կայսր Հունաց

1325—28, Անդրոնիկոս Դ. Պալէոլոգ, կայսր Հունաց 1377-78, Անդրոնիկոս կեսար, հորեղբորորդի Մանուէլ Կոմնենոս կայսեր, զորավար հունաց, որ արշավեց Կիլիկիա 1152 թվին և չարաչար հաղթվեց Թորոս Բ-ից: Մեր մեջ 2 անգամ գործածված է Անդրոնիկոս ձևով, այժմ գործածական է Անդրոնիկ ձևով և շփոթվում է Անդրանիկ անվան հետ:

— 1. Անդրոնիկոս, քահանայ Անարզաբայի Ս. Աստուածածին եկեղեցու, 1314 թ.—REA 2, 283, Զարբ. Թրգմ. 265:

— 2. Անդրոնիկոս քահանայ, գրիչ. «յաշխարհն Ցուանկաց, ի քաղաքն Սայլեռ, ընդ հովանեաւ Ս. Կարապետի» օրինակեց Նարեկը՝ 1327 թ.—Ձեռ. Կարին. 172:

Անգալաս տե՛ս Ընջուղ:

ԱՆԸԼՀԵՐ, իգ. ծագումն անհայտ. ունինք միայն՝

— Անըլհեր դուստր պարոն Խայտերի, որ գնեց մի հին Աւետարան (ԺԲ դար).—Rapport Arm. 52:

Անթազար տե՛ս Ինթիզար:

+ԱՆԹԱՌԱՄ, իգ. < հյ. անթառամ «անթարշամ, չթոռոմող» ածականից կամ համանուն ծաղկի անունից: Գործածված է ԺԵ դարից և մինչև այժմ էլ կենդանի է: Ժողովրդական ձևերն են՝ Գլ. Անթառամ, Սեբ. Անթառ, Թառուկ, Ղրբ. Թառի, Ագլ. Անթառամ, Անթի, Անթուկ:

— Անթառամ, դուստր Մելքիսեթ երէցի, որ օրինակեց Գանձարանը՝ Առան գյուղում, 1453 թ.—Bodleian 134:

— Սրանից ավելի ուշ եղած հիշատակություններն են՝ 1609 թ. (Bodleian 110), 1651 թվից (տե՛ս Մառ, Աժառն. ուղև. էջ 20), 1666 թվից (կրճատ ձևով գրված Թառամ՝ Ձեռ. Սանաս. 5 բ), որոնցից հետո գալիս են՝ 1691 թ. (Ձեռ. Վասպ. 246) և երկու անթվական հիշատակություն, մին գրված 1609 թվից ավելի ուշ (Ձեռ. Վենետ. Ա. 762) և մյուսը գրված 1214 թվից շատ ավելի ուշ (անդ, 594):

*ԱՆԹԻՄՈՍ, ար. < հուն. Ἄνθιμος անունից, որ բուն նշանակում է «ծաղկյալ»: Այս անունով հայտնի են՝ Անթիմոս եպիսկոպոս Նիկոմիդիոյ, նահատակ (Աւգեր. Լիակ. վրք. սրբ. Զ 137), Անթիմոս Ա. պատրիարք Հունաց Կոստանդնուպոլսի (536 թ), որ իբրև Եւտիքական դատապարտվելով գահազուրկ եղավ և աքսորվեց (Փափազեանց, Պատմ. եկեղ. 291): Այս անունը մեր մեջ ավանդված չէ, բայց նրա երբեմնի գործածության ապացույց է Անթիմոսեան ազգանունը:

*ԱՆԺԷԼ, իգ. < ֆրանս. Angélique անունից կրճատված. բուն նշանակում է «հրեշտակային». հայտնի է օրինակ՝ la belle Angélique «Գեղեցիկն Անժելիկ», Արիոստի «Կատաղի Ռոլան»-ի հերոսուհին։ Գործածական է Պոլսում Անժել ձևով, որ այժմ անցել է Կովկաս՝ Անժելիկ ձևով, փաղաքշականը՝ Անժիկ։ Հմմտ. նաև Անջիլի։

ԱՆԻ, ար. անստույգ անուն. հիշված է անթվական մի արձանագրության մեջ, իբր նվիրատու Թանատի վանից (Սիսական 123)։

ԱՆԻԱ, ար. թե իգ. ծագումն էլ անհայտ. հիշված է մի անգամ 1595 թ. (Այրարատ 293 ա)։

*ԱՆԻԿԱ, իգ. < արաբ. عنيقة anīqa «գեղեցիկ, սիրուն» բառից. միայն մի անգամ ունինք՝

— Անիգա, կին պարոն Սմբատի. ստացան մի Աւետարան. թվականն անհայտ.—Ջեռ. Սեբ. (ՀԱ 1924, 520)։

ԱՆԻԿԱՄ, իգ. ծագումն անհայտ. հիշված է մի անգամ 1649 թ. (Հնոց և Նորոց 127)։

*ԱՆԻԿՏՈՍ, ար. < հուն. Ἀνίκητος անունից, որ բուն նշանակում է «անհաղթ, անպարտելի» (α բացասականով կազմված՝ νικάω «հաղթել» բայից)։ Անսովոր անուն է. բայց պատահել եմ Պոլսում։

— Անիկտոս, գլխավորներից մին 45 հայ նահատակների՝ որոնք Փոքր-Հայոց Նիկոպոլիս քաղաքում (այժմ Շաբին-Կարահիսար) նահատակվեցան, իբր 319 թվին.—Աւգեր. Լիակ. վրք. սրբ. Դ. 107—133, հատկապես էջ 128։

ԱՆԻՍԱԴ, ար. ծագումն անհայտ. ավանդված է մի անգամ՝

— Anisades, որդի Զարիադրէսի, թագավոր Ծոփաց? կա սրա դրամը իր պատկերով և հետևյալ անորոշ արձանագրությամբ. Δσάρι Ἀνισάδω.—Justi 16։

*ԱՆԻՖԱ, ար. և իգ. ասվում է նաև Ենիֆ, Ենիֆայ Լենիֆայ, որոնք համապատասխանում են արաբ. آنف ānif آنفة ānifa «նախընթաց, ավելի առաջ» բառերին։ Իբր թե «նախածին, անդրանիկ զավակ»։ Հնագույն ձևն է Անիփիա (ԺԴ դար)։

— 1. Անիփիա, կին Հեճուպի. միասին նվերներ արին Վանեվանից Ս. Լուսաւորչին, 1320 թ։—Սիսական 62։

— 2. Անիֆա, կին Ստեփաննոս քահանայի և մայր Ղազար երեցի, որ Ցովհաննէս Մշեցուն օրինակել տվեց մի Աւետարան, 1402 թ.—Manus, brit. mus. 38 բ։

— 3. Ենիփ կամ Ենիփայ, Էնիֆայ, ար. հիշված է անթվական մի հիշատակարանում (Manus. brit. mus. 55 ա, 56 բ)։

ԱՆԿՈՒԼԱԾ, իգ. ծագումն ինձ անհայտ։ Հիշված է 1506 թ. Տրանսիլվանիայի Հայոց մեջ (Տաշեան, Ցուց. 55 ա). հմմտ. Է-նակոյրփ անունը։

+ԱՆՁՐԵՒ, ար. < հյ. անձրև բառից, ինչպես որ կա թրք. ياغمور yaġmur «անձրև»՝ դարձած անձնանուն. օր. Եաղմուր զորավար Լանկթամուրի (Այրարատ 274), որից էլ ձևացել է հյ. Աղմուր (տես այս անունը)։ Փաղաքշական ձևն է Անձրևիկ,

— 1. Անձրև, աշխարհական անունն է Գրիգոր Բ Վկայասէրի («1066—1105 թ»). տես Վահրամ։

— 2. Անձրևիկ. տես Երեմիա Անձրևիկ (ԺԲ դար)։

— 3. Անձրև, որդի Սարգսի, որ Ղազար գրչին գրել տվեց մի Աւետարան, Գամաղիէլի վանքում, 1468 թ.—Ջեռ. Վասպ. 451։

— 4. Անձրև խոջա Ցղնացի, որի կնոջը շատ էր պատվում Շահաբասը և «մայր» էր կոչել նրան։ Երբ Շահաբասը հրամայից տանջել ու բանտարկել Ագուլիսի Անդրէաս քահանային, Անձրևի կինը ընկավ նրա ոտները և գթություն հայցեց. բայց շահը նրան էլ չլսեց (1617). Առաք. պատմ. 276, Սիսական 342 բ, Նոր վկ. 427։

— 5. Անձրև, հիշված 1648 թ. Մոկաց Դաշտ գյուղում.—Ջեռ. Վասպ. 914 (տպ. Անրևկին?)։

+ԱՆՁՐԵՒԷՍ, ար. < հյ. անձրև բառից, բայց տարօրինակ է ածանցման ձևը։ Հիշված է մի անգամ՝

— Անձրևս ոմն, որ «տղայ» հասակում վախճանվել է.—Ջեռ. Վենետ. Բ. 1137 (հրատարակիչը՝ Հ. Բ. Սարգիսեան, համարում է որդի Վարդանի, որ օրինակել է ժողովածուն, 1220 թ?)։

+ԱՆՁՐԵՒՎԱՐԴ, իգ. < հյ. անձրև+վարդ բառերից, իբր թե «վարդ է անձրևում, անձրևի պես վարդ է թափում»։ Ունինք միայն մի անգամ՝

— Անձրևվարդ, հիշված 1684 թ.—Ջեռ. Դաղեան, Ա. 49 բ։

*ԱՆՂԱԼԱՏ, իգ. կազմված է ան բացասականով արաբ. غلط q̇alat «սխալ, թերություն» բառից և նշանակում է «անթերի»։ Գործածված է ԺԴ—ԺԶ դարերում, հետո խափանված։

— 1. Անխալաթ, մերձավոր Ներսէս աբեղայի, որ Երուսաղէմում գրեց Ճառընտիրը՝ 1335 թ.—Ջեռ. Վենետ. Բ. 348։

— 2. Անղալաթ, դուստր Արղունի՝ եղբոր Աղթամարի Զա-

*քարիս կաթուղիկոսի, որ նահատակվեց «1393 թ».—Ակինեան, Գաւաղանագիրք, էջ 110։*

— 3. Անղալատ, *քույր Մինասենց Թումայ աբեղայի, որ Աղթամարում օրինակեց Գանձարանը, 1445 թ.—Նոտարք 146։*

— 4. Անղալատ, *կին հյուսն Թումայի՝ հոր Ջանմիրզի՝ կնոջ տանուտեր Էլեքսանի, որ Աղթամարում գրել տվեց Աւետարանը (ԺԵ դար)։—Ձեռ. Վասպ. 545։*

— 5. Անղալատ, *հիշված 1567 թ. (Թորոս Աղբար, Բ. 257)։*

*ԱՆՆԱ, *իգ. < եբր.* חנה Xannā *անունից, որի բուն նշանակությունն է «շնորհ, գթություն»* (Gesenius *244—5)։ Սխալ է հների տված մեկնությունը՝ իբր «արարած Աստուծոյ». հմմտ. Արշար. 38 «Աննա, որ թարգմանի արարած Աստուծոյ»։ Իբրև իգական անուն գործածական էր Հրէից մեջ. այս անունով հայտնի են՝* Աննա *մայր Սամուէլ մարգարէի (Ն. Թ. 1171),* Աննա *մայր Մարիամ Աստուածածնի,* Աննա *մարգարէուհին (Ղկ. Բ. 36—38), նաև իբր արական՝* Աննա *քահանայապետ Հրէից՝ Յիսուսի ժամանակ (Ղկ. Գ. 2)։ Տառադարձված է հուն.* Ἄννα, *որից էլ լտ.* Anna, *գերմ.* Anna, Ännchen, *ֆրանս.* Anne, Annette, *անգլ.* Anne, Ann, Nancy, *ռուս.* Анна, Аннушка *են. Մեր մեջ հիմնական ձևն է* Աննա, *բայց սրանից առաջացած ունինք* Աննախաթուն՝ *1504 թ. (Տաշեան, Ցուց. 55 ա), փաղաքշաբար՝* Անեկ՝ *1651 թ. (Տաշեան, Ցուց. 363 ա), գավառական ձևերով՝ Ղրբ.* Անա. *Ագլ.* Անի, Անիկօ, *Պլ.* Աննիկ, *Կովկասում գործածական է նաև ռուսական* Անիչկա *ձևով։—Իսկ* Անա *ձևի մասին տես առանձին։*

— 1. Աննա, *քույր Որմզդատի, կարգվեց տեսչուհի Հոգեաց վանքի՝ Բարթուղիմէոս առաքյալի մահից քիչ հետո. վախճանվեց ճգնական կյանքով (Ա դար).—Խոր. պատմ. ածած. 295. Զամչ. Ա. 297—8։*

— 2. Աննա, *կին Բուտի Առաւեղեան. ամուսնու մահից հետո շարունակեց և ավարտեց Բագարանի եկեղեցու շինությունը, որին ձեռնարկել էր Բուտը՝ Խոսրով արքայի 34-րդ տարին, Վարագաւորոց մարզպանի օրով (628 թ).—Կոգեան, Կմբկնները, էջ 137։*

— 3. Աննա, *դուստր Գրիգորի Վանանդացոյ. հիշված է Բագարանի 629 թ. արձանագրության մեջ.—Կոգեան, Կմբկնները, էջ 137։*

— 4. Աննա, *դուստր Լևոն Զ Իմաստասեր հայ կայսեր*

Հունաց, Զոյէ կնոջից. իր մոր մահվանից (896) հետո եղավ տեղակալ կայսրուհի.—Տէր Սահակեան, Հայ կայսերք, Ա. 382։

— 5. **ԱՆՆԱ**, դուստր Կոստանդին Պերփյուռոժէնի՝ կայսեր Հունաց և Ռոմանոս Բ-ի (939—963) քույրը. Վասիլ Ա Արշակունի կայսեր թոռան աղջիկն է.—Տէր Սահակեան, Հայ կայսերք, Բ. 472։

— 6. **ԱՆՆԱ**, դուստր Ռոմանոս Բ կայսեր Հունաց և քույր Վասիլ Բ բուլգարասպան կայսեր. Վասիլ Ա հայ կայսեր թոռան թոռը։ Վասիլ Բ ռուսներին հունական քաղաքակրթության մոտեցնելու համար՝ իր քրոջ Աննային ամուսնացրեց Ռուսաց ցար Վլադիմիր Ա-ի հետ (991 թ)։ Աննա կայսրուհու անունը կապված է Ռուսաց քրիստոնեության դարձի հետ, Մեծն Վլադիմիր կայսեր ձեռքով։ Վլադիմիրը Սվիատոսլավի որդին էր. իր հոր կենդանության ժամանակ ստացավ Նովգորոդի իշխանությունը, իսկ հոր մահից հետո (972), տեր դարձավ ամբողջ կայսրության, որ տարածվում էր Բալթիկ ծովից մինչև Սև ծով։ Մի մեծ պալատ ուներ Կիևում, որ վաղուց Պոլսի հետ հարաբերության մեջ էր, և ուր բավական հույներ էլ կային։ Այն ժամանակ Ռուսները կռապաշտ էին. Կիևում կար հատկապես Պերուն աստուծու արձանը, որ շատ այլանդակ ու սարսափելի էր։ Նա կանգնած էր Կիևի հրապարակում, մի սյունի վրա. մարմինը փայտից էր, գլուխը արծաթից, բեխերը ոսկի. ձեռքից կայծակներ էին թափվում. ոտի տակին կար մշտավառ կրակ, ուր անդադար զոհ էին մատուցանում։ Վլադիմիր սոսկում էր այս աստուծուց և ուզեց մի ուրիշ հավատ ընտրել։ Նա պատգամավորներ ուղարկեց զանազան տեղեր և քննեց եղած կրոնները. մերժեց մահմեդականների, հրեաների և գերմանացոց կրոնները և հատկապես հավանեց հույների կրոնին։ Անշուշտ այստեղ կային քաղաքական հաշիվներ։ Նա արշավեց Խերսոն քաղաքի վրա, որ գրավեց հունաց ձեռքից և միևնույն ժամանակ դիմեց Պոլիս և կայսեր քրոջ՝ Աննային կին խնդրեց, խոստանալով ընդունել քրիստոնեական կրոնը։ Կայսրը իր մտադրության համաձայն գտավ այս առաջարկը, Աննային ուղարկեց Վլադիմիրի մոտ, որ Խերսոնում մկրտվելուց հետո (988), պսակվեց նրա հետ։ Իր օրինակին հետևեց ամբողջ ռուս ժողովուրդը։ Վլադիմիրը մեռավ 1015 թվին և անցավ սրբերի կարգը։ Նրանից ավելի առաջ՝ Աննա կայսրուհին մեռել էր 1011 թվին։ (Ռուսաց դարձի առթիվ առասպելական մի հրաշագործության մասին տես Փափազեանց, Պատմ. եկեղ. 390)։

— 7. **ԱՆՆԱ** *թագուհի Հայոց. տես Կեռան (մ. 1285)։*

— 8. **ԱՆՆԱ**, *քույր Յովհաննէս երեցի, որ օգնեց Գրիգոր գրչին՝ օրինակելու Ճառընտիրը, 1305 թ.—Ձեռ. Վեննա. Բ. 511։*

— 9. **ԱՆՆԱ**, *կին Օշին թագավորի Կիլիկիոյ. մեռավ 1317 թ., թողնելով մի որդի՝ Լևոն անունով։ Նրա մահից հետո, Օշինը երկրորդ անգամ ամուսնացավ և առավ Սիկիլիայի թագավորական ցեղից Յովհաննային.—Զամչ. Գ. 315։*

— 10. **ԱՆՆԱ**, *կին Կարապետ քահանայի. մայր Կիրակոս սարկավագի, որ Խրիմի Սուրխաթ քաղաքում օրինակեց մի Աւետարան, 1346 թ. այս թվին Աննան մեռած էր.—Գովրիկեան, Դրանսիլուանիոյ Հայոց մետրապոլիսը, էջ 331=ՀԱ 1895, 304 բ։*

— 11. **ԱՆՆԱ**, *դուստր Ոսկեհատի, որ ստացավ մի Ժողովածու, 1420 թվից բավական առաջ (Տաշեան, Ցուց. 666 ա)։*

— 12. **ԱՆՆԱ**, *դուստր Մարթայի՝ հոգևոր մոր Յովհաննէս կրոնավորի, որ Բերկրիում ստացավ մի Աւետարան, 1422 թ.—Ձեռ. Վասպ. 348։*

— 13. **ԱՆՆԱ խաթուն**, *դուստր սանամոր Յովհաննէս քհ. Գանձակեցու, որ Տփղիսի Կրծանիս գյուղում, օրինակեց Գանձարանը, 1436 թ.—Ձեռ. Դաղեան, Ա. 27 բ։*

— 14. **ԱՆՆԱ**, *դուստր Թովմայի և քույր Կարապետ միայնակեցի, որ Ցիպնայ Դատակ վանքում գրել տվեց մի Աւետարան, 1450 թ.—Ձեռ. Վասպ. 405։*

— 15. **ԱՆՆԱ խաթուն**, *մեծ մայր Ստեփաննոս Ղարիպշահի, որ Լիմ կղզում գրել տվեց մի Յայսմաւուրք, 1457 թ.—Ձեռ. Թաւր. 103 բ։*

— 16. **ԱՆՆԱ**, *կին Ստեփաննոսի՝ հոր տանուտեր Էդիլշահի, որ Յովհաննէս գրչին գրել տվեց մի Աւետարան Արծկէում, 1463 թ.—Ձեռ. Վեննա. Ա. 620։*

— 17. **ԱՆՆԱ**, *կին Ատոմի՝ եղբոր տանուտեր Սահակի, որ Խիզանում գրել տվեց մի Աւետարան, 1474 թ.—Ձեռ. Վասպ. 469 = 470։*

— 18. **ԱՆՆԱ** *դուստր Տարօնոյ իշխան խոջա Յովսէփի, որ Մուշ քաղաքում գրել տվեց մի Աւետարան, 1479 թ.—Ձեռ. Սեբ. (ՀԱ 1925, 262)։*

— 19. **ԱՆՆԱ**, *կին այրի, օգնեց դրամով մի Աւետարանի գրչության համար, Աղբակի Էրընկանի գյուղում, 1490 թ.—Ձեռ. Վասպ. 512։*

— 20. **ԱՆՆԱ**, *դուստր Մողդոկցի Ուլուխանեան ընտանիքի.*

նշանավոր գեղեցկուհի, որին գերեց Լեզգիների առաջնորդ Շեյխ Շամիլը և ամուսնանալով նրա հետ, իր կանանց առաջինը դարձրեց, անունն էլ փոխելով Շուանեթ (տես Շամիլ)։

†ԱՆՆՄԱՆ, իգ. < հյ. աննման ածականից. մի անգամ գըտնում եմ գործածված ԺԴ դարում. բայց այժմ էլ գործածական է։

— Աննման, կին Թումա քահանայի՝ հոր Կարապետ քահանայի, որ Աղբակի Խաշնոց գյուղում, Կիրակոս քահանային գրել ավեց Շնորհալու գործերը, 1352 թ.—Ջեռ. Թաւր. 56 բ. (հիշված է այնպես, որ թվում է թե հասարակ ածական է.

Զծնող սորայ զտուրբ քահանայն
Թումայ անուն, զմայրն Աննման,
Առնէք զսոսայ յիշման արժան)։

*ԱՆՈՅՇ, իգ. < զնդ. anaoša, պհլ. anōš «անմահ» բառից, որ հետո իմաստի փոփոխությամբ դարձավ «քաղցր»։ Իբրև իգական անուն գործածական էր նաև Իրանյանների մեջ. օրինակ՝ 1) Անոյշ, Մարաց Աժդահակ թագավորի կինը, որին Տիգրան Ա գերելով՝ բնակեցրեց Մասիս լեռան ստորոտում և որից սերվեց Մուրացան նախարարությունը (Խոր. Ա. լ, լա. Յհ. կթ. գ. Սամ. անեց. 46.—սեռ. Անուշայ՝ Խոր. Ա. լ). 2) Անոյշ վկայուհի (Յայսմաւուրքի մեջ), 3) Nūša (պրս. نوش) Պարսից Ներսեհ թագավորի դուստրը, որին առևանգեց Թահիր արաբը (Շահն. Ե. էջ 342). 4) Νύσσα դուստր Միհրդատ Ե թագավորի Պոնտացոց, քույր Մեծին Միհրդատի և կին Արիարաթ Ե թագավորի Կապադովկացոց։ Այս անունից են կազմված նաև Doxtnōš, Gōšaqanōš, Radanōš իգական պարսիկ անունները։ Այժմ գործածական է մեր մեջ Անուշ ձևով և համարվում է հյ. անուշ «քաղցր» բառից։ Իսկ Կովկասում տարածված Անուշկա ձևը ոչ թե այս անունից է, այլ Աննա անվան ռուսական փաղաքշական ձևը։ Մինչև անգամ Անուշքա ձևով գործածված է Տրանսիլվանիայում՝ 1504 թ. (Տաշեան, Ցուց. 55 ա)։—Հիւբշ. 18—19, Justi 17։

— 1. Անոյշ, դուստր Զայլամարի, Մուրացան ցեղից, կին Սահակ Արծրունու, որդւոյ Վաչէի, ժամանակակից Արտաշէս Բ-ի (85—131).—Արծր. Ա. ը (գրված է Անուշ)։

— 2. Անոյշ, դուստր Դաւիթ Անհողին թագավորի Կիւրիկեան. Արձ. 1063 թ. (Brosset, Hist. Additions 277. այլ ընթ. Հրանոյշ).—Justi 17 ա։

— Անոյշ հիշված է նաև 1602 թ. (Ջեռ. Սեբ.=ՀԱ 1924, 331) և 1640 թ. (անդ ՀԱ 1922, 469)։

ԱՆՈԳ, ար. ծագումն անհայտ։

— Անօպ, եղբայր Արշակ Գ-ի, հայր Վարազդատի (374—8 թ).—Langlois, Collect. II 154, Justi 17ա (այլուստ անծանոթ)։

ԱՆՈԽՄԷ, իգ. ծագումն անհայտ. հիշված է մի անգամ մի տապանաքարի արձանագրության մեջ, 1703 թ.—Սիսական 353։

*ԱՆՈՒՇԱՒԱՆ, ար. < զնդ. anaošō-urvān «անմահ հոգի», պհլ. anōšak-ruvān, պազենդ. anōš-ruān, պրս. Anōšarvān, Nuširvān, դարձած անձնանուն.—Հիւբշ. 20 չի տված այսպիսի մեկնություն, իսկ Justi 17 բ դնում է Անօյշ+հյ. աւան «գյուղ» բառերից! Ակինեան, Եղիշէ վրդ. հտ. Ա. 256 դնում է Անուշաւան > Նուշիրվան անունից։ Մեզ ծանոթ էր միայն Հայկազանց շրջանից. վերանորոգվեց վերջին դարում և այժմ գործածական է Կովկասում։

— Անուշաւան, որդի Կարդոսի, կոչվում էր Սօս, որովհետև մանկությունից նվիրված էր Սօսեաց նվիրական անտառին. Հարը հետ միասին գերի տարվեց Նինուէ, բայց իր իմաստությամբ պալատականների սիրտը շահելով՝ ազատվեց և ձեռք բերեց իր գահը, Ասորեստանցիներին հարկատու մնալով։—Խոր. Ա. ժթ, ի. Յհ. կթ. բ. Կղկնտ. Ա. ժե. Վրդ. է. Մագ. թղ. ժթ. Սամ. անեց. 44. Մխ. այրիվ. 17, 47. Մին. համդ. 8. Վրաց ազգ. Ա. 74 (գրված Անուշավան).—Անուշաւանն Սօսանուէրն Արայեան՝ Մագ. թղ. ժա. —Անուշաւանն Արայեանն մանուկ՝ Մագ. թղ. հզ (տես Տաշեան, Ցուց. 151 բ).—տր. Անուշաւանին՝ Մին. համդ. 9։—Ջամչ. Ա 79 (իշխել է իբր 63 տարի. Ն.Ք. 1725—1662 թ)։

*ԱՆՈՒՇՎՌԱՄ, իգ. < բարդված Անօյշ և Վռամ անուններից։

— Անուշվռամ, դուստր Վասակ Արծրունու, քույր Աշոտ Արծրունու, կին Վրաց Աշուշայ բդեշխի և մորաքույր Վահան Մամիկոնեան մարզպանի (Ե դար).—Փարպ. կբ և էջ 188, Ջամչ. Ա. 518, Բ. 122։

†ԱՆՊԷՏ, ար. < հյ. անպէտ «անպէտք, անպիտան» բառից և կամ անպես «անգլուխ, անիշխան, անտեր» բառից։ Առաջինն ավելի հավանական է, որովհետև կա Անպէտբեան ազգանունը (Ռոստով, Նոր-Նախիջևան)։ Գործածված է ԺԴ/ԺԵ դարում, այնուհետև խափանված։

— 1. Անպէտ, ոսկերիչ ոմն, հայր Յովհաննէսի՝ հոգևոր որդւոյ Պօղոս քահանայի, որ Գրիգոր գրչին գրել տվեց մի Աւետարան, 1 34 թ.—Ձեռ. Վենետ. Ա. 698

— 2. Անպես (գրված Ե-ով), որդի Սանամ խաթունի, դըր-

տեր պարոն Ասլանի, որ Սեբաստիայում գրել տվեց Եպիփանի ճառերը, 1350 թ.—Տաշեան, Ցուց. 107 բ։

— 3. Անպետ, հայր Սարգսի, որ Ջուրեն գյուղում (Երուսաղէմ?) գնեց Ստեփաննոս երէցից մի ճաշոց, 1371 թ.—REA 10, 57։

— 4. Անպետ, տանուտեր Հայոց Իլվովի. իր եղբոր՝ Ումէտի հետ գնաց Սիս՝ 1388 թ.—Ալիշան, Կամենից 11։

— 5. Անպետ, հոգևոր հայր Կարապետ գրչի, որ Խլաթում օրինակեց Աստուածաշունչը 1418—1422 թ.—Ձեռ. Վենետ. Ա. 114։

*ԱՆՋԻԼԻ, իգ. < իտալ. Angela անունից, որ բուն նշանակում է «հրեշտակ»։ Համմտ. Անժէլ։ Մի անգամ գտնում եմ հիշված 1698 թ.—Ձեռ. Վասպ. 986։

ԱՆՍԱՆ, ար. հայ իշխան Ատրպատականի սահմանակից մի գավառում. հպատակվեց Ատրպատականի Լաշկարի իշխանին, որին ապա դարանի մեջ սպանեց Հիջրի 326 (=Քր. 936) թվին, ըստ Իբն-էլ-Աթիր արաբ պատմչի։ Գրված է առանց կետերի և հայտնապես աղավաղ ձև է։—Խալաթեան, Արաբ. մատ. 145։

*ԱՆՏԻՈՔՈՍ, ար. < հուն. 'Αντίοχος անունից, որ կազմված է ἀντί «դեմ, հակառակ» և ὄχος «կառք» բառերից և նշանակում է «նա որ իր կառքը քշում է թշնամու կառքի դեմ, կառքի ոստխ»։ Այս անունով հայտնի են Հերակլէսի որդին, որ Աթենքի հերոսներից մեկն էր, Ալկիբիադի ծովակալներից մին, Ասորիքի Սելևկյան 13 թագավոր, որոնցից նշանավորներն են՝ Անտիոքոս Ա Սոտեր Ն.Ք. 281—260, Անտիոքոս Բ Թէոս (Աստուած) Ն.Ք. 260—246, Անտիոքոս Գ Մեծ Ն.Ք. 222—186, Անտիոքոս Դ Եպիփանոս Ն.Ք. 174—164, Անտիոքոս Ե Եւպատոր Ն.Ք. 164—162։ Քրիստոնեական շրջանից ունինք Անտիոքոս բժիշկ նահատակ, որի վարքը մտել է Յայսմաւուրքում և աղոթքները՝ Կիպրիանոս գրոց մեջ։ Այս անունը մեր մեջ անսովոր է. ունինք միայն՝

— Անտիոքոս, քրմի որդի, որին Լուսաւորիչը սովորեցրեց և կարգեց եպիսկոպոս.—Ագաթ. 845 (ձեռագրերն ունին Անտիոքոս, Անտիոքէս և Անդիոքէս ձևերով)։—Արաբ. Ագաթ. 72 նույնը կոչում է Անտիոքոս եպիսկոպոս Կարդալէտի։

*ԱՆՏԻՊԱՏՐՈՍ, ար. < հուն. 'Αντίπατρος անունից, որ բուն նշանակում է «փոխանակ հոր, հոր փոխարեն»։ Այս անունով հայտնի են 1) Ալեքսանդր մեծի զորավարներից մեկը, որ նրա բացակայության ժամանակ կառավարեց Մակեդոնիան և նրա մահից հետո ջախջեց Աթենացոց ապստամբությունը (Ն.Ք. 397—

317),—2) նախորդի թոռը, արքայ Մակեդոնացոց Ն.Ք. 296—294. —3) մի փիլիսոփա,—4) մի պատմիչ են։ Անսովոր անուն է մեր մեջ. ունինք միայն՝

— Անտիպատրոս, որդի Սիսեդի, հայ իշխան Տիբարացոց և Խալիբների. իր երկիրը հանձնեց Միհրդատ մեծին (Ն.Ք. 123—63).—Ստրաբոն Հայոց մասին 75, 100, Justi 304 ա։

*ԱՆՏՈՆ, ար. ‹ լտ. Antonius, Antoninus անունից է, հունական 'Αντώνιος, 'Αντωνῖνος, "Αντων ձևերի միջնորդությամբ. բուն նշանակությունն է «առաջնորդ, գլխավոր»? (Ըստ Միխ. աս. Ա. տպ. 142 «Անտոն աշխարհի հայր թարգմանի»)։ Այս անունով հայտնի են 7 հռոմեական կայսրներ, որոնցից նշանավոր են Անտոնինոս Պիոս, Անտոնինոս Կարակալլա և Մարկոս Ավրելիոս։ Մեր ազգային պատմության մեջ հայտնի է Անտոնիոս եռապետը, որ Օկտավիանոսի գահակիցն էր։ Արշավեց Արևելք, չարաչար հաղթվեց Պարթևներից, որոնք 24,000 հռոմայեցի կոտորեցին։ Անտոնիոս իր վրեժը հանեց հայերից. նվաճեց Հայաստանը, Արտավազդին գերի տարավ Եգիպտոս և նվիրեց Կլեոպատրա թագուհուն, որ գլխատեց նրան։ Ակտիոնի ճակատամարտում պարտվեց Օկտավիանոս Օգոստոս կայսրից և պաշարվելով Ալեքսանդրիայում՝ անձնասպանեց (30 թ). իսկ Կլեոպատրան իրեն մի իժի խայթել տալով՝ մահ գտավ։ Քրիստոնեության ժամանակ նշանավոր եղավ Ս. Անտոն անապատական Թեբացի (251—356), որի վարքը մտել է Յայսմավուրքի և Վարք Սրբոցի մեջ։ Այս անունից են տառադարձված գերմ. Antonius, Anton, անգլ. Antonius, Anthony, իտալ. Antonio, Antonino, ֆրանս. Antoine, ռուս. АНТОН, АНТОНИЙ են։ Մեր մեջ ընդունված է միայն Անտոն ձևը, բայց գրվում է նաև Անտօն, իբր թե տօն բառի հետ կապ ունենար։ Գործածական է Ե դարից մինչև այժմ. նույն իսկ կա Հայրանտոն իբր մի բառ։ Պոլսում կաթոլիկ հայերը գործ են ածում ֆրանսիական ձևով՝ Անթուան։

— 1. Անտոնիոս, գլխավորներից մին է այն 45 հայ վկաների, որոնք նահատակվեցին Փոքր-Հայոց Նիկոպոլիս քաղաքում, իբր 319 թ.—Աւգերեան, Լիակ. վրք. սրբ. Դ. 107—133։

— 2. Անտոն ճգնավոր, ընկեր Կրոնիդէսի. երկուսն էլ Կեսարացի հույն էին և Լուսավորչի հետ Հայաստան գալով՝ հաստատվեցին Գլակայ վանքում, ճգնելու համար «302 թ». մեռել է «342 թ».—Զեն. անտ. 60. Յայսմ. սեպտ. 30. Տարօն. Բ. § 24. Վրդ. աշխ. 521.—սեռ. Անտոնի՝ Ճշ. 664. Զեն. անտ. 59. Յայսմ.

սեպտ. 30. Վրդն. աշխ. 516. Մեծոփ. 21.—բց. յԱՆՏՈՆԷ՝ Վրդն. լս. 72.—Աւգեր. Լիակ. վրք. սրբ. Է. 33. Զամչ. Ա. 391, 394։

— 3. ԱՆՏՈՆ (կամ Թաթուլ), աշակերտ Սահակի և Մեսրոպի. Վարդանանց պատերազմից հետո, Գիւտ կաթողիկոսի («461—478 թ») ժամանակ, իր երեք եղբայր Վարոսի հետ քաշվեց Վիշապաձորի լեռները՝ ճգնելու։ Այստեղից գնաց Մայրաձոր, ուր նույնպես ճգնում էր մինչև իր մահը (Ե դար)։ Իր առաջին ճգնարանում շինվեց վանք, որ կոչվեց Գազանածակք կամ Թաթլոյ վանք։—Ասող. Բ. ր. Վրդ. իը։

— 4. ԱՆՏՈՆ «անապատական ի Հռովմայ». ժամանակն անհայտ. գրել է Սուքիասեանց նահատակների վկայաբանությունը.—Այրարատ 538, Հայապ. 27։

— 5. ԱՆՏՈՆ, նշանավոր վարդապետ ԺԱ դարում.—Ուռհ. էջ 179։

— 6. ԱՆՏՈՆ, հայր Եղիա քահանայի, որ նորոգեց Ժ դարում գրված մի Աւետարանի կազմը, 1111 թ.—Ձեռ. Սանաս. 9 ա։

— 7. ԱՆՏՈՆ Ռոսլին, եղբայրն է Թորոս Ռոսլին Հռոմկլայեցի նշանավոր մանրանկարչի. հիշված է 1256 թ.—Ձեռ. Հալէպի, Բ. 140 բ։

— 8. ԱՆՏՈՆ, կրոնական անուն Հեթում պատմիչի։

— 9. ԱՆՏՈՆ ճգնավոր, Ֆռանգաց Ճէն քաղաքում, Աստուածատուր գրչին գրել տվեց մի Աւետարան, 1324 թ.—Յովսէփեան, Մի էջ հայ արուեստի 37։

— 10. ԱՆՏՈՆ Խանականցի, ազգական Ներսէս վարդապետ Սաանեցու. Նվիրատու ձեռագրի (1332).—Հայապ. 546։

— 11. ԱՆՏՈՆ, յիշատակագիր Աւետարանի, 1347 թ.—Ձեռ. Վենետ. Ա. 755։

— 12. ԱՆՏՈՆ, ազգական Քրիստոսատուր կրոնավորի, որ Սուրխաթում գրել տվեց մի Աստուածաշունչ, 1352 թ.— Ձեռ. Վասպ. 7։

— 13. ԱՆՏՈՆ քահանա. գրիչ. Կաֆայում օրինակել է Տօնապատճառը, 1359 թ.—Ձեռ. Կարին. 211։

— 14. ԱՆՏՈՆ, որդի Բարսղի. արհեստով նավաստի էր, ապրում էր Վենետիկում 1395 թ.—Հայ-Վենետ. 171։

— 15. ԱՆՏՈՆ քահանա, որդի Յովհաննէս քահանայի. իր եղբայր Ղազար քահանայի հետ միացած՝ գրել տվին մի Աւետարան, Մոկաց Ս. Խաչ վանքում, 1410 թ.—Ձեռ. Վասպ. 296—7։

— 16. ԱՆՏՈՆ *քահանա, պաշտոնակից Սարգիս եպիսկոպոսի, որ օրինակեց Աւետարանը, 1416 Թ.—Ձեռ. Թաւր. 31 բ։*

— 17. ԱՆՏՈՆ, *եղբայր Մամաթէկին ապաշխարողի, որ երեք մերձաւորն էր Ստեփաննոս կրօնաւորի, որ Վարդան գըրչին գրել տվեց մի Աւետարան, Խոսրովայ վանքում, 1430 Թ.—Ձեռ. Վասպ. 359։*

— 18. ԱՆՏՈՆ *եպիսկոպոս Վիրապեցի, այն է առաջնորդ Խորվիրապի. անդամ էջմիածնի «1441 թվի» մեծ ժողովի և հակառակորդ Կիրակոս կաթուղիկոս Վիրապեցու.—Մեծոփ. յիշ. ա. Նօտարք 123.—տես.* ԱՆՏՈՆԻ՝ *Մեծոփ. յիշ. գ։*

— 19. ԱՆՏՈՆ, *հոգեւորորդի Նորմանուկի, որ Տիւրիկի Վաւառը գյուղում, Ստեփանոս գրչին մի Աւետարան գրել տըվեց, 1469 Թ.—Ձեռ. Վենետ. Ա. 752։*

— 20. ԱՆՏՈՆ, *եղբօրորդի Զաքարիա աբեղայի, որ ստացավ մի Շարակնոց, 1487 Թ.—Ձեռ. Հալէպի, Ա. 27 բ։*

— 21. ԱՆՏՈՆ, *որդի Գրիգորի և եղբայր խոջա Ջաւղիի, որ գրել տվեց մի Աւետարան, 1490 Թ.—Ձեռ. Վասպ. 513—6։*

— 22. ԱՆՏՈՆԻՈՍ *սարկավագ, գործակից Աբգար Եւդոկիացու. Պոլսում տպեցին Այբբենարանը՝ 1567 Թ. և Տօնացոյցը՝ 1568 Թ.—Զամչ. Գ. 657։*

— 23. ԱՆՏՈՆ *Սուրեան* (Antonio Suriano detto l'Armeno), *որդի Յովսէփի. (Սուրեան թերևս նշանակում է Սուրիացի). ճարտարագետ հայ, որ հաստատված էր Վենետիկ. հնարեց ընկղմած նավերը հանելու և ծովի հատակը մաքրելու մի գործիք. սրանով մեծ ծառայութիւն մատուցեց Վենետիկի պետութեան։ Մասնակցել է Կորնթոսի նավամարտին (1571), կառավարելով հրանոթների ինքնահնար դասավորութիւնը և անձին վտանգով անմիջապես նորոգելով վնասված նավերը։ 1575 թվին, երբ ահավոր մի ժանտախտ երեւցավ Եվրոպա, Անտոն հնարեց մի դեղ և նրանով բժշկում էր վարակվածներին։ Մեռել է 1591 թ։ Իր գործը շարունակել է որդին Յովսէփ.—Հայ-Վենետ. 234--277, Սիսական 476 բ։*

— 24. ԱՆՏՈՆ *վարդապետ Լեհահայոց. ունի 3 հատոր Քարոզգիրք՝ հայատառ թաթարերեն լեզվով, գրված 1660—61 Թ. (տես Տաշեան, Ցուց. 954—5)։*

— 25. ԱՆՏՈՆ *Նաղարոս (կամ Անթօնիօ Նաղարոս), ունիթոռական քարոզիչ, Երնջակի Ապրակունիս գյուղից, Օգոստինոս Բաջենց եպիսկոպոսի քեռորդին կամ եղբօրորդին էր. գիտուն և*

ճարտար անձ. ուստի Մատթէոս արքեպիսկոպոսը, Եվրոպայից դարձած ժամանակ (1669), սրան քահանա ձեռնադրեց և իր հետ տարավ Սպահան՝ շահի մոտ։ Շահը Անտոն Նազարոսին և Հ. Ադուրիա Ջահկեցուն ընտրեց դեսպան և իր նամակները հանձնելով նրանց (մի թուղթ Հռոմի պապին, մյուսները Ֆրանսիայի Լուդովիկոս ԺԴ թագավորին և Տոսկանայի ու Վենետիկի դուքսերին), ուղարկեց Եվրոպա։ Սրանք մեկնեցին 1670-ին, անցան Ռուսաստան, ուր 22 ամիս ուշացան պատերազմի պատճառով, հասան Վենետիկ՝ 1673 թ։ Նազարոսը Ֆիորենցա և Հռոմ իր դեսպանությունը կատարելուց հետո, անցավ Պարիզ և մեծ պատվով ընդունվեց Լուդովիկոս ԺԴ-ի ներկայության։ Վերադարձին կարգվեց վանահայր Ապրակունեաց (1684)։ Տասը տարի հետո (1693), նորից գնաց Վենետիկ՝ մնալու համար իբրև քարոզիչ հայոց, բայց երևի չհաջողվեց։ Գրել է իր դեսպանության պատմությունը (տես Բանասէր 1899, 258—9)։—Միսական 377, 397—9, Օգոստ. բաշ. 23, 25, 26, Յովսեփեան, Խաղբակեանք 276։

— 26. ԱՆՏՈՆ Տփղիսեցի, նոր վկա. հավատքը չուրանալով նահատակվեց Պարսիկների ձեռքից՝ Շուշում, 1795 թ.—Բարխուդարեանց, Արցախ 150, Նոր վկ. 608, Ազգապ. 3626։

— 27. ԱՆՏՈՆ վրդ. Նուրիճանեան, առաջին կաթոլիկ պատրիարք Պոլսի։ Երբ ռուս-տաճկական պատերազմը վերջացավ և երկու պետությունները Ադրիանապոլսում հաշտության դաշինք կնքեցին (1829 սեպտ. 14), եվրոպացոց գրգռմամբ, դաշնագրի մեջ մտցրին նաև մի հոդված, որ պահանջում էր աքսորական կաթոլիկ հայերի վերադարձը և կաթոլիկ հայոց համար առանձին պատրիարքական աթոռի ստեղծումը։ Ընտրվեց Անտոն Նուրիճանը, որին հաստատեց նաև Պիոս Ը Հռոմի պապը և իր ձեռքով ձեռնադրեց նրան Հռոմում, 1830 թ. հուլիս 11-ին։—Փափազեանց, Պատմ. եկեղ. 1009։

— 28. ԱՆՏՈՆ վրդ. Հասուն. սորի հոր և հայ կաթոլիկ մոր որդի էր. ծնվել է 1809 թ. և գրեթե կես դար իր ձեռքին խաղալիկ է դարձրել հայ կաթոլիկ համայնքը։ Ավարտելով Հռոմի պրոպագանդայի դպրոցը, յուրացրեց ճիզվիթական բոլոր հնարագիտությունները, որոնք միացրեց իր բնածին խարդախ ոգուն։ Հիմնվելով լատին կարդինալների ուժի վրա, արհամարհեց ժողովրդի բոլոր խավերի դիմադրությունը և միայն իր կամքը առաջ տարավ։ Արյունով օտար, սրտով պապական, հոգով ճիզվիթ, միայն մի սկզբունքի ծառայեց. այն է՝ ջնջել հայ կաթոլիկ հա-

մայնքի մեջ մնացած ազգային գույնն ու ոգին և նրան պապին ստրուկ և իսպառ լատին դարձնել: Խարդախ միջոցներով նախ դարձավ Պոլսի պատրիարք («1846 թ»), հաջորդելով Պօղոս վրդ. Մարուշեանին: Այնուհետև ընտրվեց կաթոլիկ հայոց կաթուղիկոս՝ Անտոն Պետրոս Թ անունով («1867 թ»): Խառնակիչ և խռովարար՝ պատճառ եղավ հայ կաթոլիկ համայնքի երկպառակության: Իր դեմ կազմվեց հակահասունյան կուսակցությունը, որ շարունակ կռիվ էր մղում լատինամոլ հասունյան կուսակցության դեմ: Վերջապես ժողովուրդը մերժեց նրան և նրա գոյությունն էլ ուրանալով՝ կաթուղիկոս ընտրեց Յակոբոս-Պետրոսին, որին կոչեց դարձյալ Թ և ոչ թե Ժ («1871 թ»): Հասուն ապաստանեց Հռոմ և կարդինալների պաշտպանությամբ վերստացավ իր պաշտոնը և Պոլիս դարձավ: Կաթոլիկ համայնքի ամբողջ առաջավոր մասը թողեց այն ժամանակ կաթոլիկությունը և ազգային եկեղեցու ծոցը դիմեց: Պապը տեսնելով որ իր հոտը ձեռքից գնում է, կանչեց նրան Հռոմ և կարդինալության պատրվակով՝ ստիպեց հրաժարվել «1880 թ»: Կյանքի մնացյալ մասը անցկացրեց Հռոմում, ուր և մեռավ «1884 թ»:—Ազգապ. 3760—64, 3821—9, 3921—51, 3966—76, 4182—99, 4308—20, 4349—61, 4495—4505: (Պեշիկթաշլեանը Հասունի վրա ունի ծաղրական մի հանելուկ. տես Տաղեր, տպ. Թիֆլիս 1903, էջ 80):

**ԱՆՕՔՈՆ**, իգ. գործածված է Սուչավայի Հայոց մեջ, 1504 թ.—Տաշեան, Ցուց. 55 ա:

**ԱՇԱՆԲԷԳ**, մր. անկախ գործածությունը անհայտ է. բայց ենթադրվում է Աշանբէգեան ազգանունից, որ պատահում է Կովկասում:

***ԱՇԸԽ**, ար. < արաբ. عاشق ʿāšəq «սիրահար, բանաստեղծ» բառից. իբրև անձնանուն հիշված է՝

—Աշըխ մահտեսի, որդի մահտեսի Պալիի, եղբայր Ամբրօս Երզնկացու, որ Տրապիզոնում արտագրեց մի Ժողովածու 1638 թ. և մի Ոսկեփորիկ էլ 1656 թ.—Տաշեան, Ցուց. 355 բ և Ձեռ. Վեննա. Բ. 954:

***ԱՇԽԱԴԱՐ**, ար. տառադարձված է հուն. Ἀξιδάρης, որին համապատասխանում է նպրս. Askudār, Iskudār (Justi 12 բ, Marquart, Հայ Բդեաշխք, էջ 37).—Justi 43 բ մեկնում է «իշխանությունը վարող»? Համչ. (ցանկում) դնում է նաև Աշխադար:

— 1. Աշխադար, որդի Տրդատ-Արտաշէսի, թագավոր Հայոց. Խոսրով Ա՝ Պարթևաց թագավորը հեռացրեց նրան և Հայոց գա-

նը հանձնեց Պարթամասիրին (109 թ).—Գրգշ. Բ. 253։ Ըստ Լէօ, Ա. 472 և Marquart, Հայ Բդեաշխք, էջ 37, Պարթևաց Բակուր Բ թագավորի որդին էր. նստել է 100?—110 թ։

— 2. Աշխադար, աներ Տրդատ թագավորի, Աշխէն թագուհու հայրը (Դ դար).—սեռ. Աշխադարայ՝ Խոր. Բ. ձգ.—Աշխինդարայ՝ Ուխտ. Ա. կէ։—Զամչ. Ա. 379 դնում է թագավոր Ալանաց։

— 3. Աշխադար Դիմաքսեան, նախարար. Սուրէն Խոռխոռունու և Վահան Առաւեղեանի հետ կողոպտելով Արշակ Գ-ի գանձերը, փախան Խոսրով Գ-ի մոտ («385 թ»)։—Խոր. Գ. լգ, խե.—սեռ. Աշխադարայ՝ Խոր. Գ. խե։

*ԱՇԽԱՐՀԲԷԳ, ար. < հյ. աշխարհ+թրք. բէգ բառերից, իբր «աշխարհի իշխան». հմմտ. սրա համազոր պրս. Սրջահան (իմա سرجهان sarǰihān) հատուկ անունը, որ հիշատակված է Նոր վկ. 53 (1170 թվին)։ Աշխարհբէգ անունը գործածական է այժմ Լոռիի շրջանում. սրա հետ նույն է՝

— Աշխալբէկ, մելիք Թիֆլիզի (ԺԸ դար).—Աբր. կրետ. 4, 50։

*ԱՇԽԷՆ, իգ. < պհլ. axšēn, պրս. خشین xašīn «գորշ, կապտագույն կամ կանաչավուն», զնդ. axšaēna «թուխ, մուգ գույնով» (Barth. Altir. Wört. 51), հպրս. axšaina «կապտասև քար» (ըստ Meillet, Gram. du v. p. 62 այս իրանյան բառն է, որ փոխ առնվելով դարձել է հուն. Ἄξεινος և ապա ձևափոխվել Εὔξεινος «Սև ծով»).—և կամ՝ զնդ. xšōiϑni «իշխանուհի», որ պհլ. *xšēhn > *xšēn ձևերի վրայով անցել է հայերենի. հմմտ. օսս. āxsīn «տիրուհի»։—Հիւբշ. 20։

— 1. Աշխեն թագուհի, դուստր Աշխադարի, թագավորի Ալանաց, կին Տրդատ թագավորի. հետևելով իր ամուսնուն, քաշվեց Գառնի, ուր ճգնական կյանքով մնաց մինչև իր մահը (Դ դար).—Ագաթ. § 766, 791, 800, 817, 820, 832. Խոր. Բ. ձգ. Ուխտ. Ա. կէ, հա. Թղթ. դաշ. 17. Ճշ. 521. Յայսմ. նոյ. 29. Վրդն. աշխ. 514. Պարականոն շար. 21. Ցկ. կր. 12.—սեռ. Աշխենայ՝ Ագաթ. 765.—Յոյն Ագաթ. 'Ασιχήνη և Արաբ. Ագաթ. 46, 59, 64, 67 Աշիխեն.—Աւգերեան, Լիակ. վրք. սրբ. Գ. 460—480. Զամչ. Ա. 379, 388, 425։

— 2. Աշխեն տիկին, քույր Վարդան քահանայի, որ օրինակեց Աւետարանը, Խոռինանց գյուղի Ս. Աստուածածին եկեղեցում, 1317 թ.—Թորոս Աղբար, Ա. 218։

ԱՇՄՈՒՏ, որ. ծագումն անհայտ. հիշված է անթվական մի հիշատակարանում (Manus. brit. mus. 56 ա)։

ԱՇՆԱԿ, որ. ծագումն անծանոթ, բայց անշուշտ իրանյան է։ Կա նաև այս անունով մի ավան Արցախում։

— Աշնակ Սիւնի, որդի Վահանի. ազատ. իբրև վկա հիշված է Տաթևի 844 թվի կալվածագրում՝ Օրբ. լը (մի ձեռ. ունի Աշտկ. ըստ այսմ նույն անձը պետք է լինի Արշակ որդի Վահանի, որ իբրև վկա հիշված է Տաթևի 839 թվի կալվածագրում, Օրբ. լէ։ Բայց նկատելի է որ Արշակ անունով հասարակ մարդ չէ եղած մեր մեջ ընդհանրապես)։

ԱՇՈՏ, որ. ծագումն անհայտ։ Ըստ Խորենացու՝ հրեական անունն էր, որ Հրեից մեջ ուներ Ասուդ ձևը և ապա հայոց մոտ դարձավ Աշոտ (Խոր. Բ. կգ. > Մխ. անեց. իա)։ Հրեական այսպիսի ձև այլուստ ծանոթ չէ. բայց հմմտ. արաբ. اشعث Aš'aθ արական անձնանունը (Կամուս, Ա. 353)։ Հայերենից է փոխառյալ վրաց. აშოტ. բայց վրացիք հաճախ գրում են აშოტან. իսկ Արաբները տառադարձնում են آشوط Ašōṭ կամ Ašūṭ։

— 1. Աշոտ Արծրունի, որդի Խուրէնի. Ներսեհ Ա. Հայկազանց թագավորի (Ն.Ք. 569) թույլտվությամբ գնաց բնակելու Սիմ լեռը.—Արծր. Ա. է։

— 2. Աշոտ Արծրունի, որդի Սահակի. ժամանակակից Արտաշես Բ-ի (88—129). սպանվեց Հաշտենից կողմի ավազակներից.—Արծր. Ա. ը։

— 3. Աշոտ Բագրատունի. թագադիր ասպետ. ժամանակակից Վաղարշի. մասնակցեց Խազրաց պատերազմին (213 թ).—Արծր. Ա. ը։

— 4. Աշոտ Կամսարական. Յազկերտ Բ-ի բանտարկած նախարարներից մին «452 թ».—Եղիշ. 150։

— 5. Աշոտ իշխան, որդի Սմբատի. տեր Բագրևանդի և Արշարունեաց. նվիրեց Ոսկոյն գյուղը Վանկոյ վանից (շուրջ 550).—Այրարատ 52, 55. Ջարբ. Թրգմ. 214. Հայապ. 192։

— 6. Աշոտ ի Վարազտիրոցեան իշխան. անդամ Դուինի Բ ժողովի («554 թ»).—Գիրք. Թղ. ժէ։

— 7. Աշոտ Բագրատունի. իշխան, որ շինեց Այգի անունով մի հյուրանոց և նվիրեց Գոկոյ վանքին (574 թվից հետո).—Հայապ. 192։

— 8. Աշոտ քհ. Դունացի. օրինակել տվեց Գէորգ Մանկիկին Աստուածաշունչը. նորոգեց Յովհաննավանքը, որին վանահայր

կարգվեց.—Զքր. սարկ. Գ. 5, 6, 29 (դնում է 553 թվին, Մովսէս Եղիվարդեցու օրով. այս երկուսը անհարիր լինելով՝ Ալիշանը դնում է 573-4 թ. Այրարատ 165, 174 բ)։

— 9. Աշոտ Բագրատունի, ասպետ, որդի Սմբատ Բազմայաղթի՝ Վրկանաց մարզպանի, եղբայր Վարազտիրոցի և հայր Գագիկի. հորը հետ հրավիրվեց Պարսից պալատը և պատիվ գտավ Խոսրով Բ թագավորից (592)։ Փոկաս կայսեր օրով (602—610) արշավեց Հունաց վրա և գրավեց Կարինը։—Յհ. կթ. ժէ. Ասող. Բ. բ. Վրդ. լբ. Ջուղ. 48.—սեռ. Աշոտայ՝ Սեբ. ժթ.—Ջամչ. Բ. 300—309։

— 10. Աշոտ Բագրատունի, որդի Վարազտիրոցի, թոռն Սմբատ Վրկան մարզպանի, պատրիկ. հաջորդեց Գրիգոր Մամիկոնեանին, կառավարեց Հայաստանը «682—5 թ»։ Սրանից հետո իշխանությունը թողեց Ներսեհ Կամսարականին, մինչև «688 թ»։ Այս թվին Յուստինիանոս Բ արշավելով Հայաստան, նորից իշխանությունը հանձնեց Աշոտին։ Այս միջոցին Աշոտը շինեց Դարունից եկեղեցին, վանեց արաբների արշավանքը, բայց ինքն էլ վիրավորվեց ու մեռավ «692 թ»։—Ղև. ե. Ասող. Բ. բ, դ. Կիր. 36. Վրդ. լգ. Մխ. անեց. գ. Սամ. անեց. 84. Մխ. այրիվ. 19, 66. Վրաց աղբ. Ա. 79.—սեռ. Աշոտոյ՝ Ղև ե, ը. Ասող. Բ. գ. Վրդ. լէ. Միխ. աս. իթ (=իը)?—Աշոտի՝ Ղև. ե, ը.—Ջամչ. Բ. 371 համարում է որդի Բիւրատի. իսկ Մարկվարդ, Բագր. էջ 3 (տախտակում) համարում է որդի Սմբատի՝ տեառն Դարունից և թոռն Վարազ-Սահակի։—Այրարատ 496։

— 11. Աշոտ Բագրատունի, եղբայր Սմբատի, որ Վարդանակերտի մեծ պատերազմին մասնակցող նախարարների գլխավորն էր «703 թ»։—Ղև. ը. Ասող. Բ. դ. Վրդ. լէ։

— 12. Աշոտ Բագրատունի, որի որդին Սմբատ՝ կախաղան բարձրացավ Կաշմ ոստիկանի հրամանով (704)։—Թվում է թե նույն է նախորդի հետ.—սեռ. Աշոտի՝ Ղև. ժ.—Աշոտոյ՝ Ասող. Բ. դ. Մխ. անեց. իէ։

— 13. Աշոտ իշխան Հայոց, որ ըստ Սամ. անեց. մեռել է 724 թ.—սեռ. Աշոտոյ՝ Սամ. անեց. 87։—Նույն է Մխ. այրիվ. 66։

— 14. Աշոտ Բագրատունի, որդի Վասակի, պապ Աշոտ Մսակերի. Մրուան ոստիկանի կողմից նշանակվեց պատրիկ Հայոց «715 թ». Մրուանի հետ միասին մասնակցեց Հոնաց պատերազմին և վերադարձավ հաղթությամբ «732 թ»։ Երբ Դամասկոսում Արաբների մեջ ապստամբություն ծագեց, իր բանակով

օգնության գնաց Մրուանին։ Երբ Գրիգոր Մամիկոնեանը ապըստամբեց Արաբների դեմ, Աշոտն էլ միացավ նրան, բայց շուտով զղջալով, բաժանվեց։ Ուստի Գրիգոր Մամիկոնեանը բռնեց նրան և կուրացրեց «748 թ»։ Այնուհետև Աշոտը 13 տարի ևս ապրելով, մեռավ Դարոյնք ավանում «761 թ»։—Ղև. իա, իբ, իե, իզ. Ասող. Բ. բ, դ. Կիր. 43. Վրդ. լթ, խդ. Մին. համղ. 28. Մխ. անեց. գ.—սեռ. Աշոտոյ՝ Ղև. իա (ձեռ. Աշոտի), իբ (ձեռ. Աշոտի), իե, իզ, իը, լզ. Ասող. Բ. բ. Վրդ. խա. Միխ. աս. իթ (=իը)? Մին. համղ. 28. —Աշոտի՝ Վրդ. խա.—գրծ. Աշոտով՝ Ղև. իբ (ձեռ. Աշոտիւ)։—Այբարատ 496—7։

— 15. Աշոտ, իշխան Վասպուրականի. հայր Սմբատի, որ ջարդեց Արաբներին՝ Գուկանք գյուղում.—սեռ. Աշոտի՝ Ղև. ը։

— 16. Աշոտ Մամիկոնեան, որդի Սմբատի՝ եղբոր Մուշեղի (մ. 761)։—Չամչ. Բ. 415, Justi 44 բ։

— 17. Աշոտ Բագրատունի, որդի Սահակ պատրիկի. երբ Մուշեղ Մամիկոնեանը ապստամբեց Հասան ոստիկանի դեմ, Աշոտը անխորհուրդ գտնելով ապստամբությունը, չմիացավ նրան, այլ աշխատեց համոզել հպատակության «775 թ»։—Ղև. լզ.—Յուշիկք, Ա. 207։

— 18. Աշոտ Բագրատունի. Արաբների կողմից Հայոց իշխան նշանակվեց 764 թվին և իշխեց 17 տարի, ըստ Սամ. անեց. 88. Մխ. այրիվ. 19.—Հավանօրեն վերոհիշյալ Աշոտ պատրիկն է № 14։

— 19. Աշոտ Բագրատունի, որդի Ատրներսեհի. Աշոտ Մսակերի հորեղբոր թոռն է. Արաբների կողմից նշանակվեց իշխան Վրաստանի (787—826 ըստ Պատ. վր.)—Վրդ. խա, խդ. Պատ. վր. ժգ.—սեռ. Աշոտի՝ Վրդ. խա, խբ։ (Վրաց աղբյուրները տես Մարկվարդ, Բագր. 107)։

— 20. Աշոտ Արծրունի, որդի Գագիկի և եղբայր Գրիգորի և Համազասպի. այս Գագիկը շենացրել է Աղբակ գավառը (Ը դար).—Սուտ-Շապհ. 37։

— 21. Աշոտ Արծրունի, որդի այս Աշոտի և հայր Գագիկի և Սահակի (Ը դար).—Սուտ-Շապհ. 37։

— 22. Աշուտ Բագրատունի, որի դուստրը Սմբատուհի՝ կինն էր այս վերջին Սահակ Արծրունու (Ը դար).—սեռ. Աշոտոյ՝ Սուտ-Շապհ. 37։

— 23. Աշոտ որդի Գրիգոր-Դերէնի Ա որդւոյ այս վերջին Սահակ Արծրունու։ Աշոտը ունեցավ երեք որդի՝ Գրիգոր-Դերէն-

Բ, Գագիկ և Համազասպ, որոնք բաժանեցին Վասպուրականը իրենց մեջ (Ը դար).—Սուտ-Տաշ. 39.—տես. Աշոտի՝ անդ։ (Այս Աշոտը պապն է Աշոտ Արծրունի մեծ իշխանի, № 30)։

— 24. Աշոտ հայր Բագրատի՝ իշխանին Խլաթի, Արաբների ժամանակ. հիշում է Բելադորին՝ հիջր. 188 թ.=Քր. 804 (տես Խալաթեան, Արաբ. մատ. 76)։

— 25. Աշոտ Մսակեր, որդի Սմբատի և հայր Սմբատ Խոստովանողի, թոռն Աշոտ պատրիկի (կուրացելոյ)։ Ազատվելով Բագրևանդի ճակատամարտից «775 թ», եղավ պատրիկ Հայոց։ Վանելով Ջահապ պարսիկի արշավանքը, եղբորը՝ Շապուհի հետ տիրեց Շիրակի և Աշոցքի «790 թ». դարձավ սպարապետ Հայոց «804 թ». հաղթեց Սևադա պարսիկին, որ ապստամբել էր Արաբների դեմ («822 թ»). սպարապետության պաշտոնը 20 տարի վարելուց հետո, մեռավ «824 թ»։—Հայրն է Բագարատ Բագրատունու, որին Արաբները կոչում են Բակրատ-իբն-Աշոտ (տես Խալաթեան, Արաբ. մատ. 64, 65, 77, 97, 122). իսկ իրեն՝ Աշոտ Մսակերին անվանում են Abūl-Xabbas-Asūxa-ibn-Sinbaṭ, ուր Asūxā اسوخا սխալ գրչություն է՝ փոխանակ آشوط Ašōṭ (տես REA 1, 440)։—Ասող. Բ. ը. Մխ. անեց. գ. Վրդ. խա, խբ, խգ. Սամ. անեց. 91. Մին. համդ. 29. Մխ. այրիվ. 19, 68.—տես. Աշոտոյ՝ Կիր. 43. Վրդ. խա, խբ. Մին. համդ. 29.—Աշոտի՝ Վրդ. խա.—Աշոտայ՝ Սամ. անեց. 91.—Զարբ. Թրգմ. 620։

— 26. Աշոտ անթիպատրիկ և ապոհիւպատ, որդի Շապուհի և հայր Շապուհ պատմագրի, եղբորորդի Աշոտ Մսակերի։ Իր տիտղոսները ստացավ Թէոփիլոս կայսրից՝ սրա Խաղտիք արշավելու ժամանակ (833—842)։ Կայսրը կարգեց նրան իշխան Սպերի.—տես. Աշոտոյ՝ Ուխտ. Ա. հե (Աշոտոյ ապոհի պատրակի). Ասող. Բ. գ.—Աշոտի՝ Տաշ. 248։

— 27. Աշոտ Արծրունի. Գուրգէն իշխանի հետ միասին կռվեց Բուղայի դեմ (851).—Արծր. Գ. դ, ժբ։

— 28. Աշոտ Բագրատունի, որդի Բագարատ պատրիկի. բռնվեց Բուղայի ձեռքով և աքսորվեց Բաղդադ («852 թ»).—Յհ. կթ. իե. Օրբ. լզ. Վրդ. խգ։

— 29. Աշոտ Սիսական, որդի Փիլիպպէի Ա, եղբայր և հաջորդ Վասակ Իշխանիկի. խարդախությամբ բռնվեց Բուղայից, առ երեսս ուրացավ քրիստոնեությունը և ազատ արձակվեց «852 թ»։ Վասակի մահից հետո ժառանգեց Սիսնեաց իշխանությունը՝ Աշոտ Ա-ի ժամանակ, շուրջ «886 թ»։ Ներկա էր Սմբատ Ա թա-

գավառի օծման հանդեսին «891 թ»։—Ցհ. կթ. իդ, իթ. Վրդ. խգ. Օրբ. լզ—լը, խ—խգ, ծզ.—սեռ. Աշոտոյ՝ Ցհ. կթ. իզ, խզ. Օրբ. լզ—լը, խ, խգ, խդ, խե, ծ—ծբ, ծդ, ծը, ծթ.—Աշոտի՝ Օրբ. լթ, խգ, ծ։

— 30. Աշոտ Արծրունի, մեծ իշխան Վասպուրականի. Նըկան ընդդեմ կռվի դուրս եկավ Բուղայի դեմ «852 թ», բայց նախարարները չմիաբանելով իրեն, անձնատուր եղավ և ընտանիքով գերի քշվեց Բաղդադ. վերադարձավ «858 թվին» և տիրեց Վասպուրականին՝ մինչև իր մահը «874 թ».—Ցհ. կթ. իե. Ասող. Բ. բ. Արծր. Բ. ե, զ. Գ. ա—գ, ե, թ, ժդ—ժը. Վրդ. խգ. Օրբ. լզ.—սեռ. Աշոտոյ՝ Ցհ. կթ. իը. Արծր. Բ. ե, զ. Գ. բ, ե, ժդ, ժզ.—Աշոտի՝ Արծր. Բ. ե, զ. Գ. ա, ժգ. ժդ, ժզ—ժը.—բց. յԱշոտէ՝ Արծր. Գ. ժզ.—հիշում է նաև Բելադորի՝ Աշոտ-իբն-Համզա-իբն-Գադիկ անունով, իսկ Իբն-Մասկավա՝ Աշոտ որդի Համզայի, հայր Աբասի (Խալաթ. Արաբ. մատ. 65, 78, 98, 123)։—Այս Աշոտն է, որի մասին Սուտ-Շապհ. էջ 50 և 56—64 տալիս է հեքիաթային մի պատմություն։

— 31. Աշոտ Ա. Բագրատունի, երկրորդ որդի Սմբատ Խոստովանողի. ծնվել է «819 թ». հոր մեկնելուց հետո Բաղդադ՝ դարձավ հայոց սպարապետ «855 թ». Բուղայի ահավոր արշավանքից հետո, սկսեց հող տանել երկրին և իր իմաստուն քաղաքականությամբ սիրելի դառնալով Մահմադ-Ջափր ամիրապետին, ստացավ նրանից իշխանաց իշխան տիտղոսը «858 թ»։ Այս միջոցին Ջահապ պարսիկ իշխանը ապստամբելով Արաբների դեմ՝ 80,000 զորքով մտավ Հայաստան. Աշոտ ուղարկեց իր եղբոր Աբասին նրա դեմ. Ջահապը չարաչար հաղթվեց ու փախավ։ Այս փառավոր հաղթությունը պատճառ դարձավ, որ ամիրապետը՝ հայ իշխանների խնդիրքով՝ Աշոտին ուղարկեց թագավորական պատիվ և այսպեսով հիմնվեց Բագրատունեաց թագավորությունը «885 թ»։ Աշոտ Ա. աթոռը դրավ Բագարանում. դաշնակցեց Հունաց Վասիլ Ա. կայսեր հետ և ըստ հույն պատմիչների՝ տեսության գնաց Պոլիս՝ Լևոն Զ. կայսեր, որ հաջորդեց Վասիլին, «886 թ»։ (Այսպիսի մի նշանավոր դեպք չեն պատմում սակայն մեր պատմիչները, ուստի Ազգապ. 997 շփոթված է համարում Աշոտ Բ-ի երթի հետ։ Նույն հարցի մասին ընդարձակ խոսում է նաև Տէր Սահակեան, Հայ կայսերք, Ա. 367—376 և հերքում Զամչեանի կարծիքը)։ Հիվանդացավ ու մեռավ Շիրակի մոտ «890 թ»։—Ստեփ. սեան. 50. Ցհ. կթ. յոչ. իզ, իը. ·լ. Արծր. Գ. թ, ժա, ժզ,

ժԹ—իա. Դ. ա. Ասող. Բ. ը, ե, գ. Գ. ը. Կղկնտ. Գ. իը. Ցհ. կԹ. հյր. 276. Քհնպ. 272. Անանուն ժմ. 15. Սամ. անեց. 94—96. Մխ. անեց. գ, իը. Օրբ. լզ. Օրբ. ողբ. 34. Նհպտք. 94. Կիր. 44, 45. Վրդ. խը—խե. Ցայսմ. մայ. 27. Սուտ-Շապհ. 55, 56, 65. Մխ. այրիվ. 19, 70. Գիրք Թղ. ձ, ձա. Մին. համգ. 30. Ջուղ. 65.—սեռ. Աշոտոյ՝ Նանայ 8. Ստեփ. սեան. 41. Ցհ. կԹ. իէ—ը. Ասող. Ա. ա. Բ. ը. Գ. ա—գ. Կղկնտ. Գ. իը. Արծր. Գ. ժա, ի. Դ. ա. Օրբ. լզ, խ, ծզ. Սամ. անեց. 98. Վրդ. խե. Ուռհ. 3. Միխ. տս. իԹ (=իը). Ցայսմ. ապր. 15, մայ. 27. Մեծոփ. 61. Սուտ-Շապհ. 65, 72. Մին. համգ. 30. Հայապ. 265. Տաշեան, Ցուց. 114 բ.—Աշոտայ՝ Կիր. 45. Սամ. անեց. 95. Գիրք Թղ. ձա. Նհպտք. 95.—Աշոտի՝ Ցհ. կԹ. յոջ. Սուտ-Շապհ. 64. Մխ. անեց. գ. Կղկնտ. Գ. իը. Արծր. Գ. ժզ, ի, իա. Կիր. 8. Վրդ. խե.—բց. յԱշոտէ՝ Արծր. Գ. ժզ.—Հաւաք. 13. Աշոտ Ա-ի փոխարեն գրում է Աբաս (սեռ.—Աբբասայ).—Աշոտի նկարը տես Ձեռ. Դաշեան, Բ. 36 բ. —Վրաց պղբ. Բ. 96. Զամչ. Բ. 674—707. Զարբ. Թրգմ. 622, 748. Ցուցիկք, Ա. 405—518:

— 32. Աշոտ հայ, մեծ ու հսկա անձ, «երկայնաձեռն և յերկոցունց ձեռաց աջողակ». հունաց Լեւոն կայսեր մոտ եկավ, մասնակցեց Բուլղարական մեծ պատերազմին, ուր և մեռավ 892 Թ.—Տէր Սահակեան, Հայ կայսերք, Ա. 369. Սիսուան 531:

— 33. Աշոտ որդի Դաւիթ կիւրապաղատի Տարօնոյ. մայրն է Մարիամ դուստր Գրիգոր-Դերենիկի. Սմբատ Ա պահանջեց որ Ահմադ ոստիկանը քշվի Տարօնից՝ իշխանությունը հանձնելով այս Աշոտին (895).—Արծր. Գ. ի.—սեռ. Աշոտի՝ Արծր. Գ. իգ:

— 34. Աշոտ որդի Սուփանի, իշխան Գեղարքունեաց. մեռավ Սմբատ Ա-ի պատերազմում Ահմադ ոստիկանի դեմ (Թուխքի ճակատամարտը «895 Թ»).—Արծր. Գ. իգ:

— 35. Աշոտ Սիւնի «չքնաղագեղ», որդի Վասակ Գաբուռի. Աշոտ Ա Թագավորի Մարիամ աղջկա որդին էր. իր մորեղբայր Սմբատ Ա-ի հետ պատերազմեց Ահմադ ոստիկանի դեմ և մեռավ Թուխքի ճակատամարտում «895 Թ».—Ցհ. կԹ. լդ. Կղկնտ. Գ. իը.—Զամչ. Բ. 676, 705, 721:

— 36. Աշոտ իշխան Սիւնեաց, մեռավ 897 Թ. որին ողբալով եղերամայր կանայք, ասում էին. «Մի եկեսցէ և մի լիցի այսպիսի տարի ի վերայ երկրի, որչափ ազգ մարդկան է».—Կղկնտ. Գ. իը:

— 37. Աշոտ կիւրապաղատ, իշխան Տարօնի. Գրիգոր-Դերե-

նիկը բռնելով նրան՝ բանտարկեց Սևանի ամրոցում (Թ դար).— Արծր. Գ. Ժթ.—սեռ. **Աշոտոյ**՝ Արծր. Գ. Ի.—Յուշիկք, Ա. 486։

— 38. **Աշոտ** Արծրունի, որդի Գրիգոր-Դերենիկի Գ, որ Աշոտ Ա Թագավորի Սոփի աղջկան ամուսինն էր. եղբայր Գագիկի և Գուրգէնի. նահապետ Արծրունեաց և իշխան Վասպուրականի. ապստամբեց Սմբատ Ա-ի դեմ և միացավ Ատրպատականի Աֆշին ոստիկանի հետ։ Սրա վրա իր աները՝ Գագիկ Արծրունին բռնեց նրան և բանտարկեց։ Գագիկի սպանությունից հետո՝ ազատվեց բանտից և նորից իշխանության գլուխն անցավ։ Այնուհետև օգնական էր Սմբատի։ Կոչվում է նաև Աշոտ-Սարգիս։ Ըստ Արծր. ծնվել է «877 թ», հաջորդել է հորը՝ Գրիգոր-Դերենիկին՝ «886 թ» և մեռել է «904 թ»։—Յհ. կթ. իթ, լդ. լը. Արծր. Գ. Ժթ, ի, իբ, իդ, իե, իը, լ. Դ. ա, բ. Սուտ-Շապհ. 64. Հաւաք. 33.—սեռ. **Աշոտոյ**՝ Յհ. կթ. լդ. լը. Արծր. Գ. ա—գ. Սուտ-Շապհ. 64, 71, 84.—**Աշոտի**՝ Արծր. Գ. ի, իբ, իդ, իե, իթ. Դ. ա—գ. Սուտ-Շապհ. 69.—պատմ. **զԱշոտն**՝ Արծր. Գ. իթ։—Ջամչ. Բ. 704—5, 717—8, 721, 730—31. Ազգապ. 1023։ Ըստ Սուտ-Շապհ. 64, 69, 71, 84 այս Աշոտը № 30 Աշոտ իշխանի թոռն է։

— 39. **Աշոտ** Գնթունի, եղբայր Վասակի. իշխան Գուգարքի. բերդապահ և կառավարիչ Շամշուլդէի. ներկա եղավ Տաթևի օծման հանդեսին (906 թ). ապստամբեց Աշոտ Բ-ի դեմ, բայց չարաչար հաղթվեց «922 թ». հետո իր զինվորների ձեռքով սպանվեց.—Յհ. կթ. ծէ, կբ. Օրբ. խբ.—սեռ. **Աշոտոյ**՝ Յհ. կթ. ծէ։—Այրարատ 248։

— 40. **Աշոտ** իշխան Մոկաց, ուրիշ շատ իշխանների հետ օգնական գնաց Սմբատ Ա Թագավորին՝ պատերազմելու համար Ափխազների Դոստս Թագավորի դեմ, Արտահանի շրջանում շուրջ 908 թիվը).—Սուտ-Շապհ. 81։

— 41. **Աշոտ** Բագրատունի, իշխանաց իշխան. սրա որդին է Դավիթ, որին ուղղեց Շապուհ Բագրատունին իր գրած Պատմությունը.—սեռ. **Աշոտի**՝ Շապհ. 248։

— 42. **Աշոտ** Բագրատունի, որդի Շապուհ սպարապետի՝ եղբոր Սմբատ Ա-ի. հոր մահից հետո եղավ սպարապետ Հայոց. շինեց Բագարանի և Կողբի եկեղեցիները. Յուսուփ ոստիկանի արշավանքին՝ անձնատուր եղավ նրան «910 թ». երբ Աշոտ Բ դարձավ Պոլսից, սա ևս թագ ստանալով Յուսուփից, իրեն անկախ հայտարարեց և սկսեց պատերազմել Աշոտի դեմ. վերջապես հաշտվեցին և Աշոտ Բ նստավ Շիրակավանում, իսկ այս Աշոտը՝

Դուին «921 թ».—Յհ. կթ. յոջ. ը. լթ, խդ, խղ, ծգ, ծե, ծը, կ, կգ, կզ. Ասող. Գ. դ, ե. Օրբ. լէ. Վրդ. խզ.—սեռ. Աշոտոյ՝ Յհ. կթ. խզ, ծե, ծզ, ծը, ծթ, կէ. Օրբ. լէ.—Աշոտի՝ Յհ. կթ. խդ, ծզ.—սա է թվում այն Աշոտ Բագրատունի սպարապետը, որ Պոլսում Թութայել գրչին գրել տվեց մի Ավետարան, 909 թ.—Ձեռ. Դաշեան, Բ. 28 ա (հիշված է նաև ՀԱ 1934, էջ 91. Աշոտ Բագրատունի անունով)։

— 43. Աշոտ Թագավոր Վասպուրականի, որդի Դերենիկի և հայր Ապուսահլի.—սեռ. Աշոտոյ՝ Ուռհ. 8, 34։

— 44. Աշոտ իշխան, որդի Սահակ իշխանի Սիւնեաց. իր անունով կա մի խաչքար Վայոց ձորում, 925 թվից (բայց այս թվին Աշոտ անուն Սիւնեաց իշխան ծանոթ չէ).—Սիսական 110։

— 45. Աշոտ Բ Երկաթ կամ Շահնշահ. երեց որդի Սմբատ Ա-ի. պատանդ էր Աֆշինի մոտ, որից ազատվեց Ներքինապետի շնորհիվ. Մուշեղ եղբոր հետ Յուսուփ ոստիկանի վրա գնաց, բայց Ուտեացոց դավաճանությամբ հաղթվեց։ Սմբատից հետո գահ բարձրանալով «915 թ», Պարսից սարսափը դարձավ։ Ամբողջ կյանքը անցկացրեց կռիվների մեջ, մի կողմից ճնշելով տեղական ապստամբությունները, մյուս կողմից կռվելով պարսիկների դեմ։ Այս պատճառով ստացավ Երկաթ տիտղոսը, իսկ արաբներից՝ շահնշահ։ Գնաց Պոլիս և կայսրից օգնական զորք ստանալով՝ եկավ Հայաստան «921 թ»։ Մեռավ 14 տարի թագավորելուց հետո՝ «929 կամ 930 թ»։—Յհ. կթ. յոջ. լե, լէ, խե, ծ, ծդ—կ, կգ. Ասող. Գ. դ, գ. Մխ. անեց. գ. Օրբ. լէ. Կիր. 47. Վրդ. խզ. Սամ. անեց. 99. Յայսմ. մայ. 27. Նհպտք. 96. Մխ. այրիվ. 19, 71. Մին. համդ. 32.—սեռ. Աշոտոյ՝ Յհ. կթ. խե, ծ, ծե—կ, կը, կգ. Ասող. Գ. դ, է. Օրբ. լէ. Միխ. ասո. իթ (=իը), Յայսմ. մայ. 27. Սամ. անեց. 99. Մին. համդ. 32.—Աշոտի՝ Յհ. կթ. խ, կա, կգ.—պարզապես կոչված Երկաթայ՝ Ուռհ. 84, 86 և 219, բայց սխալմամբ Աշոտ Ա-ի համար.—Ջամչ. Բ. 520, 723—822. Վրաց աղբ. Բ. 97։ (Պերփեռուժէն կոչում է Աշոտիկ՝ զանազանելու համար Աշոտ Ա-ից, ըստ Տեր Սահակեան, Հայ կայսերք, Ա. 367։ Աշոտ Երկաթի Պոլիս գնալու մասին խոսում են նաև հույն պատմիչները և գովում են նրա մեծ ուժը։ Ասում են թե «երկու ձեռքով երկաթեայ գաւազանի ծայրերէն բռնելով, իր ըօրինակ ուժովը զանիկա կը ծռէր և շրջանակի ձև կուտար» (Տէր Սահակեան, Հայ կայսերք, Ա. 371)։

— 46. Աշոտ իշխան Տարօնի. մեռավ 966 թ. որից հետո

հույները գրավեցին Տարոնը.—Ասող. Գ. ը։—Տէր Սահակեան, Հայ կայսրք, Բ. 233։

— 47. **Աշոտ Գ Ողորմած**, որ և Աշոտ-Գագիկ. որդի Աբաս Ա-ի. թագավոր Հայոց Բագրատունեաց. աթոռը դրեց Անիում, որ ամրացրեց պարսպով և զարդարեց վանքերով, եկեղեցիներով, անկելանոցներով ու որբանոցներով, որի համար էլ կոչվեց Ողորմած։ Կազմեց 90,000-անոց բանակ, հաղթեց Կովկասյան լեռնականներին, Համտուն արաբ զորավարին («959 թ») և օգնեց հունաց Զմշկիկ կայսեր՝ արաբների դեմ արշավանքի ժամանակ։ Այցելել է Նախավկայի վանքը, ուր շինություններ է արել (Արձ. 966 թվի, Սիսական 517—8)։ Իշխել է «954—977 թ»։—Մխ. անեց. գ. Ասող. Գ. ը, ժա. Օրբ. ծբ. Վրդ. խը. Ուռհ. 3, 17—20. Մագ. թղ. ժթ. Ցայսմ. մայ. 27. Մին. համդ. 33. Մխ. այրիվ. 19. Նհպտք. 96. Սմբ. պատմ. 21, 32—34, 36, 37. Սամ. անեց. 100 (սխալմամբ կոչում է «որդի Սմբատայ». այսպես և Օրբ. ժմ. 11), 102. **Աշոտոյ**՝ Ասող. Գ. ը, թ, ժա. Լաստ. բ. Մխ. անեց. գ. Մեսր. եր. 138. Օրբ. լգ, խթ, ծբ, ծդ. Օրբ. ժմ. 11, 12. Վրդ. ծ, ծբ, կա. Ուռհ. 3, 18, 28, 84, 86. Միխ. աս. իթ (=իը). Ցայսմ. նոյ. 18, մայ. 27. Սմբ. պատմ. 21, 34. Սամ. անեց. 100—102, 104. Մին. համդ. 33, 111, 114—5.—**Աշոտայ**՝ Կիր. 49, 50. Օրբ. ժմ. 11. Նհպտք. 97. Ուռհ. 18.—**Աշոտի**՝ Ուռհ. 3, 4. Վրդ. աշխ. 511 (տպ. Ոլոտին).—պարզապես **Ողորմած**՝ Կիր. 49—Վրաց աղբ. Բ. 97. Ջամչ. Բ. 836—850. Ջարբ. Թրգմ. 454. Այրարատ 497։ Իր գերեզմանի մասին տես Շիրակ 29, 30, 31։

— 48. **Աշոտ Արծրունի**, թագավոր Վասպուրականի. որդի և հաջորդ Աբուսահլի. եղբայր Սենեքերիմի և Գուրգէնի. մկրտական անունով Սահակ։ Աբուսահլի մահից հետո իր երկու եղբայրների հետ բաժանեցին Վասպուրականի պետությունը. ըստ Ասողկի գահակալեց 968 թ. իսկ ըստ Աղգապ. պետք է դնել «972 թվից» քիչ հետո։ Ունեցել է մի անհաջող պատերազմ Գողթան Աբուսլուփ ամիրայի դեմ 983 թ. նույն թվին հիմնարկել է Ապարանից Ս. Խաչը։ Մեռել է «990 թ»։—Գր. Նար. մատ. 387. Ասող. Գ. խգ. Հաւաք. 38 (գրում է Աբշատ).—սեռ. **Աշոտոյ**՝ Ասող. Գ. ժգ։

— 49. **Աշոտ Բագրատունի**. խորթ որդի Վահան Բագրատունի իշխանի Տարոնոյ. հոր կողմից պատվիրակ գնաց Պոլիս՝ Լեոն կայսեր մոտ և բշխանական պատիվ ստանալով՝ դարձավ Տարոն-

հոր մահից հետո, մյուս եղբայրների հետ ժառանգեց Տարոնի իշխանությունը (Ժ դար).—Չամչ. Բ. 726։

— 50. Աշոտ, երեց որդի Բագարատի, եղբայր Ռոմանոսի և եղբորորդի Աշոտ պատրիկի. Բագարատի մահից հետո ժառանգեց Տարոնի իշխանությունը. իր որդիներն են Գրիգոր և Բագարատ (Ժ դար).—Չամչ. Բ. 818։

— 51. Աշոտ Բագրատունի, որդի Տարոնի Գրիգոր իշխանի, որ Թեսալոնիկեի կառավարիչ էր նշանակված։ Վասիլ Բ. կայսեր հրամանով՝ Գրիգոր և Աշոտ հարձակվեցին Բուլղարաց հայազգի Սամուել Թագավորի վրա, որ մոտեցել էր Թեսալոնիկեին։ Աշոտ՝ քաջ ու հանդուգն երիտասարդ, թեև մեծ ջարդ տվեց թշնամի բանակին, բայց անխոհեմությամբ մխրճվելով թշնամի բանակի խորը, դարան մտած բուլղարներից ձերբակալվեց։ Սպանվեց նաև իր հայրը, որ իր որդու փրկության էր շտապում (996)։ Սամուելի դուստրը սիրահարվեց գերի Աշոտին և սպառնաց անձնասպանել, եթե հայրը թույլ չտա ամուսնանալ Աշոտի հետ։ Սամուել ցարը վերջապես զիջեց և իրեն փեսայացնելով Աշոտին, նրան վստահեցավ Դիռախիոն բերդաքաղաքը, որ ծովեզերյա մի նշանավոր նավահանգիստ էր։ Աշոտ, իր հոր մահվան իբրև վրեժ, որոշեց քաղաքը հանձնել հունաց։ Իր այս միտքը հայտնեց բուլղարաց աբքայադստեր և նրա համաձայնությունը խնդրեց։ Իր խնդիրքը սիրահոժար հավանության արժանացավ, քաղաքը հանձնեցին հունաց, իրենք էլ նավով Պոլիս փախան։ Աշոտ անվանվեց զորավար, իսկ նրա կինը նաժիշտ Հեղինե կայսրուհու, որ Վասիլ կայսեր եղբոր՝ Կոստանդինի կինն էր (997 Թ)։—Ասող. Գ. ԼԴ, ԼԴ. Չամչ. Բ. 875. Գելցեր, Հմռ. Բիւզ. պատմ. 256. Տէր Սահակեան, Հայ կայսերք, Բ. 280—284, 566։

— 52. Աշոտ եպիսկոպոս Սիւնեաց «968—985 Թ». հաջորդեց Վահանին, որ ընտրվել էր Հայոց կաթողիկոս. նախապես այրի երեց էր. «985 Թ» հրաժարվելով՝ իր աթոռը հանձնեց որդուն, որ Յովհաննէս Զ անունով նստավ «985—992 Թվերին» ($6^1/_2$ տարի). այս Թվին Յովհաննէսը վախճանվելով՝ Աշոտ նորից նստավ աթոռը «992—997 Թ», մինչև իր մահը.—Օրբ. ծգ. հա։

— 53. Աշոտ մարզպան, զորավար Գագիկ Ա-ի. օգնական գնաց Դավիթ կիւրապաղատին՝ կռվելու համար Պարսից դեմ «998 Թ».—տես. Աշոտոյ՝ Ասող. Գ. խա.—կարծեմ այս է Աշոտ մարզպան կամ իշխանաց իշխան (մ. 1002), որդի Գէորգ իշխանի Պահլաւունւոյ և հայր Վահրամի՝ քեռայր Գրիգոր Մագիստրոսի

(Ալիշան, Շնորհ. 13)։ Ծառայել և պատիճներ է ստացել Աշոտ Գ, Սմբատ Բ և Գագիկ Ա թագավորներից (953—1020). հիշված է երեք արձանագրության մեջ, որ տես Շիրակ 15, 41, 113։

— 54. Աշոտ Մխական, իշխանաց իշխան, քեռայր Սենեքերիմ Վասակ Ա թագավորի. սրա մի որդին՝ Գրիգոր՝ եղավ իշխանաց իշխան և հիշված է իբր վկա՝ Տաթևի 1019 թվի կալվածագրում. իսկ մյուս որդին Սմբատ Բ՝ եղավ թագավոր Սյունեաց.—Օրբ. ծգ.—սեռ. Աշոտոյ՝ Օրբ. ծը, ծթ.—Աշոտի՝ Օրբ. ծե։

— 55. Աշոտ կոչվում է նաև Գագիկ Ա թագավորը, որ գահակալեց «990—1020 թ». տես Շիրակ 134 (Արձ.)։

— 56. Աշոտ Արծրունի, որդի Գուրգենի, եղբայր Դերենիկի և Գագիկի, եղբորորդի Արծրունեաց Սենեքերիմ թագավորի, որի հետ գաղթեց Սեբաստիա, «1021 թ».—Վրդ. ծա։

— 57. Աշոտ Երկաթ, որդի Յովհաննէս-Սմբատ թագավորի. հիշված է իր մոր (Յովհաննէս-Սմբատի կնոջ) մի արձանագրության մեջ, որ գրված է 1038 թ. (Շիրակ 171)։ Այս թվից քիչ հետո և հոր մահվանից («1042») առաջ մեռել է Աշոտը։—Նույնին հիշատակում է նաև Դուրեան, Ազգ. պատմ. 377՝ հանելով Լաստիվերտցու մի ձեռագրից։

— 58. Աշոտ Դ Բագրատունի, որդի Գագիկ Ա-ի, կրտսեր եղբայր Յովհաննէս-Սմբատ թագավորի, որի ձեռքից գահը խլելու համար՝ միացավ Վասպուրականի Սենեքերիմ թագավորի հետ և Անիի վրա արշավելով, հաղթեց եղբորը։ Նախարարները հաշտեցրին երկու եղբայրներին, պայմանով որ Յովհաննէս-Սմբատը թագավորե Անիում, իսկ Աշոտը՝ արևելյան Հայաստանում։ Մեռավ Յովհաննէս-Սմբատից քիչ առաջ՝ «1041 թ»։—Լաստ. բ, ժ. Անանուն ժմ. 17. Վրդ. ծբ, ծգ, ծե. Ուռհ. 3, 7—10, 79. Սմբ. պատմ. 26—28, 48, 54. Նհպտք. 99. Սամ. անեց. 102, 105, 107. Օրբ. ժմ. 13 (մահվան թվականը դնում է ՆՁԸ=Քս. 1041!). Շիրակ (Արձ.) 33, 68.—սեռ. Աշոտոյ՝ Լաստ. բ, ժ, ժէ. Անանուն ժմ. 17. Վրդ. ծբ, ծե. Ուռհ. 8—10, 33, 34, 64, 79, 84, 86, 161, 184, 198, 218, 269, 318. Մագ. թղ. հգ. Սմբ. պատմ. 26—28, 39, 54, 57, 79. Սամ. անեց. 107. Մխ. համգ. 34.—Աշոտայ՝ Լաստ. բ. Կիր. 52. Սամ. անեց. 106.—Աշոտի՝ Վրդ. ծբ. Մագ. թղ. դ, հբ. Օրբ. ժմ. 13. Օրբ. ողբ. 61։—Ջամչ. Բ. 896—919։

— 59. Աշոտ մարզպան, որին Կորիկէ թագավորը հանձնեց

Լոռիի Վարդաբլուր ավանի մեծ եկեղեցու շինությունը՝ 1050 թ. —Տաշեան, Ցուց. 984 ա։

— 60. Աշոտ, հայր Սենեքերիմ Ա Թագավորի Սիւնեաց. պետք է կարդալ Սևադայ.—տես. Աշոտոյ՝ Օրբ. կ։

— 61. Աշոտ որդի Կորապինայ. Սիւնեաց Սենեքերիմ Ա Թագավորի իշխանն էր. 1089 թվին Ամբրաւաքարը նվիրեց Տաթևին.—Օրբ. ծթ։

— 62. Աշոտ որդի Յովհաննէսի, որ էր որդի Գագիկ Բ-ի. դիմեց Մելիքշահ սուլթանին (1072—92) և ստացավ նրանից Անիի իշխանությունը։ Անիի կառավարիչ Մանուչէ ամիրայի (1072—1110) ազգականներից ներքինի ոմն թունավորելով սպանեց նրան՝ հավանաբար նույն իսկ նախ քան Անի մտնելը։ Իր մարմինը ուղարկվեց Պոլիս, ուր իր հայրն էլ մեռած էր արդեն։ Գրեթե նույն միջոցին մեռավ նաև իր պապը՝ Գագիկ Բ (1079)։ —Վրդ. կ. Շիրակ 98 բ։

— 63. Աշոտ, որի թոռն է Աշոտ Դսեղեցի (№ 65), նվիրատու Հոռոմոսի վանից, 1246 թ.—Շիրակ 24։

— 64. Աշոտ, պարոն և տեր Կանչոյ. ներկա եղավ Լևոն Բ-ի թագադրության հանդեսին «1199 թ».—Սմբ. պատմ. 111։ Սիսուան 193, 471։

— 65. Աշոտ Դսեղեցի, որդի Գէորգի և թոռն Աշոտի. Հոռոմոսի վանքին զանազան նվերներ է արել 1246 թ.—Շիրակ 24, 27։

— 66. Աշոտ Խաղբակեան, հավանաբար թոռ Գրիգոր Խաղբակեանի կամ որդի Վասակ Բ-ի. հիշատակված է մի խաչքարի արձանագրության մեջ «ի տէրութեան տեղոյս պարոն Աշոտոյ», 1287 թ.—Յովսէփեան, Խաղբակեանք 86։

— 67. Աշոտ Նզրեցի. հավատափոխ իշխան Եգիպտոսի սուլթանի, որին դրդեց արշավել և գրավել Սիսը՝ «1374 թ».—Ազգապ. 1942։

ԱՇՈՒՇԱՅ, պր. ծագումն անհայտ (Justi 48 ա)։

— Աշուշայ, բդեշխ Գուգարաց. հրավիրեց Ս. Մեսրոպին իր իշխանությունը (Տաշիր)՝ լուսավորությունը տարածելու համար։ Յազկերտ Բ պահեց նրան իր մոտ իբրև պատանդ, երբ ուրացյալ նախարարներին մոգերի հետ արձակեց Հայաստան (450)։ Վարդանանց պատերազմից հետո աղաչեց Յազկերտին և ազատեց Վահան, Վասակ և Արտաշէս Մամիկոնեաններին, որոնք պատանդ էին Պարսից արքունիքում և որոնց իր հետ տանելով, պահում էր

իր մոտ («455 թ»).—Փարպ. հրտր. 1904, էջ 47, 52, 55, 59, 107, 110, 111.—Այս Աշուշայից մնում է իր կնիքը՝ այս հունարեն արձանագրությամբ. Ασουσας πιτιαξης Ιβιρων Καρχηδων? (Marquart, Հայ բդեաշխք, էջ 14).—Կոր. 20. Օրբ. ժգ.—Հաշտուշտ՝ Կղկնտ. Բ. գ (հրտր. Էմինի).—սեռ. Աշուշայի՝ Կղկնտ. Բ. գ (հրտր. Շահն.), Սիմ. ապար. 49.—բց. Աշուշայէ՝ Խոր. Գ. կ.—Զամչ. Ա. 508, 518, Բ. 32, 38, 40, 121. Justi 48 ա, Վրաց աղբ. Ա. 11։

ԱՇՐԱՖ, ար. ունինք մի անգամ հիշված անհայտ թվականով մի հիշատակարանում, որ սակայն գրված է 1509 թվից ուշ (Ձեռ. Վասպ. 642)։ Կարծում եմ որ պետք է ուղղել Աշրաֆ (կամ Աշրաֆ), իբր արաբ. اشرف ašraf «ամենափառավորը»։ Այս անունով հայտնի են Աշրաֆ-Տարաճ, Եգիպտոսի սուլթանը, որ վերջ տվավ հայոց Ռուբինեան իշխանության, գերելով Լևոն Զ-ին (1375), և Աշրաֆ կամ Էշրիֆ, էմիր Աֆղանիստանի, Միր-Մահմուդի հորեղբորորդին և հաջորդը, որ Պարսից գահը բարձրացավ, բայց Նադըր-Ալիի ձեռքով սպանվեց (1730)։

ԱՇՓԱՇԱ, իգ. թերևս ուղղելի Աղփաշա, որ է թրք. آقپاشا aq-paša «սպիտակ փաշա», ինչպես կա Աղսուլթան (տես վերը)։ Ունինք միայն՝

— Աշփաշայ, կին Ռստակէս քահանայի (1619 թ).—Ձեռ. Թաւր. 68 ա։

ԱՉԵՐ, ար. հայերեն աչեր «աչքեր» բառից? ունինք մի անգամ՝

— Աչեր, տանուտեր Աղթամարի. հիշված է 1321 թվից հետո գրված անթվական մի հիշատակարանում.—Manus. brit. mus. 24 ա։

ԱՉԻՐ, ար. ծագումն անհայտ. կա միայն՝

— Աչիր, նախարար Սիւնեաց, հաջորդեց Վասակին (Զ դար).—Օրբ. ժզ։

ԱՉՔԱՉԱՏ, իգ. ծագումն անստույգ (թերևս նաև ձևը). հիշված է մի անգամ՝

— Աչքազատ, կին Գրիգորիս քահանայի և մայր Գրիստոսատուր կրոնավորի, որ Սուրխաթում (Ղրիմ) գրել տվեց մի Աստուածաշունչ, 1352 թ.—Ձեռ. Վասպ. 7։

ԱԳԱԿ, ար. ծագումն անհայտ. հիշված է 1724 թ.—Ձեռ. Դաղեան, Բ. 35 ա։

ԱԳԱՀ, ար. կեղծ անուն, որ կազմեց Հ. Ս. Բագրատունին, Հայկ դիւցազն, էջ 610, Ապահունեաց գավառի անունից, ենթադ-

*բելով թե Հայկ նահապետը ունեցել է այս անունով մի որդի։ Հժմա. Խոր. Բ. 8 «Այլ և զնախարարութիւնս Ապահունեաց և զՄանաւազեան և զԲզնունեանն՝ ի նոյն զաւակացն Հայկայ»։ Այստեղ, քանի որ Մանաւազեան և Բզնունեան ծագում են Հայկի Մանաւազ և Բազ որդիների անուններից, ուստի՝ ըստ Բագրատունու, Ապահունին էլ ենթադրում է Ապահ անուն մի որդի։ 1890-ական թվերին, Արևմտահայ գրողներից մեկը իր վրա վերցրեց այս անունը, ստուգաբանելով իբր* ապ-ահ *«անվախ, աներկյուղ»։*

*†ԱՊԱՒ, տր. ծագումը անհայտ. հիշված է մի անգամ Զանգեզուրում, 1634 թ. (Ձեռ. Վասպ. 884) և մի անգամ էլ Ծարում, անթվական մի հիշատակարանի մեջ՝ Ձեռ. Նոր-Բայազ. 23 բ։ Որովհետև Ղարաբաղի բարբառում* ով *դառնում է* ավ, *ուստի պետք է ենթադրել թե* Ապաւ *ձեն էլ ծագում է* Ապով *անունից, որ տես։ Ավելի հին է* Ապաւ *1578 թ. (Սիսական 69)։*

*ԱՊԻՐԱՏ, տր. արդյոք հյ.* ապիրատ *«անարդար» բառն է. և ինչպես կարող էր այսպիսի մի հոռի ածական մարդու անուն դառնալ։ Այս անունը գործածական էր մեր մեջ ԺԱ—ԺԳ դարերում. նույնը գտնում ենք նաև Վրաց մեջ. ինչպես՝* Ապիրատ *իշխան Վրաց (Վրդ. ծե)։*

— 1. Ապիրատ, *որդի Հասան մագիստրոսի, սիրելի իշխան Աշոտ Դ Բագրատունու. 12,000 ձիավորով օգնական եկավ նրան՝ Յովհաննէս-Սմբատի դեմ պատերազմի ժամանակ։ Խոստացել էր Աշոտին՝ սպանել նրա եղբոր՝ Յովհաննէս-Սմբատին, երբ նա բանվել էր Աշոտի լարած թակարդում։ Բայց խղճալով արձակեց նրան, իսկ ինքը փախավ Դուինի Ապուսվար ամիրայի մոտ, որ վախեցած նրա ուժից, սպանել տվեց։ Այս Ապիրատն է, որ շինել է Կեչառու վանքը և հանել Երևանի առուն (1031 թ)։ Իր որդիքն են Ապլջահապ և Վասակ, որոնք գնացին Անի։ Իր թոռներն են Գրիգոր Ապիրատեան՝ իշխան Անիի և Շիրակի, և Բարսեղ կաթուղիկոս Անեցի։—Վրդ. ծդ. Մխ. այրիվ. 73. Ուռհ. 10, 11. Սմբ. պատմ. 28, 29.—սեռ.* Ապիրատի՝ *Վրդ. ծթ, կգ. Ուռհ. 11, 211, 269. Սմբ. պատմ. 29.—* Ապիրատեանց՝ *Օրբ. ծը.—Զամչ. Բ. 897, 899, 900. Ալիշան, Շնորհ. 13, Շիրակ 41, 98, Այրարատ 259։*

— 2. Ապիրատ, *սիրելի իշխան Գագիկ Բ-ի, որ կարգեց նրան վերակացու Անիի, երբ ինքը մեկնում էր Պոլիս՝ կայսեր մոտ (1045).—Զամչ. Բ. 932, 935։*

— 3. Ապիրատ *(Վահրամ Գրիգորիս) Մագիստրոսեան, Պահ-*

լուսնի ցեղից. Գրիգոր Մագիստրոսի աղջկա որդին, քեռորդի Գրիգոր Վկայասէրի և հայր Գրիգոր Գ և Ներսէս Շնորհալի կաթողիկոսների. Ծովք-Տլուքի իշխանն էր. Արաբների դեմ հաղթական պատերազմից հետո, դարան մտած մի արաբի թունավոր նետով սպանվեց՝ Գող-Վասիլի մահից («1112 թ») քիչ առաջ. Իրեն հաջորդեց որդին Վասիլ.—Ցայսմ. յուլ. 30.—սեռ. Ապիրատի՝ Վրդ. կզ. Վրք. շնորհ. 30—31. Ուռհ. 300, 329. Ցայսմ. յուլ. 30.—Ապիրատայ՝ Սամ. անեց. 139.—Չամչ. Գ. 18, 19, 32. Ալիշան, Շնորհ. 45, Տաշեան, Ցուց. 92, 514, 638։

— 4. Ապիրատ, եղբայր Լիկոսի, Վասակի, Վահրամի և Գրիգոր Ա արքեպիսկոպոսի Եգիպտահայոց, հորեղբայր Ներսէս (մ. «1173 թ») Շնորհալու.—Ալիշան, Շնորհ. էջ 12 տախտակը։

— 5. Ապիրատ, որդի Վասիլի, եղբայր Գրիգոր Տղայի, քաջ զինվորական էր. մեռավ երիտասարդ հասակում, նախ քան 1174 թ.—Թորոս Աղբար, Ա. 118։

— 6. Ապիրատ, որդի Գրիգորի, որդւոյ Վասակայ, եղբայր Բարսեղ եպիսկոպոսի Անեցւոյ, իշխան Անիում (1174). պատերազմի դուրս եկավ Կարսի ամիրայի դեմ, բայց բռնվեց և բանտարկվեց. Բարսեղը դիմեց Վրաց թագավորին և մեծ փրկանքով ազատեց նրան. այնուհետև Ապիրատը սիրելի դարձավ Վրաց թագավորին և նրա նիզակակիցն էր՝ իր որդի Գրիգորի հետ.—Վրդ. հզ. Չամչ. Գ. 147. Շիրակ 100 բ. Յովսէփեան, Խաղբակեանք 3։ (Օրբ. ժմ. 12 գրում է. «Թուրքն էհար զԱպիրատն» (ՆՀ=1021 թ) և էջ 18 «Ի նոյն ամի ազատեցաւ Ապիրատն գնով» (ՈԹ=1160 թ). Անշուշտ սխալ, որովհետև մի մարդ չի կարող 139 տարի գերության մեջ մնացած լինել)։

— 7. Ապիրատ, կրոնավոր, թոռն Գրիգոր Մագիստրոսի. Արաբների պատերազմում նահատակվեց Ծովքում. Շնորհալին կոչում է նրան իր հարազատը.—Շնորհ. վիպ. 1418. Թորոս Աղբար, Ա. 117?

— 8. Ապիրատ Շահանեան, Ն. Շնորհալու երեց եղբայր Շահանի որդին. 30 տարեկան եղած ժամանակ Պոլսումն էր և զվարթ կենցաղ էր վարում. այնուհետև տվեց իր անձը եկեղեցուն. ձեռնադրվեց եպիսկոպոս և Գրիգոր Տղայից ստացավ Տարսոնի, Լամբրոնի, Անտիոքի և ապա Կեսարիայի թեմը (տես և Գրիգոր Զ կաթողիկոս).—Շնորհ. չփ. էջ 227, 303. Ողբ. եդես. 1019. Մխ. աս. իէ (=իզ).—սեռ. Ապիրատի՝ Շնորհ. չփ. էջ 303. տես և Տաշեան, Ցուց. 501 բ, 1020 բ։

— 9. Ապիրատ Պահլաւունի, որի որդիքն են Սարգիս եպիսկոպոս և Շարափշահի. վերջինիս աղջիկն է Թայիկ՝ կին Սպանայի, որի հիշատակին գրված է Բագնայրի Աւետարանը՝ 1232 թ.—Ալիշան, Շնորհ. 14, Շիրակ 117, 118, Յովսէփեան, Նիւթեր և ուս. Ա. 17 (Սարգիս եպիսկոպոսը հիշված է 1209 թվին, ուստի և Ապիրատն էլ ԺԲ դարից է)։

— 10. Ապիրատ Լամբրոնացի, որդի Օշին Բ իշխանի Լամբրոնի, եղբայր Ներսէս Լամբրոնացու և Հեթում Սեբաստոսի. ծնվել է 1153 թվից հետո.—տես. Ապիրատի՝ Պատմ. լմբ. 234, Տաշեան, Ցուց. 333 ա, 607 ա, 638 բ. Սիսուան 81 ա. Զարբ. Թրգմ. 464, 513, 607. Աթան. յոչ. ժդ։

— 11. Ապիրատ, հիշված է Խծկօնից մի արձանագրության մեջ, Խաչատ Շեխեանցի և նրա կին Աւագ տիկնոջ հետ, որոնք անշուշտ իր ծնողներն են և կալված են նվիրել վանքին, 1221 թ.—Շիրակ 128։

*ԱՊԼԱՀԱՏ, ար. իմա Աբլահադ, որ է արաբ. ابالاحد ab-ul-aḥad. արաբական սովորությամբ այս անունն է ստանում այն անձը, որ Aḥad «մի, միակ» անունով մի որդի է ունենում. ըստ այսմ Աբլահադ նշանակում է «հայր Միակի»։ Մի անգամ միայն ունինք հիշատակված ԺԶ դարում։

— Ապլահատ, ամուսին Հռոմի, որ Ամիթ քաղաքում գրել տվեց մի Աւետարան, 1587 թ.— Տաշեան, Ցուց. 319 բ։

*ԱՊԼՄԱԽՐ, ար. զուտ արաբական անուն, որ նշանակում է «հայր Մախրի». արաբական սովորությամբ այս անունն է ստանում մեկը, որ Մախր անունով որդի ունենա։

— Ապլմախր, իշխան Աղձնիքի և Սասունի. նախապես հայ էր և քրիստոնյա, փեսա Արծրունեաց (Սիմ լեռան մոտ). հետո արտաքուստ ուրացավ իր հավատը և ընդունեց արաբական Աբուլմախր անունը. Միջագետքի Ահմադ ոստիկանը բանտարկեց նրան և տիրեց Աղձնիքին, շուրջ «894 թ».—Ազգապ. 1008, Ջամչ. Բ. 719, Տէր Սահակեան, Հայ կայսերք, Բ. 461 (Աբել Մաքրա ձևով)։

ԱՊԼՈՑ, ար. ծագումն անհայտ և անստույգ անուն. մի անգամ ունինք ԺԳ դարից։

— Ապլոց իշխան, որի խնդրանոք Յովհ. Երզնկացին գրեց իր «Յաղագս երկնային զարդուց» ոտանավորը՝ 1284 թ.—Երզն. երկն. ոտ. (տների սկզբնատառերը կազմում են այս անունը).—տես. Ապլոցի՝ Երզն. երկն. ոտ. (վերնագրում)։—Ջամչ. Գ. 273։

*ԱՊԼՋԱՀԱՊ, ար. ենթադրում է արաբ. ابالجلب ab-ul-ǰa'āb անունը, որ նշանակում է «հայր Ջահաբի». արաբական սովորությամբ այս անունը ստանում է մեկը, որ ունենում է جلب ǰa'āb «կապարճ շինող» (Կամուս, Ա. 93) անունով մի որդի։ Մեր մեջ գործածված է ԺԲ դարում, բայց շատ հազվագյուտ է։

— 1. Ապլջահապ, որդի Ապիրատ իշխանի, եղբայր Վասակի. երբ Ապիրատ սպանվեց Դուբնի Ապուսվար ոստիկանի ձեռքով, նրա որդիքը՝ Ապլջահապ և Վասակ՝ փախան Անի, Յովհաննես-Սմբատ թագավորի մոտ, որ սիրով ընդունեց նրանց և կարգեց իրենց հոր փոխարեն (1020 թ).—սեռ. Ապլջահապայ՝ Ուռհ. 11.—Զամչ. Բ. 899, 900։

— 2. Ապլջահապ, նախորդի եղբորորդին, այն է՝ Վասակի որդին և եղբայր Բարսեղ Անեցի կաթողիկոսի, որ նստել է «1081 թ».—Ուռհ. 221 (ձեռ. Ապլջապակ, Ապլջակապ, Ապլջահապ). Զամչ. Բ. 900, Գ. 7։

*ԱՊԼՔԱՐԴ, ար. < արաբ. ابو abu «հայր»+kard?

— Ափնլքարդ, որին Աշոտ Ա իշխան կարգեց Բերկրիի, Խլաթի և Արճեշի։—Տէր Սահակեան, Հայ կայսրեր, Ա. 365 (ըստ Կոստ. Պերփեռոժէնի)։

†ԱՊՈՎ, ար. ծագումը տես Աստուածապով։ Նույնի տարբերակն է Ապաւ, որ տես վերը։ Սկսել է գործածվել ԺԶ դարի վերջից։

— 1. Ապով, հիշված Նոր-Բայազետի բերդի նոր գերեզմանատան մի խաչքարի վրա ՉՁԵ=1336 թ. ըստ Սմբատեանց, Գեղարքունի 448 (թվականն ինձ կասկածելի է)։

— 2. Աբով Ա (Սև), կոչվում էր Թրք. Ղարա-Իւզբաշի. Նիժից 7 ընտանիքով գաղթեց Ղարաբաղ և բնակվեց Թալիշ գյուղի մոտ. բռնեց մի խումբ հայտնի ավազակներ և հանձնեց Բարդայի խանին. այս քաջության համար խանից ստացավ Թալիշ գյուղը իբր մշտական սեփականություն։ Մեռել է 1632 թ։ Իր որդին ու հաջորդն է Բեգլար Ա, որից սկսվում է Գիւլիստանի մելիքությունը։—Րաֆֆի, Խամսայի մելիքութ. էջ 7—10։

— 3. Աբով Բ (Կաղ), որդի Բեգլար Ա-ի և թոռ Աբով Ա-ի. մելիք Գուլիստանի. նշանավոր էր իր քաջությամբ. առևանգեց Գանձակի Մամադ խանի աղջկան և քրիստոնյա մկրտելով ամուսնացավ նրա հետ. սրա վրա պատերազմ բացվեց Աբովի և Մամադ խանի միջև. Աբովը մի քանի անգամ հաղթեց նրան. ծերության ժամանակ Մամադ խանը հաշտվեց Աբովի հետ և

որովհետև ժառանգ չուներ, իր բոլոր գյուղերը և անգին հարստությունը թողեց Աբովին։ Աբովը մեռել է 1728 թ.—Րաֆֆի, Խամսայի մելիքութ. էջ 11—12։

— 4. Աբով Գ, որդի մելիք Յուսուփի և եղբայր մելիք Բեգլար Բ-ի, որի եղերական մահից հետո՝ ժառանգեց Գուլիստանի մելիքությունը։ Մասնակցում էր Հայաստանի ազատության համար մելիքների ժողովներին և Ռուսաց պետության հետ վարած բանակցություններին։ Մին է այն մելիքներից, որոնք հավատարմության երդմնաթուղթ ուղարկեցին Ռուսաց պետության, 1787 թ։ Իբրահիմ խանը լսելով այդ, խարդախությամբ ձերբակալեց նրան մյուս մելիքների հետ և բանտարկեց։ Մելիք Մեջլումի քաջ զորավար Արզումանը իր երկու ընկերներով հարձակվեց բերդի վրա, դռները խորտակեց և մելիքներին ազատեց։—Րաֆֆի, Խամսայի մելիքութ. 130—135. Աբովը, մելիք Մեջլումի հետ գնաց Թիֆլիս և Հերակլ թագավորից խոստում ստացավ, որ զորք կտա իրեն՝ նորից գրավելու իր երկիրը Իբրահիմի ձեռքից։ Բայց ընդհակառակը ուզում էր երկուսին էլ ձերբակալել և հանձնել Իբրահիմին։ Մելիքները իմացան և հեռանալով իրենց խարդախ հյուրընկալից, գնացին Գանձակ։ Գանձակի Ջավադ խանը սիրով ընդունեց՝ նրանց. իսկ նրանք մնալով Գանձակում, շարունակ ասպատակում էին Ղարաբաղը։ Աբովը գաղթեց Բոլնիս, հետո նորից Ղարաբաղ։ Աղա-Մամադ խանի արշավանքի ժամանակ, Իբրահիմ խանի հետ միացած՝ պաշտպանում էր Շուշին, մինչդեռ մելիք Մեջլումը Աղա-Մամադ խանի բանակումն էր։ Այնուհետև նա քաշվեց Վրաստան, ուր հիմնեց Բոլնիսի հայ գաղութը։ Վրացի ազնվականների դավաճանությամբ ճաշի ժամանակ թունավորմամբ սպանվեց Թիֆլիսում, 1808 թ.—Րաֆֆի, անդ՝ 243—257։

— 5. Աբովջան, հիշված է 1389 թվից ավելի ուշ գրված անթվական մի հիշատակարանում.—Ձեռ. Ազուլ. (Արրտ. 1911, էջ 760)։

*ԱԳՈՒԼԱՍՎԱԴ,ար. < արաբ. ابوالاسود Abūlasvad անունից, որ բուն նշանակում «հայր Սևուկի»։

— Ափոլեսփուէր. եղբայր Ափուսելմէս Ջերմաձորեցու. Աշոտ Երկաթ նշանակեց նրան Այրարատի հինգերորդ իշխան.—Տէր Սահակեան, Հայ կայսրեր Ա. 365 (ըստ Կոստ. Պերփիռոժէնի)։

*ԱԳՈՒՀԱՄԶԱ, ար. կազմված արաբ. ابو abu «հայր»+ hamza բառերից, որ տեսա Արաբների սովորությամբ այս ա-

*նունն էր ստանում մեկը, որ Համզա անունով մի որդի էր ունենում։ Այս անունով մեր մեջ տես* Գրիգոր Ապուհամզա *(Ժ դար)։*

**ԱՊՈՒՀԱՐ, ար. ծագումն անհայտ․ բայց անշուշտ արաբական անուն է, ինչպես ցույց է տալիս ձևը։ Մի անգամ ունինք՝*

— Ապուհար, *հայր Բարսեղ արքեպիսկոպոսի, որ էր առաջնորդ Համթայ, 1634 թ.—Թորոս Աղբար, Բ. 430։*

**ԱՊՈՒՀԱՐԱԶ, ար. ծագումն անորոշ, բայց անշուշտ արաբերեն է, ինչպես ցույց է տալիս ձևը։ Ունինք հիշված մի անգամ* Գագիկ Ապուհարազ *(851 թ), որ տես Գագիկ։*

**ԱՊՈՒՀԱՐԲ, ար.<արաբ.* أبو abu *«հայր»+*حرب ḥarb *«պատերազմ» բառերից? Մի անգամ ունինք՝*

— Ապուհարպ, *պապ Զորտուանելի, որ սպանվեց Ռուսաց հետ ընդհարման ժամանակ, Տայքում, 1000 թվին.—տես.* Ապուհարպայ՝ *Ասող. Գ. խգ.—Զամչ. Բ. 882։*

**ԱՊՈՒՂԱՆԱՄ, ար.<արաբ.* أبو abu *«հայր»+*ղանամ *բառերից. վերջին ձևով ունինք արաբ.* غنام ġannām, غنم ġanm *և* غنيم ġanīm *անձնանունները (Կամուս, Գ. 528), որոնք հանվում են* غانم ġānim *«ավարառու»,* غنم ġanam *«ոչխար» և* غنم ġanm *«ավար» բառերից։*

— *1.* Ապուղանամ *Բագրատունի, որդի Վահանի, եղբայր Գրիգորիս իշխանի Տարոնոյ. պատվիրակ գնաց Պոլիս, Լևոն կայսրից կարգվեց պատրիկ և ամուսնանալով Կոստանդին դեսպանի աղջկա հետ՝ դարձավ Տարոն, ուր և մեռավ։ Իր որդիներն են Թոռնիկ, Վահան, Սմբատ, որոնք ժառանգեցին Տարոնի իշխանությունը՝ կայսեր գերիշխանության տակ (Ժ դար).—Զամչ. Բ. 726 (գրում է* Ապուղան. *հույնն ունի* ᾽Απογάνεμ, *որ ըստ իս պետք է հասկանալ* Ապուղանեմ։ *Տէր Սահակեան, Հայ կայսերք, Բ. 465 կարդում է* Ապուղանըմ. *բայց Զամչ. Բ. 939* Աբուղան *է կոչում նաև Գր. Մագիստրոսի պապի հորը, որ այլուստ հայտնի է* Աբուղամր *ձևով)։*

— *2.* Ապուղանըմ, *խորթ որդի Գրիգոր Մագիստրոսի, հունաց կայսրից ստացավ պրոտոսպաթարիոս տիտղոսը (ԺԱ դար).—Տէր Սահակեան, Հայ կայսերք, Բ. 463։*

**ԱՊՈՒՄԱՅԵԱՅ, ար.<արաբ.* أبو abu *«հայր»+*معاوية Muʻāviya *անունից, որ բուն նշանակում է «արուին ցանկացող էգ շուն». այս անունով հայտնի է Մուավիէ-իբն-Սոֆիա, Ումմեան*

խալիֆայության հիմնադիրը (661—681). ասվում է նաև معيّة Mu‘ayya, որից մեր ձևը (Կամուս, Գ. 885)։

— Ապումայեայ Արծրունի, իշխան, որ մասնակցեց Մուսէի պատերազմին «851 թ».—Արծր. Բ. գ։

*ԱՊՈՒՄԿԴԷՄ, ար.<արաբ. ابو abu «հայր»+Մկդեմ, որի ծագումը տես Մկդեմ անվան տակ։

— Ապումկդեմ Սահակ Արծրունի, քեռորդի Ապուջափրի. մասնակցեց Մուսէի պատերազմին «851 թ». օգնեց Գուրգէն Արծրունուն՝ ընդդեմ Բուղայի մղած կռվում. մասնակցեց նաև Ապուջափրի պատերազմին ընդդեմ Աբրահիմի, ուր և մեռավ։—Արծր. Բ. գ. Գ. դ, ժգ.—Ապումքդեմ՝ Արծր. Գ. ժբ.—սեռ. Ապումկդեմայ՝ Արծր. Գ. ժգ.—Ապդլմկդեմայ՝ Արծր. Գ. դ։

*ԱՊՈՒՄՈՒՍԷ, ար.<արաբ. ابو abu «հայր»+موسى Mūsa «Մովսէս» անունից. նշանակում է «հայր Մովսէսի»։

— Ապումուսէ, իշխան Աղուանից, կոչված է «Որդի երիցու». քաջությամբ ետ մղեց Բուղայի բոլոր հարձակումները և ի վերջո հպատակվելով ամիրապետին, նրանից պատիվ ստացավ. բայց [illegible]ենությամբ բռնվեց և գերի քշվեց Բաղդադ «852 թ»։ Կրում է նաև Եսայի Ապումուսէ անունը.—Արծր. Գ. ժ.—սեռ. Ապումուսէի՝ Արծր. Գ. ժ, ժա.—Եսայի Ապումուսէ՝ Արծր. Գ. ժա.—կամ պարզապես Եսայի՝ Վրդ. խզ. Ասող. Բ. բ. Յհ. կթ. իզ.—Արաբները (Տաբարի են) կոչում են Իսա-բին-Եուսուֆ և դնում են քեռորդի Ստեփաննոսի (Աբլասադ). տես Թալաթեան, Արաբ. մատ. 78, 95 և Մարքվարտ, Բագր. 118։

†ԱՊՈՒՇ, ար.<հյ. ապուշ բառից (ունինք նաև Ցիմար անունը). հիշված է 1504 թ. Ձեռ. Դաղեան, Բ. 31 բ (նույն ձևով նաև ցանկում)։

*ԱՊՈՒՇԱՄԲ, ինձ թվում է թե պետք է կարդալ Աբուղամր, որ տես Ունինք միայն՝

— Ապուշամբ իշխան Վայոց ձորի. իր զորքով օգնական գնաց Սմբատ Ա Թագավորի պատերազմին՝ Ափխազաց Դուտաս Թագավորի դեմ, շուրջ 908 թ.—Սուտ-Շապհ. 81։

*ԱՊՈՒՊԱՔՐ, ար.<արաբ. ابوبكر Abūbakir անունից. ըստ այսմ, ուղիղ տառադարձությամբ՝ Աբուբաքր։ Այս անունով հայտնի է ուղղափառ խալիֆաներից առաջինը, որ Մուհամմէդի աներն էր և հաջորդեց մարգարեին. նստավ Մեդինէ քաղաքում 632—634 թ։ Անունը պետք էր բացատրել արաբ. ابو abū «հայր» + بكر bakir «առավոտները շուտ վեր կացող, վաղայարույց» բա-

ռերից, բայց Կամուս, Ա. 774 հանում է تكبير takbīr «մահմեդականության ընդունելը» բայից, որովհետև Աբուբաքիրն եղավ, որ առաջինը ընդունեց Իսլամը. իբր թե նրանից առաջ այս անունով անձ չլիներ. անհարմար է նաև kb—bk տեղափոխությունը։

— 1. Ապուպաքր, վրանապահ Տայոց Դաւիթ կիւրապաղատի (մ. 1000), որին Ռոմանոս կայսրը հանձնեց Ուռհա քաղաքը.—սեռ. Ապուպաքրայ՝ Սմբ. պատմ. 52։

— 2. Բուբաքր որդի Աբդալի. հիշվում է իբրև վկա, Արզնկան 1449 թ.—(Թուրք է).—Manus. brit. mus. 95 բ։

*ԱՊՈՒՊԵԼՃ, ար. < արաբ. ابو abū+Պելճ անունից, որ տես։

— Ապուպելճ Արծրունի, իշխան Վասպուրականի. հայր Գուրգէն Ապուպելճի. մասնակցեց Մուշէի պատերազմին «851 թ».—Արծր. Բ. գ.—սեռ. Ապուպելճի՝ Արծր. Գ. ժգ։

*ԱՊՈՒՋԱՖՐ, ար. < արաբ. ابو abū «հայր»+جعفر ja‘far անունից, որ բուն նշանակում է «առու, գետ. 2. առատ կաթ ունեցող ուղտ» (Կամուս, Ա. 800)։ Հայտնի են պատմության մեջ Բաղդադի Աբբասիան խալիֆաներից՝ Աբդուլլահ-Աբուջաֆար-ալ-Մանսուր 754—775 թ., Ջաֆար-իբն-Մութասիմ-էլ-Մութավաքքիլ 847—861 թ. և Ջաֆար-իբն-էլ-Մուքթադիր 908—932 թ։

— 1. Ապուջափր Արածացի. հափշտակեց կաթողիկոսարանի կալվածները. Դաւիթ Բ կաթողիկոսը անիծեց նրան (832 թ). մեռավ «տիկտեսակ ուռուցմամբ մորթոյն» Գառնաւում.—հմյ է.—Այրարատ 445 բ։

2. Ապուջափր Արծրունի. մասնակցեց Մուշէի պատերազմին «851 թ». Աշոտ և Գուրգէն իշխանների գերությունից հետո եղավ իշխան Վասպուրականի։ Կռվեց Բուղայի Աբրահիմ զորավարի դեմ և հաղթվեց.—Արծր. Բ. գ. Գ. ժբ, ժգ.—սեռ. Ապուջափրի՝ Արծր. Գ. ժգ։

*ԱՊՈՒՍԱԿՐ, ար. < արաբ. ابو abū «հայր»+Սակր անունից, որ տես։

— 1 Ապուսակր, նահապետ Ամատունեաց. Գրիգոր-Դերենիկի սպանման ժամանակ ձերբակալվեց Հերի քաղաքապետ Ապլբերսի ձեռքով (886 թ).—Արծր. Գ. ի։

— 2 Ապուսակր Վահունի, բերդապահ Ամիւկ բերդի, որ հանձնեց Սմբատ Ա-ին («890—914 թ»).—Արծր. Գ. իդ. Դ. գ։

*ԱՊՈՒՍԱՀԱԿ, ար. < արաբ. ابو abū «հայր»+Սահակ անունից։

— Ապուսահակ Վահեւունի, եղբայր Սահակ եպիսկոպոսի

Նախիջևանի և Մարդպետականի. նահատակվեց Ժիրաքի ձեռքով «852 թ».—Արծր. Գ. բ։

*ԱԳՈՒՍԵԼՄ,ար. < արաբ. ابو abū «հայր»+سليم Selīm անունից, որ նշանակում է բուն «անարատ, զերծ, ազատ»։

— 1. Ապուսելմ Գնունի, մասնակցեց Գուրգէնի պատերազմին՝ Բուղայի դեմ «852 թ».—Արծր. Գ. դ։

— 2. Ապուսելմ Գազրիկեան, մասնակցեց Գուրգէնի պատերազմին՝ Բուղայի դեմ «852 թ».—Արծր. Գ. դ։

— 3. Ափուսելմես Ջերմաձորեցի. եղբայր Ափուսելվարի, որին Աշոտ Բ Երկաթը Բերկրի, Խլաթ և Արճէշ քաղաքների իշխան կարգեց.—Տէր Սահակեան, Հայ կայսերք, Ա. 365 (ըստ Կոստ. Գերփեռոժենի)։

*ԱԳՈՒՍԵԼՎԱԹ, ար. < արաբ. ابو abu «հայր»+صلوات şalavāt «աղոթք և օրհնություն»?

— Ափուսելվար Ջերմաձորեցի, որին Աշոտ Բ Երկաթ կարգեց իշխան Բերկրիի, Խլաթի և Արճէշի.—Տէր Սահակյան, Հայ կայսերք, Ա. 365 (ըստ Կոստ. Գերփեռոժէնի)։

*ԱԳՈՒՍԵՐՀ, ար. < արաբ. ابو abū «հայր»+سرح Serh անունից, որ բուն նշանակում է «բաց դաշտում ազատ արածող արջառ» (Կամուս, Ա. 478)։

— Ապուսերհ հայր Մամախաթունի՝ կնոջ Վաչէի, որ շինեց Հոռոմոսի նշխարատունը և զանազան նվերներ տվեց վանքին՝ 1229 թ.—Շիրակ 24։

*ԱԳՈՒՍԷԹ, ար. արաբական անուն է. հայտնի է մեր պատմության մեջ Ապուսեթ արաբ ոստիկանը, որին խողխողեցին Սասնեցիք՝ 849 թ. (Չամչ. Բ. 444 կոչում է Ապուսէթ կամ Ապուսէճթ)։

— 1. Ապուսեթ Գնունի, մասնակցեց Գուրգէնի պատերազմին՝ ընդդեմ Բուղայի «852 թ».—Արծր. Գ. դ։

— 2. Ապուսեթ իշխան Սիւնեաց, որդի Աշոտ Հեծեալի (Թ/Ժ դար).—Կղկնտ. Գ. իգ։

— 3. Ապուսեթ, որի դուստրը՝ Մամախաթուն կինն է Վաչէի Վաչուտեանց, որդւոյ Սարգսի (1232 թ).—Այրարատ 253 ծան։

— Պուսեթ, ար. հիշված 1581 թ. (Ձեռ. Դաշեան, Բ. 32ա)։

*ԱԳՈՒՏԱՀԼ, ար. < արաբ ابو abū «հայր»+?

— Ապուտահլ, պապ Վրթանէս եպիսկոպոսի, որ Աղթամարից

Լուսաւորչի աջը գողանալով բերեց Էջմիածին, մեռավ Օձուն գյուղում 1493 թ.—Ցովսէփեան, Խաղբակեանք 248։

*ԱՊՈՒՏԱՀՐ, ար. ← արաբ. أبو abu «հայր»+? հիշված է մի անգամ՝

— Ապուտախր, որդի Մխիթարի՝ «տարաժամ տղայ մեռեալ», անթվական մի հիշատակարանում, որ գրված է 1311 թըվից հետո.—Ձեռ. Թաւր. 74 բ։

*ԱՊՈՒՔԱՊ, ար. < արաբ?

— Ապուքապ հայր Վասիլի, որ պաշտպանեց Մանազկերտը Տուղրիլի (մ. 1064) դեմ.—տես. Ապուճապայ՝ Սմբ. պատմ. 69։

ԱՊՍԱԿ, իգ. ծագումն անհայտ։

— Ապսակ, երկիցս հիշված 1789 թ.—Ձեռ. Ագուլ. (Արար. 1911, 562)։

†ԱՊՐԵՍ, ար. < հյ. ապրես «կեցցես» ձևից. իբրև արական անուն պահպանում է այժմ էլ Կովկասում, բայց հնից չէ ավանդված. չկա նաև Արևմտահայոց մեջ. սրանից է Ապրեսեան ազգանունը։

†ԱՊՐԻԼՈՒՍ, ար. ← հյ. ապրիլ և լոյս բառերից. իբր թե «լուսով կամ լուսավոր կյանքով ապրի՛»։ Գործածված է երեք անգամ ԺԴ—ԺԵ դար։

— 1. Ապրէլոյս (հողով՝ Ապրէլուսս), որդի Սարգսի. երկրորդ ստացող Աւետարանի, 1347 թ.—Ձեռ. Ագուլ. (Արար. 1911, 462—5)։

— 2. Ապրիլուս, մերձավոր Կարապետ գրչի, որ օրինակեց Աւետարանը՝ 1357 թ.—Ձեռ. Վասպ. 214։

— 3. Ապրիլուս, հայր Մկրտիչ քահանայի, որ Աղթամարում, Թումա գրչին օրինակել տվեց մի Ճաշոց, 1419 թ.—Նոտարք 58։

†ԱՊՐԻԿ, ար. < հյ. ապրիլ «կեալ» բայից. հմմտ. Ապրես, Ապրիլուս. թերևս այս վերջինի փաղաքշականն է. մի անգամ ունինք գործածված ԺԳ դարում։

— Ապրիկ, հայր Յոհաննէս արքաունի, որ նվերներ է արել Հոռոմոսի վանքին, 1253 թ.—Շիրակ 26 ա (տես. Ապրկան ձևով)։

†ԱՊՐՇՈՒՄ, ար. < հյ. ապրշում «մետաքս» բառից, որ սակայն իրանական փոխառություն է։ Մի անգամ ունինք գործածված ԺԶ դարում։

— Ապրսում, հայր Տիրատուրի, որ Կարապետ երեցին գրել տվեց մի Ավետարան, 1609 թ.—Ձեռ. Սեբ. (ՀԱ 1925, 473)։

*ԱՊՐՍԱՄ, պր.<իրան. *apursām «բալասան» բառից, որից փոխառյալ են ասոր. apūrsāmā, հյ. ապրսամ և վրաց. ապրսամի (տես Արմ. բռ.), բայց իրանականում էլ այս բառը գործածվում էր իբրև անձնանուն. հմմտ. Abarsām անձն պարսիկ Արտաշիր Ա-ի ժամանակ (Justi 1 բ)։—Հիւբշ. 21։ (Տես նաև Սպարամ)։

— 1. Ապրսամ Արծրունի, թագավոր Հայոց, ըստ Ջամչ. Ա. 280, 284. տես Աբխոբարզամ։

— 2. Ապրսամ, նախարար Սպանդունի. ապստամբելով Պարսից դեմ՝ սպանեց Հայոց թագավոր նշանակված Շապուհ արքայորդու զորավարին «419 թ».—Խոր. Գ. ծզ (2 ձեռ. Ապրհամ). Ջամչ. Ա. 502։

— 3. Ապրսամ, նախարար Արծրունի. մասնակցեց Վարդանանց պատերազմին. նախարարների հետ 12 տարի բանտարկվեց Պարսկաստանում և ապա արձակվելով՝ նրանց հետ վերադարձավ Հայաստան «462 թ».—Եղիշ. 77, 150. Փարպ. խը, խէ. Յայսմ. օգոստ. 7.—Ջամչ. Բ. 68, 86։

*ԱՊՐՍԱՄԵՆ, իգ. անշուշտ ծագումը նախորդից է։

— Ապրսամեն, Աղվանից Միհրական ցեղից. քույր Գագիկի թե սրա որդի Սանփաննոսի (Ը դար).—Կղկնտ. Գ. իգ (հրատ. Շահն. Ապրսամին)։

*ԱՋԱԲ, իգ.<արաբ. عجب ʻaǰab «զարմանալի» բառից. գործածված է մի անգամ՝ Աճապ ձևով, 1490-ից հետո գրված մի հիշատակության մեջ (Ձեռ. Սևան. 6ա)։ Հմմտ. նաև Աջաբխան և Աջաբնուշ։

*ԱՋԱԲԽԱՆ, իգ.<արաբ. عجب ʻaǰab «զարմանալի»+պրս. خان xān «իշխան» բառերից։ Գործածված է ԺԷ դարում՝ Ջքր. պատմ. Ա. 54—55, հատկապես 1664 թ. (Ձեռ. Սեբ.=ՀԱ 1924, 517) և 1678 թ. (գրված է օջաբխան, աջապխան) Ձեռ. Թեհր. (ՀԱ 1935, 396), և ավելի ուշ՝ 1710 թ. (Տաշեան, Ցուց. 504 բ (Աճապխան ձևով), 1773 թ. (Մխական 336 ա Աճապխան ձևով)։

*ԱՋԱԲՆՈՒՇ, իգ.<արաբ. عجب ʻaǰab «զարմանալի»+պրս. نوش nūš «քաղցրահամ ըմպելիք» բառերից. ամբողջը համապատասխան է դուրս գալիս Նեկտար անվան։ Գործածված է մի անգամ ԺԵ դարում։

— Աճապնուշ, դուստր Սանփաննոսի՝ եղբոր Յովհաննէսի

վարդապետի, որ Սանահինում գրել տվեց մի գեղեցիկ Շարակնոց, 1497 թ.—ՀԱ. 1887, 56 ա։

*ԱՋԱՄԻԷ, իգ. < արաբ. عجمي 'aǰamie «պարսկական» ձևից. մի անգամ գործածված է 1773 թվից հետո, Հալէպում գրված մի ձեռագրում (Ձեռ. Հալէպի, Ա. 230), Աճամիէ ձևով։

*ԱՋԱՄԽԱՆ, իգ. < արաբ. عجم 'aǰam «պարսիկ»+պրս. خان xān «իշխան» բառերից և նշանակում է «պարսիկ կամ պարսից իշխան»։ Մի անգամ հիշված է 1695 թվին Հալէպում գրված մի ձեռագրում՝ Աճամխան ձևով (Ձեռ. Հալէպի, Ա. 42 բ)։

ԱՌԱԿ, ար. կասկածելի անուն.—Զքր. սարկ. Գ. 10 Մարմաշէնի վանքի միաբան Գրիգոր վարդապետի համար (1033 թ.) ասում է «Գրիգոր վարդապետ ու Սկայորդին(՞)»։ Հրատարակիչը մի հարցական դնելով անցնում է, իսկ Ալիշանի Շիրակում, էջ 152, պարզապես կարդում ենք «Գրիգոր վարդապետ Առակայ որդին»։ Այսպեսով Առակը Գրիգոր վարդապետի հայրն է լինում։ Ալիշանի այս ընթերցվածը լավագույն մի ձեռագրից է արդյոք, թե իր կողմից սրբագրություն։

ԱՌԱՆ, ար. < Աղուանից երկրի Առան անունից կազմված՝ Խորենացու ձեռքով։

— Առան, Սիսակ Հայկազնի ցեղից. Վաղարշակի կողմից նշանակվեց Աղուանից կուսակալ (Ն.Ք. Բ դար). իր անունով կոչվեց Առանի դաշտը! Իր քաղցր բնավորության պատճառով ստացավ աղու «անուշ» մականունը, որով և երկիրը կոչվեց Աղուանք և ազգը աղուան!—Խոր. Բ. ը. Ասող. Ա. ե. Կղկնտ. Ա. դ, ժե. Վրդ. ժդ. Սամ. անեց. 48. Մխ. այրիվ. 23.—սեռ. Առանայ՝ Կղկնտ. Ա. դ (հրատ. Շահն.), դ, ը, ժե. Ուխտ. Բ. կե. Սամն. 56. Կիր. ը.—գրված է Եռան՝ Օրբ. գ.—Չամչ. Ա. 214։

ԱՌԱՆՁԱՐ, ար. ծագումը անհայտ։

— 1. Առանձար Ամատունի, սեպուհ. Քաջն Վարդանի հրամանով գնաց Պարսից առաջապահ բանակի վրա, հաղթեց ու ցրվեց. Վարդանանց պատերազմից հետո, նախարարների հետ բանտարկվեց Պարսկաստանում 12 տարի և ապա արձակվելով՝ վերադարձավ Հայաստան «462 թ»։—Եղիշ. 82, 150. Փարպ. լէ, խէ.—Չամչ. Բ. 69, 86։

— 2. Առանձար որդի Գրիգորի. հիշված է իբրև վկա՝ Տաթևի 844 թվի կալվածագրում.—սեռ. Ըռանձարայ՝ Օրբ. լը։

ԱՌԱՇՕ, իգ? ծագումը անհայտ. մի անգամ գործածված է 1585 թվից հետո գրված անթվական մի հիշատակարանում (Ձեռ.

վասպ. 704)։ Հմմտ. Առաշիս՝ Ցոլասափի և Բարաղամի վեպում, Տաշեան, Ցուց. 848։

+**ԱՌԱՋՊԱՐՈՆ**, ար. < հյ. առաջ+պարոն բառերից, իբրև «պարոններից առաջինը». անստույգ անուն. մի անգամ գտնում եմ գործածված ԺԵ դարում։

— Առաջպարոն, հայր Դշխունի, որ Ասպաւերուկ գյուղում գրել տվեց մի Ավետարան, 1455 թ.—Ջեռ. Սեր. (ՀԱ 1925, 132)։

*ԱՌԱՍՏՈՄ, ար. ծագումը տես Ռոստոմ։

— 1. Առաստոմ, կրոնավոր անապատական, եղբայր Փավստոս եպիսկոպոսի, ազգով հույն. թաղվեց Ամոք գյուղում (Դ. դար).—սեռ. Առաստոմայ՝ Բուզ. Զ. ղ (ցանկում գրված է Առաւստոմեայ)։

— 2. Առաստոմ Գնունի, եղբայր Ատոմ Գնունու. մասնակցեց Վահան Մամիկոնեանի ապստամբական շարժման. Ակոռիի ճակատամարտի քաջերից էր և հաղթության ավետավոր դարձավ Դվինի (Ե դար).—Փարպ. կը, կթ.—սեռ. Առաստոմայ՝ Փարպ. կթ։ —Ջամչ. Բ. 165—9։

**ԱՌԱՏԱՆ**, ար. ծագումն անհայտ։

— 1. Առատան, ազգապետ աղուան, ժամանակակից Վաչագան Գ-ի (Զ դար).—Կանոն 197, Կղկնտ. Ա. իզ (հրատ. Շահն. ունի Ռատան).—գրված է Նռատան՝ Տաշեան, Ցուց. 654։

**ԱՌԱՒԱՆ**, ար. ծագումն անհայտ։

— 1. Առաւան, Թագավոր Հայկազանց, կրտսեր որդի և հաջորդ Վահագնի. նստել է Ն.Ք. 493—475 թ. ըստ Ջամչ. Ա. 121. սրանից է սերել Առաւենեան նախարարական տոհմը.—Խոր. Ա. լա. Բ. ը. Մխ. անեց. գ. Վրդ. է. Մխ. այրիվ. 18, 55. Մագ. Թղ. ժթ. Սամ. անեց. 46. Ուխտ. Ա. իե (վերջինս գրում է Առան և համարում է Տիգրան Ա-ի կրտսեր որդին). Մին. համդ. 12 (սա էլ Տիգրանին տալիս է 4 որդի, կրտսերը համարելով Առաւանը).—սեռ. Առաւանայ՝ Մին. համդ. 12.—բց. յԱռաւանայ՝ Մին. համդ. 12. յԱռաւենայ՝ Ցհ. կթ. գ. Սամ. անեց. 46. յԱռաւենէ՝ Ցհ. կթ. գ։

— 2. Առաւան, հազարապետ Հայոց, Խոսրով Գ («384—389») թագավորի ժամանակ.—սեռ. Առաւանայ՝ Կոր. էջ 6. Ջամչ. Ա. 483։

— 3. Առաւան տեր Վանանդի. մասնակցեց Արտաշատի ժողովին՝ պատասխանելու համար Միհրներսեհի նամակին «449 թ».—Փարպ. իգ. Ջամչ. Բ. 28։

— 4. Առաւան Անձաւացի․ մին այն նախարարներից, որոնց Յազկերտ Բ բանտարկեց Պարսկաստանում, Վարդանանց պատերազմից հետո «452 թ».—Եղիշ. 150. Փարպ. խէ. Զամչ. Բ. 86։

— 5. Առաւան Աղբիւրկացի․ պատգամավոր գնաց Վահան Մամիկոնեանի կողմից՝ Նիխորի մոտ «484 թ».—Փարպ. ղ. Զամչ. Բ. 201։

+ԱՌԱՔԵԼ, ար.<հյ. առաքել «ուղարկել» բայի անցյալ դերբայ առաքեալ ձևից, որ նշանակում է «ուղարկված» և վերադիրն է «Քրիստոսի աշակերտների կամ Աստուծուց ուղարկված անձերի», իբր թարգմանություն հուն. ἀπόστολος բառի, որ ունի նույն նշանակությունը և գործածական է նաև իբրև անձնանուն։ Այսպես նաև արաբ. رسول rasūl բառն նշանակում է «ուղարկված, առաքյալ» և գործածական է նաև իբր արաբական անձնանուն։ Մեր մեջ այս անունը սկսեց գործածվել ԺԲ դարից։ Բառի հնագույն ձևն է Առաքեալ, ինչպես տեսնվում է հաջորդ վկայությանց մեջ։ Կրճատմամբ դարձավ հետո Առաքել, որ և սովորական է մինչև այժմ։ Ղարաբաղում ավելի կրճատ ձևով կա կոչական Քա՛լի։

— 1. Առաքել վարդապետ Անեցի, հիշված է Անիի Ծաղկաձորի աշտարակի արձանագրության մեջ, 1160 թ.—Շիրակ 41։

— 2. Առաքել քահանայ, համբակ գրիչ․ օգնական եղավ Աստուածատուր աբեղա գրչին՝ Կեչառուքում (1184 թ).—Այրարատ 266, Հայապ. 399։

— 3. Առաքեալ վարդապետ, միաբան Ս. Գրիգորի վանից Դարանաղեաց գավառի, 1201 թ.—Ձեռ. Սեբ. (ՀԱ 1924, 247)։

— 4. Առաքել գրիչ, օրինակեց Աւետարանը՝ Կամախ գավառի Սիմա գյուղի Եղիվանք անապատում, 1203 թ.—Ձեռ. Վենետ. Ա. 420։

— 5. Առաքել, միաբան Կամախի Եղիվանք անապատի, 1203 թ.—Ձեռ. Վենետ. Ա. 420։

— 6. Առաքել քահանայ, գրիչ․ օրինակեց Հաղբատում Եսայի և Թուղթք Պօղոսի, 1207 թ.—Յովսէփեան, Նիւթեր և ուս. Ա. 71։

— 7. Առաքել քահանա Կեչրորցի, զանազան տանջանքներով նահատակվեց Կեչրորում, «1208 թ».—Այրարատ 47 ա, Շիրակ 129—130, Նոր վկ. 94—95։

— 8. Առաքել, որդի Ռոմանոսի, եղբայր Սահակ Անեցի

քահանայի, որ ստացավ Գեսաչենի Աւետարանը. արդեն մեռած էր 1211 թ.—Ցովսէփեան, Նիւթեր և ուս. Ա. 42, 43։

— 9. Առաքել, վանահայր Բագարանի ուխտին, որ նորոգեց Զաքարէ ամիրսպասալարի օգնութեամբ՝ 1211 թ.—Այրարատ 67։

— 10. Առաքել, կանգնեցրել է մի խաչքար՝ Վայոց ձորի Սայլան գյուղում, 1222 թ.—Սիսական 129։

— 11. Առաքել աբեղա Անեցի կամ Շիրակաւանցի. օգնութեամբ Մխիթար Զնչկանց Շիրակաւանցու թարգմանեց արաբերենից «Աղէկախօս» Երազահանը, 1222 թվին (արաբերենը կոչվում է Թուփաճմուլք, որի հեղինակներն են արաբ Յալաւխան և Սուլթան).—Տաշեան, Ցուց. 348 բ, Ցովհաննեան, Հետազօտ. Բ. 332, Ալիշան, Հին հաւատք 401, Bodleian 236։ Սրա հետ նույն է Թերևս՝

— 12. Առաքել վարդապետ, թարգմանել է արաբերենից «Պղնձէ քաղաք» կոչված վեպը.—Տաշեան, Ցուց. 354ա և Մատեն. ժանր ուս. Բ. էջ 5—6։

— 13. Առաքել վարդապետ (Թերևս նույն է նախորդի հետ). ունի աղօթքներ, որոնք անցել են Կիպրիանոսի մեջ.—Տաշեան, Ցուց. 474 բ և 511 բ։

— 14. Առաքել վարդապետ (Թերևս նույն է նախորդի հետ). ունի ոտանավոր «Վասն երկոտասան կենդանակերպիցն», որ հրատարակված է Երզն. երկն. ու. գրքի վերջում.—Առաք. կենդ. էջ 62, 63։

— 15. Առաքել վանահայր Հմբատի վանից, ժամանակակից Գրիգոր արքեպիսկոպոսի՝ առաջնորդի (1215—27) Անիի.—Շիրակ 164—5։

— 16. Առաքել պատրիարք Երուսաղէմի, հաջորդեց Աբրահամին և նստավ «1218—1230 թ»։

— 17. Առաքել Ղեորացի, Տաթեւի վանքից. մի զանգակ է նվիրել Սուչավայի հայոց եկեղեցուն՝ 1244 թ.—Տան, Արևել. հայք, էջ 18։

— 18. Առաքել, որդի Պետրոս երեց Կաւեննայեցու, որ Հռոմկլայում գրեց մի Աւետարան, 1248 թ.—Թորոս Աղբար, Բ. 351։

— 19. Առաքել, եկել է Բուլղարիայի Թռնովա քաղաքից 1258 թ. և քահանա է ձեռնադրվել (Երուսաղ).—Զեռ. Սեբ. (ՀԱ 1925, 581)։

— 20. Առաքել Երզնկացի, կազմարար Երզնկայում, 1269 թ.—Ֆ. Մուրատ, Ցայտ. Ցովհ. էջ յի։

— 21. Առաքել, եղբայր Տիրացու եպիսկոպոսի՝ հորեղբոր և ուսուցչի Բարսեղ գրչի, որ օրինակեց Ճառընտիրը, 1270 թ.— Ձեռ. Վենետ. Բ. 235, 564, 1118։

— 22. Առաքել պարոն, շինել է Սոթայ Բեթղեհեմի վանքը (Բասարգեչարի մոտ), վերակացությամբ Ղուկաս վարդապետի, 1276 թ.—Սմբատեանց, Գեղարքունի 139, Սիսական 74։

— 23. Առաքել Հնազանդենց Հռոմկլայեցի. նշանավոր կազմարար ԺԳ դարու. աշակերտ Սարգիս քահանայի. իր կազմած գրքերից հայտնի են՝ 1) Լևոն Գ-ի և Կեռան թագուհու շքեղ և թանկագին Աւետարանը՝ 1262 թ. (Յովսէփեան, Մի էջ հայ արուեստի, էջ 5).—2) Կոստանդին կաթուղիկոսի եղբորորդի Թորոս քահանայի ստացած Աւետարանը՝ 1262 թ. (Նաթանեան, Տեղ. Սեբաստ. էջ 86, Ձեռ. Սեբ. (ՀԱ 1924, 333) և Թորոս Աղբար, Ա. 189).—3) Յովհաննէս արքայեղբոր՝ Գռների վանքում գրած Աւետարանը, 1278 թ. (Ձեռ. Միւնխ. 8 բ, Հայապատում 489)։ —4) Յակոբ արքեպիսկոպոսի ստացած Նոր Կտակարանը, Մեծքարի վանքում, 1274 թ. (Ձեռ. Կես. ածած. 63 բ)։—5) Մաշկևոր վանքում Կիրակոս գրչի գրած Աւետարանը՝ Յովսէփ քահանայի համար, 1260 թ. (Ձեռ. Հալէպի, Ա. 55 բ)։ Այս բոլորը ամփոփվում են 1260—1278 թվականների միջև։

— 24. Առաքել, առաջնորդ Բագուանայ Ս. Գրիգոր վանքի, 1292 թ.—Ձեռ. Վասպ. 110։

— 25. Առաքել վարդապետ, աշակերտ Վանական վարդապետի, դասընկեր Վարդանի և Կիրակոս պատմչի (ԺԳ դար)։— Մաղաք. աբ. 12, Օրբ. ժմ. 25։

— 26. Առաքել քահանա Հաղբատեցի. գրիչ. օրինակեց Եսայի Նչեցու «Մեկնութիւն Եզեկիէլի մարգարէութեան», Աւետիս քահանայի համար, 1313 թ.—Tübingen 10։

— 27. Առաքել, քեռորդի Յովհաննէս քահանայի, որ Կրակայ գյուղաքաղաքում գրել տվեց մի Աստուածաշունչ, 1317 թ.— Թորոս Աղբար, Բ, 301։

— 28. Առաքել, որդի Սիրունի, եղբայր Յովհաննէս քահանայի, որ Կրակայ գյուղաքաղաքում գրել տվեց մի Աստուածաշունչ, 1317 թ.—Թորոս Աղբար, Բ. 301։

— 29. Առաքել, աներ Թատորէի, որ նրա հոգու հիշատակին, նպաստեց Թորոս և Վարդան քահանաներին՝ գրելու մի Աւետարան, 1280—1320 թվերին.—Ձեռ. Թաւր. 27 ա։

— 30. **Առաքել** Հաղբատեցի, հիշատակագիր 1328 թ.—Ցովսէփեան, Խաղբակեանք 199։

— 31. **Առաքել** քահանա, հայր Գրիգոր քահանայի, որ Փոսի վանքում, Ներսէս գրչին գրել տվեց մի Աւետարան, 1329 թ։ Այս թվին Առաքելը արդեն մեռած էր։—Ձեռ. Սեբ. (ՀԱ. 1924, էջ 518)։

— 32. **Առաքել** քահանա, գրիչ. Ջերմաղբիւրում օրինակել է Փիլոնը՝ 1329 թ.—Ձեռ. Կարին. 214։

— 33. **Առաքել** վարդապետ Արտազեցի. ունիթոռական. միաբան Քռնիի վանքի, «1330 թ».—Ձեռ. Ներս. 32 բ. Ազգապ. էջ 1845։

— 34. **Առաքել**, մանկահասակ վաղամեռիկ որդի գրիչ Վարդան քահանայի, որ օրինակեց Աւետարանը Աղպինար գյուղում, 1331 թ.—Ձեռ. Վասպ. 174։

— 35. **Առաքել** որդի Կարապետի. գրիչ. Մոկաց Դաշտ գյուղում օրինակեց Աւետարանը՝ 1338 թ.—Ձեռ. Վասպ. 196—8։

— 36. **Առաքել**. մերձավոր Կարապետ գրչի, որ օրինակեց Աւետարանը՝ 1357 թ.—Ձեռ. Վասպ. 214։

— 37. **Առաքել**, հայր Ֆրա Դոմինիկոս գրչի, որ օրինակեց «Համառօտ հաւաքումն», 1360-ական թվերին.—Ձեռ. Բեռլինի, 58 ա։

— 38. **Առաքել** եպիսկոպոս. Ուռհայում, երբ Աբրահամ երեցը ստանալով մի Աւետարան՝ կազմել տվեց Կարապետ աբեղային 1365 թվին, Առաքել եպիսկոպոսն էլ գրեց նրա հիշատակությունը.—Ձեռ. Վենետ. Ա. 614։

— 39. **Առաքել**, որդի Յովսէփի, Ներքին Կամախի Կախմխի գյուղից. այլազգիների ձեռքից ազատեց մի հին Աւետարան և նրա պատռած ու հանած մասերը Արիստակէս Սեբաստացուն նորից գրել տալով՝ նվիրեց Կախմխի Ս. Աստուածածին եկեղեցուն՝ 1383 թ.—Ձեռ. Հալէպի, Ա. 79։

— 40. **Առաքել** երեց, շինել է Երզնկայի Ս. Նշան եկեղեցին, ուր և թաղվել է. իր հիշատակությունը տալիս է իր թոռը՝ Գէորգ երեց, որ օրինակել է Ճաշոցը Երզնկայում, 1391 թ.—Ձեռ. Սեբ. (ՀԱ. 1926, 241)։

— 41. **Առաքել** քահանա Երզնկացի. որդին է նախորդի և հայր նույն Գէորգ երեցի, որ օրինակեց Ճաշոցը 1391 թ.—Ձեռ. Սեբ. (ՀԱ. 1926, 241)։

— 42. **Առաքել**, որդի Օտարշահի և եղբայր Ներսէս գրչի,

որ Աստա միայնակեցի համար օրինակեց Տօնականը՝ 1397 թ., երբ Առաքելը մեռած էր.—Ձեռ. Վեննա. Բ. 1286։

— 43. Առաքել, որդի Աբրահամի և եղբայր տանուտեր Դանիէլի, որ Աղթամարում, Զաքարիա գրչին գրել տվեց մի Աւետարան՝ 1399 թ.—Ձեռ. Վասպ. 234։

— 44. Առաքել իշխան Կաղիստանի (Համշէն). իր ժողովրդի մատնությամբ բռնվեց Սպերի իսլամ իշխանից և բանտարկվեց. իր տեղ դրվեց մի իսլամ կառավարիչ (ԺԴ դար).—Ըստ Կլավիխօ, Ուղեգրութ. Ա. 143։

— 45. Առաքել քահանա, հայր Մկրտիչ Նաղաշի (ԺԴ դար).—Արրտ. 1898 յնվ. Ազգապ. 2065, Հայապ. 571։

— 46. Առաքել կաթուղիկոս Աղթամարի, հաջորդ Մովսէս Ա-ի և նախորդ Սահակ Ա-ի (ԺԴ դար).—Հաւաք. 60.—կեղծիք։

— 47. Առաքեալ եպիսկոպոս. ծաղկել է մի Աւետարան, որ գրել էր տվել Յովհաննէս ստացողը (ԺԴ դար).—Ձեռ. Նոր-Բայազ. 17 ա։

— 48. Առաքել գրիչ. օրինակել է Աւետարանը Աստապատ գյուղում, ՊԾԸ=1409 թվին, ըստ Նոտարք 30 (իսկ Ձեռ. Կարին. 23 դնում է ՊԺԲ=1369 թվին)։

— 49. Առաքել սարկավագ, թուղթ կոկող և ծաղկարար՝ Խորաձորի Ս. Աստուածածին վանքում, 1410 թ.—Ձեռ. Դաղեան, Բ. 51 բ։

— 50. Առաքել կրոնավոր, միաբան Խիզանի Ս. Խաչ վանքի՝ 1413 թ.—Նոտարք 42, 43։

— 51. Առաքել, հայր Յոհան Մեծոփեցու, որ օրինակեց Մեծոփայ վանքում Տաթևացու Քարոզգիրքը՝ 1414 թ.—Rapport Belgique 181։

— 52. Առաքել Տշողեցի, որդի Գրիգոր քահանայի և եղբայր Ստեփաննոս քհ. գրչի, որ Ոշաունեաց Տշող գյուղում օրինակեց մի Տօնական 1404 թ. և մի Ճառընտիր (անթվական)։ Այդ ժամանակ Առաքելը սարկավագ էր և նույն ձեռագրերի համար թուղթ էր կոկում։ Հետո քահանա դարձավ՝ արդեն 1417 թ։ Հիշված է նաև 1419 թ.—Նոտարք 22, 50, 59։

— 53. Առաքել աբեղա, գրիչ. օրինակել է մի Հաւաքածոյ, 1420 թվից առաջ.—Տաշեան, Ցուց. 665 բ։

— 54. Առաքել, որդի Մոմեղէնի և եղբայր տանուտեր Թաթարբէկի, որ Նարեկ գյուղում գրել տվեց մի Աւետարան՝ 1420 թ.—Ձեռ. Վասպ. 325։

— 55. Առաքել, նոյն Թաթարբէկի եղբօրորդի Թումայի ա-ներն էր, «որ ողորմելի կեաց յաշխարհի՝ փոքր մի աւուրք. քանզի էր յոյժ ծերացեալ և եռեա զմահ որդւոյ իւրոյ և զաւերումն տանն և հեծեծանօք շրջէր, յոգոց հանելով».—Ձեռ. Վասպ. 326։

— 56. Առաքել վարդապետ, աշակերտ Մկրտիչ Նաղաշի, որ վաճառեց նրան իր ստացած մի Աստուածաշունչը՝ գրված 1418—22 թվերին.—Անկ. գիրք հին կտ. յաւ. էջ թ։

— 57. Առաքել Սիւնեցի, քեռորդի և աշակերտ Գրիգոր Տաթևացու (մ. «1410 թ»), վարդապետ և ապա արքեպիսկոպոս Սիւնեաց և վանահայր Տաթևի. նշանավոր մատենագիր և տաղասաց ԺԵ դարի. իր գործերն են՝ Վարք և Ներբողեան Ս. Աթանագինեայ, Տեսութիւն բանիցն Դաւթի անյաղթի թէ ամենայն չար տանջելի, Լուծմունք սահմանաց Դաւթի, Սահմանադրութիւն դաստիարակութեան նորածնեալ մանկանց, որք հրաւիրելոց են յաստիճան քահանայութեան (տպ. Մ. մաշտ. 337—342), Պատմութիւն չարչարանաց Ս. Գրիգորի Լուսաւորչի, Պատմութիւն Ներսէսի մեծի, Դրվատանութիւն Սաղմոսաց Դաւթի, Տաղ ձեռնադրութեան, Աղօթք ոտնլուայի, Յիշատակարան ի վերայ Աստուածաշունչ գրոց, Վեցօրէից Արարչութեան (Թորոս Աղբար, Բ. 387), և ուրիշ շատ տաղեր։ Բայց իր գլուխ գործոցն է Ադամգիրքը (կոչված նաև Հողգիրք), որ ունի 1740 տուն ոտանավոր և որ գրել է 1401—2 թ։ Տաղերի սկզբնատառերը հօրում են իր անունը, բայց շատ տաղեր շփոթվում են Առաքել Բաղիշեցու տաղերի հետ։—Եղել է նաև ծաղկող. օրինակ՝ ծաղկել է իր եղբայր Նահապետ Բարսեղ քահանայի գրած Աւետարանը՝ 1407 թ. (Ձեռ. Թաւր. էջ իը և 83 բ).—Առաք. նար. 473. Մ. մաշտ. 279 ար, 337 ա. Ադամ. 275, 326. Առաք. տաթև. 716. Յայսմ. ապր. 27. Մեծոփ. 51, 53.—Առաքելայ՝ Ադամ. 110, 224, 246, 270, 271, 291, 293, 321, 323.—սեռ. Առաքելի՝ Առաք. լծ. սահմ. 147, 173.—Առաքելոյ՝ Ադամ. 238, 275. Տաթև. ամ. 721.—բց. Առաքելէ՝ Ադամ. 246 ծան.—նոյն անձը պետք է կարծել նաև Առաքել վարդապետ տաղասաց՝ Ճշ. 211, սեռ. Առաքելի՝ Պարգ. 622.—իր կյանքի ու գործերի մասին տես Տաշեան, Ցուց. 1062, Զարբ. Նոր մատ. 248—250, Ձեռ. Դաղեան, Ա. 92 ա։

— 58. Առաքել վարդապետ, մատենագիր. գրել է Ղարաքի վանքում «Ճառ Ծաղկազարդի», որ և անցել է Յայսմաւուրքի մէջ (1422).—Ձեռ. Կես. ածած. 70 ա։

— 59. Առաքել, եղբօրորդի և աշակերտ Գրիգոր Ծերենց

*Խլաթեցու, որի նահատակության վրա («1426 թ») գրեց մի «Եղերերգություն», որի ծայրանունն է «Գրիգոր վարդապետին յԱռաքելէ Նորին աշակերտէ» (հրատ. Նոր վկ. էջ 274—9)։ Նույն Գրիգորի վրա կա նաև արձակ վկայաբանություն (հրատ. Նոր վկ. 264—272), որի վերջավորությունը ցույց է տալիս, որ Թովմա Մեծոփեցու գործն է. իսկ Նոտարք 75—77 դրված օրինակի վերջում իբրև հեղինակ հիշվում է սույն Առաքել վարդապետը։—Տես և Յակոբ Ղրիմեցի։*

— *60.* **Առաքել** *կրոնավոր, մերձավոր Սարգիս եպիսկոպոսի, որ Ընկուզագոմ վանքում գրեց մի Յայսմաւուրք՝ 1427 թ.—Նոտարք 84—85։*

— *61.* **Առաքել**, *հորեղբորորդի Մամատիկին ապաշխարողի, որ երևի մերձավորն էր Ստեփաննոս կրոնավորի, որ Վարդան գրչին գրել տվեց մի Աւետարան, Խորովայ վանքում, 1430 թվին.—Ձեռ. Վասպ. 359։*

— *62.* **Առաքել** *վարդապետ, առաջնորդ Ձմշկածագի Ընկուզեաց անապատի՝ 1434 թ.—Ձեռ. Թաւր. 12 բ։*

— *63.* **Առաքել** *երեց Կոնիապատցի, օգնեց Արիստակէս քահանային՝ գնելու համար մի Աւետարան, 1435 թ.—Ձեռ. Թաւր. 13ա։*

— *64.* **Առաքել**, *պապ տանուտեր Յովհաննէսի, որ Աղթամարում Դանիէլ քահանային գրել տվեց մի Աւետարան, 1436 թ.—Ձեռ. Վասպ. 373։*

— *65.* **Առաքել** *երեց, հայր Յովհաննէս երեցի, որ ծառայում էր Աղվանից Մատթէոս կաթուղիկոսի մոտ. հիշյալ երկու երեցներն էլ մեռան 1438 թվին կամ քիչ առաջ։—Ձեռ. Դաղեան, Բ. 44 ա։*

— *66.* **Առաքել**, *միաբան Աւագ վանից Դարանաղեաց գավառի, 1439 թ.—Տաշեան, Ցուց. 49 բ։*

— *67.* **Առաքել**, *որդի Յովսէփ միայնակեացի, որ Լիմ կղզում օրինակեց Աւետարանը՝ 1439 թ.—Ձեռ. Վասպ. 380։*

— *68.* **Առաքել** *կրոնավոր, միաբան Ոստանի Պալկի վանից, 1444 թ.—Ձեռ. Նոր-Բայազ. 41 ա։*

— *69.* **Առաքել** *քահանա, որդի Ստեփաննոս քահանայի, Աղթամարում՝ Դանիէլ քահանային գրել տվեց մի Ճաշոց, 1444 թ.—Նոտարք 134։*

— *70.* **Առաքել**, *միաբան Ուշտունեաց Ս. Յակոբայ վանից, 1445 թ.—Նոտարք 139։*

— 71. Առաքել աբեղա, Ռշտունեաց Բերդաձոր վանքում, Մարգարէ գրչին գրել տվեց մի Աւետարան, 1446 թ.—Նոտարք, էջ 154։

— 72. Առաքել երեց, գրիչ. օրինակեց Մաշտոցը՝ խնդրանոք Բանարգէս քահանայի, 1446 թ.—Rapport Belgique 178։

— 73. Առաքել, եղբայր Կարապետ Եւդոկիացու՝ կաթուղիկոսի Սսոյ, 1446 թ.—Հայյապ. 575։

— 74. Առաքել, ուսուցիչ Իսրայէլ կրոնավորի, որ Մոկաց Փառավանք գյուղում գրեց մի Աւետարան, 1447 թ.—Ձեռ. Վասպ. 400=Նոտարք 156։

— 75. Առաքել հայր Իսրայէլի, որի կինը՝ Թուրվանդա խաթուն գրել տվեց մի Աւետարան՝ 1448 թ.—Ձեռ. Վասպ. 402, 404։

— 76. Առաքել կրոնավոր, ազգական Փաշայ տիկնոջ, որ Վանում գրել տվեց մի Աւետարան, 1451 թ.—Ձեռ. Վասպ. 412։

— 77. Առաքել Բաղիշեցի կամ Պոռեցի, աշակերտ Գրիգոր Ծլաթեցու. նշանավոր տաղասաց. ունի Վկայաբանութիւն Վարդան Բաղիշեցւոյ (մ. 1421 թ. հրատ. Նոր վկ. 232—243), Վկայաբանութիւն Ստեփաննոս վարդապետի և Պետրոս քահանայի Ծիզանցոյ (մ. 1424 թ. հրատ. Նոր վկ. 245—261. համառոտված ձևով՝ Նոտարք 74), Պատմութիւն նահատակութեան Գրիգորի Ծլաթեցւոյ (մ. 1426 թ. հրատ. Նոր վկ. 264—272, որ ըստ վերջաբանության Թովմա Մեծոփեցունն է, իսկ Տաշեան տալիս է Բաղիշեցուն), Յովասափ և Բարղամ (վէպ տաղաչափեալ 1434 թ.), Ներբողական գանձ ի վերայ երջանիկ կուսին Վառվառեայ (որ գրել է Մերտին քաղաքում, 1438 թ. Նոտարք 114, 116—7), Ողբ յառումն Կ. Պոլսոյ (1453 թ), որ սկսում է այսպես.

Արդ ամենայն ազգք և ազինք
Ողբան զքեզ քաղաք Ստամբօլ։

Ունի նաև Տղայաբերական տաղաչափեալ, Ողբք Ադամայ, Գանձ մեռելաթաղի և ուրիշ շատ տաղեր ու գանձեր, որոնց վրա տես Տաշեան, Ցուց. 1061։ Տաղերից շատերը շփոթվում են Առաքել Սիւնեցու տաղերի հետ—Ջարբ. Նոր մատ. 169, 248—250։

— 78. Առաքել աբեղա, միաբան Տրապիզոնի Վերի Աստուածածին մենաստանի, 1455 թ.—Ձեռ. Վենետ. Ա. 190։

— 79. Առաքել, երկու նույնանուն միաբաններ Բասենի Սպիտակ վանքում, 1455 թ.—Նոտարք 180։

— 80. Առաքել, հայր Վարդան քահանայի, որ Պառուազ-

բակ վանքում, Սարգիս գրչին գրել տվեց մի Մաշտոց, 1455 Թ. —Տաշեան, Ցուց. 425 բ:

— 81. Առաքել, որդի Ղազարի և եղբայր Վարդան կրոնավորի, որ Յովհաննէս Մանկասարենց գրչին գրել տվեց մի Աւետարան, 1456 Թ.—Ջեռ. Վասպ. 425:

— 82. Առաքէլ, միաբան, հիշված 1456 Թ.—Ջեռ. Վասպ. էջ 425:

— 83. Առաքել, որդի Սարգսի՝ հորեղբոր մահտեսի Ստեփաննոսի, որ գրել տվեց մի Ցայսմաւուրք, 1457 Թ.—Ջեռ. Թաւր. 103 բ:

— 84. Առաքել աբեղա, Դանիէլ վրդ. Սեանեցուն վաճառեց մի Քարոզգիրք՝ 1461 Թ.—Ջեռ. Պետեր. (ՀԱ 1892, 83 աբ):

— 85. Առաքել, հայր Խաչատուրի, որ Արճէշում, Յովհաննէս քահանային գրել տվեց մի Աւետարան, 1462 Թ.—Ջեռ. Վասպ. 438:

— 86. Առաքել սարկավագ, որդի Շնորհաւորի և եղբայր Անդրէաս երեցի, որ Եւդոկիայում օրինակեց Աւետարանը, 1463 Թ.—Ջեռ. Սեբ. (ՀԱ 1925, 133):

— 87. Տէր Առաքել, որդի Յոհաննէս քահանայի, որ Աղթամարում, Մկրտիչ աբեղային գրել տվեց մի Գանձարան, 1466 Թ. —Նօտարք 224:

— 88. Առաքել աբեղա, Երուսաղեմում, Աստուածատուր աբեղա Տրապիզոնցուն գրել տվեց մի Մաշտոց, 1468 Թ.—Թորոս Աղբար, Բ. 465:

— 89. Առաքել տանուտեր, որդի Շատարևի. Գամաղիէլի վանքում, Յովհաննէս վարդապետին գրել տվեց մի Աւետարան, 1469 Թ.—Ջեռ. Վասպ. 453—6:

— 90. Առաքել, նույնի համանուն որդին, անդ 453:

— 91. Առաքել, մերձավոր Մկրտիչ քահանայի, որ Բիւրականում օրինակեց Ոտանավորների մի ժողովածու, 1469 Թ.— Ջեռ. Վենետ. Բ. 1114:

— 92. Առաքել կրոնավոր, հորեղբայր Փաշայի, որ Թովմա առաքյալի վանքում, Յովանէս գրչին գրել տվեց մի Աւետարան, 1471 Թ.—Ջեռ. Վասպ. 463:

— 93. Առաքել քահանա. ծաղկազարդեց այն Աւետարանը, որ Մխիթար քահանան գրեց Բռնաշէնում, ստացող Խոսրովի համար, 1478 Թ.—Ջեռ. Վասպ. 485:

— 94. Առաքել, որդի Վարդան աբեղայի, որ Կտուց անա-

պատում, Խաչատուր գրչին գրել տվեց մի Ավետարան, 1481 թ. —Ձեռ. Վասպ. 488։

— 95. Առաքել աբեղա, որդի ռայիս Փիլիպպոսի. գրիչ. Աւագ վանքում օրինակեց Գանձարանը և նվիրեց Սեպուհ լեռան Ս. Լուսավորչի վանքին, 1481 թ.—Թորոս Աղբար, Բ. 308։

— 96. Առաքյալ ճգնավոր, միաբան Երուսաղեմի, թուղթ կոկող և կազմարար վարպետ, 1484 թ.—Manus. brit. mus. 25բ։

— 97. Առաքել գրիչ. օրինակել է մի Ավետարան, 1484 թ. Կամախի Աւագ կամ Թադէոս առաքյալի վանքում.—Թորոս Աղբար, Բ. 302։

— 98. Առաքել ընթերցող, եղբայր Գրիգոր նկարողի, որ Սեբաստիայում, Փիլիպպոս եպիսկոպոսին գրել տվեց մի Ավետարան, 1485 թ.—Ձեռ. Վեննա. Ա. 598։

— 99. Առաքել, Ոստան քաղաքի քահանաներից մին, որ հիշված է 1486 թ.—Ձեռ. Վասպ. 502։

— 100. Առաքել քահանա, Ռշտունեաց Շատուան գյուղում օրինակեց Ավետարանը, 1489 թ.—Ակինեան, Գաւազանագիրք 120։

— 101. Առաքել քահանա, գրիչ. Մոկաց Բանաշէն գյուղում, Սահակ քահանայի խնդրանոք գրեց մի Ավետարան, 1490 թ.—Ձեռ. Վասպ. 516։

— 102. Առաքել կաթողիկոս Աղվանից, հաջորդեց Թովմային 1481 թ. և նստավ մինչև 1493 թ.—Ձեռ. Դաշեան, Ա. 89բ։ —Սրա հետ նույն է անշուշտ Առաքել կաթողիկոս Աղվանից, որդի Աբրահամ քահանայի. գրել է իր ժամանակի դեպքերի պատմությունը (ԺԵ դարի վերջերը).—Հայապ. 126։

— 103. Առաքել որդի Սահակի՝ եղբոր Կիրակոս քահանայի, որ Ամ գյուղում օրինակել տվեց Ավետարանը, 1497 թ.—Ձեռ. Նոր-Բայազ. 16 բ։

— 104. Առաքել աբեղա Խորվիրապեցի, գործակից Աբգար Եվդոկիացու. Պոլսում տպագրեցին մի Այբբենարան 1567 թ. և մի Տոնացույց 1568 թ.—Զամչ. Գ. 657։

— 105. Առաքել Վաղարշապատցի, կաթողիկոս Հայոց 1587—1593 թ. նախապես, այն է «1576 թվից» աթոռակից էր ընտրվել Թադէոս Բ-ի հետ՝ Գրիգոր ԺԲ կաթողիկոսին, որին հաջորդեց։ Աթոռակալ ժամանակ գնացել էր Ամիդ, ուր իր հետ բանակցության մասին «1584 թ» պապական նվիրակ Լէոնկարդոս եպս. (Ազգապ. 2279)։ Կաթողիկոս դառնալով՝ իրեն աթոռակից օծեց Դաւիթ Ե Վաղարշապատցուն։ Ամբողջ ժամանակը անց է

կացրել նեղվելով Օսմանյան հարկապահանջներից։—Ցհնսկ. 192. Ձքր. սարկ. Գ. 44 (որ և Առաքեալ՝ Ձքր. սարկ. Ա. 75). Առաք. պատմ. 1, 29, 338, 472. (Ազգապ. 2288 չի անցկացրել Գաւազանագրքում, ըստ որում միայնակ կաթուղիկոս չի նստել։ Բայց Լիմ կղզում գրված մի ձեռագիր 1576 թվին հիշում է նրան առանձին (տես Յովսէփեան, Խաղբակեանք 244). Նույնպես Թորոս Աղբար, Բ. 435 և Ձեռ. Մեր.=ՀԱ 1925, 472 հիշում են նրան առանձին կաթուղիկոս, երկուսն էլ 1578 թ. իսկ Ձեռ. Վասպ. 715 միասին է հիշում Առաքել, Դաւիթ և Մելքիսեթ՝ 1590 թ)։

— 106. **Առաքել** Դաւրիժեցի, պատմաբան. աշակերտ Փիլիպպոս կաթուղիկոսի. վարդապետ և միաբան Էջմիածնի. նվիրակ գնաց Փոքր-Ասիա և ապա Երուսաղէմ ուխտի. Փիլիպպոս և Յակոբ կաթուղիկոսների հրամանով գրեց իր ժամանակի պատմությունը՝ 1662 թվին, ուր նշանավոր է Շահաբասի գաղթականության պատմությունը։ Ոսկան վարդապետ Ամստերդամում տպագրեց այս գիրքը՝ հեղինակի կենդանության վերջին տարին (1669 թ)։ Առաքելինն է համարվում նաև «Տաղ վասն մահրաժայի» (Նոր ժող. Բ. 40)։ Մեռել է 1669 թ. և թաղվել Մայր Աթոռի գերեզմանատանում, ուր մնում է մինչև այժմ իր տապանը (տես Առաք. պատմ. յառ.)։ Առաքել վարդապետի տունը և գերդաստանը մնում են մինչև այժմ Թաւրիզում (Ղալայի Ս. Աստուածածին եկեղեցու նրբանցքում) և կրում է «Պատմագրեան» ազգանունը։ Իր աշակերտն է Վարդան վրդ. Մակուեցի—Առաք. պատմ. 319, 432—3, 459, 515—20. Ջուղ. (Առաքել և Առաքեալ ձևերով) 100, 112, 127, 135, 138—9, 220. Ձքր. սարկ. Ա. 4, 6, 12, 15, 18—20, 26, 53, 57, 63. Բ. 26. Գ. 4, 6, 7, 29, 31—32, 38, 42. Աբր. կրետ. 76.—սեռ. **Առաքելոյ**՝ Ձքր. սարկ. Ա. 12.—բց. **Առաքելէ**՝ Ձքր. սարկ. Ա. 4.—Զամչ. Ա. 17. Զարբ. Նոր մատ. 172—179. Թրգմ. 394. Տաշեան, Ցուց. 430—433, 683 բ, 716 բ. Լէօ, Հայկ. տպագր. Ա. 160։

— 107. **Առաքել** վարդապետ, ամփոփեց Աւետիք կրօնավորի նշխարները (նրան Ղրիմի թաթար աղեղնավորներն էին նահատակել 1509 թ.) և գրեց նրա նահատակության վրա մի տաղ (Հրատ. Նոր վկ. 346—9), որի նախավերջին երկու տների մեջ էլ ստորագրուած է ինքը.

Վարդապետ երգող բանիս,
Ո՛վ նահատակ տէր Աւետիս,
Անճառ լուսով լուսաւորիս,

Պայծառ փառօք դու պսակիս,
Առաքելին գեղն երանեալ,
Զքո սուրբ նշխարսդ հանգուցեալ...

— 108. Առաքել Ղրիմեցի, վաճառական էր Թաթար խանի մոտ՝ 1677 թվին. փրկանքով գնում էր շատ քրիստոնյա գերիներ և ազատ արձակում.—Տաշյան, Ցուց. 1030 բ։

— 109. Առաքել որդի Յովհաննէսի. նոր նահատակ. երիտասարդ էր, հավատքը չուրանալով՝ գլխատվեց Պոլսում, 1742 թ։ Իր շքեղ դամբարանը գտնվում է մինչև այժմ Պերայի գերեզմանատանում.— Թորգոմեան, REA 4, 218, ուր կա նաև դամբանի նկարը։

— 110. Առաքել տիրացու. հիմնեց Պոլսի մեծ հայաբնակ Սամաթիա թաղի դպրոցը (1815 թ.), որի սաներից է և տրուպս.— Տաշյան, Ցուց. 622 ա։

†ԱՌԻԻԾ, ար. < հյ. առիւծ կենդանու անունից. սրան համապատասխան են գալիս ուրիշ լեզուներով՝ հուն. Ղեոնդ, լտ. Լեոն, արաբ. اسد asad, حیدر ḥaydar, թրք. آسلان Aslan, ռուս. Лев, ինչպես նաև հյ. Կորիւն և պրս. جوانشیر ǰivānšīr ▸ Ջուանշիր։ Գործածված է մեր մեջ ԺԲ—ԺԷ դարերում. այժմ խափանված է։ Սրա փաղաքշականն է Առիւծիկ, որ հիշված է՝ Հոռոմոսի անթվական մի արձանագրության մեջ՝ Շիրակ 25 ա։

— 1. Առիւծ իշխան Թլկուրան ավանի. Ասորոց կամ Միջագետքի Ամայք և Շպղթան գավառների հայոց և ասորոց մեջ Թոնդրակյան վեճեր ծագած և քահանաներն էլ նրանց միացած լինելով՝ Առիւծ իշխանը գրեց Գրիգոր Գ. Պահլավունի («1113—1166 թ») կաթողիկոսին և խնդրեց որ հորդորական նամակ գրի։ Գրիգորը առաջարկեց իր եղբոր՝ Ներսէս Շնորհալուն և նա այս առթիվ գրեց «Թուղթ առ քահանայս Ցամայք գաւառի».— Շնորհ. Թղ. 240.—սեռ. Առիւծու՝ Շնորհ. Թղ. 242.—Չամչ. Գ. 55 (դնում է 1136 թվին). Ազգապ. 1377—1381. Ալիշան, Շնորհ. էջ 140—147։

—2. Առիւծ, երկու համանուն բարեկամներ Աստուածատուր Բաբերդցու, որ մի Ճառընտիր գրել տվեց 1205 թ.—Ջեռ. Վենետ. Բ. 470։

— 3. Առիւծ Հոգեորեանց, որդի Սարգսի. իր կնոջ Սեդայի հետ միասին ջուր է բերել Հոռոմոսի վանքը և խանութ է նվիրել 1251 թ. ավելի ուշ՝ Կարնեցի վարպետ Ֆրերի ձեռքով շինել է նույն վանքի նշխարատունը՝ 1277 թ. Շիրակ 25։

— 4. Առիւծ, եղբայր Անդրէաս քահանայի (Այրարատի Կոշ գյուղից), որ Սխում գրել տվեց մի Աւետարան, 1336 թ.— Ջեռ. Վասպ. 185։

— 5. Առիւծ, մեծ հայր Քրիստոսատուր կրոնավորի, որ Սուրխաթում (Ղրիմ) մի Աստուածաշունչ գրել տվեց՝ 1352 թ.— Ջեռ. Վասպ. 7։

— 6. Առիւծ, քեռի Յակոբ սարկավագի, որ օրինակեց Կիւրղի Կոչումն ընծայութեանը. մեռել էր 1358 թվին.—Ջեռ. Թաւր. 28 բ։

— 7. Առիւծ, եղբայր Յակոբշահի. երկուսով միասին մի Աւետարան նվիրեցին Եաշ քաղաքի (Ռումինիա) Ս. Աստուածածին եկեղեցուն, 1451 թ.—Ալիշան, Կամենից 161։

— 8. Առիւծ, Նորի գյուղի բնակիչներից, 1638 թ.—Ջեռ. Վասպ. 895—6։

— 9. Առիւծ, եղբայր Մարտիրոսի, որ նորոգեց (թիվը անհայտ) 1444 թվին գրված մի Աւետարան.— Ջեռ. Վասպ. 391։

— 10. Առիւծ, որդի Վարդանի, որ գնեց մի հին Աւետարան և նվիրեց Հաւաւ գյուղի եկեղեցուն (թվականն անհայտ).—Ջեռ. Հալէպի, Ա. 49։

+ ԱՌՆԱԿ, ար. <հյ. այր բառի սեռ. առն ձևից. համո. «Առնակ, այսինքն արի այրական» Մագ. Թղ. ԺԹ։ (Justi 27 կցում է Ἀρνάκης անվան հետ և հանում է զնդ. ərəna ձևից, որ գտնվում է ərənawāč բառի մեջ)։

— 1. Առնակ, նահապետ Հայկազանց, հաջորդ Ամպակի և նախորդ Շաւարշի. իշխել է Ն.Ք. 1349—1332 թ. ըստ Զամչ. Ա. 84.— Խոր. Ա. ԺԹ. ԵՀ. ԿԹ. բ. Կղկնտ. Ա. ԺԵ. Մխ. անեց. գ. Սամ. անեց. 45. Մխ. այրիվ. 18, 50. Վրդ. է. Մագ. Թղ. ԺԹ. Մին. համդ. 9. Վրաց. աղբ. Ա. 74.—գրված է Անակ՝ Շիր. քրոն. 31։

—2. Առնակ Ամատունի, մին այն նախարարներից, որոնց Յազկերտ Բ. բանտարկեց Պարսկաստանում «452 թ».—Եղիշ. 150. Փարպ. խէ (ձեռ. Սռնակ), կգ.—Զամչ. Բ. 86։

ԱՌՈՒԽ, ար. և իգ. ծագումն անհայտ. հազվագյուտ անուն. հիշված է ԺԷ—ԺԸ դարերում։ Տես Արուխ։

— 1. Առուխ, վաճառական Աստապատցի. գտնվում էր Վենետիկում՝ ԺԷ դարում.—Սիսական 509 բ։

— 2. Առուխ, իգ. հիշված 1739 թ.—Ջեռ. Դաշեան, Բ. 14 բ։

— 3. Առուխ, ար? հիշված անթվական մի հիշատակարանում, որ գրված է 1553 թվից հետո.—Ջեռ. Վենետ. Ա. 418։

ԱՌՈՒՆ (սեռ. Առունին), տր. ծագումը անհայտ. հիշված է մի անգամ 1683 թ. Ջեռ. Թեհր. (ՀԱ 1935, 396)։ Տես Արուն։

*ԱՌՈՒՇԱՆ, ար. < պրս. روشن Rūšan անունից, որ նշանակում է բուն «լուսավոր, փայլուն», ճիշտ ինչպես ունինք Այդին անունը՝ ծագած թրք. آیدین aydin «լուսավոր» բառից։ Հնագույն ձևն է զնդ. raoxšna «լուսավոր»։ Այս անունով հայտնի են Ῥωξάνης թագավոր Պարսից, Ῥωξάνη=պրս. روشنك Rūšanak դուստր Դարեհի, կին Աղեքսանդր մեծի (Շահն. հտ. 5, էջ 72, 86), Ῥωξάνη քույր Միհրդատ Զ Պոնտացու, Rōšan երաժիշտ Աւրէնգզէբի մ. 1669 (Justi 262 բ) են։ Հնից ավանդված չէ մեր մեջ, բայց կա այժմ Առուշան (Ղարաբաղ), Ուռուշան, Ռուշան (Երևան) ձևերով, որոնցից էլ Առուշանեան, Ուրուշանեան ազգանունները։ Սրա մի այլ ձևն է Ռոխշան, որ գործածական է եղել Ղարաբաղում (տես Րաֆֆի, Խամսայի մելիքութ. 282)։

*ԱՌՕՆ, ար. < Ահարոն եբրայական անվան հուն. Ἀαρών ձևից. այս անունով գիտենք մի մագիստրոս, որ հունաց Զոյէ կայսրուհու ժամանակ՝ ուղարկվեց Անի քաղաքի կառավարիչ. նորոգեց պարիսպները, ջուր բերեց քաղաքը և հարկերը իջեցրեց, ինչպես երևում է իր մի արձանագրությունից (1053 թ?). «Կամաւք ողորմութեամբ բարերարին Աստուծոյ ես Առաւնս մագիստրոս մեծարեալ ի մեծափառ թագաւորութեանցն ի գեղ պարգու և ի տիս մանկութեան իմոյ եկի յարեւս ի գեղեցկաշէն բերդս յԱնի. բարձրացուցի բաւանդակ զպարիսպ սորին կառկառակոյտ արձանաւք և հաստահեղոյս ամրութեամբ և ի յիմոց մեծածախ գանձուց ածի ջանիւ ջուր յորդաբուխ ի մէջ ամրոցիս յուրախութիւն և ի զովացումն ծարաւեաց...»։ Ալիշան (Շիրակ 70) մեջ բերելով այս արձանագրությունը, էջ 97 ա համարում է Առօնին բուլղար, իսկ էջ 182 ա (ցանկում) հայ Պահլաւունի։

ԱՌՕՏ, տր. ծագումը անհայտ. մի անգամ հիշված է ԺԱ դարում։

— Առօտ իշխան Խողնագաւառի և Մեծկերտի (Ցունահայքում). հայ-հոռոմ էր թե հույն. ուզում էր այդ գավառների հայերին հունադավան դարձնել, բայց լուր չկար (ԺԱ դարի վերջերը).—Տարօն. Բ. § 14։

*ԱՍԱԴ, ար. < արաբ. اسد asad «առյուծ» բառից, որ իբրև արական անուն գործածական է այժմ էլ Պարսից մեջ։ Հայոց մեջ գրված է Ասադ, Ասատ, Ասար, նաև ամիր «իշխան» բառի հետ միացած՝ Ամիր-Ասար։

— 1. Ասատ, հայերենի թարգմանեց Յովասափի և Բարաղամի պատմությունը (Ժ դար, ըստ Կոնիբերի ՀԱ 1924, 199).— Ցայսմ. օգ. 10։

— 2. Ասադ, եղբայր Վահրամի, «ինքնակալի տանն Ռանա». հիշված են 1224 թ.—Թորոս Աղբար, Բ. 272, Յովսէփեան, Խաղբակեանք 34։

— 3. Ասաք, որդի Սարգսի և եղբայր Աղութ խաթունի, որ Վարդան երեցին մի Աւետարան գրել տվեց՝ Վարագայ վանքում, 1260 թ.—Ջեռ. Դաղեան, Բ. 47ա։

—4. Ամիր-Ասաք, եղբայր Ամիր Հասան Բ-ի և Զումի, Խաղբակեան ցեղից. իշխել է 1328 թ. հիշված է նաև Ասադ ձևով.— Յովսէփեան, Խաղբակեանք 200, 203։

—5. Ասատ միայնակեաց, որդի Ամենաւագի. իր եղբայր Սիմէոնի հետ միասին, Ներսէս գրչին գրել տվին մի Ճառընտիր, Գամաղիէլի վանքում, 1397 թ.—Ջեռ. Վենետ. Բ. 1283—6։

— 6. Ամիրասաք ոմն, հիշված 1587 թ.—Bodleian 107։

— 7. Ասատ խաճ, արծաթով պատեց մի հին Աւետարան և «յիշատակ արար» 1662 թ.—Թորոս Աղբար, Բ. 439։

— 8. Ասադչ, հայր Լոյս Գրիգորի, որ նահատակվեց Նոր-Ջուղայում, 1703 թ.—Նոր վկ. 549։

*ԱՍԱՅ, ար. ըստ Justi 42 բ ծագմամբ նույն է իրան. Asay անվան հետ, որ Շապուհ Բ-ի քրոջ և Ուռնայր թագավորի կնոջ անունն էր. կա նաև Asā անունը Փարսիների մեջ։ Բայց կարող է նաև լինել եբր. אסא Asā անունից, որի բուն նշանակությունն է ըստ Բառ. Ս. Գրոց, էջ 50 «բժիշկ»։ Այս անունով հայտնի է Յուդայի թագավոր Ասա, որ Սողոմոնից հետո երրորդն է և իշխեց Ն.Ք. 944—904 թ։ Բարի և բարեպաշտ մարդ էր։ Ս. Գրքի հույն թարգմանության մեջ տառադարձված է 'Ασά, որից էլ հյ. Ասա (Գ. Թագ. ժե. 9)։

— Ասայ, թագավոր Աղուանից, հաջորդ Սատոյի և նախորդ Եսուաղէնի.—Կղկնտ. Ա. ժե. հրր. ը. Մխ. այրիվ. 23։

*ԱՍԱՅԷԼ, ար. < եբր. עשהאל ʻAšāhēl անունից, որ բուն նշանակում է «աստուածաստեղծ» (עשה ʻašāh «ստեղծել» և ēl «Աստված» բառերից, Gesenius 622—4)։ Տառադարձված է հուն. 'Ασαήλ։ Այս անունով հայտնի է Ս. Գրքից Ասայէլ՝ Դաւթի քեռորդին և նրա 30 դյուցազներից մին, որ «թեթև էր ոտիւք իբրև զմի յայծեմանց ի դաշտի». սպանվեց Աբեններէ ձեռքով Գաբաւոնի կռվում (Բ Թագ. բ. 18, 23)։

— Ասայել եպիսկոպոս Ամատունեաց, անդամ Դուինի ժողովի «645 թ».—Կանոն. 130, Տաշեան, Ցուց. 654 ա, Այրարատ 196 բ, Զամչ. Բ. 345, Ազգապ. 712։

*ԱՍԱՆԷԹ, իգ. <եբր. אסנת Asənat, որ տառադարձված է հուն. Ἀσενέθ. եբրայական բառը ըստ Gesenius 55 ա կապվում է եգիպտ. Ns—Nt ձևին, որ նշանակում է «Neith-ին պատկանող»։ Հ. Բ. Սարգիսեան, Ուս. հին կտ. անվաւեր գրոց, էջ 113 ասում է. «Ասանէթ անունն, որ ծագմամբ ինձ աւելի եբրայական՝ քան թէ եգիպտական ըլլալ կը թուի, կը նշանակէ «վտանգ կամ անբաղդութիւն», որ շատ լաւ կը յարմարի իրեն տրված տարաբաղդ ծննդեան զրուցին, և զայն կը հաստատէ վերստին»։ Սարգիսեան անշուշտ ակնարկել է ուզում եբր. אָסוֹן āsōn բառը, որ նշանակում է «արկած, դժբախտ պատահար»։ Այս անվան ստուգաբանության համար հմմտ. Անկ. գիրք հին կտ. 175 «Անուն քո ոչ ևս կոչեսցի Ասանէթ, այլ կոչեսցի Քաղաք ապաւինի»։— Այս անունով հայտնի է Ս. Գրքում՝ Ասանէթ դուստր եգիպտացոց Պետափրէս քրմի, որ եղավ Յովսէփի գեղեցիկ կինը (Ծն. խա 45, խզ 20)։ Հին Կտակարանի Անկանոն գրքերի մեջ (էջ 152—198) ավանդված է մեզ «Պատմութիւն Ասանեթայ» գեղեցիկ վեպը։ Այս անունը գործածված է մեր մեջ՝ սկսած ԺԵ դարից (տես տակը), ապա ԺԶ դարից. այսպես՝ 1505 թ. (Ձեռ. Ներս. 16 բ), 1575 թ. (Ձեռ. Վասպ. 684), 1629 թ. (Կնիք հաւ. յոշ. էջ IV), 1694 թ. (Այրարատ 236), 1796 թ. (Էֆիմ. 448)։ Գործածական է նաև այժմ։

— Ասանէթ, դուստր Ղազարի և քույր Մելքիսեթ գրչի, որ օրինակեց Աւետարանը Հալէպում, 1478 թ.—Ձեռ. Հալէպի, Ա. 96 բ։

ԱՍԱՆՄԵԼԻՔ, իգ. ծագումն անհայտ։

— Ասանմելիք, կին Ամիրպէկի, մայր Մովսէս երեցի, որ Կամախի Աւագ վանքին նվիրեց մի հին Աւետարան, 1407 թ.—Թորոս Աղբար, Բ. 304։

+ԱՍԱՊԱ, տր. ծագումը տես Աստուածապով։

— Ասապա՝ հիշված 1860 թ. (Ազգապ. 4024 և 4051)։

+ԱՍԱՊՈՎ, տր. ծագումը տես Աստուածապով։

— 1. Ասապով, տաղասաց ԺԶ դարու.—Յուշիկք, Բ. 125։

— 2. Ասապով, հիշված է նաև 1595 թ. (Ձեռ. Վենետ. Ա. 695) և 1671 թ. (Ձեռ. Թեհր.=ՀԱ 1935, 309)։

ԱՍԱՐ, տր. ծագումն անհայտ է. գործածված է ԺԴ դարից

Ասարբեգ ձևով և ավելի ուշ՝ ԺԶ—ԺԷ դարերից, Ասար ձևով։

— 1. Ասարբեկ Սեբաստացի, որդի պարոն Ասլանի, որ Ներսէս գրչին գրել տվեց Եպիփանի ճառերը, 1350 թ.—Տաշեան, Ցուց. 107 բ։

— 2. Ասար՝ 1534 թ.—Ձեռ. Վասպ. 647։

— 3. Ասար՝ 1609 թ. կամ քիչ հետո.—Ձեռ. Սեբ. (ՀԱ 1925, 474)։

— 4. Ասար Սեբաստացի, բժիշկ. որդի բժիշկ խոջա Բարխուդարի Սեբաստացւոյ. ապրել է 1615 թվից այս կողմ. ունի Մարդակազմութիւն, որ խմբագրել է Աբու-Սայիդ արաբ բժշկի հեղինակության վրայից, Բժշկարան, որի մասին տես Manus. brit. mus. 342, և Բժշկական բառգրքոյկ.—Տաշեան, Ցուց. 721—722, Ցոփանեան, Հետազօտ. Բ. 448—466, 491, Թորգոմեան, Ներբ. 27, Manus. brit. mus. 314 բ, Բասմաջեան, Ամբրտ. անգ. էջ իբ։

— 5. Ասար Սեբաստացի, տաղասաց ԺԷ դարու, որին հիշում է Ալիշան, Յուշիկք, Բ. 125։—Նույն է արդյոք նախորդի հետ։

— 6. Ասար որդի Կարապետի, ստացավ 1370 թվին գրված մի Ավետարան. տեղն ու թվականը անհայտ.—Ձեռ. Վենետ. Ա. 780։

*ԱՍԵՐ, ար. < եբր. אָשֵׁר Aser անունից, որ նշանակում է բուն «երանելի». այսպես էր կոչվում Յակոբ նահապետի ութերորդ որդին. հմմտ. «Եւ ծնաւ ևս որդի երկրորդ՝ Յակոբայ. Եւ ասէ Լիա. Երանելի եմ ես, զի երանեսցեն զիս կանայք. և կոչեաց զանուն նորա Ասեր» (Ծն. լ. 13)=հուն. Ἀσήρ. Սովորական գործածություն չունի մեր մեջ, բայց մի անգամ գտնում եմ ԺԷ դարում՝ Պօղոս ոմն Ասեր օղլու 1665 թ. (Զամչ. Գ. 708)։

*ԱՍԹԱՆԴԱՐ, իգ. ծագումն անհայտ. բայց կարծում եմ պրս. آسیتاندار *āsitān-dār, որ կազմված է āsitān «սրբի գերեզմանի շեմքը»+dār մասնիկով և նշանակում է «սրբի գերեզմանի շեմքը պահող»։ Մի անգամ գտնում եմ հիշված 1661 թ. Ձեռ. Ագուլ. (Արրտ. 1911, 119)։

*ԱՍԹԱՆԷՍ, ար. անշուշտ հուն. ἀσθενής «տկար, աղքատ, թույլ» բառից։ Մի անգամ կա հիշված՝

— Ասթանէս (սեռ. Ասթանեսի ձևով), եղբայր Մկրտիչ Բաբերդցի քահանայի, որ գրել տվեց մի Ավետարան, 1344 թ.—Ձեռ. Սեբ. (ՀԱ 1926, 237)։

ԱՍԹԵՆԻԿ, ար. ծագումն անհայտ. անսովոր անուն, ունինք միայն՝

— Ասթենիկ, որդի Սանատրուկ Թագավորի կրտսեր որդու-

հիշված է Մարտիրոս վրդ. Ղրիմեցու ստանավոր Հայոց պատմության մեջ (տես Տաշեան, Ցուց. 181 բ)։

*ԱՍԹԵՐ, իգ. < հուն. Ἀστήρ ար. և Ἀστερία իգ. անուններից, որոնց բուն նշանակությունն է «աստղ»։ Մեր մեջ ունենք միայն՝

— Ասթեր, որ հիշված է Արճոյ Առիճ վանքի նվիրատուների շարքում, անթվական մի արձանագրության մեջ՝ Շիրակ 123 ա։

ԱՍԹԻՆԷ, իգ. ծագումն անհայտ. նորակերտ անուն, որ գործածվում էր Պոլսում, անցյալ դարում։

ԱՍԻԹ, ար. ծագումն անհայտ։

— Ասիթ Ամատունի, ժամանակից Գուրգէնի պատերազմին ընդդեմ Բուղայի «852 թ».—Արծր. Գ. գ.—Ազգապ. 942 գրում է Առիթ. և որովհետև Արծրունու երեք տպագրություններն էլ ունին Ասիթ, ուստի Առիթ ընթերցվածը վրիպակ է։

*ԱՍԻԼ, ար. < արաբ. اصل aṣl «բուն, իսկական, հարազատ» բառից։ Գործածված է ԺԴ դարից։ Սրանից է Ասիլեան ազգանունը։

— 1. Ասիլ պարոն, որդի Գրիգոր Խուցէսի և եղբայր Պարոնի. աթապակ և մեծ սպասալար Շահնշահի կողմից նշանակված էր Անիի պատավոր. գովաբանված է իբրև «բարեարար և արդարադատ». շինեց զանազան շենքեր Շիրակում և Անիում, ուր իր տոհմի սեփական եկեղեցին էր Ս. Առաքեալք, որին նվիրեց մի Աւետարան՝ 1357 թ. նույն թվին նորոգել է Լևոն Գ-ի կեռան թագուհու Աւետարանը. իր կինն է Ըառոզ խաթունը։—Այրարատ 112, Յովսեփեան, Խաղբակեանք 15։

— 2. Ասիլ, հայր Արգլմսեհ քահանայի, որ Ամիթ քաղաքում գրել տվեց մի Աւետարան, 1373 թ.—Ձեռ. Վենետ. Ա. 618։

— 3. Ասիլ, գնեց մի Աւետարան՝ 1488 թ.—Ձեռ. Վասպ. 240—241։

— 4. Ասիլ, (գրված է հոգով Ասյն). հիշված է անթվական մի հիշատակարանում, որ գրված է 1444 թվից հետո.—Ձեռ. Վասպ. 396։

— Ասիլ իբրև արական անուն գործածված է Սուչավայի հայոց մեջ՝ 1504 թ. տես Տաշեան, Ցուց. 55 ա։

ԱՍԻՐՈՑ, սեռը և ծագումն անհայտ։

— Ասիրոց, հիշված է այն արձանագրության մեջ, որ գրել է Վահրամի դուստր Մամուկաթի և կալվածներ է նվիրում Հոռոմոսի վանքին, 1266 թ.—Շիրակ 26 բ։

ԱՍԼԱՄԱԶ, ար. Թրքական անուն է. հմմտ. Ասլամաս Ղուլի խան (Թուրք), ժամանակակից Դաւիթ բէգի (Զամչ. Գ. 786)։ Մեր մէջ անսովոր է. բայց հիշված է 1650 թվի մի կոնդակում Ասլամազ ոմն (Manus. brit. mus. 264 ա), որից և Ասլամազեան ազգանունը (Կովկաս)։

*ԱՍԼԱՆ, իգ. և ար. < Թրք. اصلان aslan «առյուծ» բառից, որի հին ձևն է ارسلان arslan. հմմտ. Ալփ-ասլան «քաջ առյուծ» սելճուքյան Թուրք աշխարհակալը (1063—1073)։ Երեք անգամ գործածված է իբրև իգական, մյուսները արական են՝ սկսած ԺԳ դարի սկզբից և մինչև այժմ էլ գործածական է։ Հին ձևը ունինք Արսլան՝ շատ ուշ՝ 1644 թվին (Ձեռ. Սեբ.=ՀԱ 1927, 310)։ Սրանից է Ասլանեան ազգանունը։

— 1. Ասլան, որդի Շիրանիկի. իր կնոջ Ասուշանի հետ կալվածներ է նվիրել Հոռոմոսի վանքին՝ 1231 թ.—Շիրակ 20 բ։

— 2. Ասլան, որի հիշատակին մի խաչքար կա Փաշալու գյուղի մատուռում, 1297 թվից.—Սիսական 177։

— 3. Ասլան, ոմն հիշված 1304 թ.—Ձեռ. Վասպ. 143։

— 4. Ասլան ափայ, նվերներ արեց Թանատի վանքին (Վայոց ձոր), 1326 թ. Տնում է իր արձանագրությունը՝ Սիսական, էջ 122։

— 5. Ասլան, իբր իգ. անուն հիշված է անթվական մի հիշատակարանում, որ գրված է 1331 թվից հետո (Manus. brit. mus. 58 բ)։

— 6. Ասլան խաթուն, կին Մանկասարի, հիշված Հոռոմոսի վանքի նվիրատուների հետ՝ 1347 թ.—Յովսէփեան, Մի էջ հայ արուեստի 37, 39։

— 7. Ասլան, պարոն Սեբաստացի, որի հիշատակին գրված է ճառք Եպիփանու, 1350 թ.—Տաշեան, Ցուց. 107։

— 8. Ասլան, գրիչ. Սուրխաթ քաղաքում օրինակել է «Պատմութիւն վարուց Ֆրանչիսկոսի», 1359 թ.—Ձեռ. Կարին. էջ 191։

— 9. Ասլան, տանուտեր Արճէշի. սրա աղջիկը ամուսնացավ իր մերձավոր մի ազգականի հետ. երկու տարի անցած, ծննդաբերությունից հետո գժվեց և չարաչար տանջանքներով մեռավ (1395 թվից հետո).—Մեծոփ. 115։

—10. Ասլան խոջա, Յովհաննէս գրչին գրել ավեց մի Յայսմաւուրք՝ 1459 թ.—Նօտարք 191։

— 11. Ասլան, որդի Կուռջի բէկի և եղբայր Ներսէս դրչի, որ Աղթամարում գրեց մի Աւետարան, 1461 թ.—Ձեռ. Վասպ. էջ 437։

— 12. Ասլան, հայր Շիրազխաթունի, որ նորոգել տվեց մի Աւետարան, 1470 թ.—Թորոս Աղբար, Բ. 356։

— 13. Ասլան, իր եղբայր Ջիրապշահի հետ միասին՝ Բաշքենդ գյուղի մոտ (Երևան, Ղըրխբուլաղ) շինեցին Պետրոս-Պողոսի եկեղեցին, որ և կալվածներով ապահովեցին, 1551 թ.—Այրարատ 289։

— 14. Ասլան խաթուն, հիշված է 1606 թ.—Bodleian 5։

*ԱՍԼԱՆԲԷԳ, ար. ⊲Նախորդ Ասլան անունից+բէգ։

— 1. Ասլանպէկ Մամիկոնեան, որդի Մարզպանի, եղբայր Գրիգոր իշխանի, Սարգսի և Ամիրայի.—սեռ. Ասլանպէկին՝ կիր. ի ծգ։ Շինել է Դսեղի Բարձրաքաշ Ս. Գրիգոր եկեղեցին, 1245 թ.—Ցովսէփեան, Խաղբակեանք 178։

— 2. Ասլանբէկ, որդի Մկրտչի և եղբայր Անդրէասի, որ գնեց մի հին Աւետարան, 1442 թ.—Ձեռ. Նոր-Բայազ. 17 բ։

— 3. Ասլանբէկ, հօրեղբայր Զաքարիա կաթողիկոսի Աղթամարի. հիշված է մի արձանագրության մեջ, 1444 թ.—Ակինեան, Գաւազանագիրք 86, 108։

*ԱՍԼԱՆԳՈՒԼ, ար. < Թրք. aslan «առյուծ»+պրս. گل gul «վարդ» բառերից, իբրև «առյուծավարդ»։ Հիշված է 1574 թ։ Ասլանգիւլ ձևով (Հայ-Վենետ. 445), 1701 թ. Ասլանկուլ ձևով (Սիւրմէեան, Պատմ. Հալէպի ազգ. գերեզմ. 32 բ) և 1820 թ. Ասլանկ/ղ ձևով (Պէրպէրեան, Պատմ. Հայոց 135)։

*ԱՍԼԱՆ-ՄԵԼԷՔ, իգ. < Թրք. aslan «առյուծ»+արաբ. ملك melek «հրեշտակ» բառերից։ Մի անգամ ունինք՝

— Ասլան-մելէք, դուստր Խունար-մէլէքի, որ Կաուց անապատում գրել տվեց մի Աւետարան, 1701 թ.—Ձեռ. Վասպ. 1027։

*ԱՍԼԱՆ-ՄԵԼԻՔ, ար. < Թրք. aslan «առյուծ»+արաբ. ملك melik «թագավոր» բառերից։ Սրանից ունինք՝

— 1. Ասլան-մելիք, մերձավոր Ատոմ միայնակեցի, որ Վանում գրել տվեց մի Մաշտոց, 1393 թ.—Նոտարք 3։

— 2. Ասլան-մելիք, հայր (կամ պապ) Սքանդարի, որ նահատակվել է 1465 թ. (կոչված է Ասլան-մելիքենց, որից էլ հետեցնում եմ այս անունը).—Ազգապ. 2172։

*ԱՍԼԲԷԳ, ար. < արաբ. أصل aşl «բուն»+Թրք. بك beg «բեգ»

*բառից, որով նշանակում է «բուն, իսկական ցեղ»։ Գործածված է ԺԴ—ԺԶ դարերում։*

*— 1.* Ասլբեգ, *պարոն, Սսի երկրորդ մեծ դաղթականության առաջնորդներից մեկը՝ դեպի Կիպրոս կամ Իտալիա «1404 թ». —Ազգապ. 2007, Սիսուան 542 բ։*

*— 2.* Ասլպեկ, *սատացող մի Աւետարան, որ գրել էր Մարգարէ քահանան Բաղուի Նեխրի գյուղում, 1475թ.—Ձեռ. Վեննա. Ա., 624։*

*— 3.* Ասըլբեկ, *հայր Սքանդարի, կնոջ Մելիքի, որ Բաղուի Հաւհաւ գյուղում գրել ավեց մի Ճառընտիր, 1538 թ. —Ձեռ. Վեննա. Բ. 535—6։*

*ԱՍԼԵՐ, իգ. ծագումն անհայտ։*

*—* Ասլեր *տիկին, Երուսաղէմում գրել ավեց մի Ճաշոց Կարապետ երեցին՝ 1333 թ.—*REA *10, 56։*

**ԱՍԼԻ < արաբ.* اصلی aṣlī *«իսկական, հարազատ» բառից։ Գործածված է սկսած ԺԵ դարից, թե արական և թե իգական. և այժմ էլ կա գյուղական վայրերում, իբրև իգական։ Սրա փաղաքշականներն են* Ասլիկ *և* Ասլիջան*։*

*— 1.* Ասլի, *զավակ Անտոնի և ազգական խոջա Ջալըի, որ Յովհաննէս աբեղային գրել ավեց մի Աւետարան, 1490 թ.—Ձեռ. Վասպ. 515։*

*— 2.* Ասլի, *հիշված է իբրև արական՝ 1650 թ. (Ձեռ. Դաղեան, Բ. 33 ա), իբրև իգական՝ 1651 թ. (Տաշեան, Ցուց. 363ա) և իբրև արական՝ 1658 թ. (Ձեռ. Հալէպի, Ա. 63)։ Սեռն անորոշ է 1647 թ. (Ձեռ. Թաւր. 101 բ)։*

**ԱՍԼԻԶԱԴԷ կամ ԱՍԼԶԱԴԷ, իգ. < արաբ.* اصل aṣl *«բուն, հարազատ»+պրս.* زاده zāde *«ծնեալ» բառերից. ամբողջը նշանակում է «ազնվածին»։ Հիշված է Ասլիզադէ ձևով՝ 1592 թ. (Ձեռ. Վասպ. 724) և Ասլզադէ ձևով՝ 1667 թ. (Ձեռ. Նոր-Բայազ. 3բ)։*

**ԱՍԼԻԽԱՆ կամ ԱՍԼԽԱՆ < պրս.* اصل خان ásl-i xan *կամ թրք. ձևով՝* اصلی خان asli xan, *որոնք համապատասխ նշանակում են «նա որի բունը կամ ծագումը խան է, խանի ցեղից»։ Գործածված է թե արական և թե իգական՝ սկսած ԺԷ դարից մինչև ԺԹ դար։ Իբրև արական գտնում եմ 1638 թ.* Ասլխան *ձևով (Ձեռ. Նոր-Բայազ. 14 բ), իսկ իգական են՝* Ասլխան *1634 թ. (Տաշեան, Ցուց. 858 բ),* Ասլիխան*՝ 1681 թվից հետո (Ձեռ. Վեննա. Ա. 790 երկու տարբեր անձեր), 1693 թ. (Ձեռ. Վասպ. 334),* Ասըլխան

1808 թ. (անդ 360), Ասլիխան՝ երկու անթվական հիշատակարաններում (անդ 751 և 993) և մի ուրիշը՝ Ձեռ. Թաւր. 120 բ։

*ԱՍԼԻԿ, նախորդի փաղաքշականն է. գործածված է ԺԶ—ԺԷ դարերում, որ. և իգ. այսպես՝ 1595 թ. իբրև իգական (Այրարատ 294 ծան. և Ձեռ. Վենետ. Ա. 696), անթվական մի հիշատակարանում՝ իբրև իգական (Ձեռ. Նոր-Բայազ. 51 բ) և 1655 թ. իբրև արական (անդ, 42 բ)։

*ԱՍԼԻՄԵԼԷՔ, իգ.<պրս. կամ Թրք. asli-melek «բուն խսկ հրեշտակ» ձևից. մի անգամ գտնում եմ գործածված ԺԴ դարում։ Տես և հաջորդը։

— Ասլմելեք, դուստր Եղգանըրախչի. մեռել է 1327 թ.—Ձեռ. Ագուլ. (Արրտ. 1911, 461)։

*ԱՍԼԻՄԵԼԻՔ կամ ԱՍԼՄԵԼԻՔ, ար. կամ իգ.<Թրք. և պրս. asli melik «որի բունը մելիք է, մելիքական ցեղից»։ Կարծում եմ որ շփոթված է նախորդի հետ. ուր որ արական է, պետք է կարդալ Ասլիմելիք, և ուր որ իգական է, պետք է կարդալ Ասլիմելեք։

— 1. Ասլմելիք, մայր Կարապետ կրոնավորի, որ օրինակեց մի Աւետարան, 1344 թ.—Թորոս Աղբար, Բ. 355։

— 2. Ասլիմելիք, կին Աստուածատուրի և մայր Յակոբ կրոնավորի, որ Հռոմում ստացավ մի Աւետարան, 1351 թ.—Ձեռ. Վենետ. Ա. 409։

— 3. Ասլիմելիք, մորաքույր Յակոբ սարկավագի, որ օրինակեց Կիւրղի Կոչումն ընծայութեանը, մոտ 1358 թ.—Ձեռ. Թաւր. 28 բ։

— 4. Ասլիմելիք, որդի Աղիզ պէկի. Ծաւիկու վանքում, Հայրապետ գրչին գրել տվեց մի Աւետարան, 1447 թ.—Նոտարք, էջ 157։

— 5. Ասքըլ-մելիք, կին Մկրտչի և մայր տանուտեր Մարտիրոսի, որ Բերկրիում, Կարապետ քահանային գրել տվեց մի Աւետարան, 1473 թ.—Ձեռ. Վասպ. 467։

—6. Ասլիմելիք, ազգական (թվի արական) Յակոբի, որ Երզնկայում, Աստուածատուր գրչին գրել տվեց մի Աւետարան, 1477 թ.—Ձեռ. Վենետ. Ա. 628։

— 7. Ասլիմելիք, դուստր Մելքիսեդի և քույր Զաքարիա գրչի, որ Աշոտաձորի Անկնենց վանքում օրինակեց Աւետարանը, 1477 թ.—Ձեռ. Ագուլ. (Արրտ. 1911, 220).—տպված է Սալիմելիք։

— 8. Ասըլ-մելիք, կին Յովհաննէսի և մայր Խաչատուր աբեղայի, որ Կտուց անապատում օրինակեց Աւետարանը՝ Վարդան աբեղայի համար, 1481 թ.—Ձեռ. Վասպ. 488։

†ԱՍԼԻՊԱՐՈՆ, ար. < արաբ. اصلی aşli «բուն»+հյ. պարոն բառերից և նշանակում է «նա որի բուն ցեղը պարոններից է»։ Հիշված է ԺԵ դարում։

— 1. Ասլիպարոն, ազգական Աստուածատուրի, որ Սարգիս գրչից գնեց մի Աւետարան, որ գրել էր 1488 թ.—Ձեռ. Վենետ. Ա. 492։

— 2. Ասլիպարոն, հայր տանուտեր Ղազիի, որ սատարեց այն Աւետարանի գրութեան, որ գրել տվեց տանուտեր Մարտիրոսը, 1489 թ.—ՀԱ 1894, 52 ա։

*ԱՍԼԻՋԱՆ, մր. թե իգ. կազմված է վերի Ասլի անունից, ջան փաղաքշականով։

— Ասլիջան, զավակ խոջա Մուրատբախշի, 1327 թ.—Ձեռ. Ագուլ. (Արրտ. 1911, 461)։

*ԱՍԼԻՓԱՇԱ, իգ. < արաբ. اصلی aşli+թրք. پاشا paša «փաշա» բառերից. նշանակում է «նա որի բունը փաշաների ցեղից է»։ Գործածված է ԺԶ դարում. այսպես 1512 թ. (Ձեռ. Վասպ. 84), 1587 թ. (Ձեռ. Սեբ.=ՀԱ 1925, 260), 1594 թ. (Ձեռ. Վասպ. 737) և 1597 թ. (անդ 753)։ (Սխալ է Ձեռ. Վասպ. № 49 ձեռագրի թվականը, որ Լալաեանը դնում է ՋԾԿԱ=1212. պետք է կարդալ ՋԾԿԱ=1512, քանի որ գրիչը պատմում է թե «Ի յայս ժամանակի եկաւ կարապետ նեռին. Շահսմայիլն՝ մականուն կարմիր գլուխ... և յայսմ ամի մտաւ շահն ի Խորասան»)։

ԱՍՂԱՒ, ար. ծագումը անհայտ. հիշված է մի անգամ ԺԳ դարում։

— Ասղաւ, որդի Տիգրանի. այս Ասղաւի դուստրն է Մասքա(ս)՝ նվիրատու Հոռոմոսի վանից, 1280 թ.—Շիրակ 28 ա։

*ԱՍՄԱՆ, ար. < պրս. آسمان āsumān, āsimān, āsmān «երկինք» բառից։ Ունինք մի անգամ ԺԵ դարում։

— Ասման սարկավագ, որդի Յակոբ քահանայի և եղբայր Յովսէփ կրոնավորի, որ Կիւրղի անապատում օրինակեց Աւետարանը՝ 1432 թվին, երբ Ասմանը մեռած էր։—Ձեռ. Սեբ.=ՀԱ 1926, 47։

*ԱՍՄԱՆԳՈՒԼ, ար. < պրս. آسمان āsumān, āsmān «երկինք» +گل gul «վարդ» բառերից. ամբողջը նշանակում է «երկնային վարդ»։ Չունի Justi. բայց ես օտարներից գտնում եմ Շեյխ Ասա-

մանկլի (Օրբ. ժմ. 29, ցանկում գրված Սամանկլի, որ է Ասուման-գուլի), որ 1284 թվի թաթարական տիրապետության ժամանակ սպանվեց: Մեր մեջ հիշված է մի անգամ ԺԶ դարում. բայց անշուշտ ավելի սովորական էր, որովհետև ունենք այժմ Ասմանգուլեան ազգանունը (Ցղնա):

— Այսմայկուլ կնծուտեցի, որ ստորագրում է Տաթևի կալվածների հաշվեգրին, 1513 թ.—Օրբ. ժմ. 46, Սիսական 34 ա:

*ԱՍՄԱՐ, իգ. < թրք. اسمر esmer, ժղ. asmar «թուխ» բառից: Իբրև իգական անձնանուն հիշված է մեր մեջ 1602 թ. (Ձեռ. Վասպ. 442), 1606 թ. (Manus. brit. mus. 271ա), 1696 թ. (Տաշեան, Ցուց. 591 բ) և այժմ էլ գործածական է Վանեցոց մեջ:

*ԱՍՄԻՆ, իգ. < պրս. یاسمین yāsamīn «յասմիկ» բառից. ya ձայնախումբը բառասկզբում հնապես դառնում էր ա. ավելի ուշ ունենք Եասաման և հայկական ձևով էլ Յասմիկ: Հիշված է ԺԶ—ԺԷ դարերում. այսպես՝ 1591 և 1666 թվերին (Ձեռ. Հալէպի, Բ. 7 բ և 8 ա), ԺԷ դարում (Ձեռ. Էջմ. № 1486), անթվական՝ Ձեռ. Հալէպի, Բ. 90 բ (ԺԷ դար), Ձեռ. Վասպ. 490 և 682:

ԱՍՈՐԻ, ար. ըստ հանգուցյալ հայկաբան Աբրահամ Ջամինեանի (մ. 1937 Երևան), Վահան Մամիկոնեանին պաշտոնակից նշանակված Վրիւի հոր անունն է, որ սխալմամբ կարծվում է ասորի ազգի անունը. հմմտ. Փարպ. կե. «Վասն զի էր նորա գործակից, որում անուն էր Վրիւ, անանուն ըստ ազգի և անփորձ իրի, որդի առն Ասորւոյ, բայց շատախօսութեամբ և ընդվայրաբանութեամբ առաւելեալ նմանէր ազգի Ասորւոց... և որդի Ասորւոյն Վրիւ ելանէր ամաչեցեալ և արհամարհեալ»: (Անձնական բանավոր տեղեկություն):

ԱՍՈՒԳԱՆ, իգ. ծագումն անհայտ. մի անգամ միայն ունինք ԺԵ դարում:

— 1. Ասուգան, կին պղնձագործ Ռուզբեկի, որ Կուքի գյուղում, Մանուէլ քահանային գրել տվեց մի Գանձարան. բայց մահը վրա հասնելով՝ Ասուգանը նույն Գանձարանը նվիրեց Ագուլեաց եկեղեցիներին, 1478 թ.—Ձեռ. Դաշեան, Ա. 39 բ:

— 2. Ասուկան, ար. թե իգ. հիշված է ԺԶ դարում, Ձեռ. Սանաս. 7 բ:

ԱՍՈՒԴ, ըստ Խոր. Բ. կզ և Մաշ. թղ. հգ. հին ժամանակ Բագրատունիներին հատուկ անձնանուն էր, որ ապա դարձավ Սմբատ: Նույնը Ասուդա ձևով՝ Մխ. անեց. խա:

— 1. Ասուդ Արծրունի, հաջորդ Արշաւրի, ժամանակակից

Պարսից Դարեհ Գ թագավորի (336—330 Ն.Ք.)։ Դարեհի հետ դիմադրեց Աղեքսանդր Մակեդոնացուն և իր քաջության համար տարվեց Եգիպտոս, ուր պահվեց պատվով։ Իբրև փոխարքա իշխեց Եգիպտոսի և Հնդկաստանի վրա։ Մեռավ Եգիպտոսում։— Արծր. Ա. գ.—սեռ. Ասուդայ՝ անդ։—Կեդծիք։

— 2. Ասուդ Բագրատունի, իշխան հրեա, որի լեզուն կտրեց Տիգրան Բ թագավորը՝ կուռքերն անարգելու պատճառով.— Խոր. Բ. ժդ. Մխ. անեց. ժա.—Չամչ. Ա. 222։

— 3. Ասուդ Արծրունի, նահապետ տոհմի, հաջորդեց Շաւարշին. ժամանակակից է Տիգրան Գ-ին.—Արծր. Ա. ը (գրված է Ասող)։

— 4. Ասուդ. այսպես է կոչում Աշոտ Ա Բագրատունի թագավորին՝ Մագ. թղ. ժթ։

— 5. Ասուտ ոմն հիշված է անթվական մի հիշատակարանում, Ձեռ. Թաւր. 74 բ։

*ԱՍՈՒԴԱ, իգ. <պրս. آسوده āsūda «հանգիստ» բառից։ Մի անգամ գտնում եմ հիշված ԺԵ դարում։

— Ասուդա, կին Աբրահամ քահանայի և մայր Մկրտիչ քահանայի, որ Բիւրականում օրինակեց ոտանավորների մի լավ ժողովածու, 1469 թ.—Ձեռ. Վենետ. Բ. 1112—3։

ԱՍՈՒՇԱՀ, իգ. ծագումն անհայտ. հիշված է մի անգամ ԺԳ դարում։

— Ասուշահ, որ և Ասուշի, կին Ասլանի, նվիրատու Հոռոմոսի վանից, 1231 թ.—Շիրակ 20 բ։

ԱՍՈՒՐԱՍՏԱՆ, տր. թե իգ. կապ ունի Ասորեստանի հետ։ Իբրև անձնանուն հիշված է Բագնայրի արձանագրություններից մեկի մեջ, նվիրատուների շարքում (անթվական).—Շիրակ 121բ։

Ասպահան տես Սպահան։

ԱՍՊԱՏ, ար. ծագումն անհայտ։

— 1. Ասպատ, որդի Բիւրատի և թոռն Բագարատի, որ Հայկազանց Փառնաւազ թագավորի որդին էր.—Սեբ. ա (ձեռ. Ասպատ, որ Պատկանեանը ուղղում է Ասպատ, համարելով նույն ընդ Ասպետ, որ Բագրատունիների մականունն է։ Նույնը նաև Justi 46 բ։ Մալխասեան, Սեբէոսի վերջին հրատարակության մեջ դնում է Ասպատ, առանց տարբերակի)։

—2. Ἀσβάδης, զինակիր Յուստինիանոս կայսեր. սլաքները բռնեցին նրան և այրեցին (ըստ Պրոկոպիոսի).—Justi 43ա ուզում է կցել հյ. ասպետ բառին, որ տես հաջորդով։

+ԱՍՊԵՏ, ար. < հյ. ասպետ «ձիավոր իշխան» բառից, որ իրանական փոխառություն է։ Իբր անձնանուն գործածվել է ԺԲ—ԺԵ դարերում։

— 1. Ասպետ Արշակունի. այսպես է կոչվում Օշին Ա. Գանձակեցին, որ տե՛ս.—Զամչ. Գ. 10, Սիսուան 49 բ, 532 բ։

— 2. Ասպետ, հայ քաղաքապետ Մամեստիայի. շատ քաջ և կռվող մարդ էր. ապա շվայտությամբ թուլացավ. Տանկրի 10,000 հայ և ֆրանկ զորքով արշավեց նրա վրա, հաղթեց և քաղաքը գրավեց, 1106 թ.—Սիսուան 248 ա։

— 3. Ասպետ, որ և Սարգիս, որդի Մարեմեկի և Վասիլի, եղբայր Գրիգոր Տղայի. քահանա էր. երիտասարդ հասակում վախճանվեց՝ նախ քան 1174 թիվը.—Թորոս Աղբար, Ա. 118։

— 4. Ասպետ, ոմն ստացիչ՝ նախ քան 1420 թ.—Տաշեան, Ցուց. 665 բ, 666 ա։

— 5 Ասպետ, պարոն, որի որդին Վահրամ և դուստրը Թիֆանէ գնեցին մի Աւետարան և նվիրեցին Կիպրոսի եկեղեցուն՝ 1468 թ.—Ձեռ. Մխիթ. 8 բ։

— 6. Ասպետ, այլ ոմն, հիշված ԺԵ դարում.—Ցուց. Գէորգեան, № 671։

ԱՍՓՈՒՐԱԿԷՍ, ար. ծագումն անհայտ։ Justi 43 ա և 47 ա կցում է 'Ασφώρουγος, ''Ασπουργος անուններին և բոլորը հանում է հպրս. asabāri, պհլ. asōbār, պրս. suwār «հեծյալ, ձիավոր» բառի ստր. aspūrakā ձևից։ (Այս դեպքում ասորի բառը հետո ստացել է հունական -ես վերջավորությունը)։

— 1. Ասպուրակես, կաթողիկոս հայոց, հաջորդ Շահակ Կորճայ կաթողիկոսի կամ Զաւէնի. ժամանակակից Խոսրով Գ-ի. Աղբիանոսի ցեղից էր. նստավ «381—386 թ».—Խոր. Գ. խա, խթ. Յհ. կթ. ժգ, ժգ. Մխ. անեց. դ. Ասող. Բ. ա. Կիր. 14. Վրդ. իդ. Արծր. Ա. ժա. Պատմ. սահ. 5. Սամ. անեց. 67. Եզն. եր. 267—8. Մխ. այրիվ. 20. Միխ. ստ. իթ. Օրբ. հա. Բհնպ. 270. Պատմ. ներս. 28. Յհ. կթ. հյր. 273.—Նույնը Ասպուրակ ձևով՝ Բուզ. Զ. դ, ժե. Եզն. եր. 267.—Ասպուրակիս՝ Վրաց աղբ. Ա. 77.—սեռ. Ասպուրակայ՝ Բուզ. Զ. դ, ժե. Արծր. Ա. ժա.—Վասպուրակիսի՝ Կիր. 14։—Զամչ. Ա. 473, 484, Ազգապ. 245—256։

— 2. Ասպուրակես, երեց, անդամ Շահապիվանի ժողովի («444 թ»).—Այրարատ 519, Հայապ. 159։

ԱՍՊՐԱԿՈՍ, ար. ծագումն անհայտ։

— Ասպրակոս, ազգապետ Աղուանից, ժամանակակից Վա-

*չագան Գ արքայի (Զ դար).—Կղկնտ. Ա. իզ (հրատ. Շահն. ունի* Սպարակոս*).—նույնը Կանոն. 197* Ասպրակես։

**ԱՍՍԱՆԴԱՐ**, *իգ. ծագումն անհայտ. մի անգամ հիշված է 1603 թ.* (Матер. Арх. Кавк. III *99—100). վերծանողը կարդում է* Асвандарь.

**†ԱՍՏՂԻԿ** *<հյ.* աստղ *բառից։ Այս անունով է կոչված Նոյ նահապետի դուստրը(հիշում է Խոր. Ա. գ. ինչպես նաև Մխ. առ. ա, դ. Յայսմ. մայ. 17.—Ջամչ. Ա. 151), նույն և օտարազգի աստվածուհիներ (Կոչ. 50, Փիլ. ժ բան. 237, Մագ. թղ. ժե)։ Թարգմանաբար՝ հրեա Բարքոպա ապստամբի անունն էլ գրված է* Աստղ *(Մխ. առ. է)։ Իբրև սովորական իգական անուն հնում գործածական չի եղել, այլ հատուկ էր միայն աստվածուհուն։ Առաջին անգամ ԺԵ դարում երևում է իբրև սովորական անուն, իսկ այժմ շատ տարածված է. փաղաքշական ձևերն են* Ասղիկ, Աստղ, Աստօ։

— *1.* **Աստղիկ** *աստվածուհի հայոց. համապատասխանում է հունաց Ափրոդիտէին և ասորական* Kaukabhthā *աստվածուհուն, որ բառացի նշանակում է «աստղ-իկ»։ Ըստ հայ դիցաբանության Աստղիկը նշանածն էր Վահագնի.—«Մեհեանն անուանեալ Աստղկան դից, սենեակ Վահագնի կարդացեալ, որ է ըստ յունականին Ափրոդիտէս» Ագաթ. 809.—*Աստղիկ՝ *Վրթ. քերթ. պտկ. 304. Վրդ. լս. 56.—*Աստղկեան պատկեր՝ *Արծր. Ա. ը.—սեռ.* Աստղկայ՝ *Խոր. պատմ. հռիփ. 301՝ Արծր. Ա. ը.—Սարգիսեան, Ագաթ. և իւր բազմ. 147։*

— *2.* **Աստղիկ**, *կին Մեհեանի և մայր Սարգիս քահանայի, որ Հաւուց Թառում թուղթ էր կոկում Դաւիթ գրչի համար, երբ սա գրում էր Մաշտոցը, 1423 թ.—Թորոս Աղբար, Ա. 234, Բ. 339, Այրարատ 357, Նոտարք 73։*

**†ԱՍՏՆՈՒՈՐ**, *ար. գավառական* աստծվոր *կամ* աստվոր *բառից, որ նշանակում է «աշխարհ, այս աշխարհը»։ Իբրև անձնանուն գործածված է ԺԶ—ԺԸ դարերում. այսպես՝* Աստըծվոր *ձևով՝ 1512 թ. (Ձեռ. Վենետ. Ա. 646 երկիցս), սրանից քիչ հետո՝* Աստըծոր *ձևով այլ ոմն (անդ),* Աստիուր *ձևով՝ 1769 (անդ, էջ 688)։*

**†ԱՍՏՈՒԱԾԱՊՈՎ**, *ար. <հյ.* Աստուած+*գավառական* պով *«հուսով, հուսացած, մեկի վրա ապավինած» բառերից. վերջինը գրաբարի* ապաւով *բառն է, որ միջին հյ. ունինք* յապով *ձևով. հմմտ. Քուչ. 93. «Շինել է փայտեայ տապան, այն տախտակն յապով կու կենայ»։ Հնչվում է նաև* պով. *ամբողջը նշանակում*

է «յԱստուած ապաւինեալ, Աստուծոյ յուսով»։ Իբրև արական անուն գործածված է առաջին անգամ ԺԵ դարում (տես տակը). ավելի առատ է ԺԷ դարից սկսած. այսպես՝ Աստուածապով՝ ԺԷ դար (Ջքր. ագուլ. 62, 100), Ածպաւ (հմմ. Աստուածապաւ)՝ 1653 թ. (Կարապետ եպս.՝ Դոփեանք 144), Աստուածապով՝ 1670 թ. (Ձեռ. Վասպ. 936), 1671 թ. (Ձեռ. Թեհր.=ՀԱ 1935, 309)։ Սրանից են կրճատված՝ Ածապով՝ 1783 թվից (Տաշեան, Ցուց. 247 բ), Աստապով՝ 1595 թ. (Ձեռ. Վենետ. Ա. 695) և 1671 թվից (Ձեռ. Թեհր.=ՀԱ 1935, 309), նաև Աստապու՝ 1860 թ. (Ազգապ. 4024, 4051) և ի վերջոյ միայն Ապով կամ Աբով (որից և Աբովյան ազգանունը). տես առանձին։ Կրճատման համար հմմտ. Աստուածատուր > Ածատուր, Աստատուր, Աստուր, Ծատուր, Ասօ։ Նման կազմությամբ ունինք նաև ֆրանս. Espérandieu «յուսացեալ յԱստուած» անձնանունը։

— Աստուածապով, ամուսին Անթառամի՝ դստեր Մելքիսեթեկի, որ Աւան գյուղում օրինակեց Գանձարանը, 1453 թ.— Bodleian 134։

†ԱՍՏՈՒԱԾԱՍԷՐ, ար. < հյ. Աստուած+սէր բառերից. նշանակում է «Աստուծուն սիրող». սրա համապատասխան ձևերն են հուն. Θεόφιλος և գերմ. Gottlieb. հիշված է մի անգամ ԺԶ դարից։

— Աստուածասէր. գնել է մի արտ Հաւուկ անուն անձից (ԺԶ դար).—Ձեռ. Մանաս. 1 բ։

†ԱՍՏՈՒԱԾԱՏՈՒՐ, ար. < հյ. Աստուած+տուր բառերից, իբրև «Աստուծու տված». հմմտ. Խաչատուր, Տիրատուր, Գրիգորատուր, Վիրապատուր, Քրիստոսատուր։ Համապատասխան ձևերը գործածված են եղել ուրիշ ազգերի մեջ էլ՝ սկսած շատ հին ժամանակներից, ինչպես՝ ասորեստանյան Իլի-Վահարա (Աստված է տվել), եբրայական Նաթանայել, պարթևական Bagadāta (որից առաջացել է հյ. Բագարատ), միջին պարսկերեն Յազդատ (այս անունով ծանոթ է Ափշինի որդին՝ Ցհ. կթ. լէ), նոր պարսկ. خداداد Xudādād կամ یزدانداد Yazdāndād, թրք. تكرىوردى Tanriverdi, خداويردى Xudāverdi կամ اللهويردى Allahverdi (հմմտ. «Ալլահվերդի, այսինքն Աստուածատուր». Կարապետ եպս.՝ Դոփեանք, էջ 169), հուն. Θεόδορος (որից ծագել է հյ. Թէոդորոս և կրճատմամբ՝ Թորոս), լատ. Deodatus, ֆրանս. Daudet կամ Dieudonné, գերմ. Gottgieb, ռուս. Богдан են։ Աստուածատուր անունը մեր մեջ ձևափոխվելով ու կրճատվելով ստացել է զանազան ձևեր. այսպես՝

Ածատուր, Ասվատուր, Ասպատուր, Ասատուր, Աստուր, Աստիկ, Ասօ, Ծատուր; Ծատի, նաև Տատուր, և վերջապես Տատ (ըստ Թէոդիկի)։ Այս ձևերը ավանդված են ԺԴ դարից սկսած. այսպես՝ հնության կարգով, Աստուր 1330 թ. (Ձեռ. Վեննա. Ա. 770), 1634 թ. (Ձեռ. Վասպ. 884—6), Աստուր կամ Տատուր 1335 թ. (Ձեռ. Վեննա. Բ. 348), Ծատուր 1343 թ. (Ձեռ. Վեննա. Բ. 179—6), 1491 թ. (Bodleian 29), 1648 թ. (Ձեռ. Վեննա. Ա. 41) և ԺԷ դարից (Զքր. սարկ. Ա. 85), Աստւատուր 1575 թ. (Ձեռ. Վասպ. 683), Աստուատուր 1629 թ. (անդ 875), Ասպատուր 1648 թ. (անդ 909), 1710 թ. (անդ 1032), Ասատուր 1611 թ. (Ձեռ. Թաւր. 36 բ), 1711 թ. (Միւրմէեան, Պատմ. Հալէպի ազգ. գերեզմ. 34 ա), Տատուր 1657 թ. (Տաշեան, Ցուց. 355բ), Ասպօ 1810 թ. (Ձեռ. Վասպ. 291) և Ասպա, սեռ. Ասպայոյ՝ անթվական (անդ 150), Աստատուր (Երեմ. Չել. Օրագր. 585, Ձեռ. Վեննա. Ա. 492)։ Սրանցից էլ կազմված են Աստուածատրեան, Ծատուրեան, Տատուրեան, Ասատուրեան, Ասոյեան, Տատեան ազգանունները։

— 1. Աստուածատուր պարսիկ նահատակ տես Յիզտբուզիտ։

— 2. Աստուածատուր եպս. Բժնունեաց, որին գրեց Ներսէս Բ կաթողիկոսը («548—557 թ»), հրավիրելով Դուինի ժողովին.—սեռ. Աստուածատրոյ՝ Գիրք թղ. ժդ։

— 3. Աստուածատուր տէր Վանանդայ, անդամ Դուինի «554 թվի» ժողովի, որի որոշումներին ստորագրում է.—Գիրք թղ. ժէ. Այրարատ 75։

— 4. Աստուածատուր Հաւենունի, անդամ Դուինի «554 թվի» ժողովի, որի որոշումներին էլ ստորագրում է.—Գիրք թղ, ժէ. Այրարատ 27ա։

— 5. Աստուածատուր Արշարունեան, անդամ Դուինի «554 թվի» ժողովի, որի որոշումներին էլ ստորագրում է.—Գիրք թղ. ժէ.—ըստ Կոգեան, Կմարկնները 122 հավանաբար Կամսարական ցեղից է և թոռն է Արշաւիր Կամսարականի։

— 6. Աստուածատուր, եկեղեցպան Թաթևոյ վանից. սրանից Յովհան քաղեց կարևոր տեղեկությունները և գրեց «Պատմութիւն Թաթևոյ» (է դար).—Հայապ. 66 և 192։

— 7. Աստուածատուր եպս. Թէոդոսուպոլսի, ժամանակից Հռոմկլայի ժողովին «1179 թ» և ստորագրում է Գրիգոր Տղայի թղթին.—Շնորհ. պտմ. 199, Չամչ. Գ. 132, Տաշեան, Ցուց. 350ա։

— 8. Աստուածատուր աբեղայ, գրիչ. Կեչառուքում օրինա-

կել է Մեկնութիւն Ղուկայ և Յովհաննու, 1184 թ.—Այրարատ 366, Հայաստ. 399։

— 9. Աստուածատուր որդի Շէկի. կալվածներ նվիրեց Հառիճի վանքին, 1196 թ.—Շիրակ 159 ա։

— 10. Աստուածատուր եպս. Մեծքարի. ներկա եղավ Լևոն Բ-ի թագադրության հանդեսին «1199 թ».—Սմբ. պատ. 111։

—11. Աստուածատուր, հայր Ս. Գրիգոր վանից Դարանաղեաց գաւառի, 1201 թ.—Ձեռ. Սեբ. (ՀԱ 1924, 247)։

—12. Աստուածատուր քահանայ, որդի Սարգսի և եղբայր Ղազար վարդապետի, որ Դարանաղեաց Ս. Գրիգոր վանքում օրինակեց Աւետարանը, 1201 թ.—Ձեռ. Սեբ. (ՀԱ 1924, 246—7)։

— 13. Աստուածատուր, որդի Վասուսի, պատրոն և ռայիս (ավագապետ) հայոց Բաբերդի. գրել տվեց Կարնեցի Վարդան քահանային մի մեծ Տօնական՝ 1204 թ։ Սպանվեց Ալադին ամիրայի ձեռքով և ամբողջ ունեցվածքը կողոպտվեց. Տօնականն էլ գերի ընկավ նույն բռնակալ (տաճիկ ամիրայի) ձեռքը, որ տարավ Խլաթ և վաճառեց 4000 դրամով.—մանրամասն պատմությունը տես Ձեռ. Վեննա. Բ. 469—473, Հայաստ. 448—451։

— 14. Աստուածատուր, նախորդի բարեկամներից մեկը, որ հիշատակված է Ձեռ. Վեննա. Բ. 470։

— 15. Աստուածատուր, Ղազարու վանքի առաջնորդներից մեկը, որ դրամով օգնեց գնելու նույն Տօնականը՝ 1206 թ.—Ձեռ. Վեննա. Բ. 469։

— 16. Աստուածատուր Խլաթցի, նվիրատու նույն ձեռագրի, 1204 թ.—Հայաստ. 450։

— 17. Աստուածատուր հիւսն, իր որդու՝ Հաղրպետ քահանայի համար գրել տվեց մի Աւետարան, Նիկոպոլսում, 1223 թ.—Ձեռ. Վեննա. 422—3։

— 18. Աստուածատուր, եղբայր Ղազար վարդապետի, սպասավոր Ս. Լուսաւորիչ անապատի, 1224 թ.—Զարբ. Թրգմ. 729։

—19. Աստուածատուր, վանահայր Կապոսի Ս. Լուսաւորիչ անապատի, 1224 թ.—Ձեռ. Վեննա. Բ. 34։

—20. Աստուածատուր, ստացող Ցայսմաւուրքի՝ 1227 թ.—Ձեռ. Սևան. 15բ (բառախաղով գրված է «անպիտան ծառայս Աստուծոյ տուրք կոչեցեալ»)։

—21. Աստուածատուր, գրիչ. օրինակել է Մանկութեան Աւետարանը՝ Սեբաստիայում, 1239 թ.—Շահազիզ, Պատմ. պատկ. 124։

— 22. Աստուածատուր քահանա, միաբան Խորնի վանից

(Կիլիկիա). օգնում էր Բասիլ գրչին՝ պատրաստելով նյութեղենը՝ օրինակելու մեծ Ճառընտիրը՝ 1270 թ.—Ջեռ. Վենետ. Բ. 234։

— 23. **Աստուածատուր**, որդի Ներսէսի և եղբայր Բասիլ գրչի, որ Խորնի անապատում (Կիլիկիա) օրինակեց մեծ Ճառընտիրը, 1270 թ.—Ջեռ. Վենետ. Բ. 234։

— 24. **Աստուածատուր** քահանա, որդի Յուսկայ, գրիչ. Հաւարծին վանքում օրինակեց Աւետարանը՝ Գրիգոր քահանայի համար, 1284 թ.—Թորոս Աղբար, Բ. 339։

— 25. **Աստուածատուր** քահանա, քեռի Խաչատուր գրչի և օգնական նորա՝ 1288 թ. Սկևռայ վանքում.—Ջարբ. Թրգմ. 157, Հայապ. 496—7։ Սրանց համար Ստեփաննոս Գոյներիցանց օրինակել է Աստուածաշունչը, 1285 թ. նույն Սկևռայ վանքում.—Մխսուան 106 ա։

— 26. **Աստուածատուր**, միաբան Յոհաննէսի անապատի, Արմէնի լեռան Թիկունքում (Կիլիկիա), ընկերակից Գորգ մենակեցի, 1298 թ.—Մխսուան 96 ա, Տաշեան, Ցուց. 730 բ։

— 27. **Աստուածատուր**, որդի պարոն Յովանէսի, որ ստացավ Ժ դարում գրված մի Աւետարան (ԺԳ դար).—Ջեռ. Սանաս. 9 բ։

— 28. **Աստուածատուր** վրդ. Արճիշեցի, որդի Աղբերկայ. հարուստի զավակ էր. երբ ծնողները մեռան, ամբողջ հարստությունը աղքատներին բաժանեց. մահմեդականներից շատերին քրիստոնյա է դարձրել. համարվում է «հրաշագործ» և կոչված է «մեռելյարույց» (ԺԳ դար).—Կիր. և. Մխ. այրիվ. 81։—Սրա գերեզմանը Մեծոփայ վանքի հարավային կողմի մատռան է. գերեզմանը շինել է Մարտիրոս քահանան, ինչպես երևում է մատռան պատի վրայի արձանագրությունից. «...Մարտիրոս քահանայ շինող սուրբ գերեզմանիս (Մեռելյարույց Աստուածատուր վարդապետի Արճիշեցւոյ՝ որդւոյ Աղբերկայ. և էր սա ժամանակակից Լևոնի Ա թագաւորին... և Յովհաննու է կաթուղիկոսին Հայոց)։ Յիշեցէք ի Քրիստոս ի թուին ՊՁԱ (=1432)»։—Նոտարք 100, Զամչ. Գ. էջ 187—188։

— 29. **Աստուածատուր** քահանա, Լիմ անապատում, Խաչատուր գրչին գրել տվեց մի Աւետարան, 1301 թ.—Ջեռ. Վասպ. էջ 139։

— 30. **Աստուածատուր**, հայր Մարտիրոսի, որ Տփխիսում, Խաչատուր գրչին գրել տվեց մի Աւետարան, 1304 թ.—Ջեռ. Վենետ. Ա. 488։

— 31. **Աստուածատուր** կրոնավոր, «ճարտասան քարտուղար»,

տպագրում էր գրիչներին, Որնոյ գավառի Բառոնց գյուղում, 1317 թ.—Թորոս Աղբար, Բ. 419։

— 32. Աստուածատուր, պատրիարք Երուսաղէմի, հաջորդեց Սարգսին և նստավ «1313—17 թ».—Ազգապ. 1831։

—33. Աստուածատուր կրոնավոր, ուսուցիչ Աստուածատուր(!) գրչի, որ օրինակեց Ավետարանը, 1317 թ.—Manus. brit. mus. 20 բ։

—34. Աստուածատուր երէց, որդի Յոհանէսի, աշակերտ Պօղոս քահանայի. գրիչ. օրինակեց Ավետարանը՝ 1317 թ.—Manus. brit. mus. 32բ։

— 35. Աստուածատուր քահանա, գրիչ. գրել և ծաղկել է մի Ավետարան, Անտոն ճգնավորի հանձնարարությամբ, Ցուանգաց ճէն քաղաքում, 1324 թ.—Յովսէփեան, Մի էջ հայ արուեստի 37։

— 36. Աստուածատուր սարկավագ, որդի Եզգանդրախշի, մ. 1327 թ.— Ձեռ. Ագուլ. (Արրտ. 1911, 461)։

— 37. Աստուածատուր վրդ., ուսուցիչ Աստուածատուր երեցի, որ օրինակեց Ավետարանը, 1327 թ.—Ձեռ. Ագուլ. (Արրտ. 1911, 460)։

— 38. Աստուածատուր երեց, որդի Յովաննէսի. գրիչ. օրինակեց Ավետարանը՝ Հայրապետ և Կարապետ քահանաների խնդրանոք, 1327 թ.—Ձեռ. Ագուլ. (Արրտ. 1911, 460)։

—39. Աստուածատուր, առաջնորդ Բզնունեաց, 1330 թ.—Ձեռ. Թաւր. 2 բ։

—40. Աստուր, ազգական Բաւուն միայնակեացի, որ գրել տվեց մի Ավետարան, 1330 թ.—Ձեռ. Վենետ. Ա. 770։

— 41. Աստուածատուր արքեպիսկոպոս Ապահունեաց, 1331 թ.—Manus. bibl. nat. էջ 27։

— 42. Աստուածատուր քահանա, գրիչ. Փոքր Ռուս կոչված տեղում օրինակեց Ավետարանը, Յովանէսի ծախսով և հրամանով, 1331 թ.—Ձեռ. Վասպ. 176։

— 43. Աստուածատուր սարկավագ, որդի Վարդերեսի. մերձավոր Սալեր տիկնոջ, որ Երուսաղէմում, Կարապետ երեցին գրել տվեց մի Ճաշոց, 1333 թ.—REA 10, 56։

— 44. Աստուր (կամ Տատուր), մերձավոր Ներսէս քահանայի, որ Երուսաղէմում օրինակեց մի Ճառընտիր, 1335 թ.—Ձեռ. Վենետ. Բ. 348։

— 45. Աստուածատուր, որդի Շահնշահի, որ գրել տվեց

Աւետարանը Թումայ Արծիշեցուն, Գողթան գաւառի Կոպատափ անապատում, 1336 թ.—Ձեռ. Ագուլ. (Արար. 1911, 387)։

— 46. **Աստուածատուր**, որդի Յովհաննէս քահանայի և եղբայր Բարսեղ գրչի, որ Բասենի Մժնկերտ գյուղում օրինակեց Աւետարանը, 1336 թ.—Ձեռ. Վասպ. 191։

— 47. **Աստուածատուր** քահանա. իր ծախսով նկարազարդել տվեց մի Շարական՝ Յովհաննէս ծաղկողին, 1341 թ.—Manus. bibl. nat. էջ 32։

— 48. **Աստուածատուր**, ավագերեց Տարսոնի, անդամ Սսի կրոնական ժողովի՝ «1343 թ».—Ազգապ. 1870։

— 49. **Աստուածատուր** կրոնավոր, Սուրխաթ քաղաքում (Ղրիմ), Սիմէոն երեցին գրել տվեց մի Աւետարան, 1343 թ.—Ձեռ. Վիեննա. Ա. 755։

— 50. **Աստուածատուր** (կամ **Ծատուր**) կրոնավոր, Երզնկայում Գրիգորիս գրչին գրել տվեց մի նշանավոր Ճառընտիր, որ կազմեց քաղելով զանազան ձեռագրերից. գլխավոր օրինակը տվել է Արեշատ միայնակեացը։ Օրինակությունը ավարտել է 1343 թ.—Ձեռ. Վիեննա. Բ. 173—6։

— 51. **Աստուածատուր**, որդի Իշխանի, եղբայր Բաբերդցի Մկրտիչ քահանայի, որ Կաֆայում գրել տվեց մի Աւետարան, 1344 թ.—Ձեռ. Սեբ. (ՀԱ 1926, 237)։

— 52. **Աստուածատուր**, «ծառայ սուրբ Աւքսենդիին», հիշատակագիր Սուրխաթ գրված մի Աւետարանում, 1347 թ.—Ձեռ. Վիեննա. Ա. 756։

— 53. **Աստուածատուր**, հայր Յակոբ կրոնավորի, որ Հռոմում ստացավ մի Աւետարան, 1351 թ.—Ձեռ. Վիեննա, Ա. 409։

— 54. **Աստուածատուր**, որդի Կարապետի և եղբայր Քրիստոսատուր կրոնավորի, որ Սուրխաթ քաղաքում (Ղրիմ), Ստեփաննոս քահանային գրել տվեց մի Աստուածաշունչ, 1352 թ.—Ձեռ. Վասպ. 7։

— 55. **Աստուածատուր**, մանկահասակ վաղամեռիկ որդի պարոն Ստեփաննոսի, որ օգնեց գնելու նույն Աստուածաշնչի թուղթը.—Ձեռ. Վասպ. 13։

— 56. **Աստուածատուր**, հայր Կարապետ քահանայի, որ գրել տվեց մի Ժողովածու և նվիրեց Մինաս կրոնավորին, 1355 թ.—Ձեռ. Վիեննա. Բ. 1118։

— 57. **Աստուածատուր**, հոգևոր եղբայր Յոհան վարդապետի,

որ Սուրխաթում, Ստեփաննոս գրչին գրել տվեց Եսայի և Թուղթք Պօղոսի, 1356 թ.—Ձեռ. Բեռլինի, 4 ա։

— 58. Աստուածատուր, հիշված է իբր կրոնավոր Ս. Գևորգ եկեղեցու (Գրաեղի), 1357 թ.—Ձեռ. Վատ. 213։

— 59. Աստուածատուր աբեղա, գրիչ. Գոլսի Ս. Սարգիս եկեղեցում օրինակել է Բերականութիւն և Լուծումն Եսայեայ վարդապետի, 1360 թ. (նախ քան Տաճիկների գրավելը).—Տաշեան, Ցուց. 782։

— 60. Աստուածատուր երեց, անհայտ հիշատակագրի ոճ, մի Ոսկեփորիկում, 1364 թ.—Ձեռ. Վեննա. Բ. 872։

— 61. Աստուածատուր «տիսալար», հիշված է Մոկաց Ծղատ վանքում գրված մի Մայր Մաշտոցում, 1369 թ.—Թորոս Աղբար, Բ. 427։

— 62. Աստուածատուր երեց, որդի Ենոք քահանայի, Սուրբ-Կարապետցի Ալինախ եպիսկոպոսից, Եկեղեաց գավառի Թլակ ավանում գնեց նրա գրած Աւետարանը՝ 1370 թ. (տես վերը, էջ 81, № 3).—Ձեռ. Վեննա. Ա. 780։

— 63. Աստուածատուր եպիսկոպոս Երզնկացի, հիշված 1375 թ.—Հայապ. 542։

— 64. Աստուածատուր քահանա. Կաֆայում գրել տվեց Մարկոս գրչին՝ մի Գանձարան՝ 1381 թ.—Manus. bibl. nat. էջ 37։

— 65. Աստուածատուր (գրված Bogdan), դատավոր Հայոց Լեհաստանի, 1386 թ.—REA 7, 71։

— 66. Աստուածատուր, որդի Խնկիկի և եղբայր Թադէոս կրոնավորի, որ ստացավ մի Աւետարան՝ գրված Կարապետ քահանայի ձեռքով, Աղթամար, 1392 թ. և մի Աւետարան էլ՝ գրված Զաքարիա կրոնավորի ձեռքով, Աղթամար, 1393 թ.—Ձեռ. Վատ. 226, 228։

— 67. Աստուածատուր, որի խնդրանոք Առաքել վարդապետը գրել է «Տաղ Ոտնալուայի», որ տպված է Ճշ. 211 և որի սկզբնատառերը հողում են «Աստուածատուրին խնդրեաց»։

— 68. Աստուածատուր քահանա, Ոշաունեաց գավառի Շատվան գյուղում, տանուտէր Յովհաննէսի համար օրինակեց Ճաշոցը, 1401 թ.—Նոտարք 13։

— 69. Աստուածատուր եպիսկոպոս Տարօնի, Թուղթ գնեց Յովհաննէս վարդապետի համար՝ գրելու Դաշանց Թուղթը, 1402 թ.—Նոտարք 18։

— 70. Աստուածատուր, վաղամեռիկ որդի Թադէոս քահա-

նայի, որ Մոկաց Կազքթանց գյուղում, Յովհաննէս քահանայն գրել տվեց մի Աւետարան, 1409 թ.—Ձեռ. Վասպ. 293։ Նույնը հիշված է նաև Ձեռ. Հալէպի, Ա. 269—272։

— 71. **ԱՍՏՈՒԱԾԱՏՈՒՐ**, որդի Մարտիրոս քահանայի, որ 1316 թվին Հազարակ գյուղում գրված մի Աւետարան գնեց 1410 թ.—Ձեռ. Վասպ. 164։

— 72. **ԱՍՏՈՒԱԾԱՏՈՒՐ** կրոնավոր, Նարեկայ վանքում օրինակեց Գր. Տաթևացու Քարոզգիրքը՝ 1417 թ.—Նոտարք 53։

— 73. **ԱՍՏՈՒԱԾԱՏՈՒՐ**, երեց Շատախի Ս. Կարապետ եկեղեցու, 1420 թ.—Տաշեան, Ցուց. 666 բ։

— 74. **ԱՍՏՈՒԱԾԱՏՈՒՐ** միայնակեաց, միաբան Բերկրիի Տէր Յուսկան որդի վանքի, 1420 թ.—Նոտարք 61։

— 75. **ԱՍՏՈՒԱԾԱՏՈՒՐ** որդի Յովհաննէսի և եղբայր Վարդան կրոնավորի, որ Աղթամարում, Թումա աբեղայի գրել տվեց մի Աւետարան՝ 1420 թ.—Ձեռ. Վասպ. 322։

— 76. **ԱՍՏՈՒԱԾԱՏՈՒՐ**, հայր Թումա կրոնավորի՝ հոգևոր որդու նախորդ Վարդան կրոնավորի, 1420 թ.—Ձեռ. Վասպ. 324։

— 77. **ԱՍՏՈՒԱԾԱՏՈՒՐ** վարդապետ, միաբան Ոստանի Գառբկի վանքի, 1420 թ. և ապա 1428 թ.—Ձեռ. Վասպ. 324, Նոտարք 88։

— 78. **ԱՍՏՈՒԱԾԱՏՈՒՐ**, երկու այլ միաբաններ նույն Գառբկի վանուց Ոստանի, 1420 և 1428 թ.—Ձեռ. Վասպ. 324, Նոտարք 88 (վերջինում միայն մեկը հիշված)։

— 79. **ԱՍՏՈՒԱԾԱՏՈՒՐ**, եղբայր Յակոբ աբեղայի Հերմոնի վանից, 1421 թ.—Ձեռ. Պետերբ. (ՀԱ 1892, 82 բ)։

— 80. **ԱՍՏՈՒԱԾԱՏՈՒՐ** գալիր. գրիչ. Պառուագրակի վանքում օրինակեց մի Տաղարան, Յակոբ աբեղայի համար, 1421 թ.—Ձեռ. Սեբ. (ՀԱ 1927, 313)։

— 81. **ԱՍՏՈՒԱԾԱՏՈՒՐ** աբեղա, եղբորորդի նույն Յակոբ աբեղայի Պառուագրակի վանից, 1421 թ.—Ձեռ. Սեբ. (ՀԱ 1927, էջ 313)։

— 82. **ԱՍՏՈՒԱԾԱՏՈՒՐ**, որդի Բանդրգեսի. իր եղբայր Յովհաննէսի հետ միասին ազատեցին Արծկէի Տկուց վանքի Աւետարանը, որ գերի էր ընկել, և նորից նվիրեցին նույն վանքին, 1422 թ.—Նոտարք 68։

— 83. **ԱՍՏՈՒԱԾԱՏՈՒՐ** կրոնավոր, հիշված Բերկրիի Եղավանքում, 1422 թ.—Ձեռ. Վասպ. 348, Նոտարք 70։

— 84. **ԱՍՏՈՒԱԾԱՏՈՒՐ**, ամուսին Մարթայի՝ հոգևոր մոր

Յովհաննէս կրոնաւորի, որ Բերկրիում գրել տվեց մի Աւետարան, 1432 թ.—Ձեռ. Վասպ. 348։

— 85. **Աստուածատուր** *(սեռ. Աստուածատրու)* կրոնավոր, ստացավ մի Աւետարան և նվիրեց Ուլկադոմի Ս. Շմաւոն վանքին, 1423 թ.—Նոտարք 73, 74։

— 86. **Աստուածատուր** քահանա, ունէր մի հին Շարական, որ տվեց Սողոմոն քահանային՝ արտագրելու համար, 1423 թ.—Ձեռ. Հալէպի, Բ. 50 բ։

— 87. **Աստուածատուր**, որդի Ղազարոսի, որ գնել է մի հին Աւետարան, 1424 թ.—Ձեռ. Վեննա. Ա. 645։

— 88. **Աստուածատուր**, որդի Խաթունի, որ Աղթամարում, Թումա աբեղային գրել տվեց մի Աւետարան, 1425 թ.—Ձեռ. Վասպ. էջ 352։

— 89. **Աստուածատուր** խոջա, որդի խոջա մահդասի Ամիրմուլքի. ազատեց Նարեկը Թուրքմանի գերութիւնից և նվիրեց Վարագայ վանքին, 1425 թ.—Ձեռ. Դաղեան, Ա. 55ա։

— 90. **Աստուածատուր** քահանա. 24 ֆլորինով վաճառեց մի Աւետարան մահտեսի Սահակին, որ նվիրեց այն՝ Ղազալա գյուղի (Ամասիա) Ս. Սարգիս եկեղեցուն, 1427 թ.—Թորոս Աղբար, Ա. 65, Նոտարք 82։

— 91. **Աստուածատուր**, միաբան Ջորեհանգիստ Ս. Լուսաւորիչ վանքի, 1429 թ.—Նոտարք 92։

— 92. **Աստուածատուր**, որդի Թումայի և եղբայր Ստեփանոս կրոնավորի, որ Խոսրովի վանքում, Վարդան դպրին գրել տվեց մի Աւետարան՝ 1430 թ.—Ձեռ. Վասպ. 358։

— 93. **Աստուածատուր**, որդի Յովսէփի և եղբայր Մամասիկին ապաշխարողի, որ էր միաբան Խոսրովի վանքում, 1430 թ. —Ձեռ. Վասպ. 359։

— 94. **Աստուածատուր**, մորեղբայր Մեծխաթուն տիկնոջ, որ Երզնկայում, Ղազար աբեղային գրել տվեց մի Աւետարան, 1431 թ.—Ձեռ. Վեննա. Ա. 663։

— 95. **Աստուածատուր** աբեղա, իր մեծ հարս Մեծխաթունին (տես № 94) հորդորեց գրել տալու և ավարտելու նույն Աւետարանը՝ 1431 թ.—Ձեռ. Վեննա. Ա. 663։

— 96. **Աստուածատուր** երեց, որդի Ղազարի և եղբայր Սարգիս կրոնավորի, որ Տփղիսում օրինակեց Գանձարանը, 1435 թ. —Տաշեան, Ցուց. 760 բ։

— 97. **Աստուածատուր**, որդի Հայրապետի և եղբայր Ոստա-

կէս երեցի, որ գնեց մի Աւետարան, 1435 թ.—Ձեռ. Թաւր. 13ա։

— 98. Աստուածատուր, սպասաւոր բանի, հոգևոր հայր և ուսուցիչ Կարապետ գրչի, որ Սաղմոսավանքում օրինակեց մի Մաշտոց, 1436 թ.—Արարատ 163 ա։

— 99. Աստուածատուր, հիշվում է իբրև վկա այն մասին, թե մի ջաղացք է գնվել Ամրդոլայ վանքի համար, 1437 թ.—Նոտարք 112։

— 100. Աստուածատուր, հիշվում է իբրև վկա այն մասին, թե Ուլուխաթուն երեցակինը մի Աւետարան է գնել 500 սպիտակով, Կաֆա 1437 թ.—Ձեռ. Սեբ. (ՀԱ 1926, 238)։

— 101. Աստուածատուր, այրի և չքավոր երեց, Կոտեւոյ երկրի Արծնոյ գյուղից. Շահռուխի արշավանքների պատճառով փախավ Թաւրիզից և ապավինեց Վրաց երկիրը, ուր Հաղբատի վանքում, Յոհաննէս քահանային օրինակել տվեց մի Ճաշոց, 1438 թ.—Նոտարք 115։

— 102. Աստուածատուր, կուսակրոն աբեղա, քեռի Ներսէս քահանայի, որ Դաւիթ գրչին գրել տվեց մի Ճաշոց, Սեբաստիա 1438 թ.—Ձեռ. Սեբ.=ՀԱ 1926, 243—4։

— 103. Աստուածատուր, որդի նույն Ներսէս քահանայի (տես № 102). իր եղբայր Դաւթի հետ արդեն մեռած էր 1438 թ.—անդ։

— 104. Աստուածատուր, որդի Բուրդամիրի, որ էր նույն Ներսէս քահանայի փեսան.—անդ։

— 105. Աստուածատուր, հայր պարոն Գակթամուրի, որ Կամախի Ծնանառճոյ վանքում գրել տվեց մի Ճաշոց, 1439 թ.—Նոտարք 120։

— 106. Աստուածատուր վրդ. Սաղմոսավանից, ուսուցիչ Կարապետ գրչի. հիշված է 1436 թ. (Արարատ 163). հակառակորդ էր Կիրակոս կաթուղիկոս Վիրապեցուն («1441 թ»).—Մեծոփ. յիշ. գ։

— 107. Աստուածատուր կրոնաւոր, հոգևոր եղբայր Սարգիս գրչի, որ Երզնկայի մի վանքում օրինակեց Գր. Տաթևացու «Քաղուածոյ մեկնութիւն Մատթէոսի Աւետարանին», 1443 թ.—Ձեռ. Հալէպի, Բ. 53 բ, 54 ա։

— 108. Աստուածատուր քահանա, որդի Կարապետ քահանայի. գրիչ. Խլաթ քաղաքում օրինակեց Աւետարանը՝ տանուտեր Յովհաննէսի համար, 1443 թ.—Ձեռ. Նոր-Բայազ. 19 ա։

— 109. Աստուածատուր վարդապետ, միաբան Ոստանի Գոլկի վանից. արդէն մեռած էր 1444 թ.—Ձեռ. Նոր-Բայազ. 40 բ։

—110. Աստուածատուր կրօնաւոր. կարգւեց առաջնորդ Ոստանի Գոլկի վանից, 1444 թ.—Ձեռ. Նոր-Բայազ. 40 բ։

— 111. Աստուածատուր քահանայ, հոգևոր եղբայր Սարգիս աբեղայի, որ երկրորդ անգամ ստացաւ մի հին Աւետարան և նորոգել տւեց 1444 թ.—Ձեռ. Վասպ. 112։

—112. Աստուածատուր, գրիչ. Խլաթում գրեց մի Յայսմաւուրք՝ ստացող Հազարբէկի համար, 1445 թ.—Թորոս Աղբար, Բ. 306, Նօտարք 135։

— 113. Աստուածատուր, միաբան Երզնկայի Սեպհոյ վանից. իր միաբանակից Աւետիք աբեղայի հետ միասին աշակերտել էին Յովհաննէս վարդապետին (1444 թ). մասնակցեցին մի Յայսմաւուրքի գրութեան, Երզնկայում, 1446 թ.—Նօտարք 135, 149։

— 114. Աստուածատուր Վանեցի, Խաչատուր գրչին գրել է տւել մի Աւետարան, 1448 թ. և ինքն էլ նահատակւել շուրջ նոյն թւին.—Նօտարք 158, Աղգապ. 2172։

— 115. Աստուածատուր երեց Արծնեցի (Կոտայք), որդի Գարաքմազի. Շահռուխի արշաւանքի ժամանակ փախաւ Հաղբատ, ուր ստացաւ մի Ճաշոց (ԺԵ դարի առաջին կէսին).—Այրարատ 288։

— 116. Աստուածատուր, հայր Մելքան խաթունի՝ կնոջ Ամիրզօլի, որ Խլաթում, Յովհաննէս քահանային գրել տւեց մի Ճաշոց, 1450 թ.—Նօտարք 164։

—117. Աստուածատուր քահանայ, որդի Կարապետ քահանայի և եղբայր Յովհաննէս գրչի, որ Խլաթում, Ամիրզօլի համար գրեց մի Ճաշոց, 1450 թ.—Նօտարք 164։

— 118. Աստուածատուր քահանայ Խլաթի Ս. Յովհաննէս եկեղեցու. հիշւած է իբրև վկայ՝ 1450 թ.—Նօտարք 164։

— 119. Աստուածատուր Ջերմաձորեցի, որդի Ստեփաննոսի, «սրախողխող եղև յանօրինաց», շուրջ 1451 թ.—Նօտարք 168։

— 120. Աստուածատուր սարկաւագ, որդի Յովհաննէս քահանայի, Պղնձայգոյ Աւագ անապատում, հիշւած է 1451 թ.—Ձեռ. Վասպ. 408։

— 121. Աստուածատուր Անկիւրացի, ազնուական, որդի Սաթլմիշի. Պոլսի առման ժամանակ, Տաճկաց հրաւէրով գաղթեց Պոլիս (1453 թ).—Նշխ. մատ. 62։

— 122. Աստուածատուր, հօրեղբայր Կարապետ վանահօր,

որ Պառուագրակի վանքում օրինակեց Աւետարանը, 1454 թ.— Rapport Belgique 97։

— 123. Աստուածատուր, հայր Ղազար վարդապետի, որ Բաղէշում հասցրել է աշակերտներ. սրանցից մեկն է Պօղոս աբեղան, որ օրինակեց Աւետարանը՝ Բաղէշի Ամրդօլու վանքում, 1455 թ.—Նոտարք 178։

— 124. Աստուածատուր ոմն, հիշված Մոկաց Փառավանք գյուղում, 1455 թ.—Ձեռ. Վասպ. 421։

— 125. Աստուածատուր աբեղա, Տրապիզոնի Վերին Աստուածածին մենաստանում, 1455 թ.—Ձեռ. Վեննա. Ա. 190։

— 126. Աստուածատուր սարկավագ, աշակերտ Գրիգոր եպիսկոպոսի. գրիչ. օրինակեց մի Մաշտոց, Կամախում, 1457 թ. —Նոտարք 187։

— 127. Աստուածատուր, հայր մահտեսի Ստեփաննոս Ղարիպշահի, որ Լիմ կղզում գրել տվեց մի Յայսմաւուրք, 1452—57 թվերին։—Ձեռ. Թաւր. 102—5։

— 128. Աստուածատուր, եղբօրորդի նույն Ստեփաննոս Ղարիպշահի (№ 127).—Ձեռ. Թաւր. 103 բ։

— 129. Աստուածատուր դպիր, Երզնկայում թուղթ էր կոկում Սարգիս գրչի համար, երբ սա օրինակում էր Սարգիս Շնորհալու Մեկնութիւն կաթուղիկեայց, իբր 1458 թ.—Տաշեան, Ցուց. 753 ա։

— 130. Աստուածատուր քահանա, հօրեղբայր Թովմա գրչի, որ օրինակեց Նարեկը՝ Խնդրակատար վանքում, 1458 թ.— Նոտարք 189։

— 131. Աստուածատուր մահտեսի, ստացող. Ստեփաննոս գրչին գրել տվեց մի Աւետարան, Եղատոռում, 1459 թ.—Ձեռ. Վասպ. 432։

— 132. Աստուածատուր, հայր տանուտեր Կիւրեղի, որ Ախքերմանում Նիկողայոս եպիսկոպոսին օրինակել տվեց մի Ճաշոց՝ 1460 թ. հաջորդի պապն է.—REA 10, 64։

— 133. Աստուածատուր, որդի տանուտեր Կիւրեղի, որ Ախքերմանում Նիկողայոս եպիսկոպոսին օրինակել տվեց մի Ճաշոց՝ 1460 թ. նախորդի թոռն է.—REA 10, 64։

— 134. Աստուածատուր, որդի տանուտեր Յովհաննէսի, որ ստացավ մի հին Աւետարան, 1461 թ.—Ձեռ. Վասպ. 226։

—135. Աստուածատուր, որդի Գողալբէկի և եղբայր Գուրեցի Գրիգոր երեցի, որ ստացավ մի հին Աւետարան, 1462 թ.—Ձեռ. Վասպ. 172։

— 136. Աստուածատուր, որդի Կոստանդի, որ Եւդոկիայում գրել տվեց մի Աւետարան, 1463 թ.—Ձեռ. Սեբ. (ՀԱ 1925, 133)։

— 137. Աստուածատուր, որդի Անդրէասի, տանուտեր-Մարգարէ գրչին գրել տվեց մի Աւետարան, Ուշտանենաց Բերդաձորի վանքում, 1463 թ.—Ձեռ. Վասպ. 443, Նօտարք 216։

— 138. Աստուածատուր կրոնավոր, միաբան Խորձեան գավառի Խլպաշի Ս. Կարապետ վանից, 1464 թ.—Նօտարք 218, Թորոս Աղբար, Բ. 341։

— 139. Աստուածատուր ոմն, հիշված Արծկէում, 1464 թ.—Նօտարք 219։

— 140. Աստուածատուր, հանգուցյալ որդի Աղեղ տիկնոջ, որ նրա հիշատակին ստացավ մի Աւետարան և նվիրեց Նորագեղի եկեղեցուն, 1465 թ.—Նօտարք 221։

— 141. Աստուածատուր երեց, Տիրաշէն վանքում գրեց մի Մաշտոց, 1465 թ.—Նօտարք 223։

— 142. Աստուածատուր սարկավագ, միաբան Առաքելոց վանից, 1466 թ.—Նօտարք 225։

— 143. Աստուածատուր որդի տանուտեր Յովհաննէսի, մերձավոր Յովհաննէս քահանայի, որ Ոստանում, Կարապետ քահանային գրել տվեց մի Աւետարան, 1467 թ.—Ձեռ. Սեբ. (ՀԱ 1925, 258)։

— 144. Աստուածատուր աբեղա Տրապիզոնցի, գրիչ. Երուսաղէմի Ս. Փրկիչ վանքում, Առաքել աբեղայի համար օրինակեց Աւետարանը, 1468 թ.—Թորոս աղբար, Բ. 465։

— 145. Աստուածատուր քահանա, մականուն Գառնուկ, հայր մահտեսի Ներսէս կրոնավորի, պատճառ եղավ գրել տալու մի Աւետարան, Տիւրիկի Վաւառը (Օտուս) գյուղում, 1469 թ.—Թորոս աղբար, Բ. 364, Ձեռ. Վենետ. Ա. 752։

— 146. Աստուածատուր, պաղրոն Բիւրական գյուղի, հիշված 1469 թ.—Ձեռ. Վենետ. Բ. 1114։

— 147. Աստուածատուր, քահանա Բիւրական գյուղի, հիշված 1469 թ.—Ձեռ. Վենետ. Բ. 1114։

— 148. Աստուածատուր ոմն Սուրս գյուղացի, հիշված 1469 թ.—Ձեռ. Վասպ. 455։

— 149. Աստուածատուր հայրապետ, առաջնորդ Աշտաց երկրի Անկիւնաց վանքի. հորդորեց Զաքարէ աբեղային՝ գրելու Աւետարանը, 1470 թ.—Ձեռ. Վենետ. Ա. 588։ Հիշված է նաև 1471 թ. (Այրարատ 52 բ) և 1477 թ. (Ձեռ. Ագուլ.=Արար. 1911, 220)։

— 150. Աստուածատուր քահանա, մերձավոր Ասլբէկի, որ Բալուի Նեխրի գյուղում գրել տվեց մի Ավետարան, 1475 թ.—Ձեռ. Վեննա. Ա. 624։

— 151. Աստուածատուր, որդի Փանիկի և հայր Խըդրշահի, որ Կեսարիայում, Յովհաննէս Երզնկացուն գրել տվեց մի Ավետարան, 1476 թ.—Rapport Belgique 34։

— 152. Աստուածատուր քահանա, գրիչ. Երզնկայում օրինակեց մի Ավետարան, 1477 թ.—Ձեռ. Վեննա. Ա. 627—8։

— 153. Աստուածատուր (կաղ), հայր Յակոբի, որ Երզնկայում գրել տվեց մի Ավետարան, 1477 թ.—Ձեռ. Վեննա. Ա. 628։

— 154. Աստուածատուր քահանա Բջնիի, հիշված 1478 թ.—Այրարատ 274 բ։

— 155. Աստուածատուր, մաղդասի, հայր Ֆարաճի, որ Հալէպում, Մելքիսեթ կրոնավորին գրել տվեց մի Ավետարան, 1478 թ.—Ձեռ. Հալէպի, Ա. 96—97։

— 156. Աստուածատուր, Թոռն նախորդի, որդի Ֆարաճի.—Ձեռ. Հալէպի, Ա. 97։

— 157. Աստուածատուր կրոնավոր, քեռի Վարդան աբեղայի, որ Հոռուց կղզում Խաչատուր գրչին գրել տվեց մի Ավետարան, 1481 թ։ Աստուածատուրն էլ շինել է տվել մի եկեղեցի։ —Ձեռ. Վասպ. 488։

— 158. Աստուածատուր դպիր, որդի Գրիգոր նկարչի, որ Սեբաստիայում, Փիլիպպոս եպիսկոպոսին գրել տվեց մի Ավետարան, 1485 թ.—Ձեռ. Վեննա. Ա. 598։

— 159. Աստուածատուր վարդապետ, Սարգիս կաթուղիկոսի կողմից նվիրակ գնաց Կամենից՝ 1485 թ.—Կամենից, էջ 135։

— 160. Աստուածատուր քահանա Ոստանի, հիշված 1486 թ.—Ձեռ. Վասպ. 502։

— 161. Աստուածատուր Կաֆայցի, նահատակ. Թաթարները չարախոսեցին թե իրենց դենպետին անարգել է ու դատի կանչեցին. չարչարեցին, գետնի վրա պառկեցրին ու ձին վրայից վազացնելով՝ կողքերը ջարդեցին, հետո մեղմ կրակով կիսախորով արին, եղեգով պինչը ճեղքելով արյունլվա արին։ Ուզեցին բռնի Թլփատել, բայց նա չուրացավ իր հավատը։ Այն ժամանակ փայտակույտ դիզեցին և բոցավառ կրակում այրելով նահատակեցին «1488 թ»։ Կաֆացի Գրիգոր վարդապետը գրեց նրա նահատակության վրա մի տաղ. տես Նոր վկ. 329—331.—Աղվապ. 2216։

— 162. **Աստուածատուր**, գրիչ. օրինակեց Սաղմոսը՝ Յովհաննէսի հրամանով, 1488 թ.—Bodleian 16։

—163. **Աստուածատուր**, որդի Իսմայէլի. գնեց մի Աւետարան և նվիրեց Եփրեմոս քահանային, 1488 թ.—Ձեռ. Վենետ. Ա. 492։

—164. **Աստուածատուր**, որդի Ամիրատինի՝ որդւոյ Ներսէս Բաբերդցի քահանայի, որ Մովսէս աբեղային գրել տվեց մի Յայսմաւուրք, 1489 թ.—Manus. brit. mus. 165 բ։

—165. **Աստուածատուր** երեց, եղբօրորդի Մաթէոս վարդապետի, որ Սեբաստիայում, Փիլիպպոս գրչին գրել տվեց մի Ճաշոց, 1489 թ.—Ձեռ. Սեբ. (ՀԱ 1926, 239)։

— 166. **Աստուածատուր** աբեղա, միաբան Ս. Նշան վանից Սեբաստիոյ, 1489 թ.—Ձեռ. Սեբ. (ՀԱ 1926, 239)։

— 167. **Աստուածատուր**, եղբայր Շաքարի և հորեղբայր Դովլաթ խաթունի, որ Աղթամարում գրել տվեց Աւետարանը՝ Հայրապետ աբեղային, 1490 թ.—Ձեռ. Նոր-Բայազ. 12։

—168. **Ծատուր** քահանա, որի դուստրը՝ Մարթա գնեց Յուսիկ աբեղայի գրած Մաշտոցը, իր որդի Նորընծայ Թադէոս քահանայի համար, 1491 թ.— Bodleian 29։

— 169. **Աստուածատուր**, հայր Վարդանի (Իր թե իր կնոջ), որ Մոկաց Շատախ քաղաքում, Իսրայէլ գրչին գրել տվեց մի Աւետարան, 1491 թ.—Ձեռ. Վասպ. 517։

— 170. **Աստուածատուր**, եղբօրթոռ Լիանոսի, որ ստացավ մի Աւետարան, 1491 թ.—Թորոս աղբար Ա. 120։

— 171. **Աստուածատուր**, որդի խոջա Մկրիջանի, որ Աղթամարում, Յակոբ գրչին գրել տվեց մի Աւետարան, 1493 թ.—Ձեռ. Վասպ. 520։

— 172. **Աստուածատուր**, գրիչ. օրինակեց Աւետարանը Եղեգեաց անապատում, Մաթէոս քահանայի համար, 1496 թ.—Ձեռ. Նոր-Բայազ. 7 բ։

—173. **Աստուածատուր**, երեց Խիզանի Որճոկ գյուղի Ս. Գէորգ եկեղեցու, 1497 թ.—Տաշեան, Ցուց. 284 բ։

—174. **Աստուածատուր** եպիսկոպոս, քեռորդի մեծ րաբունապետին Յակոբայ Ովսաննանց. գրել է Մկրտիչ Նաղաշի կենսագրութիւնը (ԺԵ դար).—Զամչ. Գ. 467, Նղշ. էջ 6, Արար. 1898 յուլ։

— 175. **Աստուածատուր**, որդի Մանուէլ քահանայի, որ Գեղարքունեաց Կած գյուղում, Յովհաննէս Արծկեցուն գրել տվեց մի Ճաշոց (ԺԵ դար).—Ձեռ. Սևան. 18։

— 176. **Աստուածատուր** Խթայեցի. Ղալմուխ մանուկ էր, որին Խթայի հեծյալները գերելով՝ վաճառքի հանեցին։ Բաղիշե-

ցի Մխիթար անուն վաճառականը, որ Ատրպատականի, Ղումի, Շիրազի, Խորասանի, Սամարղանդի, Բուխարայի վրայով մինչև Հնդկաստան և Խթայ էր հասել, գնեց նույն մանուկին և հետը Բաղէշ բերավ, ուր իբրև իր որդին պահում էր։ Նրանում մեծացավ և ընդունելով քրիստոնեությունը, մկրտվեց և կոչվեց Աստուածատուր։ 18 տարեկան պատանի էր արդեն. Թուրքերը չարախոսեցին թե նա մահմեդականի որդի է եղել և պահանջեցին, որ ուրանա քրիստոնեությունը։ Նա մերժեց. սկսեցին տանջել, ծեծեցին, սառած գետի վրա կապեցին, մեջքին կրակ վառեցին. կրակե հողաթափ հագցրին, մարմինը սրով ծակոտեցին, ձեռքերի մեջ կրակ լցրեցին, հետո մոլլային հանձնեցին, որպեսզի կրթի, խրատի ու համոզի։ Ամեն ինչ զուր անցավ։ Ութ ամիս տանջելուց հետո, քարկոծելով սպանեցին, «1519 Թ»։ Իր նահատակության վրա 30 տուն մի տաղ գրեց Գրիգորիս Աղթամարցին՝ հայերեն, պարսկերեն և թուրքերեն լեզուներով։ Հրատարակված է Սիսական 531, ապա Աղթամ. 88—91, երկուսն էլ թերի։ Ամբողջական հրատարակությունը տես Նոր վկ. 353—8։

— 177. Աստուածատուր Մեծոփեցի, որի խնդրով Գրիգոր Աղթամարցին գրեց Պիւլպիւլի տաղը՝ 1523 Թ. ինքն էլ գրել է մի Աւետիս Ծննդեան.—Տաշեան, Ցուց. 794 բ. Աղթամ. 53։

— 178. Աստուածատուր Ա. Եաղուբեան, վարդապետ, պատրիարք Պոլսի «1537—50 Թ». հաջորդեց Գրիգոր պատրիարքին, իր օրով եղավ առաջին մանկաժողովը։

— 179. Աստուածատուր վրդ. Հեննեցի, տաղասաց. ունի «Տաղ և ճառ Ծննդեան և Յայտնութեան Տեառն մերոյ». ԺԷ° դար (ձեռագիրը 1662 Թվից է).—Ձեռ. Հալէպի, Ա. 99 բ. տես և Մառ, Ամառն. ուղև. 83։

— 180. Աստուածատուր տաղասաց. ունի Տաղ վասն խաղողի. նախ քան 1617 Թիվը.—Նոր ժող. Բ. 45, Գ. էջ Ի և 63—66։

— 181. Աստուածատուր Բ. Մերդինցի, պատրիարք Երուսաղէմի «1523—42 Թ». հաջորդեց Սարգիս Գ-ին. Թողեց գահը Փիլիպպոսին, որի մահից հետո երկրորդ անգամ գահակալեց «1562—64 Թ», աթոռակից ունենալով իր հորեղբորորդի Անդրէասին.—Ազգապ. 2234։ (Ըստ Աղաւնունու՝ Աստուածատուրը նստել է 1532 Թվին՝ հաջորդելով Սաի Յովհաննէս եպս. Ղուկասեանին և երկրորդ անգամ 1550—51 Թ)։

— 182. Աստուածատուր վրդ. Եդեսացի, որդի Խաչատուրի, ծնվել է 1606 Թ. Ուռհա քաղաքում. մանուկ ժամանակ իր ծնող-

ների հետ գնաց հաստատվեց Հալէպում։ Իր ուսումն ստացավ նույն քաղաքի դպրոցում, աշակերտելով հատկապես Սանփան սարկավագին։ Դարձավ նշանավոր գրիչ և ծաղկող։ Մնում են նրանից 18 ձեռագիր։ Մեռավ 1690? թվին (Սիւրմէեան, La vie et la cult. էջ 31—34)։

— 183. **Աստուածատուր** պատրիարք Պոլսի. ունի մի գրություն՝ ուղղված Լեհահայոց, Ծռազատկի առթիվ, 1589 թվին. տպված է Կամենից, էջ 231—8։ Բայց այս թվին Պոլսում այս անունով պատրիարք չկար։ Այս անունով պատրիարք ունինք Պոլսում՝ Աստուածատուր Ա «1537—50 թ» և Աստուածատուր Բ Պոլսեցի «1841—44 թ»։

— 184. **Աստուածատուր** Գ Տարոնեցի, պատրիարք Երուսաղէմի. նստավ «1645 թվին», իբր հաջորդ Գրիգոր Պարոնտէրի. «1649 թվին» Եղիազար Այնթապցին գահընկեց արավ նրան, բայց հաջորդ տարին Աստուածատուրը դարձավ իր աթոռը («1650 թ»). նորոգեց վանքը. «1652 թվին» էջմիածնի Փիլիպոս և Սսի Ներսէս կաթողիկոսների հետ ժողով գումարեց Երուսաղէմում, երենց փոխադարձ հարաբերությունները ճշտելու համար. «1657»-ին հույները խլեցին վանքը և հայ բնակիչներին դուրս վռնդելով՝ Բոշի Թաղը բնակեցրին։ Եղիազար Այնթապցին երկու տարուց կարողացավ ետ խլել վանքը։ Այնուհետև Աստուածատուրը շարունակեց մնալ գահի վրա, բայց անվանապես, երեն աթոռակից կամ փոխանորդ ունենալով մերթ Եղիազարին և մերթ Մարտիրոս Կաֆացուն։ Մեռել է «1671 թ».—Առաք. պատմ. 254—7, Ջամչ. Գ. 628—715. Ազգապ. 2573. Տաշեան, Ցուց. 355 բ, 935 բ, 946 ա. Ձեռ. Վեննա. Բ. 436. Թորոս աղբար, Բ. 399, 439, 484? Երև մ. Ձեռ. Օրագր. (տես էջ 690 ցանկը)։

— 185. **Աստուածատուր** Նարին Սասունցի, կաթողիկոս Սսի. խլեց աթոռը Գրիգոր Պիծակի ձեռքից «1691 թվին». երեք տարի հետո, Պոլսի պատրիարք Մատթէոս Սարը իր աթոռը թողնելով՝ Կիլիկիա անցավ և Աստուածատուրին տապալելով՝ կաթողիկոս դարձավ «1694 թ».—Ազգապ. 2647, 2665։

— 186. **Աստուածատուր** եպս. Ներսիսեան, առաջնորդ Լեհահայոց, հաջորդեց Վարդան Յունանեանին, 1698—1709. թարգմանել է լատինական Մաշտոցը. մյուս գործերը տես Տաշեան, Ցուց. 1135 գ։

— 187. **Աստուածատուր** Ա. Համադանցի, կաթողիկոս Հայոց «1715—25 թ». նախապես միաբան էր Նոր-Ջուղայի Ամենափր-

կիչ վանքի. կաթողիկոս եղած ժամանակ նորոգեց Էջմիածնի վանքը. երեք տերությանց պատերազմների պատճառով տառապալի կյանք անցկացրեց.—Արր. երև. 12, 14, 22. Մ. ժաշտ. 336 բ. Ջամչ. Գ. 768—801, Տաշեան, Ցուց. 688 բ. Իր մի կոնդակը Վիեննայի վաճառականներին՝ տես անդ, 1030։

— 188. Աստուածատուր քհ. Շոռոթցի, որի վրա ծաղրական տաղ ունի Նաղաշ Յովնաթանը. տես Տաշեան, Ցուց. 1007 բ։

— 189. Աստուածատուր Սեբաստացի. նոր վկա. նահատակվել է 1710 թվին. իր վկայաբանությունը մտել է մի Յայսմաւուրքի մեջ, որ այժմ գտնվում է Լոնդոնի Բրիտանական թանգարանում (տես Manus. brit. mus. 181 բ)։

— 190. Աստուածատուր Մալղարացի, հավատքը չուրանալով նահատակվել է «1710 թ», հավանաբար Պոլսում.—Ազգապ. էջ 3000։

— 191. Աստուածատուր արքեպս. Պապիկեան, անդամ Վենետկի Մխիթարեան միաբանության, որից բաժանվելով իր կուսակիցներով՝ եղավ հիմնադիր Տրիեստի Մխիթարեան միաբանության (1773), որ ապա փոխադրվեց Վիեննա. իր գործերը տես Տաշեան, Ցուց. 1067 ա. մեռել է 1827 թ։

— 192. Աստուածատուր Բ Պոլսեցի, պատրիարք Պոլսի. հաջորդեց գահընկեց Ստեփաննոս Աղաւնի պատրիարքին՝ «1841 թ». ամիրաների ձեռքին հլու գործիք դարձավ. գահընկեց եղավ «1844 թ».—Ազգապ. 3797։

†ԱՍՏՈՒԱԾԱՏՐԻԿ, աբ. նախորդի փաղաքշականն է, որ սակայն շատ անսովոր է. ունինք միայն՝

— Աստուածատրիկ քահանա, Հայոց Ձորի Աստուածաշէն գյուղում գրեց մի հին Աւետարանի հիշատակարանը, 1786 թ.—Ջեռ. Վասպ. 262—3։

ԱՍՐԻ, աբ. ծագումն անհայտ։ Գործածական է այժմ Ղարաբաղում և Ագուլիսում։ (Ագուլիսում համարվում է Իսրայէլ անվան կրճատումը)։ Սրանից են կազմված Ասրեանց, Ասրիեանց, Ասրիբէգեանց ազգանունները։ Հնից ավանդված չէ։ Այս անունով հայտնի է՝ Ասրի բէգ, Պարսից թագավոր Ֆաթալի շահի որդի Աբաս Միրզայի հայ քարտուղարը (Րաֆֆի, Խամսայի մելիքութ. 348—359)։

ԱՍՐՈՒԿ? աբ. ծագումն անհայտ և ձեն էլ անստույգ է, որովհետև ավանդված է միայն սեռ. Ասրկոյ ձևով. ուղղականը կարող է լինել Ասրիկ կամ Ասրուկ, բայց նաև Ասիրկ կամ Ասուրկ։ Փա-

գրաւոր Վենետիկեան հրատարակութեան ցանկում դրված է ուղ. Ասուրկ. Justi 47 ա դնում է Ասրուկ և հանում է պհլ. .āsrūk «զրադաշտական մոգ» բառից։ Ն. Բուզեան, Ազգ. պատմ. 258 նոյնպես ունի Ասրուկ։ Իսկ Այրարատ 523 բ գրում է Ասրիկ։

—Ասրուկ, Մեծն Ներսէսի («353—373») տեղակալ Խադ եպիսկոպոսի փեսան, որ ապա հաջորդեց իր աներոջ և եղավ եպիսկոպոս Բագրևանդի.—սեռ. Ասրկայ՝ Բուզ. Դ. ժբ։

ԱՍՓԱ, իգ. ծագումը անհայտ. հիշված է ԺԳ—ԺԴ դարերում։

— 1. Ասփա, դուստր Բուպայի, կին Լիպարիտի Օրբելեան իշխանաց իշխանի, որ էր որդի Ելիկումի (մ. 1263).—ուղ. Ասփայն՝ Օրբ. կե.—սեռ. Ասփայի՝ Օրբ. կդ։—Սիսական 171, 188, 190, 193։

— 2. Ասփա, կին Ախթամար Արփայեցու. հիշված է այն խաչքարի արձանագրության մեջ, որ կանգնեցրել է իր որդին Գուդորը՝ 1284 թ.—Սիսական 201։

—3. Ասփա, դուստր Տարսայիճի Օրբելեան և Մինախաթունի. քույր Ստեփաննոս Օրբելեան պատմագրի. կին Գրիգոր Բ Դոփեան իշխանի Խաչենոյ՝ որդւոյ Հասան Բ-ի. շինել է եկեղեցիներ և Թարթառ գետի կամուրջը. գնել է Թարգմանչաց Աւետարանը և նվիրել Խադարի վանքին. մեռել է 1311 թ. և թաղվել նույն վանքում.—Justi 45—46 (Արձ. 1301 թվից). Ձեռ. Դադեան, Ա 89 ա, Բ 30 ա (հիշված 1314 թ! Կրպտ. եպս.՝ Դոփեանք 60, 73, 74. Սիսական 37, 73, 116, 198, 532։

*ԱՍՔԱՆԱԶ, ար. < եբր. אשכנז Aškənaz, որ է որդի Գամերի, եղբորորդի Թիրասի և եղբայր Թորգոմի՝ ըստ Ա. Մնաց. ա. 6։ Մեր պատմության մեջ Ասքանազը համարվում է որդի Թիրասի և եղբայր Թորգոմի (Յհ. կթ. ա. Մխ. անեց. գ. Վրդ. է)։ Հին մեկնիչները Ս. Գրքի այս անունով հասկանում էին Հայերն ու Հայաստանը. հմմտ. «Պատուէր տուք յինէն Այրարատեան թագաւորութեանցն և Ասքանազեան գնդին» Երեմ. ծա. 27. այսպես է մեր թարգմանության մեջ. իսկ Եբրայեցին ունի «Զթագաւորութիւնս Արարատայ, Մինեւոյ և Ասքանազւոյ»։ Սրա համեմատ էլ հայ մատենագիրները մեր ազգը կոչում են երբեմն Ասքանազեան. այսպես՝ Կոր. 1=Փ. կոր. 5. Խոր. Ա. իբ. Խոր, ճառ. հռիփ. 304. Յհ. կթ. ա, ժբ, իթ, խե, խը, ծգ, ծդ և վերջը։ Յհ. կթ. հյր. 273. Գր. Նար. մատ. 374. Ուխտ. Ա. իգ. Գիրք թղ. ծղ (յէշ.). Մեսր. եր. 31. Պատմ. ներս. 10. Մագ. թղ. ե, ը, խ. Գդկնտ. Ա. ժդ. Սամն. 16. Սամ. անեց. 14. Թղթ. դաշ. 13. Օրբ. կէ. Լմբ. շն. 466. Պարականոն շար. 114. Պատմ. տուբ. 213. Վրդն.

լս. 56. Առաք. նար. 474. Սիմ. ապար. 19. Մխ. անեց. Ժ. Զքրսարկ. Բ. 143, Գ. 46. Ջուղ. էջ իբ, 10, 87, 110, 117, 204, 249, 251, 311.—Ասքանազանք՝ Ուռհ. 234.—սեռ. Ասքանազեայ՝ Յհ. կթ. ա.—Ասքանազի՝ Օրբ. ողբ. 30.—Տուն Ասքանազայ՝ Հաւաք. 6։ Հնում իբրև անձնանուն գործածված չի եղել և միայն վերջերս է սկսել այդ։ (Ըստ Ադոնց REA 7 (1927), 1, 191 Ասքանազը Սկիւթացոց անունն է, որ բևեռագիր արձանագրությանց Aškuzi բառն է. ըստ Իրանեանց՝ Սկիւթացիք կոչվում էին saka, որից Սկիւք < *sak-inth կամ Aškuzi < ašk-unzi)։

*ԱՍՔԱՐ, ար. < արաբ. عسكر ʿaskar «զինվոր» բառից, որ Տաճիկների մոտ էլ արական անձնանուն է։ Մեր մեջ գտնում եմ մի անգամ 1710 թ. (Ջեռ. Վասպ. 657)։

ԱՏԱՄ, ար. Justi 48 ը կցում է Ἄταμος անվան. այս անունով հայտնի է մի սկիւթացի (գրության մեջ μ անորոշ է). Justi ուզում է համեմատել նաև Ատոմ անվան հետ։ Բայց ըստ իս լավագույն է ուղղել Ատատ, ըստ որում երկաթագիր գրության մեջ Մ և Տ իրար նման են։ Այս մասին տես իմ հոդվածը՝ Արար. 1911, 226։

— Ատամ իշխան Գողթան. ուղեկից եղավ Յուսիկին, երբ սա գնում էր Կեսարիա՝ կաթուղիկոս ձեռնադրվելու «341 թ».— Բուզ. Գ. ժբ։ (Տես և Ատոմ № 1)։

ԱՏԱՆ, ար. ծագումն ինձ անհայտ, բայց անշուշտ օտար։

—1. Ատան, պարոն և տէր Պաղրսայ. ներկա եղավ Լևոն Բ-ի թագադրության հանդեսին «1199 թ».—Սմբ. պատմ. 111։

— 2. Ատան, սիր և պայլ, տէր Մանիոնի, դավանությամբ հոռոմ. Կոստանդին պայլի հետ Լևոն Բ-ի Զաբել աղջկան խնամակալ նշանակվեց «1219 թ». խարդախությամբ ուզում էր խլել գահը, բայց մի քանի օրից հետո՝ Հաշիշիններին ձեռքով սպանվեց Սսում.— Վահր. ոտ. 217. Սմբ. պատմ. 117. Հայապ. 440. Պատմ. կիլ. 209. Պատմ. ռուբ. 220.—Ադան՝ Սամ. անեց. շար. 148.—Սիրատան՝ Միխ. աս. իր.—սեռ. Ատանի՝ Սմբ. պատմ. 118.—Ատանայ՝ Կիր. է.—Սիրատնայ, Ատնին (տպ. ախտին)՝ Միխ. աս. իր. (համարում է ազգով հույն)։ —Ալիշան, Յուշիկք, Ա. 131, Սիսուան (տես էջ 579 ը ցանկը)։

ԱՏԱՏ, ար. ծագումն անհայտ։

— 1. Ատատ Գնունի, նախարար, ժամանակակից Արշակ Գ-ի. երբ իր նախարարները անցան Խոսրով Գ-ի կողմը, Ատատ մնաց հավատարիմ Արշակին «384 թ».—Խոր. Գ. խգ։

—2. Ատատ եպիսկոպոս Տայոց. Բաբգէն կաթուղիկոսի («490

—516») և մի խումբ եպիսկոպոսների ու նախարարների հետ ստորագրում է այն թղթին, որ ուղարկեցին Պարսկաստանի, Ասորեստանի և Միջագետքի քրիստոնյաներին, զգուշացնելու համար հերձվածողներից.—Բցռ. ի յԱտատեայ՝ Գիրք թղ. ը։

— 3. Ատատ Խորխոռունի. ապստամբեց Սամուէլ Վահեւունու հետ Պարսից Խոսրով Բ թագավորի դեմ, բայց Մորիկ կայսեր կողմից կանչվելով, Թրակացոց դեմ պատերազմի գնաց։ Այնուհետև ապստամբեց կայսեր դեմ և կռվելով նրա բանակի հետ, հասավ Հայաստան և մտավ Խոսրով Բ-ի ծառայության։ Երբ Մորիկը սպանվելով՝ գահակալեց Փոկասը (602), Ատատը ապստամբեց Պարսից դեմ, բայց բռնվեց և սպանվեց։—Սեբ. ժդ, իը.—սեռ., Ատատայ՝ Սեբ. իը։

ԱՏԳԷՆ, ար. ծագումն անհայտ։

— Ատգէն Վանանդացի, սեպուհ, կուսակից Վահան Մամիկոնեանի. մասնակցեց Շտէ գյուղի կռվին, ուր և նահատակվեց «483 թ».—Փարպ. ձգ։

*ԱՏԵԼՓԻՈՍ, ար. < հուն. Ἀδέλφιος անունից, որ ծագում է ἀδελφός «եղբայր» բառից. մեր մեջ էլ ունինք Եղբայր, Եղբայրիկ անունները. տես և Ախի, Ախիջան։ Հիշված է մի անգամ Ը դարից(?)։

— Ատելփիոս եպիսկոպոս Փոքր-Հայոց. մի քանի ուրիշ եպիսկոպոսների հետ գրեց հունաց Լևոն Գ կայսեր (717—741) և ընդունեց քաղկեդոնական դավանանքը. տես Տաշեան, Ցուց. 109ա հրատարակված գրությունը, որ ուշ ժամանակներում հորինված կաթոլիկական կեղծիք է։ Ըստ այս ձևն էլ հետին տառադարձությամբ (տ փոխանակ դ)։

ԱՏԻ, ար. ծագումն անհայտ. մի անգամ հիշված է՝

— Ատի, որ գրել է Նորատուսի մատուռի արձանագրությունը, 1714 թ.—Սխսական 47։

ԱՏԻՄԱՐ, ար. ծագումն անհայտ. հիշված է 1884 թ. (Ադ-գապ. 4470)։

*ԱՏԼԱՍ, իգ. < արաբ. آطلس aṭlas «ատլաս, атлаз». իբրև անձնանուն հիշված եմ գտնում 1842 թ. (Ջեռ. Նոր-Բայազ. 7ա)։

*ԱՏՇԻՐ, ար. < իրան. Արտաշիր անվան հետ նույն է գտնում Justi 35 բ։

— Ատշիր, որդի Վասակի, իշխան Սիւնեաց 505—513 թ.—Justi անդ (ըստ Brosset)։

ԱՏՈՄ, ար. ծագումն անհայտ. գրված է նաև Ատովմ. սրա-

նից է Ատոմեան ազգանունը, որ ավելի Վանեցոց մեջ է պատահում։ Գործածված է Ե դարից և մինչև այժմ էլ կա։

— 1. Ատոմ իշխան Գողթան (Դ դար), ըստ Սիսական, էջ 310 բ, որի աղբյուրն է Բուզ. Գ. ժբ։ Բայց Բուզանդի մեջ չկա Ատոմ. այլ գրված է Ատամ, որ պետք է ուղղել Ատատ (տես վերը)։ Ալիշանը ուղղել է Ատոմ՝ առանց հայտարարելու։

— 2. Ատոմ Մոկացի, նախարար. որսի ժամանակ անարգեց Շապուհ պարսիկ («415—419») թագավորին և ապստամբելով նրա դեմ՝ քաշվեց Մոկք.—Խոր. Գ. ծե. Արծր. Ա. ժա.—սեռ. Ատոմայ՝ Խոր. Գ. ծե։

— 3. Ատոմ Գնունի. Յազկերտ Բ-ի պահանջմամբ, Մանաճիհր Ռշտունու հետ, իր բանակով գնաց Պարսկաստան. Յազկերտը առաջարկեց նրանց ուրանալ քրիստոնեությունը, բայց նրանք չլսելով նրա հրապուրանքները՝ քաշվեցին Անձևացեաց գավառը, ուր վրա հասան Պարսիկները և բոլորին էլ նահատակեցին «449 Թ»։ Նահատակների այս խումբը կոչվում է Ատոմեանք։—Ատոմ՝ Վկ. առ. 73, 76—81. Յայսմ. օգոստ. 19.—սեռ. Ատոմայ՝ Վկ. առ. 69, 76. Յայսմ. օգոստ. 19.—Ատոմեանք՝ Յայսմ. օգոստ. 19, նոյ. 1.—տես և Տաշեան, Ցուց. 577ա, Աւգեր. Լիակ. վրք. սրբ. Բ. 66. Ազգապ. 346. Չամչ. Բ. 15, 20, 21։

— 4. Ատոմ Գնունի, մեծ նախարար. մասնակցեց Արտաշատի ժողովին «449 Թ». հայերը ուղարկեցին նրան Յունաց Թեոդոս կայսեր մոտ՝ օգնություն խնդրելու համար Յազկերտ Բ-ի դեմ «450 Թ». մասնակցեց Վարդանանց պատերազմին, որից հետո բանտարկվեց Պարսկաստանում։ 12 տարի հետո բանտից արձակվելով՝ դարձավ Հայաստան։ Վերջում մասնակցեց Վահան Մամիկոնեանի ապստամբական կռիվներին.—Եղիշ. 54, 77, 103, 150. Փարպ. իգ, խէ, կը, կթ, հա. Յայսմ. օգոստ. 7.—սեռ. Ատոմայ՝ Փարպ. կթ։

— 5. Ատոմ Անձևացի, Աղբակ գավառի Որսիրանք գյուղից. գլխավորն էր Ատոմեան նահատակների, որոնք հավատքի համար նահատակվեցին Բուղայի ձեռքով «853 Թ».—Յհ. կթ. իե. Ասող. Բ. բ. Օրբ. լդ. Վրդ. խգ. Արծր. Գ. ը. Յայսմ. մրտ. 3. Սամ. անեց. 93.—սեռ. Ատոմայ՝ Ասող. Գ. գ.—Ատոմեանք՝ Արծր. յառաջ. Տաթև. ձմ. խբ.—Ատովմեանք՝ Ճշ. 68.—Ատոմանք՝ Գր. Նար. մատ. 386.—Ատովմանք՝ Շար. իդ, ձթ, ղը, էջ 451.—Աւգեր. Լիակ. վրք. սրբ. Բ. 77, Չամչ. Բ. 448։

— 6. Ատոմ, որդի Գուրգենի Արծրունւոյ՝ տեառն Անձևաց-

եաց, եղբայր Տաճատի (873 թ).—Զարբ. Հին դպր. 531, Թրգմ. 719, ՀԱ 1937, 129։

— 7. Ատոմ Անձևացի, որդի Գուրգէն Ապուպելճի. հօրը մահից հետո (շուրջ «894 թվին») ժառանգեց իշխանությունը։ Օգնեց Սմբատ Ա-ին՝ կայսիկների դեմ պատերազմում (902)։ Սմբատ Ա և Աշոտ Բ թագավորների օրով օգնեց Գագիկ Արծրունի թագավորին՝ վանելու համար Յուսուփի արշավանքները։ Արաբական աղբյուրից հայտնի է մի նշանավոր հաղթություն, որ այս Ատոմը (=արաբ. Aṭoûm որդի ǰorǰīn-ի, ազգական Գագիկ Արծրունի թագավորի) տարավ արաբ զորավար Լաշքարիի վրա, Zawazān-ի կիրճերում (ըստ Խ Անձևացեաց բառի աղավաղությունն է), ուր սպանեց թէ Լաշքարիին և թէ նրա ամբողջ բանակը՝ որ 5000 հոգուց ավելի էր, կոտորեց (Huart REA 1, 419—422)։—Յհ. Կթ. լդ, ծե, Կղ. Արծր. Գ. իբ.—Զարբ. Հին դպր. 348։ (Գալֆայեան, Եղիշէ, տպ. Թէոդոսիա 1861, էջ գ—է սրա հետ նույն է համարում Եղիշէի Անձևացեաց ձեռագրում հիշատակված «Մեծն Ատոմ տէրն Անձևացեաց». իսկ Ակինեան՝ Եղիշէ, հտ. Ա. 108 ամբողջը կեղծիք է համարում)։

— 8. Ատոմ եպիսկոպոս Անձևացեաց, ժամանագիր Ժ դարու. ունի Ներբողեան Ս. Կարապետի, Բացայայտութիւն պատուիրանաց. վերջինը գրված Արտաւազդ Մաղագունու խնդրանօք (Ձեռ. Կարին. 102 և 105. Զարբ. Հին. դպր. 568—9)։ Վերամշակել է նաև Յայսմաւուրքը, որ կազմել էր Ատոմեանց վանքի վանահայր Գագիկ վարդապետը։ Այս Յայսմաւուրքը կոչված է Ատոմագիր, բայց ոչ թե Ատոմ եպիսկոպոսի անունով, ինչպես կարծում են շատեր, այլ Ատոմեանց վանքի անունով.—Ձեռ. Դաշեան, Ս. 92ա, Ալիշան, Շնորհ. 31. Վրք. և վկ. Ա. յուշ. Ազգապ. 982 (այս Ատոմին ոմանք դնում են առաջնորդ Գագկայ վանից, ոմանք էլ Վարագայ վանից)։ Մխ. այրիվ. 72 (1001—1011 թվերի միջև)։

— 9. Ատոմ իշխան Անձևացեաց, որի Հարցմանց պատասխանում է Արամ ժամանագիրը՝ իր մի թղթով (Ժ դար).—Զարբ. Հին դպր. 569։

— 10. Ատոմ, վերակացու Հաղբատի եկեղեցու, 1004 թ.—Յովսէփեան, Նիւթեր և ուս. Ա. 63։

— 11. Ատոմ Արծրունի, որդի Սենեքերիմ թագավորի Արծրունեաց. հօրը հետ գաղթեց Սեբաստիա «1021 թ». իշխան Սեբաստիայի. հաջորդեց Դաւիթ եղբօրը՝ «1035 թ»։ Երբ Հունաց Կոստանդին Մոնոմախոս կայսրը հավատալով մատնիչների չա-

բախտուԹյան, բանակ ուղարկեց Սեբաստիա՝ պատժելու համար Ատոմին, Ատոմը չդիմադրեց, գնաց Պոլիս, արդարացրեց իրեն և պատվով վերադարձավ իր աԹոռը, իր հետ առնելով նաև Պետրոս Գետադարձ կաԹողիկոսին, որ աքսորված էր Պոլիս, և նստեցրեց Ս. Նշան վանքում «1051 Թ»։—Լաստ. ժդ. Վրդ. ժա. Ուռհ. 55, 65, 83, 133, 138, 160, 161, 198, 220. Անանուն ժմ. 16. Յայսմ. յուլ. 30. Սմբ. պատմ. 49, 52, 73, 75, 79, 86. Առաք. պատմ. 479.—սեռ. Ատոմայ՝ Ուռհ. 179. Յայսմ. յունիս 1. Սմբ. պատմ. 56.—Ատոմի՝ Տաշեան, Ցուց. 100 բ.—Զարբ. Հին դպր. 384։

— 12. Ատոմ Անձևացի, նշանավոր վարդապետ ԺԱ. դարում (Թերևս նույն է № 8).—Ուռհ. 179։

— 13. Ատոմ, վանահայր Հոռոմոսի վանից. փոխել է վանքի ժամից անցնող գետի ընԹացքը, շինել է Խուարաձորի վանքը, ուր և մեռավ ու Թաղվեց (ԺԱ. դար).—սեռ. Ատոմայ՝ Յայսմ. մրտ. 2.—Այրարատ 52, Հայապ. 329, Շիրակ 28 բ։

— 14. Ատոմ ճգնավոր, որի խնդրանոք Լամբրոնացին (մ. 1198) գրեց Մեկնութիւն ութ խորհրդոց.—Զարբ. Հին դպր. 669։

— 15. Ատոմ, պապ Կիռ Վարդի, որ էր տեր Կալոնոռոսի.—սեռ. Ատոմայ՝ Սմբ. պատմ. 119։

— 16. Ատոմ, եղբորորդի Կարապետ քահանայի, որ Թաթարների արշավանքի պատճառով փախել էր Միջագետքից ամբողջ գերդաստանով Լամբրոն և այստեղ նույն Ատոմի համար, Յակոբ կրոնավորին գրել տվեց մի Աւետարան, 1233 Թ.—Ձեռ. Վենետ. Ա. 404, Սիսուան 85 ա, Հայապ. 457։

— 17. Ատոմ պարոն, մասնակցեց Մառիի ճակատամարտին Արաբների դեմ, ուր գերի ընկնելով բանտարկվեց Սիս քաղաքում (1266 Թ).—Սիսուան 401 բ (Վրդ. դԹ չունի)։

— 18. Ատոմ, հանգուցյալ ազգական Յովհաննէս քահանայի, որ գրեց մի Աւետարան, 1298 Թ.—Թորոս Աղբար, Բ. 335։

— 19. Ատոմ, մերձավոր Ներսէս քահանայի, որ Յովհաննէս գրչին գրել տվեց մի Աւետարան, Ապահունեաց Արսէ գյուղում, 1321 Թ.—Ձեռ. Վասպ. 168։

— 20. Ատոմ, ճգնավոր Զարդառճոյ վանքում. Թափորականից (Երուսաղէ՞մ) բերել էր «Յոհան աստուածաբանի» ձեռագիրը, որ նոր էր Թարգմանված ասորերենից հայերեն։ Ատոմը ուզում էր օրինակել այդ ձեռագիրը, բայց չկարողացավ. նույն ձեռագիրը գտավ Հայրապետ գրիչը և արտագրեց Կիլիկիայի Փոսի անապատում, 1329 Թ.—Ձեռ. Դաշեան, Ա. 86 բ։

— 21. Ատոմ, ազգական Առաքել գրչի, որ Մոկաց Դաշտ գյուղում օրինակեց Ավետարանը, 1338 թ.—Ձեռ. Վասպ. 198։

—22. Ատոմ, կրոնավոր Գէորգ զօրավարի վանից, 1357 թ.—Ձեռ. Վասպ. 213։

—23. Ատոմ, որդի Վարդան քահանայի, աշակերտ Ստեփաննոս կրոնավորի, ինքն էլ կրոնավոր և միաբան Աղթամարի Ս. Խաչ վանքի. գրիչ. փակակալ Մկրտիչ կրոնավորի օգնությամբ օրինակեց Ոսկեփորիկը, 1366 թ.—Ձեռ. Վենետ. Բ. 846. նույն անձը մի Ոսկեփորիկ ևս օրինակեց Աղթամարում, 1369 թ. (Վենետ. № 433)·— Անկ. գիրք հին կտ. յոչ. էջ ժդ։

—24. Ատոմ, որդի Թումայի, ազգական Կարապետ կրոնավորի. որ Սղկայու վանքում գրել տվեց Հին Կտակարանը, 1381 թ.—Ձեռ. Ագուլ. (Արրտ. 1911, 850)։

— 25. Ատոմ, գրիչ. Մաղարթու վանքում օրինակել է Նարեկը՝ 1381 թ.—Ձեռ. Կարին. 173։

— 26. Ատոմ միայնակեաց, Վանում, Թովմա քահանային գրել տվեց մի Մաշտոց, 1393 թ.—Նօտարք 2։ Այս Ատոմի վրա ոտանավոր մի գովեստ Թովմա գրչից՝ տես անդ, էջ 4։

— 27. Ատոմ ուղղափառ, աշակերտ Գրիգոր Տաթևացու, որ նրա խնդրանոք գրեց Հարցմանց գիրքը. մեռավ 1397 թվից քիչ առաջ, երբ Տաթևացին դեռ չէր ավարտել իր սույն աշխատությունը.—տես. Ատոմի՝ Տաթև. հարց. 4, 5, 772։

— 28. Ատոմ վարդապետ Մոկացի, հարեց Ունիթոռականներին, բայց ապա զղջաց, գնաց Երուսաղէմ և ապա վերադարձավ իր գավառը, ուր ծանր հիվանդանալով մեռավ (ԺԴ դար).—Մեծոփ. 40, Ազգապ. 1967։

—29. Ատոմ, երկու նույնանուն ճարտարապետներ Մեծոփա վանից «1402—9 թ».—Ազգապ. 2001, Նօտարք 30։

—30. Ատոմ վարդապետ. գտել է Վարդ պատրիկի գերեզմանը ՊԾԳ=1404 թ.—Tübingen, էջ 133։

—31. Ատոմ, որդի Աստուածատուր քահանայի, որ Մոկաց Խաչի վանքում օրինակեց Ավետարանը, Ղազար և Անտոն քահանաների համար, 1410 թ.—Ձեռ. Վասպ. 297։

—32. Ատոմ, քահանա Խորաձորու Ս. Աստուածածին վանից, 1410 թ.—Ձեռ. Դաղեան, Բ. 51 բ։

—33. Ատոմ, Խիզանի Ս. Խաչ վանքի միաբաններից, 1413 թ.—Նօտարք 43։

—34. Ատոմ, քահանա, որին Խաչատուրը նվիրեց մի Ավետա-

*րան, որ գրել էր տվել Թումա գրչին, Աղթամար 1418 թ.—Ձեռ. Վաստ. 311։*

—35. Ասոմ *խոջա, որդի Անդրէասի. միջնորդ եղավ նախորդ Ավետարանի գրչության 1418 թ.— Ձեռ. Վաստ. 312։*

—36. Ատոմ, *միաբան Ոստանի Գառնիկի վանից, 1420 թ.— Ձեռ. Վաստ. 324։ Նույնը հիշված 1428 թ.՝ Նոտարք 88։*

— 37. Ասոմ, *եպիսկոպոս Վարագայ վանից, 1421 թ.—Նոտարք 67։*

—38. Ատոմ *վարդապետ, ուսուցիչ Թումա գրչի, որ օրինակեց Ճաշոցը՝ Աղթամար 1421 թ.—Նոտարք 68։*

—39. Ատոմ *աբեղա, միաբան Կտուց անապատի. Վանում՝ Գրիգոր, Մկրտիչ և Կարապետ գրիչներին գրել տվեց մի Յայսմաւուրք, 1422 թ.—Նոտարք 68։*

— 40. Ասոմ, *որդի Բերկրի քաղաքի տանուտերներից մեկի, 1422 թ.—Ձեռ. Վաստ. 350։*

— 41. Ասոմ *քահանա, որդի Փողոս քահանայի և եղբայր Թումայ եպիսկոպոսի Բուխտանից երկրի (Բոհտան), 1428 թ.— Նոտարք 90։*

— 42. Ասոմ, *հայր Ամիրզայի, որ նահատակվեց 1432 թ. (տես Ամիրզա № 2).—Նոտարք 98։*

— 43. Ասոմ *գրիչ. օրինակել է Ստեփանոս վարդապետ, Պետրոս քհ. Խիզանցի, Ստեփաննոս Սորփեցի և Ամիրզա նոր նահատակների պատմությունը, որ գրել էր Առաքել Բաղիշեցին։ Վերջինը նահատակվել էր 1432 թ.—Նոտարք 99։*

— 44. Ատոմ, *որդի Թումայի և եղբայր տանուտեր բրուտ Ստեփաննոսի, որ Վանում, Կարապետ քահանային գրել տվեց մի Ավետարան, 1435 թ.—Ձեռ. Վաստ. 369։*

— 45. Ատոմ *աբեղա Ամրդոլու վանից. այլ միաբանների հետ իբր վկա ստորագրում է այն վկայագրին, որով Թանգինը հայտնում է թե մի ջաղացք է գնել և նվիրել վանքին, 1437 թ.—Նոտարք 112։*

— 46. Ատոմ, *հայր Ավետիք աբեղայի, որ Բաղու քաղաքում օրինակեց Ավետարանը՝ Ահլիմելիքի համար, 1437 թ.*—Manus. brit. mus. *30 բ։*

— 47. Ասոմ, *որդի Յովսէփ միայնակեացի, որ Յովհաննէս վարդապետի կիսատ արտագրած Ավետարանը լրացրեց Լիմ անապատում, 1439 թ.—Ձեռ. Վաստ. 380։*

— 48. Ասոմ, քահանա Գուսաշի Ամենափրկիչ և Ս. Կիրակոս եկեղեցեաց, 1444 թ.—Ձեռ. Վասպ. 388։

— 49. Ասոմ, որդի ...մուրի. տանուտեր, Ոստանում, Կարապետ քահանային գրել տվեց մի Գանձարան և նվիրեց եկեղեցուն, 1444 թ.—Ձեռ. Նոր-Բայազ. 40։

— 50. Ասոմ, տանուտեր Վան քաղաքում, մականուն «Հաւկիթ». սրա որդի Ջանիբէկին «անօրէնքն գաղտագողի նահատակեցին ի Հիզան և զմարմինն այլ ոչ եգիտ հայրն նորա, և այն խոցոմն և լալոմն՝ եմուտ ի գերեզման» և «խասրաթամահ եղև»։ Ասոմի կինը՝ Փաշա, ի հիշատակ իր որդու և իր ամուսնու՝ Կարապետ երեցին գրել տվեց մի Աւետարան, 1451 թ.—Ձեռ. Վասպ. 411։

— 51. Ասոմ, քեռի նույն Փաշա տիկնոջ, 1451 թ.—Ձեռ. Վասպ. 412։

— 52. Ասոմ քահանա, որդի Ստեփանոսի. Աղթամարում, Գրիգոր քահանային գրել տվեց Աւետարանը, 1454 թ.—Ձեռ. Բուլգ. (ՀԱ 1937, 580)։

— 53. Ատոմ, միաբան Վարագայ վանից, 1454 թ. ավելի ուշ դարձել է նշանավոր բժրաստց.—Նոտարք 176։

— 54. Ասոմ Բերդակցի, տանուտեր Բերդակի, հյուսն. Մարգար գրչին գրել տվեց մի Աւետարան և նվիրեց Բերդակի եկեղեցուն, 1456 թ.—Նոտարք 184։

— 55. Ատոմ, հոգեհայր մահտեսի Ստեփաննոսի, որ Լիմ կղզում գրել տվեց մի Յայսմաւուրք, 1457 թ.—Ձեռ. Թաւր. 103 ա։

— 56. Ասոմ Շահմելիքենց (որդի Շահմելիքի), հայրապետ Երաշխաւոր վանից Բղնունեաց գավառի. Աղթամարում, Գրիգոր քահանային գրել տվեց մի Աւետարան, 1461 թ.—Նոտարք 199—200։

— 57. Ասոմ, որդի Ստեփաննոսի և եղբայր տանուտեր Էգիլշահի, որ Արծկէում, Յովհաննէս գրչին գրել տվեց մի Աւետարան, 1463 թ.—Ձեռ. Վեննա. Ա. 620։

— 58. Ասոմ քահանա, գրիչ. Արծկէում գրեց մի Աւետարան, 1466 թ.—Նոտարք 225։

— 59. Ասոմ քահանա, հորեղբայր Կիրակոս երեցի Ջոշկանց, որ օրինակեց մի Ճառընտիր՝ սկսելով Բաղէշում և ավարտելով Աղթամարում, 1467 թ.—Նոտարք 230։

— 60. Ատոմ, որդի Յովհաննէսի և եղբայր տանուտեր Սա-

հակի, որ Ծիղանում գրել տվեց մի Աւետարան, 1474 թ.— Ձեռ. Վասպ. 469, 470։

— 61. Ատոմ, խոջա և տանուտէր. Վանում, խոջա Բարխմշահ և խոջա Ծղրշահ տանուտէրների հետ միասին, Աղարիա երեցին գրել տվին մի Աւետարան, 1484 թ.—Ձեռ. Վասպ. 495—6։

— 62. Ատոմ, մեծ հայր նախորդ խոջա Ծղրշահի Վանեցւոյ, 1484 թ.—Ձեռ. Վասպ. 496։

— 63. Ատոմ, որդի Սքանդարի, որ էր քեռի նախորդ խոջա Ծղրշահի.—Ձեռ. Վասպ: 497։

— 64. Ատոմ աբեղայ, միաբան Մուղնու վանից, 1484 թ.—Ձեռ. Սանաս. 25 ա։

— 65. Ատոմ քահանա Ոստանի. նշանավոր երգիչ էր. 1486 թ.—Ձեռ. Վասպ. 502։

— 66. Ատոմ կրօնավոր, որդի Գուրջիբէկի և հօրեղբայր Բաղիշեցի Հուջոշենց Կիրակոս քահանայի, որ մի Աւետարան նվիրեց Կապուտ գեղի եկեղեցուն, 1487 թ.—Ձեռ. Վասպ. 116։

— 67. Ատոմ, որդի Շաքարի, իր կնոջ Հարիրի հետ, Աղբակի Երնկանի գյուղում, Մարգար գրչին գրել տվին մի Աւետարան, 1498 թ.—Ձեռ. Վասպ. 526—8։

— 68. Ատոմ, տանուտէր «Մալակագմակայ». (կարդա Մաշկագդակայ). իր ընկերների հետ միասին մի Աւետարան են նորոգել և նվիրել եկեղեցուն, 1490 թ.—Ձեռ. Վասպ. 573։

— 69. Ատոմ կաթուղիկոս Աղթամարի. ըստ Ազգապատում 2212 հաջորդեց Ստեփաննոս կաթուղիկոսին՝ «1496 թ». իսկ ըստ Ակինեան, Գաւազանագիրք 121—4 հաջորդել է թերևս Զաքարիա կաթուղիկոսին, 1496? թվին. իրեն ծանոթ հիշատակարանները գնում են 1496—1507 թվերին.—Bodleian 11 հիշում է 1497 թ., իսկ Manus. brit. mus. 107 ա՝ 1507 թ.—սեռ. Ատոմի՝ Տաշեան, Ցուց. 284 բ. կոչված է նաև Ադամ, ինչպես և Ատոն՝ Ձեռ. Կարին. 18։

ԱՏՈՎՄՈՆ, ար. անշուշտ նույն է Ատոմ անվան հետ և կապ չունի Արտեմոն անվան հետ (վերջինը հիշատակված է Ցայսմաւուրքում, իբրև նահատակ)։ Մի անգամ միայն ունինք՝

— Ատովմոն, որդի Գրիգորի՝ հօրեղբօրորդւոյ Յոհաննէս կրօնավորի, որ Բերկրիում, Յակոբ գրչին գրել տվեց մի Աւետարան, 1422 թ.—Ձեռ. Վասպ. 348։

*ԱՏՏԻԿՈՍ, ար. < հուն. ᾿Αττικός անունից, որ բուն նշանակում է «ատտիկեցի». սրանից է նաև լտ. Atticus անձնանունը։

— Ատտիկոս, Սեբաստացի հայազգի պատրիարք հունաց Կոստանդնուպոլսի. հաջորդեց Յովհ. Ոսկեբերանի և Արշակի և գահակալեց 405—425 թվերին: «Եւ կոչեցաւ յաթոռ եպիսկոպոսութեան զկնի նորա Ատտիկոս, որ էր յազգէն Հայոց ի քաղաքէն Սեբաստիոյ, ունելով յառաջագոյն զաստիճան քահանայութեան յեկեղեցւոջ անդ» (Վրք. ոսկ. 249): Ժամանակակից էր Ս. Սահակի և Մեսրոպ-Մաշտոցի. մեր երեց թարգմանիչները իր ժամանակ էր, որ Պոլիս էին գնացել ուսանելու և Ատտիկոսը լավ ընդունելություն ցույց տվեց նրանց:

*ԱՏՐԱՆ, իգ. < հուն. Ἀδριανή ձևից, որ Ἀδριανός բառի իգականն է. ծագում է լտ. Adrianus բառից, որի բուն նշանակությունն է «Ադրիական (ծովից կամ քաղաքից)». իգ. Adriana, որից փոխառությամբ անգլ. գերմ. Adriana, ռուս. Адриана, ֆրանս. Adrienne իգական անունները: Հայերենի մեջ ունինք հին ձևով՝ ար. Ադրիանոս (տես էջ 52), իգ. հետին տառադարձությամբ Ատրանէ և ավելի նոր՝ Պոլսում ձևացած Ատրինէ, որի փաղաքշականն էլ Ատրիկ:

— Ատրանէ, մայր Շատինի, որ էր հոգևոր թոռն Բաւուն միաբանակեցի, որ գրել տվեց մի Աւետարան՝ 1330 թ.—Ձեռ. Վենետ. Ա. 770:

*ԱՏՐԻՆԷ տես ԱՏՐԱՆ:

*ԱՏՐՆԵՐՍԵՀ, ար. < պհլ. ātur «կրակ, ատր»+Ներսեհ բառերից. տառադարձված է հուն. Ἀδαρνάσης, Ἀδανάρσης, արաբ. ادرنرس Adarnarsah. հիշենք օրինակ՝ պրս. Adar-narsē Պարսից Որմիզդ Բ թագավորի որդին և Ատրներսեհ զորավար Պերոզի (Հիւբշ. 23): Ատրներսեհ փուշտիպան-սալար, պարսից մեծ բանակի հրամանատարն էր, որ Ներսեհապատի ճակատամարտում մարտնչեց Վահանի սակավաթիվ գնդի դեմ, բայց պարտվեց ու փախավ (482): —Մեր մեջ գործածված է Ա—ԺԱ դարերում, ապա խափանված:

— 1. Ատրներսեհ եպիսկոպոս, առաջնորդ Արտազի՝ «77—92 թ». հաջորդեց Զեմենդոսի. նահատակվեց բարբարոսների ձեռքով. —Զքր. եպս. 280. Արրտ. 1868 դեկտ. էջ 102:

— 2. Ատրներսեհ Սիւնի, որդի մատնիչ Վասակ Սիւնու, եղբոր հետ պատանդ մնաց Պարսկաստանում՝ Յազկերտ Բ-ի մոտ «450 թ».—Փարպ. իր (գրում է Ամիրներսեհ. հրատարակիչները ուղղում են Ատրներսեհ. նույնը Justi 3 բ. նույնն է ասում դարձյալ Բասմաջեան, Նոր Այգ, 1911 թ. № 3, էջ 34, առարկելով թե Ամիր արաբերեն բառ է և չէր կարող գոյություն ունենալ մեր

մէջ Ե դարում։ Այս նկատողությունը ճիշտ է, որովհետև Օրբ. Ժզ արդեն հիշում է Ատրներսեհ ձևով։ Սխալը առաջացել է երկաթագիր Մ և Տ տառերի նմանությունից։ Չամչ. Բ. 40, 48 դնում է Ամիրներսեհ, իսկ Սիմ. ապար. 41 կոչում է պարզապես Ներսեհ։

— 3. Ատրներսեհ Ռշտունեաց տէր. ուրիշ նախարարների և եպիսկոպոսների հետ ստորագրում է այն թղթին, որ գրեց Բաբգէն կաթողիկոսը «490—516 թ» Պարսկաստանի ուղղափառներին.—Գիրք թղ. ը։

— 4. Ատրներսեհ Սիւնի, նախարար. մասնակցեց Պարտաւի ժողովին, որ գումարեց Սիոն կաթողիկոսը «768 թ».—Կանոն. 166, Տաշեան, Ցուց. 653 բ։ (Ալիշան, Սիսական 14 բ և 17 բ համարում է որդի և հաջորդ Փիլիպպէ Բ-ի)։

— 5. Ատրներսեհ Բագրատունի, որդի Վասակի, հորեղբորորդի Աշոտ Մսակերի (մ. «824») և հայր Վրաց Աշոտ կիւրապաղատի.—Վրդ. խզ.—տես. Ատրներսեհի՝ Վրդ. խա. Պատմ. վր. ժզ? —Մարքվարտ, Բագր. 107—116։

— 6. Ատրներսեհ, որդի Աշոտ կիւրապաղատի (մ. 826), հայր Գուրգէնի, Աշոտի և Սմբատի.—Brosset, Bullet. 1, 1844, 167, Hist. 1, 261 (ըստ Justi 4 ա)։

— 7. Ատրներսեհ Սիւնի, որդի Վարդանի (830 ական թվերին).—տես. Ատրներսեհի՝ Օրբ. լը։

— 8. Ատրներսեհ որդի Վասակի, եղբայր Բաբգէն-Փիլիպէի Սիւնեաց.—Ինճիճեան, Աշխ. հին Հայաստ. 286, 3, Brosset, Bullet. 4, 1862, 505 (ըստ Justi 4 ա)։

— 9. Ատրներսեհ Սիւնի, որդի Վասակի, եղբայր Բուպղիգուխտի. հիշված է Տաթևի 839 թվի արձանագրության և 844 ու 867 թվերի կալվածագրերի մեջ.—Օրբ. լը.—տես. Ատրներսեհի՝ Օրբ. լը, լթ. Սիսական 282 ա։

— 10. Ատրներսեհ, նախ Խաչենի տերն էր. Վարազ-Տրդատի մահից (821—2 թ.) հետո, ժառանգեց նաև Աղվանից իշխանությունը. գերի ընկավ Բուղայի ձեռքը և քշվեց Բաղդադ «852 թ».—Յհ. կթ. իգ. Ասող. Բ. բ. Վրդ. խգ. Արծր. Գ. ժա.—Մարկվարտ, Բագր. 43՝ նույն է դնում հաջորդի հետ։

— 11. Ատրներսեհ Սիւնի, որդի Սահլի, Տոհակայ գավառից, տեր Սիւնեաց և Գեղարքունեաց. շինեց Հանդու բերդը. ապարանքը հաստատեց Վայունիք գյուղում. գերի քշվեց Պարսկաստան. ազատվելով դարձավ հայրենիք, ուր և մեռավ (Թ դար).—Կղկնտ.

Գ. իգ.—սեռ. Ատրներսեհի՝ Կղկնտ. Գ. իգ.—Մարկվարտ, Բագր. 43 նույն է դնում նախորդի հետ.—Իբն-Մասկավա կոչում է Ատրներսեհ որդի Իսահակի (Թալաթ. Արաբ. մատ. 79), իսկ Տաբարի՝ Ատրներսեհ-իբն-Իսահակ Խաշանի (Թալաթ. անդ 101), որով ստուգվում է նաև Խաչենեցի լինելը։

— 12. Ատրներսեհ Բագրատունի, որդի Դավթի, թոռնորդի Վրաց Աշոտ կիւրապաղատի. Սմբատ Ա-ի ձեռքով կարգվեց թագավոր Վրաց՝ «898 թ».—Վրդ. խզ. Մարկվարտ, Բագր. 141։

— 13. Ատրներսեհ իշխան Աղվանից. ներկա էր Տաթևի օծման հանդեսին (906 թ).—Օրբ. խբ.—Թերևս նույն է՝

— 14. Ատրներսեհ թագավոր Աղվանից, որի մոտ հիւրընկալվեց Յովհաննէս կաթողիկոս պատմաբանը («898—929 թ»), Յուսուֆի գերությունից դարձին.—Յհ. կթ. խզ. Մխ. այրիվ. 23։

— 15. Ատրներսեհ որդի Գրիգորի և թոռն Սահակ-Սևադայի, որ Աշոտ Բ. Երկաթի (մ. «930 թ») աներն էր.—Կղկնտ. Գ. իգ։

— 16. Ատրներսեհ, որդի Իշխան-Սևադայի, թոռնորդի Սահակ-Սևադայի, որ Աշոտ Բ Երկաթի աներն էր. (ըստ այսմ այս Ատրներսեհը լինում է նախորդի եղբորորդին, Իշխան-Սևադան լինում է Սահակ-Սևադայի թոռը և նախորդ Ատրներսեհի եղբայրը).—Կղկնտ. Գ. իգ (ըստ հրտր. Շահն. իսկ հրատ. Էմինի չունի)։

— 17. Ատրներսեհ որդի Բագրատի, ի Տայս, մ. 961 թ.—Brosset, Bullet. 1, 1844, 167, Hist. 1, 280, 284 (ըստ Justi 4բ)։

— 18. Ատրներսեհ Բագրևանդացի, իշխան հայ. ուսել էր Արգինայում. նշանավոր գիտուն, տոհմաբան և իմաստասեր. ապրում էր 1105 թվից առաջ ըստ հիշատակության Վարդան Հայկազնի, որ տես Զարբ. Հին դպր. 701—2։—Ուռհ. 183՝ 3 օրինակ ունին Ատրներսեհ, իսկ 3 օրինակ՝ Ներսեհ. Զարբ. Հին դպր. 801 հիշում է Ներսէս անունով և դնում է ԺԱ դարի կեսին։

— 19. Ատրներսեհ, եղբայր Կիւրիկէ Բ-ի և Սմբատի (ԺԱ դար).—Վրաց պղբ. Ա. 207։

ԱՐԱ, ար. հին Հայոց դիցաբանական անուններից մեկն է, որի հետ կարելի է համեմատել հունական 'Αρής, որ բուն Թրակյան Աստվածություն է, որով և Թրակիան կոչվում էր նախապես 'Αρεία· Նույնը Մակեդոնիայում կոչվում էր 'Αράς, որ պատերազմի և որսի աստվածն էր, իրեն ամուսին ունենալով Աֆրոդիտէն։ Պղատոնն էլ ավանդում է մի դիցաբանական անձնավորություն, որ է "Ηρος, որի հայրն էլ կոչվում է Armenios. Էրոսը ընկնում է պատերազմում և 12 օր հետո հարություն առ-

նում (տես Մատիկեան, Կրօնի ծագումը, էջ 303—5=ՀԱ 1920, 278—9)։ Այս նույն դիցաբանական անձնավորությունը դարձել է մեր մեջ աստղի անուն. հմմտ. Համամ. քեր. 278 «Նուազ է լուսին քան զարեգակն. նուազ է և աստղ քան զլուսին. նուազ է Արայն քան զԱրուսեակն գեղեցիկ»։ Համեմատությունը ճիշտ այնպես է, ինչպես Հայկը, որ թե դյուցազնի անունն է և թե համաստեղության։—Կա դարձյալ զնդ. Ara, հավատացյալ ոմն, հայր Բրդիշնուի և Կասուպատուի (Աւեստա), որի հետ Justi 20 ա համեմատում է Արան (Bartholomae, Altir. Wört. 186)։—Նույն դիցաբանական անձնավորությունն է դարձյալ, որ Խորենացին վերածել է պատմական անձի և դարձրել է՝

— 1. Արա Գեղեցիկ, որդի Արամի, նահապետ Հայկազանց. իր չքնաղ գեղեցկության համար ստացավ այս վերադիրը։ Ըստ Զամչ. իշխել է Ն.Ք. 1769—1743 թ։ Ասորեստանի Շամիրամ թագուհին լսելով նրա գեղեցկության համբավը՝ ուզեց ամուսնանալ նրա հետ և երբ Արան, իր կնոջ Նուարդին չդավաճանելով մերժեց, Շամիրամը պատերազմի դուրս եկավ նրա դեմ։ Պատերազմի մեջ Արան հաղթվեց և սպանվեց։ Իր անունով պատերազմի դաշտը կոչվեց Այրարատ, որ է Արայի դաշտ։—Խոր. Ա. ե, զ, ժդ, ժե, ժթ, ի. Սեբ. ա. Յհ. կթ. բ. Ուխտ. Ա. է, ժդ, ժը. Կղկնտ. Ա. ժե. Շնորհ. վիպ. 145. Վրդ. է. Մխ. անեց. դ. Սամ. անեց. 11, 44. Լծ. սահմ. 212. Մագ. թղ. դ, ժա, ժթ. Մին. համդ. 7, 8. Սիմ. ապար. 18. Մխ. այրիվ. 17, 47. Վրդն. աշխ. 506. Տաթև. հարց. 238. Վրաց աղբ. Ա. 74.—սեռ. Արայի՝ Խոր. Ա. ժե, ժզ, ժթ, ի. Սեբ. ա. Յհ. կթ. բ. Ուխտ. Ա. ժը, ժթ. Սամ. անեց. 44. Մին. համդ. 7, 8. Սիմ. ապար. 32.—բց. յԱրայէն (իմա յԱրամայ) Վրդ. լա.—սխալմամբ գրված հյց. զԶարա և սեռ. Զարայի. երկուսն էլ Վրդ. աշխ. 525.—իսկ Արծր. Գ. ժը «զօրացն գեղեցիկ» պետք է կարդալ զԱրայն գեղեցիկ՝ ըստ սրբագրության Նորայրի, Հայկ. բառաք. էջ 20։—Զարմանալի է Առաք. լծ. սահմ. 189, ուր Շամիրամը դարձել է թագավոր Հայոց և Արան՝ նրա կինը։

— 2. Արայեան Արայ. այսպես կոչեց Շամիրամը Արայի որդի Կարդոսին՝ նրա հոր հանդեպ իր ունեցած սիրույն ի հիշատակ.—Խոր. Ա. ի. Յհ. կթ. բ. Մխ. անեց. դ. Սամ. անեց. 44. Մին. համդ. 8.—սեռ. Արայեանն Արայի՝ Սամ. անեց. 44. Մին. համդ 8։

— 3. Արայեան կոչում է Մագ. թղ. ժա, հզ՝ Անուշաւանին, որ Արա գեղեցկի թոռն էր։

— 4. Արա, հայր Ծոփաց Աղրադար թագավորի (Տես Աղրադար)։

*ԱՐԱԲՇԱՀ, տր. < արաբ. عرب ʿarab «արաբ» + պրս. شاه šāh «թագավոր» բառերից. բուն նշանակում է «Արաբների թագավոր»: Թուրքական անուն էր. և իբր Թուրք իշխանի անուն հիշված է 1459 թ. (Նոտարք 194): Մեր մեջ գործածված է նախ ԺԵ դարում (տես տակը) և ապա մի քանի անգամ ԺԶ—ԺԷ դարերում. այսպես՝ Արաբշահ՝ ԺԶ դար (Կարապետ եպս.՝ Դոփեանք 170), սեռ. Արապշին՝ 1504 թ. (Ձեռ. Վատ. 168), Արապշայ՝ 1638 թ. (Ձեռ. Նոր-Բայազ. 15 ա), Յարաբշա՝ 1664 թ. (Ձեռ. Սեբ.=ՀԱ 1924, 517):

— Արապշայ, որդի Ստեփաննոսի. տանուտեր Աղբակի Էրընկանի գյուղում, իր երեք եղբայրների՝ Յովհաննէս քահանայի, Յակոբի և Սուլտանշահի հետ միասին, Մարգարայ գրչին գրել տվեց մի Ավետարան, 1490 թ.—Ձեռ. Վատ. 511:

ԱՐԱԳՈՅ, տր. ծագումն անհայտ: Տես Արևգոյն:

— Արագոյ, պարոն և տեր Համուսի. ներկա եղավ Լևոն Բ-ի թագադրության հանդեսին «1199 թ».—Սմբ. պատմ. 111:

*ԱՐԱԶԻԶ, տր. համառոտված եմ կարծում Ամիր-Ազիզ ձևից, որ տես առանձին: Հիշված է Աղբակի քուրդ իշխողներից մեկը այս անունով՝ 1608 թ. «Այլ և իշխանաց երկրիս Աղբակոյ՝ պարոն Արազիզն և զեղբայրն իւր պարոն Մէհէրն, որ բազում խնամս տանէին ի վերայ քրիստոնէից» (Ձեռ. Վատ. 256, ուր «ի վերայ քրիստոնէից» ասելուց ենթադրում եմ, որ նրանք հայ չեն): Մեր մեջ գործածված եմ գտնում 1613 թվին (Ձեռ. Վատ. 845—8 մի քանի անգամ), 1617 թվին (Տաշեան, Ցուց. 525բ) և 1742 թ. (Հաւաք. 50):

ԱՐԱԽԱ, տր. ծագումն անծանոթ. Bartholomae 186 ուզում է համեմատել հյ. արքայ բառի հետ, բայց f=խ ձայնափոխությունը անհարմար է գտնում:

— Արախա հայ, որդի Հալդիտայի. Դարեհ թագավորի կողմից Բաբելոնի սատրապ էր նշանակված. Բաբելաստանի Դուբալա քաղաքում իրեն Նաբուգոդոնոսոր հայտարարեց և ժողովրդի գլուխն անցնելով՝ ապստամբեց Դարեհի դեմ. Բաբելոնը գրավեց և թագավոր նստավ: Դարեհ նրա դեմ ուղարկեց Վինդաֆրա մար զորավարը, որ Արախային հաղթեց և նրան՝ իր բոլոր կուսակիցների և ապստամբության պարագլուխների հետ գերի բռնեց: Դարեհը բոլորին էլ Բաբելոնում խաչ հանեց (Ն. Ք. 513).—Արձ. Բեհիստ. 3, 13 և 4, 2. Սանտալճեան, Ասորեստ. և պրս. սեպ. արձ. էջ 220—224:

*ԱՐԱՄ, ար. < Խալդիների նշանավոր Արամէ թագավորի անունից. սա իշխում էր Ն. Ք. 860—843 թ. կազմեց Ուրարդյան մեծ դաշնակցությունը և իր ամբողջ կյանքում կռվեց Ասորեստանցոց պետության դեմ՝ քաջությամբ վանելով հզոր Սալմանասարի բոլոր հարձակումները։ Նրա հիշատակը ավանդաբար մնացել էր հայ ժողովրդի մեջ, որից և քաղելով Խորենացին՝ կազմեց Հայկազանց Արամ նահապետի պատմությունը։ Արամ նահապետից հետո շատ քիչ է պատահում Արամ անունը. սրանք կարելի է բացատրել երկու ձևով. 1) նույն Արամ նահապետի անունից՝ հետևելով Խորենացուն. 2) իրանական آرام ārām անունից, որ բուն նշանակում է «հանգիստ» և կապ չունի Խորենացու ավանդած Արամ անվան հետ. հմմտ. ուշ ժամանակ ավանդված 'Αράμ. ան̃ (ըստ Թէոփանէսի), Արամ-շահ թագավոր Լահորի (Հնդկաստան), 1211 թ., Արամ ան̃ մոլլա (Justi 20)։ ԺԹ դարում Արամ անունը նորից կենդանացավ և այսօր մեր սիրելի և սովորական անուններից մեկն է։ Նրանից է նաև Արամեան ազգանունը։

— 1. Արամ նահապետ Հայկազանց, որդի Հարմայի, հաղթեց Մարաց Նիւքար, Ասորոց Բարշամ և Կապադովկացոց Պայապիս իշխաններին. նվաճելով Կապադովկիան, հիմնեց Մշակ (= Մաժաք) քաղաքը. այդ երկիրը դարձավ հայկական գաղութ և կոչվեց Փոքր-Հայք, որի նահանգներն են Առաջին, Երկրորդ և Երրորդ Հայք։ Արամի անունով օտարները կոչել են մեզ Արմէն, իսկ մեր երկիրը՝ Արմենիա։ Ըստ Չամչ. Արամը իշխել է Ն.Ք. 1827—1769 թ. (58 տարի)։—Խոր. Ա. ե, ժբ—ժե, լա. Սեբ. ա. Յհ. կթ. բ. Ուխտ. Ա. է, ժդ. Մխ. անեց. գ. Շնորհ. վիպ. 134. Կղկնտ. Ա. ժե (հրատ. Շահն. Աւան), Վրդ. է. Մագ. թղ. ժթ. Սամ. անեց. 11, 43. Մխ. այրիվ. 17, 46. Մին. համդ. 5—7, 13. Նհպտք. 88. Վրաց աղբ. Ա. 74.—սեռ. Արամայ՝ Խոր. Ա. ժբ—ժդ. Յհ. կթ. բ, ժգ. Ուխտ. Ա. ժդ, ժղ—ժը. Տար. ժէ, կը. Շնորհ. չփ. էջ 472, Փարականոն շար. 34. Սասն. 17. Լմբ. 127, 128. Մագ. թղ. ժա, ձգ (ըստ հրատ. Կոստանեանի՝ Արամեան, որ սխալ է, որովհետև ոտանավորի հանգին հարմար չէ. իսկ տպ. Վենետ. էջ 99 ունի Արամայ). Վրդն. լս. 56. Սամ. անեց. 9, 44. Մին. համդ. 6, 7.—Արամեայ՝ Խոր. Ա. ե.—տուն (ազգ եւ) Արամի (իմա Հայաստան)՝ Առաք. նար. 474. Մեսր. տաթև. 720. Օրբ. ողբ. 36. Տաղ. (հրատ. Վկ. գէ. 69).—տուն կամ ազգ Արամայ՝ Մեծոփ. 32, 85. Նոր ժղ. Գ. 61.—բց. յԱրամէ՝ Սիմ. ապար. 20.—Արամեան (ազգ, սեռ են)

Խոր. Բ. ղբ. Գ. իթ. Յհ. կթ. ը, խէ. Մագ. Թղ. ը, գ, ե, ժա, ժթ, իբ, խ, կա, կէ, հ. Սարկ. լուս. 31. Միխ. աս. իը (=իէ). Օրբ. ժը. Սկևռ. պար. 7. Ոսկ. յհ. ր. յիշ. Հեթ. պատմ. Թ. Մեծոփ. յիշ. ա. Նշշ. լատ. 418, 422. Ջուղ. 116, 129. Մին. համգ. 1, 2 (Արամեան կամ Էրմէնեան), 5 (Արամեան, Էրմէնի, Արմէնեան). Առաք. պատմ. 239.—Արամանեայն ազգ (հայ)՝ Սիմ. ապար. 32.—Արամանեան (այլ ձ. Արամեան) «հայկական» Մագ. քեր. 228, 231. Օրբ. ողբ. 25.—ինքն Արամազնեայ՝ Խոր. Ա. գ.—«Ջհայքս ամենայն ազգ Արմէն կոչեն վասն քաջութեան Արմենայ Հայկազնոյ» Կիր. 57.—Արամազնեան՝ Ջուղ. 4, 64, 81, 127, 142, 218—219, 238, 254, 267, 275, 325. Առաք. պատմ. 433։—Զամչ. Ա. 73—76, 171—2 (ըստ Դիոդորոս Սիկիլիացու)։

— 2. Արամ ժամանագիր. ունի «Թուղթ առ Ատոմ իշխան Անձևացեաց՝ վասն պէսպէս հարցմանց» (Ժ դար).—Զարբ. Հին դպր. 569։

— 3. Արամ, որդի Համազասպի. միաբան գրվեց Հաղբատի վանքին՝ նվիրելով իր այգին վանքի գրատան (Արձ. 1179 թ). —Justi 20 ա, Յովսէփեան, Նիւթեր և ուս. Ա. 70։

— Արամ անունը հիշված է 1579 թ. (այն էլ քահանա) և 1592 թ. (Ձեռ. Վասպ. 577, 726)։

— 4. Մելիք Արամ, Ղարաբաղի Դիզակ գավառի մելիք Աւան խանի երեց որդին էր, որ հաջորդեց հորը՝ 1744 թ։ Այնքան թույլ մարդ էր, որ երբ Նադրշահի միամոր որդին մեռավ և շահին մխիթարելու համար մի պատգամավորություն պետք էր ուղարկել, մելիք Արամը փոխանակ ինքը գնալու կամ մի արժանավոր մարդ ուղարկելու, իր կնոջը ուղարկեց։ Պարսից պալատականները զարմացած մնացին, երբ պատվիրակների շարքում տեսան այս սըգազգեստ կնոջ։ Կինը սակայն ուրիշ ձևով էլ զարմացրեց թե շահին և թե բոլորին։ Իր մխիթարական ճառից հետո, նա 6000 թուման ընծա մատուցեց շահին, ասելով. «Դուք այնքան ողորմած էիք, որ գնահատելով Մելիք-Աւանի գործերը և հարգելով նրա ծերությունը, ձեզ «հայր» կոչեցիք։ Նա մեռավ։ Արժան էր որ Դուք էլ ձեր հոր ժառանգությունից բաժին ստանայիք»։ Այս խոսքերը այնքան դուր եկան շահին, որ նա հրամայեց կրկնակի չափով նվերներ ընծայել նրան, տվավ մելիք Արամի հաստատության ֆերմանը և մեծ պատվով ետ ուղարկեց։ Բայց երբ կինը վերադարձավ Ղարաբաղ, իր ամուսնուն մեռած գտավ։ Փանահ-խանը մի դավաճան հայի միջոցով թունավորել էր նրան՝ մի տարվա

*իշխանությունից հետո (1745)։—Րաֆֆի, Խամսայի մելիքութ. 57, 64։ Այլ խմբ. Առաջել վրդ.՝ Դիզակի մելիքութ. 23։*

*ԱՐԱՄԱԶԴ, *ար.* < *հպրս.* Ahura-mazdāh, *զնդ.* Ahurō-mazdā, *որի նորագույն ձևերն են Արշակունյան պհլ.* Ohrmazd, *Սասանյան պհլ.* Hormizd, *պրս.* اورمزد Urmuzd *«Լուսնթագ»։ Այս վերջինները տառադարձված են հյ.* Ორმიზდ, *ասոր.* Hormizd, Hormazd, *արաբ.* Hurmuz, *հուն.* ʽΟρμίσδας, ʽΟρμίσδης. *բուն նշանակությունն է* ahura *«տեր»*+mazdā *«գերագույն իմաստություն». հին Պարսից մեծագույն աստվածությունն էր. բայց գործածվում էր նաև իբրև անձնանուն, որից կան մի քանի պարսիկ թագավորներ ևն (Հիւբշ. 25, 62,* Bartholomae, Altir. Wört. *294,* Justi *էջ 7)։ Իբրև աստվածություն ընդունված էր նաև հայ դիցաբանության մեջ, իբր համապատասխան հուն. Զևսի կամ Դիոսի. հմմտ. Զևս դիցն Արամազդայ (Ագաթ. § 785). Եւ զԲէլայն ասեն՝ որ յունարէն Դիոս թարգմանի և հայերէն Արամազդ (Եւս. քր. ա. 25). Կրոնոս... զոր հայքն անուանեն Արամազդայ (Եւս. քր. ա. 31). Բելոս՝ յունարէն Դիոս, հայերէն Արամազդ, պարսկերէն Որմիզդ (Շիր. քրոն. 31)։ Նրա տիտղոսներն էին միր մեջ՝ «Մեծն արին Արամազդ, արարիչ երկնի և երկրի, հայր անուանեալ դիցն ամենայնի, առող լիութեան պարարտութեան»։—Ագաթ. § 68. Խոր. Ա. լա. Ոսկ. տիտ. 301—302. Վրթ. քերթ. պտկ. 304. Յհ. իմաստ. 37. Արծր. Ա. է. Վրդն. լս. 56. Վրդ. առակ. 104 (այլ ձ. Երամազդ). Վկ. թագ. 38. Տաթև. ամ. 279.—սեռ.* Არამაზდაჲ՝ *Ագաթ. §§ 53, 127, 785, 790. Խոր. Բ. ծգ, ձգ. Խոր. պատմ. հռիփ. 301. Ոսկ. տիտ. 301. Ուխտ. Ա. կը. Սամն. 21. Յայսմ. օգ. 11, 25, նոյ. 18. Մարկ. լուս. 19. Մագ. մեծ են. 66, թղ. 79, 90.—* Არამაზდეან՝ *Մագ. թղ. դ, թ, ժգ։—Ագաթանգեղոսի ձեռագրերում կա նաև Արամաստ, Արամազդ և Արամազ ձևերով։ Ըստ Խոր. Ա. լա կար հինգ տեսակ Արամազդ, որոնցից մեկն էր Կունդ Արամազդը. «Ո՛չ Արամազդ ոք, այլ ի կամեցողսն լինել Արամազդ, չորից ևս այլոց անուանեցելոց Արամազդ, յորոց մի է և Կունդ ոմն Արամազդ»։ Այս մասին տես Նումէն, Խորենացու պատմության մեջ պատահող Կունդ Արամազդ բառերի առիթով (Արաքս, Գ. գիրք բ, էջ 59—62, 1890 թ). տես նաև* JAs. *1911, 373։—Հայերենից է փոխառյալ վրաց.* Არამაზ, Არმაზ.—*Սարգիսեան, Ագաթ. և իւր բազմ. 132։*

*ԱՐԱՄԻՇ, *ար.* < *թրք.* یارامش Yaramǝš *անձնանունից, որ բուն նշանակում է «պիտանի, պետք եկած»։ Իբրև թուրքի ա-*

նուն գործածված եմ գտնում Մեծոփ. 77 > Նոր վկ. 220 (Արամիշ Արճիշեցի, որ խորտակեց Իսահակ պարսիկ Թավրիժեցի նահատակի բազուկը, +1417)։ Թրք. Yaramiš ձևը հին հայ գրչությամբ դարձել է նախ Արամիշ, ապա Եարամիշ, որից ունենք Եարամիշեան ազգանունը (Ղարաբաղ)։ Արամիշ անունը գործածված է մեր մեջ 1581 թ. (Ձեռ. Դադեան, Բ. 32 ա) և 1655 թ. (Ձեռ. Նոր-Բայազ. 42 բ)։

*ԱՐԱՅԻՇ, ար. < պրս. آرایش ārāyiš «զարդարանք» բառից, որ նաև պարսից մեջ անձնանուն է. հմմտ. Արայիշ խան՝ հնդիկ զորավար Բաբերի, 1526 թ. (Justi 20 ա)։ Մեր մեջ գործածված է 1560 թ. (Յովսէփեան, Խաղբակեանք, էջ 250), 1576 թ. (Ձեռ. Նոր-Բայազ. 9 ա) և 1655 թ. (անդ, էջ 42 բ)։

*ԱՐԱՅՄԵԼԻՔ, ար. < պրս. آرای āray «զարդ»+melik «մելիք» բառերից։ Մի անգամ գտնում եմ գործածված անթվական մի հիշատակարանում՝ Ձեռ. Թաւր. 74 ա, Արայմելիք անվան կողքին։

*ԱՐԱՆԳՈՒԼ, իգ. < Թերևս պրս. آرنگ Arang «գույն»+گل gul «վարդ» բառերից։ Հիշված է մի անգամ մեր մեջ 1690 թ. (Ձեռ. Դադեան, Ա. 49 բ)։

*ԱՐԱՍԽԱՆ, ար. առանձին գործածված չեմ գտնում, բայց ենթադրում եմ Արասխանեան ազգանունից (Ագուլիս)։ Ծագումն է պրս. ارس Aras, اراس Arās «Երասխ (գետը)»+خان xān բառերից, իբրև Երասխի խանը։ Հմմտ. հաջորդը։

*ԱՐԱՍՄԵԼԻՔ, ար. անշուշտ նույն պրս. Aras «Երասխ»+melik «մելիք» բառերից։ Հմմտ. Արասխան։ Մի անգամ գտնում եմ անթվական մի հիշատակարանում՝ Ձեռ. Թաւր. 74 ա։

*ԱՐԱՍՏ, ար. < ըստ իս փոխառյալ է իրան. ārāsti անձնանունից, որ ծագում է rād «պատրաստել» արմատից և կրճատ ձևն է ā-rāstay- ձևով մի անվան (Bartholomae 335, Justi 20 բ)։ Այս անունով հայտնի է Զրադաշտի հորեղբայրը (Ավեստա)։

— Արաստ, թոռն Արամայիս նահապետի Հայկազանց. իր անունով է կոչվել Երասխ գետը (ըստ Խորենացու).—սեռ. Արաստայ՝ Խոր. Ա. ժբ կամ Երաստոյ՝ Ուխտ. Ա. ժգ. Սամ. անեց. 42. Մխն. համզ. 4. Երաստոյ՝ Մխ. այրիվ. 45։

ԱՐԱՐԱՏ. Հայոց միջնաշխարհի անունն է, որ փոխառյալ է Խալդիական Urartu ձևից։ Այժմ Կովկասում դարձել է արական անուն, որից և Արարատեան ազգանունը։

ԱՐԱՑ. հին Հայոց տոմարով 6-րդ ամսվա անունն է, որ

Տաթև. հարց. 200 համարում է Հայկ նահապետի 7 որդիներից մին։

ԱՐԱՔՍԻ, եգ. (որ և Արաքս կամ Արաքսիա). Հայաստանի մայր գետի անվան (Երասխ) եվրոպական Arax ձևից, որ ԺԹ դարում գործածվել սկսեց իբր իգական անձնանուն։

ԱՐԲԱԶԱԿԻՈՍ, ավանդված է միայն հունարեն տառադարձությամբ և ըստ Justi համեմատելի է Երուազ անվան հետ։

— 'Αρβαζάκιος հայ, կռվեց ապստամբ Իսաւրացու դեմ.— Justi 21 ա։

*ԱՐԲԱԿ, ար. < իրան. Arbak ձևից. այս անունով կան 'Αρβάκης՝ Պարսից Արտաշէս թագավորի մեծ զորավարներից մեկը (Քսենոփոն, Նահանջ բյուրուն, Ա. գլ. է), 'Αρβάκας սատրապ Մարաստանի, "Αρπαγος Աժդահակի նախարարներից մին, 2) զորավար Դարեհի, 3) տեղակալ Կյուրոսի (Ստրաբոն, Զ. գլ. ա), Արբակ թագավոր Վրաց Ն.Ք. 23—3 թ. (Mourier, Hist. de Géorgie, էջ 72), Արբակ թագավոր Վրաց, Թոռն Միհրանի (Վրդ. ծ, Մխ. այրիվ. 22), Արբակ կայսր Չինաց (Խոր. Բ. ձա)։

—Արբակ, Նահապետ Հայկազանց, հաջորդեց Պարետի և ըստ Չամչ. գահակալեց Ն. Ք. 1612—1568 թ. (44 տարի).—Խոր. Ա. ժԹ. Յհ. կԹ. ը. Կղկնտ. Ա. ժե. Վրդ. է. Մագ. Թղ. ժԹ. Մին. համդ. 9. —կոչվում է նաև Արբոկ՝ Մխ. անեց. գ. Սամ. անեց. 45. Մխ. այրիվ. 17, 47.—Վրաց. աղբ. Ա. 74 սխալմամբ Արշակ։

ԱՐԲԱՆԷՍ, ար. < ծագումն անհայտ. միայն մի անգամ ունինք գործածված ԺԵ դարում։

— Արբանէս, մեծ հայր խոջա Խաչատուրի, որ Արճէշում, Յովհաննէս քահանային գրել տվեց մի Աւետարան, 1462 թ.— Ձեռ. Վասպ. 438։

ԱՐԲԵՂՈՍ, ար. ավանդված է միայն հունարեն տառադարձությամբ.

— "Αρβηλος հայ, գնաց Ալանների դեմ՝ Արրիանի ժամանակ.—Justi 21 ա։

ԱՐԲՈՒՆ, ար. (Մագ. Թղ. ԺԹ. մեկնում է «բնականագոյն զօրութեամբ» (այսինքն արի+բուն բառերից)։

—Արբուն, նահապետ Հայկազանց, հաջորդեց Պերճ Ա-ի և ըստ Չամչ. գահակալեց Ն.Ք. 1102—1075 թ. (27 տարի).—Խոր. Ա. ժԹ. Յհ. կԹ. ը. Մխ. անեց. գ. Կղկնտ. Ա. ժե. Վրդ. է. Սամ. անեց. 45. Մին. համդ. 10. Մխ. այրիվ. 53.—գրված է Արբոն՝ Մագ. Թղ. ժԹ. Մխ. այրիվ. 18։

ԱՐԳԱՄ, ար. (պատահական նմանություն ունի արաբ. أرقم Arqam արական անունը, որ հիշում է Իբն-ի-Բատուտա, II 92)։

—Արգամ, նահապետ Մուրացան նախարարության. Երուանդ Բ կարգեց նրան իր երկրորդը. Արտաշեսի պատերազմի ժամանակ, թողեց Երուանդին և իր զորքով անցավ Արտաշեսի կողմը. սրա համար էլ Արտաշեսը տվավ նրան մեծամեծ պարգևներ։ Արտաշեսի որդին Արտավազդը նախանձելով նրա պատվին, սպանել տվեց նրան։ Վիպասանական երգերից մեկում կոչվում է Արգաւան և համարվում է Սաթենիկ թագուհու սիրականը.

Տենչայ Սաթենիկ տիկին տենչանս՝
Զարտախոյր խաւարտ և զտից խաւարծի
Ի բարձիցն Արգաւանայ (Խոր. Ա. լ)։

Արգամ ձևով՝ Խոր. Բ. խդ, խզ, ծա.—սեռ. Արգամայ՝ Խոր. Բ. խզ, խէ, ծա. Ուխտ. Ա. խբ.—Արգաւան ձևով՝ Խոր. Բ. ծա.—սեռ. Արգաւանայ՝ Խոր. Ա. լ։

ԱՐԳԱՄՈԶԱՆ, ար. հավանաբար Արգամ անունից և զան «ծնունդ, սերունդ» բառից. տես Աղվամելիք № 1։

ԱՐԳԱՒԱՆ, ար. տես Արգամ. իսկ ծագումը տես Արքևան։

*ԱՐԴՈՒԱՐԴ, ար. < հպրս. Artavardiya անունից, որ բուն նշանակում է «արդարությունը աճեցնող». այս անունով հայտնի է Դարեհ Ա-ի զորավարներից մեկը (Barthol. 193)։—Հունարեն տառադարձված է ’Αρδοάτης=լտ. Ardoates, որ Justi 21 բ համեմատում է պրս. Arduwād անվան հետ (մեծ մոգպետ, որ գրեց Ցազկերտ Գ-ի պատմությունը)։

—Արդուարդ թագավոր Հայոց. դուրս քշեց Հայաստանից Մակեդոնացոց կուսակալ Նէոպտողմէոսին, բայց Կապադովկիայի կուսակալ Եւմենէսի (323) հորդորով հետ ընդունեց։ Օգնական զորք ուղարկեց Արիարաթ Բ-ին, որով սա կարողացավ տիրել Կապադովկիային։—Գրգշ. Քնն. պատմ. Ա 79, Բ 130 (սխալմամբ հասկանում է Արտաւազդ), Մանանդ. Տիգրան Բ 18.—Ըստ Զամչ. Ա 128—130 Սիւնեաց նախարար էր, որ քշեց Նէոպտողմէոսին և տիրեց երկրին Ն. Ք. 317 թ. իշխեց 33 տարի, մինչև Ն. Ք. 284։

†ԱՐԵԳԻ. հին Հայոց ամսանուններից մեկն է, որ Տաթև. ձմ. ա. և հարց. 200 համարում է Հայկ նահապետի աղջիկներից մեկի անունը։ Կազմված է հյ. արեգ «արև» բառից։

†ԱՐԵԳՆԱԶԱՆ, իգ. < հյ. արեգ «արև»+նազ «նազանք» բառերից. հնից ավանդված չէ. գործածվել է սկսում ԺԸ դարից.

հնագույն հիշատակություններն են՝ 1770 թ. (Ազգապ. 3701) և 1796 թ. (Էֆիմ. 448)։

†ԱՐԵԻ, ար. <հյ. արև «արեգակ» բառից, ինչպես ունինք պրս. خورشید Xūršīd անձնանունը, որ բուն նշանակում է «արեգակ»։ Սրանից է Արևեան ազգանունը։

— 1. Արև Սիւնի, նախարար, որ Տրդատ, Ջուանշեր, Համազասպ և Գրիգոր նախարարների հետ Պարսից ու Վրաց բանակներով գնաց կռվելու հունաց դեմ Վրաց Վախտանգ Գուրգասար թագավորի առաջնորդությամբ (Ե դար).—Գոմ. վր. ժղ. Վրաց. աղբ. Ա. 189։

—2. Արև, անդրանիկ որդի Դաւիթ Սեբաստացու. հոր հետ գերի ընկավ Թուրքերի ձեռքը և երկուսն էլ մահմեդական դարձան. իսկ եղբայրները նահատակվեցին «1156 թ».—Ջամչ. Գ. 49, Նոր. վկ. 22, Ազգապ. 1396։

— 3. Արև (որ և Արևիկ), որդի Խոյդանի. մի մատուռ է շինել Վայոց ձորում, 1263 թ.—Սիսական 174—5։

— 4. Արև, որդի Դաւթի և եղբայր Խուդադադի, որ Խիզանում գրել տվեց մի Ավետարան, 1497 թ.—Տաշեան, Ցուց. 285ա։

—5. Արև, որդի Մելքոնի և եղբայր Սրապիոն գրչի, որ օրինակել է մի Ավետարան 1557 թ. և մի ուրիշը՝ 1596 թ.—Ձեռ. Վասպ. 659, 748։

—6. Արև, եղբայր Բարսեղի՝ առաջնորդին Համթայ, 1634 թ. —Թորոս աղբար, Բ. 431։

— 7. Արև, հայր մահտեսի Մըրրի, որ գրել տվեց մի Մաշտոց՝ Հալէպում, 1641 թ?—Ձեռ. Հալէպի, Ա. 174 բ։

— 8. Արև, հիշված է նաև 1671 թ.—Տաշեան, Ցուց. 766 բ։

†ԱՐԵԻԳՈՅՆ, ար. <հյ. արև+գոյն բառերից, իբրև «արևի գույն ունեցող»։ Տես Արագոյ։

— Արևգոյն իշխան, բերդատեր Համուսի, ԺԲ դարի վերջում. —Սիսական 206 բ, 471 ա։

† ԱՐԵԻԹԱԳՈՒՀԻ, իգ. <հյ. արև+թագ բառերից (ինչպես կա Լուսնթագ)՝ ունի իգական մասնիկով։ Հիշված է մի անգամ

—Արևթագուհի, կին Առաքելի և «բարետոհմիկ և բարեկեցիկ» հարսն Պետրոս երիցու Կոստանդնայեցւոյ, որ Հռոմկլայում գրեց մի Ավետարան, 1248 թ. այս թվին Արևթագուհին «տարաժամ և գեղարոյս» մեռել էր անզավակ։—Թորոս աղբար, Բ. 351։

†ԱՐԵԻԻԿ, ար. և իգ. Նախորդ Արև անվան փաղաքշականն է։ Գործածված է ԺԳ—ԺԷ դարերում։

— 1. Արևիկ, հիշատակագիր որ հիշված է Դրազարկի վանքում, Բարսեղ եպիսկոպոսի հետ, 1220 թ.—Սիսուան 233բ, Ձեռ. Վենետ. Բ. 1137։

— 2. Արևիկ, կանգնեցրել է մի խաչքար Խնկիկի հիշատակին, 1274 թ.—Սիսական 485։

— 3. Արևիկ, կին Սոճոնի և մայր Առաքել եպիսկոպոս գրչի, 1612 թ.—Ձեռ. Հալէպի, Ա. 32 բ։

+ԱՐԵՒԼՈՅՍ, իգ. <հյ. արև և լույս բառերից. նորակերտ անուն. քիչ գործածական։

+ԱՐԵՒՀԱՐ, ար. <հյ. արև+հար բառերից. անհայտ թվականով հիշված է մի անգամ, իբրև նվիրատու Թանատի վանից (Սիսական 123)։

+ԱՐԵՒՇԱՀ, ար. <հյ. Արև+պրս. شاه šāh «թագավոր» բառից, որ գրեթե իբր մասնիկ կցվում է շատ անունների վրա։ Հիշված է ԺԶ—ԺԷ դարերում։ Հնագույն հիշատակությունն է 1550 թվին (Տաշեան, Ցուց. 790 բ, սեռ. Արևշահի ձեռով), հոգով՝ Արևշահ 1619 թ. (Ձեռ. Սեբ.=ՀԱ 1925, 475), հյց. զԱրևշահ 1664 թ. (Ձեռ. Սեբ.=ՀԱ 1924, 517) և 1475 թվից ավելի ուշ գրված անթվական մի հիշատակարանում (Ձեռ. Մաղն. 35)։

+ԱՐԵՒՇԱՏ, ար. <հյ. արև+շատ բառերից, այսինքն «կյանքը երկար»։ Գործածված է ԺԴ դարից սկսած և այժմ էլ կենդանի է։ Սրանից է Արևշատեան ազգանունը։ Հականիշն ու համանիշն է Շատարև։

— 1. Արևշա(տ) միայնակեաց, իր ունեցած Ճառընտրի օրինակը տվեց Գրիգորիս գրչին՝ արտագրելու համար, Երզնկա 1343 թ.—Ձեռ. Վենետ. Բ. 176։

— 2. Արևշատ, որդի Գրիգորի և եղբայր Ջահանշայի. սպանվել է Ղզլպաշի ձեռքով. հիշված է 1613 թ.—Տաշեան, Ցուց. 584 ա։

+ԱՐԵՒՏԻԿԻՆ, իգ. նախորդ Արև արական անվան իգական ձևն է. հիշատակված է մի անգամ ԺԳ դարում։

—Արևտիկին, մերձավոր Խութլուբէկի և Թիրքիշի, որոնք Յակոբ աբեղային գրել տվին մի Աւետարան, Կարսի Գոգիս գյուղում, 1297 թ.—Ձեռ. Ադուլ. (Արրտ. 1911, 464)։

+ԱՐԵՒՔՈ, ար. <հյ. արև+քո բառերից, իբր «քո արև»։ Մի անգամ հիշված է Է դարում։

—Արևքո ի Վարոքեան, իշխան Աղուան (Է դար).—Սամ. անեց. 286 հրատարակչի բերած քաղվածքում։

***ԱՐԶԱՆԳՈՒԼ**, *ար. < պրս.* ارزان arzān *«արժանի»* + گل gul *«վարդ» բառերից. Նշանակում է «վարդարժան, որ վարդ ծաղկի արժանի կամ նման է»։ Առանձին գործածված չեմ գտել. բայց սրանից ունինք* Արզանգուլեան *ազգանունը (Կովկասում)։*

***ԱՐԶԱՆԻ**, *ար. < պրս.* آرزانی arzānī *«արժանիք» բառից. իբրև արական անուն գործածված է մեր մեջ ԺԷ դարում. այսպես 1653 թ. Ձեռ. Թաւր. 45 բ՝ սեռ.* Արզանուն *ձևով. իսկ Զքր. ագուլ. 34, 160 թն ուղ.* Արզանի *և թն սեռ.* Արզանուն *ձևով։ Սրանից է* Արզանեան *ազգանունը։*

***ԱՐԶՈՒ**, *իգ. < պրս.* آرزو ārzū *«փափագ, ցանկություն» բառից, որ նաև Պարսից մեջ իբրև իգական անձնանուն գործածական է. ինչ.* Arzūī *կին Սելմի՝ երեց որդւոյ Ֆերիդուն թագավորի Պարսից (Շահն. Ա. 104),* Arzū *դուստր մի ակնավաճառի, կին Բահրամ Գուրի (Շահն. Ե. 509)։ Մեր մեջ իբրև իգական անուն գործածված է (և հատկապես* Արզու խաթուն *ձևով) ԺԲ—ԺԳ դարերին։ Ավելի ուշ ժամանակից ունինք 1587 և 1651 թվերին (Տաշեան, Ցուց. 319 բ, 363 ը), 1671 թ. (Ձեռ. Վասպ. 940)։ Բայց* Արզու *գործածված է նաև իբրև արական, և այն ժամանակ* Արզումաn *անվան կրճատումն է (տես անդ)։*

— *1.* Արզու խաթուն, *դուստր Քուրդ իշխանի Կայենոյ, կին Վախթանգի՝ տեառն Հաթերքի. օգնեց Մխիթար Գոշին՝ Նոր-Գետիկ վանքը շինելու (1191). հատկապես պատրաստեց այս վանքի և ուրիշ շատ վանքերի գեղանկար վարագույրները.—Կիր. ժբ. Justi 42 բ. Արձ. (Սմբատեանց, Գեղարք. 173)։*

— *2.* Արզու խաթուն, *իշխանուհի. իր ծախսով շինել է Խոթայ վանքը՝ Վերին Խաչենում, Թարթար գետի ափի մոտ, Թադեոս առաքյալի անունով, 1214 թ.—Րաֆֆի, Խամսայի մելիքութ. 305։*

— *3.* Արզուխաթուն, *դուստր Գրիգորի և թոռն իշխանաց իշխան Դաւթի Շոթոռկանց. հիշված է 1236 թ.—Յովսէփեան, Նիւթեր և ուս. Ա. 25, Խաղբակեանք 18։*

— *4.* Արզու խաթուն, *դուստր Սիւնեաց այլազգի մի իշխանի. դարձավ քրիստոնյա և ամուսնացավ Տարսայիճ իշխանի հետ. մայրն էՍտեփաննոս Օրբելեանի (ԺԳ դար).—Օրբ. որդ. յոլ. էջ 6։*

***ԱՐԶՈՒԽԱՆ**, *ար. և իգ. < պրս.* آرزو ārzū *«փափագ»* + خان xān *«իշխան» բառերից։ Հիշված է 1587 թ. ար. (*Manus. brit. mus. *271 ա), 1654 թ. (*Արզխան *ձևով, իգ. Ձեռ. Ագուլ. = Աբրա.*

1911, 385), 1663 թ. (Արզուխան ձևով, ԻԳ. Ձեռ. Նոր-Բայազ. 21 բ)։

*ԱՐԶՈՒՄԱՆ, ար. < պրս. آرزومند ārzumand «փափագող, ցանկացող, կարոտ» բառից։ Գործածված է առաջին անգամ ԺԴ դարից (թե Արզուման և թե կրճատ Արզու ձևով) և մինչև այժմ էլ գործածական է։ Սրանից է Արզումանեան ազգանունը. օր. Արզուման Արզումանեան 1841 թ. (Ազգապ. 3733), բայց նաև Աբրահամ վրդ. Արզիմանեան 1703 թ. (Զամչ. Գ. 746)։

— Արզուման, որդի Քուրդամիրի, գտնվում էր Ոստան քաղաքում, ամիր Մելիք-Ասադի ապարանքում, ուր նորոգել տվեց մի Ավետարան 1386 թ.—Ձեռ. Վասպ. 117 (7 տող հետո գրված Արզու)։

— Ավելի ուշ ժամանակի հիշատակություններ են Արէզման 1561 թ. (Ձեռ. Կես. ածած. 51 ա), Արզու 1644 թ. (Ձեռ. Սեբ.=ՀԱ 1927, 310), Արզիման, Արզուման 1656—8 թ. (Երեմ. չել. օրագր. 158, 258, 268), Արզըման, Աազըման 1680 թ. (Ձեռ. Վասպ. 569—570), 1738 թ. (Ձեռ. Դաղեան, Բ. 14 բ)։

*ԱՐԶՈՒՄԲԷԿ, ար. < թրք. آرزوم arzum «փափագս» + بك beg «իշխան» բառերից (այն է «փափագս է իշխան լինել»). հմմտ. թթր. Արզունխան՝ իշխող Խարբերդի, 1290 թ. (Տաշեան, Ցուց. 75 բ)։ Մեր մեջ գործածված է Արզնբէկ ձևով ԺԷ դարում (Զքր. ագուլ. 58, 166), 1667 թ. (Ձեռ. Նոր-Բայազ. 3 բ), և Արզումբէկ ձևով՝ 1703 թ. (Ձեռ. Թաւր. 47 բ), 1721 թ. (Աբր. երև. էջ 16)։

Արզուքան տես Ռուզուքան։

ԱՐԹԱՔԻ, ար. գործածական է Պոլսում, իբր Յարութիւն անվան փաղաքշականը. հնագույն հիշատակությունը 1841 թ. (Ազգապ. 3732)։

*ԱՐԹՈՒԽ, ար. < թրք. آرتق artəq, թթր. آرتوق artuq «ավելի, ավելորդ, չափազանց» բառից։ Գործածված է ԺԵ դարից։ Այսպես նաև Արթուխեան։

— Արթուխ, որդի Յիսուսի, եղբայր Ներսէս քահանայի և հորեղբայր Բարթուղիմէոս առաքյալի վանուց առաջնորդ Յովհաննէս արքեպիսկոպոսի, որ ստացավ Յայսմավուրքը, 1438 թ. —Ձեռ. Թաւր. 41 ա։

*ԱՐԹՈՒԽՇԱՀ, ար. կազմված է նախորդից, պրս. شاه šāh «թագավոր» բառի հավելումով. գործածված է նույնպես ԺԵ դարից։

—1. Արթուխշայ, որդի Տատիի և եղբայր Եղիշէ քահանայի,

որ Աղվանից Մատթէոս կաթուղիկոսից գնեց մի Աւետարան՝ 1438 թ.—Ձեռ. Դադեան, Բ. 44 ա։

— 2. Արքուխսա, ճարտարապետ, մի ապարանք է շինել Թումա քահանայի համար, որ գրել է մի ճաշոց, 1441 թ.—Ձեռ. Սեբ. (ՀԱ 1926, 244) [թվականը սխալմամբ դրված է 1619]։

— 3. Արքուխսա, ամուսին Զուլալի, որ Աղթամարում, Գրիգոր աբեղային գրել տվեց մի Աւետարան, 1470 թ.—Ձեռ. Վասպ. 459։

— 4. Արքուխշա (սեռ. Արքուխշին) ԺԷ դարից (Տաշեան, Ցուց. 531 բ)։

+ ԱՐԹՈՒՆ, ար. (Գրիգոր անվան թարգմանությունն է. տես անդ)։

— 1. Արքուն, տաղասաց ԺԵ դարու.—Ցուցիկք, Բ. 125։

— 2. Արքուն ոմն գրիչ, 1594 թ.—Կամենից 165։

*ԱՐԻԱՄՆԷՍ, ար. ավանդված է հուն. 'Αριάμνης տառադարձությամբ. Justi համարում է 'Αριαράμνης և մեկնում է հպրս. Ariyārāmna, որ նշանակում է «Արեաց հանգիստ կամ ուրախություն». այս անունով հայտնի է պարսիկ ոմն, հայր Արշամի (Bartholomae 199)։

— Արիամնէս, երկու հայ թագավորներ, ըստ Դիոդ. սիկիլ. 31, 28։ Justi 23 բ դնում է Կապադովկիայի անկախ սատրապ՝ 350 թ. և մի ուրիշը՝ որդի Արիարաթ Գ-ի՝ 280—250 թ։

ԱՐԻԱՇ, ար. ծագումն անհայտ. հիշված է մի անգամ 1575 թ. (Rapport Belgique 24)։

ԱՐԻԳԱ, իգ. նորաձուտ անուն, որ Ծերենցի «Երկունք» վեպի դեմքերից մեկն է. Թորոս Ակէացու աղջիկն էր։

*ԱՐԻՈԲԱՐԶԱՆ, ար. (ավանդված է հուն. 'Αριοβαρζάνης տառադարձությամբ). իրանական անուն է. այս անունով հայտնի են մի քանի Կապադովկացի թագավորներ, որոնց թվումը տես Justi 25 բ—26 ա։

—Արիոբարզան մար, Արտաւազդի անկումից հետո, Օգոստոս կայսեր կողմից և հաճությամբ Հայոց նշանակվեց թագավոր Հայոց Ն. Ք. 2—3 թ. բայց շուտով մեռավ և նրան հաջորդեց որդին Արտաւազդ.—Գրգշ. Քնն. պատմ. Բ. 189. Լէօ, Ա. 449, Justi 26 ա № 11.—Չամչ. Ա. 280, 284 կոչում է նրան Ապրսամ Արծրունի։

ԱՐԻՁԱՆ, ար. ծագումն անհայտ. հիշված է ԺՁ—ԺԷ դարերում. այսպես 1575 թ. (Rapport Belgique 24), 1608 թ. (Ձեռ. Վասպ. 831), 1627 թ. (Ձեռ. Նեւս. 40 ա), անթվական մի հիշա-

տակարանում (Ջեռ. Վասպ. 282) և մի ուրիշ անթվական հիշատակարանում, որ գրված է 1224 թվից հետո (Թորոս աղբար, Բ. 273)։

*ԱՐԻՍՏԱԲՈՒՂՈՍ, ար. < հուն. Ἀριστόβουλος անունից, որ նշանակում է «լավակամ, բարեխորհուրդ» (կազմված ἄριστος «ամենալավ, ընտրելագույն»+βουλή «կամք, խորհուրդ» բառերից)։ Այս անունով հայտնի են երկու թագավոր Հրեից, մի հույն պատմիչ և ուրիշներ։

— Արիստաբուղոս, որդի Հերովդէս թագաւորի Բաղկիդեայ. Ներոն կայսրը կարգեց նրան թագավոր Փոքր-Հայոց 55 թ.— Չամչ. Ա. 307։

*ԱՐԻՍՏԱԿԷՍ, ար. գրված է զանազան ձևերով.—Առիստակէս, Առիստագէս, Առաստակէս, Ռստակէս, Ռըստակէս, Րստակէս, Րըստակէս, Րռիստակէս, Րըստագէս, Ռուռուստակէս, և բոլորովին այլափոխված ձևով՝ Ցռխթագ (վերջինս 1475 թվից հետո գրված անթվական մի հիշատակարանում՝ Ջեռ. Մաղն. 35). հունարեն տառադարձված է Ἀρωστάκης (հույն Ագաթանգեղոսում)։ Այս անունը գործածական է մեր մեջ Դ դարից սկսած մինչև օրս։ Նոր փաղաքշական ձևերն են՝ Արիստակ, Արիստ, Արիս, Տաքէս (Ղարաբաղում գործածական է Րստամկէս և Արիստագէս ձևերով)։—Գ. Փառնակ, Տարազ 1903, 262 համարում է ծագած պհլ. ristak «շինական» բառից։ Նշանակության կողմից անհարմար չէ այս մեկնությունը, որովհետև այլուր ունինք հյ. Մշակ և հուն. Գեորգ «երկրագործ» անունները։ Բայց անհարմար է մեր ձևի -էս վերջավորությունը, որ չկա իրանյանում և որ հունական ծագում է ենթադրում։ Կարելի էր ասել թե պհլ. բառը Փոքր-Ասիայում ստացել է հունական վերջավորություն, բայց բանն այն է որ պհլ. ristak ձևով բառ չկա. ոչ Horn գիտե այդպիսի բառ և ոչ Nyberg, Hilfsbuch des Pehlevi (Glossar, էջ 195)։ Երևի Փառնակ լտ. rusticus (իգ. rustica) «շինական» ձևից ենթադրել է պհլ. այդպիսի բառ։ Nyberg, էջ 197 ունի պհլ. rōstāk «շեն երկիր», որ ավելի անհարմար է մեր բառին։—Justi 262 բ մեր բառը դնում է < զնդ. urusta «աճած» ձևից, իբր պրս. Rustah. հմմտ. Abū ʿAlī Aḥmed bin ʿOmar ibn Rustah Սպահանցի աշխարհագետ (Ժ դար) և Abū Hāmid Aḥmed ibn Moḥammed bin ʿAlī ibn Rosteh Սպահանցի մ. 970։—Ավելի հավանական եմ կարծում պհլ. ristāxēz «յարութիւն մեռելոց» (Nyberg 195) և կամ հուն. ἀρίσταρχος, որ բուն նշանակում է «գերագույն իշխան»

և իբրև անձնանուն գործածական է հունաց մեջ։ Հայտնի են օրինակ՝ Արիստարքոս նշանավոր քերականագետը (Բ դար Ն.Ք.), մի աստղաբաշխ, աթենացի մի օլիգարխոս և ուրիշներ։ Երկուսի մեջ էլ ձևի տարբերությունը կարելի է բացատրել կապադովկիական արտասանությամբ։ Արիստակես անունը մեր մեջ մտավ առաջին անգամ Կապադովկիայից։ Լուսավորչի որդին՝ Արիստակեսը ծնվել էր Կեսարիայում և այնտեղ էլ ստացել իր անունը։ Նիկիայի ժողովի արձանագրության մեջ էլ Արիստակեսը կոչված է Արիստարքոս (տես ցածը)։

—1. **Արիստակես** (սուրբ), կաթողիկոս Հայոց «325—333 թ»․ Գրիգոր Լուսավորչի կրտսեր որդին էր, որ ծնվել էր Կապադովկիայում, շուրջ «264 թ»։ Մեծանալով և կրթվելով Նիկոմաքոս ճգնավորի մոտ, նվիրվել էր այնտեղ ճգնական կյանքի և բնակվում էր անապատում։ Երբ Լուսավորիչը թողնելով ժողովրդի հովվությունը, քաշվեց Մանեա այրը, Տրդատը հրավիրակ ուղարկեց Կապադովկիա և բերել տվեց Արիստակեսին և նրա երեց եղբայր Վրթանեսին։ Արիստակեսը ձեռնադրվում է եպիսկոպոս՝ Լուսավորչի ձեռքով «310 թ» և դառնում նրա օգնականը։ Ասում են թե Արիստակեսի ձեռնադրությունը եղել է Եկեղեաց Ս. Կարապետ վանքում, որ Լուսավորիչն էր շինել (Թորոս աղբար, Բ. 326)։ «325 թվին» գնում է Նիկիա՝ հոր փոխարեն մասնակցելու տիեզերական ժողովին և նույն թվի վերջին դառնում է Հայաստան, իր հետ բերելով Նիկիայի ժողովի կանոնները և Հավատամքը։ Այսօր էլ Նիկիայի լճի շրջաբնակ հայ գյուղացիք նույն լիճը կոչում են «Արիստակեսի լիճ» ի հիշատակ այս հայրապետի (տես Տաճար, 1913, էջ 275)։ Նիկիայի ժողովի արձանագրության մեջ, անդամների անվանացանկում Արիստակեսը կոչված է «Արիստարքոս, Արիտսեկիսոս, Արսափիոս եպս. Հայոց Մեծաց» (տես և Տաշեան, Ագաթ. 149)։ Լուսավորչի մահից հետո, սկսած «325 թվից», Արիստակեսը նստում է կաթողիկոս և կառավարում իր հոտը՝ մինչև «333 թ»։ Նա հանդիմանում էր խստությամբ հեթանոսաբարո նախարարներին, որոնցից մեկը՝ Ծոփաց Արքեղայոս իշխանը՝ չկարենալով տանել նրա կշտամբանքները, սպանեց նրան։ Հայրապետի մարմինը թաղվեց Եկեղեաց գավառի Թիլ ավանում։—Ագաթ. § 859, 861—2, 873, 884—5, Արաբ. Ագաթ. 73, 74, 81. Բուզ. Գ. բ, ե, ժ. Կղկնտ. Ա. ժզ (հրատ. Էմինի). Լծ. կոչ. 166. Յայսմ. մրտ. 2, յունվ. 19, սեպտ. 7, նոյ. 18, դեկտ. 1. Յհ. կթ. Թ, ժ. Կիր. 7,

8. Վրդ. ժը, խղ. Վրդն. լս. 47. Գիրք թղ. ի, ծզ. Շնորհ. վիպ. 681, 713, 727. պտճ. 182. թղ. 322. Մխ. աս. թ. Գր. տղ. 74. Ներբ. յորդ. 4, 9—11, 32, 40. Օրբ. հա. Մխ. անեց. դ. Մեծոփ. յիշ. գ. Նղշ. լատ. 420. Տաթև. ձմ. ղղ, ղէ. հարց. 542, 548. Վրգն. աշխ. 529. Սամ. անեց. 65. Մխ. այրիվ. 20. Քհնպ. 270. —Առիստակէս՝ Գիրք թղ. ը, թ, ձբ, ձէ. Մեսր. եր. 10. Մագ. թղ. խզ.—Իստակէս՝ Կնիք հաւ. 133. Խոր. Բ. ձթ—ղա. Սեբ. խդ. Ուխտ. Ա. հզ. Գիրք թղ. ծէ. Ասող. Բ. ա. Գ. խա. Կղկնտ. Ա. ժդ (հրատ. Շահն.). Ջեն. 22. Յհ. կթ. հյր. 273. Շար. կէ=էջ 467. Վրդ. ի. Մխ. աս. իթ. Մ. մաշտ. 331 ա. Յայսմ. սեպտ. 30. Սամ. անեց. 64. Շապհ. 249. Եղն. եր. 268.—Ըռստակէս՝ Լծ. կոչ. 73. —Աստգէս՝ Մեսր. եր. 10.—Ոռստակէ՝ Վրաց. ազր. Ա. 77.—սեռ. Արիստակէսի՝ Յհ. կթ. ժ. Վրդն. աշխ. 509. Յկ. կր. 11. Առաք. պատմ. 173, 233. Յզ. մոկս. և դաւթի 71.—Արիստակիսի՝ Կիր. 9. Մ. մաշտ. 336ա. Վրդն. լս. 44. Ճշ. 572. Պտրգ. 690. Ժմ. 946. Յայսմ. դեկտ. 1. Քհնպ. 270.—Առիստակէսի՝ Գիրք թղ. ձզ.—Առիստակիսի՝ Պտրգ. 506.—Արիստակայ՝ Բուզ. Գ. բ.—Ոստակէսի՝ Վրդն. աշխ. 518. Յհ. կթ. հյր. 273.—Ոստագիսի՝ Ագաթ. 398.—Ոստակիսի՝ Խոր. Բ. դ. (ցանկում՝ Արիստակայ). Արծր. Դ. ժբ. Մեսր. եր. 11. Թղթ. դաշ. 29. Երզն. լս. 137. Ներբ. յորդ. 19. Պտրգ. 547. Լմբ. մատ. 218. —Ըռիստակիսի՝ Պտրգ. 564.—Ոստակեայ՝. Խոր. Բ. ղ, ղա (ցանկում՝ Արիստակայ), Գ. բ.—բցռ. ի Ոստակիսէ՝ Մաշտ. էջ 71. Անան. խոստ. 5. Սամ. անեց. 65.—գրծ. Արիստակիսաւ՝ Ագաթ. §866.—Զամչ. Ա. 398—419, 646—7. Աւգերեան, Լիակ. վրք. սրբ. Գ. 481. Ազգապ. 117—124. Յուշիկք, Ա. 353—372։

— 2. Ոստակէս քահանա, գրել տվեց Մխիթար գրչին մի Աւետարան, 1040 թ.—Ձեռ. Դաշեան, Բ. 28 բ։

— 3. Արիստակէս վարդապետ Լաստիվերտցի, պատմիչ ԺԱ դարու. գրել է Բագրատունեաց թագավորության անկման և Սելճուքեան արշավանքների պատմությունը՝ շատ սրտառուչ և բանաստեղծական լեզվով.—Մխ. անեց. ե. Մխ. այրիվ. 37, 72. Առաք. պատմ. 480.—Ըռստակէս՝ Կիր. 4.—սեռ. Արիստակեայ՝ Լաստ. ա.—Նույն է և «Սայլահանն կամ Լաստիվերտցին», նշանավոր վարդապետ ԺԱ դարում՝ Ուռհ. 179 (առանց հիշելու անունը)։ —Արիստակէսին է վերագրվում նաև Ծննդեան վրա մի գրվածք, որի օրինակը գտնվում է Պարիզի Bibliothèque Nationale-ում (տես Manus. bibl. nat. էջ 156)։—Արիստակէսի անունով է դարձյալ «Սրբոյն Առիստակիսի Հայոց վարդապետի վասն ու-

Թորեայ նաւակատեացն, որ զկնի Աստուածայայտնութեանն կա-
տարին», որ անտիպ է (Ձեռ. Վենետ. Բ. 76)։—Զարբ. Հին դպր.
542—5, Չամչ. Ա. 15, Բ. 948, 988. Ազգապ. 1272։

— 4. Արիստակէս կրօնաւոր, գրիչ. Սամոյ մօտ՝ Տաւրոս
լեռան Միջնադրիւր վանքում գրեց Աւետարանը՝ հրամանաւ Մե-
լեքսեթի իշխանուհու՝ կնոջ Վիգէն իշխանի Սասնոյ, ի հիշատակ
իր վաղամեռիկ դուստր Կատայի, 1169 թ.—Թորոս աղբար, Բ.
317, Հայապ. 395։

— 5. Ռոստակէս, գրիչ. օրինակել է Աւետարանը 1182 թ.—
Ձեռ. Դաշեան, Բ. 47 ա։

— 6. Ռոստակէս ոմն, գրիչ կամ ստացող Աւետարանի, 1190
թ.—Ձեռ. Դաշեան, Բ. 35 բ։

— 7. Արիստակէս վարդապետ, աշակերտել է Գրիգոր Սկե-
ւռացուն (Չամչ. Գ. 168). ժամանագիր. ունի «Արուեստ գրչութեան»,
որ լրացրել է Գէորգ Սկեւռացին (ԺԳ դար), և «Ուղղագրական
Բառգիրք», որից քաղվածքներ ունի Յովհ. Երզնկացին. ըստ այսմ
պետք է լինի ԺԲ դարից.—տես. Արիստակէսի՝ Մեծոփ. 52.—
Ըռքստակիսի՝ Երզն. պտճռ. 89.—Զարբ. Հին դպր. 719. Հայապ.
510. Տաշեան, Ցուց. 1064 գ. Սիսուան 101—3։

— 8. Արիստակէս, վանահայր Ս. Գրիգորի վանից Դարա-
նաղեաց գաւառի, 1201 թ.—Ձեռ. Սեբ. (ՀԱ 1924, 247)։

— 9. Ռոստգէս, երաժիշտ Ղազարու վանից. մի քանի ուրիշ
անձերի հետ օգնեց գնելու գերի ընկած Թանկագին մի Ճառըն-
տիր, 1205 թ.—Ձեռ. Վենետ. Բ. 472. Հայապ. 449։

— 10. Տէր Արիստակէս, գրոց աշակերտ, մեռել է 1251 թ.
Թւում է իր շիրիմը Խուլէի վանքում (Թորոս աղբար, Բ. 354)։

— 11. Առիստակէս վրդ. ուսուցիչ Սիմէոն արքեպիսկոպո-
սի, որ էր առաջնորդ Մալաթիայի, 1254 թ.—Թորոս աղբար, Ա.
327—8 (սրանից արտագրում է Նոտարք 174, բայց թվականը
սխալմամբ դնում է 1454. այն է ՋԳ փոխանակ ՉԳ)։

— 12. Ըռքստակէս, հայր Յովհաննէս քահանայի, որ Սիւն-
եաց Բարագնիս մենաստանում գրել տվեց մի Աւետարան, 1280
թ.—Ձեռ. Վասպ. 104։

— 13. Արիստակէս, որդի Մխիթարի. իր երկու եղբայրների՝
Աթանէսի և Յովհաննէսի հետ միասին, Մարտիրոս գյուղում մի
խաչ կանգնեցրին իրենց հոր հիշատակին՝ 1284 թ.—Սիսական
177, Յովսէփեան, Խաղբակեանք 146։

— 14. Ռքստակէս, ճարտար գրիչ, որ Կարապետ կրօնաւո-

րի և նրա եղբայր Թորոս քահանայի համար, Միակեցերի վանքում օրինակեց Աւետարանը, 1313 թ.—Ձեռ. Վենետ. Ա. 708։

—15. Ռոստկես գրիչ. Արտազի Թադէոս առաքեալի վանքում, Վարդանի խնդրանոք գրեց Լամբրոնացու, Շնորհալու և Գր. Սկևռացու գործերը, 1315 թ.—Ձեռ. Սևան. 20 ա։

— 16. Ռոստկես սարկաւագ. անհայտ տմ. 1331 թվին Երուսաղէմում գրված մի Ճաշոցի մեջ գրել է իր հիշատակությունը, բայց 1331 թվից.—REA 10, 58։

—17. Ռոստկես, որդի Իշխանի և եղբայր Բաբերդցի Մկրտիչ վարդապետի, որ գրել տվեց մի Աւետարան, 1344 թ.—Ձեռ. Սեբ. =ՀԱ 1926, 237։

—18. Ըռոստկես, որդի Գրիգորի, եղբայր Ստեփանոս քահանայի, որ մի հին Աւետարան գնելով, նորից կազմել ու ծաղկել տվեց, 1348 թ.—Manus. brit. mus. 8 բ։

—19. Արիստակես վրդ. իր աշակերտ Եփրեմի հետ գրել է Մեկնութիւն Մատթէի Աւետարանի, քաղելով Ոսկեբերանից և ուրիշ մեկնիչներից. բնագիրը համարվում է 1355 թվից (տես Նորայր, Հայկ. բառաքնն. էջ 22)։ Զարբ. Հին դպր. 703 դնում է ԺԲ դար։ Համաձայն մի հին վավերական հիշատակության՝ Շնորհալուց (մ. 1173) հետո է (տես Ձեռ. Պետերբ.=ՀԱ 1892, 113 բ)։ Նույնը հաստատում է նաև Ձեռ. Դաշեան, Բ. 48 ա։ Թերևս նույն հեղինակից են «Ճառ Նաւակատեաց» և «Ի խորհուրդ Ոտնլուայինս»։ Իսկ ըստ Ձեռ. Դաշեան, Ա. 91 բ Արիստակէսը աշակերտն է Շնորհալու, իսկ Արիստակէսի էլ աշակերտն է Անանիա. այս երկուսը (Արիստակէս և Անանիա) համառոտեցին Շնորհալու կազմած Մեկնութիւն Մատթէի, որ հետո Յովհան Ծործորեցին լրացրեց։

— 20. Արիստկես Սեբաստացի, միաբան Կոխմխի Ս. Աստուածածին Աւագ վանից, աշակերտ Գէորգ վարդապետի, գերի ընկած և թերատ մի Աւետարանի պակասորդ մասերը գրեց և նորից կազմեց՝ 1383 թ.--Ձեռ. Հալէպի, Ա. 79 բ։

— 21. Արիստկես քահանա, գրիչ. օրինակել է Խրիմում մի Ժողովածու, 1386 թ.—Manus. bibl. nat. էջ 64։

—22. Արիստկես վրդ. տաղասաց. ունի զանազան տաղեր (ԺԵ դար). տես Տաշեան, Ցուց. 1065 ա։—Արիստկես երեց տաղասաց ունի նաև Manus. brit. mus. 119 բ, բայց ձեռագիրը 1412 թվին գրված լինելով, տաղասացը ԺԴ դարից ուշ չի կարող լինել։—Կա և Արիստկես, որ գրել է Ողբ մեռելի (Ձեռ. Դաշեան, Ա. 48 ա)։

—23. Արիստակես գանձասաց. իր գանձերից մեկը տես Ձեռ. Դաշեան, Ա. 25 ա (ժամանակն անհայտ. բայց ամենաուշը ԺԴ դար, որովհետև ձեռագիրը գրված է 1436 թ):

— 24. Ռստակես Սեբաստացի, գրիչ. Աւագ վանքում օրինակեց «Բաղումածոյ աստուածաբանութեան ի հաւաքմանէ Գրիգորի Տաթևացւոյ», 1412 թ.—Նոտարք 40:

— 25. Արիստակես գրիչ, Աւագ վանքում օրինակել է Գր. Տաթևացու Լուծմունք Ներածութեան Պորփիւրի, 1412 թ.—Ձեռ. Կարին. 196, Նոտարք 40:

—26. Արիստակես Քաջբերունի, «եղբայր ծառայիս» (պատմագիր Թովմա Մեծոփեցու). Ամիւկի բանակալ Փիրալիի ձեռքով կրակի մեջ գցվեց և նահատակվեց հավատքը չուրանալու համար «1420 թ».—Մեծոփ. 111. Նոր վկ. 231. Ազգապ. 2055, Նոտարք, էջ 147:

— 27. Արիստակես վարդապետ, ուսուցիչ Յովսէփ կրոնավորի, որ Կիւրղի անապատում օրինակեց մի Աւետարան, 1432 թ., երբ Արիստակեսը մեռած էր:—Ձեռ. Սեբ.=ՀԱ. 1926, 47:

— 28. Արստակես Երզնկացի, որդի Պատուականի և եղբայր ոսկերիչ տանուտեր Յովհաննէսի, որ Արճէշում, Կարապետ գրչին գրել տվեց մի Աւետարան, 1433 թ.—Ձեռ. Վասպ. 367:

— 29. Ռստակես երեց, որդի Հայրապետի, ստացավ մի Աւետարան, 1435 թ.—Ձեռ. Թաւր. 12 բ:

— 30. Արիստակես, հարազատ Մաթէոս գրչի ի Նորավանս, 1456 թ.—Զարբ. Թրգմ. 727:—Սրա հետ նույն է Արիստակես, հարազատ Մաթէոս գրչի, որ օրինակեց Գիրք Թղթոցը 1426—76 թ.—Կարապետ եպս.՝ Դոփեանք 189:

— 31. Ըրստակես կրոնավոր ոմն. հիշված 1456 թ.—Ձեռ. Վասպ. 425:

— 32. Ռստակես երեց, պապ Նիկողայոս եպիսկոպոս Ախքիրմանցու, որ օրինակեց Ճաշոցը՝ 1460 թ.—REA 10, 62:

— 33. Արիստակես, որդի Աստուածատուր Գաւնուկ քահանայի և եղբայր Ներսէս աբեղայի, որ պատճառ եղավ մի Աւետարան գրելու և նվիրելու Աւագ վանքին, 1469 թ.—Թորոս աղբար, Բ. 364, Ձեռ. Վենետ. Ա. 752:

— 34. Արիստակես Բ Աթոռակալ, կաթողիկոս Հայոց «1465—1469 թ». Նախապես (սկսած «1448 թվից») աթոռակից էր Գրիգոր Ժ Մակուեցի կաթողիկոսին. «1462 թվին» կոնդակ է գրել Լեհաստանի հայերին (հրատ. Կամենից, էջ 225—227).

Զաքարիա Աղթամարցու ժամանակ վտարվեց գահից. բայց հաջորդ տարին նորից դարձավ իր աթոռը. Գրիգորի մահից հետո, «1465 թվին», եղավ կաթողիկոս Հայոց, իրեն աթոռակից ունենալով Սարգիս Բ-ին.—Ամիրտ. օգ. բժշ. 8. Առաք. պատմ. 336—337. Ջամչ. Գ. 501—6. Այրարատ 148. Ազգապ. էջ 2145, 2167, 2171։

— 35. **Առիստակէս**, որդի Ստեփանոս քահանայի, որ Հերմոնի վանքում գրել տվեց մի Ավետարան, 1469 թ.—Ձեռ. Թավր. 132 բ։

— 36. **Առիստակէս** քահանա, միաբան Երուսաղէմի Ս. Աստուածածին վանից. օրինակել է Ոսկեփորիկը՝ 1473 թ.—Տաշեան, Ցուց. 449 բ։

—37. **Ըռըստակէս** աբեղա, գրիչ. Բաղէնց անապատում, Յովհաննէս աբեղայի համար օրինակեց Ավետարանը, 1475 թ.—Ձեռ. Վասպ. 480։

—38. **Առիստակէս** կաթողիկոս Աղուանից. հաջորդել է Մաթէոսին՝ 1473 թ. իրեն հաջորդեց Ներսէս՝ 1478 թ.—Ձեռ. Դաղեան, Ա. 89 բ։

—39. **Առիստակէս** աբեղա, միաբան Խոյալու վանից, ուր օրինակեց Ավետարանը 1481 թ.—Թորոս աղբար, Բ. 445։

— 40. **Առիստակէս** կրոնավոր, գրիչ. Սանահնի վանքում, իր հարեղբորորդի Յովհաննէս վարդապետի համար գրեց մի գեղեցիկ Շարակնոց, 1497 թ. (ՀԱ 1887, 56 բ)։

— 41. **Որստակէս**, որդի Կիրակոս քահանայի, որ Ամ գյուղում գրել տվեց մի Ավետարան, 1497 թ.—Ձեռ. Նոր-Բայազ. 16 բ։

— 42. **Առիստակէս** Գ. աթոռակալ Սարգիս Գ կաթողիկոսի՝ «1486—1499 թ».—Առաք. պատմ. 337, Ազգապ. 2200։ Ջամչ. Գ. 509 (դնում է հաջորդ Սարգսի՝ 1490—1498 թ)։

— 43. **Առիստակէս** կաթողիկոս Աղուանից, հաջորդեց Առաքելին՝ 1516 թ. իրեն էլ հաջորդեց Սարգիս Ղշլաղեցին. Առաքելը նստել է մինչև 1493 թ. ուրեմն բաց է մնում 1493—1516 թ.—Ձեռ. Դաղեան, Ա. 89 բ։

—44. **Առիստակէս** Դ, կաթողիկոս Հայոց. թվի աթոռակից Միքայէլ Սեբաստացու. նստել է «1555—64 թ».—Այրարատ 231 (այլուստ անծանոթ լինելով՝ չի ընդունում Ազգապ. 2246)։

—45. **Առիստակէս** Քոլատակեցի. կաթողիկոս Աղուանից. գահակալել է 1588 թ. իրեն էլ հաջորդեց Մելքիսեթ 1593 թ.—Ձեռ. Դաղեան, Ա. 89 բ։

— 46. Արիստակէս *վարդապետ Բարկուշատցի, միաբան Հառանց անապատի (1610 թ). հիմնեց Տանձափարախի անապատը, ուր մնաց մինչև մահը.—Առաք. պատմ. 193։ Սրանից տարբեր է՝*

— 47. Արիստակէս *վարդապետ Շամբեցի, Սարգիս պարոնտերի մահից (1620) հետո եղավ առաջնորդ Հառանց անապատի, ուր և մեռավ։—Առաք. պատմ. 193, 201։*

— 48. Արիստակէս *(Խարբերդցի?), տաղասաց ԺԷ դարու. տես Ցուցիկք, Բ. 125։ Հմմտ. հաջորդը։*

— 49. Արիստակէս *վրդ. Խարբերդցի. փոքր մատենագիր ԺԷ° դարու. ունի «Թուխաթցի Պաղտասարի հարցմունք ումեմն վասն անգիտելի աւուրն և ժամուն... և պատասխանի Արիստակէս վարդապետի «զոր ինչ գիտէ հայր...», որ քաղել է Գր. Տաթևացու գործերից։ Ձեռագիրը ԺԸ դարից է։—Ձեռ. Դաշեան, Ա. 93 բ։—Արիստակէս վրդ. Խարբերդցին հայտնի է այլուստ իբրև աշակերտ Մարտիրոս Ձնքուշեցու (տես Թորոս աղբար, Բ. 484 և Տաշեան, Ցուց. 1032 բ)։*

*ԱՐԻՖ, *իգ? < արաբ.* عارف ʻārīf *կամ* عريف ʻarīf *«գիտուն», իգականն է* ʻarīfa. *իբրև անձնանուն գործածվում է նաև Տաճիկների մոտ։ Մեր մեջ մի անգամ հիշված է՝ անհայտ թվականով մի հիշատակարանում, Ձեռ. Վիեննա. Ա. 790։*

ԱՐԽԱՆ, *արական անձնանուն էր արդյոք, որից կազմված է* Արխանեան *ազգանունը։*

†ԱՐԾԻՒ, *ար. < հյ.* արծիւ *բառից. քիչ անգամ գործածվում է Կովկասում, իբրև անձնանուն։*

+ ԱՐԾՈՒԻԿ, *իգ. < հյ.* արծիւ *բառի փաղաքշականն է. գործածական է այժմ, բայց հնից հայտնի չէ։*

*ԱՐԿԱԴԻՈՍ, *ար. < հուն.* Ἀρκάδιος, *լատ.* Arcadius, *որ նշանակում է բուն «Արկադիա գավառից (Պելոպոնեսի), Արկադիացի». գործածական էր իբրև անձնանուն. նշանավոր է օրինակ՝ Արկադիոս, որդի Թեոդոսի, կայսր Հունաց 395—408 թ։ Մեր մեջ շատ անսովոր է. մի անգամ գտնում եմ գործածված՝*

— Արկադէս, *միաբան Յովհաննավանից, 1687 թ. (տես Էջմ. № 936 ճառընտրի հիշատակարանը)։*

†ԱՐՁԱՆ, *ար. < հյ.* արձան *բառից. հմմտ.* Սանամ *իգական անունը, որ նույնպես նշանակում է «արձան (գեղեցկության)»։*

— 1. Արձան, *գլխավոր քուրմ Գիսանէի, որ կոչվի դուռս*

եկավ Լուսավորչի դեմ և մենամարտելով Անգեղտան իշխանի հետ, սպանվեց (Դ դար).—Զեն. 25—27, 31.—սեռ. Արձանի՝ Զեն. 27, 39.—Սարգիսեան, Աստթ. և իւր բազմ. գաղտ. 123։

— 2. Արձան Արծրունի, աշակերտ Ս. Մեսրոպի, երեց թարգմանիչների խմբից. իր ընկեր Յովհանի հետ գնաց Կեսարիա և Բիւզանդիոն «424 թ», հունարեն սովորելու և թարգմանությամբ պարապելու։ Սրա անունով հայտնի է «Հարցմունք Արձանայ և պատասխանիք Եղնկայ».—Խոր. Գ. կ. Դաւ. անյ. 99. Եղն. եր. 267. Վրթ. քերթ. պտկ. 307. Կիր. 16. Վրդ. իե, իէ. Պատմ. սահ. 14. Առաք. լծ. սահմ. 170. ZAPh 1, 206. Յայսմ. սեպտ. 17. տես և Տաշեան, Յուց. 207 բ.—գրծ. Արձանաւ՝ Փարպ. Ա. —հետևինների մոտ ստացել է թագավորի տիտղոս. տես Սարգիսեան, Նւագր. ներած. էջ կէ.—Հայաստ. 50.—տես և Արջևան անունը։

*ԱՐՂԵՒԱՆ, ար. < պրս. ارغوان arġavān «ծիրանի, lilas ծաղիկը, որ Երևանում սխալմամբ կոչվում է յասաման»։ Տես և Արջևան։

— Արղուան Արծկեցի. ստացող. Յովհաննէս գրչին գրել տվեց մի Աւետարան՝ 1482 թ.—Ձեռ. Պետերբ. (ՀԱ 1892, 84 բ, 85 ա)։

*ԱՐՂՈՒԹ, ար. < չաղաթ. ارقت arġut, որ և ارقون arġun «թիկունք, կռնակ» (տես Будагов, Сравн. слов. 1, 29 բ՝ թրք. ارقا arqa բառի տակ)։ Ըստ այսմ Արղուք և Արղուն անունները համանիշ են։ Սրանից է ծագում Արղուքյան ազգանունը։

— 1. Արղուք, որդի Ճարի, թոռն Ումեկ իշխանի, որ շինեց Տփղիսի Ս. Գէորգ եկեղեցին 1251 թ. հիշված է իբրև իշխան Գետկայ՝ 1283, 1291 և 1345 թվերին.—Յովսէփեան, Նիւթեր և ուս. Ա. 9, 10։

— 2. Արղուք, որդի Զումիի, եղբայր Զարխիկի, թոռան թոռ Պողի՝ մեծ իշխանի Խաչենի. մեռած էր նախ քան 1385 թ.— Այրարատ 269, Հայապ. 529 (մահացել է Լէնկթիմուրի արշավանքին)։

— 3. Արղուք, որի թոռ Շահանշահը ստորագրում է սահմանի պայմանագրին 1458 թ.—Նոտարք 187։

— 4. Արղուքայ, Պողեան տոհմից, թոռն մեծ Զումայի, իշխան Վայոց ձորի 1498 թ.—Կարապետ եպս.՝ Դոփեանք 95, Յովսէփեան, Խաղբակեանք 237։

— Արղուք անունը հիշված է նաև 1666 թ. (Ձեռ. Վատպ.

928) և անթվական մի հիշատակարանում (Ձեռ. Թավր. 6 բ)։ Իսկ Արղութայ ձևով՝ գարձյալ անթվական մի խաչքարի վրա, Վայոց ձորում (Սիսական 111)։

*ԱՐՂՈՒՆ, իգ. ծագումը տես Արղուբ։ Թաթարական անուն էր. նշանավոր է օր. թաթար Արղուն խանը (1284—1287 թ), որի պատմությունը տես Օրբ. ժմ. 30—31։ Այս անունը մեր մեջ ընդհանրապես իգական է, մի անգամ էլ արական է գործածված։ Բայց երկու սեռերը իրարից զանազանելու համար ձևացել են համապատասխան Արղունմելէք իգ. և Արղունշահ ար։

— 1. Արղուն տիկին, դուստր Դավիթի. կազմել տվեց Ներսեսի ձեռագիրը, որ Ներսէս երեցը գրել էր Թավրիզում, 1377 թ. —Ձեռ. Դաղեան, Ա. 55 ա։

— 2. Արղուն, կին Սիմէոնի և մայր Մինասենց Թումայ աբեղայի, որ նշանավոր գրիչ էր և Աղթամարում արտագրել է մի Ավետարան 1420 թ. (Ձեռ. Վասպ. 323), մի ուրիշը 1425 թ. (Ձեռ. Վասպ. 353), մի երրորդը 1428 թ. (Նոտարք 89). ծաղկել ու կազմել է մի Ավետարան՝ 1444 թ. (Ձեռ. Վասպ. 387—8)։— Ակինեան, Գավազանագիրք 110։

— 3. Արղուն, դուստր տանուտեր Յոհաննէսի, որ գրել տվեց մի Ավետարան, Մոկաց Փառավանք գյուղում, 1455 թ.— Ձեռ. Վասպ. 421 (տպ. Արղուն)։

— Արղուն իգ. անունը հիշված է նաև 1509 թ. (Ձեռ. Վասպ. 641), 1593 թ. (անդ 736) և անհայտ թվականով (անդ 363, նաև Ձեռ. Նոր-Բայազ. 31 բ)։

— Արղուն իբր ար. հիշված է 1686 թվից ավելի ուշ գրված անթվական մի հիշատակարանում (Ձեռ. Թեհր.=ՀԱ 1935, 399)։

*ԱՐՂՈՒՆՄԵԼԷՔ, իգ. <նախորդ Արղուն անունից+արաբ. ملك melek «հրեշտակ»։ Գործածված է ԺԵ դարում։

— 1. Արղունմելէք, նույն Արղունն է, մայր Թովմա աբեղայի Մինասենց. հիշված է 1444 թ. մերթ Արղուն ձևով (տես վերը № 2) և մերթ Արղունմելէք ձևով (Ձեռ. Վասպ. 393, սխալ տպված Արշուն-մէլէք)։

— 2. Արղունմելէք, կին Ստեփաննոս քահանայի և մայր Առաքել քահանայի, որ Աղթամարում Դանիէլ գրչին գրել տվեց մի Ճաշոց՝ 1444 թ.—Նոտարք 134։

— 3. Արղունմելէք, դուստր Սէթի և քույր Գրիգոր աբեղա-

գրչի, որ Աղթամարում, Զուլալ խաթունի համար օրինակեց Աւետարանը 1470 թ.—Ձեռ. Վասպ. 460։

*ԱՐՂՈՒՆՇԱՀ, ար. <նախորդ Արղուն անունից+պրս. شاه šāh «թագավոր»։ Գործածված է ԺԵ դարում։

— 1. Արղունշահ, շնորհեց իր Գանձարանը Մանուէլ քահանային՝ օրինակելու համար, 1478 թ.—Ձեռ. Դալեան, Ա. 39 բ։

—2. Արղունշայ, որդի Արղունանի, որ Արծկէում գրել տվեց մի Աւետարան՝ Յովհաննէս գրչին, 1482 թ.—Ձեռ. Պետերբ. (ՀԱ 1892, 84 բ, 85 ա)։

ԱՐՄԱԶԱ, ար. ծագումն ինձ անհայտ։ Կա Արմազ լեռան՝ Գուգարաց կողմերը, Վրաց սահմանում, ուր շինվեց Ծամշուլդէ քաղաքը։ Ավանդված է մի անգամ ԺԵ դարում՝ հյց. զԱրմազեն և սեռ. Արմազին ձևով։

— Արմազա, ամուսին Խաթուն-մէլէքի՝ հորաքրոջ տանուտեր Սադաղայի, որ Աղթամարում գրել տվեց մի Աւետարան, 1476 թ.—Ձեռ. Վասպ. 480—481։

*ԱՐՄԱՂԱՆ, իգ. < պրս. ارمغان armaġān «նվեր» բառից. մի անգամ հիշված է 1671 թ. (Bodleian 161)։

*ԱՐՄԱՅԷԼ, ար. < իրան. Armāil ձևից. այս անունով հայտնի է ارمایل Armāyil պարսիկ ազնվական, որ Բիւրասպի ուսերից ծնված օձերն էր կերակրում (ըստ Շահնամէի). նույնպես Արմայէլ թագավոր Վրաց (Justi 26—27)։

— Արմայէլ, որդի պարսիկ Միհր կամ Միհրան իշխանի, տէր Գարդմանի (Է դար). Արմայէլի որդին է Վարդ, Վարդի որդին Վարդան, ապա Վարդ, ապա Վարազման.—Կղկնտ. Բ. ԺԷ. Գ. իգ (տպ. Շահն. Արմայիլ)։—Այս շարքից տանելով Մխ. այրիվ. 23 կարգում է Աղուանից թագավորների շարքը՝ Միհր, Արմայէլ, Վարդ, Վարդան ևն)։

ԱՐՄԱՅԻՍ, ար. ծագումն անհայտ. պատահական նմանություն ունի ասոր. rəmīsā «քաղցր, մեղմ, քաղցրաբարոյ»։ Հայտնի է միայն Հայկազեան նահապետներից մեկը. անցյալ դարում նորից կենդանացավ այս անունը և ժողովրդի մեջ գործածական դարձավ։ Կրճատ ձևերն են Մոյիս, Արամ, Ղարաբաղում դարձել է Առմավիս։

— Առմայիս, նահապետ Հայկազանց, որդի և հաջորդ Արմենակի. շինեց Արմաւիրը, որ կոչեց իր անունով. գահակալել է ըստ Չամչ. Ն.Ք. 1980—1940, այն է 40 տարի.—Խոր. Ա. ե, ժբ. Յհ. կթ. բ. Ուխտ. Ա. է, ժգ. Մխ. անեց. գ. Շնորհ. վիպ. 128.

Կղկնտ. Ա. ժե (հրտր. Շահն.). Վրդ. է. Սամ. անեց. 11, 42. Մին. համզ. 3. Մխ. այրիվ. 17, 45. Վրաց ազգ. Ա. 74.—Արամայիս՝ Սեբ. ա. Ուխտ. Ա. ժդ. Կղկնտ. Ա. ժե (հրտր. Էմինի). Մին. համզ. 4. Նհպտք. 88.—սեռ. Արմայիսայ՝ Շնորհ. վիպ. 129. Սամ. անեց. 42.—Արամայիսայ՝ Մին. համզ. 4.—Արամախսեայ (Արամօսեայ; Արամուսայ)՝ Խոր. Ա. ե.—ած. Արմայիսեան՝ Մագ. Թղ. ժԹ։—Զամչ. Ա. 69, 70, 171։

*ԱՐՄԱՆ, իգ. < պրս. آرمان ārmān «փափագ, կարոտ»։ Ունենք մի անգամ ԺԴ դարից։

— Արման խաթուն, դուստր Ասլեր տիկնոջ, որ Կարապետ երեցին գրել տվեց մի Ճաշոց, Երուսաղէմ 1333 թ.—REA 10, 56։

*ԱՐՄԱՆԻ, իգ. (ասվում է հատկապես Արմանի խաթուն) < պրս. ارمنی armanī «հայ» բառից. գործածական էր ԺԵ դարում։ Նույնը նաև Հայխաթուն ձևով՝ տես Ջեռ. Վասպ. 419 ա։

— 1. Արմանի հաթուն, «տարաժամ մահուամբ» հանգուցյալ դուստր Կարապետ քահանա գրչի, որ Աղթամարում, Յովհաննէս տանուտերի համար օրինակեց Աւետարանը, 1436 թ. և մի ուրիշ Աւետարան էլ տանուտեր Մկրտիչի համար՝ 1441 թ.—Ջեռ. Վասպ. 376, 383։

— 2. Արմանի խաթուն, դուստր Ծերունի և քույր Յովհաննէս կրոնավորի, որ գնեց մի հին Շարակնոց և նորոգել տվեց 1465 թ.—Rapport Belgique 145։

— Արմանի հաթուն հիշված է նաև անթվական մի հիշատակարանում՝ Ջեռ. Վասպ. 187։

†ԱՐՄԱՆՈՅՇ, իգ. նորակերտ անուն, որ սարքվել է Արևմտահայոց մեջ՝ Արմէն+անոյշ բառերից, իբր «դուստր Արմէնի»։

†ԱՐՄԱՒԵՆԻ, իգ. < հյ. համանուն ծառի անունից. գործածական է Արևմտահայոց մեջ։ Տես Թամար։

*ԱՐՄԵԼԷՖ, իգ. համառոտված է Ամիրմելէֆ անունից (տես վերը), ինչպես ունենք Արազիզ՝ կրճատված Ամիրազիզ ձևից։ Հիշված է ԺԵ դարում։

— 1. Արմէլիֆ, դուստր Ամիր-Հասանի և քույր Ամիրդօլի (որ տես վերը). հիշված է 1450 թ.—Նօտարք 164։

— 2. Արմելիֆ, կին Ամիրշահի և մայր Ղազար գրչի, 145? թ.—Ջեռ. Թաւր. 103 ա։

— 3. Արմելէֆ, մերձավոր Փաշա-մելիքի, որ իր ամուսնու հիշատակին մի Աւետարան գրել տվեց 1458 թ.—Ջեռ. Վասպ. 428։

ԱՐՄԵՆԱԿ, ար. Խորենացու հնարած անուններից է, իբրև նահապետ Հայկազանց, հնում ուրիշ անգամ բնավ չէ գործածված.

վերակենդանացավ անցյալ դարում և այժմ շատ գործածական անուն է։ Կրճատ ձևն է Արմեն, որից էլ կազմված է Արմենեան ազգանունը։—Պատահական նմանություն ունի պրս. Armin. այս անունով է կոչվում Kaī Armin, չորրորդ որդի Պարսից Քեյքոբադ Թագավորի (Շահն. 1, 382). այսպես նաև Armani իրանցի քաջ (Շահն. 7, 352)։

— Արմենակ, նահապետ Հայկազանց, որդի և հաջորդ Հայկի, ծնված էր Բաբելոնում և հոր հետ չվեց Հայաստան։ Հոր մահից հետո նվաճեց Հայաստանի հյուսիս-արևելյան մասը և հասավ մինչև այն սարը, որ իր անունով կոչվեց Արագած։ Իշխել է ըստ Ձամչ. Ն.Ք. 2020—1980 թ., այն է 40 տարի։ Իր որդին և հաջորդն է Արմայիս։—Խոր. Ա. ե, թ—ժբ. Կղկնտ. Ա. ժե. Մխ. համդ. 2, 3. Նհպտք. 88.—այլ ձևեր են՝ Արմենենակ՝ Խոր. Ա. ժբ. Կղկնտ. Ա. ժե (հրատ. Էմինի).—Արմանենակ՝ Մխ. այրիվ. 44. Սամ. անեց. 41.—Արամենակ՝ Սեբ. ա. Ուխտ. Ա. է.—Արամանենակ՝ Սեբ. ա (հրատ. Պատկ. էջ 2, 5). Յհ. կթ. բ. Ուխտ. Ա. ժգ. Շնորհ. վիպ. 115. Վրդ. է. Մխ. անեց. գ. Մխ. այրիվ. 17. Սամ. անեց. 11, 42.—Արմենենկ՝ Վրաց աղբ. Ա. 74.—Արմանենակ ըստ «Այս են քաղաքք և շինողք նոցին» ZAPh 1, 190 շինել է Մենակս քաղաքը.—սխտ. Արմենակայ՝ Խոր. Ա. ժբ. Մխ. համգ. 4.—Արամենակայ՝ Խոր. Ա. ե, ժբ. Սեբ. բ, գ.—Արմանենկայ՝ Խոր. Ա. ժ. Շնորհ. վիպ. 127. Սամն. 17. Վրդ. է.—Արամանենկայ՝ Սեբ. ա, գ. (հրատ. Պատկ. 2, 4—6, 9, 12). Յհ. կթ. բ. Ուխտ. Ա. ժգ (գրված է Արամայ). Սամ. անեց. 41, 42.—Սոսիք Արամանենկայ՝ նշանավոր նվիրական անտառ Արմավիրում, որ կոչվեց Արմենակի անունով. այս անտառում, տերևների սոսափյունից հին հայերը գուշակություններ էին անում. Խոր. Ա. ի.—գրծ. Արամանենկաւ՝ Յհ. կթ. ա.—հիշելու արժանի է, որ ըստ Աքիւղենոսի «Արմենակ եղև հսկառակ Բէլայ, միանգամայն և կենախուզ» Խոր. Ա. ե.—կրճատ Արմէն ձևին են հայում՝ Եկեղեցի Արմենի «հայ եկեղեցի» Նղշ. լառ. 421, արմենագիր բուակն «հայոց թվական» Նղշ. լառ. 423, սխտ. Ասքանազեան Հայկ տոմենին Առաք. Նար. 474.—ըստ Կամուս, Գ. 640 հայոց նախնին է ارمن بن ليطى بن يونان Arman որդի Layṭī-ի, որդի Yūnān-ի։—Ձամչ. Ա. 59, 64, 69։

ԱՐՄԵՆԻԱ (Armenia), իգ. անուն, որ գործածական էր Իտալացոց մեջ ԺԶ դարում, ի նշան համակրանքի դեպի հայերը. Ալիշան ԺԶ դարից ԺԷ դար՝ 80 տարվա շրջանում գտել է 40-ից ավելի անձ այս անունով (Հայ-Վենետ. 390, Սիսական 477 ա)։

**ԱՐՄԵՆԻՈՍ**, ար. < Armenia բառից։

— Արմենիոս, մորը հետ նահատակվեց Եգիպտոսում, հունիս ամսի 2-ին (թվականն անհայտ).—Ալիշան, Արշալ. քրիստ. էջ 84։

**ԱՐՄԵՆՈՍ**, ար. < Armenia բառից։

— Արմենոս Թեսալացի, ընկեր Յասոնի (Արգոնավորդներից). նրա հետ արշավել է Հայաստան. իր անունով էլ մեր երկիրը կոչվում է Արմենիա.—Ստրաբոն Հայոց մասին, էջ 33, 61, 63, Զամչ. Ա. 172։

**ԱՐՄԵՆՈՒՀԻ**, իգ. կազմված է Արմէն անունից՝ -ուհի մասնիկով. իբրև անձնանուն սկսեց գործածվել անցյալ դարում և այժմ էլ շատ սովորական է։

**ԱՐՄԷՆ**, ար. Արմենակ անվան կրճատ ձևն է, որ դարձել է անկախ անուն։

**ԱՐՄԻԿ**, իբրև արական անուն գործածական է Երևանում և համարվում է Արմենակ անվան կրճատ ձևը, իսկ Պոլսում իգական անուն է, իբրև Արմինէ անվան կրճատ ձևը։

**ԱՐՄԻՆԷ**, իգ. նորահնար անուն, որ անցյալ դարում կազմըվեց Արմէն անվան վրայից, Վերգինէ, Սուզինէ, Ադրինէ եւ իգական անունների ձևով։

**ԱՐՄՈԳ**, ար. ծագումն անհայտ։

— Արմոգ, Թագավոր Հայկազն, որդի և հաջորդ Զարեհի. իշխել է ըստ Զամչ. Ն.Ք. 394—385 թ. այն է 9 տարի. իր հաջորդն է Բայգամ.—Խոր. Ա. լա. Սեբ. ա. Յհ. կթ. գ. Մխ. անեց. գ. Վրդ. է. Մագ. թղ. ժթ (համարում է «Արամեան շառաւիղ»). Սամ. անեց. 46. Մխ. այրիվ. 18, 55. Մին. համզ. 12.—Արմոգ՝ Սիմ. ապար. 19.—բց. յԱրմոգայ՝ Յհ. կթ. գ. Սամ. անեց. 46. Մին. համզ. 12.—Զամչ. Ա. 121։

**†ԱՐՇԱԼՈՅՍ** < հյ. արշալոյս բառից. իբրև անձնանուն չէ ավանդված հնից, այլ հնարված է անցյալ դարում, Արևմտահայոց մեջ իբրև իգական, իսկ Կովկասում հաճախ արական, երբեմն էլ իգական։ Փաղաքշական ձևերն են Արշալ, Շալու, Աշիկ, Ալո։

***ԱՐՇԱԿ**, ար. < հպրս. Aršaka ձևից, որ ըստ Müller WZKM 10, 183 նվազականն է arša «արջ» բառի. հմմտ. զնդ. arəša, սանս. ṛkša, հուն. ἄρκτος, լտ. ursus և հյ. արջ։ Ըստ այսմ Արշակ նշանակում է բուն «արջուկ» և այս իմաստով համապատասխանում է ճիշտ լտ. Ursula «փոքրիկ արջ» անձնանվանը։ Ավելի

համանական է սակայն դնել arša «արու» բառից, ինչպես ունի Meillet, Gram. du v. p. 159. այս դեպքում Արշակ համապատասխանում է Արսէն անվան. Bartholomae 203 դնում է երկու ստուգաբանություններն էլ. Արշակ էին կոչվում բոլոր պարթև արշակունի թագավորները, որոնց առաջինն է Արշակ Ա (Ն.Ք. 250—248) և վերջինը՝ Արշակ ԼԱ Արտաւազդ (շուրջ 227 Ց.Ք.) և բոլոր պարթևական դրամների վրա կարդում ենք Βασιλεως Αρσακου (Թագավորին Արշակայ). Ֆիրդուսին կոչում է Ašk (Շահն. 5, 216), որից տոհմը Aškānī «Արշակունի». իսկ ասոր. aršakāya «արքայական» (Հիւբշ. 27). Տառադարձված է հուն. Ἀρσάκης, լատ. Arsaces, արաբ. Ašak. Այս Արշակ անունից ծագեց Արշակունի տոհմանունը, պարթևական թագավորական հարստություն, որի մի ճյուղը իշխեց Հայաստանում.—Ցճխ. 238. Վրդն. սղ. ճա. Վրդն. աշխ. 534. Տեռ. սահ. 61. Տաթև. հարց. 330. Մագ. քեր. 231. Լմբ. ատկ. 24. Գր. արկ. լս. 139. Վրդն. լս. 58, 61. Երզն. լս. 108, 113. Գամ. մծբ. 5. Յովսփ. 23 բ. (չեմ հիշատակում պատմական գրականության վկայությունները). Հնում գործածված է մինչև ԺԱ դար. այնուհետև լռում է. վերակենդանացավ նոր շրջանում և այժմ շատ սովորական է.

— 1. Արշակ թագավոր Հայոց, Անտիոքոսից հետո. սրան ժամանակակից էր Վրաց Միհրան թագավորը. Միհրանը մեռավ և նրան հաջորդեց որդին Փառնաջոմ, որ ընդունեց Պարսից մոգական կրոնը. Վրաց իշխանները դիմեցին Արշակին և խնդրեցին որ իր որդի համանուն Արշակին Վրաց թագավոր կարգի. Արշակը հայ-վրացական բանակով դիմեց Փառնաջոմի վրա. մեծ պատերազմում Փառնաջոմը սպանվեց և Արշակի որդին Վրաց թագավոր դարձավ.—Վրաց աղբ. Ա. 151—3 (առասպել).

— 2. Արշակ փոքր, Պարթևաց թագավոր Արշակ մեծի որդին. նստավ Հայոց գահի վրա՝ իբրև առաջին Արշակունի, ըստ Մեր. ը, իրեն գահակից ունենալով Վաղարշակին, որ Խորենացու Վաղարշակն է.

— 3. Արշակ Ա Արշակունի, թագավոր Հայոց, որդի և հաջորդ Վաղարշակի. նվաճեց Պոնտոսը և կանգնեցրեց այնտեղ հաղթության արձան. ըստ Զամչ. Ա 218 նստել է Ն.Ք. 127—114 թ. և իշխել է 13 տարի.—Խոր. Բ. ը, թ. Մեր. բ. Ցհ. կթ. դ. Ուխտ. Ա. իէ, ծդ. Ասող. Ա. և. Մխ. անեց. գ, ժ, ժա. Մագ. թղ. ժթ. Վրդ. ժե. Սամ. անեց. 50. Մխ. այրիվ. 18, 57. Մին. համդ. 15. Ննջար. 88. Զքր. սարկ. Ա. էջ 2.—սեռ. Արշակայ՝ Խոր. Բ. թ.

ժա. Յհ. կթ. գ. Ուխտ. Ա. իէ, իթ. Մխ. անեց. ժա. Ասող. Ա. ե. Շնորհ. վիպ. 182. Սամ. անեց. 50. Նհպտք. 89. Մին. համզ. 16. —Այս թագավորից է կարծում Petrowicz, Arsaciden Münzen, էջ 187, երկու դրամ՝ Ն.Ք. 124 թվից։

— 4. Արշակ, անծանոթ թագավոր Հայոց, որդի Արշաւրի և հաջորդ Արտաւան թագավորի՝ ըստ Սեբ. բ.—տես. Արշակայ՝ անգ։ (Իր հաշվով լինում է Մեծն Արշակի թոռան թոռնորդին, որ իշխել է 37 տարի)։

— 5. Արշակ, որդի Արտաւան Գ արքայի Պարթևաց. կարգըվեց թագավոր Հայոց՝ 34 թվին. Տիբեր կայսրը գահազուրկ արեց նրան և գահ բարձրացրեց Միհրդատին՝ 35 թ. Միհրդատը դավով սպանեց Արշակին և գահին տեր դարձավ.—Լէօ Ա. 454. Գրգչ. Բնն. պատմ. Բ. 199—201։

— 6. Արշակ, եղբայր Պարթևաց Արտաւան թագավորի, եղավ թագավոր Հայոց 222—238 թ. իբրև հաջորդ Տրդատ Բ-ի. այս է Խոսրով մեծը.—Լէօ Ա. 480։

— 7. Արշակ Բ Արշակունի, թագավոր Հայոց «350—368 թ». Տիրան Բ-ի երկրորդ որդին ու հաջորդն էր. վայելելով միաժամանակ Հունաց և Պարսից բարեկամությունը՝ կարողացավ արժանավոր կերպով կառավարել իր երկիրը։ Նա գաղափարն ունեցավ քաղաքական իշխանության ենթարկելու կրոնական իշխանությունը և միևնույն ժամանակ քաղաքական իշխանությունը բարձրացնելու համար՝ ուզեց ջնջել նախարարական իշխանությունը։ Սրա համար կաթուղիկոսը և նախարարները ընդվզեցին իրեն դեմ։ Այդ միջոցին հույները պարտվելով Պարսիկներից՝ ձեռնթափ եղան Հայաստանից. ապստամբ նախարարներն էլ լքեցին Արշակին և անցան Պարսից կողմը. Արշակը ստիպվեց երթալ Պարսկաստան («368 թ»), ուր բանտարկվելով Անյուշ բերդում, անձնասպանությամբ վերջ տվեց իր կյանքին «369 թ»։—Բուզ. Գ. ժը, ի, իա, Դ. ա—գ, ժա—ժգ, ժե, ժզ, ժը—իզ, լգ, խ, խգ, խե, ծ—ծգ, Ե. ա, ե, է. Խոր. Գ. ժգ, ժը, ժթ, իա—իե, իէ, իթ, լա, լբ, լդ, լե. Փարպ. ժե. Սեբ. բ, գ. Եղն. եր. 266. Յհ. կթ. ժբ, ժգ. Մխ. անեց. գ, իբ, իգ. Ասող. Բ. ա. Մեսր. եր. 15, 18, 19, 23, 30, 39, 49—51, 58—67, 88. Պատմ. ներս. 5, 9, 14, 17. Շնորհ. վիպ. 773, 791, 805. Կղկնտ. Ա. ժգ. Օրբ. գ. Աբծր. Ա. ժ. Կիր. 11—13. Վրդ. իգ. Մագ. թղ. ժթ. Ցայսմ. նոյ. 19. Սամ. անեց. 66, 67. Մխ. այրիվ. 18. Սմբ. պատմ. 78. Մին. համզ. 24. Ցկ. կր. 43. Նհպտք. 90. Զուգ. 42. Զքր. սարկ. Ա. 3.—տես. Արշակայ՝

*Բուզ. Դ. ա, գ—ե, ժա, ժբ, ժգ—ժզ, ժը, ի, իա, իգ, իդ, իզ, իթ, լ, լբ, լգ, լզ, լը, խա, խբ, խդ, խե, խէ—ծբ, ծգ, ծե, Ե. ա, գ—ե, է, լէ, խդ. Խոր. Գ. ժթ—իգ, իզ, իէ, իթ, լա, լբ, լդ—լզ, լը. Փարպ. (ա). Եղիշ. էջ 7. Սեբ. բ, գ. Յհ. կթ. ժբ, ժգ. Մեսր. եր. 15, 16, 26, 27, 32, 43, 50, 59, 63, 66, 68, 117, 119, 120. Գամ. ներս. 6, 11, 12, 17, 18. Արծր. Ա. ժ, ժա. Կիր. 11, 13. Վրդ. իբ—իդ. Կղկնտ. Ա. ժգ. Ասող. Բ. ա. Մխիթ. աս. իթ. Օրբ. գ, ը. Սամ. անեց. 67. Եղն. եր. 267. Յայսմ. նոյ. 19. Մխ. անեց. իբ, իդ. Մեծոփ. յիշ. գ. Նհպտք. 90. Մին. համզ. 24. Ջուղ. 42.—տես և Տաշեան, Ցուց. 183, 185. Վրաց աղբ. Ա. 34, 75, Բ. 95 (կոչուած է Արշաւիր),* Peeters REA *1, 15—33.—Զամչ. Ա. 432—463, Աղզապ. 160—203։*

— *8.* Արշակ Գ *Արշակունի, թագավոր Հայոց. Պապի երեց որդին էր. հաջորդելով Վարազդատին (վտարված «378 թ»), թագավորեց իր եղբայր Վաղարշակ Բ-ի հետ միասին՝ թագ ստանալով Պարսից թագավորից («379 թ») և վերջինիս մահից հետո, թագավորեց միայնակ։ Հույներն ու պարսիկները, «384 թվին», Հայաստանը բաժանեցին իրենց մեջ և Արշակ անցավ Հունաց Հայաստան, իսկ Պարսից մասում նստավ Խոսրով Գ։ Պատերազմելով Խոսրով Գ-ի հետ, Արշակը հաղթվեց Երեկլի ճակատամարտում «385 թ» և քիչ հետո թոքախտից մեռավ «386 թ» Եկեղիքում.—Բուզ. Ե. լէ, խդ. Զ. ա. Խոր. Գ. խա—խդ, խզ. Փարպ. գ—ը. Սեբ. գ. Ասող. Բ. ա. Յհ. կթ. ժգ. Մխ. անեց. գ, իբ, իգ. Արծր. Ա. ժա. Շնորհ. վիպ. 895. Եղն. եր. 267. Մաղ. թղ. ժթ. Սամ. անեց. 68. Կիր. 14. Վրդ. իգ. Մխ. այրիվ. 18. Մին. համզ. 26. Զքր. սարկ. Ա. 3. Նհպտք. 91. Վրաց աղբ. Ա. 75, Բ. 96.—սեռ.* Արշակայ՝ *Բուզ. Ե. լը, խդ. Զ. ա, ե, է. Խոր. Գ. խա—խզ, խը. Փարպ. ա. Յհ. կթ. ժգ. Արծր. Ա. ժա. Ասող. Բ. ա. Մխ. անեց. իգ. Սամ. անեց. 68. Կիր. 14. Վրդ. իգ. Մխիթ. աս. իթ. Սիմ. ապար. 34.—գրծ.* Արշակաւ՝ *Բուզ. Ե. խդ, խզ.—Զամչ. 464—480. Աղզապ. 242—249։*

— *9.* Արշակ Դ. *որդի Խոսրով Գ-ի և եղբայր Տիգրանի. նշանակվեց կառավարիչ Հունահայաստանի 412—415 թ.—Այրարատ 561 բ,* Justi *29 ա։*

—*10.* Արշակ, *հայ հրամանատար հունական բերդապահ զորաց ի Սուրա, 540 թ. (Պրոկոպիոս).—*Justi *29 ա։*

—*11.* Արշակ *Արշակունի, ազգական Արտաւան Արշակունու. դաշնադիր էր եղել Պարսից Խոսրով թագավորի հետ՝ սպանելու*

Յուստինիանոս կայսեր, բայց բռնվեց և պատժվեց (546 թ).— Զամչ. Բ. 254։

—12. **Արշակ** (կամ Արսափիոս և կամ Հեբերսաբիոս=Arsaphius, Hebersabius), դեսպան ուղարկվեց Նիկեփոր կայսեր կողմից Վենետիկ՝ Օպելերիայի դուքսին դատելու համար (810 թ).—Ալիշան, Հայ-Վենետ. 15։

—13. **Արշակ** Սիւնի, որդի Վահանի. երբև վկա հիշվում է Տաթևի 839 թվի արձանագրության մեջ.—Օրբ. լը։ Անշուշտ նույն է Աշնակ Սիւնի, որ տես։

—14. **Արշակ** Վարաժնունի, նախարար. գերի ընկավ Ափշին ոստիկանի ձեռքը, բայց Սեդայի աղերսանքով ազատվեց «896 թ».—Արծր. Գ. իե։

—15. **Արշակ** ոմն հայ, բնակվում էր Պոլսում. ընդունեց Նեղոսի նոր հերձվածը (1082 թ).—Զամչ. Գ. 7։

—16. **Աշակ** (ր-ի անկումով) հիշվում է Վարդաուրծի և Խարէնի հետ, երբև նվիրատու Բագնայրի, անթվական մի արձանագրության մեջ, որ տես Շիրակ 120 բ։

—**Արշակունի** (ծագած Արշակ անունից)։

*ԱՐՇԱԿՈՒՀԻ, իգ. կազմվել է **Արշակ** անունից. հնում գործածություն չուներ. գործածական դարձավ ԺԹ դարի վերջերը՝ Արևմտահայոց մեջ։

*ԱՐՇԱՄ, ար. < հպրս. Aršāma անունից, որ կազմված է arša «արջ»+ama «ուժ» բառերից (կամ թերևս aršan «արու, քաջ, յովատակ») և նշանակում է «արջի ուժ ունեցող» (կամ «քաջազոր, ձիազոր») (Bartholomae 204)։ Meillet, Gram. du v. p. 170 մեկնում է rša-ama «արդարազոր, dont la force est juste»։ Այս անունով հայտնի են Իրանյանց մեջ հպրս. Aršāma՝ Դարեհ թագավորի պապը, հուն. Ἀρσάμης, Ἀρσάμας զանազան պարսիկ իշխաններ, ինչ. Կիւրոսի օգնականը (Քսենոփոն, Կիւր. 7, 1) են (Հիւբշ. 27, Justi 29)։ Այս անվան գործածությունը ընդհանրապես կասկածելի է մեր մեջ։

— 1. **Արշամ** Արծրունի, նախարար, հաջորդ Մարոդի, ժամանակակից Պարսից Արտաշես Գ Ոքոս թագավորի (Ն.Ք. 361—338 թ).—Արծր. Ա զ։

—2. **Արշամ** իշխան կամ թագավոր հայոց Ծոփաց. ապստամբեց Սելևկյանց դեմ և իշխեց անկախ (Ն.Ք. մոտ 240 թ). շինել է Արշամաշատ քաղաքը. Գրգշ. Քնն. պատ. Բ. 130 (ըստ Պոլիբիոսի, Դ. 17), Լէօ, Ա. 379, Justi 29 բ։

— 3. Արշամ, *թագավոր Հայոց, ըստ Զամչ. իշխել է Ն.Ք. 30—1. Տիգրան Բ-ի Արտաշես եղբոր որդին էր (ըստ Զամչ. Ա. 220 և 269 Արտաշես Ա-ի որդին և Տիգրան Բ-ի եղբայրն էր). հաջորդեց Արտավազդ Ա-ին. հարկատու եղավ Հռովմայեցոց. չարչարեց Բագրատունիներին, որպեսզի թողնեն հրեական կրոնը, կռապաշտ դառնան.—Խոր. Բ. իգ, իե. Սեբ. բ. Ուխտ. Ա. լ, ծգ. Ասող. Ա. ե. Մագ. թղ. ժթ. Սամ. անեց. 50. Շնորհ. վիպ. 232. Մխ. անեց. ժ. Մխ. այրիվ. 18, 57. Նհպոք. 89 (սխալ գրված Արամ). Վրդ. ժե. Մին. համդ. 17. Զքր. սարկ. Ա. 2.—սեռ.* Արշամայ՝ *Խոր. Բ. իգ—իզ, լա, լգ. Սեբ. բ. Ուխտ. Ա. լ, լա. Ասող. Ա. ե. Տարօն. Բ. § 14. Սամ. անեց. 50. Մխ. անեց. ժբ, ժգ, ժե. Վրդ. ժե. Միխ. աս. իդ (Ա տպ. էջ 426 Արշամայ, իսկ Բ տպ. էջ 421 Արջամայ). Մին. համդ. 18.—կոչվում է նաև* Արջամ *Ցհ. կթ. ե. Ասող. Ա. ե. Արծր. Ա. գ. Շնորհ. վիպ. 231.* ZAPh *1, 190. Մխ. անեց. գ, ը.—սեռ.* Արջամայ՝ *Ցհ. կթ. ե, գ. Արծր. Ա, գ. Ասող. Ա. ե. Մխ. անեց. ը, թ.—*Աշրամ՝ *Շիր. քրոն. 32.—Ասորիները կոչել են նրան՝* Մանովա՝ *Խոր. Բ. իգ. Մխ. անեց. ը. —իսկ Ուխտ. Ա. լգ՝* Աբգար Արշամայ *աղավաղվելով դարձել է* Աբգար լամացի։*—Ըստ արդի քննիչների՝* Արշամ *անունով թագավոր չկա և Խորենացու մի սխալի արդյունքն է։ Ասորի բնագրում եղել է* Աբգար Ուկամա *(Աբգար Սև), որ աղավաղվելով դարձել է* Աբգար Արշամայ *և Խորենացին էլ հասկացել է «Աբգար որդի Արշամայ», որով և հնարել է Աբգարի նախորդը՝* Արշամ *(տես Կարրիէր, Աբգարու զրույցը 52 և Տաշյան, Մատեն. մանր. ուս. Բ. 285. վերջինս՝ որ կրում է Թուղթ Աբգարու վերնագիրը, էջ 256—320, գրված է Եփեսոսում գտնված մի կեղծ արձանագրության առթիվ, որ ներկայացնում է Աբգարի սուտ թղթակցությունը Քրիստոսի հետ)։—Զամչ. Ա. 269—276։*

— 4. Արշամ? *կառավարիչ Հունահայոց, հաջորդ Պասինիկի 481 թ.—Այրարատ 561։*

— 5. Արշամ, *հայազգի վերջին մարզպան Հայաստանի, նշանակված Պարսից կողմից, Վարդից և Մանդոսից հետո.—Մին. համդ. 27 (Չունինք պատմության մեջ այսպիսի անձ. շփոթված է Մժէժ Գնունու հետ)։*

*ԱՐՇԱՆՈՅՇ, *իգ. <* Արշակ+անոյշ *բառերից, որով իմաստը լինում է «արքայադուստր»։ Հին ժամանակ հիշված է Դ և Է դարերում. այնուհետև լռում է. նորոգվեց ԺԹ դարի վերջում և այժմ բավական տարածված է։ Կրճատ փաղաքշական ձևն է Նուշիկ։*

— 1. Արշանոյշ Արշակունի, կին Սպանդարատի, մայր Գազաւոն Կամսարականի, ժամանակակից Արշակ Գ-ի (մ. 386) և Խոսրով Գ-ի.—սեռ. Արշանուշայ՝ Խոր. Գ. խը.—Կոգեան, Կմսրկնները 65։

— 2. Արշանոյշ Կամսարական, հիշված Բագարանի 624 թվի արձանագրության մեջ.—Կոգեան, Կմսրկնները 137։

*ԱՐՇԱՒԻՐ, պր < զնդ. aršan «այր»+vīra «մարդ»?, իբր «այր մարդ, տղամարդ» (Հիւբշ. 27)։ Իբրև անձնանուն գործածական էր նաև Պարսից մեջ. հայտնի է օրինակ՝ Արշաւիր թագավոր Պարսից (Խոր. Բ. իդ, իէ).—Դան. Թ. 1 հայ թարգմանության մեջ Արշաւիր անունը դրված է եբրայական אחשורוש Axašvaroš (Ասուերոս) անվան տեղ. «Ցամին առաջնորդի Դարեհի՝ որդւոյ Արշաւրայ, ի զաւակէ Մարաց»։ Հին ժամանակ գործածվել է մեր մեջ մինչև Թ դար. այնուհետև խափանվել է. վերանորոգվեց նոր շրջանում և այժմ սովորական գործածություն ունի։ Կովկասում աղավաղված ձևով գտնում ենք Արշավիլ, ճիշտ ինչպես ունինք կերակուր > կերակուլ։

— 1. Արշաւիր Արծրունի, նախարար, հաջորդ Արշամի, ժամանակակից Պարսից Զարեհ թագավորի (Ն.Թ. 337).—Արծր. Ա. գ։

— 2. Արշաւիր, անծանոթ թագավոր Հայոց. գահակից Արտաւանի, որի հետ միասին հաջորդեցին Արտաշէս Արշակունուն և իշխեցին 12 տարի.—Սեբ. բ.—սեռ. Արշաւրի՝ անդ։

— 3. Արշաւիր Արծրունի, եղբայր Խոսրէնի. Վաչէի հետ գնաց Ասորոց Ներսեհ թագավորի մոտ և դարձավ նրա զորավարը։ Ամբաստանվելով թագավորի մոտ, երկուսը միասին փախան Պարսկաստան, ուր մի ժամանակ մնալուց հետո, Արտաշէս Բ-ի հետ վերադարձան Հայաստան (85 Թ).—Արծր. Ա. է.—սեռ. Արշաւրի՝ Արծր. Ա. է, ը.—դատ. զԱրշաւիր՝ Արծր. է (տպ. զԱրշաւրեան)։

— 4. Արշաւիր Ա Կամսարական, Կամսարի երեց որդին և Մամիկոնեանց փեսան. Կամսարի մահից հետո (ըստ Զամչ. 325 Թ), Տրդատի ձեռքով կարգվեց նախարար, որից սկսվեց Կամսարականների նախարարությունը։ Իր անունով Երասխաձորը կոչվեց Արշարունիք։ Խոսրովի մահից հետո, մինչև Տիրան Բ-ի գահակալությունը, ինքը կառավարեց Հայաստանը և վանեց Շապուհի արշավանքը։ Տիրանի օրով ուղեկցեց Փառէնին, երբ նա գնում էր Կեսարիա՝ կաթողիկոս օծվելու («348 Թ»)։ Տիրանի

դերությունից հետո գնաց Պոլիս՝ խնդրելու կայսրից, որ Արշակ Բ-ին թագավորեցնի Հայոց վրա։ Ուղեկից եղավ Ներսեսին, երբ նա գնում էր կաթողիկոս ձեռնադրվելու («353 թ»)։—Բուզ. Գ. ժզ, իա. Դ. գ. Խոր. Բ. ղ.—սեռ. Արշաւրի՝ Խոր. Գ. ժ, լա.—Արշաւրայ՝ Բուզ. Գ. ժա.—Կոգեան, Կմսրկնները 72—86։—Շիրակ, էջ 3։

— 5. Արշաւիր, իշխան Անգեղտան, ուղեկից եղավ Ներսեսին, երբ սա գնում էր Կեսարիա՝ կաթողիկոս ձեռնադրվելու համար («353 թ»).—Մեսր. եր. 25։

— 6. Արշաւիր (վրաց. Արշվիր), որդի և հաջորդ Տիրան Բ-ի. ուներ նաև մի եղբայր՝ Վաղար-շափաթ անունով. Արշավիրը նստեց 20 տարի և նրան հաջորդեց Պապ.—Վրաց աղբ. Բ. 95 (շփոթում է Արշակ Բ-ի հետ. իսկ Վաղարշափաթը սուտ է. պետք է համարել Վաղարշակ)։

— 7. Արշաւիր Բ Արշարունի Կամսարական, Քաջն Վարդանի փեսան (Վարդանոյշ աղջկա ամուսինը). մասնակցեց Շահապիվանի («444 թ») և Արտաշատի («449 թ») ժողովներին։ Յազկերտ Բ-ի հրամանով բանտարկվեց Պարսկաստանում՝ մյուս նախարարների հետ միասին։ Երբ Վարդանը դառնացած քաշվում էր Հունաց բաժինը, Արշավիրը ուղարկվեց նրան ետ դարձնելու համար։ Մասնակցեց Վարդանի պատերազմին Սերուխտի դեմ Աղուանքում և սպանեց Լփնաց թագավորի եղբայր Վուրկէնին։ Վարդանանց պատերազմում Վարդանի նիզակակիցն էր («451»)։ Մյուս նախարարների հետ քշվեց Պարսկաստան և ազատվեց ու վերադարձավ Հայաստան «462 թ»։ Իր որդիքն են Ներսեհ, Հրահատ և Սահակ։—Եղիշ. 58, 77, 90, 150. Փարպ. իգ, լ, լդ, լե, խբ, խե, խէ, ծէ, կ. Կղկնտ. Բ. բ. Յայսմ. օգոստ. 7.—սեռ. Արշաւրայ՝ Փարպ. խե, ծէ, կգ, կը, կթ, հդ, ձգ, ղ.—Արշաւրի՝ Անան. գիտ. 25.—գրծ. Արշաւրաւ՝ Փարպ. լթ.—Այրարատ 519, Հայապ. 159, Կոգեան, Կմսրկնները 97—103։

— 8. Արշաւիր Խորխոռունի, նախարար. անդամ Դուինի «506 թ» ժողովի.—Ազգապ. 504 (այսպես ըստ Օրմանյանի, որ քաղել է Թղթոց գրքից, էջ 42. բայց այստեղ՝ այդ անվան փոխարեն գտնում ենք Արտաշիր Հայոց մախազ)։

— 9. Արշաւիր հայկազն, պատրիկ և գանձապետ հունաց պետության. կոչվում է նաև Սատուրակիոս. սրա դուստրը Թէոդոսիա ամուսնացել էր Լևոն Հայկազնի հետ։ Նիկեփորոս կայսեր դեմ ապստամբություն ծագելով, հույները Արշավիրին կայսր

ընտրեցին. Նիկեփորը թէ Արշաւիրին և թէ Լևոնին բռնեց և փակեց մի վանքում (808)։ Երբ Միքայէլ Ա նստավ կայսր, ազատեց երկուսին էլ (811), որից հետո Լևոն նստավ կայսր՝ Լևոն Ե անունով (813—820)։ Արշաւիր պատրիկի քեռորդին էր Փոտ նշանավոր պատրիարք հունաց։—Չամչ. Բ. 431, Justi 30, Ադոնց. 927, Տէր Սահակեան, Հայ կայսրեր, Ա. 156, Բ. 344։

— 10. Արշաւիր, Մորոխարզանեանց ցեղից, որ Պոլսի ամենից ազնվական ընտանիքներից մեկն էր համարվում (Թ դար)։ Սրանց համարում է Կամսարական՝ Տէր Սահակեան, Հայ կայսրեր, Ա. 180։

—11. Արշաւիր Աշտակեցի (կամ Աշնակեցի), նվիրատու Հոռոմոսի վանից. իր անթվական արձանագրությունը տես Շիրակ 25ա։

*ԱՐՇԷԶ, ար. իրանական անուն է. այսպես՝ ըստ Խոր. Բ. իզ և կը ունինք Արշէզ թագավոր Պարթևաց, թոռնորդի Արշակ մեծի. հույն և լատին պատմիչներն էլ ունին 'Οάρσης, "Αρσης, Arsēs ձևերը (տես Justi 231), որով հասկանում են Արտաշէս։

— 1. Արշէզ, իշխան Արծրունի, որդի Քսերքսէսի. գործակից եղավ Կիւրոսին՝ Լիդիացոց Կրեսոս թագավորի դեմ մղած պատերազմում (Ն.Ք. 546).—Արծր. Ա. ե (ա տպ. Արշէշ).—սեռ. Արշէզայ՝ Արծր. Ա. ե։

— 2. Արշէզ, փղապետ աղուան, ժամանակակից Վաչագան Գ-ի (Զ դար).—Կղկնտ. Ա. իզ (հրատ. Էմինի և Շահն. ունին Արշէս. նույնը Տաշեան, Ցուց. 654 ա Արչէս ձևով)։

*ԱՐՇԷՆ, ար. < իրան. -ēn մասնիկով կազմված փաղաքշական ձև Արշաւիր կամ նման մի անվան (Հիւբշ. 90)։

— 1. Արշէն երեց, Բագրևանդի Եղէգեակ գյուղից, հասարակ անուս քահանա. ամրացած էր Կապոյտ բերդում, բայց հավատալով Վասակի երդումներին, անձնատուր եղավ և Ղևոնդեանց հետ Պարսկաստան քշվելով նահատակվեց Ապար աշխարհում «454 թ».—Եղիշ. 98, 101, 131, 139. Փարպ. խը, խդ, խէ, ծղ, ծէ. Վրդ. իէ (հրատ. Էմինի՝ Արսէն). Սիմ. ապար. 48.—սեռ. Արշենայ՝ Փարպ. ծէ.—գրված է Արսէն՝ Ցայսմ. յուլ. 31։—Չամչ. Բ. 83, 99, 107։

— 2. Արշէն երեց Վայոցձորեցի. մասնակից եղավ Եղէգեաց վկայարանի շինության «468 թ».—Օրբ. ժը, Սիսական 130։

ԱՐՈՒԱՆՈՍ, ար. ծագումն անհայտ։ Մի անգամ հիշված կա Արվանոս պարոն ոմն, նվիրատու Աւետարանի, անհայտ թվականով՝ Ջեռ. Թուղ. 74 ա։—Տես և Ռուանոս։

ԱՐՈՒԵՍ, ար. ծագումն անհայտ. Justi 27 ա համեմատում է ’Aροάσιος անվան հետ։

— Արուես, եղբայր Սևորդեաց Գէորգ նահապետի. հավատը չուրանալով՝ եղբոր հետ նահատակվեց Ափշին ոստիկանի որդի Դևդադի ձեռքով (899).—Ցհ. կթ. լէ։ Զամչ. Բ. 729։

ԱՐՈՒԽ, ար. ծագումն անհայտ. սրա հետ թերևս նույն է Առուխ, որ տես. Թաթարների մեջ էլ կար Առուխ անունը. հմմտ. Օրբ. ժմ. 29 «ձեռնտուութեամբ Բուղային և Առուխին և Թագանային և կամօք Հուլաղու ղանին»։

— Արուխ, Հունաց կայսեր պալատական ծառաներից, հայ, որ Սմբատի հետ, կայսեր կողմից ուղարկվեց Ներսէս Շնորհալու մոտ՝ կրոնական միաբանության խնդրի առթիվ (1167 թ.).—Զամչ. Գ. 99 (չունին Շնորհ. պտմ. 109 և Աղգապ. 1411)։

ԱՐՈՒՄԱՆ, ար. ծագումն անհայտ։

— Արուման, իշխան Սիւնի, որդի Սահակի, եղբայր Հրահատի և Ջևանշիրի. հիշված է Տաթևի 844 և 871 թ. կալվածագրերում.—Օրբ. լը, լթ.—սեռ. Արումանայ՝ Օրբ. լը։—Սիսական, էջ 277 ա։

ԱՐՈՒՆ, սեռով, ձևով և ժամանակով անհայտ անուն. մի անգամ հիշված է անթվական մի ձեռագրի հիշատակարանում (Լալայեան ձեռագիրը կարծում է ԺԶ դարից), մի երկար շարք անունների հետ, որոնք մեծ մասամբ որոշյալ հայց. հոլով են. այսպես «...զԱմիրբէկն, զԳրիգորն, զՆակոնիկ, զԱրուն, զՕհան...»։ Ըստ այսմ բառը կարող է լինել Արու կամ Արուն և հավանաբար արական է։ Բայց ես դրի Արուն, ըստ որում ունինք Արունմելիք, որ տես։—Ջեռ. Վասպ. 767։

ԱՐՈՒՆՄԷԼԻՔ, իգ. կազմված է նախորդից, ավելացնելով Մելիք։ Հիշված է անթվական մի հիշատակարանում, որ գտնվում է 1311 թ. գրված մի Աւետարանի մեջ։—Ջեռ. Թաւր. 71 ա։

*ԱՐՈՒՍ, իգ. < արաբ. عروس ʻarūs «հարս» բառից, որ և միանալով թթր. خاتون xatun «տիկին» բառի հետ, դարձավ Արուսխաթուն։ Գործածվում է ԺԳ դարից սկսած մինչև այժմ. կրճատ ձևն է Արուսխաթ և ավելի կրճատ Արուսխա (հոլով Արուսխէն)։ Սրանից տարբեր է Արուսեակ, որ տես առանձին։ Բայց այս անունն էլ կրճատամբ դառնալով Արուս, ըստ ձևի միացավ նախորդի հետ։

— 1. Արուս խաթուն, դուստր Ուքանայ, կին Հասանի (Տա-

յէր), որդւոյ Բուրդ իշխանի Արագածոտն գաւառի. մեռել է 1283 թ.—Այրարատ 170, 253։

— 2. Արուս խաթուն, դուստր Սադունի և առաջին կին Տարսայիճ իշխանի. մեռել է 1286 թ. գերեզմանը գտնվում է Տաթևի վանքում.—Սիսական 235։

— 3. Արուզ խաթուն, կին X-ի, դստեր Սամփսոնի. մեռավ իրենց որդին Սամփսոնը, թաղեցին Ծախաց քար վանքում և այս առթիվ կալվածներ նվիրեցին վանքին, 1367 թ.—Սիսական 156։

— 4. Արուսխաթուն ոմն, հիշված 1384 թ.—Տաշեան, Ցուց, 934 բ։

— 5. Արուսխաթուն, կին Հնդուի և մայր Աւագ-Սարգսի, որ 500 դահեկանով վաճառեց իր կապան և գլխանոցը, և այդ գումարով՝ Թուրքմանի գերութիւնից ազատեց մի Աւետարան, որ նվիրեց «ի գերեզման Ս. Մեսրոբ վարդապետին», 1387 թ.—Սիսական 319 բ։

— 6. Արուս, դուստր Մարտիրոս քահանայի, որ գնեց մի հին Աւետարան, 1410 թ.—Ձեռ. Վասպ. 164։

— 7. Արուս խաթուն, կին Յովհաննէսի, մերձավոր տանուտեր Յովսէփի, որ ստացավ մի Աւետարան, 1432 թ.—Ձեռ. Վասպ. 163։

— 8. Արուսխաթուն, սանամայր Յովհաննէս քհ. Գանձակեցու, որ Տփղիսի Կրծանիս գյուղում օրինակեց Գանձարանը, 1436 թ.—Ձեռ. Դաշեան, Ա. 27 բ։

— 9. Արուս խաթուն, կին Մկրտչի և մայր Անդրէասի, որ գնեց մի հին Աւետարան, 1442 թ.—Ձեռ. Նոր-Բայազ. 17 բ։

— 10. Արուսխաթուն, դուստր տանուտեր Աստղի, որի կինք Փաշայ՝ մի Աւետարան գրել տվեց Վանում, 1451 թ.—Ձեռ. Վասպ. 411։

— 11. Արուսխաթուն, կին Խաչատուրի, որ Ստեփաննոս դպրին գրել տվեց մի Աւետարան, 1453 թ.—Ձեռ. Վասպ. 419։

— 12. Արուսխաթուն, դուստր Յովանէսի և քույր Սարգիս դպրի, որ Երուսաղէմում օրինակեց Գանձարանը 1457 թ.—Ձեռ. Հալէպի, Ա. 166 բ։

— 13. Արուսխաթուն, մերձավոր Փաշամէլէքի, որ ի հիշատակ իր ամուսնու, գրել տվեց մի Աւետարան՝ Սորավանք գյուղում, 1458 թ.—Ձեռ. Վասպ. 428։

— 14. Արուսխաթուն, կին Դաւթի և մայր մահտեսի Յո-

վանեսի, որ փրկանքով ազատեց մի Աւետարան, Աղթամար 1466 թ.—Ձեռ. Վասպ. 384։

— 15. Արուսխաթուն, կին Սարգսի՝ հոր Գոնդուլ փաշայի, որ կտուց անապատում գրել տվեց մի Աւետարան, 1475 թ.—Ձեռ. Վասպ. 472—3։

— 16. Արուսխաթուն, քրոջ դուստրն է Վարդան աբեղայի, որ Կտուց անապատում, Խաչատուր գրչին գրել տվեց մի Աւետարան, 1481 թ.—Ձեռ. Վասպ. 489։

— Արուս անունը հիշված է նաև 1512 թ. Արուս ձևով (Ձեռ. Վասպ. 85), 1578 թ. Արուսխեն ձևով (Ձեռ. Վասպ. 11, Կարապետ եպս.՝ Դուփեանք 187—8), 1588 թ. Արուս ձևով (Ձեռ. Վասպ. 707), և անհայտ թվականով՝ Ձեռ. Վասպ. 268, 342, 372 (Արուսխաթ), 642։

— 17. Արուսխաթուն, նկարչուհի. իր գործերից նմուշներ տես Ձեռ. Դաղեան, Բ. 36 բ. (տպ. Արուչ խաթուն, որ ըստ իս պետք է այսպես ուղղել).—Թվականը անհայտ է։

†ԱՐՈՒՍԵԱԿ, իգ. <հյ. Արուսեակ մոլորակի անունից, ճիշտ ինչպես արաբ. زهره zuhra «լուսաստղ, արուսեակ» դարձել է իգ. անձնանուն, կամ պրս. ناهيد nāhīd։ Մի անգամ ավանդված է միայն Թ դարից, բայց անցյալ դարում նորից կենդանանալով դարձավ հայոց ամենասիրելի և գեղեցիկ անուններից մեկը։ Կրճատմամբ դարձել է Արուս և որանով միացել է նախորդի հետ, որ բնավ կապ չունի սրա հետ։

— 1. Արուսեակ, դուստր Մուշեղ Բագրատունու, կին Սևադայ պարսիկ իշխանի, որ միացած Սմբատ սպարապետի և Սիւնեաց Սահակ իշխանի հետ, ապստամբեց Արաբների դեմ՝ Հայաստանը և Պարսկաստանը նրանց լծից ազատելու համար։ Պարտվեցին Հոլ արաբ ոստիկանից (826 թ)։—Յհ. կթ. իե. Օրբ. լգ. (ձեռ. Արուսեակ և Արաւսեակ ձևերով)։

ԱՐՋԵՒԱՆ, ար. <արդյոք նույն է զնդ. Arəǰavan անձնանվան հետ, որի բուն նշանակությունն է ըստ Bartholomae, Altir. Wört. 192 «արժանավոր»։ Justi 22 բ համարում է arġavān «եղրևանի», որի նվազականն էլ կա ’Αργουάναγος (մի իշխանի անուն է). Նույն է պրս. Argawān, Arghawān=արաբ. Arǰawān (ստրկուհի, մայր Ալ-Մուկթադի խալիֆայի, մ. 1118 թ), որ և հյ. Արգաւան։

— Արջևան, երեց թարգմանիչ. Կորիւնի հետ գնաց Երուսաղէմ և բերավ Կիւրեղ Երուսաղեմացու Ապաշխարողաց կարգը.

—*Օրհն.* 246. *Տաթև. հարց.* 658.—*ըստ Զարբ. Հին դպր.* 294 *կոչվում է նաև* Արզնեան *և նույն է Արձան Արծրունու հետ*— *Մի անթվական Մաշտոցի մեջ էլ գրված է* Արգնեան (*Ձեռ. Սեբ.*= *ՀԱ* 1926, 545).

†*ԱՐՋՈՒԿ, ար.* < *հյ.* արջ *բառի փաղաքշականից, ճիշտ ինչպես լտ.* Ursula *ար. անձնանունը, որ նշանակում է բուն «փոքր արջ»*։

— 1. Արջուկ *իշխան Ուռհայեցի. խլելու համար Եդեսիա քաղաքը Սմբատ իշխանի ձեռքից, խնդրեց Փիլարտոսի օգնությունը. Փիլարտոսը եկավ, գրավեց քաղաքը և երկուսին էլ սպանեց* («1083 *թ*»).—*Ուռհ.* 223։

— 2. Արջուկ, *որդի Գրիգորի և Թոռն իշխանաց իշխան Դաւթի Շոթոռկանց. հիշված է* 1236 *թ.*—*Յովսէփեան, Նիւթեր և ուս. Ա.* 25, *Խաղբակեանք* 18։

— 3. Արջուկ, *հիշված է* 1311 *թվից ավելի ուշ գրված անթվական մի հիշատակարանում՝ Ձեռ. Թաւր.* 74 *ա*։

**ԱՐՍԱՓԻՈՍ, ար. եգիպտական անուն է. համմտ.* 'Αρσαφής, *որ եգիպտական անունն է Դիոնիսոսի*։

— Արսափիոս, *եպիսկոպոս Ծոփաց, անդամ Նիկիայի ժողովի,* 325 *թ.*—*տես Տաշեան, Ագաթ.* 149. *համարվում է նույն ընդ* Արսուկես.—*Ալիշան, Արշալ. քրիստ.* 242 *գրում է* Արսափ *կամ* Արշափ։

**ԱՐՍԷՆ, ար.* < *հուն.* ἄρσην *«այր, տղամարդ» բառից, որ նույնպես դարձել է ար. անձնանուն և որից ունինք լտ. գերմ. անգլ.* Arsenius, *ֆրանս.* Arsène, *ռուս.* Арсений. *հայտնի է օրինակ՝* Արսէն *մեծ ճգնավորը* (350—445), *որի վարքը անցել է Յայսմաւուրքի և Հարանց վարքի մեջ* (*Աւգերեան, Լիակ. վրք. սրբ. Թ* 278)։

— 1. Արսէն *Ընձայացի, նախարար. ժամանակցեց Վարդանանց պատերազմին, ուր նահատակվեց 7 զինվորներով* («451 *թ*»).—*Եղիշէ* 77, 93. *Փարպ. լԹ. Շար. դր. Յայսմ. յուլ.* 31, *օգոստ.* 7։ (*Կոչված է «արդար»*)։

— 2. Արսէն *եպիսկոպոս Երուսաղէմի. հիշված է շուրջ* 1000 *թվին. եղել է պատրիարք Երուսաղեմի՝ իբրև հաջորդ Գրիգորի և գահակալել է* 1006—1038 (*ըստ Աղաւնունու*). *հանձնարարական թուղթ է տվել Սիմէոն ճգնավորին* (*մ.* 1016), *երբ սա գնում էր Եվրոպա.*—*Չամչ. Բ.* 861, 865, *Ազգապ.* 1188։

— 3. Արսէն, իշխան Վայոց ձորի, 1252 թ. (անունն ու թվականը անստույգ).—Սիսական 110։

— 4. Արսէն, միաբան Ցիպնայ Դաստակ վանից, 1450 թ. —Նոտարք 166, Ձեռ. Վասպ. 406։

— 5. Արսէն, քահանա Ս. Գէորգ եկեղեցու Բաղէշի, 1463 թ.— Նոտարք 215։

— Արսէն անունը հիշված է նաև 1552 թ. (Ձեռ. Վասպ. 655), 1560 թ. (անդ 664), 1663 թ. (Ձեռ. Նոր-Բայազ. 21բ), 1677 թ? (Ձեռ. Վասպ. 536 և 1010), 1693 թ. (Թորոս աղբար, Բ. 366, նույն է նախորդի հետ), 1684 թ. (Թորոս աղբար, Բ. 370), 1787 թ. (Տաշեան, Ցուց. 911 ա) և այժմ էլ գործածական է։

Արսուաղէն տես Եսուաղէն։

ԱՐՍՈՒԿԷՍ, ար. ծագումն անհայտ։

— Արսուկես. քրմի որդի էր, որին կրթեց Լուսավորիչը և եպիսկոպոս ձեռնադրեց (Դ դար).—Ագաթ. § 846 (ձեռ. Արսուկէս).—Արաբ. Ագաթ. 72 նույնը կոչում է Արսուկ եպս. Սիրադի, իսկ հուն. Ագաթ. 'Αρσύκης։

ԱՐՏԱ, իգ. ծագումն անհայտ։

— Արտա, դուստր Թորոսի և թոռն Ռուբէն Ա-ի, կին Պաղտինի՝ առաջին թագավորի Երուսաղեմի (1100—1118), որ Առաջին Խաչակրության առաջնորդ Գոդֆրուա-դը-Բույյոնի եղբայրն էր։ Այսպիսով Արտա Երուսաղեմի «առաջին թագուհի լինէր լեռնասուն բամբիշն Հայոց»։ Մի քանի տարի հետո Պալտինը արձակեց նրան և բերեց մի հոմանի, որին նույնպես արձակելով, Արտային ետ վերադարձրեց.—Միխուան 47 բ։

*ԱՐՏԱԿ, ար. < պհլ. Artak անունից, որ Arta ձևի (այն է Արտաւազդ, Արտաւան են անունների) փաղաքշականն է. տառադարձված է նաև ասոր. Ardaq (Հիւբշ. 28, 30)։ Հայերենից է փոխառյալ վրաց. Արտագ, Արտոգ (Թագավոր Վրաց Ն.Ք. 81 թ. ըստ Mourier, Hist. de Géorgie, էջ 62)։ Մեր մեջ Արտակ անունը գործածված է Դ դարից մինչև Ժ դար։ Իբրև հատուկ անվան օրինակ հիշված է Թր. քեր. 14, Անան. քեր. 140։ Սրանից է նաև Արտակունի ազգանունը (Փարպ.)։ Ժ դարից հետո չէ գործածված։ Վերջին ժամանակներում նորից կենդանացավ, բայց հաջողություն չունեցավ։

— 1. Արտակ իշխան Հարքի. ուղեկից եղավ Ներսէսին, երբ նա գնում էր Կեսարիա՝ կաթուղիկոս օծվելու համար («353 թ»)։ —Մեսր. եր. 25։

— 2. Արտակ *եպիսկոպոս, անդամ Շահապիվանի ժողովի «444 թ».—Այրարատ 519, Հայապ. 159, Ազգապ. 330։*

— 3. Արտակ *Մոկացի, սիրելին էր Քաջն Վարդանի. մասնակցեց Արտաշատի ժողովին «449 թ». մյուս նախարարների հետ կանչվեց Պարսից դուռը և առերես ուրանալով հավատքը՝ արձակվեց։ Վարդանանց պատերազմում Ներշապուհ Արծրունու նիզակակիցն էր «451 թ».—Եղիշ. 33, Փարպ. իգ, իե, իէ.—գրծ.* Արտակու՝ *Փարպ. լթ։*

— 4. Արտակ *Պալունի, սեպուհ. մասնակցեց Վարդանանց պատերազմին, ուր նահատակվեց 57 զինվորներով «451 թ».—Եղիշ. 77, 93, 117. Փարպ. լդ, լթ. Շար. դը. Յայսմ. օգոստ. 7։*

— 5. Արտակ *Ռշտունի, մին այն նախարարներից, որոնք Յազկերտի դուռը կանչվեցին և առերես ուրանալով իրենց հավատը, ազատ արձակվեցին «450 թ»։ Այնուհետև Արտակը բռնեց Վասակի կողմը՝ հակառակ Վարդանի։—Եղիշ. 32, 71. Փարպ. իե։*

— 6. Արտակ *Կամսարական, նախապապն է Պահլավունեաց տոհմի. սրա որդին է Ապուղամր, թոռն է Գրիգոր Համզա, թոռնորդին՝ Վասակ Պահլավունի և թոռան թոռն է Գրիգոր Մագիստրոս.—սեռ.* Կամսարականն Արտակայ՝ *Մագ. թղ. ժա։—(Ալիշան, Շնորհ. էջ 12 դնում է Ժ դարի սկիզբը. բայց քանի որ թոռը՝ Գրիգոր Համզա. ծնված է 941 թվին, ուստի ճիշտ կլինի դնել Թ դարի կեսից հետո)։*

**ԱՐՏԱՄՇԱՀ**, *ար. ձևով անստույգ և ծագմամբ անհայտ անուն. գործածված է մի անգամ Հոռոմոսի 1266 թվի մի արձանագրության մեջ, սեռ.* Արտամշին *ձևով (Շիրակ 26 բ)։ Ալիշան ուղ. ձևն համարում է Արտամուշ. ես կարծում եմ Արտամշահ?*

***ԱՐՏԱՆԷՍ**, *տառադարձված է հուն.* 'Αρτάνης *(Ստրաբոն* XI, *14, 15). սրա փոխարեն Ստեփանոս Բիւզանդացին գրում է* Ծրտակ. *Գարագաշ են համարում են* Վարդան *կամ* Արշակ. *ավելի լավ է դնել* Արտէն *(տես այս անունը), ինչպես ունի նաև* Justi *37։*

—Արտանէս, *վերջին թագավոր Ծոփաց, Զարեհի ցեղից. Տիգրան մեծը հաղթեց նրան, սպանեց, և նրա երկիրը իր պետության միացնելով՝ տեր դարձավ ամբողջ Հայաստանի (մոտ Ն.Ք. 90 թ).—Ստրաբոն Հայոց մասին, էջ 65, 102, Գրգշ. Քնն. պատմ. Ա 81, Բ 132, Լէօ Ա. 395։*

***ԱՐՏԱՇԱՀՐ**, *ար. < հպրս.* Artaxšahr *անունից, որ տես Արտաշէս։*

— Արտաշահր եպիսկոպոս, ներկայացուցիչ Հայաստանի՝ 424 թվի նեստորական ժողովում.—Ադոնց ՀԱ 1925, 538, Justi 35 բ։

*ԱՐՏԱՇԱՄԱՅ, իգ. < հպրս. arta- «արդար, ուղիղ»+շամայ? բառերից։ Գործածված է միայն մի անգամ Ն.Ք. Ա դարում, այնուհետև իսպառ խափանված։ Լսել եմ 1906 թ. Նոր-Բայազետում, Արտաշամ ձևով։

— Արտաշամայ, դուստր Արտաշես Ա-ի, քույր Տիգրան Մեծի և կին Միհրդատ Պոնտացու (Ա դար Ն.Ք.).—Խոր. Բ. ժա (մի ձեռ. Արտաժամայ)։

*ԱՐՏԱՇԷՆ, ար. < իրան. -ēn փաղաքշական մասնիկով՝ Արտաշես անունից (Հիւբշ. 30)։ Ավանդված է միայն մի անգամ Դ դարից։

— Արտաշէն Մամիկոնեան, հայր Մանուէլ սպարապետի Արշակ Դ («379—386») թագավորի.—սեռ. Արտաշինայ՝ Բուզ. Ե. լէ։

*ԱՐՏԱՇԷՍ, ար. < արշակունյան պհլ. *Artašas ձևից. հմմտ. սասան. պհլ. Ardašīr, Artašīr, Artaxšīr, Artaxšatr, պրս. اردشیر Ardšīr, հպրս. Artaxšassa (Meillet, Gram. du v. p. 64), տառադարձված հուն. 'Αρταξάρης, 'Αρταξήρ, 'Αρτασήρ, 'Αδεσήρ, 'Αρτασείρης. 'Αρτασίρης, 'Αρτάξας, 'Αρτάξης, 'Αρταξίας, 'Αρταξέρξης, 'Αρτοξέρξης, 'Αρτοξέσσης, լիւկ. Artakšassa, լտ. Artaxias, Artaxerxes, արամ. 'rtxšsš, սոգդ. Ardašīr, Artašīr, Arṭašahr (տես վերը Արտաշահր), Ardaxšir, եբր. Artaxšastā, Artaxšaştā, Հպրս. նշանակում է «արդարությամբ իշխող, au règne conforme à la loi»։ Սովորական անուն էր Պարսից մեջ. նշանավոր է հատկապես Արտաշես Ոխոս Երկայնաբազուկ՝ թագավոր Պարսից (Հիւբշ. 29)։ Մեր մեջ գործածված է Ն.Ք. Բ դարից մինչև Ե դար. այնուհետև խափանված է՝ փոխանակվելով Արտաշիր ձևով. անցյալ դարում նորից կենդանացավ և այժմ շատ սովորական անուն է. կրճատ ձևն է Արտաշ։

— 1. Արտաշես, հիմնադիր թագավորության Մեծ Հայոց. նախապես, իր ընկեր Զարեհի հետ, Սելևկյանց թագավոր Մեծն Անտիոքոսի (190—186) զորավարներից էին։ Հռովմայեցոց դըրդմամբ, երկուսն էլ ապստամբեցին նրա դեմ և իրենց երկիրը անկախ հայտարարեցին։ Զարեհը տիրեց Ծոփաց աշխարհին, Արտաշեսը նստավ Արտաշատում (189 Ն. Ք.)։ Մասնակից եղավ այն դաշնադրության, որ Հռովմայեցոց դրդումով կնքեցին (180 թվին) Փոքր-Ասիայի թագավորներից՝ Եւմենէս Բ. թագավոր Պերգամոնի,

Պրուսիաս թագավոր Բյութանիայի, Արիարաթ Ե թագավոր Կապադովկիայի, Փառնակ թագավոր Պոնտոսի և Արտաշէս (Արտաքսիաս ըստ Ստրաբոնի և Պոլիբ. ԻԶ)։ Շրջակա ազգերից նվաճելով զանազան գավառներ, կազմեց մի ընդարձակ պետություն։ Իրանով է սկսվում Արտաշիսեան հարստությունը, որի մեծագույն գահակալը եղավ Տիգրանը։—Ստրաբոն Հայոց մասին, էջ 57, 65. Գրգչ. Բնն. պտմ. Ա 80, 81, Լէօ Ա 384, Զամչ. Ա. 204—7, Justi 36 բ. Այրարատ 395—6։

— 2. Արտաշէս Ա Արշակունի, աշխարհակալ, որդի Արշակ Ա-ի, թոռն Վաղարշակի՝ եղբոր Մեծին Արշակայ Պարթևաց թագավորի. թագավոր Հայոց, նվաճեց ամբողջ Փոքր-Ասիան և նավատորմիղ պատրաստելով, անցավ Հունաստան։ Հռովմայեցիք վախեցած նրանից, խռովություն գցեցին նրա բանակի մեջ և դավադրությամբ սպանել տվին։ Իր վերջին խոսքն եղավ «Աւա՜ղ, փառաց անցաւորի»։ Ըստ Զամչ. թագավորել է Ն.Ք. 114—89 թ. այն է 25 տարի։—Խոր. Բ. ը, ժա—ժգ. Սեբ. բ. Յհ. կթ. դ. Ուխտ. Ա. իթ, ծդ. Ասող. Ա. ե՛ Մագ. թղ. ժթ. Մխ. անեց. գ, ժ. Սամ. անեց. 50. Մխ. այրիվ. 18, 57. Մին. համդ. 16. Նհպտք. 89. Վրդ. ժե. Զքր. սարկ. Ա. 2.—սեռ. Արտաշիսի՝ Խոր. Բ. է, թ, ժա—ժդ. Յհ. կթ. դ, ե. Ուխտ. Ա. իթ. Ասող. Ա. ե. Մխ. անեց. ժա. Մին. համդ. 16, 17.—Արտաշեսի՝ Շնորհ. վիպ. 196.—Արտաշէսի՝ Մագ. թղ. հ. Նհպտք. 89.—գրծ. Արտաշիսիւ՝ Խոր. Ա. ժբ. Ուխտ. Ա. ժդ. Ասող. Ա. ե.—Արտաշեսիւ՝ Սամ. անեց. 43. Մին. համդ. 5.—ած. Արտաշեսեան՝ Անան. քեր. 144.—Աթէնքի արշավանքի մասին խոսում է նաև Վանական վրդ. (տես Ալիշանի Հայբուսակը, էջ 385 և Նորայր ՀԱ 1925, 302)։—Petrowicz, Arsaciden-Münzen, էջ 188, որան է վերագրում երկու դրամ՝ անորոշ թվականով։—Ըստ Քննական պատմության, Արտաշէս Ա առասպելական անձնավորություն է, որ սարքել է Խորենացին, Պարսից Արտաշէս կամ Քսերքսէս թագավորի գործերը փոխադրելով նրա վրա։

— 3. Արտաշէս Արշակունի, որդի Արտաշէս Ա-ի, եղբայր Տիգրան Բ-ի և հայր Արշամ թագավորի.—սեռ. Արտաշիսի՝ Խոր. Բ. իգ. Յհ. կթ. ե. Ուխտ. Ա. լ. Ասող. Ա. ե. Շնորհ. վիպ. 233. Վրդ. ժե.—Արտաշէսի՝ Մխ. անեց. ը. (ըստ Զամչ. Ա. 220, 269 չկա այսպիսի անձ և Արշամը որդին է Արտաշէս Ա-ի)։

— 4. Արտաշէս, անծանոթ թագավոր Հայոց, եղբայր և հա-

ջորդ Երուանդի. թագավորել է 52 տարի.—Սեբ. բ.—սեռ. Արտաշեսի՝ անդ։

— 5. Արտաշես, երեց որդի Արտաւազդ Ա-ի. թագավոր Հայոց Ն.Ք. 14—20. երբ Անտոնիոս գերի տարավ Արտաւազդին (34), Արտաշէսը գահ բարձրացավ. բայց Անտոնիոսից հաղթվելով՝ փախավ Պարթևների մոտ, նրանցից օգնություն ստացավ և իր գահին տեր դարձավ։ Օգոստոս կայսեր թելադրությամբ՝ հռովմայեցոց կուսակից հայերը սպանեցին նրան և թագավորեցրին նրա եղբոր՝ Տիգրանին։—Justi 37 ա, Գրգշ. Քնն. պատմ. Բ. 183—186, Լէօ Ա. 434—437։ —Չամչ. Ա. 272, 274։

— Արտաշես տես Զենոն։

— 6. Արտաշես Բ. Արշակունի, թագավոր Հայոց. Սանատրուկի որդին էր, որ Երուանդի կոտորածից ազատվելով, փախավ Պարսկաստան և այնտեղ մեծանալով Պարսից Դարեհ թագավորի պալատում, նրա օգնությամբ տեր դարձավ իր գահին։ Վանեց Ալանաց և Հռովմայեցոց արշավանքները։ Ծաղկեցրեց արհեստներն ու հողագործությունը այնպես, որ մի ափ անմշակ հող չմնաց Հայաստանում։ Ըստ Չամչ. թագավորել է 88—129 թ. այն է 41 տարի։—Խոր. Բ. լէ, լը, խգ, խդ, խզ, խը, ծ, ծա, ծգ—ծզ, կ, կա. Սեբ. բ. Ուխտ. Ա. խա—խգ, ծգ. Կղկնտ. Ա. ը. Արծր. Ա. է, ը. Ասող. Ա. ե. Մագ. Թղ. ժթ, լգ. Վկ. ում. 60. Մխ. անեց. գ, թ, ժ, ի. Վրդ. ժէ. Նհպտք. 89. Յայսմ. օգոստ. 27, սեպտ. 19. Մխ. այրիվ. 18, 60. Մին. համդ. 19. Սամ. անեց. 56, 57.—Արտաշէզ՝ Զքր. սարկ. Ա. 2. ZAPh 1, 190.—սեռ. Արտաշիսի՝ Խոր. Ա. լ, Բ. լէ, խգ—ծդ, ծզ, ծթ—կբ. Սեբ. բ. Յհ. կթ. է. Ուխտ. Ա. խբ—խգ. Կղկնտ. Ա. ը. Ասող. Ա. ե. Սամ. անեց. 57, 58. Մին. համդ. 19, 20, 21.—Արտաշեսի՝ Ուխտ. Ա. խա, խբ. Արծր. Ա. է, ը, Գ. ժը. Վկ. ում. 61. Նհպտք. 89. Մագ. Թղ. լբ. Մխ. անեց. ժա, ի. Յայսմ. օգոստ. 27. Վրդն. աշխ. 525.—բց. յԱրտաշէսէ՝ Խոր. Բ. ծէ. Շնորհ. վիպ. 321. Սամ. անեց. 56.—հայց. զԱրտաշէսէ՝ Խոր. Ա. լ—գրծ. Արտաշիսիւ՝ Խոր. Բ. խե, խզ.—ած. Արտաշեսեան՝ Արծր. Գ. իթ.—Վրաց պատմության մեջ կոչված է Արտազան (Mourier, Hist. de Géorgie, էջ 85—91). իսկ Վրաց ազբ. Ա. 155 Արտաշան, որ Երուանդի եղբայրն է համարվում։ Այս Արտաշանի համար Վրացիք պատմում են հետևյալը. —Վրացիք, Օսերը և Լեզգիները մեծ բազմությամբ արշավեցին ու ավարի ավին հյուսիսային Հայաստանը։ Ետ դառնալով՝ անցան Կուրը և երբ կամբեչում նստած սկսան բաժանել ավարը, հասավ

Արտաշանի զորավար Սմբատը իր զորքով։ Օսերի թագավոր Բազուկը կանչեց նրան մենամարտի. Սմբատ հաղթեց և սպանեց թե Բազուկին և թե նրա եղբայր Անբազուկին։ Այնուհետև հարձակվեց Օսերի, Լեզգիների և Վրաց բանակի վրա, հաղթեց ու բոլորին փախուստի մատնեց։ Դեմոթում շինեց Սամցխէ բերդը, ուր պահապան զորք թողեց։ Վրացիք և Օսերը նորից հավաքվեցին և Հայոց դեմ դուրս եկան։ Արտաշէս և Սմբատ արշավեցին Բարթլի, նստան Մցխեթում։ Պատերազմը տևեց հինգ ամիս։ Ի վերջո հաշտություն կնքվեց և Արտաշէսը ետ դարձավ։ Բարթլին վերաշինվեց։ Մի քանի տարի հետո, երբ Արտաշէսը զբաղված էր Պարսից դեմ պատերազմով, Վրացիք և Օսերը նորից կռվի դուրս եկան. կոտորեցին Արտաշէսի որդի Զարեհի բանակը և Զարեհին էլ գերի բռնեցին։ Սմբատը Արտաւազդ և Տիգրան արքայորդիների հետ հասավ։ Երկու կողմերը հաշտվեցին. Վրացիք արձակեցին Զարեհին, խոստացան դրամ կրել Արտաշէսի պատկերով, կռվել նրա թշնամիների դեմ, իսկ Արտաշէսն էլ ետ տվեց Ծունդա քաղաքը, Դեմոթի բերդը, Ջաւախքն ու Արտահանը (Վրաց պատ. Ա. 155—160)։

— 7. Արտաշէս Արշակունի, Տիրան Բ-ի («339—350») անդրանիկ որդին և Արտաշէս Գ-ի թոռը, որ մեռավ չթագավորած։—տես. Արտաշիսի՝ Խոր. Գ. ժգ։

— 8. Արտաշէս ոմն, իր ընկերներով միասին նահատակվել է Ափրիկէի կողմերը՝ 203 թ. տոնվում է լատին եկեղեցում մարտի 7-ին.—Ալիշան, Արշալ. քրիստ. 83։

— 9. Արտաշէս ոմն, նահատակվել է ի Սիրմիոն (Պաննոնիայում), հունվարի 2-ին (բայց թվականը անհայտ).—Ալիշան, Արշալ. քրիստ. 83—84։

— 10. Արտաշէս, թագավոր Հայոց, հիշված փոխանակ Տըրդատի.—Վրդն. աշխ. 522։

— 11. Արտաշէս Մամիկոնեան, որդի Մանուէլ սպարապետի. ժառանգեց իր հոր պաշտոնը՝ Արշակ Գ-ի օրով («384 թ»).—Բուզ. Ե. լէ.—կոչված է Արտաշիր՝ Բուզ. Ե. խդ։

— 12. Արտաշէս Գ. Արշակունի, թագավոր Հայոց. Վռամշապուհի որդին էր. ծնվել է «404 թ». պարսիկ անունով կոչվում է Արտաշիր. գահ բարձրացավ «422 թ». իր անառակ վարքի պատճառով, նախարարները բողոքեցին Պարսից թագավորին և գահից զրկելով, պարսիկ մարզպան բերել տվին Հայաստան, որով և վերջացավ Արշակունեաց թագավորությունը «428 թ».—Խոր.

Գ. ծե, ծը, կգ. Փարպ. ժբ—ժգ. Կոր. 18. Եղն. եր. 267. Արծր. Ա. ժա. Ասող. Բ. ա. Շնորհ. վիպ. 950. Մխ. անեց. գ. Սամ. անեց. 70. Գամ. սահ. 31, 32. Կիր. 18. Օրբ. ժգ. Յայսմ. սեպտ. 9. Ննպտք. 91. Մին. համղ. 27.—սեռ. Արտաշիսի' Եղիշ. 7. Օրբ. ժգ. Յայսմ. սեպտ. 9.—Արտաշէսի' Փարպ. ժգ.—Արտաշեսի' Փարպ. ժգ. Սեմ. ապար. 35.—բց. յԱրտաշեսէ' Փարպ. ժգ.—յԱրտաշիսէ' Սեբ. ապար. 28.—պատ. զԱրտաշիսէ' Օրբ. ողբ. 32.—պարսիկ անունով կոչվում է Արտաշիր' Խոր. Գ. կդ. Յհ. կթ. ժգ. Արծր. Ա. ժա. Ասող. Բ. ա. Կղկնտ. Ա. գ. Կիր. 18. Վրդ. իզ. Մխ. այրիվ. 19. Սամ. անեց. 70. Յայսմ. սեպտ. 9. Զքր. սարկ. Ա. էջ 3. Վրաց աղբ. Ա. 77, 79.—սեռ. Արտաշրի' Խոր. Գ. կդ. Դաւ. անյ. 99. Արծր. Ա. ժա. Ասող. Բ. բ. Սամ. անեց. 70. Յայսմ. սեպտ. 9. Ննպտք. 91.—Արտաշիրի' Կիր. 19. Գամ. սահ. 33.—բցռ. յԱրտաշրէ' Խոր. Գ. կգ, կդ. Ասող. Բ. ա. Արծր. Ա. ժա. Ջուղ. 44.—Մխ. ա. Բ տպ. էջ 77 սխալմամբ կոչում է Արշակ, իսկ Ա. տպ. էջ 103 չի հիշում։ —Զամչ. Ա. 497—516։

— 13. Արտաշէս Մամիկոնեան, որդի Հմայեակի և եղբայր Վահան Մամիկոնեանի.—Փարպ. կբ. Ասող. Բ. բ։

*ԱՐՏԱՇԻՐ, պր. < պրս. اردشیر Ardšīr, որ հյ. Արտաշէս անվան իրանական ձևն է համարվում. գործածված է Ե դարից մինչև ԺԳ դար, այնուհետև խափանված։ Պարսիկներից հիշատակելի են' Ardašīr որդի Bījan-ի, զորավար Լոհրասպ արքայի (Շահն. 4, 279), Արտաշիր որդի Գուշտասպ թագավորի (Շահն. 4, 321), Արտաշիր կամ Բահման, որդի Իսֆենդիարի, թագավոր Պարսից (Շահն. 5, 8), Արտաշիր Բաբական, հիմնադիր Սասանեան հարստության (Շահն. 5, 265), Արտաշիր Բ Բարի, թագավոր Սասանեան (Շահն. 5, 386)։ Պարսիկները ստուգաբանում են ard «ցասում» և šīr «առյուծ» բառերից, իբր «ցասուցեալ առյուծ» (Գէորգ դպիր, Բառ. պրս. 102 ա). բայց այս ստուգաբանությունը կեղծ է. ստույգը տես վերը Արտաշէս։

— 1. Արտաշիր, մախաղ Հայոց, ժամանակակից Բաբգէն կաթողիկոսի («490—616 թ»). ստորագրում է այն թղթին, որ Բաբգէնը ուղարկեց Պարսկաստանի ուղղափառներին.—Գիրք թղ. ը.—բցռ. յԱրտաշրէ' Գիրք թղ. թ։

— 2. Արտաշիր, տեր Սիւնեաց. ժամանակակից Բաբգէն կաթողիկոսի («490—516 թ»). ստորագրում է այն թղթին, որ Բաբգէնը ուղարկեց Պարսկաստանի ուղղափառներին.—Գիրք թղ. ը։

— 3. Արտաշիր, տէր Առաւեղէնից, ժամանակակից Բաբգէն կաթուղիկոսի («490—516 թ»). ստորագրում է այն թղթին, որ Բաբգէնը ուղարկեց Պարսկաստանի ուղղափառներին.—Գիրք թղ. ը։

— 4. Արտաշիր Արշակունի, զինակիր Արտաւանի՝ զորավարի Յուստինիանոսի. Areobindus զորավարի հետ արշավեց Աֆրիկէ՝ ճնշելու համար Գոնթարի ապստամբությունը (545 թ).—Զամչ. Բ. 249—253, Justi 35բ (հուն. տառադարձված 'Αρτασίρης, ριος)։

— 5. Արտաշիր իշխան, անձնապահապետ և մտերիմ Կոստանդին կայսեր հունաց. երբ Կոստանդինը Մուշեղ զորավարին կուրացրեց, Հայոց բանակը ապստամբեց կայսեր դեմ. կայսրը մեծ զորքով Արտաշիրին ուղարկեց նրանց դեմ. երկու կողմից մեծ կոտորած եղավ. ի վերջո Արտաշիր հաղթվեց ապստամբ հայերից և ետ դարձավ (792).—Զամչ. Բ. 424։

— 6. Արտաշիր, որդի Վարշիրի և թոռն Սպլվարդի. իր մի այգին նվիրեց Եղվարդի վանքին, 1191 թ.—Այրարատ 199։

— 7. Արտաշիր ռայիս Օշականի, իր գանձագին այգին, որ կոչվում էր Աշոտոնց, նվիրեց Բագնայրին, 1211 թ.—Շիրակ, էջ 120 ա։

— 8. Արտաշիր, որդի Շահնշահի և թոռնորդի Զաքարէ ամիրսպասալարի, եղբայր Զաքարէի Գ, Աւագ Սարգսի և Իւանէի. վաճառեց Մրէնը պարոն Սահմադինին՝ 1261 թ.—Հիր. կր. Շիրակ 175. Յովսէփեան, Նիւթեր և ուս. Ա. 14։

— 9. Արտաշիր, որդի Իւանէի, եղբորորդի նախորդ Արտաշիրի (№ 8), թոռն Շահնշահի և թոռնորդի Զաքարէ մեծի. հիշված 1336 թ.—Արձ. (Շիրակ 28 բ).

*ԱՐՏԱՊԱՏ, ար. < իրան. Artapāta անունից, որի բուն նշանակությունն է «Արդարության Ոգուց պահպանված»։ Այս անունով հայտնի է 'Αρταπάτης եղբայր Փոքր Կյուրոսի։

— Արտապատ, թագավոր Հայոց՝ յաջորդ Տիգրանի, Պոմպէոսի ժամանակ (65 թ).—Justi 37 բ։

*ԱՐՏԱՒԱԶԴ, ար. < հպրս. *Artavazdah, զնդ. ašavazdah, պհլ. Artavazd. բուն նշանակում է «որի արդարությունը հաստատուն (կամ տևական) է» (Հիւբշ. 30)։ Իբրև հայ և մարաց թագավորների անուններ տառադարձված է հուն. 'Αρταουάσδης (ուշ ժամանակ՝ 'Αρτάβασδος), լտ. Artavasdes, Artoasdes կրճատ ձևն է Արտաւազ, հմմտ. Artabaz թագավոր Պարթևաց (իբր 227 թ).

գրվում է ֆրանս. Artabaze։ Հայերից փոխ էին առել այս անունը նաև Գոթացիք. և Վիսիգոթները իրենց տիրապետության վերջերը՝ Սպանիայում, կրում էին դեռ Արտաւազդ (Artavasdes) անունը, մոտ 710 թ. (Nansen, L'Arménie 304)։ Գործածված է մեր մեջ Ն.Ք. Դ դարից մինչև ԺԳ դար. կա նաև սրանից կազմված Արտաւազդեան, որ իբր «հայրանուն» հիշում է Դաւ. քեր. 104։ ԺԳ դարից հետո այս անունը դադարեց գործածությունից և մեր նոր ազգային զարթման ժամանակ վերակենդանացավ։ Այժմ մեր սովորական և սիրուն անուններից մեկն է. փաղաքշականն է Արտօ։

— 1. Արտաւազդ, թագավոր Փոքր-Հայոց. հաղթեց և դուրս քշեց Նէոպտողեմէոսին (Ն.Ք. 322), որին Սելևկեանները Փոքր-Հայոց սատրապ կամ կուսակալ էին նշանակել.—Լէօ Ա. 379։

— 2. Արտաւազ (կամ Արտաւազան), իշխան հայ, որ Որոնդէս (Հրանդ) կուսակալի մահից հետո (Ն.Ք. 230) դուրս եկավ Սելևկեան հարկատվությունից, տիրեց Հայաստանի և իր իշխանությունը տարածեց մինչև Ատրպատականի սահմանները։ Անտիոքոս Գ. Մեծը (222—186) գնաց նրա վրա. Արտաւազ վախեցավ և առանց պատերազմի ընդունեց հարկատվությունը. այնուհետև խաղաղությամբ կառավարեց երկիրը և մեռավ 50 տարի իշխելուց հետո (Ն.Ք. 189)։—Ջամչ. Ա. 203։

— 3. Արտաւազդ, թագավոր Հայոց, Արտաշէսի և Տիգրան Մեծի միջև, երբ Ն.Ք. 93 թ. սրա դեմ պատերազմի դուրս եկավ Պարթևաց Միհրդատ Բ թագավորը, որպեսզի գահ բարձրացնի Տիգրան Ա-ին։ Թերևս այս Արտաւազդը Տիգրանի եղբայրն էր։ Ասպետ Petrowicz, Arsaciden Münzen, էջ 189, սրան է վերագրում անստույգ մի դրամ։—Գրգչ. Քնն. պատմ. Բ. 104, 124 (կոչված է Որդուազդիոս առ Յուստինոս պատմիչ, ԽԲ, 2), Լէօ Ա. 390, Justi 39 բ (Artoadistus ձևով), Ջամչ. Ա. 207 (դնում է որդի Արտաշէսի. իշխել է 10 տարի, այն է Ն.Ք. 159—149)։

— 4. Արտաւազդ Ա Արշակունի, թագավոր Հայոց (56—34 Ն. Ք.), որդի և հաջորդ Տիգրան Բ-ի. դաշնակցեց Պարթևների հետ՝ վանելու համար Հռովմայեցիներին Միջագետքից և Ասորիքից. հաղթվեց Հռովմայեցոց Անտոնիոս զորավարից և շղթայակապ գերի տարվելով Եգիպտոս, բանտարկվեց և հետո սպանվեց՝ Ակտիոնի նավամարտի ժամանակ (Ն. Ք. 31)։—Ստրաբոն Հայոց մասին, էջ 49, 59, 61, 67. Գրգչ. Քնն. պատմ. Բ. 169—183, Լէօ Ա. 425—435.—Խոր. Բ, իբ, իգ. ՅՀ. կթ. և. Ուխտ. Ա. լ. Ասող.

Ա. ե. Մխ. անեց. գ. Մագ. թղ. ժթ. Սամ. անեց. 50. Շնորհ. վիպ. 226. Վրդ. ժե (հրտր. Էմինի՝ Արտաւազ). Մին. համդ. 17. Նհպտք. 89. Զքր. սարկ. Ա. 2.—գրված է Արտաւազ՝ Մխ. այրիվ. 18, 57. Մխ. անեց. ժ.—սեռ. Արտաւազդայ՝ Խոր. Բ. իբ, իգ. Յհ. կթ. ե. Ուխտ. Ա. լ. Ասող. Ա. ե. Կղկնտ. Ա. ը. Նհպտք. 89.—Իր հոր պալատում ընտիր հունական կրթություն էր ստացել. ըստ Պլուտարքոսի գրել է զանազան հունարեն ողբերգություններ, ճառեր և պատմություն, որոնք պահված են եղել մինչև Բ դարը՝ Ց.Ք. (Զարբ. Հին դպր. 172)։ —Զամչ. Ա. 245—269։

— 5. Արտաւազդ, թագավոր Հայոց. Օգոստոս կայսեր կողմից նշանակվեց հաջորդ Տիգրանի և Երատոյի՝ Ն.Ք. 6 թվին կամ քիչ ուշ։ Իր անունով կա մի դրամ։ Գահազուրկ եղավ Հայոց ձեռքով և նրա տեղ դրվեց Արիոբարզան.—Գրգչ. Բ. 188—189, Լէօ Ա. 439։

— 6. Արտաւազդ, որդի Արիոբարզան մարի. թագավոր Հայոց. Օգոստոս կայսեր հրամանով հաջորդեց իր հոր. բայց շուտով Հայերը մերժեցին նրան և սպանեցին (10 թ). Նրա փոխարեն գահ բարձրացավ Տիգրան Դ.—Գրգչ. Քնն. պտմ. Բ. 189—190, Լէօ Ա. 450։

— 7. Արտաւազդ Բ Արշակունի, թագավոր Հայոց, որդի և հաջորդ Արտաշէս Բ-ի։ Մանկությունից հայտնի էր իր չար բնավորությամբ. զվարճությամբ անց կացրեց իր կյանքը, թագավորեց 2 տարի (ըստ Զամչ. 129—130 թ.) և մի օր, որսի գնալիս, ընկավ Մասիսի վհերից մեկը և կորավ։ Իր վրա կազմըվեց հին հայոց այն նշանավոր առասպելը, թե իբր Արտաւազդը շղթայակապ բանտարկվել է դևերից Մասիսի վիհում, իր հավատարիմ շները կրծում են նրա շղթաները, որպեսզի պոկվին, Արտաւազդը դուրս գա և աշխարհը կործանի։ Բայց դարբինները զարնելով իրենց սալին, շղթաները զորանում են և Արտաւազդը մնում է միշտ բանտարկված։ Նույն առասպելը մուտք է գործել նաև Վրաց մեջ (տես Բանբեր 1921, էջ 99—104).—Խոր. Բ. ծ, ծգ—ծե, կա, կբ. Սեբ. բ. Եղն. Ա. բե. Եղիշ. հրց. 51. Ուխտ. Ա. խգ. Ասող. Ա. ե. Արծր. Ա. ը, Գ. իթ. Վրդ. ժէ. Մագ. թղ. ժթ. Սամ. անեց. 57. Մին. համդ. 20. Նհպտք. 89. Զքր. սարկ. Ա. 2. —գրված Արտավազ՝ Մխ. անեց. գ, թ, ժ. Մագ. թղ. լգ. Մխ. այրիվ. 18. Վրաց տղբ. Ա. 159.—սեռ. Արտաւազդայ՝ Խոր. Ա. լ, Բ. ծա, ծգ, ծե, կա, կբ, կգ. Եղիշ. հրց. 51. Ուխտ. Ա. խգ. Շնորհ. վիպ. 334. Նհպտք. 90.—գրծ. Արտաւազաւ՝ Պտմ. վբ. ե.—

Շիդար (բուն նշ. «խենթ, գիժ») անունով անցել է նաև Ցայսմաւուրքի մէջ (տես Տաշեան, Ցուց. 25, 181, 896)։ Աւելի ուշ՝ Շիդարը դարձել է Արտաւազդի որդին և վիհն ընկնելու առասպելը փոխադրվել է սրա վրա (Հայապ. 64, Ձեռ. Հալէպի, Ա. 294 և 332)։—Անշուշտ Աrsաւազդ անունից է arsաւազahու «մի տեսակ թռչուն» Փիլ. լին. 117, որ Նոր Հայկազեան բառարանը գրում է arsաւազդաճաւ։ Հայերենից է փոխառյալ վրաց. Աrտաւազ, Աrsւազի, Աrsoզի անձնանունը, որից էլ իբրև հասարակ անուն՝ Աpsաւազիսերի «Արտաւազդի պես», arsաւազի, arsւազի «կախարդների գլխավորը», իմերել. asrաoզի «սատանա, պոչավոր», arsաւազի, arsւազի, aspաւազի, asraoզ «չար, ստահակ երախա» (տես Բանբեր, անդ)։—Ջամչ. Ա. 342—353։

— 8. Աrsաւազդ, Թագավոր Հայոց, նշանակվեց Պարսից կողմից՝ Խոսրով Ա-ի սպանությունից հետո, որ տեղի ունեցավ «240 թվին».—Ագգապ. 76, Գրգչ. Քնն. պատմ. Բ. 274, Գ. 314, Լէօ Ա. 538, Դուրեան՝ Ազգ. պատմ. 184։

— 9. Աrsաւազդ Մանդակունի, նախարար. Խոսրով Ա-ի սպանությունից հետո Տրդատին փախցրեց Հռոմ. այս լսելով՝ Արտաշիր Սասանեանը սրի քաշեց Արտաւազդի ցեղը։ Երբ Տրդատը վերադարձավ Հայաստան, Արտաւազդին կարգեց սպարապետ։ Նա էր, որ գնաց Կեսարիա՝ Հայաստան բերելու Լուսաւորչի երկու որդիներին՝ Արիստակէսին և Վրթանէսին «310 թ»։ Մեռավ Հիւսիսականաց պատերազմում։—Ագաթ. §861 (Արաբ. Ագաթ. 57, 74 գրում է Արտաւազդ Մամիկոնեան). Խոր. Բ. հզ, հը, ձբ, ձե. Ասող. Ա. ե. Կղկնտ. Ա. ժբ. Շնորհ. վիպ. 427. Վրդ. ժէ. Վրդն. լս. 47.—գրված է Աrտաւազ Մանդակունի՝ Ուխտ. Ա. ծգ.—սեռ. Աpտաւազդայ՝ Խոր. Բ. հը, ձբ, Գ. գ.—տես և Արտաւան № 3.—ըստ ՀԱ 1911, 520 նույն անձն է՝

— 10. Աpտաւազդ Մամիկոնեան, հայր Վաչէ զորավարի.—Բուզ. Գ. դ, է (սեռ. Աpտաւազդայ ձևով)։

— 11. Աpsաւազդ Մամիկոնեան, որդի Վաչէի, սպարապետ Հայոց՝ Խոսրով Բ-ի վերջին տարիներում և Տիրան Բ-ի օրով «339—350 թ».—Բուզ. Գ. ժա, ժը. Արծր. Ա. ժ.—սեռ. Աpտաւազայ՝ Մեսր. եր. 17։

— 12. Աrտաւազդ Մամիկոնեան, որդի Վաչէի. պատանի էր դեռ, երբ Մանուէլ սպարապետից ծածուկ մասնակցեց նրա պատերազմին Մերուժանի դեմ և թշնամիներից շատերին կոտորեց (Դ դար).—Բուզ. Ե. խգ.—սեռ. Աpտաւազդայ՝ անդ։

— 13. Արտաւազդ *Մամիկոնեան, որդի Մանուէլ սպարապետի և հօրեղբայր Քաջն Վարդանի.—Մեսր. եր. 123։*

— 14. Արտաւազդ *Մամիկոնեան, մին այն նախարարներից, որոնց Յազկերտ Բ բանտարկեց Պարսկաստանում, Վարդանանց պատերազմից հետո «452 թ».—Եղիշ. 150, Փարպ. խէ։*

— 15. Artabazes, *հայ զորավար Պարսից, գերի բռնվեց Բելիսարիոսի ձեռքով Սիսաւրանոնում (541). նշանակվեց Հայկական գնդի զորավար՝ Ներսեհ Բասենցու փոխարեն, Գոթացոց դեմ պատերազմում, ուր մեծամեծ քաջություններ գործեց և մենամարտության մեջ սպանեց Գոթաց հսկա Վիլարին. բայց ինքն էլ պատահմամբ վիրավորվելով՝ մեռավ (550 թ).—Զամչ. Բ. 268—270.* Justi *39 ա։*

— 16. Արտաւազդ *ի Մամական իշխան, անդամ Դուինի Բ ժողովի («554 թ»).—Գիրք Թղ. ժէ։*

— 17. Արտաւազդ *Ապահունի, մասնակցեց Սմբատ Վրկան մարզպանի պատերազմին Քուշանաց դեմ «608 թ».—Սեբ. իզ։*

— 18. Արտաւազդ, *հայր Յոհանիկի, որ էր վաներեց Ապարանից (608 թ).—տես.* Արտաւազդայ՝ *Ուխտ. Բ. լէ։*

— 19. Արտաւազդ *Դիմաքսեան, ժամանակակից Թէոդորոս Ռշտունու. իր եղբոր մատնությամբ ընկավ Հաբիբ արաբ իշխանի ձեռքը և սպանվեց (654 թ).—Սեբ. ծ։*

— 20. Արտաւազդ *Մամիկոնեան, եղբայր Մուշեղ սպարապետի. ներկա էր Ս. Դաւիթ Դունեցու թաղման հանդեսին, Դուինում, Աբդուլլահ ոստիկանի օրով «701 թ».—Յայսմ. մրտ. 31. Վկ. դաւ. 95։*

— 21. Արտաւազդ, *հրամանատար հունական բանակի հայկական թեմի. չընդունեց ապօրինի կայսր Թէոդոսիոսին և օգնեց իր ընկեր Լևոն Իսաւրացուն, որ գահընկեց արեց նրան և ինքը կայսր դարձավ (717 թ).—*Justi *39 ա։*

— 22. Արտաւազդ, *քաջ զորավար. Լևոն Իսաւրացի կայսեր քեռայրը և Կոստանդին Կոպրոնիմոսի Աննա քրոջ ամուսինն էր. կիւրապաղատ և կոմս Ոպսիկիայի. բանակի հայ տարրից քաջալերված՝ ապստամբեց Կոստանդին Կոպրոնիմոս կայսեր դեմ և կայսր հրատարակվեց (741). երկու տարի հետո միայն Կոստանդինը կարողացավ նվաճել նրան և գահին տեր դարձավ.—Զամչ. Բ. 403—406. Յուշիկք, Բ. 356. Միխ. աս. (Արտաւազ) ա տպ. 354 =Բ տպ. 342, 344։*

— 23. Արտաւազ, *սպասավոր Արտաւազդ կայսեր. երբ Կոս-*

տանդին Կոպրոնիմոս պաշարեց Պոլիսը և քաղաքում սով ընկավ, կայսրը ուղարկեց այս Արտաւազդին, որպեսզի նավերով պաշար բերե. Կոպրոնիմոս բռնեց նրան, պաշարը խլեց և նրան էլ կուրացրեց (742 թ).—Զամչ. Բ. 405։

— 24. Արտաւազդ (կամ Աբրահամ), վանահայր Արծկէի Երաշխաւոր վանից. սիրով հյուրընկալեց Վահան Գողթնացուն («736 թ») և նրա նահատակությունից հետո, ուխտի գնալով Ռուծափ «744 թ», հավաքեց մանրամասն տեղեկություն և կազմեց նրա վկայաբանությունը «745 թ».—Վկ. գողթ. 34, 55, 77. Ցայսմ. մրտ. 28. Տաշեան, Ցուց. 1066 ա. Հայապ. 75. Ձեռ. Վենետ. Բ. 498։

— 25. Արտաւազդ տէր Աշոցայ. ուրիշ նախարարների հետ մասնակցեց Պարտաւի ժողովին, որ գումարեց Սիօն կաթուղիկոսը «768 թ».—Կանոն. 166. Տաշեան, Ցուց. 653 բ։

—26. Արտաւազդ Մամիկոնեան, որդի Հմայեակի. ապստամբեց Հասան ոստիկանի դեմ «774 թ» և բռնացավ Եգերացոց ու Վրաստանի վրա.—տես. Արտաւազդայ՝ Ղև. լդ. Ալիշան, Ցուշիկք Ա. 203։

— 27. Արտաւազդ Մամիկոնեան,՛ զորավար հունաց. չարաչար հաղթեց արաբներին՝ Կիլիկիայի մոտ «778 թ».—Ղև. լէ։ Թերևս նույն է նախորդի հետ։

— 28. Արտաւազդ Կամսարական, ապոհիւպատ պատրիկ և իշխան Հայոց, որդի Հրահատ պատրիկի Շիրակայ և Արշարունեաց. կինն է Շուշան Մամիկոնեան. սրանց տապանը մնում է Նախճաւան գյուղի եկեղեցում (Շիրակ 136). Ալիշան համարում է Զ դարից, իսկ Ցովսէփեան, Շողակաթ 175 և Կոգեան, Կմարկները 164—165 դնում են իրավամբ Ը դար. Հրահատը Ներսեհի որդին է։ (Արձանագրության նկարը տես Շողակաթ, էջ 176)։

— 29. Արտաւազդ Ընտրունի, մասնակցեց Մուսէի պատերազմին «851 թ».—Արծր. Բ. գ։

— 30. Արտաւազդ իշխան Տաղատնեցի, ժամանակակից Գէորգ Բ Գառնեցի «877—897» կաթուղիկոսի.—տես. Արտաւազդայ՝ Օրբ. լզ։—Սիսական 51, 211։

— 31. Արտաւազդ, որդի Սակռի. Փիլիպպէ Սիւնին գնեց նրանից Ցուբակախոռ գյուղը և նվիրեց Տաթևի վանքին՝ 943 թ.—բց. յԱրտաւազդայ՝ Օրբ. ծ։

— 32. Արտաւազդ տէր Մաղազունեաց, որի հրամանով Ատոմ Անձևացին գրեց «Բացայայտութիւն պատուիրանաց» (Ժ

դար, ըստ Զարբ. Հին դպր. 568. բայց տես նաև Ատոմ Անձևացի)։

— 33. Արտաւազ, որդի Սակոյի. իր եղբայրների հետ միացած՝ Շոռոթ գյուղը նվիրեց Տաթևի վանքին (1026 թ).—սեռ. Արտաւազայ՝ Օրբ. ծե։ (Կարելի էր միացնել նախորդի հետ, № 31, բայց երկուսի միջև կա 83 տարի)։

— 34. Արտաւազդ-Նիկողա Զմիւռնացի. ԺԲ դարի հեղինակ է. գրել է հունարեն լեզվով բազմապատկության աղյուսակ, որ թերի վիճակում հասել է մեզ։ Սա ամենահին ամբողջական աղյուսակն է, որ հնությունը ավանդել է մեզ։ Արտաւազդ Զմիւռնացին այդ աղյուսակի հեղինակն է համարում Տրոյական պատերազմի հերոս Παλαμήδης-ին։—Այս տեղեկությունը հաղորդեց ինձ Աշ. Աբրահամյանը, 1943 փետր. 10, քաղելով М. Я. Выгодский, Арифметика и алгебра в древнем мире (Москва 1941) աշխատությունից, էջ 195։—Հեղինակը նրան համարում է հույն. բայց Արտաւազդ անունը ցույց է տալիս, որ նա անպատճառ հայ է։ Արտաւազդ անունը թեև իրանական է, բայց Է դարից հետո, երբ իրանցիք մահմեդական կրոնն ընդունեցին, այլևս հին ազգային իրանական անուններ չէին գործածում։ Հունաց մեջ էլ չկար Արտաւազդ և միայն հայերն էին, որ մինչև ԺԳ դար գործածում էին այս անունը։

— 35. Արտաւզաս, հացագործ Տարօնում. նվիրատու ձեռագրի (1204 թ).—Հայապ. 450։

— 36. Արտաւազդ Կամսարական, որի տապանաքարը գտնըվել է Բասենում (Ալիշան, Հին հաւատք 412)։

*ԱՐՏԱՒԱՆ, ար. < հպրս. Artabānu անունից, որ բուն նշանակում է «արդարության ճառագայթող» (Bartholomae 954, Հիւբշ. 30)։ Այս անունով հայտնի են Արտաւան եղբայր Դարեհ Ա-ի, Արտաւան սպանող Քսերքսէսի (464 թ), Արտաւան Ա թագավոր Պարթևաց՝ Ն.Ք. 128—123, Արտաւան Բ 88—77, Արտաւան Գ 10—40, Արտաւան Դ 80—81? Արտաւան Ե 213?—227։ Օտար տառադարձությամբ՝ հուն. 'Αρτάβανος, 'Αρταβάνης, լտ. Artabanus։ Ֆիրդուսին գիտե اردوان Ardawān՝ վերջին Աշկանեան թագավոր (Շահն. 5, 217), որին սպանեց Արտաշիր Սասանեանը։ Մեր մեջ հիշված է Ն.Ք. Ա դարից մինչև Զ դար. բայց տես տակը № 8։

— 1. Արտաւան, անծանոթ հայ թագավոր, հաջորդ Արտաշէս Ա-ի. Արշաւրի հետ միասին գահակալեց 12 տարի (Ն.Ք. Ա դար).—Սեբ. բ։

— 2. Արտալան, այսպես է կոչված Արտաշէս Բ թագավորը՝ ըստ Պատմ. վր. ե։

— 3. Արտաւան, սպարապետ Տրդատի.—սեռ. Արտաւանայ՝ Ագաթ. § 121 (թվում է թե նույն է Արտաւազդ Մանդակունու հետ. հմմտ. Տաճատ՝ փեսա Արտաւանի՝ ըստ Ագաթ. կամ Արտաւազդի՝ ըստ. Խոր.)։

— 4. Արտաւան, իշխան Վանանդի. մին այն չորս նախարարներից, որոնց Տիրան Բ ուղարկեց Դանիէլ քորեպիսկոպոսի մոտ՝ հրավիրելու համար նրան կաթուղիկոսության, Յուսիկ կաթուղիկոսի մահից հետո («347 թ»)։—Բուզ. Գ. ժղ։

— 5. Արտաւան, հայ զորավար, որին Շապուհ Պարսից թագավորը ուղարկեց ներքինի Կիւլակի հետ Հայաստանը նվաճելու համար (Ամմիանոս)։—Ըստ Աղգապ. 198 Արտաւան՝ Վահան Մամիկոնեանի (գործակից Մերուժան Արծրունու, հայր Սամուէլի) անունն է, որ ստացավ նա՝ մոգական կրոնը ընդունելուց հետո։—Արտաւան և Կիւլակ դավաճանեցին Շապուհին և Հայոց կողմն անցան։ Պապը («368—374») գլխատեց նրանց և նրանց գլուխները Շապուհին ուղարկեց։—Զամչ. Ա. 721 (Կիւլակը դնում է=Գղակ), Լէօ Ա. 636, 643։—Այրարատ 57 բ։

— 6. Արտաւան Արշակունի, փեսա Հմայեակ Մամիկոնեանի. իր եղբոր՝ Գաղրիկի հետ գնաց Պոլիս՝ Հունաց Լևոն կայսեր ժամանակ (471)։ Բնակեցին Մակեդոնիայի Նիկիա քաղաքը, ուր որդոց որդի սերելով շատացան և Հերակլ կայսեր ժամանակ փոխադրվեցին Ադրիանուպոլիս, ուր երկար ժամանակ պահեցին իրենց տոհմանունը.—Զամչ. Բ. 148, Justi 32 ա։ (Տէր Սահակեան, Հայ կայսերք, Ա. 337—338 և 349 ըստ Պերփեռուժէնի կոչում է նրանց Արտաւան և Կղիենես։ Սրանք Հայոց թագավորական ցեղից էին. գահակալական կռիվների պատճառով, ոչ միայն հայրենի իշխանությունից զրկված, այլ և իրենց կյանքը կորցնելու վտանգի տակ Պոլիս գնացին, շուրջ 460 թ։ Սրանց սերունդից է Վասիլ Ա մեծանուն կայսր Հունաց)։

— 7. Արտաւան Արշակունի, որդի Յովհան Արշակունու. հարձակվեցին Բարձր Հայոց կուսակալ Ակակիոսի վրա, սպանեցին նրան և փախան Պարսկահայոց կողմը (536)։ Յուստինիանոս կայսրը ուղարկեց նրանց վրա Սիդդա զորավարին. Արտաւանը նրան էլ հաղթեց և սպանեց (537)։ Իր ընկերներով գնաց Պարսից Խոսրով թագավորի մոտ և գրգռեց նրան Հունաց դեմ։ Այսպես սկսվեց հույն-պարսկական պատերազմը (539), որից վեր-

ջապես ձանձրացած՝ Արտաւանը իր ընկերներով գնաց Պոլիս և կայսեր ծառայության մտավ (542)։ Իր գնդով մասնակցեց Եգերացոց պատերազմին, ուր սպանեց Պարսից հառաջամարտիկ հսկային (542)։ Երբ Գոնթար զորավարը ապստամբեց Աֆրիկէում և սպանելով Յուստինիանոսի Areobindus զորավարին՝ բռնագրավեց այն երկիրը, Արտաւանը սուտ բարեկամացավ նրա հետ և խնջույքի ժամանակ սպանելով նրան՝ հաղթեց նրա բոլոր կուսակիցներին, կոտորեց բանակը և Աֆրիկէն գրավեց։ Սրա վրա Յուստինիանոսը կարգեց նրան դուքս Աֆրիկէի (545)։ Դառնալով Պոլիս, ստացավ հյուպատոսական պատիվ։ Կնոջը պատճառով գժտվեց կայսեր հետ և դավադրություն կազմեց նրա կյանքի դեմ. բայց բռնվեց ու բանտարկվեց (547)։ Երբ Գոթացիք գրավեցին Սիկիլիան, կայսրը հանեց նրան բանտից և Թրակիայի զորավար նշանակելով՝ ուղարկեց Սիկիլիա։ Արտաւանը հաղթեց Գոթացոց, գրավեց կղզին և մեծ պատիվներով փառավորվեց մինչև իր մահը։—Ջամչ. Բ. 241—247, 249—255, 517։

— 8. Արտաւան, նվիրատու Հառիճի վանուց. Թվականն անհայտ. բայց որովհետև կինը կոչվում է Նուրսթի, ուստի բավական հետին է. հարակից արձանագրությունները ԺԳ—ԺԴ դարից են.—Շիրակ 162։

*ԱՐՏԵՄ, ար. < ռուս. Артемий անունից. գործ է ածվում Կովկասում, երբ համապատասխան հյ. Յարութիւն անվան, որ ոչ մի կապ չունի նրա հետ։ Յարութիւն հայկական անուն է, երբ թարգմ. հուն. Ἀναστάσιος (> Անաստաս) անվան. իսկ ռուս. Артемий փոխառյալ է հուն. Ἀρτέμων, Ἀρτεμεών ձևերից, որոնք բուն նշանակում են «առողջ» (տես Արտեմիս). համմտ. Արտեմիոս նահատակ (Ուգեր. Լիակ. վրք. սրբ. Է. 511) և Արտեմոն խոստովանող (Ուգեր. Լիակ. վրք. սրբ. ԺԲ. 69)։ Պոլսում Արտեմ իգական անուն է։

*ԱՐՏԵՄԻՍ, իգ. < հուն. Ἄρτεμις աստվածուհու անունից։ Սա Արամազդի դուստրը և Ապոլլոնի քույրն էր. ներկայացնում է լուսինը և է լույսի, ջրերի և պարկեշտության աստվածուհին։ Անունը ծագում է ἀρτεμής «առողջ» բառից (ըստ Ստրաբոն ԺԴ. ա, 6)։ Մեր մեջ գործածված է երբեմն Անահիտ աստուածուհու անվան փոխարեն. այսպես՝ Արտեմի ձևով՝ Սրծր. Ա. է։ Այս անվան կրճատ ձևը՝ Արտեմ գործածական էր Պոլսում, անցյալ դա-

րում, երբև իգ. անձնանուն։ Ավելի ուշ հրապարակ իջավ նաև Արտեմիս ձևը, բայց տարածում չստացավ։

*ԱՐՏԷՆ, ար. < իր պհլ. Artēn, որ փաղաքշական ձևն է Արտաւազդ, Արտաշէս, Արտաւան անունների, կազմված -ēn մասնիկով (Հիւբշ. 30)։

— Արտէն, իշխան Գաբեղեան, կողմնակից Վասակի՝ ընդդեմ ուխտապահների. Աստրոմիզդ մարզպանի հրամանով և ուրացյալ Վարազշապուհ Պալունու հետ միասին գնաց Հմայեակ Մամիկոնեանի վրա և ջարդեց նրա զորքը Տայոց աշխարհում (Ե դար).—Եղիշ. 71, Փարպ. լզ։ խա. Օրբ. ժզ։ (Փարպ. լզ ձեռագիրն ունի «իշխանն Աբեղենից Արմէն». տպագրության մեջ ուղղված է Արտէն. բայց պետք է ուղղել նաև Աբեղենից տոհմանունը։ (Տես իմ Ձեռագրական սրբագրություններ հայ մատենագրության մեջ, Երևան 1926, էջ 20)։

ԱՐՏԻԹԷՍ, ար. ծագումն անհայտ։

— 1. Արտիթէս, քրմի որդի էր, որին Լուսաւորիչը սովորեցրեց և եպիսկոպոս կարգեց.—Ագաթ. § 845.—Չամչ. Ա. 669, Զարբ. Հին դպր. 181 և Հայապ. 41 կարծում են թե նույն է Խոր. Բ. ձ. հիշված Արտիթէս եպիսկոպոսի հետ, որ Ցագոռճանի Մարկոս ճգնավորի խնդրանոք գրել է Լուսաւորչի պատմությունը։—Արաբ. Ագաթ. 72 նույնը կոչվում է Արտիթ եպս. Մաղխաղաց. իսկ հույն. Ագաթ. ՝Αρτιος։

— 2. Արտիր, եպիսկոպոս Բասենի, հրաշագործ. աշակերտ Դանիէլ քորեպիսկոպոսի. ապրեց մինչև Խոսրով Գ-ի («384—389») օրերը.—Բուզ. Զ. է.—սեռ. Արտրայ՝ անդ։

†ԱՐՏՈՅՏ, ար. < հյ. արտոյտ թռչունի անունից։ Այս անունով ունինք միայն՝

— Արտոյտ անապատական, աշակերտ Գինդի. կենդանի էր դեռ Ներսէս մեծի մահից հետո («373 թ»).—Բուզ. Զ. ժզ։

ԱՐՏՈՒՄՇԱՀ, ար. ծագումն անհայտ. մի անգամ գտնում եմ գործածված սեռ. Արտումշի ձևով, անթվական մի հիշատակագրության մեջ, որ գրված է 1602 թվից ավելի ուշ։—Ձեռ. Վենետ. Ա. 246։

†ԱՐՓԵՆԻԿ, իգ. < հյ. արփի «արեգակ» բառից. նորակերտ անուն. կազմությունը այնպես է՝ ինչպես Սաթենիկ, Վարսենիկ, Նազենիկ. կրճատ ձևն է Արփիկ, ինչպես մյուսներից էլ ունինք Սաթիկ, Վարսիկ, Նազիկ։ Տես և Արփինէ։

Արփիար տես Ալփիար։

+ԱՐՓԻՆԷ, իգ. < հյ. արփի «արեգակ» բառից -ինէ վերջավորությամբ, որ գտնում ենք Արմինէ, Ասրինէ, Գոհարինէ են անունների մեջ։ Նորակերտ անուն, որ գործածական է Պոլսում։ Տես և Արփենիկ։

+ԱՐՔԱՅ, ար. < հյ. արքայ «թագավոր» բառից, ինչպես ունինք հուն. Վասիլ, Բարսեղ, արաբ. Մելիք, պրս. Խոսրով, հյ. Թագւոր նույնիմաստ անունները։ Սրա փաղաքշական ձևն է Արքայիկ։ Գործածված է եղել Թ—ԺԷ դարերում, բայց հազվագյուտ։ Հին շրջանում արական էր. հետո դարձել է իգական։

— 1. Արքայ, աղանդապետ Թոնդրակեցոց, հաջորդ Անանեսի.—Մագ. Թղ. կէ. Հայապ. 551։

— 2. Արքայիկ (հուն. 'Αρκάϊκα) իշխան, ազգական Սմբատ Ա-ի. Նրա երկու որդիների վրա կասկածելով Գրիգորիս իշխան Տարոնի՝ բանտարկեց նրանց. Լևոն կայսեր միջնորդությամբ ազատվեցին և Պոլիս գնալով՝ կայսեր կողմից պաշտոն ստացան արքունիքում.—Զամչ. Բ. 726։ Սրա հետ նույն է՝ Արքայ, որդի Աշոտ Վահանի, իշխան Տարոնի. մեռել է 895 թ.—Արծր. հրտր. Պատկ. էջ 231, տող 24 (իբր հասարակ անուն) ըստ Justi 26 բ։

— 3. Արքայ Աւագվանեցի, գրիչ (ԺԲ դարից հետո).—Տես Տաշեան, Ցուց. 610 ա։

— 4. Արքայ, կին Աբրահամի և տատ Յովհաննէս տանուտերի, որ Մոկաց Փառավանք գյուղում գրել տվեց մի Աւետարան, 1455 թ.—Ձեռ. Վասպ. 421։

— Արքայ, իբրև իգ. անուն հիշված է 1649 թ.—REA 10, էջ 51։

— Արքայ, իբրև իգ. հիշված է անթվական մի հիշատակարանում (Ձեռ. Սեբ.=ՀԱ 1925, 581) և սեռն անհայտ (հավանաբար ար.), մի ուրիշ անթվական հիշատակարանում (Ձեռ. Վասպ. էջ 242)։

+ԱՐՔԱՅՈՒԹԻՒՆ, ար. < հյ. արքայութիւն «թագավորություն» բառից. հմմտ. Արքայ. մի անգամ ավանդված է ԺԲ դարից և մի անգամ էլ ԺԳ դարից։

— 1. Արքայութիւն քահանա Գանձակեցի. խնդրեց Ալաւկայ որդի Դաւիթ վարդապետից գրել «Կանոնական օրինագրութիւն» և զանազան «Հարցմունք» (ԺԲ դար).—Կիր. 66, Տաշեան, Ցուց. 656 բ, Manus. bibl. nat. 96։

— 2. Արքայութիւն, ազգական Խաչիրես Լոռեցու, որ Բագ-

նայրին նվիրեց 3 տուն, 1 այգի և 7 խանութ, 1209 թ.—Շիրակ 117։

*ԱՐՔԵՂԱՅՈՍ, ար. < հուն. Ἀρχέλαος անունից, որ նշանակում է բուն «իշխող ժողովրդեան»։ Այս անունով հայտնի են Արքեղայոս Միլետացի, փիլիսոփա, ուսուցիչ Սոկրատի և Արքեղայոս որդի Պերդիկկասի, թագավոր Մակեդոնիայի։

— 1. Արքեղայոս, վերջին թագավոր Փոքր-Հայոց. ամուսնացավ այրի Պիւթոդորիսի հետ, որ Պոնտոսի թագուհին էր.—Ստրաբոն Հայոց մասին, էջ 77։

— 2. Արքեղայոս եպիսկոպոս, ունի Հակաճառութիւն Մանի պարսկի վարդապետութեան դէմ (275—277). համարվում է հայ և Սղերդի շրջանի առաջնորդ.—Լէօ, Ա. 561, ըստ Լինչ, Armenia, թրգմ. Լալենց, Պոլիս 1913, էջ 219։

— 3. Արքեղայոս, կուսակալ Ծոփաց (Չորրորդ Հայոց). դայրանալով Արիստակէս կաթողիկոսի կշտամբանքներից, սպանեց նրան «333 թ».—Խոր. Բ. դա. Ցհ. կթ. ժ. Կիր. 8. Վրդ. Ի. Ցայսմ. դեկտ. 1.—սեռ. Արքեղայոսի՝ Ասող. Բ. ա.—բց. յԱրքեղայոսէ՝ Ներբ. յորդ. 15. Միխ. ատ. իթ.—գրված Արքեղաւոս՝ Մեսր. եր. 11։

†ԱԻԱԳ, ար. < հյ. աւագ «երեց, անդրանիկ, մեծ» բառից. համապատասխանում է գերմ. Max անվան, որ է լտ. maximus «մեծագույն»։ Տես և Աբգար։ Գործածված է մեր մեջ ԺԳ դարից սկսած և գործածական է այժմ էլ։ Սրանից են կազմված Աւագշահ, Աւագպարոն և Աւագտիկին։ Ունինք նաև իբրև իգ! Աւագ և Աւագուհի։

— 1. Աւագ, որդի Իւանէ աթաբէգի. Վրաց թագավորի ծառայության էր. երբ Իւանէ աթաբէգը մեռավ (1227 թ), Աւագին տվին ամիրսպասալարություն և ապա աթաբէգության պաշտոնը։ Նստում էր Բջնիում։ Գնաց Չարմաղանի մոտ, թաթարների հետ հաշտության դաշինք կնքեց և հավատարմություն խոստանալով նրանց, մտավ թաթարական բանակը։ Արշավեց մինչև Նփրկերտ և մեռավ 1250 թ։ Կոչվում է նաև Սարգիս։ Կինն էր Գոնցադուստրը Խոշաք. արու զավակ չունեին։—Օրբ. կե. Օրբ. ժմ. 22, 25, 26. Մխ. այրիվ. 81. Կիր. գ, իդ, իէ, լբ, լգ, լէ, խա—խգ, խե. Վրդ. ձե, ձը. Մաղաք. աբ. 21. Առաք. պատմ. 482. Վրաց աղբ. (գրված Աւաք) Բ. 52—56, 58—60, 63.—սեռ. Աւագի՝ Օրբ. կե. Կիր. ի, իդ, իգ, իէ, լգ—լը, խգ, խե.—բց. յԱւագէ՝

Կիր. ժե, լէ.—Տուն Աւագեան՝ Օրբ. կե.—կոչված Սարգիս՝ Կիր.գ։ —Յովսէփեան, Խաղբակեանք 91։

— 2. Աւագ-Սարգիս, որդի Շահնշահի, եղբայր Զաքարէ Գ-ի, Արտաշրի և Իւանէի, և թոռն Զաքարէ ամիրսպասալարի. մեռել է 1269 թ. ըստ Օրբ. ժմ. 27.—Կիր. կբ. Տաշեան, Ցուց. 906 բ?

— 3. Աւագ տէր, որի գերեզմանը գտնվում է Վայոց Ձորի մի եկեղեցում. մեռել է 1290 թ.—Սիսական 150։

— 4. Աւագ քահանա, որդի Մերչերի, հայր Նեքամատ ճարտարապետի (ԺԳ դար).—Հայապ. 574։

— 5. Աւագ, նկարիչ. հիշված 1304 թ.—Bodleian 3։

— 6. Աւագ, որդի Մխիթարի, գրիչ. օրինակեց Կաֆայում Տօնականն ու Յայսմաւուրքը, Աւետիք վարդապետի համար, 1307 թ.—Manus. bibl. nat. էջ 57, 60։ Ավելի ուշ, նույն անձի համար օրինակել է Վկայաբանութիւնը (Ձեռ. Պարիզի, № 118), Կաֆայում 1310—1330 թ։

— 7. Աւագ քահանա, գրիչ. օրինակել է Յովհաննու Երզնկացւոյ Ցաղագս երկնային շարժման, 1309 թ.—Ձեռ. Կարին. 219։

—8. Աւաք, քույր! Դանիէլ գրչի, որ Աղթամարում օրինակեց Թուղթք Պօղոսի, 1309 թ. նույն թվին մեռավ Աւագը.—Ձեռ. Սեբ. (ՀԱ 1923, 74)։

— 9. Տէր Աւագ, գրիչ. օրինակել է 1309 թ. Էջմիածնի № 2174 ձեռագիրը, որ է Անանուն ժամանակագրութիւն։—Նոյն է՝

— 10. Տէր Աւագ գրիչ. օրինակել է Բաբերդում Աւետարանը՝ 1310 թ. —Ձեռ. Կարին. 18։

— 11. Աւագ քալամաչի (թարգման). առաջնորդում էր կարավաններին՝ Հայոց ու Պարսից սահմաններից մինչև Տրապիզոն. դրամական խնդրով գնաց Վենետիկ, 1332 թ.—Ալիշան, Հայվենետ. 63—64։

— 12. Աւագ, հայր Սարգսի, որ Թումա գրչին գրել տվեց մի Աւետարան, 1336 թ.—Ձեռ. Վասպ. 196։

— 13. Աւագ աթաբէկ, որի որդին է Ամրպէկ, թոռն է Խուանդ խաթունի՝ կին Քուրդ իշխանի Անբերդի, 1338 թ.—ZAPh 2, 48։

— 14. Ավագ, գրիչ. օրինակեց և ծաղկագրեց Երգարանը և նվիրեց Սիւնեաց Սարգիս մետրապոլիտին, 1337 թ.—Ձեռ. Բեռլինի, 27 ա (հրատարակիչը՝ Ն. Քարամեանց, սխալմամբ Աւագ ա-

նունը ածական է կարծել և նույն Երգարանի գրիչն է համարում Ներսէս բարունապետը)։ Սրա հետ նույն եմ համարում

— 15. Աւագ, գրիչ և նկարիչ. օրինակել և նկարազարդել է Տաթևում մի Աւետարան, խնդրանոք Պարոն Պեշկինեանի, 1340 թվին.—Ձեռ. Կարին. 23։

— 16. Աւագ դպիր, ծաղկող. նկարազարդեց մի Աստուածաշունչ, որ Գրիգոր քահանան գրել տվեց Կարապետ գրչին, Սուլտանիայ քաղաքում, 1341 թ.—Ձեռ. Վենետ. Ա. 94։

— 17. Աւագ, մասնակցեց Նորատուսի վանքի շինության և նվիրեց նրան մի ջաղաց, 1344 թ.—Սիսական 47։

— 18. Աւագ, հոգևոր եղբայր Սիմէոն երեցի, որ Սուրխաթում օրինակեց Աւետարանը՝ Աստուածատուր կրոնավորի համար, 1347 թ։ Աւագը «բազում աշխատեցաւ յաւետարանս և զկոստեղ և զկոճակ Աւետարանիս սա շինեաց»։—Ձեռ. Վենետ. Ա. 755։

— 19. Աւագ վրդ. գրիչ և ոսկող. արտագրեց և նկարազարդեց մի գեղեցիկ Աւետարան, որ սակայն մագաղաթի պակասության պատճառով կիսատ մնաց. Սարգիս երեցը նույնը շարունակեց և վերջացրեց 1352 թ.—Շահազիզ, Պատմ. պատկ. 114։

— 20. Աւագ, որդի Գրիգորի և եղբայր Մահտեսի Յնատուէի, որ Կարապետ կրոնավորին գրել տվեց մի Աւետարան, 1357 թ.—Ձեռ. Վասպ. 213։

— 21. Աւագ, վանական. գրիչ. օրինակել է Գրիգոր Նիւսացու Մարդակազմութիւնը՝ 1360 թ.—Ձեռ. Կարին. 27։

— 22. Աւագ քահանա, գրիչ. Երուսաղէմում, Գրիգոր և Սիմէոն կրոնավորների համար օրինակեց Աւետարանը 1358 թ.—Ձեռ. Հալէպի, Ա. 118։

— 23. Աւագ, պարոն ոմն, հիշված 1375 թ.—Տաշեան, Ցուց. 277 ա։

— 24. Աւագ-Սարգիս, որդի Հնդուի, ծախեց իր գլխանոցն ու կապան 500 դահեկանի և Թուրքմանի գերութիւնից ազատեց մի Աւետարան, որ նվիրեց Ս. Մեսրոպի գերեզմանին (Մասրեան), 1387 թ.—Սիսական 319 բ։

— 25. Աւագ Սալմաստցի, նոր վկա. արհեստով քսակակար էր և փոքր ժամանակ Սալմաստում աշխատել էր մի պարսիկ վարպետի մոտ. շուրջ 30 տարի հետո գնաց Բաղէշ, ուր մի պարսիկ ճանաչելով նրան, զրպարտեց թե նա փոքր ժամանակ ուրացած է եղել իր հավատը։ Մահմեդականները տարին նրան Ա-

միրզաբաֆ ամիրայի մոտ, որ հանցանք չգտնելով՝ ուղարկեց նրան դատավորին։ Ճանապարհին մահմեդականները քարերով ու մահակներով ջարդելով՝ նահատակեցին նրան 1390 թ.—Ցայսմ. փետր. 23.—սեռ. Աւագի կամ Աւագու՝ անդ.—Նոր վկ. 152—165։—Զամչ. Գ. 433 կոչում է Աւագ Բաղիշեցի։

— 26. Աւագ քահանա, եղբայր ռես Տիրացուի և մերձավոր Դանիէլ սարկավագի, որ Աղթամարում օրինակեց մի Մաշտոց, 1404 թ.—Թորոս աղբար, Բ. 277։

— 27. Աւագ, որդի պարոն Յովհաննէսի. հիշված է 1410 թ? —Ձեռ. Վասպ. 164։

— 28. Տէր Աւագ քահանա, հայր տանուտեր Յովհաննէսի, որ Աղթամարում, Դանիէլ քահանային գրել տվեց մի Աւետարան, 1436 թ.—Ձեռ. Վասպ. 373։

— 29. Տէր Աւագ քահանա, որդի նույն տանուտեր Յովաննէսի. նախորդի թոռն է.—Ձեռ. Վասպ. 373։

— 30. Աւագ, որդի Բուրդամիրի՝ քեռան Ներսէս քահանայի, որ Սեբաստիայում, Դաւիթ գրչին գրել տվեց մի Ճաշոց, 1438 թ.—Ձեռ. Սեբ.=ՀԱ 1926, 243։

— 31. Աւագ, տանուտեր Նորագիւղի, 1465 թ.—Այրարատ 320 բ < Նոտարք 221։

— 32. Աւագ վարդապետ, Բոլորաձորոյ վանքից, 1484 թ. —Տաշեան, Ցուց. 855 բ։

— 33. Աւագ քահանա, որդի Ստեփանոսի. Երուսաղէմում, Արևելցի Վրթանէս աբեղային գրել տվեց մի Գանձարան, 1497 թ.—Ձեռ. Հալէպի, Ա. 150։

— 34. Աւագ, որդի Աղիղբէգ Եղվարդեցու (տես էջ 61, № 2) և հայր Մանուէլ արքեպիսկոպոսի, որ առաջնորդ էր Եղվարդի և նվիրատու եկեղեցու, 1471թ.—Այրարատ 197—8, Հայապ. 569։

— 35. Աւագ քահանա, ստացիչ (ԺԵ դար).—Տաշեան, Ցուց. 7 ա, 14 բ։

— 36. Աւագ հայր, տաղասաց, գրել է «Տաղ ի վերայ գաւաղանի» (ԺԶ դար).—Տաշեան, Ցուց. 795 ա։

+ ԱԻԱԳԵՐ, իգ. < անշուշտ հյ. աւագ բառից. համարում եմ «աւագ էր» ձևից և սրա կրճատվածն եմ կարծում Աւգեր անունը, որ տես։

— Աւագեր, վաղամեռիկ աղջիկ, որի հիշատակին Եփրեմ անունով կրոնավորը գրեց Կիւրղի Երուսաղեմացւոյ Կոչումն ընծայութեան, 1277 թ.—Տաշեան, Ցուց. 694 (չէ հիշված ցանկում)։

† ԱՒԱԳԻԿ, ար. փաղաքշականն է նախորդ Աւագ անվան. հիշված է մի անգամ անթվական մի հիշատակարանում (Ձեռ. Վենետ. Ա. 428), ուր քիչ հետո դառնում է Աւագ։

? ԱՒԱԳԻՍԱՒՐ, մի անգամ հիշված է Ձեռ. Վասպ. 178. ընթերցումն անորոշ և անստույգ է. հավանաբար պիտի լինի եգ. կին Սիմէոն քահանայի և մայր Դէոսկորոս քահանայի, որ Արճէշում, Դեղիկ անուն անձի համար օրինակեց Աւետարանը՝ 1331 թ.—Ըստ իս պետք է կարդալ Աւագուհի։

† ԱՒԱԳԽԱԹՈՒՆ, եգ. <նույն Աւագ անունից+խաթուն. մի անգամ հիշված է ԺԴ դարում (տես տակը), երկու անգամ անթվական արձանագրությանց և մի անգամ էլ մի յիշատակության մեջ՝ Սիսական 122, Շիրակ 21 բ, Ձեռ. Թաւր. 74 ա։

— Աւագխաթուն, կին Շապադինի, որ շատ նվերներ է արել Անիի Ս. Առաքելոց վանքին՝ 1348 թ.—Շիրակ 63.

† ԱՒԱԳՇԱՀ, ար. կազմված է հյ. Աւագ անունից+պրս. شاه šāh «թագավոր»։ Հիշված է մի անգամ 1490 թվից ուշ գրված մի հիշատակարանում (Ձեռ. Սևան 5 ա)։

† ԱՒԱԳՈՒՀԻ, եգ. < հյ. աւագ բառից, ուհի իգական մասնիկով։ Տես նաև վերը՝ Աւագ անունը, իբրև իգական։

— 1. Աւագուհի, քույր Սանատրուկ Թագավորի. լսելով Բարթուղիմէոս առաքյալի քարոզությունը՝ քրիստոնյա դարձավ և նահատակվեց՝ 44 թ.—Տաշեան, Ցուց. 33 բ, Ալիշան, Արշալ. քրիստ. 34.—տես և Ոգուհի։

—2. Աւագուհ, կին տանուտեր Յովանէսի, որ Վանում, Վարդան երեցին գրել տվեց մի Աւետարան, 1452 թ.—Նոտարք 169։

— 3. Աւագուհի ոմն, հիշված է ԺԵ դարում.—Գէորգեան ցուց. № 127։

† ԱՒԱԳՊԱՐՈՆ. ար. < հյ՝ Աւագ+պարոն բառերից. գործածված է ԺԳ—ԺԷ դարերում. այժմ խափանված է։

— 1. Աւագպարոն, որդի Նէքնէքի, որ Բերկրիում, Խաչեր քահանային գրել տվեց մի Աւետարան, 1307 թ.—Ձեռ. Վասպ. 151։

— 2. Աւագպարոն Կաֆացի, ստորագրում է Կաֆայեցոց դիմումին՝ Ֆլորենտիայի ժողովի առթիվ (1438).—Պալճեան 299։

— 3. Աւագպարոն, հիշված է 1523 թ.—Ձեռ. Կես. ածած. 47 բ։

— 4. Աւաքպարոն, որդի մահտեսի Պալիի և եղբայր Ամիրաս Երզնկացու, որ Տրապիզոնում արտագրեց մի Ոսկեփորիկ

1656 թ.—Ձեռ. Վեննա. Բ. 954։ Նույն անձը հիշատակվում է նաև Տաշեան, Ցուց. 355 բ, բայց կոչված է Պարոն։

+ԱԻԱԳՏԷՐ, ար. < հյ. աւագ+տէր բառերից. կա նաև սրա հակադիր ձևը՝ Տիրաւագ։

— Աւագտէր (սեռ. Աւագտէրի), աստվածաբան վրդ. որդի Յովհաննէսի, աշակերտ Սարգիս վարդապետի և Ներեմիա ճգնավորի։ Առաջնորդն էր Սրկղունք գյուղի Բոլորաձորի անապատի, որ կոչվում էր Սպիտակաւոր Աստուածածնի վանք։ Գրել է մի քանի ձեռագիր՝ Աւետարան, Մաշտոց և Յայսմաւուրք (առաջինը 1475 թ. մյուսները անթվական)։ Իր եղբորորդիքն են (և միաժամանակ իր աշակերտները) Դաւիթ քահանա, Աբրահամ աբեղա, Զաքարիա աբեղա, Մարգարէ և Յակոբ։ Սրանք արտագրել են զանազան ձեռագրեր, որոնց մեջ հիշում են իրենց հորեղբայր Աւագտէրին՝ 1473—1487 թվերին։ Վերջին անգամ հիշում է նրան իր եղբորորդի Աբրահամ վարդապետը, որ Վայոց Ձորի Եղեգեաց գավառում, Վերի Նորավանքում, Գրիգոր աբեղային օրինակել տվեց Աւետարանը 1495 թ. Արդեն մեռած էր 1498 թվին։— Յովսեփեան, Խաղբակեանք 231—7, Ձեռ.Վասպ. 522, Սիսական 130 բ։

+ԱԻԱԳՏԻԿԻՆ, իգ. < հյ. Աւագ+տիկին բառերից. Աւագպարոն անվան իգականն է. գործածված է ԺԳ—ԺԶ դարերում, այժմ խափանված։

— 1. Աւագտիկին, դուստր Գորգկան, իր բաժինք կես ձիթահանքը «պասկի ներքև» նվիրեց Արջոյառիճի վանքին, 1207 թ.—Շիրակ 122 ա։

— 2. Աւագտիկին, կին Խաչատի Շեխեանց, նվիրեցին Խծկօնից վանքին մի տուն և մի խանութ, 1221 թ.—Շիրակ, էջ 128։

— 3. Աւագտիկին, կին Պետևինի. մի խաչքար կանգնեցրին Բանաքեռում, 1265 թ.—Այրարատ 297։

— 4. Աւագտիկին, կին Յովաննէս քահանայի և մայր Հայրապետ գրչի, որ Փոսի անապատում (Կիլիկիա) օրինակեց «Մանդուղք աստուածային ելից», 1329 թ.—Ձեռ. Դաղեան, Ա. 86 բ։

— 5. Աւագտիկին, կին Սահնի և մայր Յովհաննէսի (Սեբաստացի), արքեպիսկոպոսի Խրիմի՝ 1362—80 թ.—Manus. bibl. nat. էջ 62։

— 6. Աւագտիկին, կին Մարտիրոսի, որ ստացավ մի Աւետարան, 1410 թ.—Ձեռ. Վասպ. 164—7։

— 7. Աւագտիկին, կին Յովհաննէսի և մայր Ստեփաննոս քահանայի, որ Ծերուն քահանայի համար օրինակեց Աւետարանը 1420 թ.—Նոտարք 63։

— 8. Աւագտիկին, կին Անդրէասի և մայր Մեծխաթունի, որ Երզնկայում, Ղազար աբեղային գրել տվեց մի Աւետարան՝ 1431 թ.—Ձեռ. Վենետ. Ա. 663։

— 9. Աւագտիկին, կին Ստեփաննոսի՝ եղբոր տանուտեր Յովհաննէսի, որ Աղթամարում, Դանիէլ քահանային գրել տվեց մի Աւետարան, 1436 թ.—Ձեռ. Վասպ. 373։

— 10. Աւագտիկին, վաղամեռիկ դուստր Ստեփաննոսի՝ եղբորորդւոյ Մանկտաւագի, որ Մցի գյուղում, Ղազար քահանայի համար գրել տվեց մի Աւետարան, 1455 թ.—Ձեռ. Վենետ. Ա. էջ 582։

—11. Աւաքտիկին, դուստր Աստընվորի և եղբայր Գուլպակէի, որ Կոկիմում, վրացիներից գերված մի Աւետարան գնեց, 1512 թ. —Ձեռ. Վասպ. Ա. 646։

— Աւագտիկին անունը հիշված է նաև երեք անթվական հիշատակարաններում՝ Ձեռ. Թաւր. 72 բ, Ձեռ. Վենետ. Ա. 390 (Մլքէ թագուհու Աւետարանում), Ձեռ. Վասպ. 609։

*ԱՒԱԼ, ար. < արաբ. اول avval «առաջին» բառից, որ համապատասխանում է մեր Առաջին անվան։ Մի անգամ գտնում եմ հիշատակված 1591 թ.՝ Ձեռ. Դաշեան, Բ. 33 բ։ Սրանից է կազմված՝

*ԱՒԱԼՋԱՆ, ար. < նախորդ Աւալ անունից՝ ջան փաղաքշականով։ Մի անգամ գտնում եմ հիշված 1658 թ.՝ Ձեռ. Նոր-Բայազ. 5 բ։

*ԱՒԱՆ, ար. սովորական անուն է այժմ Ղարաբաղում և համարվում է Յովհաննէս անվան գավառական ձևը (կա նաև Ավանէս)։ Հնից ավանդված չէ։ Ամենահին հիշատակությունն է 1381 թվից, որ գրված լինելով Վանի շրջանում, կասկածելի է համարվում։ Սրանից է Աւանեան ազգանունը։

— 1. Աւան, ազգական Կարապետ կրոնավորի, որ Սղկայու վանքում օրինակել տվեց Հին Կտակարանը՝ 1381 թ.—Ձեռ. Ագուլ. (Արրա. 1911, 850)։

— 2. Աւան աղա, Խորոտկայ վանքը՝ որ հիմքից խախտվել

և անմարդաբնակ էր դարձել, մեծ աշխատությամբ վերանորոգեց 1490 թ. կամ քիչ առաջ.—Ձեռ. Նոր-Բայազ. 23 ա։

— 3. Աւան ոմն, հիշված 1590 թ.—Ձեռ. Վեննա. Ա. 721։

— 4. Մելիք Աւան, Լոռի գավառի Մելիքեան տոհմից, որդի Ղուկաս վարդապետի. ցեղական կռիվ ունենալով իր ազգականների հետ՝ գաղթեց իր հոր հետ Ղարաբաղի Դիզակ գավառը և հաստատվեց Տող գյուղում։ Իրանով է սկսվում Դիզակի մելիքությունը (Րաֆֆի, Խամսայի մելիքութ. 23)։ Մելիք-Ավանը եղավ Ղարաբաղի մելիքների գահերեցը. Հայաստանի ազատության համար Մեծն Պետրոսի հետ վարված բանակցությանց մեջ մեծ բաժին ունի։ Իր ցույց տված մեծ ծառայությանց համար՝ ստացավ գեներալ-մայորի աստիճան։ Երկու անգամ ընդունելության արժանացավ Աննա և Ելիզավետա կայսրուհիների մոտ։ Հետևելով այն սկզբունքին թե ավելի հեշտ է ազատվել Թուլյ պարսիկներից, քան թե զորեղ օսմանցիներից, այն ժամանակ, երբ ծագեց Թուրք-պարսկական պատերազմը, հայերը բռնեցին Պարսիկների կողմը։ Նադրխանի ժամանակ, երբ Սարը-Մուսթաֆա փաշան իր բանակով մտավ Ղարաբաղ, Մելիք Ավանը սարքեց մի մեծ դավադրություն։ Ձմեռ էր. թշնամին զորանոց չունենալով՝ զինվորներին բաժանել էր տների վրա։ Գաղտնի դավադրության համաձայն, մեծ պասի առաջին գիշերը ժողովուրդը հարձակվեց իր թշնամու վրա և տեղն ու տեղը սպանեց։ Այսպեսով ոչնչացավ Ղարաբաղի և Գանձակի կողմերում գտնված ամբողջ թշնամի զորքը, իսկ փաշան հազիվ կարողացավ փախչել Երևան (1733 թ)։ Մի ամբողջ տարի իր ծախսով Մելիք Ավանը կերակրեց պարսից բանակը։ Նադրշահը Մուղանում իր թագադրության ժամանակ, վարձատրեց Մելիք Ավանին, որին շատ էր սիրում իր քաջության և մատուցած մեծամեծ ծառայությանց համար, և շնորհեց նրան խանության տիտղոս և Ղարաբաղի մելիքների գլխավոր նշանակեց. նա պիտի հավաքեր հարկերը և պիտի հանձներ արքունի գանձարանը։ Շահը նրան բաբալըղ «հայրագիր» էր անվանում։ Մեռավ 1744 թվին (Րաֆֆի, անդ, էջ 46—57)։—Այս մասին Լէօի մի նկատողությունը տես Հայկ. տպ. Բ. 398 ծան։

†ԱԽԱՏԱՐ, ար. < գվր. խաւատար «ընկեր, հավատարիմ բարեկամ, պաշտպան» բառից։ Անսովոր անուն է, որից ունենք միայն՝

— 1. Տէր Ախատար ոմն, հիշված 1570 թ.—Ձեռ. Վեննա. Ա. էջ 672։

— 2. Աւատար, որդի Սէթի, եղբայր Յովհաննէսի. թվականն անհայտ.—Ձեռ. Վասպ. 120։

†ԱՒԳԵՐ, ար. տես Աւագեր։ Սրանից է Աւգերեան ազգանունը։

— Աւգէր, ազգական Կարապետ կրոնավորի, որ Սղկայու վանքում օրինակել տվեց Հին Կտակարանը, 1381 թ.—Ձեռ. Ագուլ. (Արրտ. 1911, 850)։

— Աւգեր, հիշված է Լեհաստան գրված մի ձեռագրում (ԺԷ° դար).—REA 7, 95։

*ԱՒԴԱԼ, ար. < արաբ. ابدال abdāl «սրբերի աստիճաններից մեկն է. 2. ճգնավոր, դերվիշ. 3. Թրք. դարձել է՝ պարզամիտ, միամիտ, անմիտ». աղավաղյալ ձևով՝ avdāl. հմմտ. Զքր. սարկ. Բ. 15. «Անուանեաց զինքն օրինապահ, որ է աւդալ կամ դաւրիշ»։ Իբրև անձնանուն գործածական էր նաև Թրքերի մեջ. օր. Աւտալ խան՝ դեսպան Սուլթանի քուրդ Ղազի խան ամիրայի, 1603 թ. (Ջամչ. Գ. 539), Աւդալ խան՝ քուրդ իշխան Բաղեշի, 1631 թ. (Նոր վկ. 139)։ Ծանոթ է հատկապես Պարսկահայոց և Հնդկահայոց մեջ, ուր ունինք նաև Աւդալեան և Աւդալբէգեան ազգանունները։ Տես նաև Աբդալ։

— 1. Աւդալբէկ դպիր, Բոլորաձորի Սպիտակաւոր անապատում, 1478 թ.—Սիսական 130 բ։

— 2. Աւդալ քահանա, Թոխատ քաղաքում (Եւդոկիա) գրել է մի Աւետարան, 1660 թ.—Ձեռ. Վասպ. 556։

— 3. Աւտալ, ար. հիշված 1738 թ. (Ձեռ. Դաղեան, Բ 14 բ)։

ԱՒԴԻՇ, ար. ծագումը անծանոթ. գործածված է ԺԵ—ԺԸ դարերում, բայց սովորական չէ։

— 1. Աւդիշ, որդի տանուտեր Դաւթի, որ Թացու գյուղում, Յովսէփ դրչին գրել տվեց մի Աւետարան, 1437 թ.—Ձեռ. Վասպ. 379 (սեռ. Աւդշին ձևով)։

— 2. Աւդել (համարում եմ վրիպակ, որ պետք է ուղղել Աւդիշ), որդի տանուտեր Աղաջանի, 1596 թ.—Ձեռ. Վասպ. 100։

— 3. Աւդիս, որդի Գուլօենց Մուրատի, 1710 թ.—Ձեռ. Վասպ. 801։

— 4. Աւդիս, հորեղբայր Աւետիս քահանայի. թվականն անհայտ.—Ձեռ. Վասպ. 993 և 994։

*ԱՒԴՈՒԼ, ար. < արաբ. عبدالله ‘Abdullah անունից, որ b > v ձայնափոխությամբ դարձել է նախ Աւդուլլահ, որից էլ կրճատմամբ՝ Աւդուլ։ Գործածված է ԺԶ—ԺԸ դարերում. ապա խափանված։ Ավելին տես Աբդլա։

— 1. Աւդուլ, հայր Յակոբ եպիսկոպոսի, որ Առաջակու վանքում, Կարապետ եպիսկոպոսին գրել տվեց Ճառընտիրը, 1521—9 թվերին.—Ձեռ. Վենետ. Բ. 382—3։

— 2. Աւդուլ, որդի Աղիջանի, որ գնեց մի հին Աւետարան՝ 1553 թ.—Ձեռ. Վենետ. Ա. 578։

— Աւդուլ անունը հիշված է նաև 1588 թ. (Ձեռ. Վասպ. 708), 1613 թ. (անդ, էջ 846), 1685 թ. (Ձեռ. Ագուլ.=Արրտ. 1911, էջ 1011), 1746 թ. (Տաշեան, Ցուց. 877 բ՝ Ավդուլ ձևով)։

*ԱՒԴՈՒԼՄՍԵՀ, ար. նույն Աբդլմսեհ անունն է, որ տես վերը։ Փոփոխությունը ճիշտ այնպես է, ինչպես Աբդուլ > Աւդուլ։

— Աւդուլմսեհ խոջա, որդի Աղուբշահի, գերությունից փրկեց մի Աւետարան, որ նորոգելով նվիրեց Վան քաղաքի Ս. Էջմիածին եկեղեցուն, 1585 թ.—Ձեռ. Վասպ. 647—9։

Աւդրշահ տես Օտարշահ։

Աւենտ տես Աֆենդ։

†ԱՒԵՏԱԲԵՐ, ար. < հյ. աւետաբեր «աւետիս բերող» բառից. մի անգամ ունինք՝

— Աւետաբեր, որդի Կիրակոսի և եղբայր Բաբերդցի Վարդան աբեղայի, որ Երուսաղեմում գրեց Աւետարանը՝ 1371 թ.—Ձեռ. Վասպ. 220։

†ԱՒԵՏԱՒՈՐ, ար. < հյ. աւետաւոր «բարի լուր բերող» բառից. գործածված է ԺԴ—ԺԵ դարերում։ Համապատասխան արաբ. بشير Bašīr անվան։

— 1. Աւետվոր, որդի Գարոնշահի, որ ստացավ մի Աւետարան, 1329 թ.—Ձեռ. Վասպ. 179։

—2. Աւետւոր, աշակերտ «որ իբր գջուր է ի ձեռս» Կարապետ գրչի, որ գրեց մի Ճաշոց՝ Աղէթի վանքում, 1421 թ.—Ձեռ. Թաւր. 111 բ։

— Աւետուր, հիշված է 1311 թվից ուշ գրված անթվական մի հիշատակարանում՝ Ձեռ. Թաւր. 73 ա։

†ԱՒԵՏԻՔ, ար. < հյ. աւետիք «բարի լուր» բառից. գործածական է թե Աւետիք և թե Աւետիս ձևով, որ նրա հայցականն է (կա նաև սեռ. Աւետեաց). առաջինը այժմ գործածական է միայն Կովկասում, երկրորդը Արևմտահայոց մեջ, բայց նաև Կովկասում։ Կրճատ ձևերն են Աւտիս, Վիտիս, Վիտի, Աւիս, Աւետ, Աւօ։ Սրանցից հնագույնն է անշուշտ Աւետիք, ավելի ուշ Աւետիս և Աւետ. բոլորն էլ ավանդված են ԺԲ դարից։ Այս անվան համա-

պատասխանն է պրս. خوش خبر Xoš-xabar և արաբ. شارت Bašārat, որ և հյ. Բաշարաթ։

—1. Աւետիս, մին այն քառասուն վկաներից, որոնք նահատակվեցին Սեբաստիայում.—Յայսմ. մրտ. 9։

— 2. Աւետիք (Ventura) երեց. երբ Լատինները պաշարեցին Տիւրոսը, պարսպամարտ մի մեքենա հնարելով՝ հեշտացրեց քաղաքի առումը (1124).—Ալիշան, Հայ-Վենետ. 22։ (Այլուր, էջ 300 և 305, նոյն Ventura անունը թարգմանում է Գալուստ, որ անշուշտ ավելի ընդունելի է)։—Ալիշան, Շնորհ. էջ 99 կոչում է նույնպես Աւետիք մեքենագետ (բայց ոչ երեց), «որ այնպիսի մեքենաներ կանգնեց և ուղղեց, որ պաշարելոց գործիքները դադրեցուց, սովորականէ մեծ քարերով անոնց տուները սկսաւ կործանել, մէկ երկու օրէն անձնատուր եղան անոնք. իսկ Խաչակիրք առատապէս վարձատրեցին զվարպետն Աւետիք»։ Այսպես նաև Սիսուան 551 ա։

— 3. Աւետ քահանա, Միջագետքում, սովի ժամանակ, իր ունեցածը ծախելով՝ բաշխեց սովահարներին և ինքը սկսեց ճգնական կյանք վարել, և ամեն կողմ քարոզելով ման գալ։ Շատերին հավատքի բերեց։ Հասավ մինչև Մանազկերտ, ուր Շահի Արմէնը ընդունեց նրան, բայց ապա հավատալով չարախոսներին, որ իբր թե Հունաց կայսեր կողմից լրտես է, քարկոծելով նահատակեց նրան (1130-ական թվերին).—Վրդ. հա, Զամչ. Գ. 48։

— 4. Աւետիս երեց, Մանազկերտի Խաղղուղք գյուղի Ստեփանոս քահանայից գնեց մի հին Աւետարան և նվիրեց եկեղեցուն, 1171 թ.—Ձեռ. Վենետ. Ա. 545։

— 5. Աւետիս, գրիչ. Կամրջաձորի վանքում, առաջնորդ Քրիստափորի հրամանով օրինակեց Սամուէլ Անեցու Ժամանակագրությունը, 1176 թ.—տես Օրբ. ժմ. (առաջաբան, էջ 4)։

— 6. Աւետիք, մեծ հայր Պապէրի, որ Սեբաստիայում օրինակեց Աւետարանը, 1193 թ.—Ձեռ. Վասպ. 80 (սեռ. Աւետեացն ձեռով)։

— 7. Աւետիք, միաբան Թեղենեաց վանքի. ստացավ Յովհաննու Մեկնությունը, 1198 թ.—Այրարատ 257, Հայապ. 371 բ։

— 8. Աւետիք քահանա, միաբան Անապատի վանուց. Ներսէս քահանայի հրամանով սկսեց օրինակել Ն. Լամբրոնացու Պատարագամեկնիչը՝ 1198 թվից ավելի ուշ.—Սիսուան 99։

— 9. Աւետիք, առաջնորդ Գետաձորի Ս. Աստուածածին

վանքի (Կիլիկիա), 1198 թ.—սեռ. Աւետեաց՝ Տաշեան, Ցուց. 607 բ, Սիսուան 114։

—10. Աւետիս, որդի Խաչեղբայրի. իրենց կալված Մարանց մարգը նվիրեցին Հոռոմոսի վանքին, 1201 թ.—Շիրակ 22—23։

—11. Աւետիք, միաբան Կամախի Եղիվանք անապատի, 1203 թ.—Ձեռ. Վենետ. Ա. 420։

— 12. Աւետիս քահանա, որդի Վասակի, եղբայր Աստուածատուր ազգապետի Բաբերդցու, որ տես էջ 235, № 13, 1204 թ.—Ձեռ. Վենետ. Բ. 470 (Աւետիս) և 469 (սեռ. Աւետեաց)։

— 13. Աւետիս, երաժիշտ, միաբան Ղազարու վանքի, 1207 թ.—Ձեռ. Վենետ. Բ. 472, Հայապ. 449։

— 14. Աւետիս Ցրօնցի, նվիրատու ձեռագիր Ճառընտրի, 1207 թ.—Ձեռ. Վենետ. Բ. 473 (սեռ. Աւետեացն), Հայապ. 450, 451։

— 15. Աւետիս քահանա, աշխատում էր մագաղաթի վրա, երբ Գրիգոր գրիչը օրինակում էր Աւետարանը, Կարին 1230 թ. —Ձեռ. Վենետ. Ա. 573։

— 16. Աւետիք (սեռ. Աւետեաց) Զեչկանց, մեծ հայր Վահրամի, որ մի տուն և մի խանութ նվիրեց Արջոյառիճի վանքին, 1233 թ.—Շիրակ 121 բ։

— 17. Աւետիս քահանա, ստացավ մի Աւետարան, որ օրինակեց Թորոս գրիչը, Հռոմ 1242 թ.—Թորոս աղբար, Բ. 440։

— 18. Աւէտիս վարդապետ Անեցի, առաջնորդ Սանահնի վանից, նվիրատու Հոռոմոսի վանից, 1250 թ.—Շիրակ 24 բ։

— 19. Աւետիս ոմն, որ շինել է Արճէշը, 1254 թ.—Սամ. անեց. շար. 150։

— 20. Աւետիք, հայր պարոն Սահմադինի, որ գնեց Մըրէնը՝ 1261 թ.—Յովսէփեան, Նիւթեր և ուս. Ա. 14։

— 21. Աւետիս երեց, հիշված Հոռոմոսի վանքի նվիրատուների շարքում, 1266 թ.—Շիրակ 27 ա։

— 22. Աւետ Երիզացի. ուներ մի ընտիր Աւետարան, որ արտագրելու համար փոխ տվեց Գրիգոր գրչին, 1272 թ.—Ձեռ. Սեբ. (ՀԱ 1924, 514)։

— 23. Աւետիք քահանա, ծաղկեց և նկարազարդեց մի Նոր Կտակարան, որ օրինակեց Թորոս սարկաւագը Մեծքարի վանքում, Յակոբ արքեպիսկոպոսի համար, 1274 թ.—Ձեռ. Կես. ածած. 63 բ։

— 24. Աւետիս, *որդի Մխիթարի՝ որդւոյ Խոցադեղոյ. իր անունով կանգնեցրել է մի գեղեցիկ խաչքար՝ Վայոց ձորի գերեզմանատան մէջ, 1283 թ.—Սիսական 152: Նոյն անձն է ի հարկե* Աւետիս, *որդի Մխիթարի. իր եղբայր Վահրամի հետ՝ իրենց հոր հիշատակին մի խաչքար են կանգնեցրել Մարտիրոս գյուղում, 1286 թ.—Սիսական 177, Յովսէփեան, Խաղբակեանք էջ 146:*

— 25. Աւետիք *(սեռ. Աւետեց), հայր Սէնոպ Սահմատինի, որ Անիի պարոնն էր և հարկից ազատել է Արջոյառիճն ու Մրէնը, 1273 և 1284 թվերին.—Շիրակ 140:*

— 26. Աւետիք, *հայր Յոհաննէս քահանայի, որ օրինակեց Աւետարանը, 1298 թ.—Թորոս աղբար, Բ. 335 (սեռ.* Աւետեաց *ձևով):*

— 27. Աւետիս, *մականուն Կոնկիկ, շինական, որին՝ Զորագեղի շինության իբրև սպասաւոր՝ Հեճուպ Դաւիթը նվիրեց Յովհաննավանքին, 1300 թ.—Այրարատ 171 ա:*

— 28. Աւետիք, *քահանա կամ աբեղա, որդի Վասիլի. Երզնկայում օրինակեց Աւետարանը՝ 1304 թ.—Թորոս աղբար, Բ. 421 (Աւետիք և սեռ. Աւետեաց ձևերով):*

— 29. Աւետիք *վարդապետ, խոտաճարակ. Կաֆայում շինեց Ս. Երրորդութիւն եկեղեցին և Գամճակի վանքում էլ Աստուածածին անունով մի եկեղեցի և գմբեթը. գնեց մի հին Ճառընտիր (գրված 1194 թ.) և Սիմէոն Բաբերդցուն էլ օրինակել տվեց մի ուրիշ Ճառընտիր. առաջինը նվիրեց Կաֆայի եկեղեցուն և երկրորդը Գամճակի վանքին (1305 թ): Իր աշակերտներն են Միխայլ միայնակեաց, Մարկոս միայնակեաց, Վարդան, Թադոս, Ներսէս, փակակալ Թորոս կրոնավորները, որոնք նվիրեցին իրենց հարստությունը Կաֆայի եկեղեցու շինության համար:—Ձեռ. Վեննա. Բ. 511—2,* Manus. bibl. nat. *56, 57, 60:—Իր աշակերտներից են նաև Քրիստոսատուր կրոնավոր, որ Սուրխաթում (Խըրիմ) ստացավ մի Աստուածաշունչ 1352 թ. և երախտագիտությամբ է հիշում հանգուցյալին (Ձեռ. Վասպ. 13), Վարդան աբեղա Բաբերդցի՝ 1372 թ. (Ձեռ. Վասպ. 218):*

— 30. Աւետիք *ոմն, մերձավոր Թորոս սարկավագի, որ Մըլիճի վանքում օրինակեց Պրոխորոն գիրքը՝ Կոստանդին քահանայի համար, 1307 թ.—*Manus. brit. mus. *244 ա:*

— 31. Աւետիք *քահանա, գրիչ. օրինակեց Պրոխորոնը Մըլիճում, 1307 թ.—Զարբ. Թրգմ. 674:*

— 32. Աւետիս (կամ Աւետիք) աբեղա, ստացավ մի Աւետարան, որ գրել էր Մխիթար վարդապետը՝ 1307 թ.—Ձեռ. Վասպ. 154։

— 33. Աւետիս քահանա, Առաքել քհ. Հաղբատեցուն գրել տվեց Եսայի Նչեցու Մեկնութիւն Եզեկիէլի մարգարէութեան, 1313 թ.—Tübingen, էջ 10։

— 34. Աւետիս քահանա, որդի Գրիգորի, Հարք գավառի Դոնեվանք գյուղում, Յովաննէս քահանային գրել տվեց մի Աւետարան, 1316 թ.—Ձեռ. Վեննա. Ա. 464—5։

— 35. Աւետիք եպիսկոպոս Նփրկերտի, անդամ Սսի «1307 թվի» և Ադանայի «1317 թվի» եկեղեցական ժողովների.—Ազգապ. 1786, 1818։

— 36. Աւետիք, որդի Թորոսի և եղբայր Վարդան քահանայի, որ Թորոս քահանային գրել տվեց Աւետարանը՝ 1280—1320 թվերին.—Ձեռ. Թաւր. 27 բ (սեռ. Աւետեաց ձևով)։

— 37. Աւետիս, գրիչ. օրինակել է մի Աւետարան, Կիլիկեան արքունիքի համար. Օշին թագավորը նվիրել է Ստեփան եպիսկոպոսին, որ ծաղկել է տվել նշանավոր նկարիչ Սարգիս Պիծակին՝ 1320 թ.—Շահազիզ, Պատմ. պատկ. 113։

— 38. Աւետիք, գրիչ. գրեց, ծաղկեց և կազմեց մի Շարական, 1335 թ.—Տաշեան, Ցուց. 471 բ։

— 39. Աւետ, քեռի Ներսէս քահանայի, որ Երուսաղէմում օրինակեց Ճառընտիրը, 1335 թ.—Ձեռ. Վեննա. Բ. 348։

— 40. Աւետիս քահանա, հոգևոր հայր Բարսեղ գրչի, որ Բասենի Մժնկերտ գյուղաքաղաքում գրեց մի Աւետարան, 1336 թ.—Ձեռ. Վասպ. 191։

— 41. Աւետիս, գրիչ. օրինակել է Շարականը՝ ծախուք տիկին Թաջի, 1341 թ.—Manus. bibl. nat. էջ 32։

— 42. Աւետիք քահանա, ուսուցի՞չ կամ մերձավոր անհայտ գրչի, որ օրինակեց Աւետարանը «ի պաշարմանն Կաֆային», 1344 թ.—Ձեռ. Սեբ.=ՀԱ 1926, 237։

— 43. Աւետիս քահանա, որդի Նոքարի՞ և հորեղբայր Քրիստոստուր կրոնավորի, որ Սուրխաթում գրել տվեց մի Աստուածաշունչ, 1352 թ.—Ձեռ. Վասպ. 7։

— 44. Աւետիք, գրիչ և ծաղկող. Խրիմի Սուրխաթ քաղաքում օգնեց Ստեփաննոս քահանային՝ գրելու Դաւթի Սահմանաց գիրքը, որ և ծաղկեց, 1363 թ.—Manus. brit. mus. 248 բ։

— 45. Աւետիք, որդի Կիրակոսի, եղբայր Վարդան աբեղա Բաբերդցու, որ Երուսաղէմում օրինակեց Աւետարանը, 1372 թ.—Ձեռ. Վասպ. 220 (սեռ. Աւետեաց ձևով)։

— 46. Աւետիս կրոնավոր, հորդորում էր Յովհաննէս աբեղային՝ գրելու Աւետարանը, 1375 թ.—Ձեռ. Վասպ. 223 (ըստ Լալայեանի)։

— 47. Աւետիք տես Օգոստինոս։

— 48. Աւետիս, ազգական Կարապետ կրոնավորի, որ Սըղկայու վանքում օրինակել տվեց Հին Կտակարանը, 1381 թ.—Ձեռ. Ագուլ. (Արար. 1911, 850)։

— 49. Աւետիս քահանա ոմն, Վանի Շուշանց գյուղում? հիշված 1399 թ.—Թորոս աղբար, Բ. 429։

— 50. Աւետիք վարդապետ, Խրիմի Կարադաղ գյուղում շինեց Ս. Ստեփաննոս տաճարը, որ նորոգեց Ստեփաննոս վարդապետը՝ 1401 թ.—Նոտարք 12 (թերևս Աւետիք վրդ. խոտաճարակն է, № 29)։

— 51. Աւետիք սարկավագ, գրիչ. Յովհաննէս քահանայի և Յովհաննէս կրոնավորի հետ միասին՝ Վասպուրականում, 1402 թ. գրեցին մի մեծ Ճառընտիր, արդեամբ Հայրապետ կրոնավորի և նրա եղբայր Յովհաննէս միայնակեացի.—Ձեռ. Կարին. 94, Նոտարք 16։

— 52. Աւետիք, դատավոր Հայոց 'Լեհաստանի, 1407 թ.—REA 7, 71։

— 53. Աւետիս Աստապատցի, Գրիգոր Տաթևացու (մ. 1410 թ.) աշակերտներից.—Մեծոփ. 51, Յայսմ. ապր. 27։

— 54. Աւետիս աբեղա, Կաւալու վանքում օրինակեց մի Աւետարան, 1410 թ.—Նոտարք 37։

— 55. Աւետիս, Խիզանի Ս. Խաչ վանքի աշակերտներից (գրոց ուղիք). հիշված է 1402 և 1413 թվերին.—Նոտարք 17, 42, 43։

— 56. Աւետիս քահանա, Ոշտունեաց Տայշող գյուղում, Ստեփաննոս գրչին տվեց մի Աւետարան՝ օրինակելու համար, 1419 թ.—Նոտարք 60։

—57. Աւետիս վարդապետ, հոգևոր եղբայր Ստեփաննոս քահանայի, որ օրինակեց Աւետարանը 1420 թ.—Նոտարք 63 (Փիրղալէմեանը համարում է նույն ընդ № 55)։

— 58. Աւետիս, հայր հիւսն Յովհաննէսի, որ Աղէթի վանքում, Կարապետ աբեղային գրել տվեց մի Ճաշոց, 1421 թ.—Ձեռ. Թաւր. 111—3։

— 59. Աւետիս կրոնավոր, միաբան Աղթամարի, թուղթ էր

կոկում գրիչ Թումայ կրոնավորի համար, որ օրինակում էր Ճաշոցը՝ 1421 թ.—Նոտարք 68։

— 60. Աւետիք քահանա, հայր Մխիթար արքեպիսկոպոսի և առաջնորդի Ամասիոյ, 1424 թ.—Ձեռ. Լվով (ՀԱ 1937, 122)։

— 61. Աւետիք, աշակերտ Գէորգ Երզնկացու և Սահակ երաժշտապետի, միաբան Երզնկայի Կապոսի վանքի. իր ամբողջ ունեցվածքը վաճառելով և նույն Սահակ երաժշտապետից էլ օգնություն ստանալով՝ Եզեկիէլ սարկավագից գնեց մի Աստուածաշունչ, որ պատկանում էր նույն Գէորգ Երզնկացուն և նրա մահից հետո ժառանգություն էր ընկել նրա եղբորորդի Եզեկիէլ սարկավագին, 1425 թ.—Նոտարք 79 (Փիրղալէմեան կարծում է թե այս Աւետիք Դարանաղցին հաջորդել է Գէորգ Երզնկացուն, իբր վանահայր Կայիփոսի Ս. Յակոբայ վանից)։

— 62. Աւետիք աբեղա, որդի Խաչատուրի, միաբան Կողուց վանից, եղբայր Կարապետ աբեղայի, որ օրինակեց Ճառընտիրը նույն վանքում. Աւետիքը թուղթ էր կոկում և օգնում իր եղբորը, 1428 թ.—Տաշեան, Ցուց. 583—4։

— 63. Աւետիք աբեղա, Կաֆայում գրել տվեց Քրիստոսատուր գրչին մի Խազտետր, 1428 թ.—Manus. bibl. nat. էջ 38։

— 64. Տէր Աւետիք (սեռ. Աւետեացն), որի միջնորդությամբ Խոճասար պէկը մի արտ նվիրեց Երզնկայի Ս. Աստուածածին եկեղեցուն, 1431 թ.—Ձեռ. Վիեննա. Ա. 664։

— 65. Աւետիս, որդի տանուտեր բրուտ Սանփաննոսի, որ Վանում (Վարագայ վանքում), Կարապետ քահանային գրել տվեց մի Աւետարան, 1435 թ.—Ձեռ. Վասպ. 369—370։

— 66. Աւետիք, տանէրեց քահանա Ուլուխաթունի, որ նրա մահվանից հետո գնեց ի հիշատակ մի Աւետարան, Կաֆայում, 1437 թ.—Ձեռ. Սեբ. (ՀԱ 1926, 238)։

— 67. Աւետիք կրոնավոր, գրեց Նախորդ Աւետարանի գնման հիշատակարանը, Կաֆա 1437 թ.—անդ։

— 68. Աւետիք աբեղա, որդի Աստղի. գրիչ. Բալուի Ս. Գէորգ վանքում օրինակեց Աւետարանը՝ Ահլիմելիքի համար, 1437 թ.—Manus. brit. mus. 30 բ։

— 69. Աւետիք երեց Դարանաղցի, որ «կամակից եղև» այն Յայսմաւուրքին, որ Մովսէս քահանայի համար օրինակեց Սիմէոն կրոնավորը, Դարանաղեաց Աւագ վանքում, 1439 թ.—Տաշեան, Ցուց. 49 բ։

— 70. Աւետիս եպիսկոպոս Գլակայ վանից, Թղթակից անդամ Էջմիածնի մեծ ժողովի (1441 թ).—Մեծոփ. յիշ. ա։

— 71. Աւետիս վարդապետ Սուրբխաչեցի, Թղթակից անդամ Էջմիածնի մեծ ժողովի (1441 թ).—Մեծոփ. յիշ. ա։

— 72. Աւետիս, միաբան Աղթամարի, 1441 թ.—Նօտարք 127, Ձեռ. Վասպ. 384։

— 73. Աւետիք եպս. առաջնորդ և ուսուցիչ Եկեղեաց X վանքի, 1443 թ.—Ձեռ. Հալէպի, Բ. 53 բ (վանքի անունը ձեռագրում անընթեռնելի է. իսկ Աւետիքի անունը՝ հոլովեալ լինելու պատճառով, հրատարակիչը հասարակ անուն է կարծել. «Մեծ բարունապետիս և քաջ փաղերայ և վարժապետիս մերոյ մեծիս Աւետեաց»)։

— 74. Աւետիք կրօնաւոր, հոգևոր եղբայր Սարգիս գրչի, որ Երզնկայի մի վանքում օրինակեց Գր. Տաթևացու «Բաղուածոյ մեկնութիւն Մատթէոսի Աւետարանին», 1443 թ.—Ձեռ. Հալէպի, Բ. 54 ա։

— 75. Աւետիք «քաջ հռետոր», ուսուցիչ Խաչատուր աբեղայի, որ օրինակեց Տաթևացու «Վերլուծութիւն Պարապմանց Կիւրղի», բնագիր օրինակն էլ ստանալով նոյն Աւետիքից, 1444 թ.—Տաշեան, Ցուց. 455 բ։

— 76. Աւետիս աբեղա. գրիչ. Արղնիում օրինակեց Աւետարանը՝ 1444 թ.—Առաք. պատմ. 323։

— 77. Աւետիք, երրորդ արքեպիսկոպոս Լեհահայոց, եղբօրորդի Գրիգոր Բ և Յովհաննէս եպիսկոպոսաց Լեհահայոց. հաջորդեց Գրիգորին՝ 1445 թ.—Տաշեան, Ցուց. 680 բ. Տաn, Արևել. հայք 6—7. Ալիշան, Կամենից, էջ ե և 134։

— 78. Աւետիք աբեղա, աշակերտ Յովհաննէս վարդապետի, միաբան Սեպուհ լեռան Ս. Լուսաւորիչ վանքի, 1442 և 1445 թ. (Նօտարք 129, 135)։ Այնուհետև միաբան է Ս. Կիրակոսի վանքում (Երզնկա), ուր մասնակցեց Յայսմաւուրքի արտագրության, 1446 թ. (Նօտարք 149)։

— 79. Աւետիս, որդի Ներսէս քահանայի և հայր Վարդան գրակալի, որ Արճէշում, Յովհաննէս քահանային գրել տվեց Աւետարանը, 1450 թ.—Ձեռ. Թաւր. 66 բ։

— 80. Աւետիս (սեռ. Աւետեաց) եպիսկոպոս, առաջնորդ Դերջանի և Բաբերդի, 1451 թ.—Ձեռ. Վասպ. 407։

— 81. Աւետիք աբեղա, միաբան Տրապիզոնի Վերի Աստուածածնի մենաստանի. ծաղկեց այն Սաղմոսարանը, որ գրեց

նույն վանքի միաբան Յակոբ աբեղան, 1455 թ.—Ձեռ. Վեննա. Ա. 190։

— 82. Աւետիք աբեղա, գրիչ. Խախուի և Թորթումի գավառում, Ագրգի? վանքում օրինակեց Ավետարանը, 1455 թ.—Նոտարք 179։

— 83. Աւետիս եպիսկոպոս, միաբան Թովմա Առաքելոյ վանքից, 1457 թ.—Նոտարք 187։

— 84. Աւետիք աբեղա. կանգնեցրել է մի խաչ՝ Սիմէոն քահանայի և նրա կնոջ Մելիքի հիշատակին, 1461 թ.(արձանագրությունը գտնվում է Նոր-Նախիջևանի Ս. Լուսավորիչ եկեղեցում).—Նոտարք 198։

— 85. Աւետիս կրոնավոր, որդի խոջա Խաչատուրի, որ Արճէշում, Յովհաննէս գրչին գրել տվեց մի Ավետարան, 1462 թ.—Ձեռ. Վասպ. 438։

— 86. Աւետիս քահանա, որդի Մկրտիչ քահանայի, Վանում գրել տվեց Վարդան երեցին մի Ավետարան և նվիրեց Ս. Պօղոս եկեղեցուն, 1465 թ.—Նոտարք 222։

— 87. Տէր Աւետիս, միաբան Առբերդոյ վանից (Մոկք), 1466 թ.—Նոտարք 225։

— 88. Աւետ, որդի տանուտեր Առաքելի, որ Գամաղիէլի վանքում, Յովհաննէս վարդապետին գրել տվեց Ավետարանը՝ 1469 թ.—Ձեռ. Վասպ. 453, 455։

— 89. Աւետիս, թոռն նույն տանուտեր Առաքելի, 1469 թ.—Ձեռ. Վասպ. 455։

— 90. Աւետիս, որդի Սէթի և վաղամեռիկ եղբայր Գրիգոր աբեղայի, որ Ջուլալ խաթունի համար, Աղթամարում օրինակեց Ավետարանը՝ 1470 թ.—Ձեռ. Վասպ. 460։

— 91. Աւետիք եպիսկոպոս Ս. Աստուածածնի վանուց Երուսաղէմի. օրինակեց Ոսկեփորիկը՝ 1473 թ.—Տաշեան, Ցուց. 449 բ։

— 92. Աւետիս, որդի տանուտեր Սահակի կամ նրա եղբոր՝ Ատոմի, որոնք Խիզանում, Յովհաննէս քահանային գրել տվին մի Ավետարան, 1474 թ.—Ձեռ. Վասպ. 470։

— 93. Աւետիք քահանա, որդի Ումեկ քահանայի. օրինակել տվեց Ավետարանը Բարսեղ քահանային, 1480 թ.—Ձեռ. Հալէպի, Ա. 68 ա։

— 94. Աւետիք աբեղա Հաղբատեցի, Երուսաղէմում օրինակեց Ավետարանը՝ 1484 թ.—Manus brit. mus. 25 բ։

— 95. Աւետիս քահանա Ոստանի, 1486 թ.—Ձեռ. Վասպ. 502։

— 96. Աւես, մերձավոր կամ ազգական Յովհաննէս քահանայի, որ Բերկրիի Առեղս գյուղում, Սարգիս գրչին գրել տվեց մի Աւետարան, 1488 թ.—Ձեռ. Վասպ. 508։

— 97. Աւես, որդի Անտոնի՝ եղբոր խոջա Ջաւղի, որ Յովհաննէս աբեղային մի Աւետարան գրել տվեց՝ 1490 թ.—Ձեռ. Վասպ. 515։

— 98. Աւետիս, որդի Յովհաննէս քահանայի, որ իր եղբայր տանուտեր Արապշահի հետ՝ Աղբակի Էրընկանի գյուղում, Մարգարայ գրչին գրել տվեց մի Աւետարան՝ 1490 թ.--Ձեռ. Վասպ. 511։

— 99. Աւետիս, որդի Գրիգորի և եղբայր Վարդանի, որ Մոկաց Շատախ քաղաքում, Իսրայէլ քահանային գրել տվեց մի Աւետարան, 1491 թ.—Ձեռ. Վասպ. 517։

— 100. Աւետիս, հայր խոջա Միրիջանի, որ Աղթամարում, Յակոբ կրոնավորին գրել տվեց մի Աւետարան, 1493 թ.—Ձեռ. Վասպ. 520։

— 101. Աւետիս, որդի խոջա Միրիջանի և թոռն Նախորդի.—անդ։

— 102. Աւետիք վարդապետ, ուսուցիչ Գրիգոր աբեղայի, որ Աւագ վանքում օրինակեց Աւետարանը, 1494 թ.—Ձեռ. Բուլգ. (ՀԱ 1937, 576)։

— 103. Աւետիք աբեղա, որդի Վահան երեցի, առաջնորդ Գալախորի վանից, ուր՝ 78 տարեկան հասակում, արտագրեց Սաղմոսը՝ 1495 թ.—Ձեռ. Սանաս. 23—24։

— 104. Աւետիք վարդապետ Արճիշեցի, Երուսաղէմում էր ապրում, ընկեր Աստուածատուր երեց Տիւրիկեցի նոր վկայի, որ նահատակվեց Երուսաղէմում, 1426 թ.—Ձեռ. Հալէպի, Ա. 207 ա։

— 105. Աւետիք քահանա, որդի Ումեկ քահանայի և հայր Մելքիսեթ քահանայի, որի գործածության համար, Զաքարիա երեցից գնեց մի Աւետարան, 1500 թ.—Ձեռ. Հալէպի, Ա. 68 բ։

— 106. Աւետիք աբեղա, նահատակվեց Խրիմում, Թաթարաց Ուլլան խանի զինվորների ձեռքով՝ «1509 թ». իր նահատակության վրա 20 տնով մի տաղ գրեց Առաքել վարդապետը (էջ 216. № 107).--Նոր վկ. 346—9, Ազգապ. 2218։

— *107.* Աւետիս *Կարմիր, կաթողիկոս Աղթամարի. հաջորդ Ղազար Ա-ի և նախորդ Գրիգոր Թ-ի (ԺԶ դար).—Հաւաք. 62 (կեղծիք)։*

—*108.* Աւետիք *վարդապետ Նուիրակ. ունի Տաղ Ս. Էջմիածնի (ԺԶ դար).—Տաշեան, Ցուց. 863 բ։*

— *109.* Աւետիս *կաթողիկոս Էջմիածնի. հիշված է 1600 թ. (Զքր. սարկ. Ա. էջ 50) և 1607 թ. (Ձեռ. Դաղեան, Բ. 32 ա)։—Օրմանեանը չի ընդունում սրա գոյությունը կամ համարում է հակաթոռ՝ Դաւթի և Մելքիսեթի փախուստի ժամանակ «1604 թ». անցել է Երուսաղէմ «1613 թ», և ապա վերադառնալով Էջմիածին, մեռել է «1620—24 թվերին».—Ազգապ. 2290, 2296, 2312, 2324, 2341. տես և Ազգ. մատ. ՀԸ 47։*

— *110.* Աւետիս *Ոստանցի, Նոր վկա. աղքատության պատճառով, ամբողջ ընտանիքով գաղթեցին Աղբակ և բնակվեցին Բարլասան գյուղում, ուր Աւետիսը ծառայության մտավ քուրդ Բաքդար աղայի մոտ, որ Լոռիքան բերդի իշխանն էր։ Ծառայեց նրա մոտ երկու տարի։ Իր քուրդ ընկերներից ոմանք զրպարտեցին Բաքդարի մոտ, թե Աւետիսը հաճախ խոստացել է մահմեդական դառնալ։ Բաքդարը ստուգելով որ սուտ է, սաստեց ծառաներին և ազատ թողեց նրան։ Քրդերը դիմեցին Խոսրով փաշային, որ Եղդիշէր մեծ պարոնի եղբայրը և երկրի կառավարիչն էր։ Բնակվում էր Փիզան բերդում։ Խոսրով փաշան Աւետիսին խոստացավ մեծ փառք և իշխանական պատիվներ, եթե համաձայնի ուրանալ իր հավատքը. բայց երբ նա մերժեց, ազատ արձակեց։ Մոլլաները դիմեցին Խոսրովին և Աւետիսին հափշտակելով, աշխատեցին ողոքանքով ու պատիվներով համոզել նրան. և երբ այս բոլորը զուր անցավ, սկսեցին չարչարել։ Վզից մինչև ոտքերը՝ ամբողջ մարմինը ծակոտեցին և չմնաց «ձեռնաչափ տեղի մի անծակ»։ Այսպես արյունաշաղախ վիճակում գլխատեցին նրան։ Աւետիսի եղբայրը՝ Թաքառուկ, նրա մարմինը տարավ թաղեց Առակ գյուղում («1656 թ»).—Առաք. պատմ. խը և էջ 500. Սամ. անեց. շար. 179. Զամչ. Գ. 652. Նոր վկ. 478—483. Ազգապ. 2625—6։*

— *111.* Աւետիս *Երևանցի, եղբայր Ոսկան վարդապետի. վաճառականության համար գնացել էր Հոլանդիա, միացավ Մատթէոս Ծարեցուն և հիմնեց հայ տպարան (1660), որ նվիրեց Էջմիածնին.—Զամչ. Գ. 658, Ազգապ. 2511։*

— *112.* Աւետիս *եպիսկոպոս, կաթողիկոս Աղթամարի. էջ-*

միածնի Նահապետ կաթուղիկոսը օծեց նրան և ուղարկեց Աղթամար՝ պաշտոնազուրկ անելով Թոմաս Յերձեցի կաթուղիկոսին («1697 թ»)։ Թովմասը ընդդիմացավ և իշխանության միջոցով վտարեց Աւետիքին։—Ազգապ. 2664, Ակինեան, Գաւազանագիրք 144։—Տես և Թովմա Ա. Ոշտունի։

— 113. Աւետիք քահանա, տաղասաց. ունի «Տաղ Ս. Աստուածածնի» (ԺԷ դար).—Տաշեան, Ցուց. 1008 ա։—Աւետիս տաղասաց ոմն էլ տես Նոր ժող. Բ. 16։

— 114. Աւետիք Եւդոկիացի, պատրիարք Պոլսի։ Ծնվել էր Եւդոկիայում, «1657 թ»․ ձեռնադրվեց եպիսկոպոս «1691 թ»․ երբև առաջնորդ գտնվում էր Կարինում, ուր ցույց տվեց մեծ եռանդ կաթոլիկական պրոպագանդի դեմ։ Պոլսի հայերը կռիվ ունենալով կաթոլիկների դեմ, կանչեցին նրան Պոլիս և պատրիարքական գահը բարձրացրին «1702 թ»։ Պաշտպան ունենալով Շեյխիսլամ Ֆեյզուլլահ էֆենդին, որ Սուլթանի բարեկամն ու գրեթե պետության կառավարիչն էր, Աւետիքը խիստ հալածանք հանեց կաթոլիկների դեմ։ Իր վրա առավ նաև Երուսաղեմի պատրիարքությունը «1702 թ»։ Այս միջոցին պալատական հեղափոխություն ծագելով՝ Ֆեյզուլլահը սպանվեց, Սուլթանը գահազուրկ եղավ, որից օգտվելով Աւետիքի ոխերիմ հակառակորդ Ֆերիոլ՝ ֆրանսիական դեսպանը, որ կաթոլիկների գլխավոր պաշտպանն էր, աքսորել տվեց Աւետիքին Ասորիք «1703 թ»։ Հայ մեծամեծները կաշառեցին եպարքոսին և հաջողեցան պատրիարքին վերադարձնել իր աթոռը «1704 թ»։ Ֆերիոլը նորից սկսեց գործել և երկրորդ անգամ հրաման հանել տվեց աքսորելու Տենեդոս կղզին «1706 թ»։ Հայոց դիմումների վրա, Աւետիքը ազատվեց և հրաման ստացավ Երուսաղեմ երթալու։ Ֆրանսիական դեսպան Ֆերիոլը և ճիզվիթները՝ Քիոս կղզու ֆրանսիական փոխ-հիւպատոսի միջոցով՝ Աւետիքին գողացան Քիոսից և փախցրին Մարսէյլ «1706 թ», ուր բանտարկեցին Mont-saint-Michel վանքում «1707—9 թ», այստեղից էլ փոխադրեցին Բաստիլի բերդը «1709 դեկտ. 18»։ Երկար տանջանքներից հետո, նա ստիպվեց ընդունել կաթոլիկությունը և Պարիզում մի եկեղեցու քահանա նշանակվեց։ Այս վերջին շրջանին նա արտագրել է բազմաթիվ հայերեն ձեռագրեր, որոնք մնում են այժմ Պարիզի Bibl. nationale-ում։ Սրանց վրա տես Բանասէր, 1900, էջ 141—144, ուր կան նաև Աւետիքի ինքնակենսագրական տեղեկությունները։ Մեռավ «1711 թ»։ Աւետիքը հայտնի է նաև «Երկաթէ դիմա-

կով մարդը» անունով և նրա մասին կա ընդարձակ գրականություն։ Ունի նաև զանազան տաղեր, որոնց վրա տե՛ս Տաշյան, Ցուց. 1066 գ։ Ինքնակենսագրությունը հրատարակված է Մասիս 1874, № 1489։—Ազգաբ. 2679, 2778—2788։—Ավետիք պատրիարքի մասին խոսում է նաև Չամչ. Գ. 732—748, բայց իբրև մոլեռանդ կաթոլիկ՝ այս խիզախ հերոսին դարձրել է մի սինլքոր. տե՛ս մանավանդ էջ 748։

—115. Աւետիք պատմիչ. ունի «Պատմութ. ժամանակագրական կամ Գաւազանագիրք, սկսեալ ի սկզբանէ աշխարհի ցթիւ Հայոց ՌՃՀԵ» (=1726)։ Սրա շարունակությունը կազմել է Յակոբ վրդ. Շամախեցին և հասցրել է մինչև 1788 թ.—Ձեռ. Կարին. 188։ Սրա հետ նույն պիտի լինի Աւետիք Ամդեցի, պատմիչ կամ ժամանակագիր ԺԷ դարի (կամ ավելի ուշ). ունի Թիմուրեանց արշավանքների պատմությունը (ԺԵ դար), որ տե՛ս Այրարատ 324, 326, 329, և մի Տոմարագրութիւն (Ալիշան, Հին հավատք 110)։ Կոչվում է նաև Աւետիք Տիգրանակերտցի (Հին հավատք 123, Հայապ. 13)։

—116. Աւետիք քահանա Հալիձորեցի, օգնական Դավիթ բեգի. գործեց մեծ քաջություններ. Դավիթ բեգի (մ. 1728) և Մխիթարի (մ. 1730) մահից հետո, երբ հայոց զորությունը խորտակվեց, Ավետիքը գնաց Անկյուրիա, ապա Հռոմ և վերջապես «Երուսաղէմ, ուր երկար ժամանակ ապաշխարելուց յետոյ՝ Աբրահամ Բ կաթողիկոսից ներումն առաւ քահանայ տեղովը այնքան պատերազմներ մղելուն համար» (Պալասանեան, Պատմ. Հայոց, Գլ. 75).—Չամչ. Գ. 800, Ազգաբ. 2860։

†ԱՒԵՏՈՒՄ, ար. < հյ. աւետում բառից (ի հիշատակ Աստուածածնի Աւետման տոնի.—այս աւետում բառը չունեին ՆՀԲ և ԱԲ). հմմտ. Համբարձում, Երեւում. նույն է Աւետիս անվան հետ. հընից ավանդված չէ, բայց այժմ գործածական է, հատկապես Հնդկահայոց մեջ (տե՛ս Գուշակեան, Հնդկահայք 259, 263, 308). հնագույն հիշատակությունը 1741 թ. (տե՛ս Սիւրմէեան, Պատմ. Հալէպի Ազգ. գերեզմ. 38 բ)։

ԱՒԹԱ, իգ. ծագումն ինձ անհայտ. (հմմտ. սակայն Սվանների Թագավոր Աւքի, հյց. զԱւքի՝ Օրբ. ժմ. 31, որի բուն ձևը պարզ չէ)։ Մեր մեջ հիշատակված է ԺԴ—ԺԵ դարերում և միայն Վասպուրականի շրջանում։

— 1. Աւթա, կին Խնկեկի և մայր Թադէոս կրոնավորի, որ Աղթամարում, Կարապետ քահանային գրել տվեց մի Աւետա-

րան 1392 թվին և մի ուրիշ Աւետարան էլ Զաքարիա գրչին, Աղթամար 1393.—Ձեռ. Վասպ. 225, 228 (երկուսն էլ գրված Ավքա։ Նույնը ունի նաև Նոտարք, էջ 1, բայց գրում է Աւխա, որ համարում եմ վրիպակ)։ Նույն է՝

— 2. Աւքա (սեռ. Աւքային), կին Խոնկի, և մայր Թադէոս քահանայի, որ Արճէշի Մեծոփայ վանքում գրել տվեց մի Աւետարան, 1412 թ.—Ձեռ. Դադեան, Բ. 30 բ։

— 3. Աւքա (հյց. զԱւթա, սեռ. Աւթին), կին Ստեփաննոսի և մայր Յովհաննէս կրոնավորի, որ Բերկրիում, Յակոբ աբեղային գրել տվեց մի Աւետարան, 1422 թ.—Ձեռ. Վասպ. 347, 349։

ԱՒԹԱՆԴԻԼ, ար. ծագումն ինձ անհայտ։ Հնագույն գործածությունը գտնում եմ 1609 թ. (Bodleian 111), ապա 1662 թ. (Այրարատ 437), 1682 թ. (Ձեռ. Վենետ. Ա. 391), 1775 թ. (Ձեռ. Թաւր. 18 բ Ավթանդիլ ձեռք), իսկ 1650 թ. Հաւթանդիլ ձեռք հիշված է մի կոնդակում (Manus. brit. mus. 264 ա) և Աւտանտիլ ձեռք էլ՝ Սիսական 501 բ (Դաւիթ բէգի զորավարներից մեկը)։ Այժմ այս անունը խափանված է, բայց կա Աւթանդիլեան (Ավթանդիլեան, Աֆթանդիլեան) ազգանունը։

ԱՒԹԱՇԷՐ, ար. ծագումն ինձ անհայտ։ Մի անգամ գտնում եմ գործածված ԺԴ դարում։

— Աւթաշէր, հայր Չէսարի, որ Երնջակի Նորակերտ գյուղում գրել տվեց մի Աւետարան, 1357 թ.—Ձեռ. Սեբ. (ՀԱ 1925, 126)։

ԱՒԻԾ (կամ Ավիծ, սեռ. Աւծի, Ավծի), իգ. ծագումն ինձ անհայտ. թվի եվրոպական փոխառություն։ Գործածված է ԺԳ—ԺԴ դարերում։

— 1. Աւիծ տիկին կամ Տամաւիծ իշխանուհի, կին Կոստանդին պայլի. գրել տվեց Հաւաքածոյ մի մատեան, 1284 թ.—Տաշեան, Ցուց. 834—5։

— 2. Ավիծ, կին Գրիգոր Տիվնցու, որ գրել տվեց մի Աւետարան՝ 1326 թ.—Rapport Belgique 87։

—3. Ավիծ, կին Բարթողիմէոս ապետի, որ Սսում նորոգեց Ս. Սարգիս եկեղեցին ի հիմանց՝ 1332 թ.—Յովսէփեան, Մի էջ հայ արուեստի 30։

— 4. Ավիծ, դուստր Օտարշահի և քույր Ներսէս քահանայի, որ Երուսաղէմում գրեց Ճառընտիրը, 1335 թ.—Ձեռ. Վենետ. Բ. 347։

*ԱԻԻՏՈՆ*, *ար. ծագումն անհայտ։ Գործածված է մի անգամ ԺԵ դարում։*

— Աւիտոն *տանուտեր. Աղթամարում, Թումայ քահանային գրել տվեց Մայր Մաշտոցը, 1463 թ.—Նոտարք 216։*

**ԱԻԼԱՆ*, *ար. < արաբ.* الوان alvān *«գույնզգույն, երփներանգ» բառից, որ* لون lavn *«գույն» բառի հոգնակին է։ Մեր մեջ իբրև անձնանուն գործածված եմ գտնում մի անգամ ԺԴ դարում. բայց սրանից ունենք նաև* Աւլանմելիք։

— Աւլան, *որդի Փանոսի, եղբայր Ավրանի, տանուտեր Հայոց Իլվովի, 1383 թ.—Կամենից 217։*

**ԱԻԼԱՆՄԵԼԻՔ*, *իգ. < արաբ.* الوان alvān *«երփներանգ»+* ملك melik *«թագավոր» կամ ավելի հավանաբար* ملك melek *«հրեշտակ» բառերից։ Մի անգամ հիշված է անթվական մի հիշատակարանում, որ գտնվում է 1311 թվին գրված մի Ավետարանում (Ջեռ. Թաւր. 71 ա)։—Տես և* Աւլան։

**ԱԻԼԻՆՋ*, *ար. < պրս.* اولنج avlanǰ *«արքայական ասանձնասենյակը, ուր թագավորը գիշերը աղոթում և պաղատում է Աստուծուն»։ Գործածված է մի անգամ, անթվական մի հիշատակարանում՝* Bodleian *147։*

**ԱԻՃԻ (կամ Ավճի)*, *ար. < թրք.* آوجی avǰə *«որսորդ» բառից։ Մի անգամ հիշված է 1666 թ. (Ջեռ. Հալէպի, Բ. 8 աբ)։*

**ԱԻՍԽԱԹՈՒՆ*, *իգ. կարդում եմ Օս-խաթուն և համարում եմ Օս ազգի անունից, ինչպես ունենք Արաբխաթուն, Մուղալ, Գուրջի են։*

— Աւսխաթուն, *կին Վահրամշահիկի և մայր մահտեսի Սամուէլի, որ մի Մաշտոց նվիրեց Յովհաննավանքին՝ 1464 թ.—Այրարատ 197—8 (համարում է* Աւիծ)։

**ԱԻՐԱՄ*, *ար. < հուն.* Ἀβραάμ (=Աբրահամ) *անունից, որ նոր լեզվով հնչվում է* Ավրամ։ *Ավանդված է մի անգամ ԺԴ դարում։ Հետո, վերջաձայնի փոփոխությամբ դարձել է* Աւրան, *որ գործածված ենք գտնում մի քանի անգամ ԺԴ—ԺԵ դարերում։ Այնուհետև խափանված։ Տես և* Աւրանբէկ։

— *1.* Աւրամ, *մեծ հայր Յակոբ սարկավագի, որ օրինակեց Կիւրղի Կոչումն ընծայութեանը, շուրջ 1358 թ. սրանից ավելի առաջ արդեն մեռել էր Աւրամը։—Ջեռ. Թաւր. 28 բ (գրված Ավրամ)։*

— *2.* Աւրան, *հայր Փանոս Ղազալցու, որ շինել է Իլվովի*

հայոց քարաշեն եկեղեցին, 1363 թ.—Աղգապ. 2175 (Կամենից 131 նույնը կոչում է Աբրահամ)։

— 3. Ավրան, որդի Փանոսի, տանուտեր հայոց Իլվովի, 1383 թ. (անշուշտ նախորդի թոռն է).—Կամենից 217։

— Անստույգ թվականով են՝ Ավրան կրոնավոր ոմն (ԺԵ° դար, Ցուց. Գէորգեան, № 671), ավելի ուշ Ավրան՝ ԺԶ դարից (Տաշեան, Ցուց. 101 բ), անթվական՝ Աւրան (Ձեռ. Վեներ. Ա. 608), Ավրան (Թորոս աղբար, Բ. 355)։

*ԱՒՐԱՆԲԷԿ, ար. <նույն Աւրամ (Աւրան) անունից+բէգ. մի անգամ միայն ունինք՝

—1. Ավրանբէկ, կնքահայր եղբօրորդւոց Մանուէլ քահանայի, որ Գեղարքունեաց կած գյուղում, Յովհաննէս Արծկեցուն գրել ավեց մի Ճաշոց (ԺԵ դար).—Ձեռ. Սևան. 18, Մխական 523 բ։

ԱՒՐԱՏ, ար. (կարելի էր թերևս դնել թթր. عورت avrat «կին» բառից, բայց արական անուն է)։ Մի անգամ ունինք՝

— 1. Ավրատ պարոն, օգնել է Գրիգոր գրչին մեծ Ճառընտիրը օրինակելու ժամանակ, Կաֆա 1305 թ.—Ձեռ. Վեներ. Բ. 511։

ԱՒՓԱՑ, իգ. ծագումն անհայտ. ըստ իս վրիպակ է և պետք է ուղղել Աւփա (տես էջ 251)։ Այս անունով ունինք միայն՝

— 1. Աւփայ խաթուն, կին Գրիգոր երեց Գառնեցու, որ գնեց մի հին Աւետարան՝ 1462 թ.—Ձեռ. Վասպ. 172։

ԱՒՔՏՈ, ար. ծագումն ինձ անհայտ։ Մի անգամ հիշատակված եմ գտնում ԺԵ դարում։

— 1. Աւքտօ (հյց. զԱւքտոն ձևով, ուր Ն կարող է հոդ չըլինել), որդի Գոհարմելէքի՝ զոքանչին Յովհաննէսի՝ եղբոր Թումայի, որ Աղթամարում, Ներսէս աբեղային գրել տվեց մի Աւետարան, 1460 թ.—Ձեռ. Վասպ. 433։

ԱՓԻ, ար. (արդյոք Աբրահամ անվան փաղաքշականն է). մի անգամ հիշված է 1724 թ. (Ձեռ. Դաղեան, Բ. 35 ա)։

ԱՓԻՆ, ար. առանձին չէ գործածված. բայց սրանից է կազմված Ափինեան ազգանունը (Շիրակում)։

ԱՓՈՑ, ար. ծագումն ինձ անհայտ։

— 1. Ափոց, եպիսկոպոս արքունի դռան. գործակից Անդրէասի՝ աշակերտի Սահակայ պարթևի (Ե դար).—Զարբ. Հին դպր. 296։ (Ցայսմ. տպ. Պոլիս 1706, մրտ. 30 չունի այս անունը և ընդհանրապես ավելի համառոտ է, քան Զարբհանալեանի մեջ բերածը. այսպես նաև Տաշեան, Ցուց. 82 ա)։

— 2. Ափոց եպիսկոպոս, առաջին առաջնորդ Ցուրտաւի (շուրջ 480 թ).—Դիրք Թղ. ծա. Ուխտ. Բ. խը.—Ըստ վրացի ժամանագիր Ցակոբ երեցի՝ Աշուշայ բդեշխի որդի Վազգէնի դստերեցն էր և կոչվում է Ափուտ. տես Վրաց պղ. Ա. 11։

ԱՓՏԻՇԱՀ, որ. ծագումն ինձ անհայտ։ Հիշված է մի անգամ՝

— Ափտիշահ ոմն Փրնուզցի (ԺԷ դար).—Ձեռ. Հալէպի, Բ. 141 ա։

ԱՓՐԻՋՈՆ, որ. ծագումն անհայտ, բայց անշուշտ օտար. (կա հուն. ἀφρίζω փրփրալ)։ Մի անգամ հիշված է Վայոց ձորի մի խաչքարի անթվական արձանագրության մեջ (Սիսական, էջ 182)։

*ԱՓՐԻԿԱՆՈՍ, որ. < հուն. Ἀφρικανός, լտ. Africanus անունից, որ բուն նշանակում է «Աֆրիկեցի»։ Այս անունով հայտնի են հնության մեջ՝ Յուլիոս Ափրիկանոս նշանավոր ժամանակագիրը, Ափրիկանոս՝ թարգմանիչ Մակաբայեցոց գրքի, Ափրիկանոս նահատակ (Յայսմ.)։ Այս անունը ավանդված չէ մեր մեջ, բայց նրա գոյության ապացույց է Ափրիկեան ազգանունը (Երևան, Նոր-Բայազետ)։

ԱՓՐՈՍ, որ. ծագումն անհայտ (հուն. ἀφρός նշանակում է «փրփուր»)։

— 1. Ափրոս եպիսկոպոս, սուրբ, որի խոսքերը հիշատակվում են արաբերեն և հաբեշերեն հին հայրերի հավաքածու գրքերում (նախ քան Ե դարը).—Ալիշան, Շնորհ. էջ 175։

ԱՔԱՐԹԻ, իգ. ձևով անստույգ և ծագումն էլ անհայտ. մի անգամ գործածված է՝

— Աքարթի? մայր Աստուածատուր քահանայի, որ Յովհաննէս Քուշայկերանցի (կարդա Քոլագիրանցի) քահանայից գնեց մի հին Աւետարան, ՇՂԴ=1145 կամ ՁՂԴ=1345 թվին.—Ձեռ. Վենետ. Ա. 544։

ԱՔԵՂ, որ. (կա միայն սեռ. Աքեղի, ուստի ուղղականը կարող է լինել և Աքեղայ?). մի անգամ հիշված է՝

— Աքեղ, հայր Իգնատիոսի, որ իր Մամեր կնոջ հետ Մարաց մարզի կալվածը նվիրել է Հոռոմոսի վանքին (թվականն անհայտ).—Շիրակ 21 ա։

*ԱՔԵՄԵՆԻԴ, որ. < իրան. Haxāmaniš անունից (Աքեմենեան հարստության նախահայրը). նշանակում է «որ ունի բարեկամի մտածմունքը». շատ համապատասխան է հունական տառադարձու-

թյամբ ’Αχαιμενίδης (ըստ Կոխխասի, որդի Բանրքայնի, Justi 124 ա)։

— Աքեմենեսիդ, որդի և հաջորդ Պարթամասպատի. հռովմայեցոց Անտոնինոս Պիոս կայսեր հաճությամբ նստավ թագավոր Հայոց՝ 140—159 թ.—Գրգչ. Բնն. պատ. Բ. 259։

ԱՔՈՆԱԶ, ար. թե իգ. ծագումն էլ անհայտ. մի անգամ ունինք՝

— Աքունազ, ազգական Շահնշահի, որ Գողթան գավառի Կոպատոսի անապատում, Թումայ Արճիշեցուն գրել տվեց Աւետարանը՝ 1336 թ.—Ձեռ. Ագուլ. (Արրտ. 1911, 387)։

*ԱՖԵՆՏ, ար. < հուն. αὐθέντης «տեր, իշխան» բառից. այս բառն է, որ իբրև պատվանուն գործածվելով՝ դարձավ Օսմանցոց մեջ՝ افندى efendi «պարոն»։ Մեր ձևի փոխառությունը Օսմանցիներից ավելի առաջ է. հմմտ. «Ի ՉԻ (=1271) ամին Հայոց, այր մի անունն Պետինաֆենդ, որ Թարգմանի «Տղապարոն», ազգաւ յոյն, բարեպաշտօն և լի իմաստութեամբ» (Տաշեան, Ցուց. 191 բ)։

— 1. Աւենդ, պարոն և եքսարխոս, ուներ մի օրինակ Աստուածաշունչ, որ շնորհեց Ստեփաննոս քահանային՝ արտագրության համար, Սեբաստիա, 1313 թ.—Ձեռ. Սեբ. (ՀԱ 1923, 70)։

— 2. Աֆենտ ոմն, հիշված 1341 թ.—Տաշեան, Ցուց. 85 բ։

— 3. Աֆետ ոմն, հիշված 1593 թ.—Ձեռ. Հալէպի, Ա. 194բ։

— 4. Աֆենտ ոմն, ստացիչ, հիշված ԺԶ դարում (Տաշեան, Ցուց. 102)։

*ԱՖԼԱԹՈՒՆ, ար. < արաբ. افلاطون Aflāṭūn անունից, որ հուն. Πλάτων «Պղատոն» նշանավոր փիլիսոփայի անվան տառադարձությունն է։ (Պղատոնը Սոկրատի աշակերտն էր. բուն անունն էր ’Αριστοκλῆς. կոչվեց Πλάτων իր լայն կրծքի համար՝ πλατύς «լայն» բառից)։ Հիշված է մեր մեջ իբրև անձնանուն՝ Ալֆաքուն և Ալֆաք ձևերով, 1609 թ. (Bodleian 111)։

---

# Բ

*ԲԱԲ, ար. < պրս. باب Bāb անունից, որ բուն նշանակում է «հայր». նույն է նաև بابا Bābā: Այս անունով հայտնի է եղել մահմեդական մի մարգարէ 1240 թ. որի համար Օրբ ժմ. 25 գրում է. «Սուտ վարդապետ մի յարեաւ Մահմետի ի Հոռոմք և անուանեաց զինքն Բաբ ռասուլ և յետ սակաւուց բարձաւ չարն ի միջոյ»: (Տես և տակը): Նորագույն ժամանակներում էլ դուրս եկավ Պարսից մէջ Bāb, որ 1844 թվին հիմնեց բաբիական նոր կրոնը, որին էլ հաջորդեց Բէհայիների կրոնը: Հմմտ. նաև Բաբէ եպիսկոպոս Սելևկիայի և կաթուղիկոս Ասորեստանի (498—503) (Գիրք Թղ. ը), Bābā թագավոր Արամայեցոց 226 թ., Bābā սուտ մարգարե, որ սպանվեց Ամասիայում 1240 թ., Βάβος սկիւթացի (Justi 54—55): Խորենացին էլ Բէլի հաջորդն է դնում Բաբ (Խոր. Ա. ե): Ըստ այսմ Մագիստրոսի տված մեկնությունը արաբ. باب bāb «դուռ» բառից (Բաբ, այսինքն դուռն բարեաց. Մագ. Թղ. ժթ) բոլորովին զուր է, ինչպես որ սպասելի էլ էր. որովհետև Բաբ անունը գործածված է մեր մեջ Արաբների արշավանքից էլ առաջ՝ Զ դարում: Իբրև օրինակ հատուկ անվան՝ հիշված է Դաւ. քեր. 104 բցռ. ի Բաբայ ձևով: Հմմտ. նաև Բաբա և հաջորդները:

— 1. Բաբ, երեց որդի Տիգրան Ա-ի. իր եղբայրներն էին Տիրան և Վահագն. վերջինը ժառանգեց Հայկազանց թագավորական գահը.—Խոր. Ա. լա. Ցհ. կթ. գ. Մխ. անեց. գ. Մագ. Թղ. ժթ. Վրդ. է. Սամ. անեց. 46. Մխ. այրիվ. 18, 55.—Պապ՝ Մին. համբ. 12.—Նույն անունն է, որ Ուխտ. Ա. ևս սխալմամբ դնում է Բաբ-սիրաԾ, իբրև երեց որդի Տիգրան Ա-ի և նրա մասին պատմում է այն՝ ինչ որ Խորենացին պատմում է Վահագնի մասին:—Այս առթիվ տես և Զամչ. Ա. 200:

— 2. Բաբ եպիսկոպոս Ամատունեաց. ստորագրում է այն երկու թղթերին, որ Յովհաննէս Բ Գաբեղեան կաթուղիկոսը («557—574») գրեց Սիւնեաց և Աղուանից՝ Նեստորականների քաղցկությունը առթիվ.—բցռ. ի Բաբայ՝ Գիրք Թղ. ժը, ժթ. Կղկնտ. Բ. է (հրտր. Շահն. ի Պարիզ), Օրբ. իբ:

— 3. Բաբ-ի-Շահրփերոզեան, իշխան աղուան (է դար). —հրտր. Սամ. անեց. 286:

— 4. Բաբ-ի-Հրահատեան, նախարար աղուան, Ատրպատականի իշխանական ցեղից, հաստատված Կապաղակում և Կող-

*թում (706 թ).—Կղկնտ. Գ. ը, ժ (հրտր. Էմինի՝ մի անգամ ունի Պապ)։ Նույն է* Բաբի՝ *որդի Հրահատի 704 թ. (*Brosset, Hist. Addit. *485*=Justi *55 ա)։*

*— 5. Բաբ, որդի Փիրիբէկի, մեռել է 1565 թ. և թաղվել է Վայոց ձորում (Միսական 182)։*

**ԲԱԲԱ, տր. < Թրք.* بابا bābā *բառից, որ իբրև անձնանուն գործածական է նաև Թուրքերի մեջ և բուն նշանակում է «հայր»։ Համապատասխան ձևերն են՝ Հայր, Հայրիկ, Հայրապետ, Հայրօ, Աբա, Պապ, Աթա, Աթաբէգ, որոնք նույնպես նշանակում են «հայր»։ Գործածված է մեր մեջ՝ սկսած ԺԵ դարից. այժմ էլ տեղ տեղ գործածական է։ Սրանից է* Բաբայեան *(արևմտահայ տառադարձությամբ՝ Պապա, Պապայեան) ազգանունը։ Հմմտ. նաև Բաբ, Բաբախան, Բաբաջան, Բաբասի։*

*— 1.* Պապա, *հայր Այվատ անուն Անկիւրացի ազնվականի, որ տաճիկների հրավերով գաղթեց Պոլիս՝ 1453 թ.—Տաշեան, Ցուց. 895 բ։*

*— 2.* Բաբա՝ *որոշյալ հոդով* Բաբէն *ձևով գործածված է 1534 թ. Ձեռ. Վասպ. 647, որ զուր տեղը Լալայեանը սրբագրում է Բաբկէն։*

— Բաբա *(որոշյալ Բաբէն) հիշված է նաև 1621 թ.—*Manus. brit. mus. *23 ա։—Կոչական* Բաբօ *ձևից է՝ սեռ.* Բաբօին, *որ հիշված է անթվական մի հիշատակարանում (գրված 1608 թվից ավելի ուշ)՝ Ձեռ. Վասպ. 830։*

**ԲԱԲԱԼԻ, տր. < Թրք.* بابالی babali *«հայր ունեցող» ձևից։ Մի անգամ* Պաբալի *ձևով հիշված է 1477 թվից ավելի ուշ գրված անթվական մի հիշատակարանում (Ձեռ. Ագուլ.=Արրտ. 1911, 221)։ Սրանից է Բաբալեան ազգանունը։*

**ԲԱԲԱԽԱՆ, տր. < Թրք.* بابا baba *«հայր»+պրս.* خان xān *«իշխան» բառերից։ Իբրև անձնանուն գործածվում էր նաև Պարսից մեջ. այս անունն էր կրում օր. Պարսից Ֆաթալի շահի եղբորորդին (տես Ուղեգրութ. հտ. Զ. տպ. Երևան, 1934, էջ 39)։ Մեր մեջ հիշատակված է 1716 թ.* (Bodleian *15) և անթվական մի հիշատակարանում (գրված թերևս ԺԶ դարում)՝ Ձեռ. Վասպ. 281։ Սրանից է Բաբախանեան ազգանունը (Ղարաբաղ)։*

**ԲԱԲԱՋԱՆ, տր. < Թրք.* بابا baba *«հայր»+պրս.* جان ǰān *«հոգյակ» բառերից։* Բաբա *անվան փաղաքշականից է։ Գործածվում է ԺԵ դարից սկսած։ Արևմտահայ տառադարձությամբ գրվում է* Պապաճան. *հնագույն հիշատակություններն են՝ Պապիճան 1572*

թ. (Կարապետ եպս.՝ Դօփեանք 169), Պապաջան 1602 թ. (Ձեռ. Վասպ. 188), Պապաճան 1623 թ. (Ձեռ. Վենետ. Ա. 629) և 1624 թ. (Տաշեան, Ցուց. 780 բ)։ Հավասարապես գրված է Բաբաջան կամ Պապաջան՝ Ձեռ. Վասպ. 342—4 (անթվական մի հիշատակարանում)։ Սրանից է Բաբաջանեան (Պապաճանեան) ազգանունը։ —Բաբաջան անունը գործածված է եղել նաև մահմեդականների մեջ և Կումայրիի (Գյումրի) ավերակներում գտնվել է մի «արձանագիր տապանաքար Պապաճանի ուրումն՝ որդւոյ Պէքիրայ, անստոյգ թուականաւ» (Շիրակ 154 բ)։

— 1. Բաբիճան, պապ Ղևոնդի, որի օգնությամբ Գրիգոր կաթողիկոսը գնեց Վաղարշապատը 1443 թ.—Այրարատ 209։

— 2. Բաբաջան պարոն, որի կինն էր Թամար իշխանուհի. այս երկուսը «իւրեանց զաւակօքն ծաղկալի թիկունք են մեզ ի յերկրի՝ դէմ այլազգեաց բռնաւորի ու արդիւնաւորք մեզ ի մարմնի և խնամարկուք ամէն բանի», Տեղերի և Բիւրականի շրջանում, 1469 թ.—Ձեռ. Վենետ. Բ. 1113։

*ԲԱԲԱՍԻ, ար. < Թրք. بابسی babasi «իր հայրը» (=հօրամօրն, հայրնմանակ) բառից, ինչպես ունինք և Աղասի։ Մի անգամ հիշատակված է սեռ. Բաբասուն ձևով՝ 1723 թ. (Ձեռ. Վասպ. 886)։ Այժմ էլ գործածական է (քիչ անգամ) Վերին-Աղա գյուղում։ Սրանից է Բաբասեան կամ Բաբասինեան ազգանունը։

*ԲԱԲԵՂ, ար. կրճատ ձևն է կամ Բաբելաս անվան (որ հավանական չէ) և կամ ավելի հավանաբար՝ Զօրաբաբել անվան։ Հիշված է Բաբեղ ձևով ԺԷ դարում (Ձեռ. Կես. սարգ. 13) և Բաբեղ ձևով՝ 1760 թ. (Տաշեան, Ցուց. 703 բ), 1872 թ. (Կարապետեան, Ցիշատ. Սամաթիոյ 138)։ Սրանից է Բաբեղեան ազգանունը (անդ, էջ 144—5)։

*ԲԱԲԵԼԱՍ, ար. (ուղղագուլն ձևն է Բաբիւղաս՝ ըստ Աւգեր. Լիակ. վրք. սրբոց, Ը 109). հույն-ասորական անուն է. հմմտ. Ցայսմաւուրքի մեջ՝ Բաբելաս եպիսկոպոս Անտիոքի և Բաբելաս վարդապետ, որ նահատակվել է իր 84 աշակերտներով։ Շատ քիչ է գործածված մեր մեջ։ Կա և Վրաց կաթողիկոս Բաբելաս՝ Մխայրիվ. 23։

— 1. Բաբելաս խուժիկ, եպիսկոպոս Գողթան, հաջորդեց Կոմսիի. մեռել է 90ական թվերին.—Օրբ. ե։

— 2. Բաբելաս, վանահայր Յովհաննավանից՝ Արագածոտն գավառի. սրա մոտ ապաստանեց Ցուրտաւի Մովսէս եպիսկոպոսը 605 թ. Աբրահամ կաթողիկոսին տվել է «ձեռնարկ հաւատոյ»

607 թ.—գրված Բաբեղաս՝ Ուխտ. Բ. ժ, լէ.—Բաբիլաս՝ Գիրք Թղ. խ.—սեռ. Բաբեղասայ՝ Ուխտ. Բ. ը, ժա.—Բաբիլասայ՝ Գիրք Թղ. խե։

*ԲԱԲԵՐ, ար. < թաթարական بابر Bāber անունից. այս անունով նշանավոր է Լէնկթիմուրի թոռը, որ գրավեց Հնդկաստանը և Մեծ Մողոլների կայսրության հիմնադիրը դարձավ՝ 1526 թ։ Գրել է թաթար լեզվով Bābernāme նշանավոր պատմական գործը, որ իր ինքնակենսագրությունն է և որ Akbar կայսրը թարգմանել տվեց պարսկերենի։ Ըստ Justi 55 ա այս անունը ծագում է պրս. ببر babr «վագր» բառից. միջին ձևն է Baber՝ բանաստեղծ Դելհիում (ԺԸ դարի վերջում)։

— 1. Պապէր, որդի Վարդ քահանայի, որ Սեբաստիայում օրինակեց Աւետարանը՝ 1193 թ.—Ձեռ. Վասպ. 80։

— 2. Պապեր ոմն Սեբաստացի. արդեն մեռած էր 1576 թ? —Ձեռ. Սեբ.=ՀԱ 1925, 470։

*ԲԱԲԻ, ար. նույն է Բաբ, Բաբա անունների հետ. հիշատակված է 1734 թ. (Սխալան 357 ը՝ Բաբի և Պապի ձևերով)։ Սրանից Բաբիեան ազգանունը (Նոր-Նախիջևան)։

*ԲԱԲԻԿ, ար. փաղաքշական ձևն է Բաբ անվան, այն է «հայրիկ» (Justi 55 ա). հմմտ. պրս. بابك Bābak. այս անունով հայտնի են Bābak նահանգապետ Ստահրի՝ Արտաւան Մեծի ժամանակ (Շահն. հտ. 5, էջ 217), Bābak մոգպետ Նուշիրվանի (Շահն. հտ. 6, էջ 134).—Նոր ձևն է Պապաք, որ տես։

— 1. Բաբիկ Սիւնի. Մանուէլ սպարապետից կարգվեց նահապետ Սիւնեաց. նիզակակից եղավ նրան՝ Մերուժանի դեմ վարած պատերազմում, ուր և սպանեց Մերուժանին։ Ըստ Խորենացու՝ Արշակ Գ-ի աներն է, մինչդեռ ըստ Բուզանդի՝ Արշակի աներն է Մանուէլ.—Բուզ. Ե. խբ, խգ.—սեռ. Բաբկայ՝ Խոր. Գ. խգ. Մխ. անեց. իբ.—կամ Բաբկան՝ Բուզ. Ե. խգ. Խոր. Գ. խա։

— 2. Բաբիկ, որդի Սիւնեաց Անդոկ նախարարի. հայր Վասակ Սիւնի մարզպանի և եղբայր Փառանձեմ թագուհու։ Հոր մահից հետո, վերադառնալով Հոնաստանից, անցավ Պարսկաստան, ուր Հոնաց Հոնագուր թագավորի հետ ըմբշամարտելով, սպանեց նրան։ Սրա վրա Շապուհ արքան նախարարական պատիվ շնորհեց նրան և ուղարկեց Սիւնիք։ Ըստ Կիւլէսէրեան՝ Եղիշէ 255 նստել է 377—398։—Կղկնտ. Բ. ա. Օրբ. թ, ժ, ժբ, ժգ.—սեռ. Բաբկայ՝ Կղկնտ. Բ. ա. Օրբ. ա, թ—ժգ.—Բաբգայ՝ Օրբ. լը։

— 3. Բաբիկ Ռափսոնեան. մին այն նախարարներից, որ

Յազկերտ Բ բանտարկեց Պարսկաստանում («452 թ»).—Եղիշ. 150.—Նույնը կոչվում է Բաբիկ Ռոփսենից՝ Փարպ. խէ. (ձեռ. Բաբիկ)։

— 4. Բաբիկ Սիւնի, որդի Վասակ Սիւնի մարզպանի. Յազկերտ Բ պատանդ պահեց նրան իր մոտ.—Փարպ. իը. Օրբ. ժգ.—Նույնը Սեբ. ապար. 41 կոչում է Բաբ, ինչպես որ սրա եղբորը՝ Ատրներսեհին էլ անվանում է պարզապէս Ներսեհ։—Հիշում է Փարպ. կգ իբրև «լաւ այր», որ բանտարկյալ նախարարների վերադարձից հետո, ուրացյալներից հեռու քաշված, ապրում էր քրիստոնեաբար՝ Գիւտ կաթողիկոսի ժամանակ (Ազգաս. 426 այս վերջինին տարբեր անձ է համարում)։—Սիսական 12 բ։

— 5. Բաբիկ, հայր Յովհաննէսի, որ իբրև վկա հիշվում է Տաթևի 844 թ. կալվածագրում.—սեռ. Բաբկայ՝ Օրբ. լը։

*ԲԱԲԿԷՆ, ար. կազմված է Բաբ կամ Բաբիկ անունից՝ իրան. ēn փաղաքշական մասնիկով (Հիւբշ. 90). ըստ այսմ ճիշտ ձևն է Բաբկէն, ուր կ ազդվելով նախորդ բ-ից, դարձել է գ և տվել է Բաբգէն։ Իբրև անձնանվան օրինակ հիշում են Թր. քեր. 14, Դաւ. քեր. 105 և Անան. քեր. 140։ Մեր պատմության մեջ գործածված է եղել սկսած Բ դարից Ժ դար։ Այնուհետև խափանվում է։ Վերակենդանացավ անցյալ դարում և այժմ սովորական անուն է, մանավանդ Կովկասում։

— 1. Բաբգէն, նախարար Արծրունի, հաջորդ Ասոդի. ժամանակակից Վաղարշ (193—213) թագավորի. մասնակցեց նրա հետ Խազրաց պատերազմին.—Արծր. Ա. ը (Բաբգեան ձևով).—բց. ի Բաբգենայ՝ Արծր. Ա. թ։

— 2. Բաբգէն Արծրունի, նախարար, հաջորդ Ներսեհի (Գ դար).—Արծր. Ա. թ. —սեռ. Բաբգենի՝ Արծր. Ա. ժ։

— 3. Բաբգէն Ա Սիւնի, եղբայր Բակուրի, նահապետ Սիւնեաց. մին այն նախարարներից, որ Յազկերտ Բ բանտարկեց Պարսկաստանում «452 թ». մասնակցեց Վահան Մամիկոնեանի ապստամբական կռիվներին.—Եղիշ. 150. Փարպ. խէ, կը, կթ, հա, հդ. Օրբ. ժէ.—սեռ. Բաբգենայ՝ Փարպ. կթ, հդ։

— 4. Բաբգէն Ա Ոթմսեցի, կաթողիկոս հայոց «490—516 թ». աշակերտն էր Յովհան Մանդակունու, որին և հաջորդեց. նախապես էր եպիսկոպոս Վանանդի (495 թ. ըստ Այրարատ 76). գումարեց Դուինի եկեղեցական ժողովը «506 թ», որին մասնակցում էին նաև Վրաց Գաբրիէլ և Աղուանից Շուփհաղիշոյ կաթողիկոսները։ Այս ժողովում երեք հարևան ազգերը միասին

մերժեցին Քաղկեդոնական դավանանքը և կտրեցին իրենց հարաբերությունը հույների հետ, որ և պատճառ եղավ հայերի և հույների հետագա թշնամության։ Դրանից քիչ հետո, Պարսկաստանի Ասորիները դիմեցին Բաբկէնին և ընդունելով Դուինի ժողովի որոշումները, խնդրեցին Հայոց պաշտպանությունը Նեստորականների դեմ։ Բաբկէնը գրեց այս առթիվ երկու թուղթ. —Յհ. կթ. ժդ. Յհ. կթ. հյր. 274. Գիրք թղ. ը, թ, ծէ, ձբ. Ասող. Բ. բ. Եղն. եր. 268. Քհնպ. 270. Կիր. 21. Վրդ. լ. Տարօն. Ա. § 87. Մխ. անեց. դ. Սամ. անեց. 72, Մխ. այրիվ. 20. Այրիվ. 20 ա. Օրբ. հա. Մխ. աս. իթ. (=իը), Ցայսմ. յուլ. 24.—Բաբգէնէ՝ Վրաց աղբ. Ա. 78.—սեռ. Բաբգենի՝ Հնիք հաւ. 133, 142. Ուխտ. Բ. խթ, ծ, կթ. Կղկնտ. Բ. խէ (ըստ հրատ. Էմինի, իսկ հրար. Շահն. Բաբգենայ).—սեռ. Բաբգենայ և բց. ի Բաբգենայ՝ Գիրք թղ. ը, ծբ. Կիր. 21. Ցայսմ. նոյ. 18.—գրծ. Բաբգենաւ՝ Գիրք թղ. ծ. Ուխտ. Բ. խէ.—Բաբգենիւ՝ Օրբ. կը. հկճռ. ժբ.—տես և Տաշեան, Ցուց. 109 ա, 357 բ. Տէր-Մինասեանց, Հայոց եկեղ. յարաբ. 65—84։

— 5. Բաբգէն Բ, նահապետ Սիւնեաց, հաջորդ Աչիրի (Զ դար).—Օրբ. ժգ։ (Սիսական 17 ա և ցանկում համարում է սրան Վասակ ուրացողի եղբորորդին և դնում է Աչիրից ու Սահակիայից հետո (520—530 թ)։

— 6. Բաբգէն Գ Սիւնի, նախարար, հաջորդ Ցոլհանի և նախորդ Քուրդոյի. հիշված է 683 թ.—ըստ Սիսական 14բ, 17բ։

— 7. Բաբգէն, որի անեբը Արկադ գյուղի պարոնն էր (735 թ).—սեռ. Բաբգենայ՝ Այրիվ. 21 բ։

— 8. Բաբգէն Սիւնի. 200 հոգով դուրս եկավ Աբլհերթի 4000 զինվորների դեմ և հաղթեց (849).—Վրդ. խբ։ (Ըստ Սիսական 15 ա այս Բաբգէնը որդին է Վասակի և եղբայր Փիլիպպէի. իսկ ըստ Զամչ. Բ. 445 նույն է № 11-ի հետ։ Նաև Զամչ. հայոց զորքի թիվը դնում է սխալմամբ 2000, մինչդեռ ըստ Վարդանի միայն 200 է)։

—9. Բաբգէն իշխան Սիւնեաց. Քուրդ (կամ Քուրդոյ) իշխանի հետ միասին Սիւնեաց Ստեփաննոս եպիսկոպոսին (մ. 735) ձեռնադրել ավին.—Օրբ. լ.—Բաբգեն՝ Այրիվ. 20 ա.—սեռ. Բաբգենի՝ Կիր. 41.—բց. ի Բաբգենէ՝ Կղկնտ. Գ. ժգ։

— 10. Բաբգէն իշխան Սիւնեաց, որի աղջկան հետ ամուսնացավ Վահան Գողթնացի (մ. 737) նահատակը.—Զամչ. Բ. 384, 400, 401։

— 11. Բաբգէն նահապետ Սիսական որդի Փիլիպպէի Ա, որդւոյ Վասակի. պատերազմեց Գրիգոր Սուփանի դէմ և սպանեց նրան (Թ դար).—Ցհ. կթ. իե. Օրբ. լգ, լը, ծդ.—սեռ. Բաբգենի՝ Օրբ. լգ, լը, ծդ.—բց. ի Բաբգենայ՝ Ցհ. կթ. իե։

— 12. Բաբգէն Սիւնի, կրտսեր որդի Աշոտի, եղբայր Սմբատի և Սահակայ՝ տեարց Սիւնեաց. կինը գերվեց Յուսուփից և երկու տարի հետո ազատվեց (Աշոտ Բ-ի օրով). եղբորը՝ Սահակի դեմ ապստամբելու նպատակով դիմեց Արաբների Նըսր ոստիկանին, բայց բռնվեց ու բանտարկվեց «926 թ». մի տարի հետո ազատվեց փրկանքով.—Ցհ. կթ. կե, կէ. Օրբ. լէ, խբ, ծդ.—սեռ. Բաբգենի՝ Ցհ. կթ. կե, կէ. Օրբ. լէ, խբ, ծդ.—սեռ. Բաբգենի՝ Ցհ. կթ. ծէ, կէ. Օրբ. լգ, խ, խա.—Բաբգենայ՝ Ցհ. կթ. կէ.—բց. ի Բաբգենէ՝ Օրբ. լէ.—գրծ. Բաբգենիւ՝ Ցհ. կթ. կե.—ած. Բաբգենեան՝ Օրբ. կգ։

— 13. Բաբգէն Սիւնեցի, եպիսկոպոս Նախիջևանի. Ստեփաննոս Գ կաթողիկոսը իր հետ տարավ նրան Վասպուրական, դատելու համար քաղկեդոնիկ Վահան կաթողիկոսին («971 թ»). աքսորվեց Աղթամար, բայց շուտով արձակվեց.—Ասող. Գ. ը.—գրծ. Բաբգենիւ՝ Ասող. Գ. ը.—Ջարբ. Հին դպր. 550։

— 14. Բաբգէն, իշխանազն Սիսական. կրոնավոր դարձավ և նորից շինեց Մաղարդայ վանքը, որի օծման հանդեսին հրավիրեց Աշոտ Գ Ողորմածին և Խաչիկ կաթողիկոսին՝ 976 թ։ Կաթողիկոսը ձեռնադրեց նրան եպիսկոպոս և նրան տվեց նաև Նախիջևանը.—Սիսական 516ը՝ ըստ Խաչիկ կաթողիկոսի կոնդակի, որ հրատարակված է Արարատում, բայց կեղծիք է համարվում։ Ըստ այսմ կարելի է նույնացնել նախորդի հետ (№ 13)։

ԲԱԲՈՆԻԿ, մր. ծագումն անհայտ. հիշված է մի անգամ 1613 թ. Ջեռ. Վասպ. 845։

ԲԱԲՈՑ, ար. ծագումն անհայտ։

— Բաբոց Արտակունի, հայր Պապի, որ Վահան Մամիկոնեանի կուսակիցներից մեկն էր (Ե դար).—սեռ. Բաբոցի՝ Փարպ. հա։

ԲԱԲՈՒԼ, ար. ծագումն անհայտ։ Հիշված է մի անգամ 1591 թ. (Ջեռ. Վասպ. 722) և երկրորդ անգամ՝ 1648 թ. (անդ, էջ 914)։

ԲԱԲՈՒՄ, ար. ծագումն անհայտ. հիշված է մի անգամ, անթվական մի հիշատակարանում, Պապում ձևով՝ Ջեռ. Վասպ. էջ 787։

ԲԱԳԱԴԻԱ, ար. նախաբագրատունյան անուն, որ ապա դարձավ Բագարատ՝ ըստ Խոր. Բ. կգ, Մխ. անեց. իա (վերջինս

նաև Բագատիա ձևով)։—Իրոք որ Բագարատ անվան հպրս. ձևն է Bagadāta։

ԲԱԳԱՄ, ար. ծագումն անհայտ. Justi 57 բ համարում է կրճատ ձև Բագա- արմատով սկսվող անունների, ինչ. Բագարատ են։

— 1. Բագամ, որդի Հայկազանց Փառնաւազ Թագավորի, թոռան թոռ Արմոգի, ժամանակակից (կամ քիչ հետո) Նաբուգոդոնոսորի.—Սեբ. ա։

— 2. Բագամ Թագավոր Հայկազանց, հաջորդ Արմոգի, շատ հետո Փառնուասից և Նաբուգոդոնոսորից. ըստ Ջամչեանի՝ գահակալել է Ն.Ք. 385—371, այն է 14 տարի.—Խոր. Ա. լա. Մխ. անեց. գ. Սամ. անեց. 46. Մխ. այրիվ. 55. Մխն. համզ. 12.—Պագամ՝ Մխ. այրիվ. 18.—գրված է Բայգամ՝ Ցհ. կթ. գ.—Պայգամ՝ Վրդ. է.—Բագամար՝ Մաք. թղ. ժթ, որ ստուգաբանում է «որ գրագինսն յարդարէր».—բց. ի Բագամայ՝ Սամ. անեց. 46. Մխն. համզ. 12.—ի Բայգամայ՝ Ցհ. կթ. գ։

*ԲԱԳԱՐԱՏ, ար. < հպրս. Bagadāta, որ բուն նշանակում է «(Միհր) աստուծու տվածը կամ ստեղծածը» (տես Աստուածատուր), զնդ. baγōdāta, տառադարձված հուն. Βαγαδάτης, ասոր. Bakdādh, արաբ. Baġdādh (Justi 57 ա, Հիւբշ. 31)։ Ըստ Խոր. Բ. կգ. առաջացել է հնագույն Բագադիա ձևից։ Սրանից է ծագում Բագրատունի տոհմանունը, որ իբրև «հայրանուն» հիշում է Սիւն. քեր. 206։ Դիտելի է որ հունաց Հիպպոկրատ բժշկի անունը շատ անգամ դարձել է մեր մեջ Բագարատ. այսպես՝ Մխ. հեր. ը, ժ, ժա, ժզ, ի, իա։ Հայերենից փոխառյալ է վրաց. Բագրատ։ Մեր ձևը արաբները տառադարձել են بقراط Buqrāṭ. փաղաքշական ձևն է Բագրատուկ, որ տես։

— 1. Բագարատ, որդի Փառնաւազ Թագավորի Հայկազանց՝ ըստ Սեբ. ա. (ձեռ. գրված է Բագարամ).—սեռ. Բագարատայ՝ Սեբ. ա։ Կոչվեց նաև Անգեղ և իր որդիքը ժառանգեցին Անգեղտունը։

— 2. Բագարատ Փառադեան, նախարար հայկազն, նախորդի ցեղից. առաջին անգամ ընդունեց Արշակ փոքրին (ըստ Խորենացու Վաղարշակ Թագավոր Հայոց) և ստացավ նրանից ասպետության պատիվը.—Սեբ. բ։—Սրա հետ նույն է՝

— 3. Բագարատ Շամբայ, իշխան հրեա և Բագրատունեաց նահապետ, որին Վաղարշակ Ա նշանակեց Թագադիր ասպետ և նախարար.—Խոր. Բ. գ, դ, է, ը. Ցհ. կթ. դ. Ուխտ. Ա. իէ. Ասող.

Ա. ե. Մխ. անեց. զ, է. Սամ. անեց. 47. Մին. համզ. 28.—սեռ. Բագարատայ՝ Խոր. Բ. Թ. Ուխտ. Ա. իէ. Ասող. Ա. ե. Մխ. անեց. զ, իա. Վրդ. ժզ. Սիմ. ապար. 27.—տր. Բագարատուն՝ Ուխտ. Ա. իէ։

— 4. Բագարատ, զորավար Տիգրան Մեծի. կարգվեց կուսակալ կամ փոխարքա հին Սելևկեանց պետության, որի մայրաքաղաքն էր Անտիոք (Ասորիք), Ն.Ք. 83 Թ.—այս անունը ավանդված է մեզ հույն պատմիչների կողմից՝ Μαγαδάτης և Βαγαδάτης ձևերով, որոնցից ուղիղ է միայն վերջինը.—Գրզչ. Բ. 135, Marquart, Erānšahr, էջ 174, Հայ բղեաշխք, էջ 27, Justi 57 ա, Մանանդ. Տիգրան Բ. 51։

— 5. Բագարատ ասպետ Բագրատունի, որդի Սմբատ ասպարապետի. Տրդատի չորս զորավարներից մեկն էր՝ Շապուհի վրա արշավելու ժամանակ («287 Թ»)։ Խոսրով Բ-ի օրով արևմտյան գնդի զորավար նշանակվեց։ Ըստ Բուզանդի՝ նիզակակից էր Վաչէ ասպարապետի։ Արշակ Բ-ի ժամանակ հիշված է իբրև «մեծ իշխան ասպարապետութեան», որ ուղեկից եղավ Մեծն Ներսէսին՝ նրա Կեսարիա ձեռնադրության գնալու ժամանակ («353 Թ»)։ Իր որդին է Սմբատ, որ սպանեց Մերուժանին։—Խոր. Բ. ձե. Գ. զ, Թ. Ասող. Բ. ա. Կղկնտ. Ա. ժը. Մխ. անեց. իզ.—սեռ. Բագարատայ՝ Խոր. Բ. ձզ. Գ. լէ. Արծր. Ա. ժ.—գրծ. Բագարատաւ՝ Խոր. Գ. Թ.—իսկ Բուզ. Գ. է գրում է Բագրատ (այսպես և Մեսր. եր. 53, 88), Թեև Դ. զ. ունի նաև Բագարատ ձևով։

— 6. Բագարատ պատանի, Ստեփաննոս Ուռնեցու մերձավորներից. նրանց հետ նահատակվեց «362 Թ».—Աւգեր. Լիակ. վրք. սրբոց, Ե. 73, Ազգապ. 188։

— 7. Բագարատ Բագրատունի, հայր Իսահակ պատրիկի («752 Թ») և հորեղբայր Աշոտ (կուրացեալ) պատրիկի («715 Թ»)՝ որդւոյ Վասակի.—սեռ. Բագարատայ՝ Ղև. իը. Ասող. Բ. դ։

— 8. Բագարատ սպարապետ, մասնակցեց Արաբների արշավանքին դեպի Դերբենդ, ուր և խորշակահար մեռավ «784 Թ».—Ղև. լԹ։

— 9. Բագրատ որդի Աշոտի, իշխան Խլաթի. հիշված է Հիջրեթի 188 (=789) Թվին, ըստ Բելադորի.—տես Խալաթեան, Արաբ. մատ. 76։

— 10. Բագարատ հայ աստղագուշակ. մարգարեացել էր որ կայսրը պիտի հաղթե. մեռավ Բուլգարաց պատերազմում, 791 Թ.—Տէր Սահակեան, Հայ կայսերք, Ա. 328։

— 11. Բագրատ Բագրատունի. երբ Մուշեղ Ռշտունու ժամանակ Ռշտունիքը բաժանվեց, սա ստացավ նրա մի կեսը (Ը դար).—Սուտ-Շապհ. 37։

— 12. Բագարատ կամ Բագրատ (հունարեն կոչված Παγκράτιος), մականունն էր σκάστος (Bailly և Sophocles չունին այսպիսի բառ. Տէր Սահակեան, Ա. 180 համարում է հյ. զգաստ), հայր Յովհաննէս քերականագէտի, որ ապրում էր հունաց կայսեր պալատում և որի խորհրդով Լեոն Ե. հայկազն (813—820) դարձավ պատկերամարտ.—Տէր Սահակեան, Ա. 180։

— 13. Բագարատ Բագրատունի, որդի Աշոտ Մսակերի և եղբայր Դավթի, Սահակի, Մուշեղի, ինչպես նաև Սմբատ Խոստովանողի (տես Աշոտ № 25)։ Փեսայանալով Արծրունեաց՝ տիրեց Սասունի Սիմ լեռան կողմերին և Արաբների Էլ-Մոտասսէմ ամիրապետից ստացավ «պետ իշխանաց» տիտղոսը։ Հոլ ոստիկանից հետո նշանակվեց պատրիկ Հայոց։ Հակառակ էր Յովհաննէս Ովայեցի կաթուղիկոսի ընտրության («833 թ»), որին պաշտոնանկ արեց «841 թ» (սակայն Ովայեցին նույն տարին դարձավ աթոռը)։ Բագարատի խնդրանոք գրեց Նանա ասորին «Մեկնութիւն Յովհաննու Աւետարանին», որ նախ ասորերեն շարադրեց (մոտ 840 թ.) և ապա արաբերենի թարգմանելով ընծայեց իշխանին, որ լավ գիտեր այս լեզուն։ Երբ Ամիթի մեծ եկեղեցին այրվեց (մոտ 848), քաղաքի մեծամեծները դիմեցին Բագարատին և նա 3000 դուկատ և մեծ քանակությամբ փայտ նվիրեց (Տոմաշէկ, Սասուն, էջ 26՝ ըստ Բար-Հեբրէոսի)։ Ձերբակալվեց Աբուսէթ ոստիկանից (մ. 849) և քշվեց Բաղդադ, ուր ուրացավ իր հավատքը (տես Նանայ ասորի, էջ ը—թ)։—Յհ. կթ. իե. Ասող. Բ. ը. Արծր. Բ. ե, դ. Գ. է. Կիր. 43. Վրդ. իը, խգ. Սամ. անեց. 92. Օրբ. լզ.—սեռ. Բագարատայ՝ Յհ. կթ. իե. Ասող. Բ. ը. Արծր. Բ. ե—է. Գ. զ, է. Վրդ. խգ. Օրբ. լզ.—Բագարատայ? Սամ. անեց. 92.—Բագրատայ՝ Նանայ 5.—Զարբ. Թարգմ. 620.—հիշում են Բելազորի (տես Խալաթ. Արաբ. մատ. 64 և 65) և Իբն Մասկավայ (անդ, էջ 77, 97, 122), Մարքվարտ, Բագրատ. 63։

— 14. Բագարատ, իշխան ոմն, որին հիշում է Մաշտոց (մ. «898 թ») կրոնավորը՝ Արաս սպարապետին գրած իր թղթում.—Յհ. կթ. լ։

— 15. Բագարատ Բագրատունի, Վրաց Աշոտ կիւրապաղատի որդին, եղբայր Ատրներսեհի և Գուրամի (ըստ Պատմ. վր. 826—876), պապ Ատրներսեհ թագավորի Վրաց.—Վրդ. խդ.—սեռ. Բա-

գարատայ՝ Վրդ. խբ, խդ.—Բագրատայ՝ Պատմ. վր. ժդ.—Justi 58 ա, Մարքվարտ, Բագր. 107—116։

— 16 Բագարատ, երեց որդի Գրիգոր Բագրատունու, եղբայր Աշոտի և թոռ Աշոտ-Վահանի. գնաց Պոլիս և Ռոմանոս կայսեր կողմից կարգվեց պատրիկ և իշխան Տարոնի. ամուսնացավ կայսեր ազգական Թէոփիլակտոս մագիստրոսի աղջկա հետ (925 թ).—Զամչ. Բ. 726, 817, Justi 58 բ. (հույները կոչում են Παγκράτειος)։ Տէր Սահակեան, Հայ կայսերք, Բ. 478, 482։

— 17. Բագարատ, որդի Աշոտ իշխանի Տարոնի. իր եղբոր՝ Գրիգորի հետ գնաց Պոլիս. երկուսն էլ Նիկեփոր կայսրից պատրիկ կարգվեցին. միացան հույն ապստամբ Վարդ Սկլարոսին և հաղթեցին կայսեր բանակին (977 թ).—Ասող. Գ. ժդ.—Զամչ. Բ. 818, 847, 850։ Դուրեան, Ազգ. պատմ. 355. Տէր Սահակեան, Հայ կայսերք, Բ. 933, 936։

— 18. Բագրատ, անծանոթ ոմն, որ Յովհաննէս Չմշկիկ կայսեր (969—976) հետ հարաբերության մեջ էր.—Ուռհ. 28։

— 19. Բագարատ, որդի Գուրգէնի և թոռն Աշոտ Գ Ողորմածի («954—977 թ»), թագավոր Ափխազաց.—Վրդ. ծ.—սեռ. Բագարատայ՝ Վրդ. ծբ։

— 20. Բագարատ, իշխան Արևընդանի. նվաճվեց Բաղդին իշխանից («1107 թ» ըստ Վրդ. կամ «1117 թ» ըստ Ուռհ.)—Վրդ. կէ. Ուռհ. 338 (Բագրատ ձևով)։

— 21. Բագարատ, Վրաց Աշոտ կիւրապաղատի թոռան թոռան թոռը (7-րդ սերունդ). ամուսնացավ Վասպուրականի Սենեքերիմ (մ.«1025 թ») թագավորի աղջկա հետ.—Վրդ. խդ։

— 22. Բագարատ իշխան, որդի պարոն Սմբատի, որ Անիի պահապանն էր՝ Ալփասլանի արշավանքին (1064 թ).—սեռ. Բագարատայ՝ Սմբ. պտմ. 76։ Զամչ. Բ. 978—980 հակառակն է։

— 23. Բագրատ շաղակրատ, իշխան Կիլիկիայի. առաջնորդեց Խաչակիրների բանակը (ԺԱ դար).—Սիսուան 47 ա։

— 24. Բագարատ Մամիկոնեան. հունարենից թարգմանեց Յովհաննէս Դամասկացու «Ցաղագս գոյի էութեան և պատահման». թվականն անհայտ է. բայց որովհետև Վենետիկի ձեռագիրը՝ ըստ Զարբ. Թարգմ. 579 գրված է 1339 թվին, ուստի Բագարատը այս թվից առաջ է։ Նույն ձեռագիրը կա նաև Tübingen 111, ուր է նաև Սմբատ Գունդստապլի (մ. 1276) մեկնությունը նույն աշխատության։ Ըստ այսմ Բագարատը պիտի լինի Ը դարից (Դամասկացու թվականն է) ուշ և ԺԳ դարից ա-

ռաջ։—Շատ ավելի ուշ է մի երրորդ ձեռագիր՝ ԺՆ դարից (Ձեռ. Դաղեան, 106 բ)։

*ԲԱԳՈՍ, ար. հուն. Βάκχος «Բագոս» աստուծու անունից չի ծագում, այլ ըստ Justi 59բ իրանական է։ Բուն ձևն է Բագաս (տես վարը) և համեմատվում է պափլագոնական Βάγας, սկիւթ. Βάγης անունների հետ։ Ծագում է բագ «Աստուած» արմատից։ Ավելի մերձավոր են ձևով՝ Βαγώσης, Βαγῶος կամ Βαγώας՝ հրեա մի ցեղապետ, մի ներքինի՝ սիրելի Աղեքսանդրի, մի պարսիկ հրամանատար նավի են (Justi 59—60)։ (Իսկ Յայսմաւուրքում հիշված Բագոս նահատակը՝ ժամանակակից Մաքսիմիանոս կայսեր, ի հարկե հույն ձևից է)։

— Բագոս Մամիկոնեան, կրտսեր եղբայր Վասակ Մամիկոնեան սպարապետի. քաջ, բայց խենթուկ. հաղթեց Պարսից, բայց փղի տակ ճմլվելով մեռավ (Արշակ Բ-ի «350—368 թ» ժամանակ).—Բուզ. Դ. իբ հիշված է Բագոս, սեռ. Բագոսի կամ Բագասի և բցռ. ի Բագոսէ ձևերով։

ԲԱԳՈՒԱՍ, ար. ծագումը անհայտ. բայց հմմտ. Բագոս։

— Բագուաս, զորավար Տիգրան մեծի, գործակից Միհրանի, որ տես վարը.—Զամչ. Ա. 222 կոչում է Բակուր։

*ԲԱԳՐԱՏՈՒԿ, ար. փաղաքշական ձևն է Բագարատի։

— Բագրատուկ (գրված հուն. Παγκρατούκας), որդի Մանուէլ պրոտոսպաթարի. իր երկու եղբայրների՝ Փոքրիկի և Դուլթակի հետ, Միջագետքում տիրել էին մի մի բերդի, որ հանձնեցին Լևոն Զ կայսեր՝ 890 թ. և ստացան նրանից մեծամեծ պարգևներ.—Justi 59 բ, Տէր Սահակեան, Հայ կայսերք, Ա. 362, 379։

*ԲԱԴԱԼ, ար.< արաբ. بدل badal (թուրքական հնչումով bedel) «փոխարինն» բառից։ Մինչև այժմ էլ գյուղերում գործածական է փոխ ու բադալ դարձվածքը՝ որակելու համար որդուն, որ փոխարինում է հորը։ Հիշատակված է ԺԸ դարից. այսպես՝ 1739 թ. (Սիւրմէեան, Պատմ. Հալէպի ազգ. գերեզմ. 38 ա, Նաև Ձեռ. Թաւր. 37 բ), երկուսն էլ Պադալ ձևով։ Գործածական է նաև այժմ։ Սրանից է Բադալեան (կամ Պէտէլեան) ազգանունը։

*ԲԱԴԱՄ, ար.< պրս. بادام bādam «նուշ» բառից. երևի գործածական է եղել վերջին դարերում, որից և Բադամեան ազգանունը (Ղարաբաղ)։ Հմմտ. Նուշուեար։

*ԲԱԴՐ, ար.< արաբ. بدر badr «լրացյալ լուսին» բառից. սրանից է նաև Badrxan անունը. հայտնի է օր. Բադրխան բէգ, նշանավոր քուրդ ցեղապետ՝ Վանի շրջանում (ԺԹ դար)։

—1. Բադր կամ Բադր-ալ-Ջամալի-Ամիր-ալ-Ջույուշ (արաբ. بدر الجمالی امیو الجیوش «լրացյալ լուսին գեղեցկության, զորագլուխ»), Եգիպտոսի Մուսթանզիր խալիֆայի հայազգի վեզիրը, սիրող քրիստոնէից. շատ հայեր գաղթեցրեց Կիլիկիայից Եգիպտոս. նորոգել կամ շինել տվեց Եգիպտոսի հայոց վանքերը։ Իր հրամանով Ալեքսանդրիայի Կիւրեղ պատրիարքը ժողով գումարեց (1086), ուր ներկա էր նաև Հայոց Գրիգոր արքեպիսկոպոսը և միասին կարգավորեցին հայոց ու ղպտիների միջև եղած վեճերը։ Կառավարեց Եգիպտոսը 20 տարի և մեռավ 1094 թ.—տես Ալիշան՝ Շնորհ. էջ 169 և Արուսահլ հայ, Վեննետ. 1895, էջ 15, 36, 38—41, 67։

—2. Բադրխան, հիշված 1636 թ. (Կարապետ եպս.՝ Դոփեանք, էջ 136)։

— Բատր ոմն, հիշված անթվական մի հիշատակարանում, որ գրված է 1311 թվից հետո.—Ջեռ. Թաւր. 74 ա։

ԲԱԶ, ար. Խորենացու հնարած անուններից է, հավանաբար բազէ թռչունի անունից։ Շատ ավելի ուշ իրոք կա Բազայ անունը, որ տես վարը։

— Բազ, որդի Մանաւազի և թոռն Հայկ նահապետի. նրանից է առաջացել Բզնունեաց նախարարությունը.—Խոր. Ա. ժբ. Ուխտ. Բ. ժզ. Սամ. անեց. 42.—Մխն. համդ. 3.—բց. ի Բազայ՝ Սամ. անեց. 42։

†ԲԱԶԱՅ, ար. < հյ. բազայ կամ բազէ թռչունի անունից, որ իրանական ծագում ունի. կա նաև պրս. Bazē որ Ատրպատականի շահապն էր (Փարպ.)։ Այս թռչունի անունը իբր անձնանուն՝ համտ. հյ. Շահէն, թրք. Qara-toγan (Justi 156 բ. բուն նշ. «սև բազէ»), թթր. طغرل Tuġril «Տուղրիլ» (բուն նշ. «որսական բազէ» Գէորգ դպիր, Բառ. պրս. 44 բ), և սրանից էլ Էրթողրուլ՝ Օսմանցոց նախահայրը, որ բուն նշ. «արու որսական բազէ»։ Մեր մեջ Բազայ գործածված է ԺԴ դարում, շատանում է ԺԷ դարում (երբ թե արական է և թե իգական), կա նաև ԺԸ դարում, իսկ այժմ խափանված է։

— 1. Բազայ (սեռ. Բազայի), հանգուցյալ որդի Աւետիս քահանայի, որ Յովհաննէս գրչին գրել տվեց մի Աւետարան, Հարք գավառի Դոնեվանք գյուղում, 1316 թ.—Ջեռ. Վենետ. Ա. 465։

— 2. Բազայ (սեռ. Բազի), հայր Մարտիրոսի, որ դրամով օժանդակեց Յովանէս գրչին արտագրելու Աւետարանը, 1330 թ.—Ջեռ. Թաւր. 2 բ։

— Բազայ անունը հիշված է նաև 1575 թ. սեռ. Բազին ձևով՝ ար. (Թորոս աղբար, Բ. 410), 1605 թ. հոգով Բազէն և սեռ. Բազին ձևերով՝ ար. (Ձեռ. Վասպ. 818, 820), 1634 թ. սեռ. Բազին՝ իգ. (անդ 884), 1640 թ. հոգով Բազէն, ար. (անդ 898), 1651 թ. Բազէն, ար. (անդ 200), տռանց Թվականի, ար. Բազէն՝ Ձեռ. Վասպ. 160, 440, սեռ. Բազին՝ ար. անդ 682, իգ. անդ 584, և վերջապես 1742 թ. սեռ. Բազին (Հուշաք. 52, Աղթամարի Նիկողայոս կաթուղիկոսի հայրը)։

ԲԱԶԻԿ, ար. հավանաբար փաղաքշականն է Բազայ կամ Բազուճի անվան, որոնք տես անդ։ Մի անգամ հիշված է Պազէկ ձևով՝ 1655 թ. (Ձեռ. Նոր-Բայազ. 42 բ)։

ԲԱԶԿՕ, իգ. անշուշտ կոչական ձևն է, որի սեռականն էլ կա Բազկին. բուն ձևը անորոշ և ծագումն էլ անհայտ։ Հիշված է 1508 թ. սեռ. Բազկէն ձևով (Ձեռ. Վասպ. 634) և 1785 թ. Բազկօն ձևով (անդ 264)։

ԲԱԶՈՒ, ար. ծագումն անհայտ. մի անգամ ունինք ԺԴ դար՝

— Բազու, որդի պարոն Լևոնի Բազունենց, գունդստաբլ Հայոց, 1368 թ.—Սխուլան 532 ա։

†ԲԱԶՈՒԿ, ար. < հյ. բազուկ «թև» բառից. համտ. սրա համազորները՝ Թաթուլ և Ձեռէս. պատահական նմանություն ունի Բազուկ՝ Թագավոր Օսերի (Վրաց աղբ. Ա. 156)։—Խորենացու հնարած անուններից է։

— Բազուկ, նահապետ Հայկազանց, հաջորդ Արբունի. (ըստ Չամչ. Ա. 92 հաջորդ Պերճ Բ-ի. գահակալեց Ն.Ք. 1035—985 թ. այն է 50 տարի).—Խոր. Ա. ժթ. Ցհ. կթ. բ. Մխ. անեց. գ. Կղկնտ. Ա. ժե. Մագ. Թղ. ժթ (համարում է «Բազուկ Բզնունեաց նահապետ», որով նույնացնում է Բազի հետ). Սամ. անեց. 45. Մխ. այրիվ. 18, 53. Մին. համդ. 10։

ԲԱԶՈՒՆԻ, ար. ցեղանուն չէ, թեև ունի -ունի վերջավորությունը. ծագումն անհայտ։

— 1. Փազունի տես Վասակ (Լարխայի)։

— 2. Բազունի, իշխան Կիլիկիայի. Կոստանդին Ա-ի և Օշին Գանձակեցու հետ օգնել է Առաջին Խաչակիրներին (1098 թ).—Ուռհ. 259, Սիսուան 46 բ, 47 բ (Ալիշան հերքում է Չամչյանի այն կարծիքը, թե Բազունին եղբայրն էր Օշինի. բայց Չամչ. Գ. 18, 19 այդպիսի կարծիք չէ հայտնած)։

— 3. Բազունի (սեռ. Բազունէ ձևով), որդի պարոն Լևոնի Բազունեանց, որ Սիմեոն դրչին գրել տվեց մի ընտիր Աւետա-

րան (տեղն ու թվականը անհայտ են, բայց անշուշտ Կիլիկիայում և ԺԱ—ԺԲ դարերին).—Թորոս աղբար, Բ. 349, Սիսուան 531 բ։

†ԲԱԹԻԿ (իմա ԲԱԴԻԿ), ար.< հյ. բադ բառի փաղաքշական ձևից. հնչվում է և գրվում Բաքիկ, որից էլ Բաքիկեանց ազգանունը։ Հիշված է 1724 թվին, Երևանի քաջերից մեկը՝ Խաքունի որդի Բաքիկ (Շահազիզ, Հին Երևանը, էջ 106)։—Նկատելի է որ Ամիրտովլաթն էլ իր Անգիտաց անպէտում, էջ 106, բադ (թռչունը) գրում է բաք։—Աբր. երև. 17 նույնը տպ. Բութիկ։

*ԲԱԹՄԱՆ, ար.< թրք. պրս. باطمان batman «ծանրության չափ, որ ըստ երկրի զանազանվում է 12 փութից մինչև 7 փութ (տես Будагов, Срав. Слов. 231)։ Այս բառից կազմված է թրք. batman-qələj տիտղոսը, որով նշանակվում է այն քաջ և հզոր անձը, որ մի բաթման ծանրությամբ թուրով է կռվում։ Կրճատ ձևով ասվում է բաքմաճ, որից՝

— Պաքմաճ Կասմցի, պանդուխտ էր Պոլսում և հայրենիք էր վերադառնում։ Որպեսզի ճանապարհին շատ չնեղեն իրեն, հագել էր տաճկի շորեր։ Նավում թուրքերը ճանաչում են նրան և Իուսկիւտարից յետ դարձնելով՝ մեծ ամբոխով բերում են վեզիրի մոտ։ Տեսնելով նրա գեղեցիկ հասակը, վեզիրը առաջարկում է մահմեդական դառնալ և երբ չի ընդունում, հրամայում է դահիճներին, ծեծել նրան։ Մահու չափ ծեծելուց հետո, ուղարկում է մուֆտիի մոտ, որպեսզի թերևս նա կարողանա համոզել նրան։ Մուֆտին, որ Բահայի անունով մի դաժանաբարո մարդ էր, չարաչար տանջելուց հետո, նույնպես չկարողացավ հավատքից հանել նրան։ Վեզիրը պահանջեց գլխատել, բայց մուֆտին օրինական չհամարելով, ուղարկեց նրան պատերազմական նավերը, երկաթե կապանքների տակ թիավարելու համար։ Մի քանի օրից նավը պատերազմի գնաց. և Բաթմանը անտանելի չարչարանքներով թիավարում ու մասնակցում էր պատերազմին։ Պատերազմից ողջ վերադարձավ։ Վեզիրը մեռած էր։ Ծնողները դիմեցին ծովակալ Մուրադ փաշային։ Բայց փաշան փոխանակ կարեկցելու, ավելի չարչարեց նրան, գերիների հետ բանտարկելով և ամեն տեսակ նեղության ենթարկելով։ Վերջապես ծնողները բոլոր մեծ գալով ամեն տեղ, եկեղեցիներում դրամ հավաքեցին և կաշառքով կամ փրկանքով ազատեցին նրան (1655 թ).—Երեմ. չէլ. օրագր. 65—67։

*ԲԱԼԱ, ար.< թրք. بالا bala «ձագուկ» բառից. հմմտ. Ձագիկ և Նաւրի համազորները։ Ավանդված է ԺԵ դարից։ Սրանից է

Բալայեան ազգանունը (Ղարաբաղ)։ Սրանից են կազմված նաև Բալախան և Բալաբէգ անունները։ Այժմ էլ Ղարաբաղում գործածական է Բալա անունը, բայց համարվում է Բալասան անվան կրճատ ձևը։

— Պալա հիշված է Լեհահայոց մեջ 1603 թ.—Ձեռ. Լվով (ՀԱ 1936, 506)։

*ԲԱԼԱԲԱՆ, ար. < Թրք. بالابان balaban «մեծ, խոշոր» բառից. այս անունով կա մի մահմեդական սուլթան Հնդկաստանում՝ ԺԴ դար (Իբն-ի-Բատուտա Գ. 170)։ Թեև չէ ավանդված, բայց գործածված պիտի լինի նաև Հայոց մեջ, ըստ որում ունինք Բալաբանեան ազգանունը (Նոր-Նախիջևան)։

*ԲԱԼԱԲԷԳ, ար. < Թրք. بالا bala «փոքր» + بك beg «իշխան» բառերից. հնից չէ ավանդված, բայց գործածական է այժմ (հաղվագյուտ)։

*ԲԱԼԱԽԱՆ, ար. < Թրք. بالا bala «փոքր» + պրս. خان xān «իշխան» բառերից. անշուշտ իբր անձնանուն գործածական էր Թուրքերի մեջ, ըստ որում ունինք Բալախանի արվարձանը Բագվում։ Մեր մեջ հիշատակված է 1617 թ. (Կամենից 174)։

*ԲԱԼԱԽԱՆՈՒՄ, իգ. < Թրք. بالا bala «փոքրիկ» + خانم xanum «տիկին» բառերից. հմմտ. հյ. Փոքրտիկին։ Գործածական է այժմ էլ Ղարաբաղի գյուղերում։

*ԲԱԼԱՄ, ար. < Թրք. بالام balam «ձագուկս, որդեակս» բառից. իբրև անձնանուն հիշված է մի անգամ՝ 1655 թ. (Ձեռ. Վենետ. Ա. 702)։

†ԲԱԼԱՍ, որից ԲԱԼԱՍԲԷԳ, ար. տե՛ս Բալասան։

†ԲԱԼԱՍԱՆ, ար. < արաբ. بلسان balasān «անուշահոտ ծաղիկը և նրանից պատրաստված եղը, որ մեռոնի մեջ էլ է գործածվում»։ Թվում է թե իբրև անձնանուն գործածությունը հատկապես վերջին հանգամանքի պատճառով է և ըստ այսմ հատուկ է միայն Հայոց, թեև բառը օտար ծագում ունի։ Հմմտ. սակայն Թէոդորոս Բալսամոն՝ քրիստոնյա մատենագիր հույն։ Մեր մեջ հիշատակված է ԺԷ դարից. հնագույն վկայություններն են՝ Պալասան 1626 թ. (Ձեռ. Դաղեան, Բ. 32 բ), Պալասան 1651 թ. (Ձեռ. Վենետ. Ա. 218), Բալասան սարկավագ 1658 թ. (Ձեռ. Թաւր. 13 բ)։ Գործածական է այժմ էլ թե՛ արական և թե իգական։ Սրա կրճատ և փաղաքշական ձևերն են Բալա, Բալաս, որոնցից էլ ունինք Բալասանեան (Պալասանեան), Բալասեան, Բալասբէգեան, Բալայեան ազգանունները։

*ԲԱԼԱՔ, ար. < արևել. Թրք. بالك bālāk «խատուտիկ գույնով (հատկապես եղ կամ կով)»։ Իբրև անձնանուն գործածական է եղել Թուրքերի մեջ. օր. Բիլէք բէկ «Իշխան գաւառիս մերոյ» (Նարեկ գյուղ Վն), 1415 թ. (Բարխուտարեանց, Աղուանից երկ. 247)։ Գործածված պիտի լինի նաև մեր մեջ, որից և ունինք Պալաքեան ազգանունը։

*ԲԱԼԻ, ար. Օղուլբալի անունից, որ նշ. «ձագի մեղր»։ Կա և Թուրքերի մեջ. օր. Պալի փաշա, որի անունով թաղ կա Պոլսում։ Գործածվել է սկսած ԺԶ դարից, ընդհանրապես արևմտահայ տառադարձությամբ գրված Պալի, որի սեռականն էլ լինում է Պալէ։ Հնագույն վկայություններն են՝ 1553 թ. (Տաշեան, Ցուց. 532), 1576 թ. (Նշխ. մատ. էջ 45), 1588 թ. (սեռ. Պալէ՝ Ձեռ. Հալէպի, Ա. 233 ա), 1603 թ. (սեռ. Պալէ՝ REA 7, 151), 1652? թ. (Ձեռ. Վենետ. Ա. 762), 1656 թ. (Ձեռ. Վենետ. Բ. 954), 1657 թ. (սեռ. Պալէ՝ Տաշեան, Ցուց. 355բ), 1666 թ. (Ձեռ. Հալէպի, Բ. 8 և Ձեռ. Սեբ.=ՀԱ 1927, 37), 1670 թ. (Ձեռ. Վասպ. 938)։—Սրանից են Բալիեան, Պալեան, Պալենց ազգանունները։

— 1. Պալի, որդի Փարսադանի, Դաւիթ բէգի զորավարներից. ընկավ Բարկուշատի խանի դեմ վարած պատերազմում, բայց վերքը բռնած՝ սողալով հասավ Հալիձոր, ուր բուժվեց և առողջացավ (1725).—Ջամչ. Գ. 791—2, Սխական 256, 277։

— 2. Պալի Կարնեցի, նոր վկա. Կարնոյ դաշտի Ջինիզ գյուղի Մելքոն քահանայի որդին էր. դատարկ պատճառով ընկավ մահմեդականների ձեռքը, որոնք նրա գեղեցկությունից և քաջ երիտասարդությունից հրապուրված՝ ստիպեցին ուրանալ իր հավատքը։ Հակառակ բոլոր չարչարանքներին, չուրացավ և նահատակվեց շուրջ «1783 թ»։—Նոր վկ. 573, 603—4, Ազգապ. էջ 3621։

*ԲԱԼԻԿ, ար. < կամ Բալա «ձագուկ» բառի փաղաքշականն է և կամ նախորդ Բալի անվան։ Գործածված է Բալիգ ձևով՝ 1720 ական թվերին (Աբր. երև. էջ 76) և սեռ. Պալիկան ձևով՝ Ձեռ. Վենետ. Ա. 418։

*ԲԱԼԻՋԱՆ, ար. նախորդ Բալի անվան փաղաքշականն է՝ ջան ձևով։ Հիշված է մի անգամ՝ անթվական մի հիշատակարանում, ԺԷ դար (Ձեռ. Մաղ. 7)։

*ԲԱԼԼԱՐ, ար. < Թրք. بال bal «մեղր» բառի հոգնակի ballar ձևից։ Առանձին գործածված չեմ գտնում, բայց սրանից է Պալլարեան ազգանունը (Կարին)։ Ունինք սակայն՝ մի լ-ով

— Պալարաղա, որդի Մուրատի և եղբայր Վրթանէս քահանայի, որ Թովմա աբեղային գրել տվեց մի Ավետարան, 1456 թ. —Ձեռ. Դադեան, Բ. 31 ա։

*ԲԱԼՈՒՄ, ար. < Թրք. بالم baləm «մեղրս, իմ մեղրը» ձևից, ինչպես ունինք Շահում։ Հիշված է մի անգամ Մելիք Պալում, 1749 թ. (Ջամչ. Գ. 842)։

*ԲԱԼՉԻ, ար. < արևել. Թրք. بالچی balči «մեղր ծախող», որ է տճկ. بالجی balǰə. Հիշված է մի անգամ անթվական մի հիշատակարանում (Ձեռ. Դադեան, Բ. 31 ա)։

ԲԱԽԴԱՆԷՐ, ար. ծագումը անհայտ։

— Բախդանէր, դարբին. Արցախում աշխատում էր այն վկայարանի շինության վրա, ուր ամփոփվեցին Մխիթարի բերած մասունքները Երուսաղէմից (Է դար).—Կղկնտ. Բ. ծ։

*ԲԱԽՇԱՅԻՇ, ար. < պրս. بخشایش baxšāyiš «պարգև, ողորմություն Աստուծոյ»։ Գործածված է ԺԵ—ԺԶ դարերում. ապա խափանված. գրված է նաև՝

— 1. Բաղշայիս, Ամկու գյուղի Ստեփաննոս քահանայի չհաս կնոջ որդին էր. ապրում էր անպարկեշտ կյանքով. սպանեց իր ընկեր Վեգենային (1395—1438 թվերի միջև).—Մեծոփ. 113 (սխալ տպ. Բաղշաշիշ)։

— 2. Բախշայիշ, եղբայր Յովհաննէս քահանայի, որ Վանում, Կարապետ քահանային գրել տվեց մի Ավետարան, 1422 թ.—Նոտարք 69։

— 3. Բաղշաիշ, որդի Ամիրշահի և հանգուցյալ եղբայր Ղազար գրչի, որ Լիմում օրինակեց մի Յայսմաւուրք՝ 1457 թ.—Ձեռ. Թաւր. 103 ա։

— 4. Բախշայիս, մորեղբայր տանուտեր խոջա Խդրշահի, որ Վանում, Ազարիա երեցին գրել տվեց մի Ավետարան, 1484 թ.—Ձեռ. Վասպ. 496։

— 5. Բաշխայիշ, որդի Սպանդիարի և երեց եղբայր Մկրտիչ քահանայի, որ Սալամաստի Փագաջուկ գյուղում, Ահարոն գրչին գրել տվեց մի Ավետարան, 1557 թ.—Ձեռ. Վինետ. Ա. 529։

— Անթվական հիշատակությամբ են Բախշայիս (Ձեռ. Թաւր. 66 բ՝ 1450 թվից ավելի ուշ), Բաղշայիսն (Ձեռ. Վասպ. 315՝ տպ. Բաղշայիւլն?)։

*ԲԱԽՇԻ, ար. և իգ. < պրս. بخشش baxšiš «նվեր» բառից, ճիշտ ինչպես ունինք հյ. Պարգև ար. և Ընծայ իգ. անձնանունները։ Գործածվել է ԺԶ դարից սկսած և այժմ էլ գործածական է

էբրև արական անուն։ Հնագույն հիշատակություններն են՝ Պաշխի, ար. 1526 թ. (Ձեռ. Վենետ. Ա. 538), Պաշխի, ար. 1554 թ. (Ձեռ. Հալէպի, Ա. 324 բ), Պաղշէ, ար. 1564 թ. (Տաշեան, Ցուց. 848 բ՝ երկու անգամ սեռ. Պաղշէ ձեռվ)։ Անհայտ թվականով են Բաղշի, իգ. (Ձեռ. Վասպ. 125, 144), Բաշխի, ար. (Bodleian 197), սեռ. Բախշօխին՝ Ձեռ. Վասպ. 419 (ուղ. Բախշօ, երկրորդ խ՝ ավելորդ)։ Հարազատ ձևը Բաշխիս, ար. հիշված է 1666 թ. (Ձեռ. Սանաս. 5 բ)։

+ԲԱԽՏ, սեռն անհայտ. < հյ. բախտ բառից. հիշված է մի անգամ 1656 թ. (Երեմ. չէլ. օրագր. 211)։

+ԲԱԽՏԱՂԷԿ, իգ. < հյ. բախտ+աղեկ բառերից. այն է «որի բախտը լավ է կամ որ լավ բախտ ունի»։ Գտնում եմ մի անգամ գործածված՝

— Բախտաղեկ, կին Յովհաննէս երեցի. միասին շինեցին Կարմիր վանքի մոտ Մաւրակ գյուղի եկեղեցին (ԺԵ կամ ԺԶ դարերում).—Շիրակ 16։

*ԲԱԽՏԱՄ, ար. ըստ իս < պրս. باخدام bā-Xudām «իմ Աստուծու հետ» ձևից. հմմտ. Bāxudā Մուխրանի իշխանը, որ եղավ թագավոր Վրաց՝ Շահնավազ անունով, 1658 թ. (Justi 62 ա)։ Սրանից է Բախտամեան ազգանունը։

— Մելիք Բախտամ, որդի Մելիք-Արամի. իշխան Դիզակի, հաջորդեց մելիք Եսայուն՝ նրա եղերական մահից հետո (1781 թ)։ Մյուս մելիքների հետ մասնակցում էր Հայաստանի անկախության գործին և այն բանակցությանց, որ վարում էին Ռուսպետության հետ։ Սրա համար էլ ձերբակալվեց Շուշու Իբրահիմ խանի ձեռքով և իբրև քաղաքական հանցավոր բանտարկվեց Արդաբիլի բերդում։ 10 տարի այդտեղ մնալուց հետո, Աղա-Մահմադ-խանը ներում շնորհեց նրան։ Մելիք Բախտամը ուխտի գնաց Էջմիածին, ապա դարձավ Ղարաբաղ։ Իբրահիմ խանը կեղծ բարեկամացավ նրա հետ և ճաշի վրա թունավորելով սպանեց։—Րաֆֆի, Խամսայի մելիքութ. 133, 214—216։ Առաքել վրդ. Դիզակի մելիքութ. 62—73։ Ձեռ. Դադեան, Բ. 19 բ, 22 ա։

*ԲԱԽՏԻԱՐ, ար. < պրս. Բախտիար անվան փաղաքշական ձևն է, որ մի անգամ գտնում եմ գործածված՝ 1785 թ. (Ձեռ. Վասպ. էջ 264)։

+ԲԱԽՏԱՒՈՐ, իգ. < հյ. բախտաւոր բառից, որ իրանական ծագում ունի։ Մի անգամ գործածված է ԺԲ դարում։ Իրանյանց

մեջ էլ կա بختاور Baxtāver անունը. ինչ. Baxtāver խան, Մողոլ սուլթան Աւրէնգզեբի մոտ, մ. 1685 թ. (Justi 61 բ)։

— Բախտաւոր, կին Սարգիս Երևանցու, որ օժանդակեց Հաւուցթառի եկեղեցու շինության, 1177 թ.—Շահազիզ, Հին Երևանը, էջ 76 (տպ. Բախտուււտ)։

*ԲԱԽՏԻԱՐ, ար. < պրս. بختیار Baxtiyār անունից, որ բուն նշանակում է «բախտավոր»։ Justi 61 բ հիշում է այս անունով 11 անձ՝ 946—1610 թվերից։ Մեր մեջ հիշվում է ԺԵ—ԺԷ դար։

— 1. Բախթիար, հայր Շահամիրի, որ Սարգիս վարդապետին գրել տվեց մի Աւետարան՝ 1487 թ.—Ձեռ. Մեր.=ՀԱ 1925, 264։

— 2. Բախշիար մահտեսի, հայր Ուռհայեցի ոսկերիչ մահտեսի Մկրտչի, որ Հալէպում, Ղազար քահանային գրել տվեց մի Ճաշոց, 1636 թ.—Ձեռ. Հալէպի, Ա. 237 ա։

— Առանց թվականի են հիշված Բախտիար (Հռումոսի մի արձանագրության մեջ, Շիրակ 21 բ), Բաղդիար (Ձեռ. Մեր.=ՀԱ 375 և Ձեռ. Վասպ. 372), Բաղտիար (Ձեռ. Վասպ. 394), Պախտիար 1657 թ. Երեմ. չէլ. օրագր. 240։

*ԲԱԽՏԻՇԱՏ, ար. < պրս. بخت شاد baxt-i-šād «ուրախ բախտ». հիշված է մի անգամ 1588 թվին (Տաշեան, Ցուց. 736 բ)։

*ԲԱԿ, ար. կա պրս. Bākōi անունը, որի հետ կապել դժվարանում է Հիւբշ. 31։

— Բակ, քաջ զորավար, որ մասնակցեց Վարդանանց պատերազմին և ապավինելով ապաստանեց մի բերդում և պարիսպներից ծաղրում էր Պարսից զորագլխին։ 700 հոգով բերդից քաշվեց մի ուրիշ տեղ՝ առանց բռնվելու։—Եղիշ. 95։ Սրա շարունակությունը գրված է մի Աւետարանի հիշատակարանում. իբր թե Բակը քաշվել է Արցախի Խոխանաբերդը և այնտեղ իր սերունդը շարունակվել է մինչև Ջաջուռ իշխանը, որի թոռը՝ Վանենի՝ գրել տվեց մի Աւետարան և նվիրեց Հաւապտուկ վանքին, 1232 թ.—Բարխուտարեանց, Աղուանից երկ. 235, Յովսէփեան, Խաղբակեանք 27—28 (իբր նախահայր Հաղբակեան տոհմի)։

*ԲԱԿՈՒՐ, ար. < պրս. bag-pūr «աստվածորդի» ձևից, որ ապա արաբական ձևով դարձավ فغفور faġfūr (Հիւբշ. 49)։ Այս անունն էին կրում Չինաց թագավորները հնում. հմմտ. «Արքուն ոմն Ճենբակուր, որպէս ասի ի նոցա լեզուն, պատիւ թագաւորութեան» Խոր. Բ. ձա.—«Ճենաստան... որոյ թագաւոր Ճենբակուր կոչի» Խոր. աշխ. 616։ Հմմտ. նաև արաբ. بكور Bakhūr, որ կամուս, Ա. 774 հիշված է իբրև հնդիկ թագավորի անուն։ Համա-

պատասխանում է Պարթևաց Πάκορος անունին. հմմտ. Πάκορος որդի Պարթևաց Որոդէս թագավորի, ամուսնացավ Հայոց Արտավազդ Ա թագավորի դստեր հետ (մ. 38), Paqūr թագավոր Ոսրոհայի (34—29), Πάκορος թագավոր Ատրպատականի (51), Pacorus թագավոր Պարթևաց (77—83) ևն։ Բայց այս բոլորը ունին p, որ հայտնի չէ թե ինչպե՞ս դարձել է հյ. բ (Justi 238—9)։ Հայերենից է փոխառյալ վրաց. ბაკურ կամ ბაკარ արական անձնանունը. ինչ. Բակուր թագավոր Վրաց 231—246 թ. (Mourier, Hist. de Géorgie, էջ 94, Մխ. այբբ. 22), Բակար՝ թագավոր Վրաց 342—364 ևն։ Թերևս սրանից է նաև չերքեզ. Bakuġ արական անձնանունը։ Հետաքրքիր է հիշել որ նաև ռուս. բուլգար. фарфор, լեհ. farfura «հախճապակի» բառը մեր Բակուր անվան հետ նույն ծագումն ունի։ Աղբյուրն է օսմ. faġfur, որ նշանակում է նախ «Չինաց կայսր», ապա «Չինաստանի գավառներից մեկը, որ իր հախճապակիներով նշանավոր էր» և վերջապես նույն իմաստը ընդհանրանալով «հախճապակի, ամանեղեն» (Berneker, Slavisches etym. Wört. 1924, էջ 279)։—Բակուր անունը գործածված է մեր մեջ Ն.Ք. Ա դարից մինչև ԺԲ դար (երբև արական անվան օրինակ հիշված է Անան. քեր. 138)։ Ապա խափանվել է և այժմ գոյություն չունի։

— 1. Բակուր զորավար Մեծն Տիգրանի. Միհրանի հետ արշավեց Կապադովկիա, որպեսզի իր գահի վրա վերահաստատի Միհրդատի որդի Արիարաթ Թ-ին, որին վանել էր Սիլլա զորավարը (85).—Չամչ. Ա. 222, Justi 238 բ։

— 2. Բակուր նահապետ Սիւնեաց, ժամանակակից Տիրան Ա (131—152) թագավորի.—Խոր. Բ. կզ.—սեռ. Բակրոյ՝ Խոր. Բ. կզ։

— 3. Բակուր, եղբայր Վաղարշ Գ թագավորի Պարթևաց. գահազուրկ արեց Սոյեմին և նստեց Հայոց գահը, մինչև որ Հռովմայեցիք զինու զորությամբ վտարեցին նրան։ Ըստ Լէօ 475—6 գահակալել է 162—4 թ։

— 4. Բակուր, բդեշխ Աղձնեաց. ապստամբեց Խոսրով Բ թագավորի («330—339 թ») դեմ և նվաճվեց վեց հայ նախարարների միացյալ բանակի կողմից. (այսպես ըստ Բուզ. իսկ ըստ Խորենացու՝ նվաճողն է Մանաճիհր Ռշտունի, որի անունն էլ չկա հիշյալ վեց նախարարների թվում).—Բուզ. Գ. թ. Խոր. Գ. դ, է. Ասող. Բ. ա. Վրդ. ի.—սեռ. Բակրոյ՝ Խոր. Գ. է.—Բակուրայ՝ Բուզ. Գ. թ (ցանկում). Վրդ. խ։

— 5. Բակուր, զորավար Մեծն Թէոդոսի կայսեր Հունաց (379—395), ἕλκων μὲν ἐξ 'Αρμενίας τὸ γένος «ծագեալ ազգաւ ի Հայաստանէ», քաջ ռազմագետ։ Մեծն Թէոդոսը իր հետ տարավ նրան Գալլիա՝ ապստամբ Եւգենի դեմ կռվելու համար։ Թէոդոս կայսեր բանակը պարտվում էր, երբ Բակուր առաջ խիզախելով՝ փախցրեց թշնամուն, բայց ինքն էլ ընկավ քաջաբար.—Զոսիմոս Դ. 53, Սոկր. Ե. 25, Փ. Սոկր. ՃԺԲ։

— 6. Բակուր Սիւնի, եղբայր Բարկէնի. մին այն նախարարներից, որ Յազկերտ Բ բանտարկեց Պարսկաստանում «452 թ». մասնակցեց Վահանի ապստամբության.—Եղիշ. 150. Փարպ. ԽԷ. Օրբ. ԺԷ։ (Ըստ Սիսական, էջ 549 (ցանկում) այս Բակուրն ու Բարկէնը Ուրացեալ Վասակի եղբորորդիքն են)։

— 7. Բակուր, բդեշխ Հայոց. ամուսնացել էր Վրաց Վախթանգ Գուրգասար թագավորի քրոջ՝ Խորանձէի հետ (Ե դարի վերջը).—սեռ. Բակուրայ՝ Գամ. վր. ԺԴ.—Վրաց աղբ. Ա. 192։

— 8. Բակուր, նահապետ Կաղանկատուաց, ժամանակակից Աղուանից Վաչագան Գ թագավորի. մասնակցեց Աղուէնի ժողովին (Զ դար).—Կղկնտ. Ա. ԻԴ. Կանոն. 192, 197։

— 9. Բակուր իշխան, ազգական Խլաթի Սարուանդ իշխանի, տեր Բաղլիս, Կաֆոնդոր, Մատէն, Հէյզան, Տանզա, Բետասա և Արզն ամրոցների։ Դաժան մարդ էր։ Ընդունեց իսլամական կրոնը. մինչդեռ նախապես դաշնակից Հունաց՝ կռվել էր Արաբների դեմ՝ 638 թ.—Տոմաշէկ, Սասուն, էջ 21—23 ըստ Վակիդի արաբ պատմիչի.—Խալաթեան, Արաբ. մատ. 5 կոչում է Բուղուր։

— 10. Բակուր, երկաբնակ. եպիսկոպոս եղավ Գարդմանի և կոչվեց Ներսէս. ընտրվեց Աղուանից կաթուղիկոս (Է/Ը դար).—Կղկնտ. Գ. գ. Կիր. Ը. Վրդ. ԼԸ. Օրբ. Ծա, ԿԸ. Օրբ. հկճռ. ԺԲ.—սեռ. Բակուրայ՝ Կղկնտ. Գ. գ, թ.—տես և Ներսէս։

— 11. Բակուր, իշխան Տարօնի (ԺԲ դար).—Տարօն. Բ. § 14։

*ԲԱԿՈՒՐԱՆ, ար. անշուշտ ծագմամբ նույն է նախորդի հետ։

— 1. Բակուրան, հայր պարոն Գրիգոր իշխանի Անւոյ, Կարուց, Ուխտեաց և Կարնոյ (1064—1084).—սեռ. Բակուրանայ՝ Սմբ. պատ. 76, Այրարատ 84, Վրաց աղբ. Ա. 216, 220—221։

— 2. Բակուրան իշխան. Ալէքս կայսեր սիրելին էր. Վարազ իշխանի հետ միասին պատերազմի ուղարկվեց Թուրքերի դեմ. քաջությամբ կռվեցին և ընկան մեռան երկուսն էլ (1085).—Զամչ. Գ. 9։

— 3. Բակուրան, իշխան Պապեռոնի, որդի նույն բերդի տեր Սմբատի և մորեղբայր Լևոն Բ թագավորի։ Երբ Սմբատը սպանվեց Մսիսի պատերազմում (1151 թ), Բակուրանը ժառանգեց իր հոր իշխանությունը։ Իր մոտ մեծացան Ստեփանէի որդիները՝ Ռուբէն Բ և Լևոն Բ, որովհետև Բակուրանի քույրը՝ Ռիթա, կինն էր Ստեփանէի.—Վահր. ոտ. 211 (հրտր. Շահն. Բագուրան, իսկ հրտր. Կալկաթա՝ Բակուրան). Սմբ. պտմ. 99, 100, 102, 104. Սամ. անեց. 138. Պտմ. կիլ. 208. Պտմ. ռուբ. 218. Հայապ. 347. Rapport Arm. 47.—սեռ. Բակուրանայ՝ Սմբ. պտմ. 99, 100, 109.—Անշուշտ նույն անձն է Պապուրան, պարոն և տեր Պապառոն, որ ներկա եղավ Լևոն Բ-ի թագադրության հանդեսին «1199 թ»։ Այս ձևով հիշում է Սմբ. պտմ. 112. բայց որովհետև Սմբատ պատմիչի հիշած 44 պարոնների թվում, որոնք ներկա են եղել նույն հանդեսին, չէ հիշված ոչ Բակուրան իշխանի և ոչ էլ Պապառոն բերդի անունը, ուստի Պապուրան իշխան Պապառոն ձևով պետք է հասկանալ Բակուրան իշխան Պապառոնի։ Այս ապացուցվում է նաև նրանով, որ Մոսկուայի տիպը գրում է Բաբուրան (իմա Բակուրան)։

— 4. Բակուրան, գլխավոր բաժատան Այասի՝ 1288 թ.—Սիսվան 368 ա, 486 բ։

— 5. Բակուրան, որդի Կոստանդին պայլի, եղբայր Սմբատ գունդստապլի և Հեթում Ա թագավորի, պարոն. մեռած էր արդեն 1278 թ.—Ջարբ. Հին դպր. 93, Հայապ. 488, Սիսուան 146. Ջեռ. Միլնի. 8 ա։

[*ԲԱՀԱԴԻՆ, ար. < արաբ. بهاالدين Baha-ed-dīn անունից, որ բուն նշանակում է «գեղեցկություն կրոնի»։ Մի անգամ գտնում եմ գործածված՝ Ջեռ. Վասպ. 166, Բահադին, որ վաճառել է մի Աւետարան 1407 թ. Բայց սա քուրդ է, ինչպես և իր ընկերները]։

*ԲԱՀԱԴՈՒՐ, ար. < պրս. بهادر bahādur «քաջ» բառից, որից փոխառյալ է նաև ռուս. богатырь բառը։ Իբրև անձնանուն գործածական է նաև Պարսից մեջ. ինչ. Աբուսէյիդ Բահադուր խան, որդի Ղարբանդայի, իշխան Թաթարաց՝ ԺԴ դար (Զամչ. Գ. 299). غياث الدين بهادور Γiyāϑ-ad-dīn Bahādūr Հնդկաստանի խալամ իշխաններից՝ ԺԴ դար (Իբն-ի Բատուտա, Գ. 179)։ Մեր մեջ գործածված է ԺԳ դարում և այժմ էլ գործածական է, որից Բահադրեան ազգանունը։

— 1. Բահատուր, բաղադ. նյութապես օգնեց Գրիգոր գրչին, արտագրելու համար Տօնականը՝ Կաֆա 1305 թ.—Ձեռ. Վենետ. Բ. 511։

— Այս անունը հիշատակված է նաև Պահատուր ձևով՝ 1593 թ. (Ձեռ. Սեբ.=ՀԱ 1925, 473), 1641? թ. (Ձեռ. Հալէպի, Ա. 174բ), 1657 թ. (Ձեռ. Վասպ. 835), 1665 թ. (Տաշեան, Ցուց. 634), անթվական՝ Ձեռ. Սեբ.=ՀԱ 1925, 375 սեռ. Պահայտրին։ Նույնպես անթվական Բախադուլ ձևով՝ Ձեռ. Թաւր. 73 ա։

*ԲԱՀԱԶԻԶ, իգ.<պրս. بها bahā «գին»+արաբ. عزیز ʻazīz բառերից։ Անսովոր անուն, որ մի անգամ գործածված է 1647 թ. (Ձեռ. Վենետ. Ա. 692).—Նույն անձի տատն էլ կոչվում է Թանգաղիզ։

*ԲԱՀԱԼՈՒ, իգ.<թրք. بهالو bahalu «թանկագին» բառից։ Հմմտ. հյ. Թանգ անունը։ Գործածված է մեր մեջ ԺԶ, ԺԷ, ԺԸ դարերում։ Այսպես՝ Պահալու 1581 թ. (Ձեռ. Վասպ. 694), 1586 թ. (Հայ-Վենետ. 458), Բհալու 1610 թ. (Ձեռ. Դաղեան, Ա. 9 բ), Պայհալու (մր. թե իգ.) 1713 թ. (Ձեռ. Վենետ. Բ. 270), Թվականն անհայտ՝ Բայլու (Ձեռ. Վենետ. Ա. 492), Պահալու (Ձեռ. Թաւր. 20 ա)։

*ԲԱՀԱԼՈՒՄ, ար.<թրք. بهالوم bahalum «թանկագինս», ինչպես ունինք Բէգում, Շահում, Սուլթանում են։ Մի անգամ գտնում եմ գործածված 1651 թ. կրճատ Բահլում ձևով՝ Ձեռ. Վենետ. Ա. 302։

*ԲԱՀԱՐ, իգ.<պրս. بهار bahār «գարուն» բառից, որ գործածական է իբրև ար. անձնանուն. ինչ. Bahāri պարսիկ բանաստեղծը և Behari թուրք բանաստեղծ Թրհալցի՝ մ. 1549 թ. (Justi 66 բ)։ Մեր մեջ գործածված է իբրև իգ. անուն ԺԶ—ԺԸ դարերում և այժմ էլ սակավ գործածական է։ Այսպես՝ Պահար 1595 թ. (Ձեռ. Սեբ.=ՀԱ 1925, 379), 1658 թ. (Ձեռ. Կես. ածած. 54 աբ), 1664 թ. (անդ 56 բ), Պահար? (կրճատմամբ գրված է Պհրն) 1680 թ. (Ձեռ. Վասպ. 570), Բահար 1756 թ. (անդ 313), և անթվական մի հիշատակարանում էլ Պահարխաթուն ոճ (Труды Вост. комм. ИМАО հտ. II, 3, էջ 71)։ Բայց կա նաև իբրև արական անուն. այսպես՝ Բահար 1631 թ. (Bodleian 140) և Պահար 1683 թ. (Ձեռ. Դաղեան, Բ. 19 բ)։

*ԲԱՀԼՈՒԼ, ար.<արաբ. بهلول bahlūl «ժպտուն և զվարթերես, բարեգործ և առաքինի մարդ» (Կամուս, Գ. 150)։ Իբրև արական անուն գործածական է նաև արաբների մեջ, ինչպես ունի

Իբն-ի Բատուտա, II 89, بهلول Buhlūl ձևով։ Ըստ Կամուսի՝ հայտնի է այս անունով մի գիտուն և իմաստուն մարդ։ Նշանավոր է Bar-Bahlul ասորի բառագիրը։ Մեր մատենագրության մեջ էլ ունինք «Պատմութիւն յաղագս Փահլուլ Թագաւորին» (հրատ. Պղնձէ քաղաքում, էջ 62—77, Տփղիս 1908, որ և Պոլիս 1850)։ Այս անունը գործածված է մեր մեջ ԺԶ—ԺԷ դարերում, աղավաղված. այսպես՝ Բահլուլ 1503 թ. (Ձեռ. Վասպ. 280), Բալուլ 1590 թ. (անդ 715), Պահլուլ 1612 թ. (Manus. brit. mus. 38 բ), և անթվական հիշատակությամբ՝ Բախլուլ (Ձեռ. Վասպ. 342), Բալուլ (անդ 560)։

*ԲԱՀՄԱՆ, ար. < պրս. بهمن Bahman անունից, որի հնագույն ձևերն են զնդ. Wohu-manō, պհլ. Wohūman։ Բուն նշանակությունն է «բարեմիտ, բարեհոգի» և զրադաշտական կրոնի մեջ ամշասպանդներից մեկն է, որ է բարի մտքի անձնավորումը։ Իբրև անձնանուն գործ է ածվել հաճախ իրանյանց մեջ. Justi 374—5 հիշում է 22 անձ և մի քանի հատ էլ սրանից ծագած ուրիշ անուններ։ Գէորգ դպիրն էլ (էջ 421) հիշում է մի քանի նշանակությամբ. այսպես «1. ուղղախօս, ամբողջագործ, սակաւամեայ և շատգէտ, հանճարեղ և հմուտ. 2. է անուն հրեշտակի միոյ, որոյ պաշտօն գործոյ է ցածուցանել զբարկութիւն որդւոց մարդկան. 3. է անուն մետասաներորդի ամսոյ արեգակնային ամի, որ է յունվար. 4. է տեսակ իմն ծաղկան, որ ծաղկի յամսեանն յունվարի. 5. է անուն երաժշտական փէրտէի միոյ»։ Անձնանուններից էլ հիշում է «մականուն հաչակաւոր արքային Էրտաշէյրի որդւոյ՝ որդւոյն Քիւշթասէպի»։ Մեր մեջ հիշատակված ունինք մի անգամ 1515 թ. սխալատիպ Ամիր Բահման ձևով (Ձեռ. Վենետ. Ա. 390) և մի անգամ էլ 1596 թ. Պահման ձևով՝ Ձեռ. Թաւր 75 բ։

*ԲԱՀՐԻ, իգ. < արաբ. بحري baḥri «ծովային» բառից. բայց արաբերենում էլ بحر baḥr «ծով» նաև անձնանուն է. հմմտ. Ծովիկ։ Մեր մեջ ունինք Բահրի, Բահրխաթուն, Բահրիխան, Բահրիկ, Բահրխուլթան և Բահրիէ ձևերով, որոնք տես առանձին։ Բահրի անվան հնագույն հիշատակությունն է ԺԳ դարից. սեռականում լինում է Բահրէ կամ Բահրու. վերջին հիշատակությունը ԺԷ դարում. կա և Բահր անթվական (Միսական 41)։

— Պահրի, մեծ մայր Կոստանդին եպիսկոպոս Պեհեսնեցու, որ առաջնորդ էր Սկևռայ վանքի. հիշված է 1314 թ. ուստի տարը ԺԳ դարից.—Ձեռ. Վասպ. 60։

— Պահրի ձևը հիշված է նաև 1630 թ. (Ձեռ. Վենետ. Ա. 777), 1634 թ. (Թորոս աղբ. Բ. 431), սեռ. Պահրէ՝ ԺԷ դար (Հրաչ. Սամ. անեց. էջ ԺԹ), սեռ. Պարհէ՝ 1638 թ. (Ձեռ. Կես. սարգ. 13 ա), անթվական՝ սեռ. Բայրուն (Ձեռ. Վասպ. 144)։ Երևի վրիպակ է Պահրի (բայց արական!), 1517 թ. (Ձեռ. Վենետ. Բ. 482)։

*ԲԱՀՐԻԷ, իգ. <արաբ. بحريه bahriye «ծովային» բառից։ Հիշված է մի անգամ 1687 թ. Պահրիէ ձևով (Թորոս աղբ. Բ. էջ 469)։

*ԲԱՀՐԻԽԱՆ, իգ. <նախորդ բառից+խան։ Հիշված է մի անգամ 1647 թ. (Թորոս աղբ. Ա. 220)։

*ԲԱՀՐԻԿ, իգ. նախորդ Բահրի անվան փաղաքշական ձևն է։ Գործածված է մի անգամ 1200 թվին և մի անգամ էլ անթվական մի հիշատակարանում, որ սակայն գրված է 1630 թվից ավելի ուշ (Ձեռ. Վենետ. Ա. 778 Պայրիկ ձևով)։

— Բահրիկ (սեռ. Բահրկանն), կին Գրիգորի և մայր Բարսեղ գրչի, որ օրինակեց մի Ավետարան, 1200 թ.—Ձեռ. Վենետ. Ա. 548։

*ԲԱՀՐԻ-ՍՈՒԼԹԱՆ, իգ. <նախորդ Բահրի անունից+արաբ. սուլթան։ Հիշված է ԺԷ դարում. այսպես՝ մի անգամ 1618 թվին՝ Բահրիսուլթան ձևով (Ձեռ. Վասպ. 795) և մի անգամ էլ Բահրիսուլթան ձևով՝ անթվական մի հիշատակարանում, որ սակայն 1533 թվից ավելի ուշ է գրված (Ձեռ. Վենետ. Ա. 718)։

*ԲԱՀՐԽԱԹՈՒՆ, իգ. <նախորդ Բահրի (կամ Բահր) անունից+խաթուն։ Մի անգամ գործածված եմ գտնում ԺԴ դարում։

— Պահրխաթուն, դուստր պարոն Ծերի, քույր պարոն Ասլանի, որ Սեբաստիայում ստացավ Եպիփանու Ճառերը, 1350 թ. —(Տաշյան, Ցուց. 107 բ)։

ԲԱՂԱԿ, ար. ծագումն անհայտ. անշուշտ սարքել է Օրբելյանը Բաղակ տեղանվան վրայից, աչքի առաջ ունենալով թերևս Ս. Գրքի Բաղակ անունը (Թագավոր Մովաբացոց՝ Թւ. ԻԴ. 9 եբր. בלק Balāq)։

— Բաղակ, որ Սիսակ նահապետի (Ն.Ք. շուրջ 1850 թ.) ժառանգներից էր. ստացավ Սիւնեաց գավառներից մեկը, որ նրա անունով կոչվեց Բաղք։ Նա շինեց Բաղակոյ ամրոցը, որ կոչվում է նաև Բաղակի քար կամ Բաղաբերդ։—Օրբ. բ.—բց. ի Բաղակայ՝ Օրբ. բ։ —Սիսական 273, 290, 294։

ԲԱՂԲԱՆԴ, ար. <պրս. باغبند bağband «այգի կապող» բառից։

Գործածված է մի անգամ 1610 թ. (Ձեռ. Կես. ածած. 52 աբ՝ Պաղպանտ ձևով)։

*ԲԱՂԴԱԴ, իգ. < պրս. بغداد Baġdād քաղաքի անունից. Թաթարների մեջ էլ Baġdad բառը իգական անձնանուն էր, ինչպես ունի Իբն-ի-Բատուտա Բ. 122։ Բուն նշանակում է «աստուածատուր» (տես Բագարատ)։ Մեր մեջ գրված է Բաղդադ, Բաղդատ, Պաղտատ, Բաղտատ, Պաղդատ ձևերով և գործածված է ԺԳ դարից սկսած. վերջին հիշատակությունը 1710 թվից (Ձեռ. Հալէպի, Ա. 329), որից հետո խափանվում է։

— 1. Բաղդատ խաթուն, դուստր Սարգսի և քույր Արղութ խաթունի, որ Վարդան երեցին մի Աւետարան գրել տվեց՝ Վարագայ վանքում, 1260 թ.—Ձեռ. Դաղեան, Բ. 47 ա։

— 2. Բաղտատ, թոռ Շահնշահի, որ Գողթան գավառի Կոպատոսի անապատում, Թումայ Արճիշեցուն գրել տվեց Աւետարանը՝ 1336 թ.—Ձեռ. Ագուլ. (Արրտ. 1911, 387)։

— 3. Բաղդատ, կին Մկրտիչ քահանայի, որ Աղթամարում, Թումայ կրոնավորին գրել տվեց մի Ճաշոց, 1419 թ.—Նոտարք, էջ 58։

— 4. Բաղդաշ, մեծ մայր Մկրտիչ վանահոր? (Տէր Յուսկան որդւոյ վանից), որ գրել է մի Աւետարան, 1420 թ.—Նոտարք 61։

— 5. Բաղշատ, դուստր Կարապետի՝ եղբոր Ստեփանոս կրոնավորի, որ Վանում գրել տվեց մի Աւետարան, 1421 թ.—Ձեռ. Վասպ. 341։

— 6. Բաղդադ, դուստր տանուտեր Յովհաննէսի, որ գրել տվեց մի Աւետարան, Մոկաց Փառավանք գյուղում, 1455 թ.—Ձեռ. Վասպ. 421։

— 7. Բաղդաշ, հորաքույր նույն տանուտեր Յովհաննէսի (№ 6), 1455 թ.—Ձեռ. Վասպ. 422։

— 8. Բաղդատ, կին պարոն Թումայի և մայր Յովհաննէս աբեղայի, որ Աղբակի Ասփսթան գյուղում ստացավ մի Աւետարան, 1458 թ.—Ձեռ. Թաւր. 69 ա։

— 9. Բաղդադ, կին տանուտեր Աստուածատուրի, որ Ոշտունեաց Բերդաձոր վանքում գրել տվեց մի Աւետարան, 1463 թ.—Ձեռ. Վասպ. 446։

— 10. Բաղդաշ, կին Յակոբի և մայր Մկրտիչ քահանայի, որ Բիւրականում օրինակեց Յիսուս որդին և ուրիշ չափածո գրվածքներ 1469 թ.—Ձեռ. Վենետ. Բ. 1112—3։

— 11. Բաղտատ, կին էմինի՝ որդւոյ Խզրշահի, որ Կեսարիայում, Յովհաննէս Երզնկացուն գրել տվեց մի Աւետարան, 1476 թ.—Rapport Belgique 34։

— 12. Բաղդադ, դուստր տանուտեր Տողանի, որ Արճէշի Սոսկան գյուղում. Յովհաննէս քահանային գրել տվեց մի Աւետարան. 1489 թ.—Թորոս աղբար, Բ. 437։

— 13. Բաղդադ. կին տանուտեր Պետրոսի, որ Վանում, Ազարիա քահանային գրել տվեց մի Աւետարան, 1475 թ. և մի Աւետարան էլ Զաքարիա գրչին՝ 1495 թ.—Ջեռ. Վաղ. 476 և Թորոս աղբար, Բ. 276։

— 14. Բաղեաս, կին Մկրտիչի և մայր Մատթէոս քահանայի, որ Եղեգեաց անապատում Աստուածատուր գրչին գրել տվեց Աւետարանը, 1496 թ.—Ջեռ. Նոր-Բայազ. 7 բ։

— 15. Բաղդատ, դուստր Հոռոմսիմի կամ Շնահորի՝ քրոջ Հարիր խաթունի, որ իր ամուսին Ատոմի հետ, Աղբակի Երնկանի գյուղում, Մարգարայ գրչին գրել տվեց մի Աւետարան, 1498 թ.—Ջեռ. Վաղ. 527—8։

*ԲԱՂԴԱՍԱՐ, ար. Ասորեստանյան անուն է. հմմտ. Դան. Ա. 7 «Եւ եդ նոցա ներքինապետն անուանս՝ Դանիելի Բաղդասար, և Անանիայի՝ Սեդրաք և Միսայելի՝ Միսաք»։ Եբրայական ձևն է בלטשאצר Beltšaṣṣar կամ Beltašaṣṣar, որ տառադարձված է հուն. Βαλτασαρ. ըստ Բառ. Ս. Գրոց նշանակում է «իշխան Բէլայ». իսկ ըստ Gesenius 100 ա բուն ձևն է Balāṭ-šar-uṣur, որ նշանակում է «պահեա զկեանս արքայի»։ Հայերեն գրված է նաև Բաղտասար. հմմտ. Դան. դ. 5. «Մինչև եկն Դանիէլ, որում անուն էր Բաղտասար՝ ըստ անուան աստուծոյ իմոյ, զի հոգի սուրբ Աստուծոյ գոյ ի նմա»։ Նշանավոր են Բաբելոնի վերջին թագավորը՝ Բաղդասար, 538 Ն.Ք., ինչպես և երեք մոգերից մեկը (որ Մխ. այրիվ. 59 գրում է Բաղտասար և համարում է արաբ)։ Մեր մեջ այս անունը սկսել է գործածվել ԺԵ դարից և մինչև այժմ էլ կենդանի է։ Եբրայական և այլ ձևերի (ֆրանս. Balthazar) համեմատությունից երևում է, որ հարազատ ձևն է հյ. Բաղտասար, ուր տ խուլ ձայնը ավելի ուշ վերածվել է դ՝ ազդեցությամբ թրքերեն դ-ի։ Արևմտահայ տառադարձությամբ գրվում է մերթ Պաղտասար։ Կրճատ ձևերն են Բաղդի, Բաղդօ, Բդդօ, Բդդէ, Բաղդիկ, Պաղտիկ, Բաղի և Բաղօ։ Ազուլիսում դարձել է Բաղդսար։ Կրճատ ձևերից Բաղդօ և Բաղտիկ արդեն հիշված են 1786 թ. (տես Ջեռ. Վաղ. 262, 264)։

— 1. Բաղդասար, որդի Խուլասարի, իր եղբայր Սմնասարի հետ մի այգի նվիրեցին Հառիճի վանքին, 1235 թ. (Շիրակ 163 ա)։

— 2. Բաղտասար, հայր Ցովաննէս կրոնավորի, որ Աղթամարում, Թումայ Մինասենց գրչին գրել տվեց մի Մաշտոց, 1445 թ.—Նոտարք 136։

— 3. Բաղդասար, որդի Աստուածատուրի և եղբայր Ղազար րաբունապետի՝ ուսուցչի Պօղոս արեղայի, որ Ամիրդոլի խնդրանքով գրեց Բաղէշում մի Աւետարան, 1455 թ.—Նոտարք 178։

— 4. Բաղդասար, որդի Վարդանի, որ Իսրայէլ գրչին մի Աւետարան գրել տվեց Շատախում, 1491 թ.—Ձեռ. Վասպ. 517։

— 5. Բաղդասար Ա. կաթուղիկոս Աղթամարի. հաջորդ Եղիազարի և նախորդ Ղազար Ա-ի (ԺԶ դար).—Հաւաք. 62 (կեղծիք)։

— 6. Բաղդասար Բ. կաթուղիկոս Աղթամարի, հաջորդ Ստեփաննոս Թ-ի և նախորդ Կարապետ Բ քռնածի (ԺԷ դար).—Հաւաք. 63 (կեղծիք)։

— 7. Բաղդասար Գ. կաթուղիկոս Աղթամարի. ազատ տանից էր. հաջորդ Մարտիրոս Գուրջի Մոկացու և նախորդ Ստեփաննոս Ժ-ի (ԺԷ դար).—Հաւաք. 63 (կեղծիք)։

— 8. Բաղտասար Թոխաթցի. Նոր վկա. ծնվել է Եւդոկիայում. հայրը՝ Փիրզատա մեռնելով, իր անդրանիկ եղբայր Անտոնի հետ մնաց որբ. աշակերտ մտավ մի Թուրք կոշկակարի մոտ, որ տարավ նրան Զմիւռնիա։ Վարպետի բացակայության ժամանակ հարկահանները եկան և Բաղտասարից գլխահարկ պահանջեցին։ Եվ որովհետև դրամ չունէր, բանտարկեցին և բռնի թլփատելով՝ անունը դրին Դաւուդ։ Այն ժամանակ Բաղտասարը 13 տարեկան էր։ Վարպետը եկավ, բողոքեց, բայց իզուր. ուստի ուղարկեց նրան Եւդոկիա։ Եղբայրների խորհրդով եկավ Արարատ գավառը իր կրոնը ազատ պաշտելու համար։ Այցելեց Էջմիածին և այլ վանքեր։ Աշակերտեց Զաքարիա անուն մի վարդապետի մոտ 7 տարի և սովորեց Սաղմոսն ու Շարականը։ Վարդապետը մեռավ. Բաղտասարը եկավ Երևան և մի հայ կոշկակարի մոտ մտավ։ Կարնեցի մի Թուրք լսելով Բաղտասարի գաղտնիքը, շատ դառնացավ. բայց որովհետև չէր կարող հայերի մեջ վրեժ լուծել նրանից, խորամանկությամբ բարեկամացավ նրա հետ և համոզեց գնալ Կարին։ Այստեղ նա մատնեց փաշային, որի հրամանով նահատակվեց 1672 թ։—Տես Նոր վկ. էջ 490—499. աղբյուրների մեջ պետք է ավելացնել Փիրղալէմեան, Զորս ընկերք,

Թիֆլիս 1882, էջ 72—74, ուր կան մի քանի նոր մանրամասնություններ։—Չքր. սարկ. Բ. ծԹ դնում է սխալմամբ 1664 Թ։

— 9. Պաղտասար Խըտըրօղլի. Տրապիզոնցի. նոր վկա. նահատակվել է 1698 Թ. տես Փիրղալէմեան, Զորս ընկերք, Թիֆլիս 1882, էջ 110.—պակասում է մեր Նոր վկայքում։

— 10. Պաղտասար տէրացու. գրել է Աստուածատուր Մալկարացու (մ. 1710) նահատակության պատմությունը.—Աշխար. էջ 3001։

— 11. Բաղդասար Բաղիշեցի, կաթուղիկոս Աղթամարի (ըստ Հաւաքարանի Բաղդասար Դ, ըստ Ակինեանի Բաղդասար Ա). «1735?—1736 Թ». հաջորդեց Գրիգոր Խիզանցուն։—Հաւաք. 63, Ակինեան, Գաւազանագիրք 147—148։

— 12. Պաղտասար դպիր Կոստանդնուպոլսեցի, որդի Կեսարացի հյուսն Գրիգորի և աշակերտ Աստուածատուր վրդ. Ջուղայեցու. տաղասաց. իր տաղերի հիշատակությունը տես Տաշեան, Ցուց. 1140 ա։ Եղավ հայտնի քերականագետ. ունի Պարզաբանութիւն Քերականութեան (տպ. 1736 և 1771), Ցանկգիրք (Համաբարբառ Նոր Կտակարանի), տպ. ՌՄԲ=1753, Համառօտ Քերականութիւն, տպ. 1760.—Ջուղ. 215։

— 13. Բաղդասար մետրապոլիտ. որդի Դանիէլ բէգի Հասան-Ջալալեանց. ծնվել է 1775 Թ. հաջորդեց Սարգիս մետրապոլիտին 1830 Թ. եղավ Արցախի և Աղուանից վերջին մետրապոլիտը, որից հետո հիմնվեց Արցախի Թեմական առաջնորդությունը (Աշխար. 3706)։—Բաղդասար մետրապոլիտը կազմել է ծննդաբանական երկու ցուցակ, որոնց մէջ ցույց է տալիս, որ իր ցեղը սերում է հին Աղուանից արքայական տոհմից կամ Խորենացու հիշած Սիսակից (տես Ջեռ. Դաշեան, Բ. 37. ցուցակները հրատարակել է Րաֆֆին՝ Արձագանք, 1886 Թ. տես և իր Խամսայի մելիքութ. (անունների ցանկը)։

Բաղդին տես Պաղտին։

ԲԱՂԵՐ, ար. ծագումն անհայտ։

— Պաղէր ձևով հիշված է 1627 Թ. (Ջեռ. Թեհր.=ՀԱ 1935, 395) և Պաղիր ձևով՝ 1724 Թ. (Ջեռ. Դաշեան, Բ. 35 ա՝ տպ. Պուգիր)։ Սրանից են Բաղրեանց և Խոջաբաղրեանց ազգանունները։

*ԲԱՂԻ, ար.<արաբ. باقی bāqī, որ պարսկական արտասանությամբ հնչվում է bāġī. նշանակում է «մնացական»։ Հնագույն հիշատակությունները են՝ 1633 Թ. (Կարապետ եպս՝ Դօփեանք, էջ 135), 1647 Թ. (Ջեռ. Թաւր. 1101 բ), 1658 Թ. (անդ

13 բ), 1666 թ. (Ձեռ. Դաշեան, Ա. 49 ա՝ Պաղի ձևով)։ [Սակայն Սիսական 293 Պաղի գործածված է իբրև Բաղդասար անվան կրճատ ձևը, 1737 թ։]

—Բաղի Մելիք-Շահնազարեան, որդի մելիք Միրզա բէգի Ա, որ իշխում էր Գեղամայ ծովի եզերքում. լեռնականների արշավանքի ժամանակ գաղթեցին Վարանդայի Աւետարանոց գյուղը։ 1721 թվին, երբ լեռնականները նորից արշավեցին և ավերեցին Տաքին, Շիրվանը, Գանձակը, և Երասխը անցնելով՝ մոտեցան։ Վարանդային, Մելիք Բաղին քաջությամբ դուրս եկավ նրանց դեմ, հաղթեց և դուրս վռնդեց։ Սրա վրա ամբողջ Վարանդան՝ իր իշխանության տակ մտավ։—Րաֆֆի, Խամսայի մելիքութ. 22։

ԲԱՂՈՒՄ, ար. ծագումն անստույգ. մի անգամ հիշված եմ գտնում ոմն Բաղում (Աստապատցի) 1723 և 1734 թվերին (Ձեռ. Վենետ. Ա. 219—220)։

*ԲԱՂՉԱ, իգ. <պրս. باغچه bāġčā «այգի, պարտեզ», որ باغ bāġ բառի նվազականն է։ Գործածված է ԺԵ—ԺԷ դարերում (գրված Բաղչա, Բախչա, Բաղջա ձևերով)։ Այսպես՝ 1504 թ. (Ձեռ. Դաշեան, Բ. 31 բ), 1585 թ. (Ձեռ. Վասպ. 698), 1587 թ. (Ձեռ. Սեբ. = ՀԱ 1925, 260), 1588 թ. (Ձեռ. Վասպ. 706—7), 1613 թ. (անդ 847), 1617 թ? (անդ 854), 1639 թ. (անդ 783—4)։ Սրա փաղաքշականն է Բաղչեկ, որ տես։

*ԲԱՂՉԱԳՈՒԼ, իգ. <պրս. باغچه گل bāġčagul «այգու վարդ» անունից. գործածվում է այժմ էլ Ղարաբաղում. հնագույն հիշատակությունը գտնում եմ մի անգամ 1666 թ. Բախչագուլ ձևով (Ձեռ. Դաշեան, Ա. 10 բ) և ավելի ուշ՝ ԺԸ դարից (Ձեռ. Արք. յովհ. էջ 164)։

*ԲԱՂՉԵԿ, իգ. վերի Բաղչա ձևի փաղաքշականն է. մի անգամ գտնում եմ հիշված 1663 թ. Ձեռ. Նոր-Բայազ. 31 բ՝ Պաղչեկ ձևով։

+ԲԱՄԲԻՇ, իգ. <հյ. Բամբիշ «թագուհի» բառից (Հիւբշ. 32). համազոր ձևերն են Թագուհի, Դշխոյ, Դշխուհի, Սուլթան, Վասիլիկ, Մլքէ։ Հիշատակված է մի անգամ Դ դարում և մի անգամ էլ ԺԶ դարում (Տաշեան, Ցուց. 361 բ)։

— Բամբիշ, դուստր Խոսրով Բ թագավորի («330—339 թ»). ամուսնացավ Յուսիկ կաթուղիկոսի որդի Աթանագինէի («313—349 թ») հետ, մայր Մեծին Ներսէսի.—Բուզ. Գ. ժե.—Բամբիշն ձևով՝ Բուզ. Դ. գ. Մեսր. եր. 13.—ըց. ի Բամբըշնէ՝ Բուզ. Գ. ժթ։

+ԲԱՄԲԿԻԿ, իգ. <հյ. բամբակ բառի փաղաքշական ձևից.

մի անգամ միայն գտնում ենք գործածված ԺԴ դարում։ Կա և սրա Թրքական Փամպուխ ձևը, որ տես։

— Բամբկիկ, կին Վարդանի, մայր Խաչատուրի, «ասպնջականի» Յոհան վարդապետի, որ Սուրխաթում, Ստեփաննոս գրչին գրել տվեց Եսայի և Թուղթք Պօղոսի, 1356 թ.—Ձեռ. Բեռլինի 4 ա։

†ԲԱՄԿՈՑ, Թվլի իգական անուն. անշուշտ բամբկոց (< բամբակ) ձևից. մի անգամ հիշված է 1343 թ? (Տաշեան, Ցուց. 489բ)։

*ԲԱՅԱԹ, ար. < Թրք. بيات bayat «քարթու, հին» բառից. մի անգամ գտնում ենք գործածված Բարխուտարեանց, Աղուանից երկիր 109՝ Պայեաթ ձևով (թվականն անհայտ)։

*ԲԱՅԱՆԴՈՒՐ, ար. նույն Բաճադուր անունն է, աղավաղությամբ հասած այս ձևին։ (Րաֆֆի, Խամսայի մելիքութ. 348 նմանապես նույն է համարում Բահադուր անվան հետ)։ Թերևս այստեղ ազդած լինի նաև Թրք. بكندر beyendur «հավանեցրած» բառը։ Սրա հետ նույն է Բայինդուր։ Գործածված է ԺԶ—ԺԸ դարերում և այժմ էլ կա։ Հմմտ. Պայինդուր 1603 թ. (Матер. Арх. Кавк. III 99—100), Բայինտուր (Ձեռ. Դաշեան, Բ. 46 բ), 1619 թ. (Ձեռ. Սեբ.=ՀԱ 1925, 475), Բայինդուր 1682 թ. (Ձեռ. Վեննա. Ա. 391)։ Պարսից մեջ էլ հիշված է Բայինդուր բէկ՝ նախարար Շահաբասի (Առաք. պատմ. 229)։

— 1. Բայանդուր Սամիկոնեան Թումանեցի. մենամարտելով հաղթեց Շիշուշ վրացուն և իր քաջության համար Շահաբաս Բ-ից կարգվեց իշխան Տփղիսի (1650)։ Նրա և Շիշուշի մենամարտության վրա կային հորինված ժողովրդական երգեր (Զքր. սարկ. Բ. խը)։

— 2. Բայանդուր Ղափանցի, օգնական Դավիթ բէգի. գնաց Մեղրեցիների օգնության, երբ նրանք պաշարված էին 18,000 պարսիկներից. 7 ժամ ամբողջ կռվելով կոտորեց 11,000 հոգի և մնացյալը փախցրեց (1724).—Զամչ. Գ. 786—790, Սիսական, էջ 304 ա։

*ԲԱՅԻՍՕՂՈՒԼ, ար. < արաբ. باعث bāʻis + Թրք. اوغل oğul «որդի» բառերից (իբր թե «պատճառ ծննդեան որդւոյ»)։ Մի անգամ հիշված ենք գտնում 1661 թ. (Ձեռ. Ազուլ.=Արրտ. 1911, էջ 119)։

*ԲԱՅԽԱՆ, ար. < Թթր. باي bay «հարուստ, մեծ» + պրս. خان xān «իշխան» բառերից։ Հիշված է մի անգամ 1617 թ. (տես Ամիրտ. անգ. էջ 624 հիշատակարանում)։

*ԲԱՅՐԱՄ, ար. < պրս. بیرام bayrām «տօն» բառից, որ իբրև անձնանուն գործածվում է նաև պարսիկների և Թուրքերի մեջ. ինչ. Բայրամ իշխան Հնդկաստանում, ԺԴ դար (տե՛ս Իբն-ի-Բատուտա Գ. 208), Բայրամ Թուրք իշխան, ԺԵ դար (Այրարատ 323): Իր համազորներն են Տօնիկ, Տօնական, Տօնապետ, Զատիկ, արաբ. عید ʻīd, ֆրանս. Pascal: Մեր մեջ գործածված է ԺԵ դարում և այժմ էլ սակավ գործածական է Կովկասում:

— 1. Բայրամ, ամուսին Զահվիլ տիկնոջ, որ Մուղնիում, Մկրտիչ երեցին գրել տվեց մի Գանձարան՝ 1484 թ.—Ձեռ. Սանաս. 25 ա:

— 2. Բայրամ, պապ խոջա Բաղտասարի, որ Յակոբ գրչին գրել տվեց մի Ավետարան, իբր ԺԵ դար (ըստ Տաշեան, Ցուց. 724 բ):

*ԲԱՅՐԱՄՇԱՀ, իգ. նախորդ Բայրամ անունից+պրս. šāh. մի անգամ հիշված եմ գտնում ԺԷ դարում, Պայրամշա ձևով (Ձեռ. Կես. սարգ. 13 բ):

*ԲԱՅՐԱՔ < Թրք. بیراق bayraq «դրոշակ» բառից. մեր մեջ իբրև անձնանուն հիշված է մի անգամ ԺԷ դարից (տե՛ս Ձեռ. Էջմիածնի, № 1754՝ Պայրա՛ք ձևով). բայց հայտնի չէ թե արական է՞ թե իգական:

Բանարգես տե՛ս Բանէրեգես:

*ԲԱՆԱՒՇԱՅ, իգ. < պրս. بنفشه banafša «մանիշակ» բառից, որ Պարսից մեջ էլ իբրև անձնանուն գործածված է. ինչ. Benefšeh սուրկուհի Մուսթանսիր խալիֆայի (1226—42), նշանավոր իր գեղեցկությամբ և բարույ քաղցրությամբ (մ. 1201/2 թ. Justi 67ա): Հիշատակված է մեր մեջ ԺԶ—ԺԷ դարերում. այսպես 1595 թ. (Ձեռ. Վատպ. 745, սխալ տպված Բանաշէն), 1601 թ. (անդ 793), առանց թվականի՝ Զքր. ագուլ. 91 (1600 ական թվերին), 1614 թ. (Ձեռ. Թաւր. 120 բ), Ձեռ. Վեննա. Ա. 736 (1651 թվից հետո, Պանաւշա ձևով), Ձեռ. Թեհր.=ՀԱ 1935, 399 (1686 թվից հետո): Շատ ավելի հին է՝

— Բանուխաշ? որ իբրև նվիրատու հիշվում է Հառիճի 1234 թվի արձանագրության մեջ (Շիրակ 162 բ). ընթերցումը անստույգ է. կարդում եմ Բանաւշայ:

*ԲԱՆԴՈՒՌ, ար. < Թրք. pandura «թելավոր նվագարան» բառից, որի վրա մանրամասն տե՛ս Արմ. բառ. փանդիռն: Իբրև անձնանուն գործածված է մի անգամ 1742 թ. (Ձեռ. Վատպ. էջ 565):

*ԲԱՆԷՐԳԷՍ, ար. արամէական կամ եբրայական 'բառ, որ հուն. Βοανήργες (լտ. Boanerges) տառադարձության վրայից, Ս. Գրքի միջոցով անցել է մեզ. հմմտ. «Եւ Յակովբու Զեբեդեայ և Յովհաննու եղբօրն Յակովբայ՝ եդ նոցա անուանս Բանէրգէս, որ է Որդիք որոտման» (Մրկ. Գ. 17)։ Մեր մեջ դարձել է անձնանուն՝ Բանարգէս, Բանէրգէս և Բենէր ձևերով՝ ԺԳ—ԺԶ դարերում։

— 1. Բանարգէս երեց Սեբաստացի, որդի Բարսեղ երեցի և եղբայր Նորոգէս կամ Ներսէս քահանայի, որ Սեբաստիայում օրինակեց Աւետարանը՝ 1222 թ.—Տաշեան, Ցուց. 558 բ։

— 2. Բանարագէս, եղբայր Նորոգէսի և որդի Յովհաննէս քահանայի, որ ստացավ մի Աւետարան՝ գրված Սիմեոնեայ Բարդնիս վանքում, 1280 թ.—Ջեռ. Վաստ. 104։

— 3. Բանարգէս, գրիչ. Երէզ անապատում օրինակեց Մանրուսմունքը, 1295 թ.—Bodleian 123։

— 4. Բենէր, որդի Յովհաննէս քահանայի և եղբայր Բարսեղ գրչի, որ Բասենի Մժնկերտ գյուղում օրինակեց Աւետարանը՝ 1336 թ.—Ջեռ. Վաստ. 191։

— 5. Բանէրգէս (սեռ. Բանէրգեսի ձևով), հայր Աստուածատուր և Յովհաննէս եղբայրների, որոնք Տկուց վանքին պատկանող՝ գերի ընկած Աւետարանը փրկանքով ազատեցին և նորից վանքին վերադարձրին՝ 1422 թ.—Նօտարք 69։

— 6. Բանարգէս (սեռ. Բանարգիսի), ուխտ (ուս) կամ գյուղապետ Արմթաղ գյուղի, 1506 թ.—Ջեռ. Հալէպի, Ա. 79բ։

— 7. Բանէրգէս ոմն կազմարար, հիշված 1517 թ.—Manus. brit. mus. 160 ա։

— 8. Բանարգէս հիշված է նաև 1534 թ.—Ջեռ. Պետերբ.=ՀԱ. 1892, 52 ա։

ԲԱՆԻԿ, ար. ծագումն անստույգ. հմմտ. Բենիկ, Բեներ, Բենիամին և Բանէրգէս։

— Բանիկ Անեցի, որ գողացավ սպանված Գագիկ Բ Թագավորի մարմինը Կիզիստրա բերդից և տարավ Թաղեց Պիզու քաղաքում, 1079 թ.—Ուռհ. 220, Սմբ. պտմ. 87։ Զամչ. Բ. 1005։

*ԲԱՇԱՐԱԹ, ար. < արաբ. بشارت bašārat «ավետիս» բառից (կա նաև արաբ. بشیر Bašīr անձնանունը, որ բուն նշանակում է «ավետող»)։ Գործածված է ԺԵ դարից սկսած մինչև ԺԹ դարի սկիզբը։

— Բաշարաթ, քեռորդի Խոնաքար տիկնոջ, որ Խորոտկայ

վանքում գրել տվեց մի Աւետարան, 1490 թ.—Ձեռ. Նոր-Բայազ. 23 ա։

— Հաջորդ դարերից եղած վկայությունները են՝ Պաշարաթ 1513 թ. (Սխական 34 ա, 58 ա=Օրբ. ժմ. յաւել. էջ 46), Բաշարաթ 1573 թ. (Ձեռ. Վասպ. 678), 1575 թ. (Rapport Belgique 24), Պաշարաթ 1581 թ. (Ձեռ. Թաւր. 75 բ). Բաշարաթ 1588 թ. (Ձեռ. Վասպ. 706), 1594 թ. (անդ 737), 1596 թ. (անդ 243), 1613 թ. (անդ 845, երկու տարբեր անձեր), 1619 թ. (Ձեռ. Թաւր. 80 բ, 81 ա), 1808 թ. (Ձեռ. Վասպ. 360) և անհայտ թվականով՝ անդ 420, 441—2, 531։

— Բաշարաթ իբրև իգական անուն ունինք 1613 թ. (Ձեռ. Վասպ. 846), որի կրճատն էլ կա Բաշար ձևով՝ 1579 թ. (Ձեռ. Վասպ. 575)։

*ԲԱՇԽԵՆ, ար. < իրան. բաշխ բառով բաղդված մի անձնանվան կրճատ ձևն է՝ փաղաքշական -ēn մասնիկով կազմված, ինչպես Գուրգէն, Արտէն, Վազգէն, Արշէն ևն։ Մի անգամ ունինք՝

— Բաշխեն, տեր Վահևունեաց, ստորագրում է այն թղթին, որ Բաբգէն կաթողիկոսը («490—516 թ») գրեց Պարսկաստանի ուղղափառներին.—Գիրք թղ. ը։

*ԲԱՋԻ, իգ. < Թրք. باجی baǰi «քույր» բառից. գործածական է այժմ Ղարաբաղի գյուղերում։ Հնուց հիշատակված է 1725 թ. (Ձեռ. Թաւր. 1725՝ Պաջի ձևով) և անթվական՝ անդ 120, Պաճի ձևով։

*ԲԱՌՆԱԲԱՍ, ար. եբր. անուն, որ նշանակում է բուն «որդի մխիթարության»։ Եբր. בר bar «որդի» բառը մեր մեջ տառադարձվում է բար ձևով (ինչ. Բարբոբա). բայց այստեղ, հաջորդ ն-ի պատճառով ր դարձել է ռ։ Հայտնի է Ս. Գրքից Բառնաբաս առաքյալը. «Յովսէփ, որ կոչեցաւ Բառնաբաս, յառաքելոց անտի, որ թարգմանի որդի մխիթարութեան» Գծ. Դ. 36 (նույնը Գիրք առաք. 516)։ Օտար ձևերն են հուն. Βαρναβᾶς, լտ. Barnabas, Barnaba, գերմ. Barnabas, ֆրանս. Barnabé, անգլ. Barnaby, ռուս. Варнава ևն։ Մեր մեջ հնից հիշատակություն չունինք. բայց դեռ վերջերս գործածական էր թե Արևմտահայոց մեջ և թե Կովկասում։

ԲԸՍԲԱՐ, ար. ծագումն անհայտ (եթե չկա վրիպակ). մի անգամ գտնում եմ գործածված 1577 թ. (Ձեռ. Վասպ. 687)։

ԲԱՍԷ, իգ. ծագումն անհայտ. մի անգամ գտնում եմ գործածված 1810 թ. (Ձեռ. Վասպ. 310)։

**ԲԱՍԽԱՆԷ**, *եգ. ծագումն անհայտ։*

— Բասխաճե, *բարեպաշտ հայ կին, Փոքր-Հայոց Նիկոպոլիս քաղաքից. ծածուկ ջուր էր բերում 45 հայ նահատակներին, երբ նրանք բանտարկված էին (իբր 319 թ).—Աւգեր. Լիակ. վրք. սրբ. Դ. 122։*

***ԲԱՍԻԼ**, *որ և* **ԲԱՍԻԼԻՈՍ**, *ար. < հուն.* Βασίλειος *անունից, որ բուն նշանակում է «թագավոր»։ Տառադարձված է մեր մեջ ավելի հին* Բարսեղ *և ավելի նոր* Վասիլ *ձևերով։ Ավելին տես Բարսեղ (Հիւբշ. 334)։ Գործածված է Ե դարից մինչև ԺԴ դար։*

— 1. Բասիլ, *եպիսկոպոս Մոկաց. մասնակցեց Արտաշատի ժողովին՝ պատասխանելու համար Միհրներսեհի նամակին «449 թ».—Եղիշ. 22. Փարպ. եգ։*

— 2. Բասիլիոս, *նշանավոր վանական և ճարտար քարոզիչ (Ժ դար).—Ասող. Գ. Է։*

— 3. Բասիլ *վարդապետ Սկևռայ վանուց. օգնական գրչի Պարապմանց Կիւրղի (1175 թ).—Աթան. յոջ. ժդ. Սիսուան 99։*

—4. Բասիլիոս, *արքեպիսկոպոս Տփխեաց. մասնակցեց Հռոմկլայի ժողովին «1179 թ».—Շնորհ. պատճ. 199։—Նույնը պետք է լինի՝*

— 5. Բասիլ *եպիսկոպոս, որ «յարևելս հիւսիսոյ» մինն է հյուսիսային հոգևորականներից, որոնք հակառակ կանգնեցին միության խնդրին և խստությամբ պատասխանեցին Գրիգոր Տղայի դիմումին.—Շնորհ. թղ. 308։*

— 6. Բասիլիոս, *եպիսկոպոս Սելևկիայի. մասնակցեց Հռոմկլայի ժողովին «1179 թ».—Շնորհ. պատճ. 199։*

— 7. Բասիլ *սարկավագ, «նորակերտ և դեռաբոյս» էր դեռ, երբ Ն. Շնորհալու եղբորորդի պարոն Միխայէլի հրամանով գրեց Սողոմոնի գործերը, Հռոմկլայում, 1201 թ.—Ջեռ. Վենետ. Ա. 168։*

— 8. Բասիլ *վարդապետ, միաբան և ուսուցիչ Սկևռայ վանից, Ներսէս Լամբրոնացու մահվանից («1198 թ») հետո.—Զարբ. Հին դպր. 709, Սիսուան 99 բ և ծան։*

— 9. Բասիլ *քահանայ, միաբան Սկևռայ վանից. ուսուցիչ Ներսէս քահանայի՝ քեռորդւոյ Ներսէս Լամբրոնացւոյ. (ԺԲ/ԺԳ դար).—Զարբ. Հին դպր. 709, Սիսուան 99 բ։*

—10. Բասիլ *(կամ Վասիլ), որդի Ներսէսի. գրիչ. օրինակեց մի մեծ Ճառընտիր՝ Կիլիկիայի Խորնի վանքում, 1270—1271 թվերին.—Ջեռ. Վենետ. 234—236, 564։*

— 11. **Բասիլ** արքեպիսկոպոս Սսի, հիշված 1286 թ.—Ձեռ. Վասպ. 109։

— 12. **Բասիլ** քահանայ, քեռայր Կոստանդին Բ կաթուղիկոսի («1286—9 թ»), հայր Նիկաւլայոս սարկավագի և Բասիլ քահանայի.—Ջարբ. Թրգմ. 266։

— 13. **Բասիլիոս** եպիսկոպոս, որդի Հեթում Ա թագավորի և եղբայր Լևոն Գ-ի. կարգվեց առաջնորդ Ջերմաղբիւրի Ս. Աստուածածին վանքի, 1293 թ.—Սիսուան 537 բ (համարում է երկբայելի)։

— 14. **Բասիլ** սարկավագ, Հեթում Բ թագավորի համար արտագրեց Փիլոնի գործերը՝ 1296 թ.—տես յիշ. Փիլոնի, հտ. Բ. էջ 621, Ջարբ. Թրգմ. 739. որ և **Վասիլ**՝ Ջարբ. Թրգմ. 741։

— 15. **Բասիլ** քահանա, հոգևոր որդի Յակոբ ծերունի քահանայի. երկուսն էլ Պերուճիա քաղաքի (Իտալիա) հայ եկեղեցու պաշտոնյաներն էին. ստացան մի օրինակ Տօնական Գր. Վկայասէրի՝ 1302 թ.—Ձեռ. Վեննետ. Բ. 1215։

— 16. **Բասիլիոս**, եպիսկոպոս Կապանի, անդամ Սսի եկեղեցական ժողովի՝ «1307 թ».—Ազգապ. 1784։

— 17. **Բասիլիոս**, քահանա Անարզաբայի Ս. Աստուածածին եկեղեցու, 1314 թ.—REA 2, 283, Ջարբ. Թրգմ. 265։

— 18. **Բասիլիոս** քհ. այլ. անդ։

— 19. **Բասիլ**, հայր Ստեփաննոսի, որ Փոսի անապատում օրինակեց Աւետարանը, 1319 թ.—Ձեռ. Սեբ. (ՀԱ 1924, 517)։

— 20. **Տէր** Բասիլիոս, մորաքեռորդի Սարգիս քահանայի Սսեցւոյ, որ օրինակեց Աւետարանը՝ 1350 թ.—Ձեռ. Թեհր. (ՀԱ 1935, 312)։

— 21. **Տէր Բասիլ**, թվի ուսուցիչ Սարգիս քահանայի Կիլիկեցւոյ, որ օրինակեց և ծաղկեց Աւետարանը՝ Մարիուն թագուհու համար, 1353 թ.—Ձեռ. Նոր-Բայազ. 20 ա։

— Վերջին անգամ հիշվում է **Բասիլ** ձևը՝ շատ ուշ՝ 1696 թ. —Ձեռ. Վեննետ. Բ. 132։

*ԲԱՍՈՍ, ար. հունահռովմեական անուն է. այսպես հուն. Βάσσος, լտ. Bassus. հայտնի են՝ օրինակ Բասոս նահատակ (Յայսմ.), Բասոս եպիսկոպոս՝ անդամ Գանգրայ ժողովի, և Բասոս եպիսկոպոս՝ անդամ Անտիոքի ժողովի։

— **Բասոս**, որդի քրմի, Լուսաւորիչը սովորեցրեց նրան և կարգեց եպիսկոպոս (Դ դար).—Ագաթ. 845 (ձեռ. Բասու).—Արաք.

Ագաթ. 71 գրում է Բաս եպիսկոպոս Բիկուղաց? իսկ նույն Ագաթ. ունի Βάσσος.

*ԲԱՍՈՒՄ, ար. < պրս. باسو bāsū «գավազան» բառից, երբ باسوم bāsūm «գավազանս, ծերության գավազանը»։ Մի անգամ գտնում եմ գործածված 1776 թ. (Ձեռ. Նոր-Բայազ. 51 բ)։

ԲԱՍՏԱՄ, ար. ծագումն անհայտ. հիշված է միայն երկու անգամ (սրանից է Բաստամեան ազգանունը՝ Կովկասում)։

— 1. Պաստամ, որդի մեծ իշխան Ջալալի ի Գանձասար, 1471 թ.—Յովսէփեան, Նիւթեր և ուս. Ա. 61։

— 2. Բաստամ, երկու անձինք պապ և թոռ՝ Մոկսում, 1575 թ.—Ձեռ. Վասպ. 210։

*ԲԱՏ, ար. < պհլ. Bāt անունից, որ տառադարձված է հուն. Βάτις և լտ. Batis. ինչպես՝ Βατις հրամանատար ի Գազա, Բատ ճգնավոր «յերկրէն Պարսից, ի գեղջէն Բիրգամայ» (Յայսմ. ապր. 29), նաև մի արաբ ամիրա (Ասող. Գ. ժդ)։ Սրանից է թերևս նաև չերքեզ. Pat արական անձնանունը։ Իրանական ձևի մայրն է զնդ. wāta «քամու ոգի?» (Հիւբշ. 32)։ Սխալվում է Աղգայ. 240 որ Բատ ձևը համարում է Սմբատ անվան կրճատումը։

— Բատ, նահապետ Սահառունի, դայեակ Վարազդատ թագավորի. քսությամբ սպանել տվեց Մուշեղ Մամիկոնեանին և հափշտակեց սպարապետության պաշտոնը։ Սակայն Մանուէլ Մամիկոնեանը վերադառնալով Պարսկաստանից, ետ խլեց այդ պաշտոնը, հաղթեց նրան և սպանեց («378 թ»).—Բուզ. Ե. լե, լէ. —սեռ. Բատայ՝ Բուզ. Ե. լէ.—(Մեսր. եր. 119, 120 գրում է Սմբատ, Սմբատայ)։

*ԲԱՐԱԹ, ար. < արաբ. برات barāt, որ արևել. թրք. լեզվում ստացել է «մուրհակ» նշանակությունը։ Իբրև անձնանուն հիշված եմ գտնում մի անգամ 1517 թ. (Թորոս աղբար, Բ. 275, գրված Պարատ ձևով) և մի անգամ էլ 1540 թ. (Սմբատեանց, Գեղարքունի 513)։

*ԲԱՐԱՂԱՄ, ար. սրա հետ նույն է ֆրանս. Barlaam, ռուս. Варлаам, որ ասոր. բառ է համարվում և մեկնվում է «ժողովուրդի որդի»։ Հին մատենագրության մեջ հայտնի են այս անունով՝ Բարաղամ կամ Բարղամ նահատակ Անտիոքացի (Յայսմ.) և մանավանդ հերոսը «Բարաղամ և Յովասափ» վեպի, որի ծագումը հնդկական է։ Սրա հետ արդյոք կապ ունի՞ Ս. Գրոց Բաղաամ անունը (եբր. בלעם Bilʿām, որ տառադարձված է հուն. Βαλααμ, ֆրանս. Balaam), որով հայտնի է մի մարգարե։ Մեր

մեջ Բաղաամ անունը երբեք չէ գործածված. իսկ Բարաղամ գործածվել է ԺԶ դարի կեսից և այժմ էլ գործածական է Բարաղամ, Բարեղամ, Բաղրամ ձևերով։ Հնագույն վկայությունները են՝ Պարղամ 1571 թ. (Ձեռ. Դաղեան, Բ. 44բ), Բաղրամ 1601 թ. (Manus. brit. mus. 252 ա), Փարաղամ 1620 թ. (Ձեռ. Վատ. 199), Բարղամ 1636 թ. (Ձեռ. Սեբ.=ՀԱ 1928, 492), 1641 թ. (Տաշեան, Ցուց. 883 բ), Բաղրամ 1670 թ. (Բակուրան, Կիպրոս կղ. 98) ևն։ Սրա կրճատն է Բարօ, որ հիշված է անթվական մի հիշատակարանում (Ձեռ. Վատ. 396)։

— Բարաղամ աշխարհագիր, ունի Հայաստանի աշխարհագրությունը. տպ. Մադրաս 1772.—Այրարատ 283, Հայապ։ 137, Սիսուան 63։

*ԲԱՐԱՔԻԱ, ար. < եբր. ברכיה Berekyāh > հուն. Βαραχίας, որ բուն նշանակում է «օրհնություն Աստուծոյ» (Gesenius 118 բ). այս անունով հայտնի է Զաքարիա մարգարեի հայրը, որին սպանեցին իր ազգակիցները. հիշված է Ս. Գրքում երկու անգամ (Զաք. Ա. 1 և Մատթ. իգ. 35), երկու անգամն էլ սեռ. Բարաքեայ ձևով։ Հնուց ավանդված չէ մեր մեջ. բայց զարմանալի է, որ ԺԶ—ԺԷ դարերին բավական գործածված է՝ զանազան ձևերով ու կրճատումներով. այսպես՝ Պարաքիազ 1631 թ. (Bodleian 138), Բարաք 1587 թ. (անդ 107), Պարեգ 1559 թ. (Ամարասի շրջանում գրված մի հիշատակարանում, Ձեռ. Սեան 4), Պարիէք 1576 թ. (Ձեռ. Նոր-Բայազ. 8 բ), Բէրէք 1661 թ. (Manus. brit. mus. 302 ա), Բարէք (անթվական մի խաչքարի վրա՝ Սմբատեանց, Գեղարքունի 484, Սիսական 46 բ)։

*ԲԱՐԱՔՇԱՀ, ար. < արաբ. مبارك mubārak «օրհնյալ»+պրս. شاه šāh «թագավոր» բառերից։ Գործածված է նաև Թաթարների մոտ՝ Բարքաշահ Զամչ. Գ. 250 (1255 թ)։ Մի անգամ գործածված եմ գտնում ԺԵ դարում։

— Բարաքշայ, հոգևոր հայր Դանիէլ աբեղայի, որ գնեց Քարոզգիրքը՝ 1425 թ.—Ձեռ. Պետերբ. (ՀԱ 1892, 83 ա)։

†ԲԱՐԵՄԱՆՈՒԿ, ար. < հյ. բարի+մանուկ բառերից. ավանդված է մի անգամ ԺԳ դարից։

— Բարեմանուկ, հայր Կիրակոս կրոնավորի, որ Խաչատուր դպրին գրել տվեց մի Ավետարան, 1252 թ.—Ձեռ. Սեբ.=ՀԱ 1925, էջ 379։

+ԲԱՐԵՏԻԿԻՆ, իգ. < հյ. բարի+տիկին բառերից. մի անգամ հիշված է՝

— Բարճեհիկին, *կին պարոն Վարդանի, որ տվել է մի Ավետարան (Թվականն անհայտ).—Թորոս աղբ. Բ. 427։*

***ԲԱՐԶԱՆԷՍ,** *ար. իրանական անուն է. հմմտ.* Βαρζάνης *պարսիկ՝ սատրապ Պարթևաստանի. ըստ* Justi *65 ծագում է զնդ.* varəzāna *ձևից, որ նշանակում է «քաղաք, ընկերություն, քաղաքացի» (*Bartholomae *1424)։*

— Բարզանէս (Βαρζάνης) *թագավոր Հայոց, հաղթվեց Նինոսից և նորից հաստատվեց իր գահի վրա (Դիոդ. սիկիլ. Բ. ա).—Գարագաշեան, Քնն. պատմ. Ա. 39 դնում է նույն ընդ Վարդան, բայց ուղիղ չէ։*

***ԲԱՐԶԱՓՐԱՆ,** *ար. < հպրս.* *Brzi-farnāh *անունից, որ նշանակում է «բարձրափառ, բարձր փառք ունեցող»։ Հայերենը առնված է Յովսեպոսի եբր.* Βαρζαφράνης *ձևից (Հիւբշ. 32,* Justi *65), որ ձևափոխված է այնպես, իբր թե նշանակեր եբր. «որդի Զափրանի»։*

— Բարզափրան, *նահապետ Ռշտունեաց. Տիգրան Բ-ի օրով կարգվեց սպարապետ հայ և պարթև միացյալ բանակի. նվաճեց Պաղեստինն ու Ասորիքը. գրավեց Երուսաղէմը և Հրէից Հիւրկանոս քահանայապետին՝ բազմաթիվ գերիների հետ բերավ Հայաստան (51—39 Ն.Ք).—Խոր. Բ. ժթ. Ասող. Ա. ե. Վրդ. ժե.—սեռ.* Բարզափրանայ՝ *Խոր. Բ. ժթ, իդ. Գ. լե. Արծր. Ա. ժ.—այլ ձևերով՝* Բազափրան՝ *Միխ. աս. ե, իԹ (=իը).—հյց.* զԲարզափրայ՝ *Ցհ. կԹ. ե.—բցռ.* ի Բազափրանայ՝ *Արծր. Դ. է. Հաւաք. 6.—կա նաև բցռ.* ի Բարզափրայ՝ *Խոր. Բ, ժթ (երեք ձեռագիր).—ըստ արտաքին պատմության՝ Բարզափրանը Պարթևաց Որոնդէս թագավորի զորավարներից էր և ինքն էլ պարթև. արշավեց Պաղեստին Ն.Ք. 40 թ. և Հիւրկանոսին գերի բռնելով՝ տարավ Պարթևաց երկիրը՝ Բաբելոն, ուր մնաց մինչև Ն.Ք. 37։ Հերովդէսը դիմեց Պարթևաց Հրահատ թագավորին և վերջապես ազատեց նրան 36 թ. վեց տարի հետո, Ն.Ք. 30 թվին սպանվեց նույն Հերովդէսի հրամանով (Գրգշ. Քնն. պատմ. Բ. 17. Կարրիէր՝ Աբգարու զրոյցը 58)։ Այս բոլորը Խորենացին կամայական կերպով վերածել է հայկականի։*

***ԲԱՐԹՈՂԻՄԷ,** *հիշված է իբրև իգականը Բարթողիմէոս անվան, որ տես։*

— Բարթուղիմէ *տիկին, բնակվում էր Վենետիկում, 1344 թ.—Հայ-Վենետ. 158։*

***ԲԱՐԹՈՂԻՄԷՈՍ,** *ար. < հուն.* Βαρθολομαῖος *ձևից, որի այլ*

տառադարձությունները են լտ. Bartholomaeus, ֆրանս. Barthélemy, անգլ. Bartholomew, ռուս. Варфоломей են։ Հրեական անուն է և մեկնվում է զանազան ձևերով։ Ըստ Յայսմ. յունիս 30 նշանակում է «զարմ Աստուծոյ» (Բարթուղիմէոս, որ ասի զարմ Աստուծոյ). մեկնվել է նաև «որդի Պտղոմէոսի», բայց ըստ Աւգեր. Լիակ. վրք. սրբ. Թ 463 ուղիղ չէ. կարելի է նաև հասկանալ իբր ասոր. «որդի ջրհանի» (անդ 466)։ Լավագույն է մեկնել «որդի Թոլոմէի», այս վերջին անունն էլ հանելով եբր. תלם thelem «ակոս» բառից (Gesenius 879 բ)։ Այս անունով նշանավոր է 12 առաքյալներից մեկը, որի բուն անունն էր Նաթանայէլ և հոր անունով կոչվում էր «որդի Թոլմէի» (Բառ. Ս. Գրոց, էջ 90)։ Համարվում է Հայաստանի առաջին քարոզիչներից մեկը։ Նախապես քարոզել էր Պարսկաստանում և Հնդկաստանում։ Տիրամոր վերափոխումից հետո, Թովմաս առաքյալի հորդորով, եկավ Հայաստան, իր նախորդի առաքելական գործը շարունակելու, իր հետ բերելով նաև Տիրամոր պատկերը։ Իր քարոզության կենտրոնն եղավ Վասպուրական նահանգի Անձևացեաց գավառը, ուր Դարբնաց քարում կործանելով Անահիտ աստվածուհու մեհյանը՝ հիմնում է Հոգեաց վանքը։ Ավանդվում է, որ նա քարոզել է նաև Գողթն գավառում և Աղբակում, ուր Սանատրուկ թագավորի հրամանով և Աժդահակ իշխանի ձեռքով նահատակվել է Արեբանոս քաղաքում (44 թ)։ Ընդարձակ վարքը տես Աւգեր. Լիակ. վրք. սրբ. Թ. 425—476, նաև Ալիշան, Արշալ. քրիստ. էջ 28 շար։—Այս անունը մեր մեջ գրվում է զանազան ձևերով. ինչ. Բարթողիմէոս, Բարթուղիմէոս, Բարդողովմէոս (այսպես է կոչված առաքյալը՝ Միխ. աս. ԻԹ, էջ 563) են, որոնցից ճշտագույնն է առաջինը։ Սխալ է գրել դ-ով, ինչպես ցույց է տալիս օտար ձևերի համեմատությունը։ Գործածական է մինչև այժմ և կրճատ ձևերն են Բարթող, Բարթիկ։ Գրված է Բարդուղ 1594 թ. (Ջեռ. Հալէպի, Ա. 125 ա)։

— 1. Բարդուղիմէոս եպիսկոպոս, առաջնորդ Արտազի. հաջորդեց Մանուէլին. հիշված է 551 թ.—Զքր. եպս. 281, Արրտ. 1868 դեկտ. էջ 103։

— 2. Բարթողիմէոս, վանահայր Գլակայ վանքի. հաջորդ Յովսէփի (Զ դար).—Մամիկ. ա։

— 3. Բարդողիմէոս, թագավոր Անձևացեաց. կոչված Ապուսահլ. գերի ընկավ մահմեդականների ձեռքը. արաբերենից թարգմանել է «Մակար կրոնաւորի և Աբդլաղիզ ամիրայի վիճա-

բանութիւնը».—Թվականն անհայտ է.—Տաշեան, Ժղվծ. առ. Վարդանայ, 190։

— 4. Բարդուղիմէոս, դասընկեր Ներսէս քահանայի՝ քեռորդւոյ Ներսէս Լամբրոնացու, Սկեռայ վանքում.—Միսուան 99բ։

— 5. Բարթուղիմէոս, ուսումնակից Յովհաննէսի. միաբան Դրազարկի վանից (1198 թ. և ավելի ուշ).—Զարբ. Հին դպր էջ 709։

— 6. Բարդողիմէոս եպիսկոպոս, միաբան Արքակաղնի վանից, 1280 թ.—Սմբատեան, Գեղարքունի 50։

— 7. Բարդողիմէոս, դպրապետ Այասի մաքսատան, 1310 թ.—Միսուան 486 բ։

— 8. Բարթուղիմէոս քահանա. Սսում գրել տվեց Սարգիս գրչին մի Շարական, 1316 թ.—Tübingen 22։

— 9. Բարդաղիմոս, եղբորորդի Ռաչատուր կրոնավորի, որ իր և իր եղբորորդու համար գրել տվեց մի Մաշտոց, Ապահունեաց Թոնրակ գյուղում, 1331 թ.—Manus. bibl. nat. 27։

— 10. Բարթուղիմէոս, պարոն և ասպետ. նորոգեց Սբ Ս. Սարգիս եկեղեցին, 1332 թ.—Յովսէփեան, Մի էջ հայ արուեստի 30։

— 11. Բարդողիմէ որդի հի Թագավորի, ստարածին, օգնական Մարիամ Թագուհու, որ կարգված էր Թագապահ՝ Կոստանդին Թագավորի սպանությունից հետո, 1373 թ.—Միսուան 560ա։

— 12. Բարդողիմէոս, ճգնավոր, միաբան Մշու Առաքելոց (Ղազարայ) վանից, «1387 թ».—տես. Բարդողիմէոսի՝ Մեծոփ. 27, Աղգապ. 1975 (սխալմամբ գրում է առաջնորդ նույն վանքի)։

— 13. Բարթողոմէոս, հոգևոր եղբայր Եղբայրեկ գրչի, որ օրինակեց Աւետարանը 1420 թ.—Ձեռ. Վասպ. 322։

— 14. Բարթողիմէոս քահանա Ախքիրմանցի, որդի Սիմէոն երեցի և եղբայր Նիկողայոս եպիսկոպոսի, որ օրինակեց Ճաշոցը 1460 թ. կոչված է «նոր նահատակ».—REA 10, 62 և 63։

— 15. Բարդուղիմէոս վրդ. Շուշանցի. գրել է 1679—1722 թվերի պատմությունը, «ի վանահայրութեան Կարապետ վարդապետի, որ էր աշակերտ Ապարանցի Կալոյ մականուանեալ վարդապետին. և պատմէ զշինարարութիւնս նորին, նոյնպէս և յաջորդի նորին Ստեփաննոս վարդապետի Մոկացւոյ, որ նստաւ ի 1697 յաթոռն Վարագայ, նոյնպէս և զիւր պատմէ զգործ, որ նստաւ զկնի Ստեփաննոսի...»։—Ձեռ. Խաչեան, Բ. 58 ա։

†ԲԱՐԻ, իգ. < հյ. բարի բառից, ճիշտ ինչպես ունինք հուն.

’Αγαθή, պրս. نیك Nīk, نیکبخت Nīkbaxt, نیکدخت Nīkduxt (Justi 228) և թրք. Yaxši անունները, որոնք բոլոր նշանակում են «բարի»։ Հնուց ավանդված չէ Բարի, բայց գործածական է այժմ Զանգեզուրում։ Տես և Բարիլույս, Բարիխաթուն, Բարիփաշա, Բարիշահ, Բարեմանուկ, Բարետիկին անունները։

+ԲԱՐԻԼՈՅՍ, ար. < հյ. բարի+լոյս բառերից. սրանից է ծագում Բարիլոյսեան ազգանունը։—Բարիլոյս անվան հիշատակությունները են՝ 1511 թ. (Ձեռ. Նոր-Բայազ. 4 բ), 1555 թ. (Матер. Арх. Кавк. III, էջ 96—97), 1570 թ. (Այրարատ, 39), 1801 թ. (Մեկնութիւն Սաղմոսարանի, տպ. Պոլիս 1801, էջ 110), 1738 թ. (Ձեռ. Դաղեան, Բ. 14 բ). և Բարելոյս ձևով՝ 1570 թ. (Ձեռ. Վեներ. Ա. 672)։

+ԲԱՐԻԽԱԹՈՒՆ, իգ. < հյ. Բարի անձնանունից+խաթուն։ Մի անգամ հիշված է՝

— Բարի-խաթուն, մերձավոր խոջա Խարշահի, որ Վանում, Ազարիա երեցին գրել տվեց մի Աւետարան, 1484 թ.—Ձեռ. Վասպ. 496։

*ԲԱՐԻՇԱՀ, ար. < հյ. բարի+պրս. šāh բառերից. հիշատակված է մի անգամ ԺԵ դարում։

— Պարիշահ, հայր Ատոմ աբեղայի, որ Վանում, Գրիգոր աբեղային գրել տվեց մի Ցայսմաւուրք, 1422 թ.—Նոտարք 68։

+ԲԱՐԻՓԱՇԱ, ար. < հյ. բարի+թրք. پاشا paša բառերից. հիշված է մի անգամ ԺԵ դարում։

— Բարիփաշա, հայր Սիմէոն Անկիւրացու, որ տաճիկների հրավերով գաղթեց Պոլիս, 1453 թ.—Նշխ. ժամ. 62։

*ԲԱՐԽՈՒԴԱՐ, ար. < պրս. برخوردار Barxūrdār անունից, որ նշանակում է բուն «բախտավոր»։ Իր համազորներն են՝ հյ. Երանիկ, Երջանիկ, հուն. Մակար, ֆրանս. Ֆելիքս, թթր. Խութլու, արաբ. سعید Saʻyīd, سعدی Saʻadī անունները, որոնք բոլոր արական են, բացի առաջին երկու հայ ձևերից, որոնք իգական են։ Այս անունով հայտնիներն Barxūrdār կարապետ դեսպանաց ի պալատան Մահմուդ Խիլջիի (1435), Շահաբասի թնդանոթապետը (1603), Սագաստանցի մի գրող (1700) (Justi 64 ա)։ Մեր մեջ գործածված է ԺԵ դարից սկսած և այժմ էլ գործածվում է Կովկասում (սակավ), որից էլ Բարխուդարեանց ազգանունը։

— 1. Բարհուդար, եղբորորդի ռէս Մարտիրոսի, որ Բերկրիում, Կարապետ քահանային գրել տվեց մի Աւետարան, 1473 թ.—Ձեռ. Վասպ. 467։

— 2. Պարխուտար խօճա, բժիշկ Սեբաստացի (ԺԶ դար).— Թորգոմեան, Ներբ. 27, Manụs. briṭ. mus. 314 բ, Բասմաջեան, Ամիրտ. անգ. էջ եբ։

— Ավելի ուշ ունինք Պարխուտար 1745 թ. (Գալէմքեարեան, Կենսագր. Սարգ. արք. 214) և անհայտ թվականով Բարխըտար (Ձեռ. Վաստ. 342) և Բարհորդար (անդ, 430 երկիցս)։

†ԲԱՐՁՐ, ար. <հյ. բարձր բառից. մի անգամ հիշատակված է 1420 թ. իբր թարգմանություն օտար մի անվան. այսպես՝ «Ի բռնակալութեան նախանգիս մերոյ (Ռշտունեաց) Բարձր անուն մէլիքի» (Ձեռ. Վաստ. 327)։ Նույն հիշատակությունը ունի նաև Նոտարք 62, որ սակայն գրում է «բարձր անուն Մէլէքի»։ Սրանով բարձր դառնում է ածական և անհարմար ձևով Մէլէք դառնում է անձնանուն։ Կարծում եմ, որ ճիշտ է առաջինը և մելիքի անունն է علي Ալի, որ արաբերեն նշանակում է «բարձր»։ Անձնանունները թարգմանել անսովոր երևույթ է. բայց այնու ամենայնիվ հաճախ թարգմանված ունինք Գրիգոր=Արթուն և Ստեփաննոս=Պսակ։

†ԲԱՐՁՐԽԱԹՈՒՆ, իգ. <հյ. բարձր+խաթուն բառերից։

— Բարձխաթուն (ր ընկած), կին տանուտեր Սահակի, որ Խիզանում, Յովհաննէս քահանային գրել տվեց մի Աւետարան, 1474 թ.—Ձեռ. Վաստ. 469։

Բարմ տես Բրիմ։

*ԲԱՐՇԱՄԻՆԱՑ, ար. Բաբելացոց Ba‘al «Բէլ» աստուածն է, որ բուն նշանակում է «տեր» և Քանանացոց ու շրջակա ազգերի մեջ պաշտվում էր בעל שמן Ba‘al šamin, ասոր. ܒܥܠܫܡܝܢ Bə‘elšəmīn «Տեր երկնից» անունով (Հիւբշ. 291—2)։ Իր պաշտամունքը մտել էր նաև Հայոց մեջ։ Նրա արձանը Տիգրան Բ փոխադրել էր Միջագետքից և հաստատել Դարանաղեաց գավառի Թորդան գյուղում։ Շինված էր ամբողջապես փղոսկրից և սրա համար էլ կոչվում էր «սպիտակափառ»։—Դիցն Բարշամինայ՝ Ագաթ. § 784 (ձեռ. Բարշիմնիա)=հույն Ագաթ. Βαρσαμήνης.—զԲարշամինայ զպատկերն՝ Խոր. Բ. ժդ. Ուխտ. Ա. կը.—Իբր Ասորեստանեան դիք հիշված է Եզնիկի հայ թարգմանության մեջ, երկու տեղ՝ Բէլշիմ ձևով (տես Կարիէր, Հեթան. հայ. ութ մեհեաններ, Վիեննա 1899, էջ 27, ծան.).—Սարգիսեան, Ագաթ. և իւր բազմ. 152։

ԲԱՐՇՂ (որ և Բարշլ կամ Բաշղ), ար. ծագումն անհայտ։

— Բարշղ Վահևունի, կուսակից Վահան Մամիկոնեանի. մասնակցեց Ներսեհապատի և Վրաց ճակատամարտներին («482

թ»).—Փարպ. հա.—սեռ. Բարսղի՝ Փարպ. հա. հզ.—Բարսլի՝ Փարպ. հզ։

+ԲԱՐՈՒՆԱԿ, ար. < հյ. բարունակ «ճյուղ, ոստ» բառից. իր համազորներն են հուն. Թաղխանոս, Ուլթաղ, հյ. Ջաչուռ, և մանավանդ թրք. Բուդաղ, որ նշանակում է «ճյուղ»։ Դրված է իբր թարգմանություն Բուդաղ անվան՝ Նոր վկ. էջ 360--361։ Մեր մեջ գործածված է սկսած ԺԵ դարից և այժմ էլ դեռ կա։

— Բարունակ, հորեղբայր Խուդադադի, որ Որձոկ գյուղում գրել տվեց մի Ավետարան, 1497 թ.—Տաշյան, Ցուց. 284 բ։

— Բարունակ անունը հիշված է նաև 1521 թ. (Manus. brit. mus. 139 բ), 1622 թ. (Ձեռ. Վասպ. 622) և անթվական մի հիշատակարանում (անդ 629)։

*ԲԱՐՍԵՂ, ար. < հուն. Βασίλειος անունից, որ Βασιλεύς «թագավոր» բառն է և իբրև անձնանուն գործածվում էր նաև հունաց մեջ։ Հայտնի է օրինակ՝ Ս. Բարսեղ Կեսարացի (331—379) նշանավոր հայրը, որի գործերից շատերն էլ թարգմանված են հայերենի։ Գրված է Բարսիղ՝ Խորվկ. 196։ Այս բառը ձևափոխվելով դարձավ ավելի ուշ նհուն. Vasili, որից էլ ռուս. Василий։ Հայերենում ունենք, բացի Բարսեղ ձևից, նաև Բասիլ, Բասիլիոս և Վասիլ ձևերով, որոնք տես առանձին։ Համապատասխան ձևերն են արաբ. ملك Melik, պրս. خسرو Xusrav (Խոսրով) և հյ. Արքայ, Թագուոր։—Հիւբշ. 336։ Գործածական է մեր մեջ Ե դարից մինչև այժմ. սրանից ունենք Բարսեղեան ազգանունը։

— 1. Բարսեղ սարկավագ. կրոնական վեճ ունեցավ Անտիոքի Յովհաննէս և Պոլսի Պրոկղ պատրիարքների հետ՝ Թէոդորոս Մոպսուեստացու աղանդի մասին (436 թ).—Ջամչ. Ա. 528—9։

— 2. Բարսեղ Ճոն, վանահայր Շիրակի դպրեվանից. կանոնավորեց Շարականը («645 թ»), որ այնուհետև ընդհանուր տարածվեց՝ կարգադրությամբ Ներսէս Գ Շինող («641—661 թ») կաթողիկոսի, և կոչվեց իր անունով Ճոնընտիր.—Մխ. այրիվ. 63.—սեռ. Բարսղի՝ Վրդ. լգ.—Ջամչ. Բ. 347, Ձեռ. Մինխ. 29.—Վարդան պատմիչը կոչում է «մեծ ճգնաւոր», որ 7 անգամ տեսակցել է Քրիստոսի հետ. «Մեծն և հանդիսաւոր ճգնաւորն Բարսեղ, մականուամբ Ճոնն կոչեցեալ, որ և ստուգեն թէ եօթն անգամ ետես զՔրիստոս և խօսեցաւ իբր թէ ընդ բուն բարեկամի» (Վրդն. յանթ. 6)։—Իր անունով է կոչվում Կարմիր վանքը, ուր և ա-

վանդատան դռան արձանագրության մեջ հիշված է իր անունը (Շիրակ 16 ա)։

— 3. **Բարսեղ**, վանահայր Գլակա վանքի. հաջորդեց Ստեփաննոսին (Է դար).—Մամիկ. ա. (2 ձեռ. Բարթողիմէոս).—սեռ. Բարսղի՝ Մամիկ. ա։

— 4. **Բարսեղ** եպիսկոպոս, անդամ Նիկիայի 787 թվի եկեղեցական ժողովի.—Չամչ. Բ. 423։

— 5. **Բարսեղ**, որդի Լևոն Ե հայ կայսեր հունաց. Միքայել Բ-ի ապստամբության ժամանակ սա էլ բռնվեց և իր եղբայրների հետ ներքինացվելով՝ բռնի կրոնավոր դարձավ և Եւստաթիոս անունն ստանալով՝ Պրոտի կղզում վանք դրվեց (820).—Չամչ. Բ. 432, Տէր Սահակեան՝ Հայ կայսերք Ա. 194, 334 (Վասիլ ձևով)։

— 6. **Բարսեղ** ոմն հայ, գրիչ. օրինակեց հույն Գէորգ Կիպրացու Աշխարհագրութիւնը՝ 825—830 թվերին.—Տոմաշէկ, Սասուն, Վիեննա 1896, էջ 10։

— 7. **Բարսեղ** երէց Մառաքառայ. իբրև վկա հիշվում է Տաթևի 844 թվի կալվածագրում.—սեռ. Բարսղի՝ Օրբ. լը։

— 8. **Բարսեղ**, վանահայր Ծլաձորի վանքի (Դերջան). հաջորդեց Պետրոսին (Ժ դար).—սեռ. Բարսղի՝ Ասող. Գ. է։

— 9. **Բարսեղ** Հոգևոր, նշանավոր վանական Ժ դարում.—սեռ. Բարսղի՝ Ասող. Գ. է։

— 10. **Բարսեղ**, աշակերտ Գրիգոր Մագիստրոսի, եղբորը և ընկերոջ՝ Եղիսէի հետ իր մոտ առավ Պետրոս Գետադարձ կաթուղիկոսը («1019—1058 թ») և երկուսին էլ եպիսկոպոս ձեռնադրեց։ Ուղեկցեցին Պետրոս Գետադարձին՝ Պոլիս ճամբորդության ժամանակ «1047 թ».—Մագ. Թղ. ե, խե. Ուռհ. 105։

— 11. **Բարսեղ** Բաշխատացի, ուղեկից եղավ Պետրոս Գետադարձին՝ Պոլիս ճամբորդելու ժամանակ «1047 թ»—Ուռհ. 105։

— 12. **Բարսեղ** կաթուղիկոս Անեցի («1081—1113 թ»). որդին էր Վասակի և քեռորդի Գրիգոր Վկայասէր կաթուղիկոսի։ Սրա ձեռքով «1072 թվին» ձեռնադրվեց եպիսկոպոս և կարգվեց կաթուղիկոսական փոխանորդ Անիում։ Երբ Գրիգոր կաթուղիկոսը աթոռը լքած՝ ճանապարհորդում էր Պոլիս, Եգիպտոս և Երուսաղէմ, հայերը Անիի Մանուչէ իշխանի հաճությամբ կաթուղիկոս ընտրեցին Բարսեղին, որ գնաց Հաղբատ և Աղուանից Յովսէփ կամ Ստեփաննոս կաթուղիկոսից օծում ընդունեց («1081 թ»)։ Իր կաթուղիկոսության ընթացքում ցույց տվեց արիական ոգի-

Տեսնելով Թուրքերի ծանր հարկապահանջությունը, գնաց Մելիքշահի մոտ և հայոց համար կրոնական ազատության հրովարտակ ստացավ («1090 թ»)։ Մելիքշահի պաշտպանությունից խրախուսված, այնուհետև Բարսեղը գնաց Հոնի և Թէոդորոս Ալախօսէկ կաթուղիկոսին աթոռից զրկելով, խլեց հայրապետական քողն ու գավազանը («1090 թ»)։ Այցելեց Ուռհա («1091 թ»), Կեսարիա, Անտիոք, ապա դարձյալ Եդեսիա («1093 թ») և Մելիքշահի մահվամբ ծագած քաղաքական շփոթության պատճառով դարձավ իր աթոռը և նորից հաստատվեց Անիում («1093 թ»)։ 1103 թվին դարձյալ դուրս եկավ Անիից, գնաց Եդեսիա, ուր Բալդվին կոմսից մեծ պատիվներ ստացավ։ Կիլիկիայի ուրիշ կողմերն էլ այցելելուց հետո, նոր խռովության պատճառով շտապեց Անի («1105 թ»)։ Վկայասէրը զգալով իր վախճանը, իր մոտ հրավիրեց Բարսեղին և «1105 թ» վախճանվելով, աթոռը թողեց նրան։ Կյանքի մնացյալ մասը Բարսեղը անցկացրեց Կիլիկիայում։ Նա պատրաստվում էր գնալ Երուսաղէմ, բայց տանիքը վրան փուլ գալով, մեռավ «1113 թ»։—Կիր. 56, 57, 61, 62. Գր. տղ. 76. Վրդ. ծթ, կ, կբ, կե, կզ. Ուռհ. 211, 221, 229, 240, 241, 243, 294—5, 300, 324, 329. Գր. եր. 374. Շնորհ. թղ. 323. Օրբ. հա. Միխ. աս. իթ. (=իը). Լմբ. մատ. 535. Յայսմ. մրտ. 30, յուլ. 30. Մխ. անեց. գ. Մխ. այրիվ. 21, 75. Օրբ. ժմ. 15, 16. Օրբ. ողբ. 61. Կրպտ. սարգ. յոյ. Սմբ. պատմ. 87, 91. Սամ. անեց. 117—8, 122. Տաշեան, Ցուց. 25, 82, 92, 638, 751.—սեռ. Բարսղի՝ Վրդ. ծը, ծթ; կգ, կդ, հզ, հը. Ուռհ. 257, 268, 277, 329. Միխ. աս. իթ (=իը). Յայսմ. յուլ. 30. Կրպտ. սարգ. յոյ. Մխ. անեց. ա. Սամ. անեց. 113, 124. Տաշեան, Ցուց. 334 ա.—Բարսեղի՝ Կիր. 63. Ուռհ. 221, 240, 300, 330. Յայսմ. յուլ. 30.—բցռ. ի Բարսեղէ՝ Յայսմ. յուլ. 30.—Բասիլիոս՝ Շնորհ. վիպ. 1344, 1488. Շնորհ. թղ. 298. Սամ. անեց. 123. Վրք. շնորհ. 29—32. Տաշեան, Ցուց. 350 ա։—Շիրակ 10, 98։

— 13. Բարսեղ եպիսկոպոս Սիւնեաց («1143—1148 թ»). Մեղրեցի էր. եղբայր Գրիգորի. հաջորդեց Ստեփաննոս Բ-ին. Ազատապատի մոտ ընկավ Երասխի մեջ ու խեղդվեց. Թաղվեց Մաղարդայ վանքում.—Օրբ. կբ, հա.—սեռ. Բարսղի՝ Օրբ. կբ։—Սիսական 20 բ, 238, 303 բ, 507 ա։

— 14. Բարսեղ Քեսունցի, նշանավոր վարդապետ. խոստովանահայր Պաղտինի, որ Մարաշի և Քեսունի մեծ իշխանն էր։ Սրա մահվան վրա («1148 թ») գրեց մի ողբ։ Պոլսից բերել

տվեց Մեկնութիւն կաթուղիկեայց (Ոսկեբերանի), որ թարգմանելու համար հանձնեց Գրիգոր դպրին (Թերևս Սկևռացին է)։ Մեռել է 1162 թ.—Գր. եր. 375, 428. Զարբ. Հին դպր. 705. Սիսուան 231, 516։

— 15. Բարսեղ, վարդապետ Սեբաստիայի. փոխադրեց Գոհարինեան նահատակների մարմինները Ս. Հրեշտակապետ վանքի մոտ՝ 1187 թ.—Ալիշան՝ Շնորհ. էջ 226։

— 16. Բարսեղ եպիսկոպոս, որին Պաղտին իշխանը իր նախնին է կոչում (ԺԲ դար).—Զարբ. Հին դպր. 753։

— 17. Բարսեղ, գրել է Մեկնութիւն Քերականին, որ Յովհաննէս Երզնկացին հիշում է Մագիստրոսի, Համամի և Արիստակէսի հետ (նախ քան 1281 թ).—հայտնի չէ թե ով է.—Հայապ. 510։

— 18. Բարսեղ կաթուղիկոս, հիշված 1181 թ.— Զարբ. Թրգմ. 159, Յովսէփեան, Նիւթեր և ուս. Ա. 15. Ձեռ. Վենետ. Ա. 395 (Սարգիսեան այս Բարսեղը համարում է հակաթոռ կաթուղիկոս, որ նստել է Գրիգոր Տղայի կենդանության ժամանակ։ Բայց Օրմանեան և Զամինեան այդպիսի հակաթոռ չգիտեն։ Ուստի միտում է «հայրապետ» տիտղոսով հասկանալ Հոռոմոսի վանքի վանահայր)։

— 19. Բարսեղ Ա. արքեպիսկոպոս, երրորդ առաջնորդ Հաղբատի. հաջորդ Գէորգ Ա-ի. ժամանակակից Վրաց Թամար թագուհու, որի մեծարանքին արժանացավ։ Ինքը Խաչեն գավառից էր, Ուքանանց ազնվական տոհմից, խնամութեամբ կապված Կիւրիկեան տան հետ։ Իւանէն հրավիրեց նրան և ոչ միայն Հաղբատի առաջնորդութիւնը, այլ և ամբողջ Վրաստանի Հայոց հովվութիւնը նրան հանձնեց։ Սա զարդարեց Հաղբատը նորանոր շենքերով։ 1172 թվին գրել տվեց Սարգիս գրչին Բարսեղ Կեսարացու գործերը՝ Հաղբատի «ամենափարթամ» գրադարանի համար։ Հիշված է 1180—89 թվերի արձանագրությանց մեջ։—Կիր. 56.—սեռ. Բարսեղի՝ Կիր. 56.—Զարբ. Թրգմ. 339—341, 344. Աթան. յոբ. ժբ. Հայապ. 382. Յովսէփեան՝ Նիւթեր և ուս. Ա. 66, Ձեռ. Վենետ. Բ. 1267—8։

— 20. Բարսեղ որդի Գրիգորի. գրիչ. օրինակել է մի Աւետարան, 1200 թ.—Ձեռ. Վենետ. Ա. 548։

— 21. Բարսեղ, հայրապետ Կամախի Եղիվանք անապատի, 1203 թ.—Ձեռ. Վենետ. Ա. 420 (Սարգիսեան համարում է Բարսեղ կթ. Անեցին)։

— 22. Բարսեղ «սպասաւոր բանի». տես Գրիգոր 1203 թ։

— 23. Բարսեղ Բ. եպիսկոպոս և առաջնորդ Անւոյ. էր որդի Գրիգոր Ապիրատի՝ որդւոյ Հասան մագիստրոսի. իր անունը հիշված է արձանագրության մեջ (ըստ Շիրակ 96 բ) 1160—1191 թվերին։ Մասնակցեց հայ-հույն կրոնական միության վեճերին, անդամ Հռոմկլայի ժողովի («1179 թ»)։ Տեսնելով կիլիկեցոց կաթոլիկամիտ տրամադրությունները՝ Արևելքի հայերը կաթուղիկոս դրին նրան «1195 թ»։ Հիշված եմ գտնում դեռ 1198 թ. (Արձ. Շիրակ 22 ա)։Հրավիրեց Վրաց Գէորգի թագավորին՝ գրավել Անին։ Մեռել է 1203 թ.—սեռ. Բարսղի՝ (Գր. տղ. 51), Լմբ. 232.—Բասիլիոս՝ Շնորհ. պտճ. 198.—Ալիշան՝ Շնորհ. 13. Այրարատ 47. Հայապ. 390. Ցովսէփեան՝ Խաղբակեանք 15. Շիրակ 17, 21, 22, 27, 41, 85, 96, 100, 164։

— 24. Բարսեղ, քահանայ Մշոյ. նվիրատու ձեռագրի, 1204 թ.—Ջեռ. Վենետ. Բ. 473, Հայապ. 450։

— 25. Բարսեղ, առաջնորդ Այրիվանից, 1214 թ.—Այրարատ 349 բ։

— 26. Բարսեղ եպիսկոպոս, ստացող Հաւաքածոյի (Վենետ. № 345), որ գրեց Վարդան գրիչը՝ 1220 թ.—Աթան. յուշ. ժը։

— 27. Բարսեղ, առաջնորդ Դրազարկի և արքեպիսկոպոս Սսոյ. Վարդան գրչին գրել է տվել վկայաբանության մի ժողովածու 1220 թ. նույն թվին օրինակել է ինքն էլ Մարգարէութեանց մի մասը.—Զարբ. Հին դպր. 707, Սիսուան 233—4, Ջեռ. Վենետ. Բ. 1136—8։

— 28. Բարսեղ քահանա, հարազատ Պաղտին արքայազն իշխանի (1222 թ?).—Զարբ. Հին դպր. 753։

— 29. Բարսեղ, երեց Սեբաստացի, հայր Նորաւգէս գրչի (1222 թ).—Տաշեան, Ցուց. 558 բ։

— 30. Բարսեղ, հայր մեծահռչակ անապատի Կողղոյն (1224 թ).—Զարբ. Թրգմ. 729. Աթան. յուշ. ը (գրված է «կղզւոյն»). Ջեռ. Վենետ. Բ. 36։

— 31. Բարսեղ, գրիչ. Հռոմկլայում օրինակեց Մխիթար Գոշի Դատաստանագիրքը՝ Մարկոս արքեպիսկոպոսի համար, 1238 թ.—Հայապ. 458։

— 32. Բարսեղ կրոնավոր, որի ձեռքով Հռոմից ստացված մագաղաթի վրա Կիւրեղ գրիչը՝ Կոստանդին Ա կաթուղիկոսի հրամանով, Հռոմկլայում օրինակեց Աւետարանը, 1249 թ.—Շահաղիզ, Պատմ. պատկ. 119։

— 33. Բարսեղ Գ. որդի Ամիր-Երկաթի. առաջնորդ Անւոյ և Հոռոմոսի վանից, 1229—1253 թ.—Շիրակ 20, 23, 24, 28, 96, 164, 165. Ցովսէփեան, Խաղբակեանք 15։

— 34. Բարսեղ քահանայ, դեսպան Թաթարաց Բաթու խանի. ուղեկցեց Հեթում Ա-ին՝ Մանգու խանի մոտ գնալու ժամանակ («1254 թ»).—Կիր. ծզ. Հայապ. 462.—սեռ. Բարսղի՝ Կիր. ծզ։

— 35. Բարսեղ, եղբայր Նոր Գետիկի առաջնորդ Խաչատուր վարդապետի, որի հետ միասին շինեցին այնտեղ Ս. Գէորգի տաճարը (1254 թ).—Կիր. ժե։

— 36. Բարսեղ հայր, միաբան Հաղբատի. նրա հիշատակին՝ Յակոբ և Մարգար կանգնեցրին Ս. Սարգիս խաչքարը Հաղբատում, 1255 թ.—Տաշեան, Ցուց. 984 բ, Ցովսէփեան, Նիւթեր և ուս. Ա. 63։

— 37. Բարսեղ Ռուբինեանց. գրիչ. Հեթում Ա-ի եղբայր Ցովհաննէս արքեպիսկոպոսի համար օրինակեց Աստուածաշունչը՝ 1270 թ.—Ձեռ. Կարին. էջ 10։

— 38. Բարսեղ արքեպիսկոպոս Մաշկևորցի կամ Ճոն. որդի Կոստանդին պայլի և եղբայր Հեթում Ա. թագավորի. արքայեղբայր. առաջնորդ Դրազարկի և արքեպիսկոպոս Սսի (1241—1275)։ Նստում էր Կիլիկիայի Մաշկևոր վանքում, ուստի և կոչվել է Մաշկևորցի։ Եղավ փոխանորդ կաթուղիկոսության։ Գրել է Մեկնութիւն Մարկոսի, որ տպված է Պոլիս 1826, այս վերնագրով. «Մեկնութիւն Ս. Աւետարանին որ ըստ Մարկոսի, արարեալ երանելւոյն Բարսղի... Ճոն կոչեցելոյ»։ Այս գրքից է հետեւյալ իմաստալից հատվածը, որ իմ էլ կյանքի նշանաբանը եղավ. «Որպէս յորժամ ի գլուխս լերանց ելանեմք, փոքր երևին քաղաքք և պարիսպք ի դաշտավայրս, իսկ մարդիկ մրջեան չափ երևին, սոյնպէս յորժամ ի բարձր իմացուածս և յիմաստութիւնս ելանես, ոչինչ երկրայինքս քեզ թուին, այլ ամենայն փոքր և արհամարհք երևին. մեծութիւնք և փառք և զօրութիւնք և որ այլ ինչ յայսպիսեացս»։—Մեռել է «1275 թ»։—Ասում են թե Մարկոսի մեկնության ինքնաձեռագիր բնագիրը (1325 թվից) գտնվում է Էջմիածնում (Ձեռ. Կարին. 156)։ Բայց ինչպես կարող է 1325 թվի ձեռագիրը բնագիր լինել, երբ հեղինակը մեռել է 1275 թվին։ Ուստի պետք է ենթադրել թե Դրազարկի առաջնորդ Բարսեղ արքայեղբայրը ուրիշ է և Բարսեղ Մաշկևորցի՝ հեղինակ Մեկնութեան Մատթէի, ուրիշ է։ Օրմանեան (Ազգապ. 1391) ենթադրում է թե Մարկոսի Մեկնութեան հեղինակն է

Բարսեղ Շնորհալի, դասընկեր Իգնատիոս և Սարգիս Շնորհալինե-
րի (ԺԲ դար). իսկ հրատարակիչները սխալմամբ այդ գործը
վերագրում են Բարսեղ Ճոնին։ Ալիշանն էլ (Սիսուան 408, 517,
579 գ) իրարից տարբեր է դնում Բարսեղ արքայեղբայր առաջ-
նորդ Դրազարկի (մ. 1275 թ.) և Բարսեղ Մաշկևորցի, հեղինակ Մեկ-
նութեան Մարկոսի (գրված 1325 թ)։ Տաշեան (Ցուց. 320ա) ըստ
ձեռագրին դնելով Բարսեղ արքեպս. եղբայր Հեթումի՝ հեղինակ
Մեկնութեան Մարկոսի, ցանկում (էջ 1068 գ) իրարից տարբե-
րում է Մաշկուորցին հեղինակ Մեկնութեան, որ վերագրել են
Արքայեղբօրը։—Մխ. աս. յաւել. և յիշ. Բրս. մրկ. 460. Յիշատ.
(Karst, Դատաստ. էջ ե).—սեռ. Բարսղի՝ Կիր, լա. Եղն. պտճռ.
89.—Բասիլիոս՝ Սիսուան 144բ.—Ձեռ. Միւնխ. 29 բ. Հայապ.
534. Ջարբ. Հին դպր. 707. Ջարբ. Թրգմ. 221? 567, Սիսուան
75, 144 բ, 233—4։

— 39. Բարսեղ, գրիչ. Դրազարկի վանքում Թորոս վարդա-
պետի համար գրեց մի Աւետարան, 1282 թ.—Manus. brit. mus.
18 ա։

— 40. Բարսեղ վարդապետ, ուսուցիչ Կիլիկիայի Աղբերց
վանքում. արդեն՝ վախճանված էր 1284 թ.—Տաշեան, Ցուց. 835ա,
1039 ա։

— 41. Բարսեղ քահանա. օրինակեց Ճառընտիրը 1290 թ.
—Ջարբ. Թրգմ. 728։

— 42. Բարսեղ, գրիչ «1296 թվից». տես Վասիլ։

— 43. Տէր Բարսեղ, որդի Սահակի, որի հիշատակին մի
խաչ կանգնեցրեց Վայոց ձորի Արփա գյուղի եկեղեցում, 1299
թ.—Սիսական 182։

— 44. Բարսեղ գրիչ Աստուածաշնչի (ԺԳ դար).—Ջարբ.
Թրգմ. 152—5։

— 45. Բարսեղ վարդապետ, որդի Սմբատի. իր խնդրով
Ստեփաննոս Օրբելեանը գրեց Նաւակատեաց ճառը՝ 1302 թ.—
Օրբ. հկճռ. է։

— 46. Բարսեղ, գրիչ. օրինակեց Սաղմոսը և Սողոմոնի
գրքերը՝ 1305 թ.—Manus. brit. mus. 47 ա։

— 47. Բարսեղ, եպիսկոպոս Կապանի 1307—14.—Սիսուան,
էջ 192 ա։

— 48. Տէր Բարսեղ, մեռավ 1315 թվի ապրիլի 19-ին, ըստ
Յիշատ. (Karst, Դատաստ. էջ ե).—հայտնի չէ թե ով է։

— 49. Բարսեղ վրդ. Խորին վանուց. անդամ Սսոյ «1307

Թվի» և Ատանայի «1317 Թվի» եկեղեցական ժողովի.—Ազգապ. 1787, 1819։ Սիսուան 151, 258։

— 50. Բարսեղ աբեղայ, ընկեր Մխիթար Սասնեցու. հիշված 1321 թ. (տես Յովսէփեան, Մխ. սասն. էջ 16, Զարբ. Հին դպր. էջ 752։

— 51. Բարսեղ, եղբայր Վարդան վարդապետի Ակների վանից, 1323 թ.—Տաշեան, Ցուց. 790 բ։

— 52. Բարսեղ Երէցորդի, որդի Վահրամ քահանայի. գտնվում էր Կոստանդին Դրազարկցի կաթողիկոսի ծառայության մեջ, երբ սա գնաց Եգիպտոսի Մելիք Նասր սուլթանի մոտ. Հալէպում Բարսեղը գնեց մի Ավետարան և բերելով Սիս, կազմել տվեց Ստեփաննոս Երկաթենց քահանային, 1323 թ.—Ձեռ. Կես. ածած. 64 բ։

— 53. Բարսեղ, եպիսկոպոս Տարսոնի. Լևոն Ե թագավորի կողմից դեսպան գնաց Հռոմի պապի մոտ, Կիլիկիայի համար օգնություն խնդրելու, «1324 թ».—Սիսուան 73, 271, Ազգապ. էջ 1840։

— 54. Բարսեղ վարդապետ. գրեց «յիշատակարան Աւետարանի», 1325 թ.—Թորոս աղբար, Բ.՝295։

— 55. Բարսեղ աբեղայ, որդի Մխիթար գրչի, որ օրինակել է Աստուածաշունչը, Եկեղեաց գավառի Երկայնի վանքում, 1328 թ.—Ձեռ. Վենետ. Ա. 160։

—56. Բարսեղ քհ. Խողկերտի (Կիլիկիա). միանալով Յովհաննէս քահանայի հետ, դիմեցին Ալեքս միակեցին և սրա ծախսով Սիմէոն գրչին գրել տվին մի Ճաշոց՝ 1335 թ.—Սիսուան 119։

— 57. Բարսեղ, որդի Յովհաննէս քահանայի. գրիչ. Բասենի Մժնկերտ գյուղում օրինակեց Ավետարանը, 1336 թ.—Ձեռ. Վասպ. 190—191։

— 58. Բարսեղ, արքեպիսկոպոս Մսիսի՝ 1342 թ.—Սիսուան 250 ա։

— 59. Բարսեղ, ավագերէց Ատանայի. անդամ Սսոյ ժողովի «1343 թ».—Ազգապ. 1870։

— 60. Բարսեղ վարժապետ Մեծքարի. անդամ Սսոյ «1343 Թվի» կրոնական ժողովի.—Սիսուան 196 բ (լատին օրինակում տեղը կոչված է Mageguar, որ Ալիշանը հասկանում է Մեծքար։ Հմմտ. նաև Ազգապ. 1869—70)։

—61. Բարսեղ, եպիսկոպոս Անկիւրիայի, անդամ Սսոյ «1343 Թվի» եկեղեցական ժողովի.—Ազգապ. 1869։

— 62. Բարսեղ, եպիսկոպոս Բարձրբերդցի. անդամ Սսոյ «1343 թվի» եկեղեցական ժողովի.—Ազգապ. 1869։

— 63. Բարսեղ եպիսկոպոս Իկոնիայի. անդամ Սսոյ «1343 թվի» եկեղեցական ժողովի. Մխիթար Ա կաթողիկոսի («1341—55 թ») կողմից ուղարկվեց Կանչ՝ կրոնական մի վեճի քննության համար.—Ազգապ. 1889։

—64. Բարսեղ եպս., ատենադպիր Մխիթար Ա. կաթողիկոսի. Իկոնիայի Բարսեղ եպիսկոպոսի հետ (№ 63) ուղարկվեց Կանչ՝ կրոնական մի վեճի քննության համար. անդամ Սսոյ ժողովի «1343 թ».—Ազգապ. 1869, 1889։—Տարբեր է նախորդից, իսկ Սիսուան 194ա երկուսը իրար է միացրել։

— 65. Բարսեղ եպիսկոպոս Սսոյ. անդամ Սսոյ «1343 թվի» եկեղեցական ժողովի.—Ազգապ. 1869։ (Սիսուան 234ա՝ հիշում է 1341—2 թ. իբրև առաջնորդ Դրազարկի և արքեպիսկոպոս Սսոյ միանգամայն)։

— 66. Բարսեղ վրդ. Մաշկևորցի, անդամ Սսոյ ժողովի «1343 թ».—Ազգապ. 1870։

— 67. Բարսեղ եպս. կաթողիկոսարանի. անդամ Սսոյ եկեղեցական ժողովի «1343 թ».—Ազգապ. 1869։

— 68. Բարսեղ պատրիարք Երուսաղեմի, հաջորդեց Յովհաննէս Ճօլինին և նստավ 1341—1356 թ. երբ մեռավ (Աղաւնունի)։

— 69. Բարսեղ՝ հայր Անտոն նավաստու, որ բնակվում էր Վենետիկում, 1395 թ.—Հայ-Վենետ. 171։

— 70. Բարսեղ Ա. կաթողիկոս Աղթամարի. հաջորդ Յակոբ Ա-ի և նախորդ Սարգիս Ա-ի (ԺԴ դար).—Հաւաք. 60 (կեղծիք)։

— 71. Բարսեղ քահանա Սիւնեցի, որդի Դաւթի, քեռորդի Գրիգոր Տաթևացու և եղբայր Ադամգրքի հեղինակ Առաքել Սիւնեցու։ Գրեց և վերջացրեց մի Աւետարան, 1393 թ։ Նույն թվին գնաց կաթողիկոսի մոտ. ճանապարհին անօրենները սպանեցին նրան։ Իր եղբայրը Առաքել՝ 7 ամիս ամեն կողմ որոնելուց հետո, գտավ նրան Եղջախոռ սարում սպանված և Վաղադնոյ վանքում թաղեց նրան։ Այնուհետև Առաքելը նույն Աւետարանը ծաղկեց և ցանկեց, 1407 թ.—Ադամ. 229, 270, 321, 327. Սիսական 240ա. Տաշեան, Ցուց. 1069ա.—սեռ. Բարսեղի՝ Տաթև. ամ. 721։—Ընդարձակ հիշատակությունը տես Ձեռ. Թաւր. 83։

— 72. Բարսեղ քահանա, գրիչ. Երզնկայի Կալամտի գյուղում գրեց մի Աւետարան, 1394 թ.—Թորոս աղբ. Բ 368, Նօտարք 6։

— 73. Բարսեղ, միաբան Խիզանի Ս. Խաչ վանքի. հիշված է 1402 և 1413 թվերին.—Նոտարք 17, 42, 43։

— 74. Բարսեղ, մերձավոր Սարգիս եպիսկոպոսի, որ Կոթերփորոյ վանքում օրինակեց Յայսմաւուրքը, 1427 թ, երբ Բարսեղը արդեն մեռած էր «տղայ հասակաւ».—Նոտարք 85։

— 75. Բարսեղ, քահանա Ուրանց գյուղի, 1433 թ.—Ձեռ. Վասպ. 366։

— 76. Բարսեղ, եպիսկոպոս Ամրդօլու վանից. ստորագրում է իբրև վկա վանքի ջաղացքի գնման, 1437 թ.—Նոտարք 112։

— 77. Բարսեղ, միաբան Աղթամարի Ս. Խաչ վանից, 1441 թ. —Ձեռ. Վասպ. 384, Նոտարք 127։

— 78. Բարսեղ, եպիսկոպոս Գլակայ վանից. Թղթակից անդամ Էջմիածնի մեծ ժողովի՝ 1441 թ.—Մեծոփ. յիշ. ա։

— 79. Բարսեղ վարդապետ, վանահայր Ուշի Ս. Սարգիս վանքի, 1443 թ.—Նոտարք 130։

— 80. Բարսեղ, միաբան Գաւաշի Ս. Վարդան վանքի, 1444 թ.—Ձեռ. Վասպ. 389, Նոտարք 46 (վերջինս դնում է 1415 թ. այսինքն ՊԿԴ փոխանակ ՊՂԳ. մին կամ մյուսը սխալ է)։

— 81. Բարսեղ եպիսկոպոս, առաջնորդ Սեպուհ լեռան Լուսաւորչայ վանից, հիշված 1442—45 թվերին.—Նոտարք 129, 135։

— 82. Տէր Բարսեղ, ուսուցիչ Զաքար աբեղայի, որ գնեց մի Շարակնոց, 1458 թ.—Ձեռ. Հալէպի, Ա. 27 բ։

— 83. Բարսեղ, միաբան Ամրընայ վանից, 1467 թ.—Ձեռ. Վասպ. 449։

— 84. Բարսեղ քահանայ, մերձավոր Մկրտիչ քահանայի, որ օրինակեց Յիսուս որդին, Բիւրական 1469 թ.—Ձեռ. Վենետ. Բ. 1112—3։

— 85. Բարսեղ, հայրապետ Տիվրիկի Վաւտրա գյուղի Ս. Աստուածածին վանքի, 1469 թ.—Թորոս աղբար Բ. 363=Ձեռ. Վենետ. Ա. 751.

— 86. Բարսեղ քահանայ. շնորհեց իր Գանձարանը Մանուէլ քահանային՝ օրինակելու համար, 1478 թ.—Ձեռ. Դաշեան, Ա. էջ 39 բ։

— 87. Բարսեղ քահանա. գրիչ. Աւետիք քահանայի համար օրինակեց Աւետարանը, 1480 թ.—Ձեռ. Հալէպի, Ա. 68 աբ։

— 88. Բարսեղ քահանա, եղբօրորդի Յովհաննէս եպիսկոպոսի, որ Խիզանում, Յովհաննէս քահանային գրել տվեց նրա համար մի Աւետարան, 1486 թ.—Ձեռ. Վասպ. 503։

—89. Բարսեղ քահանայ, գրիչ. Բաջբերունեաց Ասպուինակին գյուղում օրինակել է Նարեկը՝ 1488 թ.—Ձեռ. Կարին. 176։

— 90. Բարսեղ, որդի Սուլթանշահի, որ Աղբակի Էրնկանի գյուղում, Մարգար գրչին գրել տվեց մի Աւետարան, 1490 թ.—Ձեռ. Վասպ. 512։

— 91. Տէր Բարսեղ, քեռորդի Խոնաքար տիկնոջ, որ Խորոտկայ վանքում գրել տվեց Աւետարանը, 1490 թ.—Ձեռ. Նոր-Բայազ. 23 ա։

— 92. Բարսեղ, եպիսկոպոս Գեղարդի, թոռն մեծին Պռօշի, հաջորդեց Ստեփաննոս եպիսկոպոսին, 1493 թ.—Թորոս աղբար, Բ. 304, Յովսէփեան՝ Խաղբակեանք 240։

— 93. Բարսեղ եպիսկոպոս, առաջնորդ Սանահնի վանուց, հիշված է 1490 թ. (Բարխուտարեանց, Աղուանից երկ. 182) և 1497 թ. (ՀԱ 1887, 56 ա)։

— 94. Բարսեղ Բ, կաթուղիկոս Աղթամարի, հաջորդ Դաւիթ Դ-ի և նախորդ Ներսէս Գ-ի (ԺԵ դար).—Հաւաք. 61 (կեղծիք)։

— 95. Բարսեղ քհ. Արճիշեցի. գրել է Պարսից թագավորների պատերազմների պատմությունը տաճիկների հետ՝ սկսած Շահ Իսմայիլից՝ 1501—1504 թ. մեծ կարևորություն ունի Տուրուբերանի և Վասպուրականի պատմության համար.—Հայապ. 129, Ձեռ. Դաղեան, Բ. 59ա։

— 96. Բարսեղ Գ. աթոռակալ Ստեփաննոս Ե. Սալմաստցի և Միքայէլ Սեբաստացի կաթուղիկոսների. ընտրվեց «1557 թ» և մեռավ «1567 թ».—Առաք. պատմ. 338, Զամչ. Գ. 519, 525. Ազգապ. 2246, 2258. Ձեռ. Վենետ. Ա. 529, Այրարատ 231։

— 97. Բարսեղ վրդ. Վարագեցի. գրել է Պարսից և Օսմանցոց պատերազմների պատմությունը՝ ԺԶ դարի վերջերում. «զառումն Թաւրիզոյ յՕսման փաշայէն, յաւուրս Խուտաբանդայ շահին և դարձեալ պաշարելն նոյն քաղաքին ի Պարսից, զկնի մահուն Օսմանայ և անտանելի տառապանք և տուայտանք բնակչաց քաղաքին Երևանայ և սահմանակից գիւղօրէից նորին, յերեսաց անհեղ պատերազմացս այսոցիկ...» 1581—1591 թ.—Հայապ. 129, Ձեռ. Դաղեան, Բ. 58ա։

— 98. Բարսեղ վրդ. Գաւառցի կամ Աղբակեցի. աշակերտ Յովհաննէս Բրգուէթ Ոստանցու, Տաթևացու գավազանից. նորոգեց Բաղէշի Ամրդօլու վանքը. անձամբ ուսումնասիրելով արտաքին փիլիսոփայական ուսմունքները, սովորեցրեց նաև իր աշակերտ-

ների. վանքը դարձավ աղբյուր լուսավորության. մեռել է «1615 թ».—Առաք. պատմ. 301—4, 309, 340, Ազգապ. 2488, Նոտարք 81 ծան. Թորոս աղբ. Բ. 484։

— 99. Բարսեղ Պետրոս Դ. Ավգատեան, կաթուղիկոս կաթողիկէ Հայոց «1780—88 թ». հաջորդեց Միքայէլ Պետրոս Գ-ի.—Ազգապ. 3187։

†ԲԱՒԱԿԱՆ, իգ. < հյ. բաւական բառից, իբր թարգմանություն թրք. Եքար անվան, որ նույնպես իգական է։ Ավանդված չէ հնից. բայց այժմ գործածական է։

ԲԱՒՐԻՆԵԱ (կամ Բաւրինա), իգ. ծագումն անհայտ։

— 1. Բաւրինեա, դուստր Կիւրիկէ Գ-ի և քույր Մածնաբերդի Աբաս Բ (մ. 1192) թագավորի. խնամակալ եղավ Աղսարթանի, որ տես.—Կիր. 72. Justi 66 ա. Զամչ. Գ. 186. Հայապ. 392։

— 2. Բաւրինայ ոմն հիշված է իբր նվիրատու Թանատի վանքի, բայց արձանագրության թվականը հայտնի չէ (Սիսական 123)։

*ԲԴՐԻԽԱՆ, իգ. < արաբ. بدر badr «լրացյալ լուսին» (նշան անհամեմատ գեղեցկության)+պրս. xān բառերից։ Անշուշտ շատ հետին։ Գտնում եմ երկու անթվական հիշատակության մեջ՝ Ձեռ. Վասպ. 273 և 993։

*ԲԵԹՂԵՀԵՄ, իգ. < եբր. בית לחם Beit-lexem բառից, որ մի փոքր քաղաք է Պաղեստինում. նշանավոր է սակայն նրանով, որ այնտեղ են ծնվել Դաւիթ մարգարեն և Քրիստոսը։ Այժմ էլ ուխտատեղի և սրբավայր է։ Բուն նշանակում է «տուն հացի» (Gesenius 97 ա)։ Գործածական է այժմ Կովկասում, իբրև իգական անուն, կրճատ Բեթղեմ ձևով։ Ավելի աղավաղ ձևով գտնում եմ մի անգամ գործածված՝ 1709 թ. Պեթխան (Ձեռ. Սեբ.=ՀԱ. 1928, 493)։

Բեժան տես Վիժան։

ԲԵԺԳԷՆ, ար. ծագումն անհայտ. բայց տես Պեշգեն։

— Բեժգէն, կաթուղիկոս Աղուանից. հաջորդեց Գագիկ-Գրիգորիսին. հակառակ կրոնական կոչումին, ամուսնանալով, վռնտվեց աթոռից (1155 թ).—Կիր. գ, ը։

*ԲԵԼԹԵԼ, իգ. < կարծում եմ եբր. ביתאל Beitel քաղաքի անունից, որ գտնվում է Պաղեստինում։ Այստեղ տեսավ Յակոբ երազում Աստուծուն (Ծն. իը. 12—19). այստեղ էին պահվում տապանակը և վկայության խորանը։ Բուն նշանակում է «տուն

Աստուծոյ» (Gesenius 96 բ)։ Հայերէն տառադարձվում է Բերիլ (Ծն. ժբ. 8), որ դարձել է մեր մէջ իգական անուն, ճիշտ ինչպես Բեթղեհեմը։ Նախասութեան (articulation anticipée) ձայնաբանական օրենքով Բերիլ կարող էր դառնալ Բելրիլ։ Այս ձևով հիշված եմ գտնում մի անգամ 1645 թ. (Bodleian 18)։

ԲԵԼՈՒՀԻ, իգ. ծագումն անհայտ (որովհետև կարելի չէ մտածել Բել բռնակալի մասին)։

— Բէլուհի, դուստր Առաքել Կախմխեցու, որ ազատեց մի Աւետարան, 1383 թ. (տես էջ 209, № 39)։—Ձեռ. Հալէպի, Ա. 79 ա։

ԲԵԽ, ար. < պրս. بیخ bīx (հին հնչումով bēx) «արմատ» բառից?

—1. Բեխ Անեցի, բարեպաշտ անձ, որ սովի ժամանակ անթաղ մեռելներից 6000 դիակ թաղեց (ժԱ դար).—Վրդ. կգ։ Շիրակ 98 բ։

— 2. Պեխ, հայր Սաֆար նահատակի (1522 թ).—սեռ. Պեխի ձևով ունի Սամ. անեց. շար. 176=Առաք. պտմ. 486. «ՁՀԱ. այրեցին (մահմետականք) զՊեխին որդին զՍաֆարն»։

ԲԵԽԴ, ար. ծագումն անհայտ։

— Բեխդ Շիրակունի. իշխան. Անտիոքի դուքսն էր. 1065 թվին գտնվելով Ուռհայում, Նշենիկ բերդի առաջ ջարդեց Թուրքերին։ Հունաց Տուկիծ կայսեր պահանջքով հունադավան դարձավ. բայց որովհետև իր նոր կրոնին հավատարիմ չէր, ուստի իր խոստովանահայր հույն աբեղան խեղդեց նրան Անդրիոն բերդում (1076 թ).—Վրդ. կ (հրտր. Էմինի՝ Բեղիդ).—ավելի սովորական է Պեխտ՝ Ուռհ. 157—8, Պիխտ՝ Ուռհ. 214 կամ Եպիխտ՝ Ուխտ. 214.—սեռ. Պեխտին՝ Ուռհ. 157, Պեղտին՝ Ուռհ. 157։—Ջամչ. Բ. 972 և Ալիշան (հրտր. Վրդ. 105 ծան.) ասում են թե բուն անունն էր Խաչատուր կամ Խուդադար։ Իսկ Ալիշան բեխտ բառը հանում է լտ. veste «զգեստավորող պաշտոնյա» բառից!

ԲԵԿԱՐ, ար. թե իգ. ծագումն անհայտ. հիշված է մի անգամ Բեկար ձևով՝ 1327 թվից ավելի ուշ գրված անթվական մի հիշատակարանում.—Ձեռ. Ագուլ. (Արրտ. 1911, 462)։

*ԲԵԿՐԻ, իգ. < արաբ. بکر bikr «կույս» բառից. մի անգամ հիշված է 1487 թ? Բեկրի կին Հանէսի, որ փրկանքով ազատել է մի Աւետարան, Ոստանում (Ձեռ. Վասպ. 115).

*ԲԵՀ, իգ. < պրս. به bih «լավ, բարի» բառից, որի հին ձևն է beh > հյ. վեհ։ Մի անգամ հիշված եմ գտնում Բեհ ձևով՝ անթվական

մի հիշատակարանում, ԺԴ—ԺԵ դարից.—Ձեռ. Սանաս. շար. (ՀԱ 1921, 173)։

*ԲԵՀԱԴ, ար. թե իգ. <պրս. بیحد bīhadd (հին ձևով behadd) «անսահման» (իբր թե անսահման գեղեցիկ)։ Ավանդված է մի անգամ, արևմտյան տառադարձությամբ Պէհատ ձևով, անթվական մի հիշատակարանում (բայց 1227 թվից ավելի ուշ)՝ Թորոս աղբ. Բ. 367։

*ԲԵՀԲՈՒԴ, ար. <պրս. بهبود Bihbūd անունից։ Այս անունով հայտնի են Behbūd եղբայր Ցաղկերտ Ա-ի, Behbūd որ գրեց Կալիլա և Դիմնայի առաջաբանը, Behbūdh զորավոր Զենջի (879), Behbūd խան, պալատական Շահաբասի (ԺԶ դար) ևն։ Սրա հին ձևն է պհլ. Wēhbōt, որ նշանակում է «բարեհոգի, լավ և առողջ» (Justi 339 բ)։ Հնից ավանդված չէ մեր մեջ. բայց անցյալ դարում գործածական էր Կովկասում. և սրանից է Բեհբուդեան նշանավոր հայ զորավարի ազգանունը։

*ԲԵՀՆԱՄ, ար. <պրս. بهنام Behnām անունից, որ կազմված է به bih «լավ» և نام nām «անուն» բառերից և նշանակում է «լավանուն»։ Այս անունով հայտնի են Behnām սուրբ նահատակ, Բեհնամ-Աբուլ-Խայր-էլ-Հասան-բին-Սուվար-բին-բաբա-բին-բեհնամ-իբն-էլ-Խամմար, քրիստոնյա բժիշկ փիլիսոփա (ծն. Բաղդադ 991 թ), Բեհնամ պարսիկ Համադանցի, Բեհնամ պատրիարք Նեստորականաց (մ. 1456), Բեհնամ խան վրացի, որ Իբրահիմ շահի կողմից ուղարկվելով Նախիջևան, ազատեց ժողովրդին հարկահանների Ձեռքությունից, 1749 թ. (Զամչ. Գ. 843) ևն։ Հին ձևն է Wahūnām, որի կրկնականն էլ կա Wehwehnam > հյ. Վեհվեհնամ (Justi 341 բ)։ Մեր մեջ գործածված եմ գտնում ԺԵ դարից, բայց ավելի հնից կա Բեհնամշահ, որ տես։

— Պեհնամ, մահտեսի, որդի Կիրակոսի և հայր մահտեսի Կիրակոսի, որ նորոգել տվեց մի հին Ավետարան, 1454 թ.—Թորոս աղբ. Ա. 330։

— Բանամ, հիշված է իբր իգական անուն 1608 թ. (Manus. brit. mus. 43բ). բայց արդյոք Բանաւշա=Բանամշա «մանիշակ» անվան կրճատումը չէ՞։

*ԲԵՀՆԱՄՇԱՀ, ար. <նախորդ Բեհնամ անունից+šāh «թագավոր»։ Գործածված եմ գտնում ԺԴ դարում։

— Պեհնամշահ, հայր Ստեփաննոս Հալուկ վարդապետի, որ առաջնորդն էր Թաւրիզի. հիշված է 1311 թվին գրված մի Ավետարանում.—Ձեռ. Թավր. 71ա։

*ԲԵՀՐԱՄ, ար. < պրս. بهرام Behrām անունից, որի վրա ընդարձակ տես Վահագն և Վահրամ:

— Բերամ, վաղամեռիկ որդի տանուտեր Մանկտաւագի, որ գրել տվեց մի Աւետարան, 1455 թ.—Ձեռ. Վեննա. Ա. 582։

— Բերամ, հիշված 1469 թ. տես Բեհրամշահ։

— Պերամ ձևով հիշված է 1513 թ.—Սիսական 34ա, Օրբ. ժմ. յաւել. 46։

*ԲԵՀՐԱՄՇԱՀ, ար. < պրս. بهرامشاه Behrāmšāh անունից. տես Վահրամշահ։

— Բերամշայ, եղբայր Յովհաննէս աբեղայի. երկուսով ծաղկեցին ու կազմեցին Յիսուս որդու ձեռագիրը, որ գրել էր Մկրտիչ քահանան Բիւրականում, 1469 թ.—Ձեռ. Վեննա. Բ. 1113 (նույնը Բերամ՝ անդ 1114)։

*ԲԵՂՆԱՅ, իգ. ծագումն անհայտ. մի անգամ հիշված է 1693 թ. (Ձեռ. Վասպ. 334)։

ԲԵՆԱ?, ար. ճիշտ ձևն ու ծագումը անհայտ. մի անգամ ունինք՝

— Բենա, որդի Սմբատի և Թոռ Լիպարիտի, տեր Փանձաթաղի. իր կնոջ Սուսայի հետ հողեր են նվիրել Թանատի վանքին, 1348 թ.—Սիսական 122։

*ԲԵՆԵԴԻԿՏՈՍ, ար. < լտ. Benedictus անունից, որ բուն նշանակում է «օրհնյալ, գովյալ»։ Այս անունով կա 15 պապ Հռոմի, որոնցից առաջինը նստել է 574—578 թ. և վերջինը՝ Բենեդիկտոս ԺԵ՝ 1914—1922 թ.—Սրանցից Բենեդիկտոս ԺԲ (1334—1342) թղթակցություն է ունել Կիլիկիայի մեր թագավորների հետ (Չամչ. Գ. 334—7)։ Մեր մեջ մի անգամ միայն ունինք հիշատակված ԺԶ դարում։

— Բենեդիկտոս Նախիջևանցի, որդի Բուդաղի. գերի ընկավ Շահ Թահմազի զորքի ձեռքը. Ջահկեցիք եկեղեցական սպասները ծախելով՝ փրկեցին նրան և ուղարկեցին Հռոմ, իրենց եպիսկոպոս օծել տալու համար (1542 թ).—Չամչ. Գ. 512։

*ԲԵՆԵՐ, ար. < եբր. אבנר Abner անունից, որ նշանակում է «հայր լուսոյ» (Բառ. Ս. Գրոց, 7 ա)։ Հունարենում տառադարձված է 'Αβεννήρ, որից էլ հյ. Աբեններ։ Այս անունով հայտնի է Սաւուղի մի զորավարը, որ դավով սպանվեց։ Դաւիթ նրա վրա մի ողբ գրեց (Բ Թագ. Գ. 33)։ Մեր մեջ բոլորովին անսովոր է այս անունը. մի անգամ գտնում եմ գործածված ԺԳ դարում։

— Բեներ վարդապետ, հանդիսադիր մկրտության և հարսանյաց Թաթարաց Աբաղա խանի (1265 թ).—Կիր. կգ։

*ԲԵՆԻԱՄԻՆ, աբ․ < եբր․ בִּנְיָמִין Binyāmin, որ բուն նշանակում է «որդի աջոյ»․ Յակոբ նահապետի կրտսեր որդին էր, որի անվան ստուգաբանության համար Ս. Գիրքը գրում է. «Ծնաւ Ռաքէլ և դժուարածին եղև ի ծննդեանն. և եղև ի վշտանալն նորա ի ծննդեանն, և ասէ ցնա ծնուցիչն. Քաջալերեաց դի և այդ ևս քո ուստր է։ Եւ եղև ընդ հանել ոգւոյն, քանզի մեռաւ, կոչեաց զանուն նորա Որդի վշտաց իմոց (իբր եբր. בֶּן־אוֹנִי ben-onī) և հայրն կոչեաց զնա Բենիամին («որդի աջոյ իմոյ»). Ծն. լե. 16—19։ Նույնը կրկնում է Տաթև. ամ. 649 «Բենիամին թարգմանի որդի ցաւոց», իսկ Անկ. գիրք հին կտ. 146 «Ես կոչեցայ որդի աջոյ, այսինքն Բենիամին»։ Հին Հայոց մեջ ավանդված չէ. կա միայն մի վկայություն, այն էլ աղվան է։ Առաջին անգամ երևում է ԺԷ դարում, իսկ այժմ սովորական է. կրճատ ձևով էլ ասվում է Բենօ։ Ենթադրվում է որ հին հայոց Բենիկ ձևն էլ Բենիամինի կրճատումն է։

— 1. Բենիամին երէց, աղուան ըստ Կորիւնի, Սիւնեցի ըստ այլոց․ իբրև թարգման ծառայեց Ս. Մեսրոպին Աղուանքում և նրա օգնությամբ Մեսրոպը հնարեց աղուանից գիրը (Ե դար)։ —Կոր. 18. Խոր. Գ. ծդ. Կղկնտ. Բ. գ. Օրբ. ժդ, ժե.—Բենիամեն՝ Կոր. 18.—սեռ. Բենիամինի՝ Վրդ. իե (հրտր. Էմինի՝ Բենիամենի)։

— 2. Բենիամին, որդի Աղաբեկյի, որ Աղուլիսում մի եկեղեցի է շինել 1676 թ.—Սիսական 259։

*ԲԵՆԻԿ, աբ. համարվում է Բենիամին անվան կրճատ ձևը. այժմ էլ գործածական է Կովկասում. այլ է Բենիկ կամ Բենիտիս լատին սուրբ, մ. 1285 թ. (Աւգեր. Լիակ. վրք. սրբ. ԺԲ. 82)։

— 1. Բենիկ, իշխան Սենեքերիմ թագաւորի Արծրունեաց. նորոգեց Հաաբաթ գյուղը և իր անունով կոչեց Բենկայ, որ է այժմ Բինկեան (1021 թ).—Թովմա աղբ. Ա. 240 (տեղական ավանդություն)։

— 2. Բենիկ վարդապետ Վանանդեցի (Զեռ. Կարին. էջ 2 կոչում է կաթուղիկոս Աղուանից!). բուն անունն է Յովհաննէս. ժամանագիր. գրել է «Տեսիլ Բենկան ի Գանձակ շահաստանի» և մի Աղօթագիրք՝ շատ սրտառուչ հոգեբուխ աղոթքներով. տպված է Սոփերքի ԻԱ հատորում, ուր իր անունը հիշված է խորագրում «Յովհաննու Վանանդեցւոյ Բենիկ կոչեցեալ վարդապետի»։ Գրել է դարձյալ շարականներ, որոնց մասին տես Ամատունի, Պարա-

կանոն շար. 81—82։ Ըստ Զամչ. Գ. 244 ապրել է ԺԳ դարում և կոչվում է Բանիկ կամ Բենիկ. իսկ Ամատունին դնում է ԺԲ դարից։

Բեջան տես Վիժան։

*ԲԵՍԱԴ, իգ. < պրս. — busad կամ bussad «բուսատ, մարջան» բառից։ Հիշված է մի անգամ Պեսատ ձևով, անթվական մի հիշատակարանում՝ Ձեռ. Վենետ. Ա. 736։

ԲԵՍՈՒԹԱՅ, ար. ծագումն ինձ անհայտ։ Մի անգամ ունինք հիշված ԺԳ դարում՝

— Բեսութայ, որդի պարոն Ամիրբէգի և թոռ Սահմադինի. թեթևացրել է Օշականի հարկերը 1295 թ.—Այրարատ 190։

†ԲԵՐԴԱԿ, ար. < հյ. բերդ բառի փաղաքշականից։

— Բերդակ, իր կնոջ՝ Խաթունի հետ նվերներ արեց Հերհերի Ս. Յովհաննէս վանքին, 1321 թ.—Սիսական 113։

*ԲԵՐԹԱ, իգ. եվրոպական նորամուտ անուն. < գերմ. Berta անունից, որի բուն նշանակությունն է «փայլուն, լուսափայլ» (ֆրանս. Berthe)։

ԲԵՐԹՈՒԷԼ, ար. ծագումն անհայտ։ Մի անգամ կա հիշված 1801 թ. մի կոնդակում (Ձեռ. Դաղեան, Բ. 5 ա)։

ԲԵՐԹՈՒՄ, ար. ծագումն անհայտ. մի անգամ գտնում եմ հիշված 1758 թ. (Բերթումի որդի Պետրոս) Ձեռ. Ներս. 22 բ։ Սրանից է Բերթումեան ազգանունը։

ԲԵՐԻՒ, ար. անսովոր անուն, որ երեք տարբեր ձևերով գտնում եմ գործածված ԺԵ—ԺԶ դարերում։ Այսպես՝

— Բերիւ, որդի տանուտեր Սահակի, որ Խիզանում գրել տվեց մի Աւետարան, 1474 թ.—Ձեռ. Վասպ. 469 (մի քիչ հետո, էջ 470 նույնը գրվում է Բըրիւ, որ անսովոր է հայերենի համար)։—Նույն անունն է դարձյալ Բերաւ, որ գտնում եմ հիշված 1607 թ. (Ձեռ. Դաղեան, Բ. 32 ա)։

†ԲԵՐԿՐՈՒՀԻ, իգ. < հյ. բերկրիլ, բերկրանք բառից -ուհի մասնիկով. նորակերտ անձնանուն, որ գործածվել սկսեց Պոլսում, ԺԹ դարում։

*ԲԵՐՈՅ, ար. < պրս. Bērōē անունից, որով հայտնի է Bērōē բժիշկ Կաւատ թագավորի Պարսից (Justi 67 բ)։ Համարում եմ իրան. Vīrōi անվան նոր ձևը։ Բուն նշանակում է «քաջաձի» (տես Վիրոյ)։ Գործածված է մի անգամ՝

— Բերոյ, հայր Պապոյն, հիշված Հաղբատի մի արձանա-

գրության մեջ (Justi 67 բ)։ Այլուր գործածված չէ, բայց իր վաղեմի գոյության ապացույց է Բերսյեան ազգանունը (Տփղիս)։

*ԲԵՐՍԱԲԷ, իգ. < հուն. Βηρσαβεέ ձևից, որ սխալ տառադարձությունն է եբր. בת־שבע Bat-šeba' անվան, որ բուն նշանակում է «դուստր երդման» (Gesenius 122, Հիւբշ. 290)։ Այս անունով հայտնի է Բերսաբէ՝ կին Դավթի և մայր Սողոմոնի (Գ. Թագ. ա. 11, 15)։ Հնուց ավանդված չէ մեր մեջ. հնագույն հիշատակությունը գտնում եմ 1796 թ. (Էփիմ. 448) և դեռ ԺԹ դարում գործածական էր Արևմտահայոց մեջ։

*ԲԷԱՏՐԻՍ, իգ. < ֆրանս. Béatrice անունից, որ իտալ. հնչվում է Բեատրիչէ։ Այս վերջին անունով հայտնի է Դանտէի սիրուհին, որին անմահացրել է նա իր նշանավոր «Աստվածային կատակերգության» մեջ։ Լատին ձևն է Beatrix, որ ծագում է beo «երջանկացնել», beatus «երջանիկ» բառերից։ Ըստ այսմ համազոր է հուն. Μακάριος > Մակար, պրս. Barxūrdār > Բարխուդար, արաբ. Sa'īd անուններին, որոնք բոլոր նշանակում են «երջանիկ»։ Հայերեն էլ թարգմանված ունինք Երանեակ և Երջանիկ։ Բէատրիս անունը հին ժամանակ ավանդված է մի անգամ Պէադրիչէ և մի անգամ էլ Պիադրիծ ձևով (տես տակը). իսկ այժմ Արևմտահայոց մեջ սովորական է Պեաթրիս։

— 1. Պեադրիչէ, կին Կոստանդին պայլի և մայր Սմբատ (ծն. 1208) գունդստապլի.—Սիսուան 76։

— 2. Պիադրիծ, կին Մարտիրոսի, մայր Ստեփանոս դպրի, որ Գալու վանքում Սիմէոն քահանային մի Շարական գրել տվեց, 1318 թ.—Շահազիզ, Պատմ. պատկ. 111։

*ԲԷԳ, ար. < Թրք. بك beg «իշխան» բառից, որ հնչվում է արևել. Թրք. bäg, արևմտ. Թրք. beg, տաճկ. bey։ Հայերենում էլ գրված ունինք Բէգ, Բեգ, Բագ, և Բէկ, Բեկ, Բակ ձևերով կամ նաև Պէկ, Պէյ։ Այսպես նաև սրանից ծագած ձևերը, որ տես տակը։ Այս անվան ամենահին գործածությունը մեր մեջ ԺԳ դարից է (տես տակը). հիշված ունինք նաև Բէկ՝ 1505 թ. (Ձեռ. Ներս. 16 ա), Պէկ 1662 թ. (Ձեռ. Վենետ. Ա. 654), Բէկ՝ անհայտ թվականով (Ձեռ. Վասպ. 165)։ Այժմ խափանված է, բայց կա Պէկեան ազգանունը (Պոլիս)։

— 1. Բեկ, որդի Աղբերանի և եղբայր Գրիգորէսի, որ այս երկուսի հիշատակին մի խաչքար է կանգնեցրել Վայոց ձորի Գումիշխանա գյուղի եկեղեցում, 1309 թ.—Սիսական 107։

—2. Պեկ, հայր Մելքիսեդեկ կրոնավորի, որ օգնում էր Ղա-

գար գրչին Տրապիզոնում, օրինակելու համար Հարանց վարքը 1422 թ.—Ձեռ. Դադեան, Ա. 58 ա։

*ԲԷԳԱՂԱ, իգ. < Թրք. بك beg+آغا aġa պատվանունների գումարից, ինչպես կա սրա հակադիրը՝ Աղաբէկ։ Մի անգամ գտնում եմ գործածված 1615 թ. (Ձեռ. Դադեան, Բ. 47ա՝ տպված Բէկաղ) և մի անգամ էլ 1645 թ. սեռ. Բէկաղին ձևով (Ձեռ. Վասպ. 605) և երրորդ անգամ 1681 թ. սեռ. Պէկաղին ձևով (Ձեռ. Թաւր. 94 բ)։

*ԲԷԳԶԱԴԷ, իգ. < Թրք. بك beg «իշխան»+պրս. زاده zāde «ծնյալ» բառերից, իբր «իշխանածին, իշխանի զավակ»։ Գործածված եմ գտնում 1666 թ. սեռ. Բէկզատին ձևով (Ձեռ. Վասպ. 925), 1709 թ. Պէկզէտէ ձևով (Ձեռ. Սեբ.=ՀԱ 1928, 493), Բէգզադա ձևով՝ ԺԷ դարից (Զքր. սարկ. Բ. 139) և վերջապես Բակզատէ ձևով՝ մի անթվական հիշատակարանում, որ գրված է 1578 թվից հետո (Ձեռ. Սեբ.=ՀԱ 1925, 472)։ Թվում է թե Բէգզադա անունը նաև արական էր, որից առաջացել է Բէգզադեան ազգանունը։

*ԲԷԳԹԱԲԷԳ, ար. < Թրք. بك beg+اتابك atabeg «իշխան աթաբէգ» ձևից. անշուշտ գործածական անուն էր, որից կա այժմ Բէքթաբէգեան ազգանունը (Կովկաս)։

*ԲԷԳԹԱՄՈՒՐ, ար. < Թթր. بك beg+تيمور Timur անունից, որ բուն նշանակում է «երկաթ». իբր «Թիմուր բէկ»։ Կա նաև Թուրքերի մեջ Բեկթամուր շահի արժէն 1185 թ. (Զամչ. Գ. 149—150)։

— 1. Պակբամուր, որդի Աստուածատուրի. Կամախի Ծնառնաճոյ անշեն անբնակ վանքը վերանորոգեց, շինեց եկեղեցի, որ զգեստներով ու գրքերով զարդարեց, շուրջը ծառեր տնկեց, միանգամայն և մի Ճաշոց գրել տվեց նույն վանքում, 1439 թ.—Նոտարք 120։

— 2. Պակբամուր, եղբորորդի Սարգիս արքեպիսկոպոսի, որ էր առաջնորդ Երզնկայի Երեզի Ս. Աստուածածին վանքի, 1477 թ.—Ձեռ. Վենետ. Ա. 628։

— 3. Պաքբամուր, որդի Էղթիարի և եղբայր Գրիգորի, որ Շամլու գրչին գրել տվեց մի Աւետարան և նվիրեց Սեբաստիայի Կովտուն գյուղի եկեղեցուն, 1656 թ.—Ձեռ. Վենետ. Ա. 604։

*ԲԷԳԻ, < Թրք. بك beg «իշխան» բառից. Թե արական է և թե իգական։ Վերջին պարագային, հաճախ ասվում է Բեգի խաթուն, որ տեն տակը։ Գործածվել է ԺԴ—ԺԷ դարերում և այժմ էլ սակավ գործածական է Ղարաբաղում և Ագուլիսում։

— 1. Պոկի (հիշված է սեռ. Պոկե ձևով), աբ. երախտավոր Երուսաղեմի Ս. Սիոն վանքի, 1335 թ.—Ձեռ. Վենետ. Բ. 348։

— 2. Բէկի, դուստր Թե որդի Յովսէփի՝ ազգականի բրուտ Ստեփանոսի, որ Վանում, Կարապետ քահանային գրել տվեց մի Աւետարան, 1435 թ?—Ձեռ. Վասպ. 371։

— 3. Բէկի, դուստր Ստեփաննոսի և քույր Սալչուկ խաթունի, որ Հայրապետ քահանային գրել տվեց մի Մաշտոց, 1466 թ.—Թորոս աղբար, Ա. 232։

— Ավելի ուշ հիշված է Բէկլի, աբ? 1579 թ. (Ձեռ. Վասպ. 690), Բէկլի, իգ. 1601 թ. (անդ 795, 798), Բէկլի, իգ. 1613 թ. (անդ 846), 1617 թ. (անդ 854), Պէկլի, իգ. 1628 թ. (Տաշեան, Ցուց. 517), 1633 թ. (Ձեռ. Վասպ. 882՝ չորս անգամ), 1638 թ. (անդ 895), 1639 թ. (անդ 395), սեռ. Պակլէ աբ. 1651 թ. (Ձեռ. Սեբ.=ՀԱ 1925, 576), 1654 թ. (Ձեռ. Ագուլ.=Արրա. 1911, 385), 1659 թ. (Ձեռ. Սևան. 7 բ), անհայտ թվականով՝ Ձեռ. Վասպ. 416, 768, Ձեռ. Թաւր. 67 բ։ Այս բոլորը իգական են։ Իսկ արական է՝ Խաւճա Պակլի, հիշված 1317 թվից հետո գրված անթվական մի հիշատակարանում՝ Թորոս աղբ. Բ. 302։ Կա նաև Բէկ-խի, իգ. 1650 թ. Ձեռ. Թաւր. 88 բ։ Վերջապես կա Պակլիս (իմա Բէգլիս) իգ. 1596 թ. (Ձեռ. Թաւր. 76 ա)։

*ԲԷԳԻ-ԽԱԹՈՒՆ (կամ Բէգխաթուն), իգ. <թթր. بك beg+ խաթուն բառերից։ Գործածված է

— 1. Բէկիխաթուն, կին Սմբատ Թագավորի, որ օծվեց Աղթամարում՝ 1466 թ.—Ալիշան՝ Գաւազանագիրք 108, 111 (էջ 108 ցեղաբանական տախտակում դնում է Խանում խաթուն՝ իբրև դուստր Կուրճիբէգի և քույր Սմբատ Թագավորի. բայց երևի տպագրական վրիպակ է. ըստ որում էջ 120 Սմբատի կինը կոչվում է Խանոյ-բէկ-խաթուն։ Ձեռ. Վենետ. Բ. 419 Սմբատի կինը Բէկլի խաթունն է։ Այսպեսով Բէկլի խաթուն և Խանում խաթուն նույն են)։

— 2. Բէկիխաթուն, դուստր խոջա Խաչատուրի, որ Արճէշում Յովհաննէս քահանային գրել տվեց մի Աւետարան, 1462 թ.—Ձեռ. Վասպ. 438։

— 3. Բէկի (կամ Բէկլիխաթուն), դուստր Ստեփաննոսի և քույր Սալչուկ խաթունի, որ Հայրապետ գրչին գրել տվեց մի Մաշտոց, 1466 թ.—Թորոս աղբ. Ա. 232=Բ. 337—8։

— 4. Բէկիխաթուն, երրորդ կին տանուտեր Խդըրշահի (1484 թ). տես Խդըրշահ.—Ձեռ. Վասպ. 496։

— 5. Բէկխաթուն, դուստր տանուտեր Տողանի, որ Արճէշի Սոսկոն գյուղում, Յովհաննէս քահանային գրել տվեց մի Աւետարան, 1489 թ.—Թորոս աղբ. Բ. 437։

— 6. Բէկիխաթուն, դուստր Յորդանանի՝ եղբոր Աղաբիա աբեղայի, որ Եղեգիսում գրել տվեց մի Աւետարան, 1495 թ.—Ձեռ. Վենետ. Ա. 586։

— Բէկիխաթուն հիշված է նաև 1566 թ. (Ձեռ. Թաւր. 132 բ), 1570 թ. (Ձեռ. Վասպ. 672) և 1608 թ. (անդ 255)։

— Ամենաուշը հիշված է 1742 թ. (Հաւաք. 52) Պէկխսխաթուն ձևով, որի համար տես Բէգիխան։ Անթվական է Ձեռ. Թաւր. 104 ա=105 բ։

*ԲԷԳԻԽԱՆ, իգ. < պրս. بگخان beg-i-xān «խանի բէգը» ձևից. հիշված է Պէկիխան ձևով՝ 1579 թ. (Ձեռ. Վենետ. Ա. 390), Բէկիխան 1581 թ. (Ձեռ. Վասպ. 694), Պէկիխան 1651 թ. (Ձեռ. Վենետ. Ա. 734), Պակիխան 1664 թ. (Ձեռ. Սեբ.=ՀԱ 1926, 551)։ Սրա հակադիրն է Խանբէգի, իգ. որ թրքական ձևի հատկացուցիչ-հատկացյալ է, և դարձյալ նշանակում է «խանի բէգը»։ Զարմանալի է սակայն, որ մի անգամ այս երկուսը գործ է ածված երկու քույրերի վրա, կարծես տարբեր անուններ լինեին։ Այսպես՝ Բաղդասար սարկավագի երկու աղջիկներն են Խանբէկի և Բէկիխան (Ձեռ. Վասպ. 694)։ Ավելի զարմանալի է Բէկիխսխաթուն ձևը, որ չգիտեմ թե վրացական ձևով սեռակիցն է արդյոք. այդ դեպքում նշանակում է «բեգի խանը», մինչդեռ նախորդները նշանակում են «խանի բեգը»։ Բէկխսխան անունը հիշված է 1565 թ. (Ձեռ. Վասպ. 663), 1573 թ. (անդ 678), 1595 թ. (անդ 744, 745), 1602 թ. (անդ 802), Պէկխսխան 1742 թ. (Հաւաք. 52) և անծանոթ թվականով՝ Ձեռ. Վասպ. 642—3 և Թորոս աղբ. Բ. 273։ Կրճատ ձևով Բէկիս 1554 թ. (Manus. brit. mus. 193ա)։ Վերջապես կա Պէկխոխաթուն ձևը (իգ. 1710 թ. Ձեռ. Սեբ.=ՀԱ 1925, 580), որի ինչ լինելը չգիտեմ (հմմտ. Բէգլար)։

*ԲԷԳԻԿ, ար. < թրք. بك beg բառի հայերեն փաղաքշականն է։ Մի անգամ գտնում եմ՝

— Բեկիկ Լարեցի, որդի Խոչոտի, իբրև վկա հիշված է 1387 թ.—Յովսէփեան, Նյութեր և ուս. Ա. 45, 61։

*ԲԷԳԻՋԱՆ, իգ. < Բէգի անունից՝ ջան փաղաքշականով։ Գործածված է ԺԴ դարից մինչև ԺԸ դար։ Այժմ խափանված։ Սրա հակադիրն է Ջանիբէգ։

— 1. Բէկիջան, հարս Ատոմի, որ մերձավորն էր Ներսէս

*քահանայի, որ Ապահունեաց Արսէ գյուղում, Յովհաննէս քահանային գրել տվեց մի Աւետարան, 1321 թ.—Ձեռ. Վասպ. 168։*

— 2. Բէկիջան, *կին Յովհաննէսի և մայր Մուրադի, որ Արճէշում, Ստեփանոս գրչին գրել տվեց մի Աւետարան, 1486 թ.—Ձեռ. Վասպ. 498։*

— Բէկիջան *անունը հիշված է նաև 1554 թ. (Ձեռ. Վասպ. 98), 1585 թ. (անդ 704), 1588 թ. (անդ 711), 1591 թ. (անդ 719, գրված* Պէկիջան*), 1592 թ. (անդ 730), 1602 թ. (անդ 188), 1604 թ. (անդ 815), 1621 թ. (անդ 860), 1635 թ.* (Bodleian *107), 1654 թ. (Տաշեան, Ցուց. 844 բ), 1657 թ. (անդ 811 Պակիճան ձևով), 1675 թ. (Ձեռ. Վասպ. 946), 1721 թ. (անդ 818), և առանց թվականի՝ անդ 440, 767, Ձեռ. Թաւր. 91 բ։*

**ԲԷԳԻՋԻՀԱՆ, իգ. < պրս* بك جهان beg-i-ǰihān *«աշխարհի բէգ» բառից, որ և կա հայերեն* Աշխարհբէգ *ձևով։ Գործածված եմ գտնում մի անգամ, անհայտ թվականով, բայց 1462 թվից հետո (Ձեռ. Վասպ. 441, սխալ տպված Բէկի Սինան ձևով)։*

**ԲԷԳԻՍՈՒԼԹԱՆ, իգ. < թրք.* بك beg+*արաբ.* سلطان sulṭān *բառերից։ Գտնում եմ գործածված 1608 թ. (Ձեռ. Վասպ. 831, Բէկխսուլթան ձևով), 1609 թ.* (Bodleian *109, Բէկի սուլթան ձևով), 1638 թ. (Ձեռ. Նոր-Բայազ. 14 բ՝ Բակխսուլթան ձևով), 1654 թ. (Սմբատեանց, Գեղարքունի 115, 120), 1670 թ. (Ձեռ. Դաղեան, Բ. 46 ա՝ Պէկխսուլթան ձևով) և 1327 թվից հետո գրված անթվական մի հիշատակարանում, Ձեռ. Ազուլ=Արրտ. 1911, 462՝ Բէկխսուլթան ձևով։*

**ԲԷԳԼԱՐ, ար. < թրք.* بكلر begler *«իշխաններ» բառից, որ տաճկ. հնչվում է* beyler. *հոգնակի ձևով անուն կազմելու օրինակ են* Աղալար *և* Խանլար*։ Գործածվել է սկսել ԺԶ դարից և մինչև այժմ էլ կա Կովկասում* Բէգլար, *իսկ Արևմտահայոց մեջ* Պէյլէր *ձևով։ Սրանից է ծագում Բէգլարեան (Պէյլէրեան) ազգանունը։ Հնագույն հիշատակությունն է Բէգլար 1555 թ.* (Матер. Арх. Кавк. III, *էջ 96), ավելի ուշ՝ Պէկլէր 1657 թ. (Զամչ. Գ. 672)։*

— 1. Մելիք Բէգլար *Ա. որդի Սև Աբովի (մ. 1632), որին և հաջորդեց. գրավեց Թալիշի մոտիկ գյուղերը, նորոգեց Գիւլիստանի բերդը և իր բնակությունը այնտեղ հաստատելով՝ հիմք դրեց Գիւլիստանի մելիքների իշխանության.—Րաֆֆի, Խամսայի մելիքութ. էջ 10—11։*

— 2. Բէգլար *Վանեցի, տարեգիր, գրել է Վասպուրականի*

դեպքերը և Վանի պատմությունը՝ 1635—1732 թվերում.—Հայապ. 129, Ջեռ. Դադեան, Բ. 59 (Պէյլար ձևով)։

— 3. Մելիք Բեգլար Բ. որդի մելիք Իւսուբի. Հոր մահից հետո ժառանգեց Գուլիստանի մելիքությունը (1775 թ)։ Քաջ ու պատերազմասեր՝ զոհ գնաց ընտանեկան դրամայի։ Նրա կինն էր Վարանդայի մելիք Շահնազարի դուստր Ամարնանը (Մարիամ), որից ծածուկ պահում էր և մի սիրուհի՝ Բալա անունով։ Այն գիշերը, երբ Բեգլարը պատրաստվում էր Գանձակի մոտ՝ լեզգիների վրա կռվի գնալու, Ամարնանը կաշառեց Լալա անունով իր մի ծառային, որ գնաց Բալայի մոտ և նրա երկար մազերի հյուսքերը վզին փաթաթելով խեղդեց։ Առավոտը Բեգլարը լսեց գույժը և սպառնաց վրեժ առնել սպանողներից։ Լալան գիտենալով իր տիրոջ խստասրտությունը, մտավ նրա խմբի մեջ, հետևեց նրան պատերազմում և գաղտնաբար գնդակահար արեց։—Րաֆֆի, Խամսայի մելիքութ. 82, 105—108։

*ԲԷԳՄԵԼԷՔ, իգ. < Թրք. بك beg «իշխան»+արաբ. ملك melek «հրեշտակ» բառերից։ Հիշված է մի անգամ Պէյմէլիք ձևով՝ 1654 թ. (Շահազիզ, Պատմ. պատկերներ 86)։

*ԲԷԳՆԱԶ, իգ. < Թրք. بك beg+պրս. ناز nāz «նազանք» բառերից։ Հմմտ. պրս. شاهناز šāhnāz «պարսկական մի եղանակի անունը», Բեկնազ ձևով հիշված է մի անգամ 1554 թ. (Manus. brit. mus. 193 ա)։

*ԲԷԳՆԱԶԱՐ, ար. < Թրք. بك beg+արաբ. نظر nazar «հայացք» բառերից (այսինքն նա՝ որի վրա է բէգի հայացքը. հմմտ. Շահնազար «նա՝ որի վրա է շահի հայացքը»)։ Հիշված է առաջին անգամ ԺԷ դարում (Դադեան, Ա. 49 բ). սրանից է Բեգնազարեան ազգանունը, որի էլ հին հիշատակությունը 1843 թվից է (Ազգապ. 3774)։

*ԲԷԳՈՒՄ, իգ. < հին Թրք. بیکم bigim կամ begim «իշխանուհի» (Будагов, Сравн. слов. 1, 303 ա)։ Իբր անձնանուն գործածական է նաև պարսիկների մեջ. հմմտ. Բեգում՝ քույր Ուզուն Հասանի (Այրարատ 330), Բեգում՝ կին Երևանի Հիւսէին խանի (Այրարատ 308, Շահազիզ, Հին Երևանը 92), Բեկում՝ կին Ջհանշահի (ԺԵ դար) Նոտարք 200, Առաք. պատմ. 324, Janbānum Bēgum՝ Շահաբասի թոռնուհին, կին Սիմէոն Բ Թագավորի Վրաց (1625), Gulbadan Bēgum՝ Հնդկաց Բաբեր սուլթանի աղջիկը մ. 1603 թ. (Justi 119 բ)։ Մեր մեջ իբրև իգական անուն հիշված է ԺԵ դարից (Տաշեան, Ցուց. 724 բ Բէկում

ձևով) և 1662 թ. (Վենետ. Ա. 653 Պէկուժ ձևով, բայց արդյոք արական է)։ Այժմ սակավ է գործածական (Ղարաբաղ)։ Նկատելի է որ Rivola, Բառագիրք Հայոց, 1633, էջ 58 բէկուժ մեկնում է «թագուհի», իսկ էջ 320 պեգում «խաթուն, տիկին»։ Սրանից է՝

*ԲԷԳՈՒՄԽԱՆ, իգ.< նույն Բեգում անունից+խան. հիշված է մի անգամ 1657 թ. (Ձեռ. Դադեան, Բ. 34 ա, Բէկումխան ձևով)։

ԲԷՕՇ, ար. ծագումն անհայտ և անսովոր անուն, որ մի անգամ հիշատակված է 1499 թվին, իբրև Բիւրականցի ոմն (Ձեռ. Վենետ. Բ· 1114)։

*ԲԻՆԱԹ, իգ.<արաբ. بنات hinat «աղջիկներ» բառից։ Հիշված է անթվական մի հիշատակարանում՝ Ձեռ. Վենետ. Ա. 778։ —Սրա հետ նույն է արդյոք

ԲԻՆԻԹ, սեռն անհայտ. հիշված է Բինիթ ոմն Ագուլեցի, 1603 թ.—Սխակա· 330։

Βιγγάνης. ար. հայերեն ձևը և ծագումը անհայտ է։ Այս անունով հայտնի է Աղձնեաց նահանգի Chlomarōn բերդի հրամանատարը, որ կռվեց Հոնաց դեմ, Մօրիկ կայսեր օրով 578 թ. (Justi 68 բ նույն անունը համեմատում է պրս. Bīnagān անվան հետ)։

Բիշբեն տես Պեօզիեն։

*ԲԻՒԶԱՆԴ, ար. սխալմամբ համարվել է Փաւստոս պատմագրի անունը. «Փօստոս, որ և Բիւզանդ» Ասող. Ա. ա.—Փօստոս, որ է Բուզանդ» Սամ. անեց. 3.—«Փաւստոս Բիւզանդ» Կիր. 3։ Պարզապես Բիւզանդ՝ Ասող. Բ. ա. Արծր. Դ. բ։ Հնապես պատմագիրը կոչվում էր Փաւստոս Բիւզանդացի, որով բառը տեղի անուն է և ոչ անձի։ ԺԹ դարում Սրեմտահայոց մեջ Բիւզանդ գործածական դարձավ իբրև անձնանուն, իբրև համապատասխան հուն. Βύζας, Βύζαντος անվան, որ Βυζάντιον > Բիւզանդիոն (հետո կոչված Կոստանդնուպոլիս) քաղաքի հիմնադրի անունն է։ Ժողովրդական ձևով Պոլսում հնչվում է Բուզանդ, ինչպես գրում է նաև Զքր. սարկ. Գ. 3։

ԲԻՒՐԱՏ, ար. դժվարությամբ կարող է լինել պրս. Bēward անունից, որ գիտե Ֆիրդուսին, հրատ. Vullers, հտ. II, 919 (Հիւբշ. 33)։

— 1. Բիւրատ, որդի Բագարատի և թոռ Փանեաւաղ Թագավորի Հայկազունից, որ հպատակվեց Բաբելացոց Նաբուգոդոնո-

սոր Թագավորին (Ն.Ք. 605—562)։—Սեբ. Ա, էջ 6—7 (ձեռագիրն ունի Բիւրամ)։

— 2. Բիւրատ, եղբայր Բագարատի, զորավար, ժամանակակից Վաղարշակի (Ն.Ք. 149—127)։ Երբ Սելևկիացոց Դեմետր Բ՝ Նիկանովր Թագավորը մեծ բանակով արշավեց Պարթևաց Արշակ Թագավորի դեմ, Արշակը ուղարկեց այս Բիւրատին, որ կոտորեց Դեմետրի զորքը և նրան էլ ձերբակալելով բերավ Արշակին։ Արշակը երկաթե կապանքներով բանտարկեց նրան, որի համար էլ կոչվեց Սիրիպինդէս (Խոր. Բ. բ)։—Զամչ. Ա. 217։

— 3. Բիւրատ Բագրատունի, որի քույրը՝ Սանոտ, եղավ Սանատրուկ Թագավորի (38—68 Թ) դայակը.—սեռ. Բիւրատայ՝ Խոր. Բ. լգ, լէ. Ուխտ. Ա. խա. Վրդ. խա. Պատմ. վր. ե.—Բիւրատեայ՝ Մխ. անեց. ի։

— 4. Բիւրատ, հայր Աշոտ պատրիկի (685—688) ըստ Սամ. անեց. 409.—Զամչ. Բ. 371, Justi 69 բ։

†ԲԻՒՐԵՂ, իգ. < հյ. բիւրեղ բառից, որ սակայն փոխառյալ է հուն. βήρυλλος ձևից։ Այսպես է նաև Թրք. بلور billor հոմանիշը, որ Պոլսում դարձել է իգ. անուն՝ Պիլլոր ձևով (տես և Բլոր)։ Հին շրջանից միայն մի անգամ է ավանդված. վերջին տարիներս սկսեց գործածվել Բիւրեղիկ ձևով Թաւրիզում և Երևանում։ (Հմմտ. դարձյալ հուն. Βηλουρος գրող (Պլուտարքոս), որ ըստ Justi 67ա «բիւրեղ» բառն է)։

— Բիւրեղ, տիկին Սիւնեաց, Հունաց Հերակլ կայսրից, Պարսկաստանի արշավանքից դարձին, խնդրեց և ստացավ հենաց փայտի (խաչի) մի մասը և նրա վրա հիմնեց վանք։ Այս է Հացունեաց խաչը։—Սոտ-Շապհ. 9, (11—14). Զամչ. Բ. 532, Սիսական 7 ա, 14 ա՝ 118 բ, 472 բ. Աղգապ. 5526. (այս մասին մի հրաշք պատմում է Ձեռ. Դաղեան, Ա. 102 բ)։

*ԲԻԿԱ, իգ. < չաղաթ. بیکه bika «կին, և հատկապես նա՝ որ դեռ ծնած չէ»։ Իբրև իգ. անուն գործածական էր նաև Թուրքերի մեջ. օրինակ՝ Շուշու Իբրահիմ խանի կինն էր Բիքա, որ Դաղստանի Օմար խանի դուստրն էր (Րաֆֆի, Խամսայի մելիքութ. 104)։ Մեր մեջ մի անգամ գտնում եմ գործածված՝

— Պիքա, կին ոմն հիշված Լեհահայոց մեջ, 1603 Թ.—Ձեռ. Լվով (ՀԱ 1936, 506)։

*ԲԼԲՈՒԼ, իգ. < պրս. بلبل bulbul «սոխակ» բառից. գործածված է ԺԸ դարում. այսպես Բլբուլ 1707 Թ. (Ձեռ. Վասպ. 508), Պիւլպիւլ 1792 Թ. (անդ 781), Բուլբուլ (Թվականն անհայտ,

Բարխուտարեանց՝ Աղուանից երկիր 109)։ Վերջին ձևով՝ Բուլբուլ ոմն՝ Ֆաթալի շահի օրով (Կարապետ եպս.՝ Դօփեանք 157)։

*ԲԼ-ՀԱՍԱՆ, ար. < արաբ. ابوالحسن Ab-ul-Hasan «հայր Հասանի» անունից. արաբական սովորությամբ այս անունն է ստանում մեկը, երբ Հասան անունով մի որդի ունենա։ Այս անունով ունինք՝

— 1. Բլ-Հասան, պապ հաջորդի (ԺԳ դար).—Շիրակ 22 բ։

— 2. Բլ-Հասան, բժիշկ, որդի Զաքարիա բժշկի, Հոռոմոսի վանքին նվիրեց մի ջաղաց և կալվածներ, 1273 թ.—Շիրակ 22բ։

*ԲԼՈՐ, իգ. < արաբ. بلور bilūr, թրք. بللور billor «բիւրեղ» բառից, որ նույն է հին հյ. բիւրեղ հոմանիշի հետ (տես նաև վերը Բիւրեղ անունը)։ Գործածված է մեր մեջ ԺԴ—ԺԶ դարերում. այնուհետև խափանվել է՝ տեղի տալով Բիլլօր (կամ Պիլլօր) ձևին, որ անցյալ դարում գործածական էր Պոլսում։

— Պլաւր, կին Առաքել Կախմխեցու, որ փրկանքով ազատեց մի հին Աւետարան, պակասորդը նորեց գրել տվեց և նվիրեց եկեղեցուն, 1383 թ.—Ձեռ. Հալէպի, Ա. 79 ա։

— Հիշված է նաև 1588 թ. (Պլաւր, անդ 232 բ) և 1594 թ. (Պլօր, անդ 125 ա)։

ԲՆՈՏ, ար. ծագումն անհայտ։

— Բնոտ, քաղկեդոնական քարոզիչ, որին Աղուանից Աբաս կաթուղիկոսը («552—596») դուրս վռնտեց երկրից.—Կղկնտ. Բ. ը։

*ԲՈԶ, ար. < թրք. بوز boz «գորշ» բառից. մի անգամ հիշված է Պօզ (կամ Պօզի) ձևով 1687 թ. (Ձեռ. Թաւր. 24 բ)։ Սրանից են Բոզոյեան, Բոզիկեան ազգանունները։ Գործածական էր Ոզմեցոց մեջ Պոզօ ձևով (տես իմ Բարբառագիտութ. էջ 156)։

ԲՈԶԷԴ, ար. ծագումն անհայտ։

— Բոզէդ, հիշված է իբրև վկա մի Աւետարանի ընծայաբերության՝ Գաղտոյ Ս. Գէորգ եկեղեցուն, 1345 թ.—Ձեռ. Ազուլ. (Արրտ. 1911, 565)։

ԲՈՀ, ար. ծագումն անհայտ։

— Բոհ, քահանա. ժամանակից եղավ Կաղսետի նշխարաց գյուտին (560 թ).—գրծ. Բոհիւ՝ Կղկնտ. Բ. զ։

ԲՈՂԱՏ, ար. ծագումն անհայտ. (բայց ինձ թվում է թե կա այստեղ ընթերցման սխալ՝ Բողատ փխ. Բուլաս)։

— Բողաս, առաջնորդ Վարազայ վանքի, հաջորդեց Ստեփաննոսին՝ շուրջ 580 թ.—Հայապ. 232։

*ԲՈՂԴԱՆ, ար. < ռուս. Богдан անունից, որ է «Աստուածա-

տուր»․ հիշված է 1613 թ․ Պողտան ձևով (Տաշեան, Ցուց․ 344), 1820 թ․ Պուղտան ձևով (անդ 389)։ Սրանից է Բուղդանեան ազգանունը (Նոր-Նախիջևան)։

*ԲՈՂՉԱԳՈՒԼ, էգ․ < Թրք․ بوغچه boğča «ծրար»+պրս․ گل «վարդ» բառերից, էբր թե «մի ամբողջ ծրար վարդ»։ Գործածական է այժմ Զանգեզուրում և հնչվում է Բոխչագիլ։ Բայց ունինք նաև Բաղչագուլ, որ տես առանձին։

†ԲՈՅՍ, ար․ < հյ․ բոյս «տունկ» բառից․ հմմտ․ իր համազորը Նորասունկ, որ և հուն․ Νεόφυτος։ Մի անգամ հիշված է ԺԴ դարում։ Տես սրա փաղաքշականը՝ Բուսիկ։

— Բոյս, որդի Կարապետ կրոնավոր գրչի, որ օրինակեց մի Ավետարան, 1344 թ․—Թորոս աղբ․ Բ․ 355։

*ԲՈՒԲԱՔ, ար․ համարում եմ կրճատված արաբ․ ابوبکر Abū-bakīr անունից։ Այս անունով հայտնի է Արաբների առաջին խալիֆան, որ նստավ 632—634 թվին և է հաջորդ Մուհամմեդի։ Այս անունով գիտենք միայն՝

— Բուբաք Տէր Զաքարեանց, ի Խստրալէզ, կալվածներ է նվիրել Վայոց ձորի Սպիտակաւոր Աստուածածնայ վանքին (Սիսական 138)։ Թվականը հայտնի չէ․ բայց որովհետև հիշված է Էաչոյի որդի Ամիր Հասանի հետ, ուստի պետք է դնել 1318—34 շրջանում։—Տես և Բուպա։

*ԲՈՒԴԱՂ, ար․ < Թրք․ بوداق budaq «բարունակ» բառից, ճիշտ ինչպես հյ․ բարունակ դարձել է անձնանուն։ Համազորն է Թաղիանոս (որ տես)։ Գործածական էր նաև Թուրքերի մոտ․ ինչ․ Amīr Budaq xān որդի Ղարա Ուսուֆի՝ մ․ 1417 թ․ (Այրարատ 328)։ Այժմ էլ գործածական է Կովկասահայոց մեջ և սրանից է Բուդաղեան ազգանունը։ Հնագույն հիշատակությունները են՝ 1513 թ․ (Օրբ․ Ժմ․ 46=Սիսական 34 ա) և 1524 թ․ (տես տակը)․ հիշված է նաև 1666 թ․ (Ձեռ․ Վասպ․ 928) և երկու անթվական հիշատակարանում, առաջինը գրված 1503 թվից հետո (Ձեռ․ Վասպ․ 618) և երկրորդը՝ 1521 թվից հետո (Ձեռ․ Վենետ․ Բ․ 384)․ նաև Պուտախ գեղջաւագ Քանիի, ԺԶ դարի կեսին (Սիսական 375 բ)․ բոլորն էլ գրված Արևմտահայ տառադարձությամբ՝ Պուտախ։

— Պուտախ Ամթեցի, պայտար արհեստավոր․ հայրը աբեղորդի էր, մայրը Մարաղայի քահանայի աղջիկը։ Մարաղայից գաղթեցին Ամիթ, ուր մնացին 28 տարի։ Պուտախը գիտեր թուրքերեն, արաբերեն և պարսկերեն լեզուները, բայց հայերեն

չգիտեր։ Սիրում էր լսել հայոց եկեղեցու արարողությունները։ Սովորեց Մկրտիչ աբեղայի մոտ և դարձավ քրիստոնեության քարոզիչ Թուրքերի մեջ, որոնցից 90 մարդ մկրտեց։ 1000-ից ավելի Նասիմի գիտեր, այն է Թուրքերեն քրիստոնեական երգեր, որոնք մեծ մասամբ Նասիմի անուն քրիստոնյա դարձած Տիգրանակերտցի մի Թուրք նահատակի գրած ու երգած տաղերն էին։ Ամբողջ քաղաքը զարհուրած էր նրա համարձակ քարոզության վրա։ Թուրքերը տարին նրան Փասական շեյխի մոտ, որ նստում էր Տիգրանակերտից 6 ժամ հեռու։ Ամբողջ գիշերը վիճեցին, բայց անօգուտ։ Տարին նորից քաղաք. դատավորը և փաշան շատ աշխատեցին համոզել և մահմեդական դարձնել, բայց երբ մերժեց, չարչարեցին, բանտարկեցին և մի գերանի վրա ոտքից ու գլխից գամելով՝ փայտակույտի մեջ այրեցին «1524 թ»։ Իր ուսուցիչ Մկրտիչ աբեղան գրեց նրա նահատակության պատմությունը, որ տես Նոր վկ. 360—367.—Ջամչ. Գ. 516, Ազգապ. 2227։

*ԲՈՒԹ, ար. ծագումը տես Բուտ։

— Բութ, քրմապետ տարուշանի, Հախիխսիմեանց ժամանակ.—Ալիշան՝ Հին հաւատք 45 (հանելով Տէրամօր պատկերի պատմութեան մի ընտիր օրինակից), Արշալ. քրիստ. 121, Հայապ. 79։

ԲՈՒԹԻԿ, ար. հիշված 1719—24 թ. (Այրարատ 305). գործածված է Երևանում 1721 թ. (Աբր. երև. 17)։

ԲՈՒԺԻԿ, ար. < հավանաբար հյ. բուժել բայից։ Մի անգամ միայն գործածված է ԺԵ դարում։

— Բուժիկ (միայն սեռ. Բուժկին ձևով), որդի Վարդանի և եղբայր Յոհանի, որ Խիզանում, Մկրտիչ քահանային գրել տվեց մի Աւետարան, 1482 թ.—Ձեռ. Վասպ. 492։

*ԲՈՒԼԱՅ, իգ. < թրք. بولا bula «մորեղբոր կին, քեռակին» (Будагов, Сравн. слов. 1, 288 ա)։ Իբրև անձնանուն հիշված է մի անգամ 1583 թ. Պուլայ ձևով՝ Ձեռ Դաղեան, Բ. 48 բ։

*ԲՈՒԼՂԱՆ, իգ. < չաղաթ. بولغان bulġan «կզնաքիս» բառից (Будагов, Сравн. слов. I, 290 բ, ուր այս բառը համարվում է մոնղոլերեն)։ Հազվագյուտ անուն. գտնում եմ միայն երեք անգամ հիշատակված. առաջինը ԺԴ դարում, երկրորդը՝ ԺԵ դարում և երրորդը 1503 թ. (Ձեռ. Վասպ. 620 Պուլղան ձևով)։

— 1. Բուլղան, դուստր Զաքարիայի, ազգական Կարապետ կրոնավորի, որ օրինակել տվեց Հին Կտակարանը՝ Սղկայու վանքում, 1381 թ.—Ձեռ. Ագուլ. (Արրտ. 1911, 850)։

— 2. Պուլղաճ Կոնիռապատցի (սեռն անհայտ), որ օգնել է մի Աւետարանի գնման, 1435 Թ.—Ձեռ. Թաւր. 13 ա։

*ԲՈՒԼՂԱՆԴԱՐ, ար.< Թթր. بولغاندرمق bulġandərmaq «պղծել. ապստամբեցնել» բայից (Будагов, Срав. слов. I, 290 ա)։ Շատ անսովոր անուն. մի անգամ գործածված է ԺԵ դար։

— Բուլղանդար, մերձավոր Ցովհաննէս գրչի, որ Խիզանում օրինակեց Աւետարանը, 1499 Թ.—Ձեռ. Վենետ. Ա. 577։

*ԲՈՒԼՂԱՐ, ար. < Բուլղար ազգի անունից. հիշված է մի անգամ ԺԱ դարում։

— Բուլղար, նշանավոր վարդապետ. ուղեկից եղավ Պետրոս Գետադարձ կաթուղիկոսին՝ Պոլիս գնալու ժամանակ «1047 Թ».— Ուռհ. 104.—Ազգապ. 1236 գրում է Բուլխար, ըստ տպ. Երուսաղէմի։ Հայտնի է որ Բուղա ոստիկանի անունն էլ գրվում է նաև Բուխա։

*ԲՈՒԼՈՒԹ, ար. < Թրք. بولوت bulut «ամպ» բառից։ Անսովոր անուն. մի անգամ գտնում եմ գործածված անթվական մի հիշատակարանում, որ գրված է 1452 Թվից հետո (Ձեռ. Վասպ. 416), երկրորդ անգամ Բուլոթ ձևով՝ 1649 Թ. (Տաշեան, Ցուց. 513 բ) և երրորդ անգամ Բուլութ ձևով՝ 1695 Թ. (Ձեռ. Թաւր. 112 ա)։

*ԲՈՒԼՔԱՐԱՄ, ար. < արաբ. ابوالكرم abul-karam «հայր ողորմութեան» անունից (ըստ արաբական սովորության՝ այսպես է կոչվում մեկը, որ Քարամ անունով մի որդի ունենա)։ Գործածված է մի անգամ ԺԵ դարում։

— Բուլքարամ, պարոն, եղբայր Ոնոփրիոս քահանայի և հորեղբայր Մկրտիչ քահանայի Արճիշեցւոյ, որ ստացավ մի Ճաշոց, 1441 Թ.—Թորոս աղբար, Ա. 222։

*ԲՈՒՂԴԱՅ, ար. < Թրք. بغدای buġday «ցորեն» բառից։ Գործածված է ԺԳ—ԺԴ դարերում։

— 1. Բուղդա, իշխան, որի դուստրը Թամար՝ ամուսնացած էր Զաքարէ Բ ամիրսպասալարի Թոռան՝ Աղբուղայի հետ (ԺԳ դար).—Հայապ. 447, Շիրակ 62 բ։

— 2. Բուղդայ, որդի Ելիկումի, Թոռն Տարսայիճի Օրբելեան, եղբայր մեծ իշխանին Բուրթելի և եղբօրորդի Ստեփաննոս եպիսկոպոսի Օրբելեան. հիշված է 1314 Թ.—Օրբ. կե (գրված է Բուղտայ). Սիսական 95, 193, 195, 202, Ձեռ. Դաշեան, Բ. 30ա (գրված է Պուղտայ)։ Սրա հետ նույն պիտի լինի՝ Բուղցայ, հազարապետ Բուրթել իշխանի, հիշված Եղեգիսի շրջանում, 1315 Թ.—Բարխուտարեանց, Աղուանից երկ. 246։ Երիտասարդ հասա-

կում, «յետ յոլով քաջ մրցմանց տիգախոցեալ զանթառամն ընկալաւ զպսակ», 1318 թ., ինչպես արձանագրված է իր տապանի վրա, որ գտնվում է Վայոց ձորի Նորավանից եկեղեցում (Սիսական 193)։

**ԲՈՒՂԼԱԽ**, ար. ծագումն անհայտ. թվի թուրքերեն. հիշված է ԺԵ դարում (տես Ջեռ. Էջմ. № 945)։

***ԲՈՒՆԻԱԹ**, ար. < պրս. Bunyāt անունից, որի ավելի հին ձևն է Bundāt և սա էլ պհլ. Vindāt. բուն նշանակությունն է «գտած, այսինքն փափագին հասած»։ Այս անունով հիշատակելի են Ἰνδάτης զորավար Պարթևաց (Ն.Բ. 130). Indāδ իշխան Թաբարիստանի, Bunyāt իշխան Բուխարայի (Ը դար), Windād քուրդ (մ. 960 թ)։ Ամբողջական ձևով ունինք Windād-Hormazd, Windād-ispān, Windād-īzed, Windād-Xūršīd, Windād-Mihr, Windād-umīd անունները, որոնց գլխավորն է Վնդոյ (Justi 369 բ)։ Մեր մեջ գործածված է այս ձևով ԺԶ դարից (տես նաև Վնդոյ) և այժմ էլ սակավ գործածական է։ Սրանից է Բունիաթյան ազգանունը։ Բայց կա նաև Պինեաթ 1717 (Սիսական 486), Բինիաթ 1614 թ. (Ջեռ. Թաւր. 120 բ), 1720 թ. (անդ 133 բ)։

— 1. Պունիաթ իշխան, սերունդ Անեցի գաղթականների, հաստատված էր Սեբաստիայում. որդեգրեց Ապուղամը Արծկեցի որբ պատանուն (1494 թ)։ Սուլթան Սելիմ Ա-ի (1512—1520) արշավանքի ժամանակ գաղթեցին Ակն, ուր հիմնեցին Ապուչեխ գյուղը։—Անահիտ 1931, սեպտ. էջ 141, 152։

— 2. Բունիաթ, որդի Աղիջանի, որ գնեց մի հին Աւետարան և նվիրեց եկեղեցուն, 1553 թ.—Ջեռ. Վեննա. Ա. 578։

— 3. Բունիաթ Սեբաստացի. նշանավոր բժիշկ. ունի Բժշկարան, որ գրել է Սամսոն քաղաքում, 1630 թվին։ Կարծվում էր թե այս աշխատությունը կորած է, բայց Բասմաջեան (Անգիտաց Անպէտ, էջ XII և էջ գ) հայտնում է թե ինքը ունի նրա այդ ձեռագիրը։ Խմբագրել է նաև Ամիրտովլաթի Օգուտ բժշկութեանը 1626 թ. և ավելացրել զանազան հավելվածներ (Ամիրտ. օգ. բժշ. իէ).—Տաշեան, Ցուց. 599—600, Յովհաննեան, Հետազօտ. Բ. 485—491. Ամիրտ. անգ. էջ 133, 442. Ամիրտ. օգ. բժշ. 8, 382, 453 (գրված Պունիաթ)։

— Անհայտ թվականով են՝ Բունիաթ (Ջեռ. Վեննա. Բ. 384), Պունիադ (Տաշեան, Ցուց. 505), Պունեաթ 1656 թ. (Երեմ. չէլ. օր. 167) և շատ ուշ՝ 1723 թվից էլ Բունեաթ (Ջեռ. Վեննա. Ա. 220)։

†ԲՈՒՆԻԿ, ար. < հյ. Բունիկ «փոքրիկ բույն» ձևից։ Մի անգամ հիշված է Բունիկ (սեռ. Բունկանն), նվիրատու Արջոյառիճի վանուց (Թվականն անհայտ).—Շիրակ 123 ա։

ԲՈՒՊԱ, ար. և իգ. ծագումն անհայտ։ (Կա կիրգիզ. bupe «փոքր երախա», բայց տես նաև Բուբաք)։

— 1. Բուպա, իշխանաց իշխան, հայր Ասփայի և աներ Լիպարիտի՝ որդւոյ Ելիկումի. Աղբերիս գյուղը նվիրեց Նորավանքին՝ 1223 թ.—Օրբ. կգ, կդ.—Բուպայն՝ Օրբ. կդ.—Բուբա՝ Օրբ. կե.—Բուպակ՝ Օրբ. կգ (ըստ մի ձեռագրի), Սիսական 180, 185—6։

— 2. Բոբա, դուստր Զաքարիայի, մայրն է Մամախաթուն Օրբելյանց, կին Ամիր-Հասան Բ-ի. նվիրաբերում է Բոլորաձորի անապատին՝ ոչ ուշ քան 1340 թ.—Ցովսէփեան, Խաղբակեանք 206—7։

— 3. Բուբա (կամ Բուբայի) հիշված է Թանատի վանքի անթվական մի արձանագրության մեջ՝ Սիսական 123։

ԲՈՒՌՁԱՏ, ար. ծագումն անհայտ։

— Բուռզատ Նախիջևանցի, հայր Բենեդիկտոսի, որ 1542 թ. ուղարկվեց Հռոմ, Պապից օծվելու առաջնորդ ունիթոռների.—Չամչ. Գ. 512։

ԲՈՒՍԵՐ, ար. ծագումն անհայտ (բայց կա պրս. پسر puser «որդի»)։ Մի անգամ հիշված է անթվական մի հիշատակարանում, որ գրված է 1466 թվից հետո (Թորոս աղբ. Բ. 338)։

†ԲՈՒՍԻԿ, ար. < հյ. բուսիկ «փոքրիկ բույս» բառից. Բույս անվան գգվականն է։ Հիշված է մի անգամ 1567 թ. (Թորոս աղբ. Բ. 257)։ Ավելի ուշ՝ 1695 թ. հիշված է ոմն Բուսիկ, որ սակայն մականուն է և ոչ անուն. «Շնում Մկրտչին, այլ և միւսին որ մականուն Բուսիկ ասեն» (Ձեռ. Թաւր. 112ա)։

*ԲՈՒՏ, ար. < ասոր. בוד bud «եկեղեցական տեսուչ» բառն է, որ իբրև հատուկ անուն էլ գործածվում է. հայտնի է օրինակ՝ Bud ասորին, որ շուրջ 570 թվին ճամբորդեց Հնդկաստանում և հնդկերենից ասորերենի թարգմանեց Գալիլակ և Դիմնակ գիրքը։ (Renan, Hist. des langues sémit. Paris 1863, հտ. Ա. էջ 281 այս անունը ուզում է կապել Բուդդայի և բուդդայական քարոզչության հետ)։ Տես նաև Բուդ։

— Բուտ Առաւելեան, հիմնեց Բագարանի Ս. Թէոդորոս եկեղեցին՝ Խոսրովի 34-րդ տարին և Վարազտիրոց մարզպանի օրով (628)։ Չկարողացավ ավարտել. մեռավ և իր կինը՝ Աննա

շինեց ու վերջացրեց.—Կոգեան, Կմարկնները 137։ Տաճարի ճարտարապետական վերլուծությունը տես Թորամանեան, Հայկ. ճարտարապետութ. էջ 232։

†ԲՈՒՐԱՍՏԱՆ, իգ. < հյ. բուրաստան «ծաղկանոց» բառից. հմմտ. պրս. Bustān մաթեմատիկոս, մ. 1288 և Bustān գրող (Justi 74 բ)։ Մեր մեջ հիշատակված է 1570 թ. (Ձեռ. Վենետ. Ա. 672), 1610 թ? (Տաշեան, Ցուց. 506 բ), 1619 թ. (անդ 970ա՝ Գուրաստան ձևով)։

ԲՈՒՐԷՍ, ար. ծագումն անհայտ։

— Բուրէս վարդապետ Միջագետցի, որ ուղարկեց իր Նանա սարկավագին՝ վիճելու համար քաղկեդոնիկ Եպիկուրայի (Սահակ Մռուտ) հետ, երբ սա եկել էր համոզելու Աշոտ Մսակերին (801 թ).—Վրդ. խբ (հրտր. Էմինի՝ Բիւրատ).—Բուրէտ՝ Մխ. այրիվ. 68.—Զարբ. Թրգմ. 620։

*ԲՈՒՐԹԵԼ, ար. ծագումը տես Գամրեկել։

— 1. Բուրթել որդի Սմբատի՝ «արքայաշուք երեց եղբօր Տարսայիճի, որ պայազատեացն գնա».—Սիսական 201։

— 2. Բուրթել Օրբէլեան, որդի Էլիկումի և թոռն Լիպարիտի. երիտասարդ հասակում սպանվեց Խփչախների պատերազմում՝ Թերեք գետի մոտ, «1261 թ».—Օրբ. կե (մի ձեռ. Բիւրթել).—սեռ. Բուրթելին՝ Օրբ. կդ։—Զամչ. Գ. 218—9, Սիսական 189, 190, 192, 195, 201։

— 3. Բուրթել Օրբելեան, որդի Էլիկումի և թոռն Տարսայիճի Օրբելեանց, եղբօրորդի Ստեփանոս եպս. Օրբելեան պատմչի, հայր Պէշքենի և Իվանէի, պապ Սմբատի. հիշված է 1314—1344 թվերին. կոչված է զորավար Սիւնեաց, մեծ սպարապետ Հայոց և Վրաց, մեծ իշխան կամ իշխանաց իշխան տանն Սիսական.—Օրբ. կե.—սեռ. Բուրթելի՝ Ցայսմ. ապր. 27, Մեծոփ. 117, Նոտարք 37, 116 (գրված Բիւրթելի).—Բուրթելի՝ Մեծոփ. 33, 67, 72.—Սիսական 47, 95, 96, 115, 125, 148, 152, 182, 199, 202, 525.—Բարխուտարեանց, Աղուանից երկ. 246, Ձեռ. Դաղեան, Բ. 30 աբ (գրված Պուրթել), Manus. brit. mus. 22 բ, 59 ա, Ակինեան՝ Գաւազանագիրք 56, Ձեռ. Բերլինի 26 բ, Թորոս աղբ. Բ. 375. Ձեռ. Թաւր. 35 բ, Ձեռ. Վենետ. Ա. 94 (Բիւրթել «հիւպատոս և սպարապետ Հայոց՝ ի քաղաքն Սուլտանիայ», 1341 թ). Հայապ. 558. Սմբատեանց՝ Գեղարքունի 486. Ցովսէփեան, Խաղբակեանք 21, 199, 202, 204։

— 4. Բուրթել Օրբելեան, պարոն, եղբայր Սմբատ իշխանի

Սիւնեաց, թոռ Նախորդ Բուրթէլի, տէր Որոտնոյ. հիշված է 1401—2 թ.—Աղամ. 230, 271 (այլ ձեռ. Բիւրքէլ).—Բուրքէլ՝ Մեծոփ. 67, 73։ Թաւրիզի Օմար իշխանի բռնադատությամբ, իր եղբոր Սմբատի հետ հավատափոխ եղավ, բայց հետո նորից դարձավ։ Իր վրա կան և առակներ (տես Տաշեան, Ցուց. 169 ա, 178 բ, Վրդ. առ. 343).—Արարատ 323. Զամչ. Գ. 443. Ազգապ. 2035. Սիսական 96։

— 5. Բուրքէլ, հայր Յովսէփի, որ ստացավ մի Աւետարան 1432 թ.—Ձեռ. Վասպ. 163։

— 6. Բուրքէլ, հայր Հաղարբէկի, որ Խլաթում գրել տվեց մի Յայսմաւուրք, 1445 թ.—Թորոս աղբ. Բ. 306։

— 7. Բուրքէլ, դպիր Եղեգեաց Բոլորաբերդ անապատի 1482 թ.—Յովսէփեան, Խաղբակեանք 236։

— Բուրքէլ հիշված է նաև 1559 թ. (Յովսէփեան, Խաղբակեանք 249), և անթվական մի հիշատակարանում, Ձեռ. Վենետ. Ա. 166։

*ԲՈՒՐՍԱ, իգ. < Փոքր-Ասիայի Բուրսա քաղաքի անունից. այս քաղաքը նշանավոր եղավ նրանով, որ դարձավ Օսմանյան նորակազմ պետության մայրաքաղաքը՝ 1326 թ։ Գործածված է իբր անձնանուն՝ ԺԵ—ԺԷ դարերում, ապա խափանված։

— 1. Բուսէ (ընթերցվածը անստույգ). մի այգի է նվիրել Վայոց ձորի Սպիտակաւոր Աստուածածնի վանքին՝ 1340 թ.—Սիսական 139 (կա պրս. بوسه būsa «համբույր», բայց չեմ կարծում որ այս անվան մայրը լինի. այլ ր-ի կորուստով Բուրսա բառից. հմմտ. տակը № 3)։

— 2. Բուրսա խաթուն, դուստր Իսրայէլի և Թուրֆանդա խաթունի, որ ստացավ մի Աւետարան, 1448 թ.—Ձեռ. Վասպ. 402—4։

— 3. Բուրսա (հոլով Բուրսէն) դուստր Սելչուկ խաթունի, որ Հայրապետ քահանային գրել տվեց մի Մաշտոց, 1466 թ.—Թորոս աղբ. Բ. 337 (նույնը Ա. էջ 232 գրված է Բուսէն, որ պետք է համարել պատահական վրիպակ)։

— 4. Բուրսա, կին Ստեփաննոսի՝ հանգուցյալ եղբոր տանուտեր Մարտիրոսի, որ Բերկրիում, Կարապետ քահանային գրել տվեց մի Աւետարան, 1473 թ.—Ձեռ. Վասպ. 467։

— Բուրսա անունը հիշված է վերջին անգամ ԺԷ դարում (Ջքր. սարկ. Գ. 43) և հատկապես 1619 թ. (Ձեռ. Վասպ. 860)։

+ԲՈՒՆԱՒՈՐ, ար. < հյ. բունաւոր բառից։ Անսովոր անուն, որ մի անգամ գտնում եմ գործածված ԺԳ դարում։

— Բռնաւոր, պարոն, իր կնոջ՝ Տղատիկինի հետ Իգնատիոս գրչին գրել տվեց մի Աւետարան, որ նվիրեց Խծկոնից վանքին, 1236 թ. հետո էլ այգիներ՝ 1240 թ.—Յովսէփեան, Խաղբակեանք 18, 214, Նիւթեր և ուս. Ա. 25, 27 (ուր կա և իր նկարը), Շիրակ 128։

†ԲՐԱԲԻՈՆ, իգ.< հյ. բրաբիօն բառից, որ նշանակում է «հաղթության մրցանակ, պսակ, մի տեսակ անուշահոտ ծաղիկ». փոխառյալ է հուն. βραβεῖον (>լատ. brabeum) բառից։ Բայց հույների և լատինների մեջ իբրև անձնանուն չի գործածվում։ Մեր մեջ գործածվել է ԺԸ դարից (տես տակը). հիշատակված է 1796 թվին՝ Էփիմ. էջ 448, և դեռ անցյալ դարում գործածական էր Պոլսում՝ Փրափիօն ձևով, կրճատը՝ Փրափ (տես և Տաշեան, Ցուց. 895 բ և 935 բ)։ Թվում է թե նույն անունն է Բիւրափիւբ, որ սակաւ գործածական է Ագուլիսում։

— Բրաբիօն, դրչուհի. արտագրել է Ալեքսանդր Գաղամաթոյի «Անտառ նորագոյն մտածմանց», 1773 թ.—Ձեռ. Կարին. էջ 4։

— Բրաբիօն ոմն հիշված է 1736 թ. (Ձեռ. Սեբ.=ՀԱ 1927, էջ 37)։

ԲՐԻԹ, ար. ծագումն անհայտ. (բայց կա հուն. βριθύς «ծանր», որից βριθύνοος «ծանրախոհ, լրջամիտ», որ Ապոլլոնի վերադիրն է)։

— Բրիթ, պատգամախօս աստուած Հայոց. հիշված է Ս. Բարթուղիմէոսի հույն և լատին վկայաբանության մեջ (Ալիշան, Հին հաւատք 317)։

ԲՐԻՄ, ար. ծագումն անհայտ։ Հիշատակված է թվականն անհայտ մի ձեռագրում (ԺԶ դա՞ր), Բրիմ և Բրեմ ձևերով (մին կամ մյուսը վրիպակ)՝ Ձեռ. Վասպ. 767—8։ Բայց կա նաև Բարմ, ար. 1590 թ. (Ձեռ. Վասպ. 282)։

ԲՐՆՋԻՔ, ար.< հյ. բրինձ բառի՞ց է արդյոք։ Այս անունով հայտնի է միայն՝

— Բրնջիք սարկաւագ Բայազիդի Գարսան գյուղի «1769 թ».—Ազգագ. 3063։

*ԲՐՔԻՇՈՅ, ար.< ասոր. בריכישוע Brīxīšō‘ անունից (Հիւբշ. 292), որ բուն նշանակում է «օրհնութիւն Յիսուսի կամ օրհնեալ է Յիսուս»։ Տառադարձված է լատ. Barachisius (REA 1, 27)։ Մեր պատմության մեջ ունինք՝

— Բրքիշոյ ասորի ոմն, որ Պարսից Վռամ թագավորի հրա-

ժանով նշանակվեց Հայոց կաթողիկոս, իբրև հաջորդ Սուրմակի «429 թ»։ Բայց իր գեղխ և անառակ կյանքի համար երեք տարուց վտարվեց («429—432 թ»)։—Խոր. Գ. կդ. Փարպ. ժե.—ⴁⴐⴕⴈⴘⴍⴓ՝ Վրդ. իգ. Կիր. 19.—ⴔⴐⴕⴈⴑⴍⴓ՝ Պտմ. սահ. 32.—ⴁⴐⴂⴈⴑⴍⴢ՝ Ցհ. կթ. ժդ.—ⴁⴀⴐⴂⴈⴘⴍⴓ՝ Շնորհ. վիպ. 958.—ⴁⴀⴐⴖⴈⴑⴍⴓⴌ՝ Մեծոփ. յիշ. գ.—ⴁⴕⴐⴈⴘⴍⴢ՝ Արծր. ժա.—սեռ. ⴁⴐⴕⴈⴘⴍⴢⴈ՝ Խոր. Գ. կդ. Փարպ. ժե. Լմբ. 193.—ⴁⴐⴂⴈⴑⴍⴢⴈ՝ Ցհ. կթ. ժդ.—ⴔⴐⴕⴈⴘⴍⴓⴈ՝ Պտմ. սահ. 32. —Սրա փոխարեն Ասող. Բ. ա դնում է ⴀⴁⴃⴈⴘⴍⴢ, որ տես.—ⴁⴐⴕⴈⴑⴍ կամ ⴎⴄⴐⴉⴈⴑⴍⴑ՝ Վրաց աղբ. Ա. 77։

## Գ

ԳԱԲԱՂ, ար. ծագումն անհայտ և շատ անսովոր անուն, որով ունինք միայն՝

— 1. Գաբաղ իշխան, որին Վաղարշակը (Ն.Ք. 149—127) ձիերի երամակների կուտապան կարգեց և գյուղեր բաշխեց։ Նրանից ձևացավ Գաբեղեան նախարարությունը.—Խոր. Բ. է (երկու ձեռ. Գաբա). Ասող. Ա. ե. Սամ. անեց. 45։

— 2. Գաբաղ սպուհ Գաբեղեան, կուսակից Վահան Մամիկոնեանի. նահատակվեց Երէզ գյուղի կռվում, «483 թ.»—Փարպ. ձբ։

*ԳԱԲՐԻԷԼ, ար. < եբր. גבריאל Gabrīel անունից, որ բուն նշանակում է «այր Աստուծոյ» (եբր. גבר geber «մարդ, տղամարդ» բառից). հմմտ. ասուր. El-gabrī, Ilu-gabrī անունները (Gesenius 128 բ)։ Եբրայեցոց մեջ այս անունով էր կոչվում հրեշտակապետներից մեկը. հմմտ. Դան. Ը 16, Ղուկ. Ա. 19։ «Մահվան հրեշտակն է, որ մարդկանց հոգին է առնում»։ Սրանից են տառադարձված հուն. Γαβριήλ, լտ. ֆրանս. անգլ. գերմ. Gabriel, իտալ. Gabriele (որի իգականն էլ լինում է Gabriella =ֆրանս. Gabrielle, իբր թե «Գաբրիէլուհի»), ռուս. Гавриил, Гаврила, ասոր. جبرايل =արաբ. جبرائيل Jibrāīl (որից էլ հյ. Ջիբրայիլ)։ Արդի բարբառներում դարձել է Գաբրէլ (այս ձևը հիշատակված է արդեն 1659 թ. (տես Երեմ. չել. օրագր. 331) և ավելի ուշ՝ 1708 թ. Ջեռ. Վասպ. 564), Գաբիկ, Գաբօ, Գաբի, Ղրբ. Կափի, Կափէլ, Պլ. Քափրէլ։—Տաթև. հարց. 144 սխալմամբ ստուգաբանում է «Գաբրիէլ, որ է պատկեր Աստուծոյ»։ Հիշված է Սիսն. քեր. 204՝ իբրև արական անձնանվան օրինակ։

— 1. Գաբրիել, եպիսկոպոս Արշնիի, անդամ Մանազկերտի ժողովի, «726 թ».—Ազգապ. 839։

— 2. Գաբրիել, ավագերեց Սեբաստիայի. նույն քաղաքի հույն մետրապոլիտի ձեռքով բանտարկվեց և չարչարանքով նահատակվեց հավատքի համար՝ 986 թ.—Ասող. Գ. ի, իդ։

— 3. Գաբրիել որդի Ոչոպընտրայ, զորավար Տայոց Դավիթ կյուրապաղատի. պատերազմի գնաց Ատրպատականի Մամլան ամիրայի դեմ «998 թ» և զարկավ նրան Ապահունիքում. սպանվեց Ռուսաց հետ ընդհարման ժամանակ (1000 թ. ըստ Չամչ. Բ. 882).—Ասող. Գ. խզ. Մխ. այրիվ. 72.—սեռ. Գաբրիելի՝ Ասող. Գ. խա։

— 4. Գաբրիել, որդի Բուլղարաց Սամուել հայազգի թագավորի։ Բուլղար անունով կոչվում է նաև Ռադոմիր։ Չեյթունի բերդում պաշարված ժամանակ, քաջությամբ պատերազմում էր իր հոր հետ՝ հունաց Վասիլ կայսեր դեմ։ Ազատեց իր հոր կյանքը ստույգ մահից։ Երբ Սամուել մեռավ սրտի ցավից, Գաբրիել հաջորդեց նրան (1014 թ)։ Վլադիսլավ անուն բուլղար իշխանը, որի կյանքը մի ժամանակ ազատել էր Գաբրիելը, դավաճանությամբ սպանեց նրան և բուլղար գահին տեր դարձավ.—Տէր Սահակեան, Հայ կայսերք, Բ. 291, 293։

— 5. Գաբրիել, հայ իշխան և քաղաքապետ Մելիտինեի. իր մի աղջիկը՝ Մարսիլ կամ Մորֆիա եղավ կին Պալտին Բ թագավորի Երուսաղեմի, իսկ մյուս աղջիկը՝ կինն էր Եդեսիայի Թորոս իշխանի (ԺԱ դար).—Սիսուան 47, Շնորհ. և պրգյ. 312, ZAPh 1, 177։

— 6. Գաբրիել եպիսկոպոս Էջմիածնի. անդամ Էջմիածնի մեծ ժողովի «1441 թ».—Մեծոփ. յիշ. ա։ Նույն է սրա հետ՝

— 7. Գաբրիել եպիսկոպոս, որ հիշված է 1441 թ.—Մեծոփ. յիշ. բ։

— 8. Գաբրիել աբեղա, գրիչ. օրինակել է Սաղմոսը՝ Յովհաննու վանքում, 1462 թ.—Ձեռ. Վենետ. Ա. 216։

— 9. Գաբրիել քահանա, հոգևոր որդի Մկրտիչ քահանայի, որ Բյուրականում օրինակեց Յիսուս որդին և այլ չափաբերական գործեր, 1469 թ.—Ձեռ. Վենետ. Բ. 1113։

— 10. Գաբրիել եպիսկոպոս Վաղարշապատցի. վանահայր Յովհաննավանից, հաջորդեց Կարապետին՝ 1443 թ. աշխատեց տապալել Կիրակոս Վիրապեցուն. հիշատակված է նաև 1464 թ. ճարտար գրիչ էր և թողել է զանազան ձեռագրեր, որոնցից

նշանավոր է Մայր Մաշտոցը, որ օրինակել է նույն Յովհաննավանքում, 1477 թ.—Մեծոփ. յիշ. գ. Զքր. սարկ. Գ. 31. Զամչ. Գ. 489. Արարատ 172, 174, Սեդրակեան՝ Հայ. եկեղ. պատկերյարգ. 106։

— 11. Գաբրիէլ Ղալաթիացի, նոր վկա։ Ծնողները Տիւրիկի Խուռնաւիլ գյուղից էին, իսկ ինքը ծնված ու սնված էր Պոլսի Ղալաթիա թաղում։ Հավատքի մեջ թուլանալով՝ ենիչերի գրվեց և Կրետէի պատերազմներին մասնակցեց մի քանի անգամ։ Զղջալով իր ուրացության վրա, փախավ Եվրոպա, ուր մնաց 12 տարի։ Իր մեղքը քավելու համար ուխտի գնաց Սպանիայի Ս. Յակոբ և Հռոմի Պօղոս-Պետրոս եկեղեցիները. բայց այսքանը բավական չհամարելով, որոշեց թե «Ես ուր կորուսի զանբիծ և զանարատ հաւատս իմ, անդր երթեալ գտանեմ»։ Այս մտածմունքով դարձավ Պոլիս և սկսեց հայտնի դավանել քրիստոնեությունը։ Տաճիկները բռնեցին և փաշայի հրամանով կախաղան բարձրացրին, «1662 թ. սեպտ. 17»։ Ակնեցի Յակոբը գրեց նրա կյանքը և մտցրեց մի հին ձեռագրի մեջ։—Նոր վկ. 484—7, յոջ. էջ ժզ, Ազգապ. 2626. ՀԱ 1907, 61—62. Բանասէր 1906, էջ 105։

— 12. Գաբրիէլ Աջպահեանց, կաթուղիկոս Սսոյ, «1758—1770 թ». կրտսեր եղբայր և հաջորդ Միքայէլ Ա-ի, որի աթոռակիցն էր նախապես։ Սպանվեց ավազակներից՝ Գոզան Օղլուի հարձակման ժամանակ։—Ազգապ. 2998, 3071. իր մասին մի ընդարձակ հիշատակարան տես Ձեռ. Հալէպի, Ա. 372 բ։—Ձեռ. Թաւր. 127—129, Սիսուան 219։

— 13. Գաբրիէլ արքեպիսկոպոս Նիկոմիդիացի, պատրիարք Երուսաղէմի՝ «1819—1840 թ» (ընդմիջմամբ). հաջորդեց Թէոդորոս Վանեցուն. թույլ և ապիկար մարդ էր. իր իշխանությունը լոկ անվանական եղավ.—Ազգապ. 3533, 3741։

— 14. Գաբրիէլ եպս. Շիրոյեան, Վանի առաջնորդն էր. Խաչատուր Մոկացուց հետո ընտրվեց կաթուղիկոս Աղթամարի։ Պոլսի ազգային իշխանությունը թեև ընդունեց, բայց Էջմիածնի կաթուղիկոս Ներսէս Աշտարակեցին չհամաձայնելով՝ Գաբրիէլը մնաց տարտամ դրության մեջ և վարեց ինչպես Վանի առաջնորդի, նույնպես և Աղթամարի կաթուղիկոսի պաշտոնը՝ առանց օծման, «1851—1857 թ».—Ակինեան՝ Գաւազանագիրք 175—179, Ազգապ. 3961։

*ԳԱԳ, ար. ասորեստանյան անուն է. հմմտ. Gāgu իշխան

այն մարտիկ ժողովրդի, որ բնակվում էր Ասորեստանի հյուսիսային կողմը,—Gag իշխան Սաքի գավառի (Մարաստան)։ Սրանց հետ համեմատվում է եբր. גוג Gog, որ է Մագոգ ժողովրդի իշխանը (Եզեկ. ԼԸ 1, 2, 14 են. տես Gesenius 133 ա)։ Այս անունով մեր պատմության մեջ գիտենք միայն երկու անձ, բայց շատ ավելի սովորական է նրա փաղաքշական Գագիկ ձևը։

— 1. Գագ իշխան Հաշտենից. Վրթանէս կաթուղիկոսը ուղարկեց նրան Բիւզանդիոն, խնդրելու կայսրից, որպեսզի թագավորեցնի Խոսրով Բ-ին՝ Հայոց վրա «330 թ».—Խոր. Գ. դ (2 ձեռ. ունին Դատ, ինչպես գիտե նաև Բուզ.)։

— 2. Գագ եպիսկոպոս, անդամ Շահապիվանի ժողովի «444 թ».—Աղփապ. 330։

*ԳԱԳԻԿ, ար. նախորդ Գագ անվան փաղաքշական ձևն է. գործածված է մեր մեջ Է դարից սկսած մինչև ԺԴ դար. վերջին անգամ հիշված եմ գտնում 1311 թվից ավելի ուշ գրված անթվական մի հիշատակարանում (Ձեռ. Թաւր. 74 բ). և այժմ էլ գործածվում է Կովկասում։ Անգործածական է դարձել Պոլսում, գ տառի k հնչման պատճառով։ Բայց պահված է հայոց մեջ՝ հետևյալ թուրքերեն առածում. «Gagig bizde, biz Gagigde Գագիկը մեզ մոտ, մենք Գագիկի մոտ»։ Այս առածը գործ է ածվում այն անձերի կամ հարևանների համար, որոնք շարունակ և փոխադարձաբար միշտ միմյանց տուն հյուր են գնում։ Անշուշտ ակնարկում է Գագիկ անունով մի անձ, որ իր մի հարևանի հետ այդպիսի լավ հարաբերության մեջ էր։—Արաբների մոտ տառադարձված է جاجق ǰāǰiq.

—1. Գագիկ Մամիկոնեան, որդի Մանուէլի, Պարսից Խոսրով Բ թագավորի (590—628) կողմից կանչվեց Տիզբոն և հասավ մեծ պաշտոնի (Է դարի սկիզբը).—Սեբ. ժա, ժգ։

— 2. Գագիկ Կամսարական իշխան. որդի Վահան պատրիկի և կրտսեր եղբայր Ներսեհ պատրիկի. ի հիշատակ իր նահատակ քրոջ՝ Շուշանի շինեց Վարդանակերտի եկեղեցին «708 թ». —Ջամչ. Բ. 373, 382, Տաշեան՝ Ցուց. 656 բ, Այրարատ 56, Աղգապ. 807։

— 3. Գագիկ, որդի Վարազ-Տրդատ իշխանի Աղվանից և եղբայր Վարդան պատրիկի. պատանդ էր հույնաց մոտ. բանտարկված մնաց 12 տարի (Ը դար).—Կղկնտ. Գ. ը, ժ, ժբ.—սեռ. Գագկայ՝ Կղկնտ. Գ. ժբ։

— 4. Գագիկ Արծրունի, եղբայր Սմբատի, իշխան Վասպուր-

րականի. շենացրել է Աղբակ գավառը (Ը դար).—Սուտ-Շապհ. էջ 37։

— 5. Գագիկ Արծրունի, որդի Աշոտի, իշխան Վասպուրականի, եղբայր Սահակի. նախորդ Գագիկի Թոռնորդին է (Ը դար).—Սուտ-Շապհ. 37։

— 6. Գագիկ, որդի Ներսեհի և Թոռնորդի Վարազ-Տրդատ իշխանի Աղվանից. միհրական ազնվական ցեղից (Ը դար).—Կղկնտ. Գ. իդ։ Մխ. Այրիվ. 23.—սեռ. Գագկայ՝ Կղկնտ. Գ. իդ։

— 7. Գագիկ Արծրունի, որդի Վահանի. լուծեց իր Սահակ և Համազասպ նահատակ եղբայրների վրեժը՝ «շուրջ 758—764 Թ», ջարդելով արաբներին՝ իրենց Սուլեյման զորավարի հետ։ Ծալեհի արշավանքի ժամանակ ամրացավ Նկան բերդում և սկսեց ապստամբել Պարսից գավառները։ Վերջապես բռնվեց արաբներից և մեռավ բանտում.—Ղև. լբ. Ասող. Բ. դ.—սեռ. Գագկայ՝ Ղև. լ.—Հիշված է նաև Belāδori 212՝ ǰaǰiq ձևով (Խալաթ. Արաբ. մատ. 65)։—Զամչ. Բ. 409։

— 8. Գագիկ Սիւնի, որդի Սահակի և եղբայր Գրիգոր Սուփանի և Հրահատի (Թ դարի սկիզբը).—Օրբ. ծդ։

— 9. Գագիկ Արծրունի, որդի Աշոտի և Թոռն Գրիգոր-Դերենիկի Ա., եղբայր Գրիգոր-Դերենիկի Բ և Համազասպի։ Երբ այս երեք եղբայրները բաժանեցին Վասպուրականն իրենց մեջ, Գագիկը ստացավ Նկանը, Ծուաշն ու Կոտորը. հետո էլ գնեց Վանը՝ իր Գրիգոր եղբորից (Թ դար).—Սուտ-Շապհ. 39, 40, 47, 48.—սեռ. Գագկայ՝ անդ 40, 47—49։

— 10. Գագիկ Սիւնի, որդի Գրիգորի Սիւնեաց տեառն. հիշվում է Տաթևի 844 Թվի կալվածագրում.—Օրբ. լը։

— 11. Գագիկ Սիւնի, նախարար. հիշված է Թ դարի կեսից հետո.—սեռ. Գագկայ՝ Օրբ. լգ։

— 12. Գագիկ Արծրունի Ապումրուան, որդի Վահան Արծրունու և աներ Աշոտ Արծրունու՝ որդւոյ Գրիգոր-Դերենիկի Գ. Բուղա ոստիկանի ձեռքով գերի տարվեց Բաղդադ («852 Թ»). բայց ողջամբ վերադարձավ Վասպուրական։ Գրիգոր-Դերենիկը խարդախությամբ բռնեց նրան և բանտարկեց Վանի բերդում, բայց հետո արձակեց։ Ներկա էր Սմբատ Ա-ի Թագավորական օծման հանդեսին («891 Թ»)։ Գրիգոր-Դերենիկի մահից հետո, Գագիկը բանտարկեց իր փեսա Աշոտին և նրա երկու եղբայրներին և խլեց Վասպուրականի իշխանությունը։ Միացավ Միջագետքի Ահմադ ոստիկանին և դավաճանությամբ կռվեց Սմբատ

Ա Թագավորի դեմ («895 թ»). բայց ինքն էլ շուտով սպանվեց Գագիկ Արծրունու ձեռքով։—Յհ. կթ. լդ. Արծր. Գ. պ, ժը—ի, իբ, լ. Օրբ. լզ.—սեռ. Գագկայ՝ Յհ. կթ. լդ. Արծր. Գ. ժը, ի, իբ, Դ. բ. լ.—Ապումրուան՝ Արծր. Գ. իդ. Դ. ա, բ.—Ապումրվան՝ Սուտ-Շապհ. 64, 68, 69, 71—75, 84.—Մրվան՝ անդ 74, 84.—սեռ. Ապումրուանայ՝ Արծր. Գ. ժը, ի, իբ, իդ, իե. Դ. ա, բ.—Ապումրվանայ՝ Սուտ-Շապհ. 69, 73—75.—Մրվանայ՝ անդ 73, 84.—Զամչ. Բ. 718—721։

— 13. Գագիկ, առաջնորդ ուխտին Առոմայ (հավանաբար Աղձնեաց նահանգում, Սղերդի մոտիկ Առոմեանց վանքը)։ Ժամանակակից է Սմբատ Ա-ի («914 թ»)։ Հավաքեց նահատակների վկայաբանությունը և դասավորելով հռովմեական ամիսների օրերով՝ կազմեց առաջին Յայսմաւուրքը, որ կոչվեց Առոմագիր կամ Հռոմագիր, Տօնացուցակ, Տօնանամակ։ Առոմագիր անունը նրանից է, որ կազմված է Առոմի վանքում։ Բայց որովհետև հաջորդ դարում, Առոմ Անձևացի եպիսկոպոսն էլ վերամշակության ենթարկեց նույն գործը, ուստի շատեր կարծում են, որ նրա անունով է կոչված (տես էջ 255, № 8)։ Աւելի ուշ՝ շատեր նորանոր հավելումներ են արել, այնպես որ Գագիկի գործը կորած է (Հայապ. 79)։—Ասող. Գ. գ. Մխ. այրիվ. 70. Զարբ. Հին դպր. 569. Ազգապ. 982։ Նույն անձն է՝

— 14. Գագիկ վանահայր, որ սուրբերենից թարգմանեց Ներսեհի և Անանունի պատմությունը և մոցրեց Հարանց վարքը.—Վրք. հց. ա. 368. Տաշեան, Ցուց. 303 բ, 703 ա։—Նույնպես՝ իր սարկավագ Գրիգորի հետ թարգմանեց սուրբերենից Ս. Մարութայի վարքը (Վրք. և վկ. Բ. 31)։

— 15. Գագիկ, իշխան Տարօնի. իր բանակով օգնական գնաց Սմբատ Ա-ի՝ պատերազմելու համար Ափխազաց Դոտաս Թագավորի դեմ՝ շուրջ 908 թ.—Սուտ-Շապհ. 81։

— 16. Գագիկ-խաչիկ Արծրունի, որդի Գրիգոր-Դերենիկի Գ Արծրունւոյ՝ իշխանի Վասպուրականի, քեռորդի Սմբատ Ա Թագավորի Բագրատունեաց, եղբայր Աշոտի և Գուրգէնի։ Ծնվել է 879 թ։ Սպանեց Աշոտ Արծրունու անեը՝ Գագիկ Արծրունի Ապումրուան իշխանին, որ ապստամբվել ու դավաճանել էր Սմբատ Ա-ի դեմ։ Իր եղբոր՝ Աշոտ իշխանի մահից հետո, ժառանգեց Վասպուրականի իշխանությունը։ Նախիջևանի վեճի պատճառով գժտելով Սմբատի դեմ, միացավ Յուսուփ ոստիկանին, ապստամբվեց նրանից և անկախ Թագավորեց Վասպուրականի վրա

(«908 Թ»)։ Այսպես սկսվեց Արծրունյաց թագավորությունը, որ 1021 թվին փոխադրվեց Սեբաստիա։ Գագիկը ինքն էլ հետո են-թարկվեց Յուսուֆի արշավանքին, որ վանեց քաջությամբ։ Հաշտ-վեց նրա հաջորդ Ըսբուքի հետ։ Արել է մեծամեծ շինություն-ներ, որոնց թվում նշանավոր է Աղթամարի Ս. Խաչը (ըստ Հաւաք. սկսել է 921 թվին և վերջացրել 924 թ)։ Իշխել է 29 տարի, այն է մինչև «937 թիվը» (իսկ ըստ Հաւաք. 33՝ մինչև 973 թ)։ Ունի և մի թուղթ, որ գրել է Հունաց Ռոմանոս Ա կայ-սեր (920—944)։ Այդ թուղթը ավանդում է Գիրք թղ. ձբ։—Յհ. կթ. յոջ. լդ, լը, խգ, խե—խը, ծա, ծդ, ծե, կա, կդ, կէ. Ասող. Գ. դ, խգ. Գիրք թղ. ձբ. Արծր. Գ. ժթ, ի, իբ, իդ, իե, իթ, լ. Դ. ա—գ. Վրդ. խգ, ծա. Վրդն. աշխ. 515. Օրբ. լէ, խ, խբ. Կիր. 46. Մխ. այրիվ. 19, 71. Սամ. անեց. 99. Սուտ-Շապհ. 64, 71, 74—76, 83, 85. Հաւաք. 1, 3, 13, 15, 21, 32—34, 45, 46, 58, 59, 64, 83. Օրբ. ողբ 36. Անանուն ժմ. 15. Մին. համդ. 31. Արծր. պատմության ձեռագրի հիշատակարանում՝ 1303 թվից. նաև Կոստ. Պերփեր. 187, 15 հուն. Κακίκιος ձևով.—սեռ. Գագ-կայ՝ Յհ. կթ. խդ, խե, խը, խթ, ծա, ծե, կ, կա, կդ. Գիրք թղ. ձբ. Ասող. Գ. ե, ը, խգ. Սուտ-Շապհ. 85. Օրբ. լէ, խբ, ծբ. Ցայսմ. յուլ. 30. Արծր. Գ. իբ, իդ, իե, իէ, իթ, լ. Դ. ա—գ, դ—թ, ժա, ժբ. Ուռհ. 8, 34. Վրդ. կգ. Սմբ. պատմ. 27. Հաւաք. 2, 3, 6, 12—14, 21, 26, 29, 36, 41—42, 82. Առաք. պատմ. 324.—Գագի-կայ՝ Սուտ-Շապհ. 76, 83.—Արաբները կոչում են Ջաջիկ (ǰāǰīq) —Իբն-Դիրանի (տես Խալաթ. Արաբ. մատ. 143, 144, 146) կամ պարզապես Ibn-ed-Daïrānî՝ իր հոր Դերենիկի անունով (տես Huart REA 1, 420).—տես և Ջեռ. Վենետ. Ա. 385, 388.—Ջամչ. Բ. 718—826։

— 17. Գագիկ, զորավար Հայոց և Վասպուրական իշխան, որի հրամանով Թովմա Արծրունին գրեց իր Պատմությունը (հմմտ. նաև Գրիգոր).—Արծր. Ա. դ, ժա։

— 18. Գագիկ Սիւնի, որդի Վասակ Սիւնւոյ և եղբայր Սմբատի (Ժ դար).—հայտնի չէ թե ով է.—սեռ. Գագկայ՝ Օրբ. ծթ։

— 19. Գագիկ կաթուղիկոս Աղվանից. եղբայր և հաջորդ Սահակի. էր եպիսկոպոս Գարդմանի. Անանիա կաթուղիկոս Մո-կացին գահազուրկ արեց նրան. մեռել է «958 Թ».—Կղկնտ. Գ. իդ. Օրբ. ծա. Կիր. ը. Մխ. այրիվ. 24. Հայապ. 385. Օրբ. ծա. Կիր. ը.—բց. ի Գագկայ՝ Օրբ. ծա։

— 20. Գագիկ թագավոր Աղվանից Կիւրիկեանց. հիշված է

իբրև Նախորդ Դաւիթ Անհողինի (մ. 1046). ուստի իմա Գուրգէն կամ Կիւրիկէ Ա.—Ուռհ. 231։

— 21. Գագիկ Ա Բագրատունի, թագաւոր Հայոց «990—1020 Թ». կոչվում է Շահնշահ։ Աշոտ Գ Ողորմած շահնշահի որդին և Սմբատ Բ-ի եղբայրն ու հաջորդն էր։ Իր եղբոր հետ գնաց Ափխազների դեմ պատերազմի. առեց մի քանի բերդերի՝ Վայոց ձորի, Խաչենի և Փառիսոսի կողմերում։ Օգնեց Դաւիթ կիւրապաղատին՝ նրա պատերազմների ժամանակ։ Շինեց Անիի Ս. Գրիգոր եկեղեցին (1000 Թ), որի առաջ էլ կանգնեցրեց իր արձանը. նորոգեց Վանեվանից եկեղեցին և իր թագաւորության ամբողջ 30 ամյա շրջանը Հայաստանի համար եղավ խաղաղության և լուսավորության մի շրջան։ Նրա արձանը պեղումների ժամանակ երևան հանեց հայագետ Ն. Մառը (Նկարը տես Թորամանեան, Հայկ. ճարտ. 271)։ Բայց վերջին պատերազմի ժամանակ Թշնամիները կտոր կտոր արին հին հայոց արձանագործության այդ միակ նմուշը։—Ասող. Գ. իը—ւ Ա, Ա, խա, խգ, խե, խէ, խը. Կիր. 50. Վրդ. խը, ծբ. Անանուն ժմ. 15. Մխ. անեց. գ. Լաստ. բ. Օրբ. լզ, ծե. Ուռհ. 3, 4, 7, 17. Սամ. անեց. 100, 102, 104, 105. ՔՏնպ. 272. Մխ. այրիվ. 19. Պամ. վր. ժէ. Սմբ. պամ. 21—24, 26. Օրբ. ժմ. 11. Նհպաք. 97. Մին. համդ. 34, 111. Տաշեան, Ցուց. 656 ա.—սեռ. Գագկայ՝ Ասող. Գ. իթ, ւ խա, խգ, խե, խէ, խթ. Կիր. 50. Սամ. անեց. 100, 102, 105, 107. Մխ. անեց. գ. Լաստ. բ. Օրբ. խթ, ծդ, ծե, կա. Օրբ. ժմ. 12. Ուռհ. 3, 4, 7, 10, 49, 51, 79, 84, 86, 218. Սմբ. պամ. 22, 24, 46, 48. Նհպաք. 97, 99. Մին. համդ. 34. Տաշեան, Ցուց. 657 բ. Վրաց պղբ. Ա. 204, Բ. 97. Ջամչ. Բ. 850—896, 1037—8. Ջարբ. Թրգմ. 454, 761. Այրարատ 497.—կոչում է իրեն Աշոտ (Արձ. Շիրակ 133—4)։—Իր անունով արձանագրություններ՝ Շիրակ 15, 30, 33, 68, 125, 133, 136, 138, 149, 166, Այրարատ, էջ 136։

— 22. Գագիկ Թագաւոր Կախեթի, որդի Ցովհաննէս Թագաւորի Հայոց. գահակալեց 1039—1058 Թ.—Պամ. վր. ժէ. Justi 108 ա։

— 23. Գագիկ Արծրունի, որդի Գուրգէն-Խաչիկի (մ. 1003)՝ եղբոր Սենեքերիմ Թագաւորի Արծրունեաց, որի հետ գաղթեց Սեբաստիա՝ «1021 Թ».—Վրդ. ծա։

— 24. Գագիկ Բ Բագրատունի, Թագաւոր Հայոց «1043—1044 Թ». Աշոտ Դ-ի որդին էր. հաջորդեց Ցովհաննէս-Սմբատ

*Թագավորին։ Իր ժամանակ երկու կուսակցություն կար Հայաստանում. 1) Վեստ-Սարգսեանք, որոնք ուզում էին Անին հանձնել հույներին, և 2) Պահլավունիք, որոնք պաշտպանում էին Գագիկի թեկնածությունը։ Գագիկը, թեև քանիցս հաղթեց հույներին և վանեց նրանց արշավանքը, սակայն խաբվելով Վեստ-Սարգսեաններից, գնաց Պոլիս, Հունաց կայսեր մոտ բանակցության. բայց բռնվելով բանտարկվեց և հետո էլ թագավորությունից զրկվելով՝ ուղարկվեց Կապադովկիայի Բիզու. քաղաքը։ Այստեղ նա ամուսնացավ Սեբաստիայի Դավիթ թագավորի աղջկա հետ («1044 թ»)։ Ներկա էր Տուկիծ կայսեր գումարած ժողովին («1065 թ»), ուր ջախջախիչ ատենաբանությամբ պաշտպանեց Հայոց դավանությունը։ Լսել էր որ Կեսարիայի հույն մետրապոլիտը (Մարկոս), ի նախատինս հայոց, իր շան անունը Արմէն է դրել։ Գագիկը հյուր գնաց նրա մոտ և ստուգելով իրողությունը, ծեծի տակ սպանեց նրան։ Մանդալեան հույն եղբայրները սրան ի վրեժ՝ բռնեցին նրան և Կիզիստրա բերդից կախեցին («1079 թ»)։—Մագ. Թղ. (դ), իբ, (կա, հբ). Լաստ. ժ. Օրբ. կե. Արծր. Դ. ժբ. Կիր. 52, 57, 58. Անանուն ժմ. 17. Վրդ. ծե, կ, կզ. Ուռհ. 79, 86, 87, 93—97, 138, 162—3, 178—184, 198, 218—220. Սամ. անեց. 105, 107—8, 112—3, 116. Մխ. այրեվ. 73. Օրբ. ժմ. 13, 19. Ցայսմ. յուլ. 30. Հեթ. ժմնկ. Վահր. ոտ. 190, 191. Օրբ. ողբ 34, 61. Սմբ. պատմ. 54, 57—58, 61—63, 75, 78—82, 86—87. Նհպտք. 97. Պատմ. ռուբ. 213. Մխն. համդ. 34—36, 38, 118—9. Տաշեան, Ցուց. 482 բ.—սեռ. Գագկայ, բց. ի Գագկայ՝ Կիր. 53, 59, 62. Վրդ. ծե, կե. Մագ. Թղ. գ, հգ. Լմբ. մատ. 535. Ուռհ. 87, 94—97, 161, 179, 181, 184, 219, 220, 257, 269, 318, 320—321. Վահր. ոտ. 191, 192, 194. Սմբ. պատմ. 62—63, 79, 80, 82, 86—88, 90, 91, 135. Մխ. այրեվ. 19. Օրբ. ժմ. 13. Սամ. անեց. 107, 113, 116, 121, 135. շար. 142. Պատմ. կլկ. 204. Պատմ. ռուբ. 214. Պատմ. լմբ. 238. Նհպտք. 100, 101. Մխն. համդ. 36, 118.—յգ. սեռ. Գագկաց! Կիր. 53 (Կարուց Գագիկ թագավորի հետ միասին).—հունարեն գրված է Καχίκιος, ըստ Կեդրենոս պատմիչ, հտ. Բ. էջ 557, որի ամփոփումը տալիս է Տէր Սահակեան, Հայ կայսերք, Բ. 309.—Զամչ. Բ. 919—1039. Ձեռ. Թաւր. 54 ա. Հայապ. 343. Զարբ. Հին դպր. 91, 777—8.—ըստ իս սա է Գագիկ Բագրատունի քերթող! որին հիշում է Վարդան Հայկազնը (Զարբ. Հին դպր. 701—702), համաձայն Ուռհայեցու, որից առել է նաև Ատրներսեհի հիշատակությունը։*

—Շփոթմամբ կոչված է Գագիկ-Յովհաննէս կամ Յովհաննէս՝ Արր. կրեռ. 101—102, Առաք. պատմ. 481։—Իր անունով արձանագրութիւններ՝ Շիրակ 138—9։

— 25. Գագիկ Թագավոր Կարուց, որդի Աբասի և Թոռն Մուշեղ Բագրատունու. ուսումնասեր մարդ էր. գահակալեց «1029 Թվին». դեմ դրավ Տուղրիլի և Ալփասլանի արշավանքներին, որոնց չդիմանալով՝ իր երկիրը հանձնեց Հունաց Կոստանդին ԺԱ Դուկաս կայսեր (1064) և փոխարեն ստացավ Ծամնդաւ (Τζαμανδός), Լառիս, Ամասիա և Կոմանա քաղաքները։ Սպանվեց «1081 Թ»՝ հունաց ձեռքով.—Մագ. Թղ. խ. Յայսմ. յուլ. 30. Կիր. 53, 59. Շնորհ. վիպ. 1196. Սամ. անեց. 113. Վրդ. ծր. Վրք. շնորհ. 17. Անանուն Ժմ. 17. Ուռհ. 150, 151, 183, 220. Մխ. այրիվ. 74. Սմբ. պատմ. 77, 78, 86. Օրբ. ողբ. 61, 62. Օրբ. Ժմ. 14. Հայապ. 348. Նհպտք. 99.—սեռ. Գագկայ՝ Լաստ. Ժղ. Օրբ. կհ. Ուռհ. 155. Մխ. այրիվ. 21.—յգ. սեռ! Գագկաց՝ Կիր. 53 (Գագիկ Բ-ի հետ միացնելով).—Վրաց աղբ. Ա. 120 Գագիսկարելի, որ պետք է հասկանալ Գագիկ Կարսեցի (Թագավոր Կարուց), բայց շփոթում է Գագիկ Բ-ի հետ։—Ջամչ. Բ. 912—1040։

— 26. Գագիկ, որդի Գուրգէնի. այս Գագիկի մոտ եկավ բնակվեց Գրիգոր Վկայասէր կաթողիկոսը՝ Մուտառասուն եղած ժամանակ «1072 Թ».—Ուռհ. 206. (Ազգապ. 1288 համարում է Գագիկ Թագավոր Կարուց)։

— 27. Գագիկ, աշխարհական անուն Աղվանից Գրիգորիս կաթողիկոսի, որ աթոռը նստավ «1139 Թվին» (տես Գրիգորիս)։

— 28. Գագիկ, որդի Համամի, տեր Տանձեաց. բռնվեց և սպանվեց Փատլուն ամիրայից (ԺԱ դար).—Վրդ. ծղ։

— 29։ Գագիկ, որդի Դաւիթ Անհողինի. նրա մահից հետո (1048), երբ երեց որդին Կիւրիկէ Բ հաջորդեց իր հորը, Գագիկն էլ իր եղբոր գահակից եղավ. նստել է 1048—1058 Թ. պատերազմեց Փատլուն ամիրայի դեմ։ Այս Գագիկի մայրը Կախեթի Կիւրիկէ Գ Թագավորի դուստր Զորակրցեհն էր, որ ամուսնացել էր Դաւիթ Անհողինի հետ։ Կիւրիկէ Գ ժառանգ չունենալով, որդեգրել էր Գագիկ Թոռանը և նրան իրեն ժառանգ նշանակեց։ Այսպեսով Գագիկի հետ սկսվեց Կախեթի Կիւրիկեան հայկական հարստութիւնը. մ. 1058 Թ. իրեն հաջորդեցին Ախսարթան 1058—1084, Կիւրիկէ Դ 1084—1102, Ախսարթան 1102—3, որ մեղկ ու Թույլ մարդ էր. իշխանները ձերբակալեցին և երկիրը հանձնեցին Վրաց Դաւիթ Թագավորին. այսպես վերջացավ Կախեթի

թագավորությունը.—սեռ. Գագկայ՝ Վրդ. ծղ. Վրաց աղբ. Ա. 205. Հայապ. 392. Մովսէսեան, Լոռիի Կիւր. թգ. 57, 85—87։

— 30. Գագիկ Սիւնեցի, որդի Վասակի և եղբայր Սմբատի (ԺԲ դար).—Justi 108 ա։

— 31. Գագիկ քահանա, «երէց և աթոռակալ եկեղեցւոյ Հերհերի, իշխան ժողովրդեան». հիշված է 1243 և 1247 թ. երկու արձանագրության մեջ.—Սիսական 112։

— 32. Գագիկ թագավոր, որ շինել է Գագ բերդը. հայտնի չէ թե ով է.—բց. ի Գագկայ՝ Վրդ. ձեռ։

— 33. Գագիկ, տաղասաց ուշ ժամանակի. հիշված է սիրային մի տաղի մեջ՝ Նոր ժղ. Գ. 52։

†ԳԱԳՏՈՒՐ, իբրև բարդ բառ հիշված է Սիւն. քեր. 205. անշուշտ անձնանուն է՝ կազմված Գագ անունից՝ + տուր բառով, իբրև «Գագի տվածը», ինչպես ունինք Խաչատուր, Տիրատուր, Քրիստոստուր, Գրիգորատուր են։ Բայց այս Գագ անունով պետք է հասկանալ ոչ թե Գագ անձնանունը, այլ Վրաց դաշտի Գագայ Ս. Խաչը, որ նշանավոր ուխտատեղի էր։

*ԳԱԴ, ար. < եբր. גד Gād անունից, որ բուն նշանակում է «բախտ, երջանկություն» (Gesenius 129 ա, Հիւբշ. 292)։ Այս անունով հայտնի է նախ Յակոբ նահապետի որդիներից մեկը, որի համար էլ բառախաղով ասված է. «Ծնաւ որդի Յակոբայ և ասէ Լիա. Առ իս բախտ իմ. անուանեաց զանուն նորա Գադ» (Ծն. Լ. 11)։ Կա նաև Գադ անունով մի մարգարէ, ժամանակակից Դաւիթի (Ա. Թագ. ԻԲ. 5 ևն)։ Սրանից են տառադարձված հուն. Γάδ, լտ. Gad։ Այս անունը այժմ գործածական չէ. հնից կա միայն՝

— Գադ եպիսկոպոս Վանանդի. անդամ Շահապիվանի ժողովի («444 թ»). մասնակցեց Արտաշատի ժողովին («449 թ»), պատասխանելու համար Միհրներսեհի նամակին.—Եղիշ. 22; Փարպ. իգ.—Հայապ. 159, Այրարատ 519. (Ազգապ. 418 համարում է նույն ընդ Գիւտ կաթուղիկոս)։

ԳԱԴԴԱՆ (կամ Գադանաս), ար. ծագումն անհայտ։ Այս անունով ունինք Ծոփաց մի նախարար, որին Թէոդոս կայսրը գրել է մի թուղթ՝ 387 թ.—Գրգշ. Բնն. պտմ. 201, Գթրճ. Տիեզ. պտմ. Բ. 520.—համարում են Խորենացու Գադաւոնը, բայց ըստ ձևի է հյ. Գադ կամ Գադան։

*ԳԱԴԻՇՈՅ, ար. ասորական անուն է, կազմված նախորդ Գադ=ասոր. ܓܕܐ gaddā «բախտ, հաջողություն»+īšō՛ «Յիսուս» բառերից։ Վերջինիս համար՝ իբրև անձնանունների բարդության

երկրորդ մաս՝ հմմտ. Dad-īšō‘, կաթողիկոս Ասորոց 421—556 թ. (տես REA 1, 27), Qām-īšō‘, Bōxt-īšō‘, Brīx-īšō‘ =Բրքիշոյ, Klīl-īšō‘ են ասորի անունները (Հիւբշ. 292)։ Այս անունը մեր մեջ մի անգամ միայն կա գործածված, այժմ էլ չի գործածվում։

— Գադիշոյ մախաղ Խորխոռունի, մին այն նախարարներից, որոնք Յազկերտի հրամանով Պարսից դուռը կանչվեցին և առ երեսս ուրանալով քրիստոնեությունը, ազատ արձակվեցին։ Եղավ կողմնակից Վասակի՝ ընդդեմ ուխտապահների։ Գյուտի և Վահանի ժամանակ, ուրացյալ նախարարների գլուխն էր։ Սահակ հանդիմանվելովԳյուտ կաթողիկոսից («461—478 թ»), չարախոսեց Պերոզի առաջ նրա մասին և պատճառ դարձավ նրա կաթողիկոսությունից զրկվելուն։ Վահանի ապստամբության ժամանակ գերի ընկավ։—Եղիշ. 32, 71, Փարպ. իե, լզ, կդ, կէ. Օրբ. ժգ. Սիմ. ապար. 51, (52, 55).—բց. ի Գադիշոյէ՝ Փարպ. կդ, կե.—գրված է Գադէշոյ՝ Եղիշ. 32։

*ԳԱԴ-ՎՇՆԱՍՊ, ար.<Գադ+Վշնասպ անուններից (Հիւբշ. 292). առաջին ը եբրայական և ասորական անուն է, որ գործական էր նաև Հայոց մեջ, երկրորդը (Վշնասպ) պարսկական սրբազան կրակի անունն էր (տես առանձին)։ Գադվշնասպ ավանդված չէ հայոց մեջ, ունինք միայն՝

— Գադ-Վշնասպ, ազնվ., Վիրոյ կաթողիկոսի (595—629) պաշտոնեաներից (գնդապետ), որ ընկերացավ նրան՝ Հոներից փախչելու ժամանակ.—Կղկնտ. Բ. ժդ։

ԳԱԶ (փղքշ. Գազիկ), ար. ծագումն անհայտ։ Մի անգամ՝

— Գազ, Գազիկ, որդի Սարգսի, որ Ղազար գրչին գրել տվեց մի Աւետարան, 1468 թ.—Ձեռ. Վասպ. 451, 454։

†ԳԱԶԱՆ, ար.<հյ. գազան բառից պիտի լինի. հմմտ. հին հայկական անուններից Գայլուկ, Եզնիկ, Կորիւն, Մրջիւնիկ, Ճնճղուկ են։

— 1. Գազան, եղբայր Գորի, ընկեր Բաբիկ Սիւնու, բուն պարսիկ էր, դարձավ քրիստոնյա և Շաղատ գյուղին տեր եղավ (Ե դար).—Կղկնտ. Բ. ա. Սիսական 211 ա.—սեռ. Գազանայ՝ Կղկնտ. Բ. ա. Օրբ. ժ, ժա.—կամ Գազանի՝ Օրբ. ժա։

— 2. Գազան, իշխող Սամուսատի. նույն տեղի առաջնորդ Թորոս քորեպիսկոպոսի հետ դիմեց Շնորհալուն՝ Արևորդիների խնդրի առթիվ և ստացավ նրա գրավոր պատասխանը՝ «Յաղագս Արևորդեացն դարձի».—սեռ. Գազանի՝ Շնորհ. Թղ. 223 (այլ ձձ. Գովանիդ, Գաւաղանեց)։

— 3. Գազան Լոռեցի, մի խաչքար է կանգնեցրել Գեղարքունեաց Ղարանլուխ գյուղի մոտ՝ 1220 թ.—Յովսէփեան, Խաղբակեանք 79։

— 4. Գազան, որդի Բոթիթի, եղբայր Առիւծի, ինչպես և Կոշեցի Անդրէաս քահանայի, որ Սսում, Սարգիս քահանային գրել տվեց Աւետարանը, 1336 թ.—Ձեռ. Վասպ. 185։

— 5. Գազան, ստացող. նախ քան 1420 թ.—Տաշեան, Ցուց. 666 ա։

ԳԱԶԱՒՈՆ, ար. ծագումն անհայտ. գործածական էր Կամսարական տոհմի մեջ Դ—Զ դարերում. այնուհետև խափանվեց։

— 1. Գազաւոն Ա Կամսարական, որդի Սպանդարատ Կամսարականի. իր հոր և իր Շաւարշ եղբոր հետ ազատվելով Արշակ Բ-ի կոտորածից, փախավ Հունաստան։ Մասնակցեց Երևելի ճակատամարտին («385 թ») և իր հանդուգն հարձակումներով ազատեց Արշակ Գ-ին։ Սրա մահից հետո, երբ Յունահայաստանի թագավորությունը ջնջվեց, ինքն եղավ առաջնորդ և գլուխ նախարարների («386 թ»)։ Անցավ Խոսրով Գ-ի կողմը, որ գրեց նրան Արշակունի, որովհետև մոր կողմից Արշակունի էր։ Խոսրով Գ-ի ապստամբության ժամանակ, բռնվելով քշվեց Պարսկաստան («389 թ»), ուր և մեռավ.—Խոր. Գ. խգ, խդ, խը, ծ.—սեռ. Գազաւոնի՝ Խոր. Գ. խդ, խը, ծե.—գրծ. Գազաւոնիւ՝ Խոր. Գ. լա.—Կոգեան, Կմսրկնները 91—96։

— 2. Գազաւոն Բ Կամսարական, որդի Հրահատի. իր կորցրած ավագությունը նորից ստացավ Վռամից՝ Ս. Սահակի բարեխոսությամբ («432 թ»).—սեռ. Գազաւոնի՝ Խոր. Գ. կե.—Կոգեան, Կմսրկնները 95։

— 3. Գազաւոն Գ. Կամսարական. ապրել է Զ դարի առաջին կեսին. սրա որդին է Ջաւրակ (554 թ), որ տես.—Կոգեան, Կմսրկնները 121։

— 4. Գազաւոն, որ շինել է մի վանք Երուսաղէմում, Հոփսիմէի և Գայիանէի անունով (Անաստաս, տես Հայապ. 227)։

ԳԱԶՐԻԿ, ար. ծագումն անհայտ. (բայց կա վրաց գազիրի «вещун, գուշակ». եթե այս բառը իրանյան է, կարող է հայերենն էլ նույն բառից լինել)։

— 1. Գազրիկ, իշխան Տայոց. Մեծն Ներսէսի ուղեկիցներից մեկը, երբ նա գնում էր Կեսարիա, կաթուղիկոս օծվելու համար («353 թ»).—Մեսր. եր. 25։

— 2. Գազրիկ, իշխան Աբեղենից. մասնակցեց Արտաշատի

ժողովին («449 թ»), պատասխանելու համար Միհրներսեհի նամակին։ Երբ Վարդան Մամիկոնեանը դառնացած գնում էր Յունահայք, ուրիշ մեծամեծ նախարարների հետ, այս իշխանն էլ ուղարկվեց նրա մօտ, համոզելու և ետ դարձնելու համար.—Փարպ. իգ, լ—Ջամչ. Բ. 68 և Գ. 141 ցանկում միացնում է հաջորդի հետ։

— 3. Գադրիկ Դիմաքսեան, նախարար. մասնակցեց Վարդանի պատերազմին Սեբուխտի դեմ, Աղուանից աշխարհում. վիրավորվեց այդտեղ, բայց լավացավ. մասնակցեց Վարդանանց պատերազմին (451 թ).—Եղիշ. 58, 77. Կղկնտ. Բ. բ. (հրատ. Շահն. Գադիրկ). Յայսմ. օգոստ. 7։

— 4. Գագրիկ Արշակունի, եղբայր Արտաւանի. գնաց հունաց Լևոն Ա կայսեր մօտ և ստացավ Մակեդոնիայի Նիկիա քաղաքը՝ բնակութեան համար (471 թ).—Ջամչ. Բ. 148 (ավելին տես վերը, էջ 317, № 6)։

— 5. Գագրիկ Ապուհարազ, մասնակցեց Մուսէի պատերազմին «851 թ».—Արծր. Բ. գ։

ԳԱԼԻ, սեռն անհայտ. Թերևս Գալուստ անվան փաղաքշականն է. հիշված է մի անգամ, 1311 թվից հետո գրված մի հիշատակարանում (Ջեռ. Թուր. 72 բ)։

Գալինիկ տես Կալինիկէ։

†ԳԱԼԻԿ, ար. < Գալուստ անվան փաղաքշականն է. մի անգամ գտնում եմ գործածված ԺԱ դարում և մի անգամ էլ ԺԵ դարում. կա սրանից Գալիկեան ազգանունը (Վան)։

— 1. Գալիկ (սեռ. Գալկոյն ձևով), բարեկամ Աստուածատուր Բաբերդցու, որ մի Ճառընտիր գրել տվեց 1205 թ.—Ջեռ. Վեննա. Բ. 470։

— 2. Գալիկ, տանուտեր Նորագիւղի՝ 1465 թ.—Այրարատ 320 բ, Նոտարք 221։

+ԳԱԼՈՑ, ար. այսպես կոչված ի հիշատակ երկրորդ գալստեան Քրիստոսի. «Գալոց է նովին մարմնովն ի դատել զկենդանիս և զմեռեալս»։ Գործածված է սկսեալ ԺԵ դարից և հասնում է մինչև ԺԸ դարի սկիզբը։ Այսպես՝

— 1. Գալոց, հայր տանուտեր Դաւթի, որ Թացու գյուղում, Յովսէփ գրչին գրել տվեց մի Աւետարան, 1437 թ.—Ջեռ. Վասպ. 379։

— Գալոց հիշված է նաև 1616 թ. (Ջեռ. Վասպ. 851), 1627 թ. (Ջեռ. Թուր. 3 բ), և ԺԸ դարի սկիզբը (Տաշեան, Ցուց. 789 բ)։

— Սրա հետ նույնաձայն է Գալոս, որ հիշատակված է 1581—1810 թվերին. այսպես՝ 1581 թ. (Ձեռ. Վասպ. 694), 1742 թ. (Հուշք. 51), 1798 թ. (Ձեռ. Վասպ. 223), 1810 թ. (անդ 310)։ Կարելի չէ սակայն որոշել, թե Գալուստ բուն է, որ կրճատվելով դարձել է Գալոս և սա էլ դարձել է հետո Գալոց (ինչպես Սաղմոս > Սաղմոց), թե ընդհակառակը Գալոց անունն է, որ դարձել է հետո Գալոս, և Գալոց անկախ ձև է։

†ԳԱԼՈՒՍՏ, ար. < կրճատված է Հոգեգալուստ բառից. տոնական բառերից կազմված անունների համար հմմտ. Զատիկ, Ցարութիւն, Համբարձում, Երևում, Ընծայ. սրան համապատասխանում է իտալ. Bonaventura անունը, որ բուն նշանակում է «բարի գալուստ»։ Գործածված է մեր մեջ ԺԲ դարից սկսած և այժմ էլ սովորական անուն է։ Տես նաև Գալի, Գալիկ և Գալոց։

— 1. Գալուստ, մեքենագետ 1124 թ.—տես Ասեպիք, էջ 331, № 2։

— 2. Գալուստ, դավանափոխ հայ ճարտարապետ, որ Գոնիա քաղաքում կառուցել է «Ինճէ մինարէլի մէդրէսէ» կոչված շենքը, 1251 թվին, շենքի վրա էլ արձանագրելով իր անունը։ Նույն քաղաքում, Ալայէդդինի հռչակավոր մզկիթն էլ հայ ձեռքի արդյունք է. մզկիթի վրայի զարդարանքները մեծավ մասամբ հայկական են. բացի սրանից թե մզկիթը և թե ներսի ամբիոնը հայկական ութանկյուն կաթուղիկե գմբեթներով պսակված են։ Ամբիոնի վրայի արձանագրությունը ցույց է տալիս, որ ամբիոնը, հավանաբար նաև մզկիթը շինել է դավանափոխ մի հայ, 1158 թվին, Մէքքէից վերադառնալու ժամանակ։ (Թորամանյան, Հայկ. ճարտարապետութ. էջ 180 աբ)։

— 3. Գալուստ Վաղանդնեցի, աշակերտում էր Գրիգոր Տաթևացուն՝ Տաթևի վանքում, 1390—1409 թվերին.—Մեծոփ. 50 գրում է «ի Վաղանդնու Սիւնեաց սուրբ Կարապետէն). Ցայսմ. ապր. 27 (ասում է միայն «ի Վաղընդու Սիւնեաց»). Ազգապ. 1997։ Նույն անձն է որ կոչվում է Գալուստ վարդապետ, միաբան Տաթևի վանից. իր միաբանակից Սիմէոնի հետ, Երեմիա վարդապետի հրամանով օրինակեց Տաթևացու Հարցմանց գիրքը՝ հեղինակի կենդանության ժամանակ, 1403 թ.—Ձեռ. Դաշեան, Ա. 66 բ։

— 4. Գալուստ աբեղա, հայթայթեց մի օրինակ Քարոզգիրք՝ Կարապետ Դերջանցուն, արտագրության համար, 1421 թ.—Ձեռ. Պետերբ. (ՀԱ 1892, 83 ա)։

— 5. Գալուստ աղա, իբրև իշխանավոր անձ հիշված է Աղվանից կաթողիկոսության շրջանում, 1423 թ.—Նոտարք 72։

— 6. Գալուստ, ազգական Ստեփաննոսի, որ Տրապիզոնում, Յակոբ կրոնավորին գրել տվեց մի Յայսմավուրք, 1437 թ.— Труды вост. комм. ИМАО, հտ. II, 3, էջ 55։

— 7. Գալուստ, միաբան Այրիվանից՝ 1441 թ.—Այրարատ, էջ 346։

— 8. Գալուստ աբեղա, գրիչ. Աղջոց վանքում օրինակել է Ավետարանը, Ճաշոցը և այլ ս. գրքեր՝ 1442—7 թվերին.—Յովսէփեան, Խաղբակեանք 197, Այրարատ 354 ա, Ձեռ. Վեննա. Ա. 687—8։ Անշուշտ նույն է այն սխալաշատ տեղեկությունը, որ տալիս է Ձեռ. Կարին. 41, թե Գալուստ աբեղան օրինակել է Խաղբակեանք ՊՂԱ=1772 (կարդա 1442) թ. Աղջոց վանքում։ Նույն անձը օրինակել է և մի Ավետարան. նույն Աղջոց վանքում, 1452 թ.—Նոտարք 170։

— 9. Գալուստ քահանա, որդի Մելքիսէթ երէցի, որ օրինակեց Գանձարանը՝ Ավան գյուղում, 1453 թ.—Bodleian 134։

— 10. Գալուստ կրոնավոր, միաբան ճր վանքի. հիշված է 1456 թ.—Ձեռ. Վաստ. 425։

— 11. Գալուստ, միաբան Յովհաննավանից՝ 1464 թ.—Այրարատ 172։

— 12. Գալուստ արքեպիսկոպոս, առաջնորդ Լեհահայոց. ներսեսել է 1490 թ.—Կամենից 135։

— 13. Գալուստ, վանահայր անապատին Ուրծայ, 1491 թ. —Այրարատ 443 ա։

— 14. Գալուստ աբեղա. Կեչառուսում օրինակեց մի Ավետարան, 1491 թ.—Ձեռ. Սևանի 10 բ, Սմբատեանց, Գեղարքունի 48։

— 15. Գալուստ, որդի Աթաբակի և եղբայր Սպահանի, որ Սաղմոսավանքում մի Ավետարան գրել տվեց Յովհաննէս աբեղային, 1496 թ.—Ձեռ. Թաւր. 22 բ։

— 16. Գալուստ, երեց Արախուսի, Բասենցի մի հայ գաղթականի որդուն մկրտել էր. ծնողները թուրքացան և խանի առաջ ամբաստանեցին թե քահանան թուրքի երախային հայ է մկրտել։ Խանը հրամայեց բանտարկել քահանային և պահանջեց ուրանալ իր կրոնը։ Քահանան հավատքը չուրանալով, չարչարվեց և քարկոծմամբ նահատակվեց։ Թաղվել է Երևանի անապատում (1640 թ).—Զքր. սարկ. Բ. բ. էջ 29—32 > Նոր վկ. 445—448։

— 17. Գալուստ Ամասիացի, բժիշկ. իր արվեստը գործադ-

բելու համար ման եկավ Սեբաստիա, Տիգրանակերտ, Տարենտէ, Մարաշ, Այնթապ, Ատանա, Կեսարիա, Ամասիա, Իւնիէ, Սամսոն, Պոլիս, Հալէպ, Ջերմուկ, Ամիթ, Մերդին, Վան, և ամեն տեղ մեծ հաջողություն ունեցավ։ Պոլսում, 1669 թ. գրեց իր Բժըշկարանը, որ պարունակում է Մարդակազմութիւն, Ախտաբանութիւն, Առողջապահութիւն, Դեղագուգութիւն, Ախրապատին, Բժշկական բառգիրք և Տոմարագիտութիւն։ Կա նաև այս գործի համառոտ խմբագրությունը։—Տաշեան, Ցուց. 1070 բ, Ցոփեան-եան, Հետազօտ. Բ. 468—482։

— 18. Գալուստ Կայծակ Ամասիացի (կամ Զէյթունցի). ընտրվեց Երուսաղէմի պատրիարք, երբ հաջորդ Յովհաննէս Նոհուտջեհի («1697 թ»). բայց չգնաց իր աթոռը, այլ ամբողջ մի տարի ման եկավ Պոլսից Եւդոկիա, Սեբաստիա, Հալէպ, Տիգրանակերտ և Կարին, հանգանակություն անելով՝ Երուսաղէմի պարտքը վճարելու համար։ Բայց իր հանգանակած գումարները ամբողջ իւրացրեց։ Դրա համար պաշտոնանկ եղավ և իր տեղ պատրիարք դրվեց Մինաս Համդեցին («1698 թ»)։ Պոլսի Աւետիք պատրիարքի պաշտոնանկության ժամանակ, օգտվեց խռովությունից և Պոլսի պատրիարքական աթոռը բարձրացավ («1703 թ»). բայց 10 ամսից տապալվեց («1704 թ»)։—Ջամչ. Գ. 745—8. Ազգապ. 2696, 2722։ Եղել է տաղասաց. իր Տաղարանը տպված է Պոլիս 1704, «Լուսաշաւիղ» անուն գրքում.—Տաշեան, Ցուց. 1070 բ և 1099բ։

+ԳԱԼՍՏԱՆ, ար. < Հոգեգալստեան, Գալստեան ձևից. գործածական է Նոր-Ջուղայում և Հնդկահայոց մեջ. օրինակ՝ հիշատակված է ԺԸ դարում, Նոր-Ջուղա (Ազգապ. 2820)։ Սրանից է Գալստանեան ազգանունը։

ԳԱՂԱՏ, ար. ծագումն անհայտ։

— Գաղատ եպիսկոպոս Սիւնեաց, հաջորդ Նունի (Ն դարի վերջը).—Օրբ. ԺԹ, հա։

*ԳԱՄԱՂԻԷԼ, ար. < եբր. גמליאל Gamlīel անվան հուն. Γαμαλιήλ տառադարձությունից. բուն նշանակում է «աստուածագործ» (Gesenius 144 բ)։ Այս անունով հայտնի էր Հրէից մեջ Գամաղիէլ օրենսգետ փարիսեցի, որի աշակերտն էր Պօղոս առաքյալը (Գծ. Ե. 34, ԻԲ 3)։ Այս անունով կար մի վանք Բըզնունեաց գավառում, Խլաթի սահմանում (Նոր վկ. 247)։ Շատ անսովոր անուն է. այժմ էլ անգործածական. հիշված եմ գտնում

մի անգամ ԺԳ դարում (տես տակը) և մի անգամ էլ 1704 թվից հետո (Ջեռ. Նոր-Բայազ. 46 ա)։ Տես Գամիկ։

— Գամաղիել, վարդապետ Բագնայրի. Քրիստափորի և վանքի բոլոր միաբանների հետ հաստատում է առաջնորդի մի վճիռը՝ 1215 թ.—Շիրակ 118։

*ԳԱՄԵՐ, ար. անշուշտ չէ այն Գամերը, որ Յաբեթի որդին և Հայոց Հայկ նահապետի պապի հայրն էր (Խոր. Ա. ե, Մխ. այրիվ. 17), ըստ որում այս անձի անունը բնավ չէ գործածված մեր պատմության մեջ։ Այլ ծագում է արաբ. قمر qamer «լուսին» բառից. գործածական էր Պոլսում, անցյալ դարում, շատ հազվագյուտ կերպով։

*ԳԱՄԻԿ, ար. քիչ գործածված անուն էր Պոլսում, ԺԹ դարում. ծագում է կրճատմամբ Գամաղիէլ անունից (այսպես մեկնեց իմ դասընկեր Սամաթիացի Անտոն Խաչիկ Ասլանեանը)։

*ԳԱՄՐԵԿԷԼ, ար. < վրաց. գամრեկելի, որ Ժ—ԺԵ դարերում իշխանական տիտղոս էր և վրաց մեջ էլ գործածվում էր իբրև անձնանուն. այսպես՝ Գամրիկէլ զորավար վրաց բանակի՝ Պատմ. վր. էջ 113 և Յովսէփեան, Խաղբակեանք 7—8։—Վրացերենից է փոխառյալ նաև Bուrbել, որ է վրաց. Bիrbվելի. բուն նշանակում է «Bիrbվիսեցի». (Bիrbվիսի կոչվում էր այն ամրոցը, որ վրացի Օրբելեանների գլխավոր կալվածն էր՝ Տփղիսի մոտ. և այդ ամրոցի տերն էլ կոչվում էր Bիrbվելի)։ Նույն բառը ավելի լավ է պահպանված մեր մեջ Bիrbուել ձևով, որ տես վերը՝ էջ 408։—Այս բոլոր տեղեկությունները տվեց ինձ վրացագետ Սուրեն Երեմյանը (1943 մայիսի 31)։

— 1. Գամրիկել, պապ Զաքարիայի, որ Մուղնի գյուղը գնեց և նվիրեց վանքին՝ 1425 թ.—Այրարատ 172 ա, Նոտարք, էջ 77։

— 2. Գամրեկել, որի հիշատակին Աղբաստ ոմն կանգնեցրեց մի խաչքար Հերհերում, 1447 թ.—Սիսական 111 բ։

*ԳԱՅԻԱՆԷ, իգ. հունալատինական անուն է, որ անշուշտ լտ. Gaïanus անվան իգական ձևն է։ Այս անունով հայտնի է մի եպիսկոպոս, որ Ալեքսանդրիայում հնարել է Եւտիքեան մի հերձված, որ իր անունով կոչվում է gaïanien կամ gaïanite. Զարմանալի է որ հին շրջանում այս անունը մեր մեջ գործածական եղած չէ. բացի կույս Գայիանէից, այս անունը կրել է և մի ուրիշ կին՝ 1391 թվին։ Նույն իսկ Խորենացին իր Պատմության մեջ չի հիշում Գայիանէ կույսին։ Ավելի ուշ Գայիանե ա-

նունը ժողովրդական լեզվի մեջ դառնում է Գարիանէ (Ձեռ. Վենետ. Ա. 594, 1618 թ.), ապա Գարիան, Գարան (հնագույնն է 1595 թ. Գարիան՝ Ձեռ. Վենետ. Ա. 695 և վերջինը 1749 թ. Գարան՝ անդ 450)։ ԺԶ դարում վերականգնում է Գայիանէ ձևը. այսպես ունինք Գայիանէ 1658 թ. (Ձեռ. Թավր. 51 բ), ապա 1701? թ. (Ձեռ. Վասպ. 1028), իսկ այժմ սովորական է Գայիանէ, Գայան, Գայանուշ ձևերով։

— 1. Գայիանէ, սրբուհի հռովմայեցի. Հռիփսիմեան և Գայիանեան կույսերի գլխավորն էր. Դիոկղետիանոս կայսեր ձեռքից փախչելով՝ ամբողջ խմբով եկան Հայաստան և քրիստոնեության համար չարչարվելով՝ նահատակվեցին Տրդատ թագավորի հրամանով «301 թ»։ Իր շիրմի վրա կառուցվեց Գայիանէի վանքը, որ մինչև այժմ կանգուն է Էջմիածնի մոտիկ.—Ագաթ. §§ 138, 143, 149, 165, 167, 182, 189, 190, 201, 207, 210, 737, 759, 768. Արար. Ագաթ. 8, 11, 13—14, 18—20, 24—25, 35, 47, 79. Բուզ. Գ. ժդ. Խոր. ճառ հռիփ. էջ 311, 314. Պատմ. հռիփ. 298, 300. Կղկնտ. Ա. ժդ, իա. Կիր. 8. Վրթ. քերթ. պտկ. 304. Շար. կթ. Թղթ. դաշ. 21. Շնորհ. չփ. էջ 470—471. Ոսկ. ներբ. լա. 799, 827. Յայսմ. հոկտ. 5, 6, 29. Տաթև. ձմ. զէ. ամ. 407, 534. Ջքր. սարկ. Գ. 3.—սեռ. Գայիանեայ՝ Ագաթ. §§ 204—205, 209, 766. Խոր. ճառ հռիփ. էջ 305, 307. պատմ. հռիփ. էջ 298—300. Յհ. կթ. ծը. Կղկնտ. Ա. իա. Վրդ. լգ. Թղթ. դաշ. 27. Ոսկ. ներբ. լա. 806. Յայսմ. հոկտ. 5, 6, 29, փետր. 26. Եղն. եր. 267. Նշխ. մատ. 60. Մխ. այրիվ. 65. Տաթև. ամ. 534. Առաք. պատմ. 135, 241, 250—253.—Գայեանէ(ի)՝ Հայապ. 227.—հանգի համար դրված Գայիանին՝ Մագ. մեծ են. 72.—գրծ. Գայիանեաւ՝ Ագաթ. § 175. Կղկնտ. Ա. իա. (հրտր. Շահն. ունի Գայիանով), իգ.—Գայիանէիւ՝ Կղկնտ. Ա. իա. (ըստ հրտր. Շահն.)—Գայիանիւ՝ Ուխտ. Ա. կդ.—Գայիանեանք՝ Ասող. Բ. ա. Ճշ. 493. Պորգ. 646. Ժմ. 601. Յայսմ. օգոստ. 14, հոկտ. 6, նոյ. 29.—Վրաց աղբ. Ա. 20, 22, 169—172. Բ. 98—103.—Իր պատմությունը անցել է նաև Ղփտիներին, որոնց մոտ կոչվում է Աղաքա (Ալիշան, Արշալ. քրիստ. 136)։

— 2. Գայիանէ, մայր Գէորգ քահանայի, որ Երզնկայում օրինակեց Ավետարանը, 1391 թ.—Ձեռ. Սեբ.=ՀԱ 1926, 241։

— 3. Գաի՞անց, եղբորդուստր Ալեքսիանոս եպիսկոպոսի, որ Արքայից վանքում օրինակեց Ավետարանը, 1486 թ.—Ձեռ. Նոր-Բայազ. 11 ա։

— 4. Գայխանէ, Վարանդացի հերոսուհի։ Դիզակի մելիք Աւանի քույր Աննա խաթունի և Վարանդայի մելիք Ցուսէինի աղջիկն էր։ Ծնողները բնակվում էին Վարանդայի բերդավան Աւետարանոց գյուղում։ Երբ թշնամի բանակը մտավ Ղարաբաղ, զորավարը իր զինվորներով նստավ այս գյուղը։ Տեսնելով Գայխանէի գեղեցկությունը, նա մտածեց ձեռք ձգել նրան. բայց չհամարձակվելով բռնություն գործ դնել, օրինական ձևով խընդրեց ամուսնության։ Ծնողները համաձայնություն կեղծեցին, բայց շարունակ ձգձգում էին։ Այդ միջոցին մելիք Աւանը (տես այս անունը) կազմակերպել էր բանակի բարթուղիմէոսյան գիշերը։ Որոշված ժամին բոլոր հյուրընկալները հարձակվում են իրենց տունը բռնի հյուր իջած զինվորների վրա և նրանց խողխողում։ Աւետարանոցի կոտորածի առաջնորդն էլ Աննա խաթունն էր, որովհետև նրա ամուսինը գնացել էր գավառ՝ կոտորածը կազմակերպելու։ Երբ այդ զինված հերոսուհին գյուղի փողոցներում կոտորել էր տալիս զինվորներին, այդ միջոցին նրա ինքնակոչ փեսացուն իր կյանքը ազատելու համար, փախչում է Աննա խաթունի տունը։ Գայխանէն՝ դաշույնը ձեռքին կանգնած է լինում դռան առաջ։ Տեսնելով իր աներլի փեսացուին ներս մտնելիս, օրիորդը իր դաշույնը խրում է նրա սիրտը։ Այդ սպանությունից հետո Գայխանէն իր անձը նվիրեց կուսակրոնության և մտավ Աւետարանոց գյուղի կուսանաց վանքը (1733)։ —Րաֆֆի, Խամսայի մելիքութ. 47—48 (սրա վրա է կազմված Լէօի «Մելիքի աղջիկը» վեպը)։

†ԳԱՅԼ, ար. < հյ. գայլ բառից. տես հաջորդները։

— Գայլ Շերպարիք, որդի Դաւթի՝ զորավարի Զաքարիա ամիրսպասալարի. իր եղբոր Գրիգորի հետ Վահանաւոն գյուղի կեսը նվիրել է Խծկօնից Ս. Սարգիս վանքին՝ 1314 թ.—Ցովսէփեան, Խաղբակեանք 17։

†ԳԱՅԼՁԱԳ, ար. < հյ. գայլ+ձագ բառերից. ըստ Ցովսէփեան, Խաղբակեանք 114, 291 հաճախ է հիշվում ԺԳ դարում. և այդպես էր կոչվում հատկապես՝ Գայլձագ ճարտարապետ Գեղարդի։

†ԳԱՅԼՈՒԿ, ար. < հյ. գայլ բառի փաղաքշական ձևից. այսպես նաև պրս. Գուրգէն, լտ. Lupus, հուն. Λύκος անձնանունները նշանակում են բուն «գայլ». նմանապես կան բազմաթիվ հունական անձնանուններ, ինչպես Λύκων, Λυκίδας, Λυκοῦργος, Λυκῖνος, Λύκιος, Λύκις, Λυκίσκος, Λυκιτᾶς, Λυκομήδης են, որոնք բոլոր ծագում են λύκος «գայլ» բառից։

— Գայլուկ ոմն, սատարող Հայրապետ գրչին, 1420 թվից առաջ.—Տաշեան, Ցուց. 666 ա։

ԳԱՅՐԷՇ, ար. ծագումն անհայտ. (որովհետև չեմ կարծում թե լինի պրս. کریش garīš «մողէս»)։ Հիշված է մի անգամ ժԸ դարում (Ձեռ. Արգ. յովհ. 163)։

†ԳԱՆՁԻ, ար.< անշուշտ հյ. գանձ բառից, ինչպես կան պրս. گنجی Ganǰī և հուն. Թեսաւրոս անունները, որոնք բուն նշանակում են «գանձ»։ (Justi 110 ա կցում է պրս. Ganǰi անվան հետ, որով հայտնի է մի աղանդի հիմնադիր Բաղդադում, և մեկնում է իբր ganǰ-dār «գանձավոր» բառից կրճատված)։

— 1. Գանձի, իշխան Հայոց. 1036 թվին գրավեց Բերկրի քաղաքը՝ Խորիկ ամիրայից. բայց այնտեղ մի հանկարծական հարձակման ժամանակ սպանվեց.—Ուռհ. 74, 75. Սմբ. պատմ. 53. —Չամչ. Բ. 917—8։

— 2. Գանձի (սեռ. Գանձէ), հայր Գրիգոր կրոնավորի, որ Երուսաղէմում, Աւագ երէցին գրել տվեց մի Աւետարան, 1358 թ.—Ձեռ. Հալէպի, Ա. 118 ա։

ԳԱՆՈՍ, ար. թե իգ. ծագումն անհայտ. հիշված է 1794 թ. —Ձեռ. Արգ. յովհ. 170 (անսովոր անուն է. թեև վրիպակ չէ և էջ 222 անվանացանկում էլ հիշված է, բայց կասկածում եմ ընթերցման ճշտության վրա)։

*ԳԱՆՋ, իգ.< պրս. گنج ganǰ «գանձ» բառից (հմմտ. Գանձի). հիշված է անթվական մի հիշատակարանում՝ Ձեռ. Նոր-Բայազ. 51 ա (Կեանճ ձևով)։

— Գանջ-խաթուն, դուստր Ջուլալ խաթունի, որ Աղթամարում գրել տվեց մի Աւետարան, 1470 թ.—Ձեռ. Վասպ. 459։

*ԳԱՆՋՈՒՄ, ար.< պրս, گنجم ganǰum «գանձս, իմ գանձը» ձևից. անսովոր արական անուն. անշուշտ մի ժամանակ գործածական է եղել, որից էլ Գանջումեան ազգանունը (Կովկաս)։

ԳԱՋԱԼ, ար. ծագումն անհայտ. հիշված է 1551 թ. (Матер. Арх. Кавк. III, էջ 93, 94)։

†ԳԱՌՆԻԿ, ար.< հյ. գառն բառի փաղաքշականն է, որ կա նաև Գառնուկ ձևով։ Այժմ ընդունված է իբրև հասարակ անուն գառնուկ, իսկ իբրև անձնանուն Գառնիկ, որ գործածական էր նաև մինչև Զ դար. ապա խափանված. անցյալ դարում նորից կենդանացավ։

— 1. Գառնիկ, թոռն Գեղամ նահապետի. իր անունով է կոչվել Գառնի ավանը.—սեռ. Գառնկայ՝ Խոր. Ա. ժբ. Բ. է, ժա-

Ուխտ. Ա. ժզ. Ասող. Ա. ե. Սամ. անեց. 43, 48.—Գառնկոյ՝ Յհ. կթ. բ։

— 2. Գառնիկ թարգմանիչ, աշակերտ Սահակի և Մեսրոպի, ընկեր Եղնիկի և այլն.—սեռ. Գառնկայ՝ Պաճռ. բրձր. 30։

— 3. Գառնիկ, ճգնավոր Բասենի Յօրնկայ (ըստ Ցկ. կր. 20 Յաւնիկ) գյուղից. իրեն հայտնվելով Գրիգոր Լուսավորչի նշխարները, բերեց Թորդան «328 թ» (ըստ Ազգապ. 136. իսկ ըստ Սամ. անեց. 498 թ)։—Խոր. Բ. ղա. Յհ. կթ. ժ. Կիր. 8, 21. Յայսմ. սեպտ. 30, նոյ. 18. Սամ. անեց. 72. Վրդն. լա. 76. Տաթև. ձմ. ղէ. Մխ. այրիվ. 62. Ցկ. կր. 20.—սեռ. Գառնկոյ՝ Յայսմ. նոյ. 18. Սամ. անեց. 65.—իր անունով է Գառնկայ վանքը՝ Ասող. Գ. ե։

— 4. Գառնիկ եպիսկոպոս, երկրորդ առաջնորդ Ծուրտաւի, հաջորդեց Ափոցի, շուրջ 490 թ.—Ուխտ. Բ. խը. Գիրք թղ. ծա։

— 5. Գառնիկ եպիսկոպոս Ամարասի, ժամանակակից Վաչագան Գ-ի (Զ դար).—սեռ. Գառնկայ կամ Գառնիկայ՝ Կղկնտ. Բ. ե։

— 6. Գառնուկ, հայր մղտեսի Սահակի, որ Աստուածատուր քահանայից գնեց մի Աւետարան 24 ֆլորինով և նվիրեց Ամասիայի Ղազալա գյուղի Ս. Սարգիս եկեղեցուն, 1427 թ.—Նոտարք 82, Թորոս աղբ. Ա. 65։

ԳԱՌՋԱՌ-ԱՂԱ, իգ. ծագումը անհայտ. հիշված է 1595 թ. (Ձեռ. Վասպ. 744). իր քույրերն են Գուլչիչաք և Գուլաղա։

*ԳԱՍՊԱՐ, ար. ծագումը համարվում է արևելյան. հմմտ. Մելքոն, Գասպար և Բաղդասար մոգերը (տես տակը). գործածական է նաև եվրոպական լեզուներում. ինչպես՝ ֆրանս. Gaspard, իտալ. Gaspare են։ Մեր մեջ այս անվան հնագույն հիշատակությունը գտնում ենք ԺԳ դարում, բայց սովորական չէ. Ավելի ուշ, ԺԵ և հատկապես ԺԶ դարից սկսում է տարածվել և այսօր էլ կենդանի է թե արևելյան և թե արևմտյան Հայոց մեջ. հնչվում է կ կամ ք նախաձայնով. Կովկասում հաճախ Քյասպար ձևով. Լեհահայոց մեջ Կաշբար (Տաշեան, Ցուց. 913). ուշ ժամանակ (1700 ական թվերին) գրված է Գազպար, ինչ. Ձեռ. Վասպ. 268, 313, 316, 752, 1001, 1010. կա և Կասփար 1609 թ. անդ, էջ 835։

—1. Գասպար, մեկն է երեք մոգերից, որ եկան երկրպագելու նորածին Յիսուսին (Մտթ. Բ. 1)։ Ընդհանրապես համարվում է արևելցի. «Գասպար, որ ունէր զաշխարհն Արաբացւոց» (Անկ. գիրք Նոր կտ. 19). բայց անդ, էջ 42 և հետո էլ միշտ «Թագաւորն Հնդկաց Գասպար էր»։ Մխ. այրիվ. 59 գրում է նույնը

«Դարասպար, հնդիկ, Բաղտասար արապ»։ Ոմանք սակայն Գասպարին համարել են Մոկացի նախարար և գերեզմանն էլ ցույց են տալիս Մոկաց ավանի մոտ՝ Ակնդաշտայ վանքում (Ազգապ. Ա. 20)։ Համտ. Անկ. գիրք Նոր կտ. 43 «Նոքա ամենեքեան հրամանաւն Աստուծոյ ի Մոգուց յաշխարհէն, ի կողմանէ յարևելից»։ Նույնը նաև Ալիշան, Արշալ. քրիստ. 8—(Մոգուց աշխարհը շփոթել են Մոկաց նահանգի հետ)։

— 2. Գասպար ոմն, հիշված է այն խաչարձանի վրա, որ Գրիգոր կանգնեցրել է Համբրոնի բերդում, 1297 թ. —Սիսուան, էջ 79։

— 3. Գասպար Կուուան, Սեբաստացի. հավատքը ուրացել էր. 25 տարի հետո, արդեն ալևորած հասակում, տեսնելով Դուլիթ Սեբաստացու նահատակությունը, ինքն էլ զղջաց և դարձի եկավ. մահմեդականները կախեցին նրան, կախաղանի վրա խեղդեցին և խեղդած մարմինը քարկոծելով նահատակեցին, «1677 թ»։ Միքայէլ անուն մեկը ոտանավորով գրեց նրա նահատակության պատմությունը։—Նոր վկ. 516—9, Ազգապ. 2631։

— 4. Գասպար ճարտարապետ, որի ձեռքով Ղուկաս կաթուղիկոսը («1780—99 թ») նորոգեց Էջմիածնի տաճարը՝ 1786 թ. —Ցոփաթ. 21, Ազգապ. 3224։

— 5. Գասպար, տաղասաց ԺԸ դարից (Տաշեան, Ցուց. 459 ա)։

— 6. Գասպար Կարնեցի (Դջնիկցի), եղբայր Վառվառէ կույսի. նահատակ. հավատքը ուրանալով նահատակվեց 1810 թ. —Նոր վկ. 631—670. Ազգապ. 3623։

— Գասպար անունը հիշված է նաև ԺԵ դար (Տաշեան, Ցուց. 724 բ), 1506 թ. (անդ 55 ա), 1580 թ. (Թորոս աղբ. Բ. 384), 1595 թ. (Ջեռ. Վենետ. Ա. 695)։ Չեմ հիշատակում ԺԷ դարի անձերը։

*ԳԱՐԱՔՄԱԶ, ար. <Թրք. کرکمز gerekmez «վայել չէ, պետք չէ» բառից։ Անսովոր անուն. մի անգամ գտնում եմ հիշատակված՝

— Գարաքմազ, հայր Աստուածատուր երեցի Արծնեցւոյ (Կոտայք). հիշված է ԺԵ դարի սկիզբը.—Այրարատ 288։

ԳԱՐԲԱՆԻԷԼ, ար. ծագումն անհայտ. մի անգամ միայն հիշատակված է ԺԱ դարում։

— Գարբանիէլ, Պահլաւունի Արշակունեան տոհմից, հայր

*Տարոնի իշխանաց իշխանի, որ Սանահնի վանքին մի կալված նվիրեց 1061 թվին.—Ջալալեանց Ա. 28։*

ԳԱՐԵԳԻՆ, *ար. ծագումը անհայտ։ Այս անունը գործածված է Դ—Ե դարերում. այնուհետև խափանվում է. մի անգամ էլ հանկարծ երևում է ԺԳ դարում և մեկ էլ ԺՁ դարում. անցյալ դարում վերակենդանացավ և այժմ սովորական անուններից մեկն է։ Փաղաքշական ձևն է* Գարիկ։

— 1. Գարեգին *Ռշտունի, նիզակակից Վաչէ սպարապետի՝ Խոսրով Բ Թագավորի («330—339 թ») ժամանակ։—Բուզ. Գ. է. —Սրա հետ նույն պիտի լինի՝*

— 2. Գարեգին *Ռշտունի, փեսա Մամիկոնեանց. Մերուժան Արծրունու արշավանքի ժամանակ՝ Հունաստան փախավ. վերադառնալով Հայաստան, մասնակցեց Մանուէլ սպարապետի պատերազմին՝ ընդդեմ Վարազդատի («374—8 թ»)։ Սպանվեց այդ պատերազմում՝ Դանունի ձեռքով։—Բուզ. Դ. ծթ. Ե. լէ. Արծր. Ա. ժ.—տես.* Գարեգնի՝ *Բուզ. Դ. ծթ. Արծր. Ա. ժ։*

— 3. Գարեգին, *նախարար մանկադոյն. ընդդիմաբանեց Յազկերտ Բ-ին՝ Հոնաց պատերազմի ժամանակ և երկու տարի չարչարվելով՝ նահատակվեց «451 թ».—Եղիշ. 12. Յայսմ. օգոստ. 7։ (Ըստ Զամչ. Բ. 20 և 460 նահատակված չէ, այլ արձակվել է և հետո, Աւարայրի ճակատամարտում նահատակվել։ Այսպեսով նույնացնում է հաջորդի հետ)։*

— 4. Գարեգին *Սրուանձտեան, նախարար. մասնակցեց Վարդանանց պատերազմին, ուր և նահատակվեց իր երկու եղբայրներով և 18 զինվորներով.—Եղիշ. 93. Փարպ. լթ. Տար. դր. Յայսմ. օգոստ. 7։*

— 5. Գարեգոյն *(տես. Գարեգոյնի), երէց, որդի Մանգիկ երեցի. իր կնոջ՝ Մարխամի հետ նվերներ է արել Բագնայրի վանքին, 1262 թ.—Տիրակ 119. Յովսէփեան, Նիւթեր և ուս. Ա. 17.—Սա է արդյոք այն Գարեգոյնը (բցռ, ի Գարեգոյնէն), որից Հաղրպէկը «գրաւկնել» է և նվիրել Հոռոմոսի վանքին, 1269 թ. —Տիրակ 28 ա։*

— 6. Գարեգին *կթ. Կիլիկիայի, ընտրվեց 1943 թ։*

— Գարեգին *հիշված է նաև 1570 թ. (Ձեռ. Վասպ. 672) և աղավաղ ձևով* Գաբրագին, *անհայտ թվականով (անդ 608, ըստ Լալայեանի ԺԵ դար)։*

ԳԱՐԻԽԱՆ, *ար. ծագումը անհայտ, բայց անշուշտ պարսկական, ինչպես ցույց է տալիս* խան *վերջավորությունը. (կա պրս.* گاری gārī *«անհաստատ, անկայուն», բայց կապ չունի սրա հետ)։*

Մի անգամ հիշված է անթվական մի հիշատակարանում (Ձեռ. Վասպ. 393), որ սակայն գրված է 1444 թվից հետո։

ԳԱՐԿԵՐ, ար. ծագումն անհայտ. այսպես է կոչվում Արարատեան վկաներից մին (լտ. Garcere), որի մասին տես էջ 88, Ակակ № 1։

+ ԳԱՐՈՒՆ, իգ. < հյ. գարուն բառից, ինչպես կա պրս. Բահար համանիշը, որ տես վերը։ Հնից ավանդված չէ. գործածական է այժմ Սվետիայի հայոց մեջ։

ԳԱՐՈՒՆԴՈՒԽՏ, իգ. ծագումն անստույգ. երկրորդ մասն է պրս. دخت duxt «դուստր». բայց կարող էր պրս. բառը հայերեն գարուն բառի հետ բարդվել։ Մի անգամ հիշված է Ժ դարում՝

— Գարունդուխտ, կին Կարուց Աբաս Ա. Թագավորի, որ թագավորել է «984—1029 Թ».—Ազգապ. 5527։

+ ԳԱՐՈՒՆԻԿ, ար. < հյ. գարուն բառի փաղաքշականից. նորակերտ անուն. սակավ գործածական Երևանում։

ԳԱՐՋՈՅԼ, ար. ծագումն անհայտ. գործածված է Դ—Զ դարերում, որից հետո խափանված է։ Կա նաև Գարջուղեան ազգանունը, որ տես Իատոյ անվան տակ։

— 1. Գարջոյլ մախազ, նահապետ Խորխոռունեաց. Խոսրով Բ-ը («330—339 Թ») կարգեց նրան հյուսիսային բանակի զորավար.—Խոր. Գ. Թ.—Սրա հետ նույն պիտի լինի՝

— 2. Գարջոյլ մաղխազ, նահապետ Խորխոռունեաց. ուղեկից եղավ Մեծն Ներսէսին՝ Հունաց Վաղես կայսեր մոտ դեսպան գնալու ժամանակ «364 Թ». Մանուել սպարապետի կողմից դեսպան ուղարկվեց Պարսկաստան, ընդունելու համար պարսկական գերիշխանությունը. Մերուժանի դեմ պատերազմի ժամանակ իր ձիու տակ ճնալով մեռավ։—Բուզ. Դ. ժա. Ե. լը, խգ.—սեռ. Գարջուլայ՝ Բուզ. Ե. խգ.—գրված է Գարջող՝ Մեսր. եր. 52։

— 3. Գարջոյլ մաղխազ Խորխոռունի. Վահան Մամիկոնեանի ապստամբության ժամանակ նրա կուսակիցներից էր. Ակոռիի պատերազմում անցավ Պարսից կողմը և հատիճների զորագլխի հետ միացած, հետևից հարձակվելով, ուզեց խորտակել Հայոց բանակը. Հրահատ և Ներսեհ Կամսարականները սպանեցին զորագլխին և ամբողջ բանակը ցրվեցին («481 Թ»)։—Փարպ. կը, կթ. —սեռ. Գարջուլայն մաղխազու՝ Փարպ. կթ։

— 4. Գարջոյլ, Հայոց մաղխազ, ուրիշ նախարարների հետ ստորագրում է «Հայոց աշխարհի միաբանութեան ուխտին», որ

գրեց Ներսէս Բ կաթողիկոսը նեստորականների դեմ «554 թ».
—Գիրք Թղ. ժէ (տպ. Գարջոյր)։

+ԳԱՒԱԶԱՆ, ար.<հյ. գաւազան բառից (իբր թե հոր ծերության գավազանը). հմմտ. սրա պրս. համանիշը՝ Բասուս։ Անսովոր անուն է. կա միայն մի անգամ՝

— Գաւազան քահանա, Երնջակի Նորակերտ գյուղում գրեց մի Աւետարան՝ պարոն Ջէսարի համար, 1357 թ.—Ձեռ. Սեբ. (ՀԱ 1925, 126—7)։

Գաւլաֆ տես Գուլաֆ։

*ԳԱՖԱՐ, իգ.<պրս. گوهر gavhar «գոհար» բառն է, ուր v և h միանալով դարձել են փ. մեր մեջ հիշված է այս ձևով՝ 1666 թ. (Զքր. պատմ. 67) և ավելի ուշ՝ 1704 թ. (Ձեռ. Թեհր.=ՀԱ 1935, 395)։ Նույն են նաև Գաւհար 1596 թ. (Ձեռ. Թավր. 76 ա), Գոհվար սօլթան, իգ. հիշված 1641 թ.—Bodleian 212։

*ԳԴԻՀՈՆ, ար. ծագումը տես Գեդէոն։ (Զարմանալի է որ Ալիշանը (Շիրակ 172 ա և ցանկում) գրում է Գդուհոն. սրանով այս անունը տանում միացնում է Հիւսիսականաց, Հոնաց և Բասլաց առասպելական թագավոր Գեդուեհոնի հետ, որ չի կարող սրա հետ կապ ունենալ)։

— Գդիհոն Սիւնի, ուրացյալ նախարար. հաջորդեց Վարազվաղանին, մոտ «470 թ»։ Պարսից հետ միասին կռվում էր Վահան Մամիկոնեանի դեմ, որից էլ վիրավորվելով մեռավ Շուէոյ գյուղի պատերազմում «483 թ».—Փարպ. կթ, հա, հդ, հը, ձ, ձգ, ձդ, ձզ, ձը. Օրբ. ժգ, ժզ.—Գդիհովն՝ Փարպ. ձբ, ձզ.—հյց. զԳիդիհոն՝ Սիմ. ապար. 66.—սեռ. Գդիհոնի՝ Փարպ. հզ, ձբ.—Գիդիհոնի՝ Սիմ. ապար. 64.—բցռ. ի Գդիհոնէ՝ Օրբ. ժէ։

+ԳԴՈՒՐԻԿ, ար. բուն ձևն անհայտ. չեմ կարծում Գուհսոն անունից փաղաքշական դարձրած։ Հիշված է Գըդուրիկ ձևով 1553 թ. (Ձեռ. Վեննա. Ա. 578), Գուտորիկ 1618 թ. (անդ 594) և Գուդուր (ճնացածը քերված) 1652 թ? (անդ 762)։ Տես Գոտայ։

*ԳԵԴԷՈՆ, ար.<եբր. גִּדְעוֹן Gid'ōn անունից, որ ծագում է גדע gd' «խորտակել, ջախջախել» արմատից (Gesenius 131 բ)։ Այս անունով հայտնի է Եբրայեցոց 5-րդ դատավորը, որ խորտակեց Մադիանացոց զորությունը (Ն.Ք. 1249—1209). տառադարձված է հուն. Γεδεών, լտ. Gedeōn (Դատ. Զ—Ը)։ Հին հայոց մեջ գործածական էր Գդիհոն ձևով, որ տես վերը։ Այժմ այս անունը գործածվում է քիչ անգամ Գէդէօն, Գեդեոն ձևերով։

— Գեդեոն, երեց աղվան. ժամանակակից Վաչագան Գ-ի.

ժամանակից եղավ Ս. Գրիգորիսի մասունքները գտնելու գործին.—գրված է Գեսևուն՝ Կղկնտ. Ա. իա ըստ հրտր. Էմինի. իսկ ըստ հրտր. Շահն. Գեղռուն, Գեռօն, Գեղէօն։

ԳԵՂԱՄ, ար. համարվում է հյ. գեղ «գեղեցկություն» բառից. բայց դա անշուշտ կամայական մեկնություն է. բառը կամ Խալդեան ծագումից է և կամ Գեղամայ (ծով, լեռ) տեղանունից է ենթադրված Խորենացու կողմից։ Հնից հայտնի է միայն մի անգամ. իսկ այժմ վերանորոգվել է և սովորական անուն է, մանավանդ Կովկասում, ուր ունինք նույնիսկ Գեղամեան ազգանունը։

— Գեղամ, նահապետ Հայկազանց. որդի և հաջորդ Ամասիայի. գահակալեց ըստ Զամչ. 50 տարի, այն է Ն.Ք. 1908—1858. գաղթեց հարավից դեպի հյուսիս, շենացրեց Գեղարքունեաց գավառը. իր անունով են կոչվել Գեղամայ ծովը, լեռները և Գեղարքունիքը։—Խոր. Ա. ե, ժբ. Սեբ. ա. Ցհ. կթ. բ. Ուխտ. Ա. է, ժգ (որդի Արամայիսի!). Մխ. անեց. գ. Մխ. այրիվ. 17, 45. Շնորհ. վիպ. 132. Կղկնտ. Ա. ժե. Վրդ. է. Սամ. անեց. 11, 42, 43. Մին. համզ. 4. Նհպտք. 88. ZAPh 1, 190.—սեռ. Գեղամայ՝ Խոր. Ա. ժբ. Բ. դ, է, ժա. Ցհ. կթ. բ. Ասող. Ա. ե. Մագ. Թղ. ժԹ. Սամ. անեց. 43, 48. Շնորհ. վիպ. 132. Վրդն. լս. 56. Օրբ. բ. Մին. համզ. 5.—Գեղամեայ՝ Խոր. Ա. ե.—Վրաց աղբ. Ա. 74 (Գեյլա ձևով)։

+ԳԵՂԱՆՈՅՇ, իգ. < հյ. գեղ+անոյշ բառերից. նորակերտ անուն. գործածական է Պոլսում, ինչպես և Կովկասում, ուր փաղաքշական ձևերն էլ են Գեղուշ, Ղուշիկ։

+ԳԵՂԵՑԻԿ, իգ. < հյ. գեղեցիկ բառից, սովորական է Նոր-Նախիջևանում, իբր համապատասխան ռուս. Люба անվան։

+ԳԵՂՈՒՀԻ, իգ. < հյ. գեղուհի «գեղեցկուհի» բառից. Նորակերտ անուն. գործածական է Պոլսում, ինչպես և Կովկասում։

*ԳԵՆԱՐԵԹԻՈՍ, ար. անշուշտ աղավաղ բառ. հմմտ. հուն. γεν-«ծնունդ»+αρετή «արժանիք, քաջություն, առաքինություն»։ Այս ձևով կա միայն՝

— Գենարեթիոս, իշխան Մաղխազանց, ժամանակակից Լուսավորչի. Արտիթ եպիսկոպոսին տարավ իր երկիրը (Դ դար).—Արաք. Ագաթ. 72։

*ԳԵՆՈՎԱԲԷ, իգ. հնից չէ ավանդված. գործածվում էր երբեմն Արևմտահայոց մեջ, անցյալ դարում։ Աղբյուրն է Geneviève սրբուհի, ծնված Nanterre գյուղում, Պարիզի մոտ, 420 Թ. մանուկ հասակից ուխտեց կուսություն. երբ Հոները Ատտիլայի առաջնորդությամբ արշավեցին Պարիզի վրա և ժողովուրդը ահա-

ընկված կամենում էր միահամուռ փախչել քաղաքից, սրբուհին ետ պահեց նրանց, գուշակելով որ քաղաքին վնաս չի հասնելու: Իր գուշակությունը կատարվեց: Մեռել է 512 թ.: Տոնվում է կաթոլիկ եկեղեցում և համարվում է Պաշտպան Պարիզի (Փափազեանց, Պատմ. եկեղ. 248): Մեր մեջ այս անունը մուտք գտավ «Պատմութիւն Գենովափէի, դքսուհւոյն Բրիտանիոյ» անուն վեպից, որ գրել է Վրթ. վրդ. Պուտուրեան, Վեննա. 1858 (134 էջով, շատ անհամ ոտանավոր աշխարհաբար լեզվով): Գենովափէի վեպը կա նաև մանկական հրատարակությամբ «Ճշմարտութիւնը միշտ յաղթում է» վերնագրով (Թիֆլիս 1897):

ԳԵՏԱՑ, իգ. գրված է Գէտայ, հոգով ԳէտէՑ. ծագումն անծանոթ. հիշված է մի անգամ 1511 թ. (Ձեռ. Նոր-Բայազ. 4բ):

*ԳԵՐԱՍԻՄ, ար. < հուն. Γεράσιμος անունից, որ և լտ. Gerasimus. այս անունով հայտնի է Գերասիմոս կամ Երասիմոս ճգնավոր՝ ժամանակակից Զենոնի (Յայսմ. ապր. 25=Աւգեր. Լիակ. վրք. սրբ. ԺԲ 156): Բուն նշանակում է «պատվավոր, հարգելի». համմտ. γεράσμιος նույն նշ. (γέρας «արժանիք, պատիվ» բառից): Մեր մեջ հնից ավանդված չէ. այժմ էլ չկա Արևմտահայոց մեջ. բայց սովորական է Կովկասում:

*ԳԵՐԱՔ, ար. < թրք. گرك gerek «պիտանի» բառից. հիշված է 1785 թ. (Այրարատ 324). սրանից է Գերաքեանց ազգանունը, որ հիշված է 1648 թ. (Զամչ. Գ. 627):

*ԳԵՐԳ, ար. ծագումը տես Գէորգ:

— 1. Գերգ, եղբորորդի Մեծարանց տան Գրիգոր եպիսկոպոսի. 1163 թվին մեռան, իսկ ավելի ուշ վանահայր Հաւապըտուկի.—Ցովսէփեան, Խաղբակեանք 29—30:

— 2. Գերգ, նվիրատու Խորանաշատ վանքի, 1244 թ.—Արձ. տես Ղաֆադարեան, Տեղեկ. Արմֆանի, 1940, № 4, էջ 177:

— 3. Գերգ, որ Աղբերանց անուն անձի հետ միասին նվիրատու են եղել Տեղերի վանքին, 1293 թ.—ZAPh 2, 47:

— 4. Գերգ, հիշվում է իբրև վկա մի Աւետարանի ընծայաբերության՝ Գաղիտոյ Ս. Գէորգ եկեղեցուն, 1348 թ.—Ձեռ. Ագուլ. (Արար. 1911, 565):

— 5. Գերգի, հիշված է անթվական մի հիշատակարանում՝ Ձեռ. Թաւր. 72 բ:

ԳԵՐՄԱՆՈՍԱՆ, ար. ծագումն անհայտ: (Կա հուն. Γερμανός պատրիարք Պոլսի 715—730. որ լտ. Germanus > ֆր. Germain անունն է և նշանակում է «գերմանացի»):

— Գերմանոսան, ազգապետ աղվան. ժամանակակից Վաչագան Գ-ի.—Կղկնտ. Ա. իզ. Կանոն. 197.—այս անվան մասին տես նաև Խուրս.—գրված է Գերմոսան՝ Տաշեան, Ցուց. 654 ա։

*ԳԵՐՍԱՄ, ար. < եբր. גרשום Geršōm անունից (հուն. Γηρσάμ տառադարձության միջոցով)։ Այս անունով հայտնի է Մովսեսի երկու որդիներից անդրանիկը։ Նշանակում է բուն «պանդուխտ». հմմտ. Անուանեաց զանուն նորա Մովսէս՝ Գերսամ. ասէ. Զի պանդուխտ եմ ես յօտար երկրի (Ել. Բ. 22). Յորոց միումն անուն էր Գերսամ. ասէ. Պանդուխտ էի յօտար երկրի (Ել. ԺԸ 3)։ Շատ անսովոր անուն է. գտնում եմ երկու անգամ ԺԳ դարում և մի անգամ էլ ԺԸ դարում։

— 1. Գերսամ վարդապետ, միաբան Արջոյառիճի վանուց. թողել է մի արձանագրություն 1215? թվից.—Շիրակ 122։

— 2. Գերսամ, դասապետ կաթուղիկէին Անւոյ. ստացավ Նուցուալից մի Աւետարան և նվիրեց կաթուղիկէին՝ 1236 թ.—Ձեռ. Վենետ. Ա. 396։

— 3. Գեռսամ մի անգամ ևս հիշված է 1730 թ. Տիգրանակերտում (Rapport Belgique 187)։

+ԳԷՇ, ար. < անշուշտ հյ. գէշ «վատ, տգեղ» բառից. զարմանալի է մեզ համար այսպիսի վատ միածականի գործածությունը իբրև անձնանուն, բայց հմմտ. Անպես, Ցիմար, Գիշուկ։

— 1. Գէշ, հիշված է 1225 թ.—Տաշեան, Մատեն. մանր ուս. Ա. 295։

— 2. Գէշ, որ Շիրակավանում կանգնեցրել է մի խաչքար՝ 1272 թ.—Շիրակ 10, 11։

— 3. Գէշ, որդի Պայիկի, կնքահայր ոստիկան Անի քաղաքի (ԺԳ դար. ժամանակակից Աղբուղայի, 1261—1301 թվականների մէջև).—Շիրակ 62 բ, 101 բ։

— 4. Գէշ, հետին ստացող ոմն, որ հիշում է իրեն 1712 թ. —Ձեռ. Մխիթ. 32 բ։

*ԳԷՈՐԳ, ար. < հուն. Γεώργιος անունից, որ բուն նշանակում է «երկրագործ». հմմտ. γεωργός «երկրագործ», γεωργέω «հող մշակել», γεώργιον «մշակված արտ». կազմված է γῆ «երկիր, հող» և ἔργον «գործ» բառերից։ Հույների մոտ այս անունը գործածական էր նախաքրիստոնեական շրջանից սկսած. այսպես գտնում ենք Պղատոնի մոտ։ Ավելի սովորական դարձավ քրիստոնեական շրջանում. հմմտ. Ս. Գէորգ զորավարը, որ Կապադովկիացի իշխան էր և հավատքը չուրանալով նահատակվեց Դիոկղետիանոս

կայսեր ժամանակ, 303 թ։ Իր հիշատակը շատ հարգված է մանավանդ Անգլիացոց և Ռուսաց մեջ։ Հունարենից են փոխառյալ նաև լատ. Georgius, ֆրանս. George, Georges, գերմ. Georg, անգլ. George, Georgy, ռուս. Георгий, Егор, իտալ. Giorgio են։ Հայոց մեջ գործածված է Ե դարից սկսած և այժմ էլ շատ սովորական է։ Փաղաքշական ձևերն են Գևո, Գևի, Գևորիկ։ Օտար ձևերից նոր հուն. Եորգի, իտալ. Ջորջի, անգլ. Ջորջ չեն մտած մեր մեջ. բայց հաճախ լսվում են ֆրանս. Ժորժ և ռուս. Եգոր ձևերը։ Հին հայերը գիտեին բառիս օտար ծագումը. հմմտ. «Գէորգ, որ թարգմանի մշակ հողագործ» Յայսմ. ապր. 23. իբրև անձնանուն հիշում է Մագ. քեր. 246. բուն հայկական համապատասխան ձևն է Մշակ, որ տես առանձին (Հիւբշ. 336)։ Սրանից են առաջացել Գէորգ և Գորգ ձևերը, որոնք տես առանձին, կան նաև Գէորգէոս, Գէորգի և Գիորգիս։

— 1. Գէորգ, եպիսկոպոս Գառնոյ. մին այն երեք եպիսկոպոսներից, որոնք օծեցին Զունակին կաթուղիկոս «359 թ», Ներսէսի փոխարեն.—Մեսր. եր. 66։—Այրարատ 362 ա։

— 2. Գէորգ, վարդապետ Շաղաթոյ. ժամանակակից Սիւնեաց Յովակիմ եպիսկոպոսի (Ե դար կամ ավելի ուշ).—սեռ. Գէորգեայ՝ Օրբ. ժա։—Սիսական 108 ա (Ը դար)։

— 3. Գէորգ իշխան, եղբայր Յովհան կաթուղիկոսի, որի հետ պատգամավոր գնաց հունաց մոտ, Պարսից Խոսրով թագավորի կողմից, հաշտության բանակցություն վարելու համար (544).—Զամչ. Բ. 246։

— 4. Գէորգ Մանկիկ Անեցի (Դունեցի). գրիչ. միաբան Յովհաննավանքի, ուր օրինակել է Ս. Գիրքը՝ վանահայր Աշոտ քահանայի համար 553 թ., Մովսէս Եղիվարդեցի կաթուղիկոսի օրով.—Ջքր. սարկ. Գ. 6 (երկուսը իրար անհարիր լինելով՝ Ալիշան, Այրարատ 165 դնում է 573 թ)։

— 5. Գէորգ երէց. Հռոմի հայոց Կիլիկեան վանքի վանահայրն էր. (այդ վանքը գտնվում էր Սալվիական ջրերի մոտ, որ այժմ կոչվում է Tre fontane երեք աղբյուրներ)։ Իր աբեղաների հետ ներկայացավ Լատերանեան ժողովին (649) և ընդունեց նրա որոշումները։—Պալճեան 54։

— 6. Գէորգ, քարտուղար Հայոց Մեծաց. օրինակեց Իսակայ գիրքը, որի թարգմանության թվականը դրվում է 576.—Զարբ. Հին դպր. 381։

— 7. Գևորգ, եպիսկոպոս Յունահայոց. մասնակցեց Պոլսի 680 թվի կրոնական ժողովին.—Զամչ. Բ. 369։

— 8. Գևորգ պատրիարք Երուսաղէմի. հաջորդեց Գրիգոր Եգեսացուն և նստավ 696—708 թ.—(Աղաւնունի)։

— 9. Գևորգ եպիսկոպոս Ռշտակաց, անդամ Մանազկերտի եկեղեցական ժողովի՝ «726 թ».—Ազգապ. 839։

— 10. Գևորգ վարդապետ Աքանչելագործ. ճգնում էր Օձունի մոտ, Սոթից լեռան մեջ, Մատթէոս վարդապետի և Յովհան Օձնեցի կաթուղիկոսի հետ «728 թ».—Զարբ. Հին դպր. 479, Ազգապ. 843։

— 11. Գևորգ եպիսկոպոս Ռստան. մասնակցեց Պարտաւի եկեղեցական ժողովին, որ գումարեց Սիոն կաթուղիկոսը 768 թ. —Կանոն 166, Տաշեան, Ցուց. 653 բ, Ազգապ. 882։

— 12. Գևորգ Ա. կաթուղիկոս Հայոց «792—795 թ». Արագածոտն գավառից էր. ընդհանրապես համարվում է Բիւրականցի. հաջորդեց Սողոմոնի. կոչվում է «խուլ-որբուկ» (այլ ձ. Հոյլորբուկ). ոչ մի նշանավոր գործ չունի.—Յհ. կթ. իգ. Մխ. անեց. գ. Ասող. Բ. բ. Մխ. այրիվ. 21. Օրբ. հա. հիր. 42. Վրդ. խ, խգ. Միխ. աս. իթ (=իը). Սամ. անեց. 90. Բհնպ. 272. Յհ. կթ. հյր. 276.—սեռ. Գևորգայ՝ Յհ. կթ. իգ.—Ազգապ. 914։

— 13. Գևորգ վանական Տաթևի. իբրև վկա հիշվում է Տաթևի 839 թվի արձանագրության մեջ.—սեռ. Գևորգայ՝ Օրբ. լը։

— 14. Գևորգ Անձևացի. մասնակցեց Գուրգէնի պատերազմին ընդդեմ Բուղայի «852 թ».—Արծր. Գ. դ։—Երևի սա է այն Գէորգ Անձևացին, որ Գուրգէնի և Հասանի հետ հիշված է Եղիշէի Անձևացեաց օրինակում. տես Գալֆայեան՝ Եղիշէ, տպ. Թէոդոսիա 1861, էջ գ—է. (ըստ Ակինեան, Եղիշէ Ա. 109 կեղծիք է)։

— 15. Գևորգ Ընտրունի. մասնակցեց Գուրգէնի պատերազմին ընդդեմ Բուղայի «852 թ».—Արծր. Գ. դ։

— 16. Գևորգ Ակէացի. հանկարծակի հարձակում գործեց Բուղայի վրա՝ ազատելու համար գերիներին. բայց բռնվեց ու նահատակվեց «852 թ».—Արծր. Գ. դ. Յայսմ. մարտ 3, ապր. 21.—սեռ. Գևորգայ՝ Յայսմ. ապր. 21։

— 17. Գևորգ Բռղկացի. հավատքի համար նահատակվեց Բուղայի ձեռքով՝ «853 թ». երբ դահիճը խփում էր և չէր կարողանում կտրել, Գէորգը վերցրեց թուրը՝ տեսնելու համար թե ինչու է բթացել և մի հարվածով սպանեց իր դահիճին.—Արծր. Գ. ը։

— 18. Գէորգ եպիսկոպոս Սիւնեաց, հաջորդ Թէոդորոսի. աթոռը դրավ Տաթևում. գահակալել է «832—840 թ».—Օրբ. լդ, հա.—սեռ. Գէորգայ՝ Օրբ. լը։

— 19. Գէորգ քահանա Սիւնեցի. ազատ տոհմից. թողեց իր կնոջը և վանք քաշվեց. Գէորգ Բ կաթողիկոսից («877—897 թ») քահանա օծվելով՝ ճգնեց ու թաղվեց Երիցու վանքում.—սեռ. Գէորգայ՝ Օրբ. խե, խզ։—Սիսական 281 ա։

— 20. Գէորգ Բ Գառնեցի. կաթողիկոս Հայոց «877—897 թ». հաջորդ Զաքարիայի. գահակալեց Աշոտ Ա-ի և Սմբատ Ա-ի օրով, որոնց ինքը օծեց թագավոր։ Աֆշին ոստիկանի ձեռքով բռնվելով՝ գերի տարվեց Ատրպատական, ուր 2 ամիս բանտարկվելուց հետո, Աղվանից Համամ իշխանի միջոցով ազատվեց փրկանքով «894 թ»։ (Ըստ Զարբ. Հին դպր. 531 գրել է թուղթ առ Յովհաննէս պատրիարք Ասորոց. բայց սխալ է. պետք է հասկանալ Գէորգ Գ Լոռեցի, որ տես).—Յհ. կթ. իը—ի լդ, լգ. Կղկնտ. Գ. իբ, իդ. Ասող. Բ. բ. Գ. գ. Մխ. անեց. դ. Կիր. 45, 46, ը. Վրդ. խե. Արծր. Գ. ժթ, ի, իբ, իգ. Մխ. այրիվ. 21. Օրբ. լդ, խ, խե, ծա, հա. Միխ. աս. իթ (=իը). Սամ. անեց. 95, 96. Քննլ. 272. Յհ. կթ. հյր. 276. Հաւաք. 2—4, 28 (պատմում է թե ինչպես Էջմիածնի! կաթողիկոս Գէորգը այցելության գնաց Արծրունեաց Գագիկ Ա թագավորին, Աղթամարում կառուցած վանքը տեսնելու. կեղծիք. ըստ որում 908 թվին, երբ Գագիկ Ա գահ բարձրացավ, արդեն 11 տարի էր որ Գէորգը մեռած էր), 29, 31, 44, 45, 58.—սեռ. Գէորգայ՝ Ստեփ. սեան. 42. Յհ. կթ. լ. Ասող. Գ. բ. Կղկնտ. Գ. իբ, իդ. Օրբ. իդ, իե, լգ, խ, ծա. Կիր. ը. Վրդն. աշխ. 509. Հայապ. 265.—Գէորգեայ՝ Արծր. Գ. իա. Յայսմ. հոկտ. 13.—բց. ի Գէորգէ՝ Կիր. ը.—Աղգապ. 981—1014, Զամչ. Բ. 702—723։

— 21. Գէորգ նահապետ Սևորդեաց. սրա վրա հարձակվեց Ատրպատականի Աֆշին ոստիկանի որդի Դևդատը, բռնեց և հավատը չուրանալու պատճառով՝ Արուէս եղբոր հետ նահատակեց Դուինում, 899 թ.—Յհ. կթ. լէ.—սեռ. Գէորգեայ՝ Յհ. կթ. լէ.—Զամչ. Բ. 729։

— 22. Գէորգ սարկավագ, գերի բռնվեց Նըսր ոստիկանի ձեռքով՝ Բիւրական ամրոցի առման ժամանակ և իր հարստությունը վատնելով ազատվեց «926 թ».—Յհ. կթ. կգ։

— 23. Գէորգ կրոնավոր Հաւնունի. Գագիկ Արծրունի թագավորի կողմից պատգամավոր գնաց Ատրպատականի Ըսբուք

ոստիկանի մոտ և հաշտեցրեց նրա հետ «926 թ».—Ցհ. կթ. կա։

— 24. Գէորգ Մարզպետունի. իր 20 քաջերով դեմ դրավ Բշըր ոստիկանին և երկու անգամ վանեց նրան, Աշոտ Երկաթի ժամանակ, «927 թ»։ Օգնական էր Աբասին Ափխազաց Բեր թագավորի դեմ պատերազմում.—Ցհ. կթ. կէ.—սեռ. Գէորգայ՝ Ցհ. կթ. կէ։—Զամչ. Բ. 811—4, 829։—Ավանդվում է որ Բագարանի բերդի հյուսիսային ծայրի վրա շինված Ս. Գէորգ եկեղեցին Գէորգ Մարզպետունու հիշատակին է (Թորամանեան, Հայկ. ճարտարապ. Երևան, 1942 թ. էջ 231 ա)։ Եկեղեցին այժմ նորոգված է և ավանդաբար կոչվում է Ս. Գէորգ։ «Ոմանք այս Ս. Գէորգ անունը Գէորգ Մարզպետունիի անվան հետ կկապեն, որպես թե ինքը թաղված է այդ եկեղեցվո մոտ, կամ նույն իսկ իր շինածն է եկեղեցին» (անդ 359 բ)։—Մուրացանը Գէորգ Մարզպետունու վրա կազմել է մի ընդարձակ վեպ, տպ. Թիֆլիս 1912. Նույնը Քաջվորյանը վերածեց պիեսայի։

— 25. Գէորգ թագավոր Աղուանից. ժամանակակից Աշոտ Գ Ողորմածի «954—977 թ». օգնական գնաց Ցունաց Ցովհաննէս Զմշկիկ կայսեր՝ Արաբների դեմ արշավելու ժամանակ, «973 թ». —Սմբ. պատմ. 28, 32, 33։

— 26. Գէորգ վանահայր Նորավանից, թերևս հաջորդ Քրիստափորի (970 թվից հետո).—բց. ի Գէորգայ՝ Օրբ. խզ.—Սիսական 278 բ։

— 27. Գէորգ վարդապետ, վեճ է ունեցել Սամուէլ Կամըրջաձորեցու և Անանիա Նարեկացու հետ՝ Առաջավորաց պահոց մասին (Ժ դար).—Զամչ. Ա. 626։

— 28. Գէորգ իշխան, թվի Պահլաւունեաց տոհմից. սրա որդին՝ Աշոտ իշխանաց իշխանը մեռել է 1002 թ.—Ալիշան, Շնորհ. էջ 13։

— 29. Գէորգ իշխան Քեղոյ. շինեց Հաւուցթառ վանքը՝ 1000—1010 թ.—բց. ի Գէորգեայ՝ Մխ. այրիվ. 72.—Այրարատ 354—5։—Գորը սպարապետ Զեռ. Սեբ.=ՀԱ 1929, 359։

— 30. Գէորգ, եղբայր Տայոց Դաւիթ կիւրապաղատի. երբ Դաւիթ մեռավ (1000 թ)՝ իր երկիրը հունաց Վասիլ Բ կայսեր կտակելով, Գէորգը աշխատեց կտակը խափանել։ Վասիլ կայսրը շտապեց արևելք, հյուսիսային Վրաստանը ընծայեց Գէորգին, որ պիտի թագավորեր նա ինքնագլուխ և նրա որդիներին պատանդ վերցնելով ետ դարձավ.—Ցէր Սահակեան, Հայ կայսերք Բ. 303։

— 31. Գէորգ Զորտուանել տես Զորտուանել Ա։

— 32. Գէորգ գրիչ. արձանագրել է Ապլղարիպ մարզպանի հրովարտակը Անիի Ս. Փրկիչ եկեղեցու վրա 1035 թ.—Շիրակ, էջ 82։

— 33. Գէորգ վարդապետ կամ դպրապետ Թամռեցի (ԺԱ դար).—Ուռհ. 179։

— 34. Գէորգ, հայր Գագիկ-Գրիգորիս կաթողիկոսի Աղուանից (ԺԱ դար).—սեռ. Գէորգայ՝ հիր. ը։

— 35. Գէորգ կաթողիկոս Աղուանից, նախորդ Յովսէփ Գ-ի և հաջորդ Յովհաննէսի (ԺԱ դար).—Ուռհ. 231.—համմտ. տակը № 46)։

— 36. Գէորգ գրիչ. Պետրոս Գետադարձ կաթողիկոսի հրամանով գրեց մի Ճառընտիր՝ 1046 թ.—Ձեռ. հարին. 53, Տաշեան, Ցուց. 610 բ։

— 37. Գէորգ Քարնեցի, ուղեկից եղավ Պետրոս Գետադարձ կաթողիկոսին՝ Պոլիս ճամբորդելու ժամանակ «1047 թ». —Ուռհ. 105։

— 38. Գէորգ եպիսկոպոս Ջուլհակաձագ, ուղեկից եղավ Պետրոս Գետադարձ կաթողիկոսին՝ Պոլիս ճամբորդելու ժամանակ, «1047 թ».—Ուռհ. 105։

— 39. Գէորգ վարդապետ, որին մի թուղթ գրելով Գրիգոր Մագիստրոսը (մ. «1059 թ»), խնդրեց Ասողիկի Մեկնութիւն Երեմիա մարգարէի.—Մագ. թղ. ծե։

— 40. Գէորգ Ակոռեցի, որդի Անանիա քահանայի Ակոռեցւոյ. Թուրքերի արշավանքի պատճառով գաղթեցին Ակոռիից Սեբաստիա (1066). հինգ տարի հետո Անանիան գնաց Պոլիս, ուր և մեռավ. Գէորգը իր եղբոր Գրիգորի հետ սովորեց Փիլիպպոս քահանայի և նրա երկու որդիների՝ Ստեփաննոսի և Սահակի մոտ.—Rapport Arm. 45—46, Հացունի՝ Դաստիարակութ. 125։

— 41. Գէորգ Գ Լոռեցի, կաթողիկոս Հայոց «1067—1072 թ». նախապես դպրապետ և Գրիգոր Բ Վկայասէր կաթողիկոսի խորհրդականն էր. նրա ձեռքով օծվեց ժամանակավոր կաթողիկոս՝ կառավարելու համար ժողովուրդը՝ Գրիգորի բացակայության ժամանակ։ Ունի մի ընդարձակ թուղթ Յակոբիկ Ասորիների պատրիարք Յեսու-Բար-Շուշան Յովհաննէս Ժ-ի (1064—1073) դեմ։ Հրատարակված է Գիրք թղ. ՁԵ, էջ 335—357, այս վերնագրով. «Տեառն Գէորգեայ Հայոց վերադիտողի և հոգեշնորհ փիլիսոփայի պատասխանի թղթոյն Յովհաննիսի Ասորւոց պատրիարգի»։ Այս թղթի մեջ Գէորգը պաշտպանում է հայ եկեղե-

ցու ծեսերը՝ նույն պատրիարքի անիրավ հարձակումների դեմ (տես Զարբ. Հին դպր. 531, որ սխալմամբ Գէորգ Բ-ինն է համարում նույն Թուղթը, և Ջեռ. Դաշեան, Ա. 87 բ)։ Այս մասին է խոսում և Տէր-Մինասեան, Հայոց եկեղ. յարաբ. էջ 241—257, իսկ Բար-Շուշանի Թղթի ամբողջական Թարգմանությունը և նրա ուսումնասիրությունը գրեց Վարդանեան, Ազգ. մատ. հտ. ՃԱ, Վիեննա 1923։ Գրիգոր Վկայասէրի վերադարձից հետո, Գէորգը ցանկացավ ամբողջապես գրավել հայրապետական աթոռը, դժգոհ մնալով Վկայասէրից այն գլխավոր պատճառով, որ նա սովորություն էր արել շարունակ աջ ու ձախ կաթողիկոսներ ստեղծել։ Բայց Վկայասէրը ավելի ուժեղ գտնվեց և իշխանական օժանդակությամբ գահազուրկ արեց Գէորգին, որ քաշվեց այնուհետև Տարսոն, ուր և մեռավ։—Գիրք Թղ. ձե. Սամ. անեց. 117. Կիր. 54, 55, 57. Ոսկ. յհ. բ. յիշ. Վրդ. ծը, կ. Ուռհ. 190, 206. Միխ. աս. իթ (=իը). Ցայսմ. յուլ. 30. Հայապ. 353. —Գorգ՝ Օրբ. ողբ 60.—սեռ. Գեorգայ՝ Ուռհ. 191.—Գeorգեայ՝ Գիրք Թղ. հթ (յիշ.), ձե. Ուռհ. 205. Ոսկ. գծ. 457. Վրդ. ծը (հրտր. Էմինի՝ Գէորգայ), ծթ։—Ջամչ. Բ. 994—5. Ազգապ. 1278, 1286։

— 42. Գeorգ Ուռճեցի, նշանավոր գիտնական վարդապետ և երաժիշտ. հարյուրամյա մեռավ և թաղվեց Կամրջաձորում (1091 կամ 1093 թ).—Վրդ. կբ. Ուռհ. 244։ (Ալիշան, Այրարատ 59 կոչում է Թառիճեցի և Շնորհ. և պրդյ. էջ 90՝ Թառճեցի և մեռած է դնում 1094 թ. իսկ Ազգապ. 1272 կոչում է Ուռհայեցի և նույնացնում է Գէորգ Ուծեցու հետ, որ տես տակը № 48)։

— 43. Գeorգ, իշխան Սիւնեաց Սենեքերիմ Ա. թագավորի. հիշված է Տաթևի 1091 թվի կալվածագրում.—Օրբ. ծթ.—սեռ. Գeorգեայ՝ Օրբ. ծթ։

— 44. Գeorգ վարդապետ Մեղրիկ. Վասպուրականի Անալիւր կամ Սևան գյուղից. այսպես կոչված «ըստ քաղցրութեան բարուցն». հիմնեց Դրազարկի վանքը, ճգնեց 50 տարի և մեռավ 70 ամյա, 1104 թ. ըստ Վարդանի, կամ 1113 թ. ըստ Կիրակոսի, Սամ. անեցու և Օրբելեանի, և կամ 1114 թ. ըստ Ուռհայեցու. (ուղիղ է անշուշտ առաջինը, որովհետև արդեն մեռած էր 1112 թվին, երբ իր ընկեր Կիրակոսը գրում էր Ոսկեբերանի հիշատակարանը)։ Աշակերտել էր Գէորգ Գ Լոռեցի կաթողիկոսին. ունի «Երգք օրհնութեանց» (Զարբ. Հին դպր. 705 և Manus. brit. mus. 244 ա) և «Բան խոստովանութեան» (Տաշեան, Ցուց.

446)։ Ունի նաև աղօթքներ (տես Թորոս աղբ. Բ. 396)։ Կարգավորել է Ճաշոցը, հրամանով Գրիգոր Վկայասէր կաթուղիկոսի (Ձեռ. Թաւր. 113 բ, Զարբ. Հին դպր. 604)։ Թերևս նոյն է նաև Գէորգ Դրազարկցին (Տաշեան, Ցուց. 181 ա)։—Կիր. 62. Սամ. անեց, 123. Վրդ. կէ. Օրբ. ժմ. 16. Մխ. այրիվ. 77. Ուռհ. 334. Ցայսմ. յուլ. 30. Ոսկ. յհ. բ. յիշատ. Հայապ, 353. Սմբ. պատմ. 92.—Մեղրիկ' կրպտ. սարգ. յոչ.—սեռ. Գեորգայ' Ուռհ. 366։—Սիսուան 151, 231 բ, 534 (իբր հիմնադիր Խորին վանուց?)։

— 45. Գեորգ գրիչ. Դրազարկի վանքում օրինակեց Աւետարանը Կիրակոս կրօնավորի համար, 1113 թ.—Tübingen 4։

— 46. Գեորգ, որդի Կարապետի և հայր Գրիգորիսի, որ պատանի հասակում օծվեց Աղվանից կաթողիկոս, 1139 թ.—Հայապ. 386, Շնորհ. և պրդյ. 161.—հմմտ. № 35։

— 47. Գեորգ վարդապետ, ուսուցիչ Սամուէլ Անեցու. կազմել էր ժամանակագրություն' մինչև 551 թ. սրա հիման վրա Սամուէլը կազմեց իր ժամանակագրությունը։ Գէորգի գործը այժմ կորած է (Ալիշան, Շնորհ. 126 համարում է Գէորգ Անեցին).—սեռ. Գեորգեայ' Սամ. անեց. 75։

— 48. Գեորգ Ուծեցի. նշանավոր վարդապետ ԺԲ դարում. Ուռհ. 179 (տես վերը № 42)։

— 49. Գեորգ Արճիշեցի աչիկայ կամ ի ծնէ կույր, ճգնավոր. իր ընկեր Գրիգորի հետ ապրում էր սրբակյաց կյանքով. ման եկան բոլոր վանքերը, 7 անգամ ուխտի գնացին Երուսաղէմ, ապա Հռոմ։ Ճանապարհին հունգարացի ավազակներ հարձակում գործեցին նրանց վրա, Գէորգին հարվածեցին և Գրիգորին էլ սպանեցին։ Գէորգը բժշկվեց և Գրիգորին էլ «հրաշքով» կենդանացրեց։ Միասին դարձան Հայաստան և բնակեցին Անիի եկեղեցիների դռները, հառկապես կաթողիկէում (ԺԲ դար).—Վրդ. հն. Ցայսմ. մայ. 4.—սեռ. Գեորգեայ, բցռ. ի Գեորգայ, գրծ. Գեորգաւ' Ցայսմ. մայ. 4.—Աւգեր. Լիակ. վրք. սրբ. ԺԲ 112։

— 50. Գեորգ վարդապետ, խոստովանահայր Զուլինի, որի մահվան վրա մի ողբ գրեց' 1147 թ.—Վրդ. հզ։

— 51. Գեորգ վարդապետ, որդի Ցակոբոս քահանայի. Ծով ամրոցում, Յովհաննէս գրչին գրել տվեց Աւետարանը, 1151 թ. —Ձեռ. Վենետ. Ա. 748։

— 52. Գեորգ Ա եպիսկոպոս Արևելեան. երկրորդ առաջնորդ Հաղբատի, հաջորդ Սարգիս Ա-ի. Թղթակից Ներսէս Շնորհալու. խնդրեց նրանից Ս. Սարգսի վկայաբանությունը, որ Շնորհալին

թարգմանել տվեց ասորի Միխայէլ քահանային և ապա սըրբագրեց (1158 թ)։—Կիր. 56. Շնորհ. թղ. 216—8.—սեռ. Գէորգեայ՝ Շնորհ. թղ. 216, Շնորհ. սրգ. 4.—Գէորգեաւ՝ Շնորհ. սրգ. 8.—Ձեռ. վենետ. Բ. 46, 1267. Զամչ. Գ. 85. Աւգեր. Լիակ. վրք. սրբ. Բ. 47. Զարբ. Հին դպր. 635. Թրգմ. 340, 724. Ալիշան՝ Շնորհ. 269—272, Հայապ. 382.—մեռել է 1163 թ. ըստ Օրբ. ժմ. 18 (երկիցս). գերեզմանը գտնվում է Հաղբատում (Յովսէփեան, Նիւթեր և ուս. Ա. 66)։

— 53. Գէորգ վանեցեց, Յուսիկ և Կարապետ քահանաների հետ՝ իրենց վատ վարքի համար վռնդվելով Ն. Շնորհալուց, գնացին Ուռհա, հայ-հոռոմ դարձան և իրենց հետ էլ հավատափոխ արին 400 տուն ժողովուրդ.—Միխ. աս. իէ (=իղ). Ալիշան՝ Շնորհ. էջ 473։—Սրանք են որ Գէորգ վանեցէց, իր հետ նաև Յուսիկ վանեցէց անունով հիշված են Manus. brit. mus. 224 ա «Ցաղագս աղանդոյ միոյ որ երևեցաւ յաւուրս մեր նախ քան զվախճանն Ներսէսի կաթուղիկոսի». ավելի ծանոթություն չի տրված։

— 54. Գէորգ, մեծ իշխան Թորոս Բ-ի. սրա հետ Թովմապայլը փախավ և փախցրեց Թորոս Բ-ի որդի Ռուբէնին Կիլիկիայի լեռները «1168 թ».—Զամչ. Գ. 77, Սիսուան 56։

— 55. Գէորգ, մեծ հայր Տրդատ քահանայի՝ աւագերեցի Արճոյ, որ իր Խուշուշ կնոջ հետ միասին նորոգեցին Անիի Ս. Փրկիչ եկեղեցին՝ 1173 թ.—Շիրակ 85։

— 56. Գէորգ, եպիսկոպոս Մանազկերտի. մասնակցեց Հռոմկլայի եկեղեցական ժողովին՝ «1179 թ».—Շնորհ. պտճ. 199։

— 57. Գէորգ, եպիսկոպոս Նփրկերտի. մասնակցեց Հռոմկլայի եկեղեցական ժողովին՝ «1179 թ».—Շնորհ. պտճ. 199։

— 58. Գէորգ, աշակերտ կազմարար Թորոսի. երկուսով կազմեցին մի ընդարձակ Տօնական, որ Ստեփաննոս գրիչը օրինակել էր Նեղկուկ գյուղում, ստացող Կոստանդինի և Ղուկասի համար, 1194 թ.—Manus. bibl. nat. էջ 54։

— 59. Գէորգ ոմն, մերձավոր կամ օգնական Յակոբ գրչի, որ օրինակել է Շնորհալու Մեկնութիւն Կաթուղիկեայց, 1198 թ.—Հայապ. 442։

— 60. Գէորգ եպիսկոպոս, առաջնորդ Անդրիասանց (Բարձրբերդ),ներկա եղավ Լևոն Բ-ի օծման հանդեսին, «1199 թ».—Սիսուան 149 բ, 470 բ։

— 61. Գէորգ, պարոն և տէր Բարձրբերդի. ներկա եղավ

Լևոն Բ-ի թագադրության հանդեսին, «1199 թ»—Սմբ. պատմ. էջ 112։

— 62. Գէորգ վրդ., վանական Սկևռայ վանուց. Լամբրոնացու և Յովհաննէս եպիսկոպոսի հետ գնում էին Լևոն Բ-ի կողմից պատգամավոր Գերմանիայի Ֆրեդերիկոս կայսեր մոտ և Մարաշում կողոպտվեցին Թուրքերից («1190 թ»)։ Լամբրոնացին սրան է արտագրել տվել իր Սաղմոսաց Մեկնութիւնը։ Գրել է և մի օրինակ Վարք հարանց՝ Խաչատուրի հրամանով (1192 թ).—Պատմ. լմբ. 231. Վրք. հց. յուշ. յիշատ. Սիսուան 98, 447, 516. Հայապ. 417. Զարբ. Հին. դպր. 709. Թրգմ. 551։

— 63. Գէորգէոս եպիսկոպոս, «մեծ հռետոր Հայոց», օրինակել է Կիւրղի գործերը Ն. Լամբրոնացու հետ կամ նրա համար.—Զարբ. Թրգմ. 515։

— 64. Գէորգ ճգնաւոր, համախոհ Ն. Լամբրոնացու.—Լմբ. էջ 229։

— 65. Գէորգ ճգնաւոր Վարագայ վանուց. ժամանակակից Լամբրոնացու. նոյն է նախորդի հետ.—Տաշեան. Ցուց. 334 ա։

—66. Գէորգ կաղ. մատենագիր. ունի Մեկնութիւն, որ քաղվածօրեն կազմված է Ոսկեբերանի Հռովմայեցոց Թղթի մեկնութիւնից.—Թվականը անհայտ է (տես Վարդանեան, Նւթաղ, էջ 114 ծան). բայց անշուշտ պետք է դնել ամենաուշ ԺԲ դար. որովհետև Գրիգոր որդի Աբասու օգտվել է նրանից իր Պատճառաց գրոց մեջ, նախ քան 1217 թ. (տես Ակինեան, Մատեն. հետազ. Ա. 27)։

— 67. Գէորգ գրիչ. օրինակել է Ճառընտիրը՝ մեծադիր երկաթագիր գրչությամբ, 1201 թ.—Ձեռ. Կարին. 89։

— 68. Գէորգէոս, քահանա Կեսարիոյ. խոստովանահայր և մխիթարիչ Թէոդորոս նոր վկայի Կեսարացւոյ, երբ սա բանտարկված էր Սելճուքեան Սուլթան Ռուքնադինի բանտում, «1204 թ».—Վարք և վկ. Ա. 561. Նոր վկ. 84—85։

— 69. Գէորգ քահանա, եղբայր Անդրէաս քահանայի, որ գերությունից ազատեց Մլքէ թագուհու Աւետարանը և նվիրեց Վարագայ վանքին՝ 1208 թ.—Ձեռ. Վենետ. Ա. 385, 389։

— 70. Գէորգ քորեպիսկոպոս Խարբերդի, 1214 թ.—Տաշեան, Ցուց. 1040 ա։

—71. Գէորգ, միաբան Հաւուցթառի՝ 1214 թ.—Ձեռ. Վենետ. Ա. 593, Այրարատ 356։

— 72. Գէորգ, եղբայր Գրիգոր եպիսկոպոսի, որ Յովհաննէս

Հռոմկլայեցի սարկավագին գրել տվեց մի Ավետարան, 1214 թ. —Շահազիզ, Պատմ. պատկ. 121։

— 73. Գեորգ վրդ. Քեսունցի, թարգմանեց Եփրեմ Խուրի ասորու ճառերից (1215 թվից քիչ առաջ).—Զարբ. Թրգմ. 443, 460, Սիսուան 518 բ։

— 4. Գեորգ քահանա, հորեղբայր Ցովհաննէս ճգնավորի. Երուսաղէմում, քաղաքից դուրս, Սիոնի դեմ, Բեթղեհեմի ճանապարհի վրա, այնտեղ ուր ավանդում են թե Աստվածամայրը հանգիստ է առել՝ մանուկն ի տաճար ընծայելու գնալիս, շինեց մի տաճար՝ որ կոչեց Ս. Աստուածածին։ Արդեն մեռած էր 1215 թ.—Ձեռ. Վեննետ. Բ. 144. Աթան. յոշ. ժթ։

— 75. Գեորգ, Եկեղեաց գավառի Իշոխա գյուղից, եղբայր Վարդան և Սարգիս քահանաների, որոնք Կապոսի անապատում գրել տվին մի Տօնական՝ 1230 թվին.—Ձեռ. Վեննետ. Բ. 1214։

— 76. Գեորգ Անեցի, գանձասաց. ունի քանից ավելի գանձեր, որոնցից մեկը՝ «Գանձ ի քառասուն վկայս» ավանդված է մեզ ԺԳ դարում գրված մի Գանձարանում (Նորայր, Կորիւն վրդ. էջ 6). այդ գանձերի ծայրանունն է «Գէորգ». մեկինն էլ «Անեցի».—Ալիշանը՝ Շնորհ. և պրգյ. էջ 126 այս Գէորգին համարում է Սամուէլ Անեցու ուսուցիչ և ժամանակագիր Գէորգի հետ նույն։—Սրա հետ միացնում եմ Գեորգ գանձասաց, որի գանձերից օրինակված կան 1241 թ. ուստի չի կարող լինել Գէորգ Սկևռացին, որ նույն թվին դեռ չէր ծնված (Սիսուան 103)։—Գեորգ անունով մի գանձասաց էլ հիշում է Ցուցիկք Ա. 326, ուր դրված է նաև «Գանձ Ս. Սահակի»։

— 77. Գեորգ քահանա, որդի Վահրամի, եղբայր Կոստանդին Ա Բարձրբերդցի կաթուղիկոսի. արդեն մեռած էր 1244 թ.—Ձեռ. Վեննետ. Ա. 651—2, Սիսուան 150, 151, Թորոս աղբ. Բ. 359։

— 78. Գեւորգի Դսեղեցի, որդի Աշոտի և հայր Աշոտ Դսեղեցու, որ Հոռոմոսի վանքին զանազան նվերներ արեց՝ 1246 թ.— Շիրակ 24 ա։

— 79. Գեորգ, որդի Գրիգորի՝ եղբոր Ստեփանոս դռան եպիսկոպոսի, որ Հռոմկլայում ստացավ մի Ավետարան, 1248 թ. —Ձեռ. Հալէպի, Բ. 5։

— 80. Գեորգ քահանա, որդի Խոսրովի, Արգելանի անապատում, Ցակոբ կրոնավորին գրել տվեց մի Ավետարան, 1251 թ.— Ձեռ. Վասպ. 87.

— 81. Գևորգ, եպիսկոպոս Խարբերդի Ս. Գէորգ վանքի, 1255 թ.—Թորոս աղբ. Բ. 353 (կեղծիք)։

— 82. Գևորգ, գրիչ հիշատակարանի Տամա-Վիժի՝ կնոջ Կոստանդին պայլի, 1284 թ.—Տաշեան, Ցուց. 834—5։

— 83. Գևորգ կրոնավոր, գրիչ. Կիլիկիայում օրինակել է Յովհան Իմաստասէրի ճառերը, 1298 թ.—Manus. bibl. nat. 72։

— 84. Գևորգ վարդապետ, արտագրել է ընտիր մի օրինակ Աստուածաշնչի, որից էլ օրինակել է Յովհաննէսը՝ 1319 թ. (Վենետ. № 1508).—Անկ. գիրք հին կտ. յուշ. ժգ։

— 85. Գևորգ Սևասցի. հեղինակ ԺԳ դարից. ունի Մեկնութիւն Եսայեայ (Արրտ. 1913, էջ 44)։

— 86. Գևորգ վարդապետ Լամբրոնացի կամ Սկևռացի, քեռորդի Գրիգոր Սկևռացու. ծնվել է Լամբրոնում և սովորել Սկևռայ վանքում, իր քեռի Գրիգորի մոտ, որ նույն վանքի առաջնորդն էր։ «Եւ յորժամ յարբունս հասանէր հասակի, ընթանայր նա և յելս արևու, որ և դարձեալ լինէր անտի բարդաւաճեալ փառօք»։ Արևելքում սովորել է Բջնիի Գրիգոր արքեպիսկոպոսի և նրա որդոց՝ Վարդան և Գրիգոր քահանաների մոտ, նաև Վարդան Արևելցու մոտ։ Շրջել է Վիրապ, Սաղմոսավանք, Թեղենիս։ Վերադառնալով Կիլիկիա, պարապեց գրական գործերով։ Մեռել է «1301 թ»։ Իր աշակերտներն են Մովսէս Սկևռացի, որ նրա մահվան վրա գրել է մի ողբ, և Մարտիրոս վրդ., որ օրինակել է Աստուածաշունչը։ Իր աշխատությունններն են՝ Մեկնութիւն Գործոց Առաքելոց, ի խնդրոյ Յովհաննու արքայեղբօր (տպ. Վենետիկ 1839), (տես և Թորոս աղբ. Բ. 393), Խրատ վասն գրադարձութեան, Խրատ վասն առոգանութեան, Խրատ գրչութեան (որ գրել է Ստեփաննոս Գոյներիցանցի խնդրանքով, քաղելով Արիստակէս գրչի համանուն աշխատությունից. տես Bodleian 232—3, 246. այս աշխատության մի ուրիշ մասն էլ գրել է Կոստանդ գրչի խնդրանքով, որ տես Կոստանդ անվան տակ), Ներբողեան ի Յովհ. Աւետարանիչ, Մեկնութիւն Եսայեայ (որ գրել է ի խնդրոյ Հեթում թագաւորի), գանձեր, կանոններ, Բանք խրատականք։ Դարձյալ ինքն է կազմել համարք, ցանկք և նախադրութիւնք Ս. Գրոց (Ձեռ. Վենետ. Ա. 50, մերձավորապես 1292 թ. ըստ Ակինեան, Մատեն. հետազոտ. Ա. 28)։ Զակերտի մեջ դրված վկայությունից երևում է, որ նույն է այն Գէորգ Լամբրոնացին, որ պատանի ժամանակ պանդխտել է Այրարատ և օրինակել է այնտեղ մի Տօնապատճառ (1267 թ), ըստ Գ. Տ-Մկրտ-

չեան, Անան. շիր. էջ 31, Այրարատ 163, 438, Սիսուան 102, 145, Ձեռ. Վեննա. 312 (ուր տես իր գեղեցիկ հիշատակարանը՝ հանդերձ պատմական տեղեկութեամբ)։—Զարբ. Հին դպր. 600, 601, 718—723, Թրգմ. 156, Սիսուան 532—3, Տաշեան, Ցուց. 1072 ա և Tübingen, էջ 9, Ձեռ. Սևանի 39, Ձեռ. Դաշեան, Ա. 60 բ.—Սամ. անեց. շար. 155, 164. Մեծոփ. 52։ Իր արտագրած Աստուածաշնչի մասին տես Ձեռ. Վեննա. Ա. 19, 60—62, նաև 501? Կարծեմ սա է այն «մեծն Գէորգ րաբունին», որ արտագրած է եղել մի ընտիր Սաղմոս (տես Ձեռ. Վեննա. Ա.240)։ Ըստ Ալիշանի՝ Սիսուան 105 սրա հետ նույն է դարձյալ Գեորգ խուլ, մեծ վարդապետ Սսոյ, որ ուղղել է Շարականը, որ և նրա անունով կոչվել է այնուհետև «Խլկցի» (Առաք. լծ. սահմ. 523—4)։ Ըստ Ալիշանի, Սիսուան 106 ա, ծան. 1 Խլկցի Շարականի հնագույն օրինակը 1309 թվից է։—Տաշեան, Ցուց. 1071 գ Խըլ-կցի Շարականը կազմող Գէորգին չի կցում այս Սկևռացու հետ։

— 87. Գեորգ, վաճառական. իրավունք ստացավ անցնելու Վենետիկ 1302 թ.—Ալիշան, Հայ-Վենետ. 154։

— 88. Գեորգ, եպիսկոպոս կաթուղիկոսարանի. անդամ Սսի եկեղեցական ժողովի՝ 1307 թ.—Ազգապ. 1785։

— 89. Գեորգ եպիսկոպոս Ամասիոյ. ներկա է եղել Սսի եկեղեցական ժողովին՝ 1307 թ.—Զամչ. Գ. 309 (չունի Ազգապ. էջ 1785)։

— 90. Գեորգ կրօնաւոր քահանայ, որի հիշատակին Յով-հաննէս քահանան գրեց Վանի Աւանց գյուղում «Պատմութիւն մարդեղութեան Քրիստոսի», 1310 թ.—Թորոս աղբ. Բ. 411, Զարբ. Թրգմ. 196։

— 91. Գեորգ, գեղջավագ Քոնի գյուղի, մորեղբայր Յով-հաննէս Քռնեցու. հիշված է 1328—30 թվերին.—Սիսական 374ա, 384 ա։

— 92. Գեորգ, եղբայր Յովհաննէս Քռնեցու. իշխան Գողթան (ԺԴ դարի առաջին կեսում).—Սիսական 311 բ։

—93. Գեորգ, որդի Կարապետի և հանգուցյալ եղբայր Պօղոս քահանայի, որ Գրիգոր գրչին գրել տվեց մի Աւետարան, Կիլի-կիա 1334 թ.—Ձեռ. Վեննա. Ա. 698։

— 94. Գեորգ Siglik? դեսպան գնաց Լևոն Ե թագավորի կողմից Անգլիայի Եդուարդ Գ թագավորին, որ հրամայեց տալ նրան 40 լիտր արծաթ՝ 1335 թ.—Սիսուան 559 ա

— 95. Գէորգ կրօնավոր, առաջնորդ Աղթամարի Ս. Խաչ վանքի, 1366 թ.—Ձեռ. Վենետ. Բ. 846։

— 96. Գէորգ որդի Հեթումի, 1370 թ. տես Զարմանուհի։

— 97. Գէորգ գրիչ. օրինակեց Մանրուսմունքը՝ Յակոբ և Կարապետ կրօնավորների համար, 1373 թ.—Ձեռ. Մանաս. 16 բ։

— 98. Գէորգէոս, ուսուցիչ Առիստակէս Սեբաստացու, որ Աւագ վանքում գրեց պակասորդը մի հին Աւետարանի, որ փըր-կանքով ազատել էր Առաքել Կախմխեցին, 1383 թ.—Ձեռ. Հալէ-պի, Ա. 79 բ։

— 99. Գէորգ քահանա, հայր Յովհաննէս հիշատակագրի 1389 թ.—Ձեռ. Վենետ. Ա. 652։

— 100. Գէորգ քահանա, ամուսին Տիրատիկինի՝ դստեր Առաքել երեցի, որ շինեց Երզնկայի Ս. Նշան եկեղեցին, ինչպես պատմում է իր թոռը Գէորգ երեց՝ 1391 թ. (տես հաջորդը).—Ձեռ. Սեբ.=ՀԱ 1926, 241։

— 101. Գէորգ երեց, որդի Առաքել քահանայի. գրիչ. Եր-զնկայում օրինակեց Ճաշոցը և նվիրեց Ս. Նշան եկեղեցուն, 1391 թ.— Ձեռ. Սեբ.=ՀԱ 1926, 241։

—102. Գէորգ վարդապետ Երզնկացի. կոչված նաև Բանասէր. աշակերտ Յովհ. Որոտնեցու, երեց ընկեր Գրիգոր Տաթևացու և ուսուցիչ Յակոբ Ղրիմեցու. մատենագիր. ունի Խրատ վասն պսակի, Խրատ մկրտութեան, Մեկնութիւն Գրիգոր Աստուածաբանի Առ որս գրոց, Հանելուկներ (որոնցից մի նմուշ տես Ձեռ. Մաղն. էջ 13), Յովհաննու աւետարանչի Յայտնութեան մեկնութիւն (Զարբ. Նոր մատ. 219), Մեկնութիւն Եսայեայ (ըստ Ձեռ. Դաղեան, Ա. 92 ա (բայց շփոթված է Գէորգ Սկևռացու համանուն աշխատու-թյան հետ)։ Գէորգին է պատկանում նաև Լուծմունք Եւագրի, որ գրել է 1354 թ. ըստ Ձեռ. Երուս. N Ղզ. 139 (տես Սարգիս-եան, Եւագր. ներած. էջ ճծ)։ Սրա խնդրով է գրել Տաթևացին Կիւրղի Պարապմանց Լուծմունքը, 1391 թ. (հմմտ. Ձեռ. Բեռլինի 24 ա)։ Գէորգ վարդապետը առաջարկել էր նաև 14 հարց, որոնց Լուծումը գրեց Տաթևացին 1387 թվին, Շահապօնք ամրոցում, Խորազմների արշավանքի ժամանակ։ Մեռել է 1416 թ. տես Նո-տարք 79—80։—Տաթև. հարց. 773. Ձեռ. Սևանի 40 բ.—Գէորգէոս՝ Տաթև. հարց. 773.—Գէորգէոս Փաղեռայ՝ Նոտարք 40.—կոչ. Գէորգիէ՝ Լծ. պրպմ. 774. Տաթև. հարց. 95.—սեռ. Գէորգայ՝ Մեծոփ. 17, Տաթև. ձմ. խը, ճլդ.—Գէորգեայ՝ Լծ. պրպմ. 529. Տաթև. հարց. 2, 93, 661, 686, 705, 773.—տես նաև Տաշեան,

Ցուց. 1071 գ, Մատեն. մանր ուս. Բ. 230, Հացունի, Ճաշեր 487, Նոտարք 41, 159. Կոստանեան՝ Նշշ. էջ խա, Ջեռ. Սանաս. 19 բ։ —Ալիշան, Ցուշիկք Բ. 470 նույն է համարում այն Գէորգ վրդ. Երզնկացին, որ ներկայացավ Լէնկթիմուրին՝ խնդրելու համար որ չքանդե եկեղեցիները. բայց երբ տեսավ նրան, վախից շրթունքները պատռվեցին և սկսեց արյուն հոսել։ Լէնկթիմուրը դուրս հանեց նրան (1394).—Մեծոփ. 45, Զամչ. Գ. 426։

— 103. **Գէորգ** Սեւեռնցի, գանձասաց. իր գանձերից տես Manus. brit. mus. 119 ա (ձեռագիրը գրված է 1412 թ. ուստի ԺԴ դարից ուշ չի կարող լինել)։

— 104. **Գէորգ**, հավատարիմ Մարտինոս թագավորի Սիկիլիոյ (ԺԵ դարի սկզբին). համարվում է նահապետ Armenia ազնըվական ընտանիքի Մեսինա քաղաքում. կինն է Եւանդրա. իր սերունդը տևեց մինչև ԺԸ դար և ավելի ուշ։ Այս տոհմից էր թերևս Ցովսէփ Armenus կամ Armeni, եպիսկոպոս Teramo քաղաքի (Իտալիա), 1670—95 թ.—Սիսական 455բ։

— 105. **Գէորգ** քահանա. խնդրեց առաքել Սիւնեցուց (մ. 1410) գրել «Գովասանութիւն Սաղմոսաց» տպղը.— Տաշեան, Ցուց. 464 բ։

— 106. **Գէորգ** քահանա, որդի Խաչիկի և եղբայր Թումա գրչի, որ Աղթամարում, Ցովհաննէս կրոնավորի պատվերով օրինակեց Ճաշոցը, 1421 թ.—Նոտարք 67։

— 107. **Գէորգ** աղա, «առաջնորդ» Ագուլիսի՝ 1425 թ.— Սիսական 326 բ։

— 108. **Գէորգ** սարկավագ, եղբայր տանուտեր Մկրտչի, Կողուց վանքում, 1428 թ.—Տաշեան, Ցուց. 583—4։

— 109. **Գէորգ** եպիսկոպոս Զմշկածագցի, առաջնորդ Խուլավանից Ս. Գէորգի. Լէնկթիմուրի երկյուղից փախած միաբաններին նորից հավաքեց և շենացրեց վանքը. գնեց երկու ագարակ. մեծ ագարակը՝ 100 փարա (=20 կոպեկ!) և փոքրը՝ 20 փարա (=4 կոպեկ!)։ Գրեց նաև մի Աւետարան և վանքի հին առաջնորդների պատմությունը՝ 1443 թ.—Թորոս աղբ. Բ. 349 (Նոտարք 131 վանքի այս նորոգությունը դնում է ՉԴ=1255 թվին, բայց հայտնի չէ թե որտեղից է հանում այդ թվականը, քանի որ ամբողջ հիշատակարանը արտագրում է Թորոս աղբարից, ուր չկա այդպիսի թվական։ Բայց ինչ աղբյուրից էլ որ լինի, ճիշտ չէ. որովհետև չի համարվում Լէնկթիմուրի թվականին)։

— 110. **Գէորգ** Էշէմհաճի, Անկիւրացի ազնվական, որ 1453

հոկտ. 28-ին Օսմանցոց հրավերով Պոլիս գաղթեց.—Նշխ. մատ. 63 (սխալ տպված)։

— 111. Գեորգ կրոնավոր, միաբան Մուղնու 1484 թ.—Ձեռ. Սանաս. 25 ա։

— 112. Գեորգ, ունիթոռական եղբայր, առաջնորդ Մատթէոս եպիսկոպոսի հետ գնաց Ջենովա, 1498 թ.—Հայապ. 28։

— 113. Գեորգ վարդապետ, աշակերտ Գրիգոր Տաթևացու. ունի Լուծմունք Դիոնեսիոսի Արիսպագացւոյ (ԺԵ դար).—Կնիք հաւ. յոջ. լդ։

— 114. Գեորգ գրիչ. օրինակել է Շիրակացու գործերը (ԺԵ դար).—Շիր. տիեզ. յոջ. XV։

— 115. Գեորգ Հալէպցի, թարգման Վենետկեցոց. 20 տարի ծառայելով Վենետկի հանրապետության, արժանացավ կենսաթոշակի. մեռել է 1536—7 թ.—Ալիշան, Հայ Վենետ. 216—7։

— 116. Գեորգ Մանլեեցի, աբեղա. ունի գրած 1745 թ. «Տաղ ի վերայ Ս. Գր. Տաթևացւոյ, ներ գեղջս Սալայ, որ է երկիր Հոնաց կոչեալ». տպված է Տաթև. ոսկիփ. էջ 579—582։—Սիսական 306 ա։

— 117. Գեորգ Ջուղայեցի, առաջնորդ Սպահանի. նստավ 1754 թվին. Նադըրշահի հրամանով քրիստոնեական գրքերը թարգմանեց պարսկերենի, աշխատակցությամբ ուրիշ վարդապետների. (անշուշտ նախ քան 1747, որ Նադըրշահի սպանման թվականն է)։ Ասպատակությունների պատճառով քաշվեց Բասրա, մինչև 1763 թ.—Ազգապ. 2957, 2999։

— 118. Գեորգ վարդապետ Ղափանցի, պատրիարք Պոլսի «1751—1752 թ», երբ հաջորդ Մինաս Ակնեցու, որ 1751 թվին կաթուղիկոս ընտրվելով՝ Պոլսի աթոռը թափուր պիտի թողր։ 1752 թվին Յակոբ Նալեանը Երուսաղէմի պատրիարքությունից վերադարձավ Պոլսի աթոռը, ուստի Գէորգը հրաժարվեց գահից. —Ազգապ. 2979։

— 119. Գեորգ Դպիր Տէր Յովհաննէսեան Պալատցի, 1737—1812. Պոլսի Պալատ թաղից. լեզվագետ, հայկաբան, աստուածաբան, պատմաբան, քերթող և թարգմանիչ. իր ինքնագիր գործերն են՝ Ոտանավոր բառարան պարսկերէն, Ընդարձակ բառարան պարսկերէն, Արաբերէն ընդարձակ բառարան, Քերականութիւն պարսկերէն, արաբերէն, հայերէն, Պատմութիւն վէզիրներուն Օսմանցւոց տէրութեան, Պատմութիւն Օսմանեան (տպ. 1741), Ընդարձակ պատմութիւն Օսմանեան, Հայոց պատմութիւն և Եր-

դարան։ Իր գլուխ գործոցն է Պարսկերէն բառարանը (տպ. Պոլիս 1826, Պեզճեան Ցարութիւն ամիրայի ծախսով, ձրի բաժանելու համար)։ Այս գրքի վերջում առաջին անգամ լինելով՝ տալիս է հեղինակը 400 հայերէն բառերի մեծ մասամբ ճիշտ համեմատութիւնը պարսկերէնի հետ։ Սրանով Գէորգ դպիրը դառնում է հայ լեզվաբանութեան ռահվիրան։ (Ընդարձակ կենսագրականը տես Այվազեան, Շար հայ կենսագր. Ա. էջ 11—73, համառոտը՝ Աճառեան, Պատմ. Հայոց նոր գրականութեան, էջ 105—109)։

— 120. Գէորգ Դ Մեծագործ Քէրէստէճեան, Պոլսի Սամաթիա թաղից. կաթուղիկոս Հայոց «1866—1882 թ». Նախապես առաջնորդ Բրուսայի, ապա պատրիարք Պոլսի, հաջորդեց Յակոբոսին «1858 թ». չընդունելով նորահաստատ Սահմանադրութիւնը, հրաժարվեց գահից «1858 թ»։ Իբրև կաթուղիկոս կատարեց նշանավոր գործեր. բարեկարգեց եկեղեցական ու կրթական գործը, նորոգեց Էջմիածնի տպարանը, հիմնեց Գէորգեան ճեմարանը (1869), ձեռագրատունը, Թանգարանը, Արարատ պաշտոնաթերթը (1868), կազմել տվեց Հայոց ձեռագիրների ցուցակը, կանոնավորեց ծխական դպրոցները, որոնց համար հաստատեց առանձին կանոնադրութիւն, եկեղեցական երաժշտութեան մեջ կանոնավորութիւն մտցնելու համար՝ հրավիրելով Պոլսից երաժշտագետ Նիկողայոս Թաշճեանին, նրա միջոցով ձայնագրել տվեց Պատարագի երգերն ու ամբողջ Շարականը և հրատարակեց հայկական նորահնար ձայնագրութեամբ, ևն։ Իր ընդարձակ կենսագրութիւնն ունի Աբեղեան, Գէորգ Դ Մեծագործ, տպ. Վղրշպատ. 1899 թ։

— 121. Գէորգ Ե Սուրէնեան, Տփղիսեցի. կաթուղիկոս Հայոց 1911—1930 թ. հաջորդեց Մատթէոս Բ Իզմիրլեանին։

— Գէորգ անունը հիշվում է նաև մի քանի օտարազգի ձևերով. այսպես՝ Կովարկիս (անթվական մի հիշատակարանում՝ ԺԷ դար) Ձեռ. Հալէպի, Ա. 206 ա, Կիօրկիս՝ 1755 թ. (Ձեռ. Վենետ. Ա. 196), Գէօրկի՝ 1862 թ. (անդ 391)։

ԳԻԳ, ար. ծագումն անհայտ և անստուգ անուն. ավանդված է մի անգամ Զ դարից։

— Գիգ դաշտկարան տէր, որդի Մանուէլի Բագրատունւոյ. Սմբատ Վրկան մարզպանի եղբայրն էր. մասնակցեց հայ-վրացական կրոնական բաժանման ժողովներին և Դուինի ժողովին՝ «607 թ».—Գիրք թղ. իդ, լթ.—Գեգ դաշտկարին՝ Ուխտ. Բ. լգ.

—սեռ. Գիգայ՝ Գիրք Թղ. իդ, լԹ, խ, խզ, խէ.—Գիգա դաշտակարանի՝ Ուխտ. Բ. լէ.—Գեգայ դաշտականի՝ Ուխտ. Բ. լը.—Դաշտկարցի՝ Ուխտ. Բ. ծզ.—բցռ. Դաշտկարցէ՝ Ուխտ. Բ. ծե։

ԳԻԳԱՆ, ար. ծագումն անհայտ և անսովոր անուն. մի անգամ ավանդված է Զ դարից։

— Գիգան եպիսկոպոս Սիւնեաց, հաջորդեց Պետրոսի (Զ դար).—Օրբ. իա, հա.—սեռ. Գիգանայ՝ Օրբ. իա։

*ԳԻԼԱՆ, ար.<պրս. گیلان Gīlān, Պարսից Գիլան նահանգն է, որ հին Վրկանաց աշխարհն է. գտնվում է Կասպից ծովի հարավային կողմը։ Իբրև անձնանուն գործածվում է նաև Պարսից մեջ՝ Gīl (ԺԲ դար), Gīlān և Gīlānšāh «Գիլանի Թագավոր» (ԺԱ դար) ձևերով (Justi 115բ)։ Մեր մեջ քիչ է գործածված, բայց սրանից ունինք Գիլանենց, Գիլանեան ազգանունները։

— Գիլան, որդի Ստեփաննոսի. հիշատակագիր Բագնայրի նշանավոր Աւետարանի՝ 1308 Թ.—Ձեռ. Կարին. 16։

— Գիլան գործածված է նաև իբրև իգական անուն, 1631 Թ. (Bodleian 139) և Գլան ձևով՝ ար. 1808 Թ. Ձեռ. Վասպ. 360։

*ԳԻԼԱՍ, ար.<արևել. Թրք. گیلاس gilas «կեռաս» բառից. գործածված է 1635 Թ. (Ջքր. սարկ. Բ. 9, Այրարատ 179). այժմ չկա։

ԳԻՆ, ար. սարքված է Գնունեաց նախարարական տոհմի անունից. մի անգամ ունինք՝

— Գին, Ասորեստանցոց Սենեքերիմ Թագավորի ցեղից. Վաղարշակ Ա նախարարական կարգի բարձրացրեց նրան և նշանակեց արքունի մատովակ։ Գնունեաց ցեղի նահապետն է.—Խոր. Բ. է (ստուգաբանում է Գնունի=գինի ունի. բայց այս նմանությունը պատահական զուգադիպություն է համարում. «Գիտեմ զԳնունիսդ գինի ունիս, որ առաջի Թագավորին պատրաստէր զըմպելիսն. որ սքանչելի իմն գիւտեալ եղև ըստ գործոյն և անուանն. քանզի պատրաստէր զըմպելիսն արքայի յընտիր և համեղ գինեաց, ունէր և կոչումն անուանն Գին. ընդ որ կարի զուարճացեալ, ասեն, Վաղարշակ, կարգէ ի Թիւ նախարարուԹեան ազգաց մեծապէս»)։

ԳԻՆԴ, ար. Թերևս<հյ. գինդ «ականջի օղ» բառից. բայց հմմտ. Գինք կամ Գնիք։

— Գինդ Տարոնացի. Սլկունի. աշակերտ Դանիէլ քորեպիսկոպոսի. սարկավագապետ Մեծն Ներսէսի («353—373 Թ»), որի կողմից նշանակվեց մենաստանների հայր և տեսուչ. վերջերը

ճգնում էր Ծաղկէոյ լեռներում.—Խոր. Գ. ի. Բուզ. Զ. ժզ.—սեռ. Գնդայ՝ Բուզ. Զ. ժզ։

†ԳԻՆԵՎԱՐԴ, իգ. < հյ. գինեվարդ բառից, որ անշուշտ նշանակել է մի տեսակ վարդ՝ գինու գույնով (բայց ոչ հին հայերենում և ոչ էլ արդի բարբառներում չկա այսպիսի բառ)։ Գործածված է ԺԵ—ԺԷ դարերում։ Այսպես՝ Գինէվարդ 1489 թ. (տես տակը), 1506 թ. (Ձեռ. Հալէպի, Ա. 80 ա), Գինէվարդ 1619 թ. (Ձեռ. Սեբ.=ՀԱ 1925, 475), Գինավարթ 1675 թ. (Ձեռ. Վասպ. 946), Գենայվարդ (անթվական, անդ 767)։ Սրա կրճատ ձևն է Գինէ, որ հիշված է երկու անգամ՝ անթվական հիշատակարաններում (Ձեռ. Վասպ. 120, 609) և մի անթվական արձանագրության մեջ, որ գտնվում է Աղթամարում (Ազգագր. հանդ. Ի. էջ 212, Ակինեան՝ Գաւազանագիրք 137)։ Տես և Գինոս։

— Գինէվարդ, եղբորդուստր Մատթէոս վարդապետի, որ Փիլիպպոս գրչին գրել տվեց մի Ճաշոց՝ 1489 թ.—Ձեռ. Սեբ.=ՀԱ 1926, 239։

†ԳԻՆԵՐԲՈՒԿ, իգ. < ժղ. գինէրբուկ բառից, որ է «հաճելի և անուշահոտ բուրմունքով և կապտակարմիր գույնով մի տեսակ վայրի ծաղիկ»։ Հիշված է անթվական մի հիշատակարանում, Ձեռ. Վասպ. 682 (Գներբուկ ձևով)։

*ԳԻՆՈՍ, ար. կրճատված ձևն է Եւգինէոս անվան, որ տես առանձին. հմմտ. Եւսեբիոս > կրճատ՝ Սեբէոս, Եւփիմէ > Ֆիմի, ինչպես նաև Եւստաթէոս > Ստաթէոս, Եւգրաբոս > Գրաբոս։ Ավանդված է ԺԵ դարից մինչև ԺԹ դար. այժմ չկա. բայց սրանից է Գինոսեան ազգանունը (Ախալքալաք)։

— Գինէոս, եղբայր Գալուստ աբեղայի, որ Կեչառուսում օրինակեց Աւետարանը 1491 թ.—Ձեռ. Սևանի 10 բ։

— Հիշված է նաև Գինոս 1588 թ. (Ձեռ. Վասպ. 707), Գինէոս (քահանա) 1635 թ. (Ձեռ. Վենետ. Ա. 1635), Գինէոս 1683 թ. (Ձեռ. Մաղն. 25), 1734 թ. (Ձեռ. Վասպ. 922), ԺԹ դար՝ Պարսկահայոց մեջ (ՀԱ 1924, 238)։ Ունինք նաև ավելի կրճատ Գինօ, որի սեռն ու թվականը անհայտ է (Ձեռ. Վասպ. 396)։

†ԳԻՆՈՎ, ար. < ժղ. գինով «հարբած» բառից, ինչպես կա իր համազորը՝ Սարխօշ, որ պրս. سرخوش sarxōš «հարբած» բառից է։ Հիշված է մի անգամ, 1600 թվից հետո գրված անթվական մի հիշատակարանում՝ Manus. brit. mus. 249ա (եթե սակայն վրիպակ չէ՝ փոխանակ Գինոս)։

†ԳԻՆՈՑ, իգ. տարբեր է Գինէոս անունից, որ արական է.

կարծում եմ որ կազմված է հյ. գին բառից, երբ «թանկագին, գնով». համմտ. իր համազորները՝ Թանկ, Բահալու, Բահալում։ Գործածված է ԺԳ դարում (Գինոց՝ մայր Վարդան քահանայի)՝ Տաշեան, Ցուց. 666 ա, և երկրորդ անգամ 1701 թ. (Ձեռ. Վասպ. 205)։

†ԳԻՇՈՒԿ, ար. < հյ. գէշ «վատ, տգեղ» բառից, որ նույնպես գործածական է իբր անձնանուն (տես վերը)։ Ավանդված է ԺԳ—ԺԵ դար։

— 1. Գիշուկ, որդի Գրիգորի, նվիրել է երկու արտ Բագնայրի Ս. Աստուածածին վանքին, 1206 թ.—Արձ. Շիրակ 120ա։

— 2. Գիշուկ (սեռ. Գիշկոյն), ունեցել է մի տուն, որ գնելով Սմբատ որդի Անազովլէն՝ նվիրել է Հոռոմոսի վանքին 1247 թ.—Արձ. Շիրակ 20 ա։

— 3. Գիշուկ, զավակ Թումայի, ազգական Կարապետ կրոնավորի, որ Սղկայու վանքում օրինակել տվեց Հին Կտակարանը, 1381 թ.—Ձեռ. Ազգուլ. (Արրտ. 1911, 850)։

— 4. Գիշուկ, մերձավոր Վարդան քահանայի, որ Երզնկայում գնեց մի Աւետարան, 1397 թ.—Ձեռ. Սեբ.=ՀԱ 1926, 46։

— 5. Գիշուկ խոջա, որ մի Աւետարան նվիրեց Ընծայնից Ս. Աստուածածնին, 1464 թ?—Նօտարք 220,

*ԳԻՈՐԳԻՍ, օտար ձևն է Գէորգ անվան, որ տես։

ԳԻՋԻԽԱՆ, իգ. անշուշտ օտար է, բայց ծագումն ինձ անհայտ։ Հիշված է 1621 թ. (տես Կարապետ եպս.՝ Դօփեանք 141)։

†ԳԻՍԱԿ, ար. < հյ. գիսակ «վարս» բառից. համմտ. Վարսենիկ և լտ. Cincinnatus, որ է «գանգրահեր» (Justi 116 ա)։ Հնից ծանոթ է միայն մի անգամ. մեր շրջանում նորոգվեց իբրև ազգային անուն։

— Գիսակ, որ Արտաշէս Բ-ի ստնտուի որդին էր. պատերազմում պաշտպանելով քաջ Տուրացիների հարձակումից, ազատեց նրան՝ զոհաբերելով իր կյանքը. իր որդի Ներսէսից սերվեց Դիմաքսեան նախարարական տոհմը.—Խոր. Բ. խզ.—սեռ. Գիսակայ՝ Խոր. Բ. խէ։

ԳԻՍԱՆԷ, ար. այս անունով էր կոչվում ըստ Զենոբի՝ հին Հայոց աստվածներից մեկը. այդ աստվածը իր անունը ստացել էր Գիսանէ հնդիկ իշխանից, որ այսպես էր կոչվում իր երկար մազերի պատճառով (Զեն. 36)։ Այսպեսով ուրեմն բառը ծագում է հյ. գէս «մազ» բառից։ Հնարովի է այս մեկնությունը, որովհետև անշուշտ հնդիկ իշխանը չէր կարող հայերեն անուն ունե-

ցած լինել. երկրորդ՝ եթե իրոք այդ աստվածը գոյություն ուներ, չէր կարող ինչ որ հնդիկ իշխանից կոչված լինել։ Իմ ուսուցիչ հնդկագետ Սիլվեն Լեվին ուզում էր այս բառը ուղղել Դիսանե, որի մեջ տեսնում էր հնդկաց մի աստուծու անունը (այժմ չեմ հիշում), քանի որ ըստ մեր ավանդության էլ Գիսանէն հնդկական ծագում ունի. (նույնը տես Խալաթեան, Զենոբ Գլակ 58)։

— 1. Գիսանէ աստուած, որի արձանը կանգնած էր Տարօնում, Գիսանէ հնդիկ իշխանի անունով. Լուսավորիչը կործանեց նրա մեհյանը և նույն տեղում հիմնեց Ս. Կարապետի վանքը.— Զեն. 27.—Գիսանէս՝ Զեն. 25, 32, 36, 42.—սեռ. Գիսանեայ՝ Զեն. 8, 15, 16, 25, 31, 36. Թղթ. դաշ. 21. Ուխտ. Ա. հդ.—Գիսանէի՝ Զեն. 27, 34.—Գիսանեան կուռ՝ Օրբ. դ.—Դիցն մեհենեացն Գիսանեայ՝ Ցայս. նոյ. 29.—սխալ ձևեր են՝ սեռ. Գիսանէ (իմա Գիսանէի) Զեն. 32.—եկեալ յերկիրն Պալունեաց յաւանն մեծ Գիսանէ ի քաղաքագեղն Կուառս՝ Զեն. 25 (ուղղել Գիսանէի)։—Գիսանեանք՝ Վրդն. լս. 54.—Սարգիսեան, Ագաթ. և իւր բազմ. գաղտ. 124։

— 2. Գիսանէ, իշխան հնդիկ, որ իր եղբոր՝ Դեմետրի հետ վռնդվելով Հնդկաց Դինասքէ թագավորից, եկավ Հայաստան և Վաղարշակ թագավորից ստացավ Տարոնը. իրենց թոռները նրանց անունով կանգնեցրին Դեմետր և Գիսանէ կուռքերը։—Զեն. 35.—սեռ. Գիսանեայ՝ Զեն. 36. Վրդ. ժը։

Գիւզիւդ տես Գուզիդէ։

*ԳԻՒԼԷՆ, իգ.<Թրք. كلن gülen «ծիծաղող, ժպտուն» բառից. գործածված է մի անգամ 1710 թ. (Ձեռ. Սեբ.=ՀԱ 1925, էջ 580։)

*ԳԻՒԼՀԱՆԸՄ, իգ.<Թրք. گل gül «վարդ»+خانم hanəm «տիկին» բառերից. գործածական էր անցյալ դարում Արևմտահայոց մեջ Կիւլհանըմ ձևով (տես Քոսեան, Հայք ի Զմիւռն. Ա. 286)։

*ԳԻՒԼՔԱԴԸՆ տես Գուլխաթուն։

†ԳԻՒՏ, ար.<հյ. գիւտ «գտնված բան» բառից. այժմ անգործածական է. բայց կա կրոնավորների շրջանում։ Տես Գդուբիկ և Գոտայ։

— 1. Գիւտ, որդի Շաբաթի, իշխան Գողթն գավառի. սրա օգնությամբ տարածեց Մեսրոպ լուսավորությունը նույն գավառում.—սեռ. Գտայ՝ Կոր. 14, Խոր. Գ. կ։

— 2. Գիւտ Վահևունի, նախարար. ժամանակցեց Արտաշատի ժողովին («449 թ»). մյուս նախարարների հետ կանչվելով Ցազ-

կերտի դուռը՝ առ երեսս ուրացավ և արձակվեց․ բռնեց Վասակի կողմը՝ ընդդեմ ուխտապահների.—Եղիշ. 33, 71. Փարպ. իգ, իե, լգ. Օրբ. ժզ։—Վարդանի բանակի հետ Աղուանք գնացող նախարարների մեջ Փարպ. լէ հիշվում է (ըստ տպագրին) «և Գիւտն Վահեւնեաց»։ Ձեռագիրն ունի «և գունդն Վահեւնեաց»։ Բառի վրա դրված հոդը, Վահեւնեաց սեռականը և վերջապես այն հանգամանքը՝ որ Գիւտ Վահեւնին ըստ Եղիշէի և Փարպեցու՝ Վասակի կողմնակից է, ստիպում է մեզ ընդունել թե ձեռագրի ընթերցվածը ուղիղ է և տպագրիչների Գիւտն ուղղագրությունը սխալ։ Արդեն Եղիշ. 77 նույնպես ունի «գունդն Վահեւնեաց»։ Անընական կլինի ասել, որ Գիւտ Վահեւնին Աղուանքում լսեց թե Գիւտ Վահեւնին Հայաստանում անցել է Վասակի կողմը, ինչպես քիչ հետո պատմում է Փարպ. լզ։ Այս մասին տես իմ հոդվածը՝ Արար. 1911, 226—7։—Ջամչ. Գ. (ցանկում) կարդում է Գիւտ կամ Գունդ (հատուկ անուն) և վեճի առարկա չի թողնում։

— 3. Գիւտ տես Վարոս. Ցայսմ. սեպ. 30. մրտ. 6. Ցիշ. թաթ. 51։

— 4. Գիւտ, կաթողիկոս Հայոց՝ «461—478». Տայոց Արահեզայ գյուղից էր, աշակերտ Ղևոնդեանց, ապա եպիսկոպոս Մամիկոնեանց։ Հաջորդեց Մովսէսի և աթոռը դրավ Դուին։ Տեսնելով պարսկական կրոնի տարածումը ուրացյալ նախարարների ձեռքով՝ որոշեց ապստամբել պարսից դեմ և սրա համար երկու անգամ պատգամավոր ուղարկեց Լևոն կայսեր (457—477)։ Գադիշոյ Խորխոռունու ամբաստանությամբ կանչվեց Պարսից դուռը «471 թ» և զրկվեց իշխանությունից։ Դարձավ Հայաստան «472 թ» և առանձնացավ Վանանդ գավառի Ոթմուս գյուղը, ուր և մեռավ խոր ծերության հասակում՝ «478 թ»։ Ինքն է հարդարել մեր ժամակարգությունը, գրել է Ցարեկից յարեմուտս աղոթքը. ունի թուղթ առ Դաւիթ Անյաղթ և մի թուղթ էլ առ Վաչէ արքայ Աղուանից.—Փարպ. կբ, կդ. Դաս. անյ. 99—101. Յհ. կթ. ժե, ժզ. Մխ. անեց. դ. Մխ. այրիվ. 20. Ասող. Բ. բ. Կղկնտ. Ա. ժա. Օրբ. ժը, հա. Արծր. Բ. ա. Կիր. 20. Վրդ. իէ, իը, լա. Միխ. աա. իթ (=իը). Օրբ. հկճռ. ժա. Օրբ. ողբ 35. Յղ. մովս. և դաւթի, էջ 81. Սամ. անեց. 71. Քհնպ. 270. Յհ. կթ. հյր. 274. Սիմ. ապար. 52, 53.—գրված է Կիւտ՝ Վրաց աղբ. Ա. 78.—Գուտ՝ Եզն. եր. 268.—սեռ. Գիւտայ՝ Փարպ. կա, կէ, կդ. Թուղթ՝ էջ 197. Դաս. անյ՝ 100—101. Կղկնտ. Ա. ժա. Վրդ. իը. Պտճռ. բրձր. 30, 31. Օրբ.

*ժը.—Գցայ՝ Կղկնտ. Ա. ժա. (ըստ հրտր. Շահն.)--Գիւտի՝ Ասող. Բ. բ.—Ջարբ. Հին դպր. 324—7. Ազգապ. 417—452. Ջամչ. Բ. 125—152։*

*— 5. Գիւտ եպիսկոպոս Վանանդի. ստորագրում է այն երկու թղթերին, որ Յովհաննէս Բ Գաբեղեան կաթուղիկոսը («557—574 թ») գրեց Սիւնեաց Վրթանէս եպիսկոպոսին և Աղուանից Աբաս կաթուղիկոսին՝ նեստորականների տարածման առթիվ (ըստ Ազգապ. 558 և 562 գրված են 564 թվից հետո, իսկ ըստ Այրարատ 76՝ 572 թվին).—բցռ. ի Գտայ՝ Գիրք թղ. ժը, ժթ. Կղկնտ. Բ. է. (ըստ հրտր. Շահն.)—ի Գիւտայ՝ Կղկնտ. Բ. է (ըստ հրտր. Էմ.). Օրբ. իբ (այլ ձ. ի Գիւտոյ)։*

*— 6. Գիւտ, վանահայր. Գողթան Շաբիթայ իշխանի թոռն էր. կոչվում էր նախապես Վասակ. Որդուստի ժառանգության համար կռվելով իր եղբոր հետ՝ ձերձ ի մահ վիրավորեց նրան, ապա զղջալով՝ դարձավ ճգնավոր՝ Գիւտ անունով. հիմնեց նշանավոր Գիւտայ վանքը՝ իբրև ուրուկների բնակավայր. օգնեց Երիցակին՝ շինելու համար Նոր-Երուսաղէմի վանքը. վերջապես նահատակվեց Պարսից ձեռքով (Զ դար).—Օրբ. ժթ, ի.—սեռ. Գիւտայ՝ Օրբ. ժթ, ի—Նոյնը ունի* Manus. bibl. nat. *էջ 103։*

*— Գիւտ, որ և Գիւտեն ձևով, հիշված է Վանեվանի անթվական մի արձանագրության մեջ, իբրև նվիրատու (Սիսական 61)։*

*†ԳԻՒՏԻԿ, ար. գգվական ձևն է Գիւտ անվան։ Ունինք մի անգամ՝*

*— Գիւտիկ կրոնավոր, նվիրատու Հոռոմոսի վանից, թվականն անհայտ.—Արձ. Շիրակ 25 ա։*

*ԳԼԱԿ, ար. ծագումն անհայտ. տես Ջենոբ Գլակ. հմմտ. և հաջորդը։*

*ԳՂԱԿ, ար. ծագումն անհայտ. Մագ. թղ. ժթ հիշելով Գղակի անունը՝ գրում է. «Սորա գեօղս բազումս կերտացեալ», որից երեվում է որ ըստ իր սովորության ստուգաբանելով բառը՝ հանում է գիւղ ձևից։ Հմմտ. նաև Գլակ, Դղակ և Կիւլակ, որովհետև նույն անունը գործածված է նաև այս ձևերով։*

*— 1. Գղակ, նահապետ Հայկազանց, հաջորդ Ընձակի, Ն.Ք. 1227—1197 թ. (ըստ Ջամչ.)—Խոր. Ա. ժթ. Յհ. կթ. բ. Մխ. անեց. գ. Մագ. թղ. ժթ.—Նույնը գրված նաև՝ Գլակ՝ Շիր. քրոն. 31. Մխ. այրիվ. 18, 50. Սամ. անեց. 45. Մին. համդ. 9.—Գռակ՝ Վրդ. է (այլ ձ. և հրտր. Էմինի՝ Գլակ).—Դղակ՝ Կղկնտ. Ա. ժե. (թե ըստ Շահն. և թե ըստ Էմինի)։*

— 2. Գղակ, զորավար Հայոց գնդի՝ Յուստինիանոս կայսեր ժամանակ. հաջորդեց Արտաւազդին. պատերազմեց Գոթերի դեմ Իտալիայում, ուր թշնամիների ձեռքն ընկնելով սպանվեց (551 թ).—Ջաձչ. Բ. 270 (Պրոկոպիոսի մոտ գրված է Γιλάκιος, որ Justi 115 բ մեկնում է «Գիլանցի»)։

†ԳՆԴԻԿ, իգ. < գնդիկ «թմբլիկ, կլորիկ» բառից. հիշված է 1709 թ. (միայն սեռ. Գնդկի ձևով)՝ Բարխուտարեանց, Աղուանից երկ. 173։

+ԳՆԷԼ, ար. < հյ. գնեալ «գնված» բառից. հմմտ. № 8. այժմ անգործածական. (Justi 116 բ մեկնում է «մատուռակ», հանելով գինի բառից։ Սխալ է, որովհետև այդ դեպքում պետք լիներ Գինէլ)։

— 1. Գնէլ Գնունի, Տիգրան Մեծի տակառապետը, որ Բարզափրան սպարապետի հրամանով գնաց առավ Երուսաղեմը.—Խոր. Բ. ժթ. Յհ. կթ. ե։

— 2. Գնէլ Գնունի, մոր կողմից պապ Գնէլ Արշակունու (Արշակ Բ-ի եղբորորդու).—սեռ. Գնէլոյ՝ Խոր. Գ. իգ։

— 3. Գնել եպիսկոպոս Մելետենւոյ. Ներսէս Մեծի շքախմբի անդամներից մեկը, երբ նա գնում էր Կեսարիա՝ կաթուղիկոս օծվելու «353 թ».—Մեսր. եր. 26։

— 4. Գնէլ Արշակունի, Արշակ Բ-ի եղբոր՝ Տրդատի որդին էր. պատանդ ուղարկվեց Բիւզանդիոն. Արշակ Բ-ի ժամանակ ազատվելով՝ դարձավ Հայաստան, հիւպատոսական պատվով «351 թ»։ Ամուսնացավ Անդոկ Սիւնու դստեր Փառանձեմի հետ։ Իր ռազմագիտական հմտության պատճառով՝ շատ նախարարներ իրենց որդիներին տալիս էին նրան՝ զինավարժության մեջ կրթելու համար։ Չարախոսությամբ Տիրիթի, որ սիրահարվելով Փառանձեմին, ուզում էր խլել նրա ձեռքից, խարդախությամբ սպանվեց Արշակի հրամանով «359 թ».—Բուզ. Դ. ե, ժա, ժէ, ժը. Խոր. Գ. իբ, իգ. Մեսր. եր. 43—48. Պատմ. Ներս. 17. Ասող. Բ. ա. Կիր. 12. Վրդ. իգ. Յայսմ. Նոյ. 19.—սեռ. Գնելայ՝ Բուզ. Դ. ժե. Մեսր. եր. 46, 49, 50. Օրբ. ը. Յայսմ. Նոյ. 19. Փարպ. ժե.—Գնէլայ՝ Մին. համդ. 24.— Խոր. Գ. իա—իե սովորաբար Գնելայ, մերթ այլ ձ. Գնելոյ,—Գնելոյ՝Բուզ. Դ. ժե, ի, խդ. Ե. ա. Խոր. Գ. իգ.Փարպ. ժե. Մեսր. եր. 43, 45, 46. Վրդ. հդ.—Գնելի՝ Շնորհ. վիպ. 793։

— 5. Գնել Նահապետ Գնունեաց, մին այն նախարարներից, որոնք Ներսեսի հետ դեսպան գնացին Վաղէս կայսեր մոտ «364 թ».—Մեսր. եր. 52։

— 6. Գնէլ, նահապետ Անձևացեաց և սպարապետ Պապի արևելյան բանակի. երբ սահմանապահ՝ Դղակ մարդպետի հետ էր և նրա ապստամբությունը հայտնեց Պապին։ Պապի ապստամբության և սպանության («374 թ») ժամանակ՝ դիմադրեց հունաց, բայց Տերենտիանոսի ձեռքով սպանվեց.—Բուզ. Ե. գ, լբ. Խոր. Գ. լթ.—տես. Գնելոյ՝ Բուզ. Ե. գ, լբ։

— 7. Գնէլ Գնունեաց տէր, ստորագրում է այն թղթին, որ Բաբգէն կաթուղիկոսը («490—516 թ») ուղարկեց Պարսկաստանի ուղղափառ աստրիներին.—Գիրք Թղ. ը։

— 8. Գնեալ, իշխան Գնունի, անդամ Դուինի Բ ժողովի «554 թ». թերևս պետք էր նույն դնել Նախորդի հետ, բայց այս երկուսի հետ հիշված նախարարներից ոչ մեկը նույն չէ մյուսի հետ.—Գիրք Թղ. ժէ։

— 9. Գնել, իր ծախսով նորոգեց Շիրակաւանի քանդված եկեղեցին՝ ԺԱ դարի վերջում.—Արձ. Շիրակ 10 (ցանկում կոչվում է Գնէլ Կամսարական. բայց ոչ մի հետք չկա Կամսարական համարելու)։

ԳՆԻԹ, տր. հմմտ. Գինթ։

— 1. Գնիթ Կամինական, իշխան Հաշտենից. ուղեկից եղավ Ցուսիկին՝ կեսարիա ձեռնադրության գնալու ժամանակ («341 թ»)։—Բուզ. Գ. ժբ։—Նույնը ապա Մեծն Ներսեսին՝ ըստ Մեսր. եր. 25։

— 2. Գնիթ, եպիսկոպոս Դերջանի, ուղեկից եղավ Ս. Մեսրոպին՝ Պոլիս գնալու ժամանակ, որտեղից վերադարձավ «418 թ».—Խոր. Գ. ծէ, կ.—Նույնը Գինթ ձևով՝ Կոր. 17։

ԳՆՏՈՒՆ, բգ. թե տր. թերևս «գնդլիկ» իմաստով։

— Գնտուն, մերձավորն էր Օշականի ռայիս Արտաշիրի, որ իր գանձագին այգին նվիրեց Բագնայրին, 1211 թ.—Շիրակ 120բ։

ԳՈԲՌՈՆ, տր. ծագումն անհայտ։

— Գոբռոն, որին Սարգիս առաջնորդ Սևանայ՝ պատգամավոր ուղարկեց Գրիգոր Մագիստրոսի մոտ՝ բանակցության համար։ Մագիստրոսը մի նամակ ունի այս առթիվ Սարգսին, ուր այսպես է կատակաբանում. «Զկարենալով այս անունը ճիշտ արտասանել, ինձ լուր բերին նախապես, թե Գոբռոնը գալիս է. ես էլ իմանալով այդ ավազակի գալուստը, վախեցած պատրաստություն տեսա Մամիկոնեանց երկիրը պաշտպանելու համար. և ահա պատահեցի Գոբռոնին և այն էլ հարբած վիճակում».—Մագ. Թղ. իբ։ (Այստեղ Գոբռոն ասելով Մագիստրոս անշուշտ հասկանում է Տրդատի ախոյանին)։

*ԳՈԳՈՒՆ, ար. < Թրք. كوكل gönül «սիրտ» բառի գավառական ձևից. (այս բառի ձևերն են չաղաթ. Թթր. göngül, ատրպ. göül, ժղ. Թրք. göyün, որ գրվում է gögün)։ Չափազանց անսովոր անուն է. մի անգամ գտնում եմ ԺԵ դարում, բայց տես Գոնգուլ։

— Գոգուն, մերձավոր Սարգսի, որ Խիզանի Գամաղիէլ վանքում, Ղազար գրչին գրել տվեց մի Աւետարան, 1468 թ.—Ձեռ. Վասպ. 452։

*ԳՈԶԱԼ, իգ. < Թրք. كوزل güzel, արևել. Թրք. gözäl «գեղեցիկ» բառից. հմմտ. հյ. Գեղեցիկ։ Գործածված է՝ սկսած ԺԵ դարից և մինչև այժմ էլ կարելի է գտնել հատին գյուղերում։ Գըրվում է ըստ Թրքական զանազան բարբառների՝ Գոզալ, Գօզալ, Գաւզալ, Գուզալ, Կաւզալ, Գիւզալ, Կօզէլ, Կիւզէլ։ Անսովոր ձև է Ղաւզալ (Ձեռ. Վասպ. 817, թվականն անհայտ, բայց 1605-ից ավելի ուշ)։ Կողք կողքի միասին հիշված են՝ Գուզալ և Գոզալ (Ձեռ. Վասպ. 264՝ 1785 թվից)։ Գործածված է նաև իբրև արական անուն. այսպես են՝ Գօզալ 1590 և 1594 թ. (Ձեռ. Վասպ. 715, 737)։ Սրանից է Գոզալեան (Կիւզէլեան) ազգանունը։ Արականի և իգականի տարբերությունը երևում է հատկապես Գոզալբէկ և Գոզալաղա ձևերի մեջ, որ տես։

— 1. Գօզալ, դուստր տէր Գրիգորի՝ եղբօրորդւոյ տանուտեր Դաւթի, որ Յովսէփ գրչին գրել տվեց մի Աւետարան, Թայու գյուղում, 1437 թ.—Ձեռ. Վասպ. 380։

— 2. Գօզալ խաթուն, դուստր Ամիրդօլ Արճիշեցու, հիշված 1455 թ.—Նոտարք 178։

— 3. Գուզալ, կին Խոնծի. գրել տվեց մի Աւետարան, Կուքի գյուղում, 1496 թ.—Թորոս աղբ. Բ. 423։

*ԳՈԶԱԼԱՂԱ, իգ. < Թրք. كوزل güzel + آغا ağa բառերից. հիշատակված է ԺԶ—ԺԷ դարերում. այսպես՝ Գաւզալաղա 1575 թ. (Ձեռ. Վասպ. 688), Գօզալաղա 1594 թ. (անդ 736), Գաւզալաղա 1615 թ. (անդ 850), Գօզալաղա 1621 թ. (անդ 863), առանց թվականի՝ անդ 159, 224, Ձեռ. Վեներ. Ա. 582 (գրված Գաւզեալաղէն), Bodleian 147, Թորոս աղբ. Բ. 273 (գրված Գաւզալաղա)։

*ԳՈԶԱԼԱՆԱ, իգ. < Թրք. كوزل güzel «գեղեցիկ» + آنا ana «մայրիկ» բառերից. հիշված է Կուզալանա ձևով, 1571 թ.—Ձեռ. Կես. ածած. 48 բ։

*ԳՈԶԱԼԲԷԳ, *ար. < Թրք.* گوزل güzel+بك beg *բառերից. հիշված եմ գտնում երկու անգամ՝*

— *1.* Գուզալբէկ, *հայր Գրիգոր երեց Գաւրեցու, որ ստացավ մի Աւետարան 1462 թ.—Ձեռ. Վասպ. 172։*

— *2.* Գոզալբէկ, *օգնական Դաւիթ Քանաքեռցու (ԺԷ դար).—Ջքր. սարկ. Ա. 47։*

— *3.* Գուզալբակ *ձևով հիշված է անթվական մի հիշատակարանում, Ձեռ. Ազուլ.=Արրտ. 1911, 218։*

*ԳՈԶԱԼՂՈՉ, *ար. < Թրք.* گوزل güzel *«գեղեցիկ»+*قوچ qoč *«խոյ» բառերից. մի անգամ ունինք՝*

— Գօզալղօչ, *որդի խոջա Խաչատուրի, որ Արճէշում, Յովհաննէս քահանային գրել տվեց մի Աւետարան, 1462 թ.—Ձեռ. Վասպ. 438։*

*ԳՈԶԼՈՒ, *ար. < Թրք.* گوزلو gözlü *«ականի, աչք ունեցող». մի անգամ հիշված է* Կօզլու *ձևով՝ 1574 թ. (Ձեռ. Կես. ածած. 59 բ)։*

*ԳՈԶՈՒՄԷՏ, *իգ. < Թրք.* گوز göz *«աչք»+պրս.* امید umīd *«հույս» բառերից. իբր թե «աչքը հույսի». Ունինք միայն՝*

— Գօզումէտ, *դուստր տանուտեր Մանկտաւագի, որ ստացավ մի Աւետարան, 1455 թ.—Ձեռ. Վենետ. Ա. 582։*

*ԳՈԶՋԱՆ, *ար. նախորդ Թրք.* گوز göz *բառից+*ǰān. *հիշված է մի անգամ* Գօզջան *ձևով 1718 թ. (Բարխուտարեանց, Աղուանից երկ. 171)։*

ԳՈԼՐՏ, *իգ. ծագումն անհայտ. ձևին էլ տարօրինակ. մի անգամ գտնում եմ հիշված Ձեռ. Թաւր. 4 բ (թվականն անհայտ)։*

*ԳՈԿՉԱԿ, *իգ. < ատր. Թրք.* گوكچك gökček *«գեղեցիկ» բառից (*Будагов, Сравн. слов. II 159 *ա)։ Հիշված է մի անգամ 1661 թ. (*Manus. brit. mus. *302 բ),* Գօգչակ *ձևով։*

*ԳՈԿՋԱ, *ար. < Թրք.* گوكجه gökǰe *«երկնագույն կապույտ» բառից. հիշված է ԺԶ—ԺԷ դարերում, զանազան ձևերով. այսպես՝* Կոկչայ *1576 թ. (Ձեռ. Նոր-Բայազ. 9 ա), 1587 թ. (Տաշեան, Ցուց. 277),* Կօկճա*՝ 1664 թ. (Ձեռ. Սեբ.=ՀԱ 1924, 517),* Կոկճայ*՝ 1331 թվից ուշ գրված անթվական մի հիշատակարանում (*Manus. brit. mus. *58 բ). նաև* Գուգչապէկ*՝ 1578 թ. (Ձեռ. Վասպ. 11, տես և Կարապետ եպս.՝ Դօփեանք, էջ 186)։*

— Կոկճայ, *հայ պատանի, որին Թուրքերն ամբաստանեցին թե հավատ է հայհոյել և պահանջեցին որ մահմեդական դառնա.*

երբ մերժեց, սկսեցին չարչարել. լեզուն կտրեցին և բերնին մի ձող զարնելով՝ գլխիվայր կախեցին. ապա քարկոծելով սպանեցին, Սեբաստիա «1536 թ»։ Յովասափ Սեբաստացին գրեց մի տաղ նրա նահատակության վրա, որ տես Նոր վկ. էջ 373—5։— Սամ. անեց. շար. 176 սխալմամբ գրում է խօջայ Օգջայն=Առաք. պատմ. 487, Զամչ. Գ. 516. Ազգապ. 2228։ Արձակ վկայաբանությունը Յայսմաւուրքում՝ տես Manus. brit. mus. 181 բ։

+ԳՈՀԱՐ, իգ. < հյ. գոհար «ակունք» բառից, որ թեև պարսկերեն է, բայց շատ վաղուց արդեն հայացած էր։ Գործածական է ԺԲ դարից մինչև այժմ: Այժմ բուն ձևն է Գոհարիկ, որի կրճատն է Գոհար. բայց հնապես բուն ձևն էր Գոհար։ Սրան համապատասխանում են պրս. گوهر Gauhar, Guhar, արաբ. جوهر ǰauhar նույն նշանակությամբ։ Օրինակ՝ Gauhar մայր Գուլի (Վիս ու Ռամին), ǰauhar սպարապետ Mo'izz-ի, որ հիմնադիրն եղավ Ֆաթիմեան հարստության՝ 969 թ. (Justi 112 ա)։ Գոհար հայկական ձևն է, բայց փոխառյալ ձևով ունինք նաև Գուհար (հնագույնը 1230 թվին. ավելի հաճախ ԺԶ—ԺԷ—ԺԸ դարերին (ինչ. Ձեռ. Վասպ. 632, 702, 885, 956, 988), Գաւհար 1418, 1473, 1478 թվերին, տես վարը, 1577 թ. Ձեռ Վասպ. 687), Գաւահար (1647 թ. անդ 269), Կահւար (Ձեռ. Նոր-Բայազ. 42 բ), Կովհար (Ձեռ. Թաւր. 39 բ), Կէօհէր (1796 թ. Էֆիմ. 448), և զանազան խառնակ գրչությամբ՝ Գոյար (1602 թ. Ձեռ. Վասպ. 807—8), Գուար (1579 թ. անդ 689), Գուայր (1638 թ. անդ 894), Գույար (1645 թ? անդ 606), Գայվայր (1635 թ. անդ 887—8), միասին գործածված (իբր տարբեր անուններ) Գոհար և Ջուհար (անթվական, Ձեռ Վասպ. 540)։ Իսկ Ջուհար, Ջաւահիր տես առանձին։ Տես նաև Գաֆար։

— 1. Գուհար, մորաքույր Գրիգոր գրչի, որ Թէոդուպոլիս (Կարին) քաղաքում օրինակեց մի Աւետարան, 1230 թ. Գուհարն էլ դրամական օժանդակություն ցույց տվեց.—Ձեռ. Վենետ. Ա. 573։

— 2. Գոհար սթի (արաբ. «տիկին»), կին Գրիգոր քահանայի, որի հիշատակին կանգնեցրեց մի խաչքար, Նախիջևան 1293 թ։—Յովսէփեան, Խաղբակեանք 54։

—3. Գոհար տիկին Խաղբակեցի, նվիրաբերեց Հաղոսի Ս. Լուսավորիչ վանքին, 1295 թ.—Ձեռ. Վենետ. Բ. 35։

— 4. Գոհար, դուստր Գանձիի և քույր Գրիգոր կրոնավորի, որ Երուսաղէմում, Աւագ երեցին գրել տվեց մի Աւետարան, 1358 թ.—Ձեռ. Հալէպի, Ա. 118 ա։

— 5. Գոհար, դուստր Շահինշահի. նոր էր մեռել 1378 թ.— Տաշեան, Ցուց. 692։

— 6. Գոհար, դուստր Առաքել Կամախցու, որ մի հին Աւետարան փրկանքով ազատեց 1383 թ.—Ձեռ. Հալէպի, Ա. 79 ա։

— Գոհար Նահատակուհի տես Թամար։

— 7. Գուհար խաթուն, կին Սէթի և մայր Հնազանդի, որ գնեց մի Աւետարան և նվիրեց Խայիք գյուղի (Երզնկա) եկեղեցուն, 1404 թ.—Թորոս աղբ. Ա. 66։

— 8. Գոհար, կին Թոմայի՝ հորեղբոր Յովհաննէս քահանայի, որ Մոկսի Կազթանց գյուղում օրինակեց մի Աւետարան՝ 1409 թվին և մի Աւետարան էլ Ջերմաձորի Ակոռի վանքում, 1417 թ.—Ձեռ. Վասպ. 294, 303։

— 9. Գուհար կամ Գաւհար, կին տանուտեր Ղազարի, որ Վանում գրել տվեց մի Աւետարան, 1418 թ.—Ձեռ.Վասպ. 308—9։

— 10. Գոհար, կին Թումայի՝ եղբորորդւոյ Թաթարբէկի, որ Նարեկում գրել տվեց մի Աւետարան, 1420 թ.—Ձեռ. Վասպ. 326։

— 11. Գոհար, կին Էլմելիքի և մայր Գրիգոր գրչի, որ Շամբի ձորի Մաղարդայ վանքում օրինակեց Աւետարանը՝ 1427 թ.—Ձեռ. Վենետ. 414։

— 12. Գուհար, դուստր Խուսէն բէկի (Հուսէն) և քույր Հայրապետ կրոնավորի, որ ստացավ մի Աւետարան, 1431 թ.— Նոտարք 97։

— 13. Գոհար, դուստր Ուֆիկի, քույր Ներսէս քահանայի, որ ստացավ մի Աւետարան, 1433 թ.—Ձեռ. Վասպ. 364։

— 14. Գոհար, կին Հուռումի և մայր Յովհաննէս քհ. Գանձակեցու, որ Տփղիսի Կրծանիս գյուղում օրինակեց Գանձարանը, 1436 թ.—Ձեռ. Դաղեան, Ա. 27 բ։

— 15. Գուհար, դուստր Պետրոսի, քույր Դովլաթ խաթունի՝ կնոջ տանուտեր Ատոմի, որ Ոստանում գրել տվեց մի Գանձարան, 1444 թ.—Ձեռ. Նոր-Բայազ. 40 ա։

— 16. Գոհար, դուստր Հազարբէկի, որ Խլաթում օրինակել տվեց Ցայսմաւուրքը, 1445 թ.—Թորոս աղբ. Բ. 306։

— 17. Գուհար, դուստր Գրիգորի. Ջաայլու բերդից քարավէժ եղավ ու մեռավ՝ 1451 թ.—Նոտարք 168։

— 18. Գոհար, կին Ստեփաննոսի և մայր Ատոմ քահանայի, որ Աղթամարում Գրիգոր քահանային գրել տվեց մի Աւետարան, 1454 թ.—Ձեռ. Բուլգ. (ՀԱ 1937, 580)։

— 19. Գոհար, կին Մարտիրոսի և մայր տանուտեր Մանկ-

տաւագի, որ ստացավ մի Ավետարան, 1455 թ. (Նույն անունով ունի և մի ուրիշ ազգականուհի).—Ձեռ. Վենետ. Ա. 581—2։

— 20. Գուհար, Ոստանում մի Ավետարան գրել տվեց Կարապետ քահանային, 1461 թ.—Նոտարք 205։

— 21. Գոհար, դուստր տանուտեր Առաքելի, որ գրել տվեց մի Ավետարան 1469 թ.—Ձեռ. Վասպ. 453, 455։

— 22. Գաւհար, եղբորկին ուէս Մարտիրոսի, որ Բերկրիում ստացավ մի Ավետարան, 1473 թ.—Ձեռ. Վասպ. 467։

— 23. Գոհար, եղբորդուստր Յովհաննէս Երզնկացու, որ օրինակեց Ավետարանը՝ Կեսարիայում, 1476 թ. Գոհարը նրա համար մագաղաթ էր կոկում.—Rapport Belgique 35։

— 24. Գոհար, կին Մխիթար քահանայի, որդւոյ Ազների, որ գրել տվեց մի Ավետարան, Աշտաձորի Անկինեաց վանքում, 1477 թ.—Ձեռ. Ագուլ. (Արրտ. 1911, 219)։

— 25. Գաւհար, դուստր մահտեսի Աստուածատուրի և քույր պարոն Ֆարաճի, որ Հալէպում գրել տվեց մի Ավետարան, 1478 թ.—Ձեռ. Հալէպի, Ա. 96 բ։

— 26. Գոհար, դուստր տանուտէր Ղազիի, որ ստացեց այն Ավետարանի գրության, որ գրել տվեց տանուտեր Մարտիրոսը, 1489 թ.—ՀԱ 1894, 52 բ։

— 27. Գոհար, դուստր Թումայի և քույր տանուտէր Պետրոսի, որ ստացավ մի Ավետարան՝ 1475 թ. (Ձեռ. Վասպ. 476) և մի Ավետարան էլ՝ գրված Զաքարիա գրչի ձեռքով, Վանում, 1495 թ.—Թորոս աղբ. Բ. 276։

— 28. Գոհար, կին Դանիէլի և մայր Յովհաննէս քահանայի, որ Ամ գյուղում օրինակեց Ավետարանը, 1497 թ.—Ձեռ. Նոր-Բայազ. 16 բ։

— 29. Գոհար, դուստր Գրիգորի՝ եղբոր Կիրակոս քահանայի, որ Ամ գյուղում օրինակել տվեց Ավետարանը, 1497 թ.—Ձեռ. Նոր-Բայազ. 16 բ։

— 30. Գօհար, կին Կարապետ քահանայի, հիշված 1499 թ. —Ձեռ. Վենետ. Ա. 577։

† ԳՈՀԱՐԻՆԷ, ար. վերի Գոհար անունից է, բայց զարմանալի է որ ստացել է հունական -ինէ վերջավորությունը, որ իգական է։ Այս պատճառով էլ ձեռագրերը գրում են հաճախ Գոհարինոս կամ նաև Գոհարմելիք։

— Գոհարինէ Սեբաստացի. Նոր վկա. սրա հայրը՝ Դաւիթ և անդրանիկ եղբայրը՝ Արև մահմեդական դարձան. ինքը և մյուս

երեք եղբայրները (Ռստոմ, Ծամիշէս, Տուկիոս) հավատքը չուրանալով՝ նահատակվեցին Սեբաստիայի սուլթան Ալեքսանդի ձեռքով «1155 թ».—Յայսմ. յուլ. 28.—Գոհարինեայ՝ Յայսմ. յունիս 22, ծշ. 609.—խումբը կոչվում է Գոհարինեանք՝ Յայսմ. յուլ. 28.—Նոր վկ. 9—22։—կոչված Գոհարմելիք՝ Ազգապ. 1396։

+ԳՈՀԱՐԽԱԹՈՒՆ, իգ. < հյ. Գոհար+խաթուն բառերից. գործածված է ԺԳ—ԺԷ դարերում։

— 1. Գոհարխաթուն, ազգական Մամուկ սթիի, որ նրա հոգուն կալվածներ է նվիրել Հոռոմոսի վանքին, 1266 թ.—Շիրակ 26 բ։

— 2. Գոհարխաթուն, դուստր Պռոշ իշխանի. մանկահասակ վախճանվեց նախ քան 1268 թ.—Յովսէփեան, Խաղբակեանք 104, 105, 137։

— 3. Գոհարխաթուն, մայր Ամիրայի (Թոռան Ջուրջիի), որ նրա հոգուն կալվածներ է նվիրել Վայոց ձորի Նորավանից եկեղեցուն, 1291 թ.— Սիսական 200։

— 4. Գուհարխաթուն, մորաքույր Կրակացի Ներսէս աբեղայի, որ Երուսաղէմում օրինակեց Ճաշընտիրը 1335 թ.—Ձեռ. Վենետ. Բ. 348։

— 5. Գոհարխաթուն, կին Գոթիթի և մայր Անդրէաս քահանայի (Այրարատի Կոշայ գյուղից), որ Սսում, Սարգիս գրչին մի Ավետարան գրել տվեց 1336 թ.—Ձեռ. Վասպ. 185։

— 6. Գոհարխաթուն, դուստր Իշխանի և հանգուցյալ քույր Մկրտիչ քհ. Բաբերդցու, որ Կաֆայում գրել տվեց մի Ավետարան, 1334 թ.—Ձեռ. Սեբ.=ՀԱ 1926, 237։

— 7. Գոհարխաթուն, սպասավոր, Թուղթ էր նշայում և կոկում Ստեփանոս քահանայի համար, երբ սա օրինակում էր Աստուածաշունչը Սուրխաթում, 1352 թ.—Ձեռ. Վասպ. 7։

— 8. Գոհարխաթուն, դուստր պարոն Տէրաւագի, ազգական Ալինախ Տարօնեցի եպիսկոպոսի, որին ընդունեցին և խնամեցին Երզնկայի Թլակ գյուղում պանդխտած ժամանակ, 1370 թ.—Ձեռ. Վենետ. Ա. 780։

— 9. Գուհարխաթուն, կին Վրթանէսի և մայր Մելքիսեթ գրչի, որ Աղթամարում օրինակեց Ավետարանը՝ 1573 թ.—Ձեռ. Վասպ. 30։

— 10. Գուհարխաթուն, կին Մելքիսեթի և մայր տեր Մարտիրոսի, որ Բասենի Սպիտակ վանքում, Մովսէս աբեղային գրել տվեց մի Ավետարան, 1455 թ.—Նստարբ 180։

—11. Գաւհարխաթուն, դուստր Վրթանէսի և քոյր Պետրոս սարկաւագի, որ Սեբաստիայում օրինակեց Աւետարանը, 1651 թ. —Ձեռ. Սեբ.=ՀԱ 1925, 575։

+ ԳՈՀԱՐԻԿ տես Գոհար։ Հիշված է Գոհարիկ ոմն, ԺԴ դար (Տաշեան, Ցուց. 666 ա)։ Կա նաև անթվական մի Արձ. Շիրակ 120 բ։

+ ԳՈՀԱՐՄԵԼԷՔ, իգ. < հյ. գոհար+արաբ. melek բառերից։ Գործածված է ԺԴ—ԺԵ դարում. հաճախ գրված Գոհարմելիք։

— 1. Գոհարմելիք, կին Սարգիս քահանայի և մայր Երևանցի Տէրտէր քահանայի, որ Ազախ քաղաքում գրեց մի Ճառընտիր, 1341 թ.—Շահազիզ, Հին Երևանը, էջ 72։

— 2. Դոհարմելիք, կին պարոն Մարգարի և մայր Թուրվանդայի, որ ստացավ մի Աւետարան և նվիրեց Անդրէաս քահանային, 1406 թ.—Քոսեան, Հայք ի Զմիւռնիա, Ա. 22։

— 3. Գոհարմելիք, մերձավոր էր տանուտեր բրուտ Ստեփաննոսի, որ Վանում ստացավ մի Աւետարան՝ 1435 թ.—Ձեռ. Վասպ. 370։

— 4. Գուհար մելիք, կին Յովհաննէսի, մայր Ստեփաննոսի, որ Տրապիզոնում, Յակոբ կրոնավորին գրել տվեց մի Յայսմաւուրք, 1437 թ.—Труды вост. комм. ИМАО, հտ. II, 3, էջ 55։

— 5. Գոհարմելիք, կին Ծերունի և մայր Սուլթանմելէքի, որ Ոստանում գրել տվեց մի Աւետարան, 1452 թ.—Ձեռ. Վասպ. էջ 413։

— 6. Գոհարմելէք, մորաքույր մահտեսի Ստեփաննոսի, որ ստացավ Յայսմաւուրքը 1457 թ.—Ձեռ. Թաւր. 103 բ։

— 7. Գաւհարմելէք, զոքանչ Յովհաննէսի՝ եղբոր Թումայի, որ Աղթամարում գրել տվեց մի Աւետարան, 1460 թ.—Ձեռ. Վասպ. 433։

— 8. Գուհարմելիք, մայր Գուլիզարի՝ կնոջ խոջա Յովսէփի (իշխանի Տարօնոյ), որ Մշում գրել տվեց մի Աւետարան, 1479 թ.—Ձեռ. Սեբ.=ՀԱ 1925, 263։

— Անհայտ թվականով են Գոհարմէլիք՝ Ձեռ. Վասպ. 316 և Գուհարմէլիք՝ անդ 766։

*ԳՈՀԱՐՄԵԼԻՔ, ար. < հյ. գոհար+արաբ. melik բառերից. տես Գոհարինէ.

+ԳՈՀԱՐՆԱԶ, իգ. < հյ. գոհար+նազ բառերից. մի անգամ անթվական մի հիշատակարանում Ձեռ. Թաւր. 73 բ։

+ԳՈՀԱՐՇԱՀ, իգ. < հյ. գոհար+պրս. شاه šāh իբր «գոհար-

ների թագավոր, թագավորական գոհար»։ Մի անգամ հիշված է ԺԶ դարում Գուհարշայ ձևով՝ Ձեռ. Դաշեան, Ա. 12բ։

+ ԳՈՀԱՐՇԱՏ, իգ. < հյ գոհար+շատ բառերից. հիշված է մի անգամ ԺԶ դարում։

— Գոհարշատ, Թոռ Արիստակէսի, որ գնեց մի Ավետարան, 1511 թ.—Ձեռ. Վասպ. 645.

*ԳՈՀԱՐՍՈՒԼԹԱՆ, իգ. < պրս. گوهر guhar+արաբ. سلطان sultān բառերից, երբ «գոհարների սուլթանուհին»։ Մի անգամ հիշված է անթվական (բայց 1509 թվից ուշ գրված) մի հիշատակարանում Գաւարսաւլթան ձևով (Ձեռ. Վասպ. 641—2)։

+ ԳՈՀԱՐՎԱՐԴ (սեռն անհայտ). < հյ. գոհար+վարդ բառերից, երբև վարդի մի տեսակը (գոհարավարդ). համտ. Նար. տաղ. 482. մի անգամ հիշված է 1595 թ.—Ձեռ. Վեննա. Ա. 694։

*ԳՈՀԱՐՏԱՇ, մբ. < պրս. گوهر guhar+թրք. تاش taš «քար» բառերից. համտ. Ալթունտաշ «ոսկեքար» անունը։ Մի անգամ ունինք՝

— Գոհարդաշ, զավակ Զաքարիայի, ազգական Կարապետ կրոնավորի, որ Սղկայու վանքում օրինակել տվեց Հին Կտակարանը, 1381 թ.—Ձեռ. Ագուլ. (Արրտ. 1911, 850)։

+ ԳՈՀԱՐՏԻԿԻՆ, իգ. < հյ. գոհար+տիկին բառերից. հիշված է ԺԴ—ԺԵ դարերում։

— 1. Գոհարտիկին (սեռ. Գոհարտիկնայ), կին Աստուածատուր երեցի, որ Երզնկայի Թլակ գյուղում մի Ավետարան գրեց, 1370 թ.—Ձեռ. Վեննա. Ա. 780։

— 2. Գոհար տիկին, դուստր Ներսէս քահանայի, քույր Ավետիսի և հորաքույր Վարդան գրակալի, որ Արճէշում, Յովհաննէս քահանային գրել տվեց մի Ավետարան, 1450 թ.—Ձեռ. Թաւր. 66 բ։

— Գոհարտիկին (սեռ. Գոհարտիկնայ), հիշված է անթվական մի հիշատակարանում՝ Ձեռ. Վեննա. Ա. 424։

+ ԳՈՀՈՒԹԻՒՆ, իգ. Նորակերտ, քիչ գործածված անուն։

ԳՈՂԱԶԳԱԿ, ար. ծագումն անհայտ. աղվանական անուն է։

— Գողազգակ, որդի Վաչագանի. Թագավոր Աղվանից (Կաղանի). իր հաջորդն է որդին Փիլիպպոս, որ Աշոտ Գ. Ողորմածին օծեց Հայոց Թագավոր «954 թ».—սեռ. Գողազգակայ՝ Ուռհ. 4 (այլ ձ. Գոշազգակայ).—գրված է ուղ. Գոշակցակ, սեռ. Գոշակցակին՝ Ուռհ. 231.—հարազատ ձևը անստույգ է։

ԳՈՑՆԵՐ, ար. < հյ. գոյն-եր բառից։

— Գոյներ սիր, ասպետ. հիշված է 1271 թվին Կիլիկիայում. թերևս ազգական կամ հարազատ Ստեփաննոսի Գոյներիցանց.—Սիսուան 97։

*ԳՈՆԳՈՒԼ, իգ. < թթր. كونكل göngül «սիրտ» բառից (տե՛ս Будагов, Сравн. слов. II 166)։ Հիշված է մի անգամ 1490 թվից հետո գրված անթվական մի հիշատակության մեջ՝ Ջեռ. Սևանի 5՝ Գաւնգուլ ձևով։ Սրանից են Գոնգուլխաթուն և Գոնգուլփաշա։

*ԳՈՆԳՈՒԼԼԷ, իգ. < թթր. كونكلى göngülli «սրտով, կամավոր» բառից։ Մի անգամ հիշված է ԺԵ դարում։

— Գոնգուլլէ (կոչված նաև Գաւնգուլ-խաթուն և Գաւնգուլ-փաշա), դուստր Սարգսի և կին Վարդանի. իր որդի Էգլշահի հետ միասին ստացան մի Աւետարան, որ գրել տվին Խաչատուր աբեղային, Կտուց անապատում, 1475 թ.—Ջեռ. Վասպ. 472—3։

*ԳՈՆԳՈՒԼԽԱԹՈՒՆ
*ԳՈՆԳՈՒԼՓԱՇԱ } իգ. տե՛ս Գոնգուլ, Գոնգուլլէ։

ԳՈՆՑԱ, իգ. < վրաց. Գվանցա անունից. հմմտ. Գոնցա՝ կին Դաւիթ թագավորի Վրաց, որդւոյ Լաշայի՝ Կիր. կա։ (Justi 120 հայ և վրացի ձևերը դնում է պրս. ǵunča «կոկոն» բառից. բայց č > ց անտեղի է)։ Ինձ թվում է թե գոնցայ միջին հայերեն ժողովրդական բառ է և նշանակում է ապարանջանի թանկագին մասերից մեկը. հմմտ. 1318 թվի մի արձանագրության հետևյալ տողը. «Ես Մամաք և իմ որդի Վաղթանկ դիմ ոսկի ապրանջանի գոնցէն տուաք ի սուրբ ուխտս» (Սիսական 114)։

— 1. Գոնցա, կին Աւագ-Սարգիս աթաբէգի, որդւոյ Իւանէ աթաբէգի։ Ամբատ Օրբելեանը սպանեց Աւագ-Սարգիսին և տիրեց նրա կալվածներին (1260 թ)։ Աւագը արու զավակ չունէր, այլ միայն մի աղջիկ՝ Խոշաք անունով։ Ուստի իր կինը Գոնցա՝ իր վրա վերցրեց երկրի իշխանությունը.—Կիր. խե.—հոլով Գոնցայն՝ Օրբ. կե. Օրբ. ժմ. 26.—Manus. brit. mus. 295 ա և Ջամչ. Գ. 259.—կոչված է Վարդոյշ Գոնցա՝ Ջամչ. Գ. 225.—ըստ Վրաց աղբ. Բ. 58, 59 կոչվում է Գվանցա, որ Ռաճի իշխաններից Կախաբերների դուստրն էր, շատ գեղեցիկ. Վրաց Դաւիթ թագավորը սիրահարվեց նրան և իրեն թագուհի դարձրեց։ Սրանից ունեցավ մի որդի Դեմետր, որին մորը հետ թողեց Բջնիում։ Գոնցայի դուստրը՝ Խոշաք, իր ամուսին Խոջա Շամշադինի դրդումով սպանեց Գոնցային։

— 2. Գոնցա, դուստր Խոսրովիկի Տարսայիճեանց, թոռն

Հասանի, կին Վահրամ իշխանի՝ որդւոյ Վասակ Շահուռնեցու, մայր Հասանի, Ամադինի, Ուքանի և Թուխտինի. հիշված է Հերհերի և Նորավանից արձանագրություն մեջ 1283—1297 թվերին.—Սիսական 113—6, 192։

— 3. Գոնցա Օրբելեան, պարոն(ուհի), կին Ջալալ իշխանի Օրբելեան, որդւոյ Տարսայիճի. շինեց Սպիտակաւոր Աստուածածին եկեղեցին 1301 թ. մայրն է Տարսայիճ-Սմբատինոսի, որ Պօղոս վրդ. Կիլիկեցուն գրել տվեց մի Աւետարան, 1314 թ.—Ձեռ. Դադեան, Բ. 30 ա, Ցովսէփեան՝ Խաղբակեանք 221—2։

— 4. Գոնծա (սեռ. Գոնձին), կին Տէրտէրի և մայր Աբրահամ վարդապետի, որ Եղեգիսի Վերին Նորավանքում, Գրիգոր աբեղային գրել տվեց մի Աւետարան, 1495 թ.—Ձեռ. Վասպ. 522, Ցովսէփեան, Խաղբակեանք 238։

*ԳՈՋԻԱ, ար. < վրաց. գոճի «խոզի ձագ» բառից, ինչպես կա Խոճկորիկ անունը՝ ծագած խոճկոր «խոզի ձագ» բառից։

— Գօջիա, հիշված է 1661 թ.—Ձեռ. Ագուլ. (Արրտ. 1911, էջ 119)։

+ ԳՈՌ, ար. < հյ. գոռ «հպարտ» բառից։

—1. Գոռ (ավանդված է հուն. Γοῦρας տառադարձությամբ), եղբայր Մեծն Տիգրանի, որ նրան էր հանձնել Մծբին քաղաքի պաշտպանությունը։ Հաղթվեց Լուկուլլոսից և անձնատուր եղավ նրան (Ն.Ք. 68).—Գրգշ. Քնն. Պատմ. Բ. 143, 150 (գրում է ըստ հունականին Գուրաս), Լէօ Ա. 414 (գրում է Գուրս և համարում է Խուրս).—Ջամչ. Ա. 220 գրում է Գոռ, որից և Մանանդ. Տիգրան Բ 159։

— 2. Գոռ Մարզպետունի, որդի Գէորգ Մարզպետունու, սպարապետ Աշոտ Գ Ողորմածի («954—977»).—Ջամչ. Բ. 837, Ազգապ. 1108։

+ ԳՈՌԱԿ, ար. < հյ. գոռ «հպարտ» բառից. անշուշտ կազմված է Խորենացու ձեռքով, իբրև փաղաքշականը նախորդ Գոռ անվան. հմմտ. Մագ. Թղ. ժԹ, որ նույն ձևով ստուգաբանելով՝ ասում է. «Սա խիզախօղ ի մարտի և մեծաձայն գոռս ունէր»։

— Գոռակ, նահապետ Հայկազանց. հաջորդեց Վստասկարի. ըստ Ջամչ. գահակալել է Ն.Ք. 1285—1267 թ. իսկ հաջորդեց Հրանդ.—Խոր. Ա. ժԹ. Ցհ. կԹ. բ. Կղկնտ. Ա. ժե. Մագ. Թղ. ժԹ. Մին. համդ. 9.—գրված է Գուակ՝ Մխ. անեց. գ. Մխ. այրիվ. 18, 50. Սամ. անեց. 45. այսպես նաև Ցհ. կԹ. բ (ըստ 5 ձեռագրի). իսկ Վրդ. է գրում է «Վստամ, Կորգուակ»։

*ԳՈՌԱՄ, ար. ծագումը տես Գորամ։

— Գոռամ, իշխան Տայոց. իր զորքով օգնական գնաց Սմբատ Ա-ին՝ պատերազմելու համար Ափխազաց Դոտաս թագավորի դեմ, շուրջ 908 թ.—Սուտ-Շապհ. 81։

ԳՈՏԵՐ, ար. ծագումն անհայտ. Justi 118 բ միացնում է հաջորդի հետ։

— Գոտեր Արծրունի, եղբայր Վասակի և հորեղբայր Աղան Արծրունու. Վասակի հետ գնաց կայսեր Դուռը ծառայության (Ե դար).—Արծր. Բ. ը։

*ԳՈՏՈՐԶ, ար. < պրս. گودرز Gōdarz անունից, որ տառադարձված է հուն. Γωτέρζης, լտ. Gotarzes. Այս անունով հայտնի են Պարսից մեջ՝ Արշակ Ի Գոտարզ թագավոր Պարթևաց 40—51 թ., Gouderz իշխան՝ Պարսից Քեյքաւուս թագավորի (Շահն. հտ. 1, էջ 387).—Հիւբշ. 35։

— Գոտորզ Արծրունի, եղբայր Տաճատ Արծրունու, որ Յազկերտի բանտարկած նախարարներից էր. հորեղբայր Աղան Արծրունու (Ե դար).—սեռ. Գոտորզի՝ Փարպ. դ։

*ԳՈՐ, ար. < պրս. گور gōr «ցիռ» բառից. հմմտ. նշանավոր Բահրամ Գորը։

— Գոր, զորավար պարսիկ, ընկեր Բաբիկ Սիւնու. քրիստոնյա դառնալով հայացավ և տեր եղավ Խոտայ ավանին (Ե դար).—Կղկնտ. Բ. ա.—սեռ. Գորայ՝ Կղկնտ. Բ. ա. Օրբ. Ժ։

*ԳՈՐԱՄ, ար. վրացական Գորամ (Մխ. այբիվ. 22), Գուրամ, Գուարամ ձևից, որ արական անուն է և ըստ Justi 121 ա պրս. Bahram > հյ. Վռամ անվան վրացական ձևն է։ Տես և Գոռամ։ Պրս. կա դարձյալ Garāmi Պարսից քաջերից մեկը (Շահն. հտ. 4, էջ 322)։

— Գորամ, որդի Աշոտ կիւրապաղատի Վրաց. եղբայր Ատրներսեհի և Բագարատի. Աշոտ Ա թագավորի հորաքրոջ ամուսինն է, որի օգնությամբ Աշոտը բռնեց Վրաց իշխան Գապլոցին և ուղարկեց Հունաց երկիրը։ Սպանեց իր եղբորորդի Դաւիթին (Թ դար)։—Վրդ. խդ.—բցռ. ի Գորամայ՝ Վրդ. խդ.—Ալիշան, Յուշիկք Ա. 482, Մարքվարթ, Բագր. 108, 110, 116, 117, 140։

*ԳՈՐԳ, ար. < Գէորգ ձևից, հարակից զույգ ձայնավորներից մեկի հապավումով։ Կա նաև սրա փաղաքշականը Գորգիկ (Manus. brit. mus. 280 բ)։

— 1. Գորգ Շատախոս, իշխան Արջուց կողմանց. իր անունով գավառը կոչվեց Շատախ։ Գողանալ տվեց Խաչի մասունքը Գլա-

*կայ վանքից և բերելով իր գավառը, հաստատեց Ծիծառն ավանում, «659 թ».—Մաշկ. 54։*

*— 2. Գորգ Հարմացի. մասնակցեց Մուսէի դեմ պատերազմին «851 թ».—Արծր. Բ. գ։*

*— 3. Գորգ Ջափրան տես Ջափրան։*

*— 4. Գորգ սպառ. օգնական էր Վասակ սպարապետին՝ Թուրքաց դեմ պատերազմում, 1020 թ.—Ուռհ. 12։*

*— 5. Գորգ Շիրակացի կամ Անեցի, «այր փառաւոր». Անտիոքից անցած ժամանակ, հույները բռնեցին նրան, ունեցածը կողոպտեցին, մորուսը կտրեցին և խայտառակելով վռնդեցին։ Գորգը գնաց, 500 Թուրք վարձեց, Անտիոքի դուքսի 12 գյուղերը ավերեց և գերիներին Անտիոքի առաջ բերելով՝ մորթեց (1064 թ).—Ուռհ. 226։*

*— 6. Գորգ (կամ Կորկաս), քաջ իշխան, գործակից և օգնական Թորոս Բ Ռուբինեան իշխանի՝ Հույնաց Մանուէլ կայսեր արշավանքի ժամանակ (1158 թ).—Ալիշան, Շնորհ. 300։*

*— 7. Գորգ, մերձավոր Առաքել գրչի, որ օրինակեց Ավետարանը, Կամախ գավառի Սիմա գյուղի Եղիվանք անապատում, 1203 թ.—Ձեռ. Վենետ. Ա. 420։*

*— 8. Գորգ, որդի Մլեհի և հորեղբորորդի Լևոն Բ-ի, որ կուրացրեց նրան՝ Անտիոքի ժառանգությունը Ռուբէնին պահելու համար («1209 թ»).—Ազգապ. 1582, Միսուան 509, 510։*

*— 9. Գորգ, եղբայր Յովսէփի, որ Յովհ. Մանդակունու Ճառերը տվեց Սիոն գրչին՝ օրինակելու համար, 1210 թ.—Դուրեան, Ուսումն. 231։*

*— 10. Գորգ քահանա, մերձավոր Խաչատուր գրչի, որ օրինակեց մի Ավետարան, 1252 թ.—Ձեռ. Սեբ.=ՀԱ 1925, 379։*

*— 11. Գորգ, հայր Կալի և Հաննէս եղբայրների, որոնք օգնեցին Առաքելին, որ Թռնովայից (Բուլղարիա) գալով, քահանա ձեռնադրվեց՝ 1258 թ.—Ձեռ. Սեբ.=ՀԱ 1925, 581։*

*— 12. Գորգ քահանայ, որդի Վահրամի, եղբայր Կոստանդին Ա կաթողիկոսի, հայր Թորոս քահանայի, որ Հռոմկլայում ստացավ մի նոր Ավետարան, 1262 թ.—Նաթանեան, Տեղեկ. Սեբաստ. 83, Թորոս աղբ. Ա. 187, Ազգապ. 5527, Ձեռ. Հալէպի, Բ. 140 ա. Ձեռ. Սեբ. (ՀԱ 1924, 333)։*

*— 13. Գորգ, հայր և առաջնորդ Երիզայի Ս Աստուածածին վանքի, 1272 թ.—Ձեռ. Սեբ. (ՀԱ 1924, 514)։*

— 14. Գորգ, Յովհաննէս քահանային կազմել տվեց մի հին Աւետարան, որ իր պապ Գրիգորը փրկանքով ազատել էր հափշտակիչների ձեռքից, և նվիրեց Նախավկայի վանքին, 1284 թ. —Ջեռ. Վասպ. 80։

— 15. Գորգ, տնտէս Խորնի վանուց, 1295 թ.—Տաշեան Ցուց. 817—8, Սիսուան 151 էն։

— 16. Գորգ միայնակեաց. նստում էր Արմենի լեռը՝ Յովանիսի անապատում. օրինակեց Յովհան Օձնեցու գործերը, 1298 թ.—Սիսուան 96։

— 17. Գորգ, աբեղա Յովհաննավանից. գրիչ. օրինակեց Վահրամ վարդապետի ճառերը՝ 1285 թ. և Օձնեցու գործերը, 1298 թ.—տես Ցհ.խմաստ. 80 և Տաշեան, Ցուց. 331, 730։

— 18. Գորգ Կարենացի, նշանավոր վարդապետ Վասպուրականում (ԺԳ դար).—Կիր. ե։

— 19. Գորգ վարդապետ, հաստատվեց Լամբրոնի մոտ Արմէն անապատը և հասցրեց շատ աշակերտներ. քարոզում էր նավակատիքին միս ուտել (ԺԳ դար).—Հայապ. 952։

— 20. Գորգ, ստացողներից մեկն է այն Աւետարանի, որ օրինակեց Զաքարիա գրիչը՝ 1304 թ.—Ջեռ. Վասպ. 143։

— 21. Գորգ պարոն, Քռնայ գյուղի ավագը, մորեղբայր Յովհ. Քռնեցու, որի հորդորով շինեց Քռնայ Ս. Աստուածածնի վանքը և նվիրեց Ունիթոռներին, իբրև աշխատանքի վայր և կաթոլիկական քարոզչութեան կենտրոն («1330 թ»).—Տաշեան, Ցուց. 720 բ, Ջեռ. Բեռլինի 57 բ, REA 10, 43, Ազգապ. 1845։ —Գրված է Գօկի պարոն՝ Ձեռ. Թաւր. 96 ա։

— 22. Գորգ մագման, ազգական Ներսէս քահանայի, որ Երուսաղէմի Հրեշտակապետաց վանքում օրինակեց Ճառընտիրը՝ 1335 թ.—Ջեռ. Վենետ. Բ. 348։

— 23. Գորգ, մեծ հայր Շահնշահի, որ Գողթան գավառի Կոպատոսի անապատում, Թումայ Արճիշեցուն գրել տվեց Աւետարանը՝ 1336 թ.—Ջեռ. Ագուլ. (Արրտ. 1911, 487)։

— 24. Գորգ, թոռն նույն Շահնշահի. նախորդի թոռան թոռն է.—անդ։

— 25. Գորգ, որդի տէր Յուսամի. օգնական գրչության Աւետարանի, որ օրինակեց Սիմէոն երեցը՝ Սուրխաթ 1343 թ. --Ջեռ. Վենետ. Ա. 755։

— 26. Գորգ, հայրն է գրիչ Հայրապետ աբեղայի (ԺԴ դար). —Տաշեան, Ցուց. 665 բ։

— 27. Գորգ, հայր Դաւիթի, որ գնեց մի Աւետարան, 1100 դրամով, 1407 թվին.—Ձեռ. Վասպ. 165։

— 28. Գորգ, հայր Մարտիրոսի, որ նախորդ Դաւթից (տպված է ի գաւքս? կարդա «ի Դաւթայ») գնել է նույն Աւետարանը՝ 1410 թ.—Ձեռ. Վասպ. 163—4։

— 29. Գորք, ազգական Էվաչայի, որ գնեց մի հին Աւետարան, 1425 թ.—Ձեռ. Վեննետ. Ա. 485։

— 30. Գորգ պարոն, որդի տանուտեր ոսկերիչ Յովհաննէս Երզնկացու, որ Արճէշում գրել տվեց մի Աւետարան, 1433 թ.— Ձեռ. Վասպ. 367։

— 31. Գորգ, նվիրեց Պատարագամատույցը պարոն Յակոբին՝ Վենետիկ 1434.—Հայ-Վենետ. 180։

— 32. Գորք երեց, որդի Մարկոս քահանայի, հիշված 1439 թվից մի-երկու տասնյակ տարի հետո.—Ձեռ. Հալէպի, Ա. 83 բ։

— 33. Գորք դպիր, ժամանակակից նույնի.—անդ։

— 34. Գորգ պարոն, որդի Ամիրզոլի, որ տես էջ 125, № 1. հիշված 1455 թ.—Նոտարք 178։

— 35. Գորգ, որդի Սելչուկ խաթունի, որ գրել տվեց մի Մաշտոց՝ Հայրապետ քահանային, 1466 թ.—Թորոս աղբ. Ա. 232, Բ. 337։

— 36. Գորգ պարոն, որդի տանուտեր Սադաղա Ծերենցի, որ Աղթամարում, Թումայ քահանային գրել տվեց մի Աւետարան, 1476 թ.—Ձեռ. Վասպ. 480—482։

— Գորգ անվան վերջին հիշատակությունն է 1613 թ. (Ձեռ. Վասպ. 845)։

*ԳՈՐԳԻ, ար. < վրաց. Գիօրգի ձևից հապավված, ինչպես Գէորգ > Գորգ։

— 1. Գորգի, տնտես Բերկրիի Տէր Յուսկան որդի վանուց, 1420 թ.—Նոտարք 61։

— 2. Գորգի, եղբայր Թովմա Մեծոփեցու. հիշված է 1428 թ.—Նոտարք 89։ Տես Գորգիմելիք։

*ԳՈՐԳԻԿ, ար. Գորգ անվան գգվականն է. հիշված կա Manus. brit. mus. 280 բ։

—1. Գորգիկ (սեռ. Գորգկանն), հայր Աւագ տիկնոջ, որ կես ձիթահան նվիրեց Արջոյառիճի վանքին, 1207 թ.—Շիրակ 122ա։

— 2. Գորգիկ (սեռ. Գորգկանն), հայր Ջուհալ Կարըցու, որ նվերներ է արել Անիի Կաթուղիկէին, 1235 թ.—Շիրակ 72։

*ԳՈՐԳԻՄԵԼԻՔ, ար. < Գորգի+մելիք բառերից։

— Գորգիմելիք, որդի Ստեփաննոսի և եղբայր Թովմա Մեծոփեցու. տանուտեր Աղոյ գյուղի. երբ Իսքենդերը պաշարեց Արծկէ քաղաքը և ուզում էր գրավել ու կոտորել բնակիչներին, Գորգիմելիքը և Արծկէի տանուտեր Յովհաննէսը միախորհուրդ գնացին Իսքենդերի մոտ, քաղաքը հանձնեցին և ժողովրդին կոտորածից ազատեցին («1430 թ»).—Մեծոփ. 93. Ազգապ. 2052, 2093. Զամչ. Գ. 464. Տաշեան, Ցուց. 418 ա, Նոտարք 147 (գրված Գուրգի-մելիք). տես և Գորգի։

— Գորգիմելիք հիշված է նաև 1582 թ.՝ Ձեռ. Վասպ. 698։

*ԳՈՐԳԻՆ տես Գուրգէն։

*ԳՈՐԳՇԱՀ, ար. < Գորգ+պրս. شاه šāh «թագավոր» բառից։ Մի անգամ գտնում եմ՝

— Գորգշահ, որդի Մարտիրոս քահանայի, որ գնեց Դաւթից մի հին Աւետարան, 1410 թ.—Ձեռ. Վասպ. 164, 166։

*ԳՈՐԳՈՆ, ծագումը տես Գուրգէն։

— Գորգոն, հայր Տարսայիճ իշխանի՝ տեառն Եղեգեաց, որ Թուրքի կուսակալ և Լենկթիմուրի թոռ Օմարի բռնադատությամբ ուրացավ իր հավատը, բայց հետո դարձավ։—Մեծոփ. 68 (սեռ. Գորգոնին)։

*ԳՈՐԳՈՒՆ, ծագումը տես Գուրգէն։

— Գորգուն, իշխան Արևելեան Հայաստանում. սրա ձեռքից վշտամահ եղավ Յովհան Որոտնեցին՝ 1386 թ. (Թվի կաթոլիկ հայ).—բց. Գորգունէն՝ Սամ. անեց. շար. 170։

*ԳՈՐԻԴՈՒԽՏ, իգ. < պրս. گور Gōr «ցիռ»+دخت duxt «դուստր» բառերից. (Գոր իբր առանձին անուն՝ տես վերը)։—Հիւբշ. էջ 38։

—Գորիդուխտ, կին Վարազ-Գրիգորի և մայր Ջուանշէր իշխանի Աղվանից (է դար).--սեռ. Գորիդխտոյ՝ Կաղկնտ. Բ. իե։

ԳՈՐԻՍ, ար. ծագումն անհայտ. կա Գորիս ավան Զանգեզուրի։

— Գորխ (կամ Գուրխ), հայ մարզպան Արևելեան Հայաստանի, 584—? թ.—Այրարատ 561 ա։

ԳՈՐՈՒԹ, ար. ծագումն անհայտ։

— 1. Գորութ, իշխան Ձորոց աշխարհի. ուղեկից եղավ Յուսիկին, երբ սա գնում էր Կեսարիա՝ կաթողիկոս օծվելու («341 թ»).—Բուզ. Գ. ժբ (մի ձ. Գութ)։

— 2. Գորութ, իշխան Վանանդի. հիշում է Ալիշան՝ Սիսական 310 ա։

*ԳՈՐՔԼՈՒ, իգ. < Թրք. قورقولو qorqulu «վախենալու, ահարկու»։ Հմմտ. Գօրգուր՝ իշխան Թուրք ԺԵ դարում (Այրարատ 329բ)։ Անսովոր անուն. մի անգամ ունենք՝

— Գաւրքլու, կին Անդրէաս քահանայի և մայր Յովհաննէս աբեղայի, որ գնեց փրկանքով մի հին Աւետարան և կազմել տվեց 1515 թ.—Ձեռ. Վիեննա. Ա. 390։

ԳՈՒԱՀԱՆ, ար. ծագումն անհայտ։

— Գուահան, որդի Գրիգոր Վանանդեցու. հիշված է Բագարանի 628 թվի արձանագրության մեջ. —Կոգեան, Կմսրկնները, էջ 137։

*ԳՈՒԱՐՋԻՆ, իգ. < Թրք. گوگرجین güyerǰin «աղավնի» բառից (ժող. güverǰin). հիշված է մի անգամ անհայտ թվականով մի հիշատակարանի մեջ, արևմտյան տառադարձությամբ՝ գրված Կուաճին ձևով (առանց ր) (Թորոս աղբ. Բ. 346)։

ԳՈՒԳԱՐ, ար. < Գուգարաց աշխարհի անունից։ Մի անգամ հիշված է՝

— Գուգար, հայր Մելիքսեթ կրոնավորի, որ էր վանահայր Երերան վանքի, 1460 թ.—Այրիվ. 16 բ։

*ԳՈՒԶԻԴԷ, իգ. < պրս. گزیده guzīde «ընտրյալ» բառից։ Գործածված է մեր մեջ երկու անգամ, հետևյալ ձևերով.

— 1. Գիւզիւպ, կին Խէսարի և մայր Հայրապետ եպիսկոպոսի. հիշված է 1560 թ.—Յովսէփեան, Խաղբակեանք 250։

— 2. Կուզետէ, դուստր Մուրատի, քույր Պէկզէտէի և Նարխաթունի, որ ստացավ մի Ցայսմաւուրք, Սեբաստիա 1709 թ.—Ձեռ. Սեբ.=ՀԱ 1928, 493։

ԳՈՒԹԻՀԱՐ, իգ. ծագումն անհայտ. հիշված է մի անգամ, անթվական մի հիշատակարանում, Ձեռ. Վասպ. 127։

*ԳՈՒԻԴՈՆ, ար. ծագումը եվրոպական է. հմմտ. իտալ. Guido, ֆրանս. Guy. հայտնի են այս անունով՝ իտալացի Guido՝ ձայնագրության հնարիչը (մ. 1050) և մի նշանավոր նկարիչ ԺԶ դարից։ Լատին եկեղեցին էլ ունի մի քանի սրբեր Guy անունով, որոնցից հնագույնը մ. 961 թվին։ Մեր մեջ գործածական դարձավ Կիլիկյան շրջանում և այն էլ իբր օտար անուն։ Ալիշանը նույն է դնում նաև Կիտւդին ձևը, որի հետ նման է հնչում ֆրանս. Guillotin (այս անունով հայտնի է մի բժիշկ, որ գլխատման իտալական մի գործիք գործադրության դրավ Ֆրանսիայում (1792 թ), որ և այնուհետև իր անունով կոչվեց guillotine)։

— 1. Գուիտոն, *իշխան Յոպպէի. սրա դուստրը՝ Զապէլ ամուսնացավ Սմբատ իշխանի հետ՝ արտոնությամբ Ստեփաննոս Դ կաթուղիկոսի («1290—1293 թ»), թեև երրորդ աստիճանի ազգական էին.—Ազգապ. 1730 (ըստ Կղ. Կալանոսի 412)։*

— 2. Գուիյոն, *հայ Դոմինիկյան կրոնավոր Բոլոնիայի վանքում. ուրիշ ընկերների հետ միասին ուղարկվեց Սիկիլիայի թագաժառանգի մոտ, ցավ յայտնելու համար այն մասին, որ նա քաղաքում չարագործների ձեռքով վիրավորվել էր (1318 թ).—Սխակյան 383 բ)։*

— 3. Գուիյոն կամ Կիաւդին, *մեծ իշխան, տեր Կոռիկոսի բերդի. եղբայր Օշինի. Այսպիսի սահմանում կռվեց Եգիպտացոց դեմ, բայց պատերազմում վիրավորվելով մեռավ «1322 թ».—Սմբ. պատմ. 128. Սխուան 194 ա, 340 բ։*

— 4. Գուիդոն, *թագավոր Հայոց «1343—1344 թ»։ Հեթում Բ-ի Զապէլ քրոջ և Տիւրոսի Ամորի կոմսի որդին էր, Լուսինեան ֆրանսիական ցեղից։ Իր եղբոր Յովհաննէսի հետ միասին Կիպրոսից գնացին Բիւզանդեան ծառայության և ապա եկան Կիլիկիա։ «1342 թվին» Յովհաննէսը ընտրվեց Հայոց թագավոր՝ Կոստանդին Գ անունով։ Հաջորդ տարին սպանվելով (կամ գահից հրաժարվելով), թագավոր ընտրվեց Գուիտոնը։ Բայց փոխանակ դիմադրելու Եգիպտացոց արշավանքին, սկսեց կրոնական վեճերով զբաղվել հայ իշխանների հետ և իր հայ հակառակորդների հողերը խլելով՝ լատիններին բաշխել։ Սրա վրա իշխանները միացան և սպանեցին նրան՝ իր գերդաստանի և լատին պաշտոնյաների հետ «1344 թ».—Ազգապ. 1906—7. Չամչ. Գ. 347—9. Բասմաջեան՝ Լևոն Ե, էջ 20—21.—Կիս՝ Ննպաք. 108.—Մին. համդ. 51 գրում է Կիս, որ պետք է կարդալ Գիտ.—գրված է հյց. Մեմքնդին՝ Սամ. անեց. շար. 168.—ֆրանսիացի գրող* Jean d'Arras *գրել է* Mélusine *անունով նշանավոր մի վեպ (1387—94) Լուսինեանց ծագման մասին, ուր խոսում է նաև այս Գուիտոնի մասին առասպելաբար (Յուշիկք Բ. 502)։*

— 5. Գի կամ Գուիտոն, *խորթ և անհարազատ որդի Լևոն Զ-ի, Պարիզում. հիշում է նրան Լևոնը իր կտակում (1392 թ).* Ambleux-*ի աշտարակին հարյուրապետ է կարգվել և մինչև վերջը վայելել է Ֆրանսիայի Շարլ թագավորի պաշտպանությունը (Բասմաջեան՝ Լևոն Ե, էջ 133, 151). իսկ ըստ Ալիշան՝ Սխուան 561 ա Սուասոնի եկեղեցու կանոնիկոս է կարգված՝ 1421 թ։*

— 6. Գյոն, *խազանչի (կաթսա շինող արհեստավոր) էր*

Կաֆայում (Թէոդոսիա, Խրիմ). հիշվում է իբրև վկա այն մասին, թե Ուլուխաթուն երեցակինը մի Ավետարան է գնել 500 սպիտակով, 1437 թ.—Ձեռ. Մեր.=ՀԱ 1926, 238։

— Գուխտոն անունը հիշված եմ գտնում նաև Գտուն ձևով՝ 1630 թ. (Թորոս աղբ. Բ. 451) և Գըտոն ձևով՝ անթվական մի հիշատակարանում (անդ 361)։

*ԳՈՒԼ, իգ. <պրս. گل gul «վարդ» բառից. սկսել է գործածվել ԺԵ դարից և մինչև այժմ էլ գործածական է։ Թուրքական արտասանությամբ հնչվում է Գիւլ և Արևմտահայ տառադարձությամբ էլ գրվում է Կիւլ, Կուլ։ Այս բառից են բխում նաև հաջորդ անունները։

— 1. Գուլ (որ և Գուլում), դուստր Յովհաննէսի և քույր Մուրադի, որ ստացավ մի Ավետարան, Արճէշ 1486 թ.—Ձեռ. Վասպ. 498։

— 2. Գուլ, կին Սպահանի, որ Սաղմոսավանքում, Յովհաննէս աբեղային գրել տվեց մի Ավետարան՝ 1496 թ.—Ձեռ. Թաւր. 22 բ։

— Գուլ (սեռ. Գուլին), հիշված է նաև 1619 թ.—Ձեռ. Վենետ. Ա. 722։

*ԳՈՒԼԱԲ, ար. <պրս. گلاب gulāb «վարդի ջուր» բառից. հիշված է Գուլապ ձևով՝ 1662 թ. (Ձեռ. Վենետ. Ա. 653). սրանից է Կիւլապեան ազգանունը (հիշված 1735 թ. Ազգապ. 2910). նույնը Կիւլապ օղլու ձևով՝ Գալէմքեարեան, Կենսագր. Մարգ. արքեպս. էջ 180։ Հմմտ. Golāb՝ քուրդ մի շեխի կինը (Justi 117 բ)։ Տես և Գուլաւ, Գուլաբի։

*ԳՈՒԼԱԲԻ, ար. կամ <վերոհիշյալ պրս. گلاب gulāb «վարդաջուր» բառից և կամ տճկ. ժղ. گلابی gulabi «մի տեսակ ընտիր տանձ, որից վարդի բույր է գալիս»։ Հիշված է 1549 թ. Գուլապի ձևով (Ձեռ. Դադեան, Բ. 31 բ)։ Գործածական է այժմ էլ տաճկահայ գավառներում։

*ԳՈՒԼԱԶ, իգ. կրճատ ձևն է Գուլազիզ անվան, որ տես տակը։ Հիշված է 1521—1529 թվերին (Ձեռ. Վենետ. Բ. 382—3), 1588 թ. (Ձեռ, Հալէպի, Ա. 91), 1650 թ. (Ձեռ. Մեր.=ՀԱ 1926, 44), Գուլիազ 1746 թ. Միսական 357։ Վերջին երկուսը արական է, ըստ այսմ էլ ունինք Գուլազեան ազգանունը (Կովկաս)։ Գըրված է Գիւլազ 1674 թ. (Ձեռ. Դադեան, Բ. 46բ), 1700 թ. (Ձեռ. Ագուլ.=Արրտ. 1911, 566)։

Գուլազար տես Գուլզար։

*ԳՈՒԼԱԶԻԶ, ար. <պրս. گل gul «վարդ»+արաբ. عزيز ʻazīz

«նվիրական, մաքուր, թանկագին» բառերից։ Իբրև հատուկ անուն հիշված է Rivola, Բառ. հայոց 1633, էջ 79։ Գործածված է 1587 թ. (Ձեռ. Սեբ.=ՀԱ 1925, 260), 1599 թ. (Ձեռ. Վասպ. 756—7, գրված Գոլագիղ), 1605 թ. (Ձեռ. Ագուլ.=Արրտ. 1911, 316), 1613 թ. (Ձեռ. Վասպ. 846), 1642 թ. (անդ 765)։ Անթվական են Ձեռ. Վասպ. էջ 248, 395 (երկիցս. երկրորդ անգամ գրված Գովագիղ, որ պետք է կարդալ Գուլագիղ), Ձեռ. Վեննա. Ա. 262, Կիւլագիզ 1657 թ. Երեմ. չել. օր. 260։

***ԳՈՒԼԱԼԱՆ**, տր.<թրք. گلالان gül-alan «վարդ առնող» ձևից։ Մի անգամ գործածված 1601 թ. (Ձեռ. Վասպ. 793)։

***ԳՈՒԼԱՂԱ**, իգ.<պրս. گل gul «վարդ»+آغا āġā բառերից, իբր թե gul-i-āġā «աղայի վարդը»։ Գործածված է ԺԶ—ԺԸ դարերում։ Հնագույն հիշատակություններն են՝ 1525 թ. (Ձեռ. Վասպ. 417, 418), 1554 թ. (անդ 98), 1560 թ. (անդ 662), 1565 թ. (անդ 663), 1571 թ. (Սմբատեանց, Գեղարքունի 58), 1573 թ. (Ձեռ. Վասպ. 678), 1575 թ. (Rapport Belgique 24)։ Այս թվից ուշ եղած հիշատակությունները չեմ գտնում։ Վերջինն է 1731 թ. (Ձեռ. Վասպ. 1022)։ Գրված է Գուլլաղա (Ձեռ. Վասպ. 704), Գիւլաղա 1698 թ. (անդ 984). Թրքական արտասանությամբ և արևմտյան տառադարձությամբ՝ Կիւլաղա՝ ԺԶ դարից (Ֆ. Մուրատ, Ցայտ. յովհ. էջ ՅՁԳ), սխալ տպված՝ Գողաղէն (երկիցս՝ Ձեռ. Սեբ.=ՀԱ 1925, 260), սեռ. Գուշուղին (Ձեռ. Դադեան, Բ. 32 բ)։

***ԳՈՒԼԱՄԲԱՐ**, իգ.<պրս. گلانبار gul-anbār «վարդի շտեմարան», ինչպես կա պրս. مشکانبار mušk-anbār «մուշկի շտեմարան» (Թրքաբնակ գյուղ՝ Թավրիզից հյուսիս)։ Հիշված է 1632 թ. (Ձեռ. Դադեան, Բ. 33 ա) և 1693 թ. (Ձեռ. Վասպ. 334—5, տպված Գուլումբար)։

***ԳՈՒԼԱՄԻՐ**, ար.<պրս. گل gul «վարդ»+արաբ. امیر amīr «իշխան» բառերից, իբր «վարդիշխան»։ Գործածված է ԺԶ—ԺԸ դարերում։ Հնագույն վկայություններն են 1563 թ. (Ձեռ. Դադեան, Բ. 49 բ), 1575 թ. (Ձեռ. Վասպ. 683), 1582 թ. (անդ 696), 1585 թ. (Սմբատեանց, Գեղարքունի 49), իսկ վերջինն է 1730 թ. (Ձեռ. Վասպ. 493)։ Գրված է Կուլամիր 1683 թ. (Ձեռ. Հալէպի, Ա. 62), Գիւլամիր 1651 թ. (Ձեռ. Վասպ. 200), Գիւլամէր (Ձեռ. Վասպ. 574 անթվական)։ Սրանից է Գուլամիրեան ազգանունը (Կովկաս)։

***ԳՈՒԼԱՑՈՒՏ**, սեռն ու ծագումը անհայտ. բայց անշուշտ

պրս. گل gul «վարդ» բառից. անսովոր անուն է. մի անգամ գտնում եմ հիշված անթվական մի հիշատակարանում (Ձեռ. Վենետ. Ա. 609)։

*ԳՈՒԼԱՆ, իգ. < կամ պրս. گلان gulān «վարդեր» հոգնակի ձևից (կամ պրս. گلان gulān «ցորենով ու նուշով հրուշակ». բայց կա նաև քրդ. gulan «մայիս ամիսը»)։ Գործածված է ԺԷ—ԺԸ դարերում։ Եղած վկայությունները են՝ 1602 թ. (Ձեռ. Վասպ. 804), 1604 թ. անդ 813), 1680 թ. (Ձեռ. Նոր-Բայազ. 24 ա), 1735 թ. (Ձեռ. Վասպ. 546)։ Գրված է արևմտյան տառադարձությամբ Կուլան (Ձեռ. Սեբ.=ՀԱ 1925, 261՝ անթվական) և զարմանալի կերպով՝ Ղուլան! 1678 թ. (Ձեռ. Թեհր.=ՀԱ 1935, 396)։ Տես և Գուլանփաշա։

*ԳՈՒԼԱՆԲԷԳ, ար. < նախորդ Գուլան անունից+բէգ։ Մի անգամ գտնում եմ հիշատակված՝

— Գուլամբէկ, որդի Գողալբէկի և եղբայր Գրիգոր Գորեցի երեցու, որ ստացավ մի հին Աւետարան, 1462 թ.—Ձեռ. Վասպ., էջ 172։

*ԳՈՒԼԱՆՇԱՀ, իգ. < Գուլան անունից+պրս. šāh «թագավոր»։ Հիշված է մի անգամ Գուլանշար ձևով, 1603 թ. (Матер. Арх. Кавк. III 99—100)։

*ԳՈՒԼԱՆՓԱՇԱ, իգ. < նախորդ Գուլան անունից+փաշա։ Հիշատակված է ԺԶ—ԺԷ դար։ Տես և Գուլփաշա։

— 1. Գուլամփաշա, կին տանուտեր Խոջա Ատոմի, որ Վանում գրել տվեց մի Աւետարան, 1484 թ.—Ձեռ. Վասպ. 496։

— 2. Գուլամփաշա, դուստր տանուտեր Խոջա Բարխմշահի, որ նախորդ Ատոմի հետ ստացավ նույն Աւետարանը Վանում, 1484 թ.—Ձեռ. Վասպ. 496։

— 3. Գուլանփաշա, կին Իսկէնդէրի և մայր Գրիգորիս Բ կաթուղիկոսի Աղթամարի. հիշված է 1559 թ.—Ակինեան, Գաւազանագիրք 125։

— Գուլանփաշա հիշատակված է նաև 1580 թ. (Ձեռ. Վասպ. 31—32) և 1633 թ. (անդ 883, Գուլանփաշա ձևով)։

*ԳՈՒԼՍԱՐ, ար. և իգ. < պրս. گل gul «վարդ»+سر sar «գլուխ» բառերից, իբր «վարդագլուխ»։ Գործածված է նախ 1206 թ. և մինչև ԺԸ դար հիշված է զանազան ձևերով։ Սրանից է Կիւլէսէրեան ազգանունը։

— Կուլասար, կին Խըտըրպալիի, որ Կեսարիայում գրել

ավեց մի Աւետարան, 1206 թ., երբ Կուլասարը մեռած էր.— Ձեռ. կես. սարգ. 9 բ։

— Հիշված է նաև Կուլասար, ար. 1569 թ. (Թորոս աղբ. Ա. 222), Կուլսար, ար. 1649 թ. (Տաշեան, Ցուց. 513), Գուլասար, իգ. 1655 թ. (Ձեռ. Դաղեան, Բ. 33 բ), Կուլուսար, իգ. 1708 թ. (Ձեռ. Դաղեան, Ա. 45 ա), կրճատ՝ Գուլաս, իգ. անթվական մի հիշատակարանում (Ձեռ. Դաղեան, Բ. 31 ա)։

*ԳՈՒԼԱՍՊ, ար. < պրս. گل gul «վարդ»+اسب asb «ձի» բառերից, երբև «վարդաձի, վարդագույն կամ վարդի պես ձի ունեցող»։ Ենթադրում եմ թե գոյություն է ունեցել մի այսպիսի արական անուն, քանի որ ունինք Գուլասպեան ազգանունը (Կովկաս)։

*ԳՈՒԼԱՐԹՈՒԽ, իգ. < պրս. گل gul «վարդ»+թրք. آرتق artəq, artuq «առավել» բառերից և նշանակում է «գերազանց քան զվարդ»։ Հիշված է Գուլարդուխ ձևով 1551 թ. (Матер. Арх. Кавк. III 93, 94) և մի ուրիշը՝ 1603 թ. (անդ, էջ 90—100)։

*ԳՈՒԼԱՔ, իգ. < պրս. گلک gulak «փոքրիկ վարդ» բառից։ Գործածված է ԺԵ դարում։

— 1. Գուլակ խաթուն, կին տանուտեր ոսկերիչ Յովհաննէս Երզնկացու, որ Արճէշում գրել տվեց մի Աւետարան, 1433 թ.—Ձեռ. Վասպ. 367։

— 2. Գուլաք, զավակ (ար. թե իգ. Գոնդուլէ) տիկնոջ, որ իր որդի Էդըլշահի հետ Կտուց անապատում ստացավ մի Աւետարան, 1475 թ.—Ձեռ. Վասպ. 472։

*ԳՈՒԼԱՖ, իգ. և ար. < պրս. کلاف gulaf «ծաղիկ ինչ կարմիր՝ նման վարդի». գործածված է ԺԶ—ԺԷ դարերում Կուլաֆ ձևով. այսպես՝ իգ. 1506 թ. (Տաշեան, Ցուց. 55), 1601 թ. (Ձեռ. Լվովի =ՀԱ 1937, 142) և ար. 1578 թ. (Ձեռ. Վիեննա. Ա. 438)։

*ԳՈՒԼԲԱՀԱՐ, իգ. < պրս. گل بهار gul-i-bahār «գարնան վարդ»։ Գործածվել է ԺԵ դարից և այժմ էլ գործածական է Կովկասում։ Արևմտահայոց մեջ հիշված է 1814 թ. (Քոսեան, Հայք ի Զմիւռն. Բ. 107՝ մի շիրմի տապանագրում)։

— Գուլպահար, կին պարոն Մուրատշահի, որ մի արտ է նվիրել եկեղեցուն, 1435 թ.—Ձեռ. Վասպ. 370։

— Գուլբահար հիշված է նաև 1561 թ. (Ձեռ. Դաղեան, Ա. 46 բ), 1569 թ. (Ձեռ. Վասպ. 670), 1575 թ. (անդ 684), 1596 թ. (անդ 243, գրված Գուլբայար), 1629 թ. (Կամենից, 183=ՀԱ 1890, 21 ա)։

*ԳՈՒԼԲԱՀՐ, *իգ. < պրս.* گلبحر gul-i-baḥr *«ծովային վարդ»: Գործածված 1466 թ. (Թորոս աղբ. Բ. 338 Գուլբար), 1508 թ. (Ձեռ. Վասպ. 634՝ Գոյլբար) և անթվական մի հիշատակարանում՝ Ձեռ. Վասպ. 1012, գրված Գուլուբահր: Տես և հաջորդը:*

*ԳՈՒԼԲԱՀՐԻԽԱՆ, *իգ. < պրս.* گلبحری‌خان gul-i-baḥrī-xān, *որ նախորդ բառն է ավելացած* xān: *Մի անգամ գտնում եմ գործածված 1631 թ.* Գուլպարիխան *ձևով՝* Bodleian *139:*

*ԳՈՒԼԲԱՂԻ, *իգ. < Թրք.* گلباغی gül-baġə *«վարդանոց». երկու անգամ հիշված անթվ. մի հիշատակարանում՝ Ձեռ. Վասպ. 136:*

*ԳՈՒԼԲԱՅԱԶ, *իգ. < պրս.* گلبیاض gul-i-bayāz *«սպիտակ վարդ» ձևից, որ ուրիշ բառով ասվում է* Աղգուլ *(տես այս անունը): Գործածված է մի անգամ ԺԸ դարում՝*

— Գուլբայազ, *կին Երևանցի, 1751 թ.*—REA *10, 59:*

*ԳՈՒԼԲԱՆԱՎՇ, *իգ. < պրս.* گلبنفشه gul-i-banafše *«մանիշակի ծաղիկ». հիշված 1654 թ., Ձեռ. Ազուլ.=Արրտ. 1911, 385:*

*ԳՈՒԼԲԷԳԻ, *ար. և իգ. Թրք.* گلبکی gül-begi *«վարդիշխան». ԺԶ—ԺԷ դար. այսպես՝ Գուլպակի ար. 1512 թ. (Ձեռ, Վեննա. Ա. 646), Գուլբակի իգ. 1551 թ. (անդ 529), Կուլպէկի իգ. 1576 թ. (Ձեռ Նոր-Բայազ. 9ա), Գուլպակի իգ. 1596 թ. (Ձեռ. Թաւր. 76ա), Գուլբէկի իգ. 1601 թ. (Ձեռ. Վասպ. 794), Գուլբէգի իգ. 1671 թ. (Աճառ. Քննութ. և համ. Եզնկայ, էջ 5), Կիւլպէկ ար. ԺԷ դար(Կարապետեան, Ցիշատ. Սամաթ. 73):*

*ԳՈՒԼԲԷՆԳ, *ար. < Թրք.* گلبنک gülbeng *«վարդախալ» (այսինքն այտի վրա վարդի նման խալ ունեցող): Անցյալ դարում գործածական էր Արևմտահայոց մեջ՝ Կիւլպէնկ ձևով. (տես Քոսեան, Հայք ի Զմիւռն. Ա. 291): Սրանից է Կիւլպէնկեան:*

*ԳՈՒԼԲԷՍԷՐ, *իգ. < պրս.* گلبسر gul-be-ser, *որ նշանակում է «վարդը կամ ծաղիկը գլխին»: (Այժմ Կովկասում այս բառով հասկանում են «վարունգ», որ դեռ մատղաշ ժամանակ ծայրին ծաղիկ ունի): Անցյալ դարում Արևմտահայոց մեջ գործ է ածվել երբեմն իգ. Կիւլպէսէր ձևով (Քոսեան, Հայք ի Զմիւռն. Ա. 292):*

*ԳՈՒԼԲՈՒԴԱՂ, *իգ. < Թրք.* گلبوداق gül-budaq *«վարդի ճյուղ» բառից: Հիշված է ԺԶ—ԺԷ դարերում. այսպես՝ Գուլբուդախ 1551 թ.* (Матер. Арх. Кавк. III, *էջ 93, 94), Կուլպուտախ 1647 թ. (Թորոս աղբ. Ա, 220): Գործածական է այժմ էլ Ղափանում:*

*ԳՈՒԼԳԱԶ, *իգ. < պրս.* گل gul *«վարդ»*+ گازی gāzī *«մի տեսակ ծաղիկ» բառերից: Գործածված է մի անգամ 1652 թ. (Ձեռ. Վեննա. Ա. 740, Կուլկազ ձևով):*

***ԳՈՒԼԳԱՄ**, *ար. < պրս.* گل gul *«վարդ»*+کام gām *«քիմք» բառերից։ Հիշված է մի անգամ 1677 թ. (Ձեռ. Դադեան, Բ. 34 բ)։*

***ԳՈՒԼԳՈՒԼ**, *իգ. < պրս.* گل gul *«վարդ» բառի կրկնությամբ, իբր «վարդ վարդ», այն է «վարդագույն վարդ»։ Մի անգամ գտնում եմ գործածված ԺԵ դարում։*

—Գուլգուլ, *կին Շատիի և մայր Եղիշէ քահանայի, որ Աղուանից Մատթէոս կաթուղիկոսից գնեց մի Աւետարան, 1438 թ. —Ձեռ. Դադեան, Բ. 44 ա։*

***ԳՈՒԼԳՈՒՆ**, *իգ. < պրս.* گلگون gulgūn *«վարդագույն. 2. սրնգույր, շպար»։ Գործածված է ԺԶ—ԺԷ դարերում. այսպես՝ 1521—1529 թ. (Ձեռ. Վենետ. Բ. 382), 1590 թ. (Ձեռ. Վասպ. 714), 1617 թ. (անդ 856) և անթվական՝ Յովսէփեան, Խաղբակեանք, էջ 235։*

***ԳՈՒԼԴԱԼ**, *ար. < թրք.* گلدله gül-dalə *«վարդի ճյուղ» (հմմտ. Գուլբուդաղ). երևի գոյություն է ունեցել այսպիսի մի անուն, որից էլ ձևացել է Կիւլդալեան ազգանունը (Տաթև տարեց. 1928, էջ 240)։*

***ԳՈՒԼԴԱՍՏԱ**, *իգ. < պրս.* گلدسته gul-dasta *«վարդափունջ». հիշված է 1556 թ. (Ձեռ. Թաւր. 7 բ). այժմ էլ գործածական է Ղարաբաղում՝ Գիւլդաստա ձևով)։*

***ԳՈՒԼԶԱԴԱ**, *իգ. < պրս.* گلزاده gul-zāda *«վարդածին, վարդից ծնված»։ Գործածված է ԺԶ—ԺԷ դարերում. այսպես՝ 1562 թ. (Ձեռ. Հալէպի, Ա. 157), 1579 թ. (Ձեռ. Վասպ. 344), 1596 թ. (անդ 243), 1606 թ. (Նաթանեան, Արտօսր Հայաստ. 153 Կուլզատէ ձևով), 1605 և 1612 թ. (*Manus. brit. mus. *39 ա, 71 բ՝ Կուլզատա ձևով), 1644 թ. (Ձեռ. Մեք.=ՀԱ 1926, 334), 1648 թ. (Ձեռ. Նոր-Բայազ. 38 ա), Կուլզատա 1664 թ. (Ձեռ. Մեք.=ՀԱ 1926, 551)։ Կա նաև իբր արական. այսպես է* Գուլզադ՝ *1490 թվից ուշ գրված անթվական մի հիշատակության մեջ՝ Ձեռ. Սեանի 5 բ։ Սրանից է Գուլզադեան ազգանունը (Նոր-Ջուղա)։*

*Գուլզար տես Գուլիզար։*

***ԳՈՒԼԻ**, *իգ. < պրս.* گلی gulī *«վարդագույն». գործածված է նախ 1581 թ. (սեռ. Գուլուն ձևով՝ Ձեռ. Թաւր. 75 բ), ապա ԺԷ դարում. այսպես՝ 1649 թ. (Հնոց և նորոց 127), այժմ էլ կա Ղարաբաղում։ Սրա երկրորդ ձևն է* Գուլէ, *որ գտնում ենք 1602 թ. (Ձեռ. Վասպ. 807), 1789 թ. (անդ 988), և անթվական՝ անդ 237։ Թերևս եղել է նաև ար., որից առաջացել է Գուլիեանց ազ-*

դանունը (Կովկաս)։ Անցյալ դարում Պոլսում կար սրա փաղաքշականը իգ. Կիւլիցա։

*ԳՈՒԼԻԲԱՂՉԱ, իգ. < պրս. گلباغچه gul-i-bāġča «պարտեզի վարդ». գործածված է 1565 թ. (Ձեռ. Վասպ 664), 1570 թ. (անդ 672), ԺԶ դար (Տաշեան, Ցուց. 583—4)։ Նույնը i-ի սղումով դարձել է Գուլբաղչա) 1575 թ. (Rapport Belgique 24), 1592 թ. (Ձեռ. Վասպ. 730)։ Հակառակ դիրքով են Բաղչագուլ և կրճատ Բաղչա, որոնք տես առանձին։

*ԳՈՒԼԻԶԱՐ, իգ. այս անունը երկու ձև ունի մեր մեջ. ընդհանրապես գրված է Գուլիզար, որ այժմ էլ կենդանի է թե Կովկասում և թե Տաճկահայոց մեջ (վերջինը արևմտահայ առաջարձությամբ՝ Կիւլիզար). բայց մի անգամ էլ գրված է Գիւլզար (Ձեռ. Վասպ. 223՝ 1798 թ)։ Արդյոք այս երկուսը տարբեր անուններ են, որովհետև պրս. ունենք گلزار gul-i-zar «ոսկեվարդ» և گلزار gulzār «վարդանոց»։ Բայց քանի որ Գիւլզար բացառիկ մի ձև է միայն և այժմ էլ անկենդան, ուստի հարազատ ձևն եմ համարում Գուլիզար < պրս. gul-i-zar «ոսկեվարդ», որից i սղվելով՝ Գուլզար, ինչպես ունինք Գուլիբաղչա > Գուլբաղչա։

— 1. Գուլիզար, կին Ստեփաննոսի, մայր Սալչուկ խաթունի, որ Հայրապետ քահանային գրել տվեց մի Մաշտոց, 1466 թ. —Թորոս աղբ. Ա. 232, Բ. 337, Նոտարք 224։

— 2. Գուլիզար, կինն է Տարօնի իշխան խոջա Յովսէփի, որ Մուշում, Պօղոս վարդապետին գրել տվեց մի Աւետարան, 1479 թ.—Ձեռ. Սեբ.=ՀԱ 1925, 262—3։

—Առանց թվականի են Գուլիզար՝ Ձեռ. Վեննա. Բ. 793, Գոլազար՝ Ձեռ. Վասպ. 490։

*ԳՈՒԼԻԷԼՄՈՍ, ար. օտար անուն. ծագում է գերմ. Wilhelm անունից, որի բուն նշանակությունն է «սիրով պաշտպանող». որանից են անգլ. William, իտալ. Guglielmo, ֆրանս. Guillaume. լատին ձևն է Gulielmus, որից և հայ ձևը։ Մի անգամ՝ հիշատակված է՝

— Գուլիէլմոս (Vielmo), հղբայր, բնակվում էր Վենետիկում 1344 թ.—Հայ-Վենետ. 158։

*ԳՈՒԼԻԽԱՆ, իգ. < պրս. گلخان gul-i-xān «խանի վարդը». կա նաև Վրաց մեջ. ինչ. Gulxan դուստր Դաւիթ Բ (մ. 1360) թագավորի։ Մեր մեջ Գուլիխան հիշված է 1490 թվից ուշ գրված անթվական մի հիշատակարանում (Ձեռ. Նոր-Բայազ. 23 բ) և մի

անգամ էլ 1671 թ. Կուլիխան ձևով՝ Ցովսէփեան, Խաղբակեանք, էջ 254։

*ԳՈՒԼԻԽԱՍ, իգ. < պրս. گل‌خاص gul-i-xaṣṣ «ընտիր վարդ, իսկական վարդ»։ Հիշատակված է նախ կրճատ ձևով՝ Կուլխաս 1639 թ. (Ձեռ. Հալէպի, Ա. 229 ա)։ Ավելի ուշ՝ Գուլիխաս 1651 թվին (Տաշեան, Ցուց. 451), որ հիշված է նաև 1224 թվից հետո գրված անթվական մի հիշատակարանում.—Թորոս աղբ. Բ. 273։

*ԳՈՒԼԻԿ, իգ. փաղաքշական ձևն է Գուլ «վարդ» կամ Գուլի «վարդագույն» անվան և դարձել է անկախ անուն։ Հնագույն գործածությունն ունինք 1444—1466 թվին (Ցովսէփեան, Խաղբակեանք 233)։ Հիշված է Գուլիք ձևով՝ ԺԶ դար (Ձեռ. Սանաս. 7 բ), Գուլիկ, սեռ. Գուլկանն 1653 թ. (Թորոս աղբ. Բ. 341), Կուլիկ ԺԷ դար (Ձեռ. Կես. սարգ. 13 բ), Գուլիգ 1763 թ. (Труды Вост. комм. ИМАО հտ. II 3, էջ 48) և առանց թվականի՝ Գուլլիկ, սեռ. Գուլկին (Ձեռ. Վասպ. 158), Կուլիկ (անդ 618)։ Կենդանի էր անցյալ դարում Պոլսում Կիւլիկ ձևով. հմմտ. Գուլի, փոքր. Գիւլիցա։

*ԳՈՒԼԻՄԸՍՐԻ, իգ. < պրս. گل‌مصری gul-i-mişri «եգիպտական վարդ»։ Գործածվել է ԺԵ դարում։

— Գուլիմըսրի, դուստր ժամհար Մկրտչի և քույր աղբար Ցովսէփի, որ Վանում գրել տվեց մի Աւետարան, 1475 թ.—Ձեռ. Վասպ. 478։

— Առանց թվականի են Գիւլիմսրի (Ձեռ. Վասպ. 144) և Գուլիմսրի (Ձեռ. Հալէպի, Ա. 358 բ)։

*ԳՈՒԼԻՆԱՐ, իգ. < պրս. گل‌نار gul-i-nār, կամ կրճատ ԳՈՒԼՆԱՐ < պրս. گلنار gulnār «նռան ծաղիկ. 2. կեռաս»։ Պարսից մեջ էլ գործածվում է իբր անձնանուն. ինչ. Գուլնար՝ գանձապահուհի Արտաւանի և կին Արտաշիր Բաբականի (Շահն. 5, 230)։ Մեր մեջ հիշված է՝

— Գուլնար, դուստր Ստեփաննոսի և քույր Սալչուկ խաթունի, որ Հայրապետ քահանային գրել տվեց մի Մաշտոց, 1466 թ.—Թորոս աղբ. Ա. 232։

—Նույն անունը հիշված է նաև Կուլինար 1538 թ. (Ձեռ. Վենետ. Բ.535—6), Գուլինար 1693 թ. (Ձեռ. Վասպ. 334), 1718 թ. (Բարխուտարեանց, Աղուանից երկ. 171), և անթվական մի հիշատակարանում (Ձեռ. Ագուլ.=Արար. 1911, 760)։

*ԳՈՒԼԻՇԱՀՐ, իգ. < گل‌شهر gul-i-šahr կամ گلشهر gulšahr «քաղաքի վարդ»։ Այս անունով հայտնի են Gulšahr դուստր Փիրան

Վեսէի՝ զորագլխի Աֆրասիաբ արքայի, Gulšar դուստր Վրաց Դաւիթ է Թագաւորի, Gulšar կին Դիմիտրիի՝ որդւոյ Ալեքսանդր Թագաւորի Քարթլի (մ. 1471)։ Մեր մեջ հիշատակված ունինք Կուլիշարհի 1632 Թ. (Ձեռ. Սեբ.=ՀԱ 1925, 575), Գուլշար՝ Թվականն անհայտ (Ձեռ. Վասպ. 250)։

*ԳՈՒԼԻՋԱՆ,ար.<պրս. گل‌جان gul-i-ǰān «հոգու վարդը». գործածված է ԺԶ—ԺԷ դարերում։ Այսպես 1585 Թ. (Ձեռ. Վասպ. 703), 1588 Թ. (անդ 706—7), 1602 Թ. (Նաթանեան, Տեղեկ. Սեբաստիոյ 85), 1633 Թ. (Ձեռ. Վասպ. 882), 1650 Թ. (անդ 458՝ Գուլիջան ձևով), 1666 Թ. (անդ 926) և առանց Թվականի՝ Նոտարք 68։

*ԳՈՒԼԻՍՏԱՆ, իգ.<պրս. گلستان gulistān «վարդանոց» բառից, որ Իրանեանների մեջ էլ իբրև անձնանուն գործ է ածվում. ինչ. Gulistan հնդկուհին ԺԴ դար (Իբն-ի-Բատուտա 4, 142)։ Մեր մեջ գործածված է ԺԵ դարից սկսած Գուլիստան, Կուլիստան, Կոլիստան, Գուլըստան, Գուլստան, Գօլստան ձևերով և մինչև այժմ էլ գործածական է Ղարաբաղում։ Առատ է ԺԷ դարում, որ չենք հիշում։

— 1. Գուլստան, կին խոջա Քարիմշահի, որ Վանում Ազարիա գրչին գրել տվեց մի Աւետարան, 1484 Թ.—Ձեռ. Վասպ. 496։

— 2. Գուլստան, կին Սմբատի՝ որդւոյ խոջա Խդրշահի, որ իր եղբայր խոջա Քարիմշահի հետ Վանում, Ազարիա գրչին գրել տվեց մի Աւետարան, 1484 Թ.—Ձեռ. Վասպ. 496։

— 3. Գուլըստան, կին Յովհաննէս քահանայի, եղբոր Աբապշահի, Ցակոբի և Սուլթանշահի, որոնք Աղբակում գրել տվին մի Աւետարան, 1490 Թ.—Ձեռ. Վասպ. 511։

— 4. Գուլստան, կին Սուքիասի և մայր Ռուզ տիկնոջ, որ Խիզանում գրել տվեց մի Աւետարան, 1499 Թ.—Ձեռ. Վենետ. Ա. 577։

*ԳՈՒԼԽԱԹՈՒՆ, իգ.<պրս. گل gul «վարդ»+խաթուն բառերից. գործածված է ԺԴ—ԺԷ դարերում՝ Գուլխաթուն, Գոլխաթուն, Գուլհաթուն, Կուլխաթուն ձևերով։ Տաճկական ձևով էլ կա Գիւլգատըն, որ գործածվում էր անցյալ դարում (տես Քօսեան, Հայք ի Զմիւռն. Ա. 132)։

— 1. Գոլխաթուն, կին Սաղմոսիկ քահանայի. հիշված է Գետաշէնի Աւետարանում, 1325—83 Թ.—Ցովսէփեան, Նյութեր և ուս. Ա. 44։

— 2. Գուլխաթուն, դուստր Ցակոբշահի և քրոջ աղջիկ Ցով-

հաննէս աբեղայի, որ Աղբակի Ապսթան գիւղում ստացաւ մի Աւետարան, 1458 թ.—Ձեռ. Թաւր. 69 ա։

— Գուլխոքուն հիշատակված է նաև 1633 թ. (Ձեռ. Վասպ. 882) և չորս անթվական հիշատակարաններում՝ Թորոս աղբ. Բ. 366, Ձեռ. Վասպ. 158, 161, Ձեռ. Վենետ. Ա. 780։

*ԳՈՒԼԽԱՆԴ, իգ. < պրս. گلخنده gulxanda «վարդաժպիտ, վարդի նման ժպտացող»։ Մի անգամ հիշված է 1579 թ. ուղ. Գուլխանդ ձևով (Ձեռ. Վենետ. Ա. 390) և մի անգամ էլ սեռ. Գուլխանտայ ձևով, առանց թվականի (անդ 262)։

*ԳՈՒԼԽԱՆԴԱՆ, ար. < պրս. گل خندان gul-i-xandān «ժպտուն վարդ, վարդաժպիտ»։ Մի անգամ իբրև իգական հիշված է Գուլխանցան ձևով 1654 թ. (Ձեռ. Աղուլ.=Արրտ. 1911, 385) և մի անգամ էլ իբրև արական 1683 թ. (Manus. brit. mus. 36 ա), որից էլ ունինք Գուլխանդանեան ազգանունը (Վաղարշապատ)։

*ԳՈՒԼՄԵԼԻՔ, իգ. < պրս. گل ملک gul-i-melik «մելիքի վարդը» կամ gul-melik «վարդերի մելիքը» և կամ gul-melek «վարդ հրեշտակ», ինչպես որ գրված է Գուլմելէք (№ 4)։

— 1. Գուլմելիք, կին Յակոբի և մայր Խաթուն տիկնոջ, որ Աղթամարում գրել տվեց մի Աւետարան, 1425 թ.—Ձեռ. Վասպ. էջ 352։

— 2. Գուլմելիք ոմն, որ հիշված է 1466 թ.—Թորոս աղբ. Ա. 232, Բ. 328։

— 3. Գուլմելիք, կին Ամիրբէկի և մայր Մանուէլ քահանայի, որ Գեղարքունեաց Կած գիւղում Յովհաննէս Արծկեցուն գրել տվեց մի Ճաշոց (ԺԵ դար).—Ձեռ. Սևանի 18։

— 4. Գուլմելէք, անթվական մի հիշատակարանում (Ձեռ. Վասպ. 394)։

*ԳՈՒԼՆԱԲԱԹ, իգ. < պրս. گل gul «վարդ»+արաբ. نبات nabāt «ստնաշաքար» բառերից։ Գործածվել է սկսած ԺԳ դարից մինչև ԺԸ դար։

— Գուլնաբաթ, կին Վանայ քաղաքի ուէս Կարապետի, որ ազատեց գերի ընկած մի Աւետարան, 1308 թ.—Ձեռ. Վասպ. 152։

— Նույն անունը հիշված է նաև 1609 թ. (Bodleian 110՝ Գուլնապաթ), 1621 թ. (Manus. brit. mus. 23 ա), 1706 թ. (Ձեռ. Թաւր. 26 բ), 1749 թ. (Ձեռ. Վենետ. Ա. 450), 1760 թ. (Ձեռ. Դաղեան, Ա. 63 բ)։

*ԳՈՒԼՆԱԶ, իգ. < պրս. گلناز gulnāz «վարդի նման նազելի» բառից։ Գործածական էր իբր անձնանուն նաև Պարսից մեջ. ինչ.

Գուլնազ՝ դուստր Քաշմիրի պալատական մի իշխանի (Les mille et un jours, Paris 1844, էջ 425)։ Մեր մեջ գործածված է 1724 թ. (Ձեռ. Դաղեան, Բ. 35 ա) և այժմ էլ կենդանի է Կովկասում։

*ԳՈՒԼՆԱԶԱՐ, ար. < պրս گلنظر Gulnazar անունից, որ իբր պարսիկի անուն հիշված է Զքր. սարկ. Բ. 3. կազմված է պրս. گل gul «վարդ»+արաբ. نظر nazar «հայացք» բառերից և նշանակում է «վարդահայաց»։ Մեր մեջ իբր արական անուն գործածված է ԺԷ դարից (Զքր. ագուլ. 96) և մի անգամ էլ 1713 թ. (Ձեռ. Թավր. 131 բ), որից էլ Գուլնազարեան ազգանունը։ Արաբական հնչումով գրված է Գուլնադար՝ 1552 թ. (Ձեռ. Վասպ. 656) և երկու անթվական հիշատակարաններում՝ Ձեռ. Մաղն. 35 (Կուլնատար ձևով) և Ձեռ. Վասպ. 641։

*ԳՈՒԼՆԻԳԱՐ, իգ. < պրս. گل gul «վարդ»+نگار nigār «պատկեր» բառերից, իբր «վարդանկար, վարդի պատկեր ունեցող»։ Հնագույն վկայությունը գտնում եմ 1606 թ. (Ձեռ. Թավր. էջ 21 ա)։

*ԳՈՒԼՇԱՀ, իգ. < պրս. گلشاه gulšāh «թագավորական վարդ» կամ «վարդերի թագուհին»։ Այս անունով հայտնի է Իրանյանց մեջ Վերգայի սիրուհին, որի վրա կա գեղեցիկ բանաստեղծական գրվածք (Justi 120 ա)։ Մեր մեջ ունենք մի անգամ՝

— Կուլշայ, մորաքույր Զաքար աբեղայի, որ մի Շարակնոց գնեց 1487 թ.—Ձեռ. Հալէպի, Ա. 27 բ։

*ԳՈՒԼՇԱԴ, իգ. < պրս. گلشاد gul-šād «վարդուրախ» բառից։ Այս անունով հայտնի է Պարսից մեջ պատմող մի կին (Justi 120 ա)։ Հայերենի մեջ պիտի լիներ Գուլշադ, բայց մի կողմից նոր տառադարձության օրենքով և մյուս կողմից հյ. շատ բառի նմանությամբ դարձել է Գուլշատ, որ հիշված է ԺԵ դարում։

— 1. Գուլշատ, դուստր Ստեփաննոսի և քույր տանուտեր Էդիլշահի, որ Արծկէում գրել տվեց մի Ավետարան, 1463 թ.—Ձեռ. Վենետ. Ա. 620։

— 2. Գուլշատ, կին Կիրակոսի և մայր պարոն Նորտունկի, որ օգնական եղավ նույն Ավետարանի գնման, Արծկէում, 1463 թ.—Ձեռ. Վենետ. Ա. 621։

— 3. Գուլշատ խաթուն, դուստր Սիրունի. Արծկէում, Յակոբ քահանային գրել տվեց մի Ավետարան, 1464 թ.—Նոտարք 218—9։

— Հիշված է նույնպես ԺԷ դարում (Տաշեան, Ցուց. 583—

584), իսկ Ձեռ. Ագուլ. (Արար. 1911, 218) Գուլշարխթն պետք է կարդալ Գուլշատ խաթուն։

†ԳՈՒԼՈՍԿԻ, իգ.<պրս. گل gul+հյ. ոսկի բառերից, իբր «ոսկեվարդ», որով բառը դառնում է թարգմանություն Գուլխզար անվան, որ տես։ Գտնում եմ մի անգամ միայն գործածված անթվական մի հիշատակարանում՝ Ձեռ. Վասպ. 830։

†ԳՈՒԼՈՒԼ, իգ.<հյ. ժղ. գլուլ, գուլուլ «կլորիկ, գնդլիկ» բառից. գործածված է մի անգամ 1690 թ. (Ձեռ. Վասպ. 973)։

*ԳՈՒԼՈՒՄ, իգ.<Թրք. گلم gülüm «վարդս, իմ վարդը» բառից, ինչպես կան Շահում, Բէգում են։ Գրված նաև Կուլում, Կիւլիւմ (վերջինս 1647 թ. Ձեռ. Վասպ. 269)։ Սկսում է գործածվել ԺԵ դարից։

— 1. Գուլում, դուստր Յովհաննէսի և քույր Մուրադի, որ Արճէշում գրել տվեց մի Աւետարան, 1486 թ.—Ձեռ. Վասպ. 498 (ուր կոչվում է նաև Գուլ)։

— 2. Գուլում, դուստր Մաթէոս քահանայի, որ Եղեգեաց անապատում գրել տվեց մի Աւետարան, 1496 թ.—Ձեռ. Նորբայազ. 7 բ։

— ԺԶ դարում հիշատակվում են 1512 թ. (Ձեռ. Վասպ. 84, ուր սխալ է 1212 թվականը), 1557 թ. (Ձեռ. Վենետ. Ա. 529), 1590 թ. (անդ 721), 1592 թ. (Ձեռ. Վասպ. 731)։ Ավելի շատ են ԺԷ դարի հիշատակությունները, որ չեմ հիշում։

*ԳՈՒԼՈՒՍՏԱ, իգ.<Թրք. گل اوسته gül-üste «վարդից վեր, գերազանց քան վարդը». մի անգամ գտնում եմ գործածված որոշյալ Կուլուստէն ձևով՝ ԺԷ դար (Ձեռ. Կես. սարգ. 13 բ)։

*ԳՈՒԼՋԻՆԱՐ, իգ.<պրս. گل چنار gul-i-činār «սոսիի ծաղիկ». մի անգամ հիշատակված է 1662 թ. (Ձեռ. Վենետ. Ա. 653)։

*ԳՈՒԼՋԻՋԱՔ, իգ.<պրս. گل gul «վարդ»+Թրք. چیچك čiček «ծաղիկ» բառերից։ Հիշված է ԺԵ—ԺԶ դարերին։

— Գուլչիչաք, դուստր Ղարիբշահի, որ Արծկէի վանքում գրել տվեց մի Աւետարան, 1486 թ.—Ձեռ. Վասպ. 501։

— Հիշված է նաև 1595 թ.—Ձեռ. Վասպ. 744։

*ԳՈՒԼՋԷ, իգ.<պրս. گلچه gulče «փոքրիկ վարդ». մի անգամ գտնում եմ գործածված անթվական մի հիշատակարանում՝ Ձեռ. Վասպ. 767։

*ԳՈՒԼՋԻՀԱՆ, իգ.<պրս. گل جهان gul-i-ǰihān «աշխարհի վարդը» ձևից. մի անգամ գտնում եմ գործածված 1666 թ. (Ձեռ. Սեբ.=ՀԱ 1927, 37 Կուլճիհան ձևով). երկրորդ անգամ Գուլջըհան

ձևով 1747 թ. (Ձեռ. Ագուլ.=Արրտ. 1911, 222), և երրորդ անգամ՝ անթվական մի հիշատակարանում Կուլճահան ձևով՝ Ձեռ. Թաւր. 76 բ։

*ԳՈՒԼՍԱՆ, իգ. < պրս. گلسان gulsān «վարդի պես, վարդանման» բառից. հիշված է մի անգամ 1504 թ. (Ձեռ. Դաղեան, Բ. 31 բ)։

Գուլսար տե՛ս Գուլասար։

*ԳՈՒԼՍԵՎԱՆ, ար. ⊲ Թրք. گلسوان gül-seven «վարդ սիրող» բառից. հիշված է մի անգամ 1490 թվից ուշ գրված անթվական մի հիշատակարանում (Ձեռ. Նոր-Բայազ. 23 բ)։

*ԳՈՒԼՍՈՒՐԱԹ, իգ. < պրս. گل gul «վարդ»+արաբ. صورت şurat «դեմք» բառերից, իբր «վարդերես», ինչպես ունինք պրս. Gul-čahra և հայերեն Վարդերես անունները։ Հիշատակված է մի անգամ՝ անթվական մի հիշատակարանում (Քոսեան, Հայք ի Ջմիւռն. Բ. 19), սխալագիր Գուլսուրափ ձևով։

†ԳՈՒԼՎԱՐԴ, իգ. < պրս. گل gul «վարդ»+հյ. վարդ բառերից, ճիշտ ինչպես ունինք պրս. gulgul «վարդագույն վարդ»։ Գրված է Գուլվարդ, Կուլվարդ, Գուլիվարդ և հիշված է 1561 թ. (Ձեռ. Դաղեան, Ա. 46 բ), 1606 թ. (Ձեռ. Վեննա. Ա. 660), 1619 թ. (Ձեռ. Վասպ. 860), 1629 թ. (Կամենից 182, ՀԱ 1890, 20 ա), 1635 թ. (Ձեռ. Վասպ. 886—8), 1693 թ. (անդ 335) և մի քանի անթվական հիշատակարաններում (Ձեռ. Վեննա. Ա. 582, 610, Թորոս աղբ. Բ. 366, 370, Ձեռ. Վասպ. 344)։ Գործածական է երբեմն նաև այժմ։

*ԳՈՒԼՓԱՇԱ, իգ. < պրս. گل gul «վարդ»+Թրք. پاشا paša բառերից. իբր «վարդերի փաշան»։ Գործածված է ԺԵ—ԺԷ դարերում։

— 1. Գուլփաշա, կին Վրթանէս քահանայի, որ Թովմա աբեղային գրել տվեց մի Աւետարան, 1456 թ.—Ձեռ. Դաղեան, Բ. 31 ա։

— 2. Գուլփասա, դուստր Էդիլշահի, որ Արծկէում գրել տվեց մի Աւետարան, 1463 թ.—Ձեռ. Վեննա. Ա. 620։

— 3. Կուլփաշայ, կին Էրկիլի և մայր Զաքարիա աբեղայի, որ ստացավ մի Շարական, 1487 թ.—Ձեռ. Հալէպի, Ա. 27 ա։

— Հիշված է նաև 1533 թ. (Ձեռ. Վեննա. Ա. 622՝ Կուլբաշա ձևով), 1602 թ. (Ձեռ. Վասպ. 807), 1626 թ. (Ձեռ. Վասպ. 869), 1630 թ. (Թորոս աղբ. Բ. 451)։

*ԳՈՒԼՓԱՐԷ, իգ. ⊲ պրս. گل gul «վարդ»+پاره pare «կտոր»,

իբր թե «վարդենատ, վարդի կտոր»։ Մի անգամ գտնում եմ գործածված 1587 թ. (Bodleian 107)։

*ԳՈՒԼՓԵՐԻԿ, իգ. < պրս. گل gul «վարդ»+پری peri «պարիկ», իբր «վարդապարիկ»։ Մի անգամ գտնում եմ գործածված 1635 թ. (Bodleian 107)։

*ԳՈՒԼՔԱՆ, իգ. < պրս. گل gul «վարդ»+کان kān «հանք» բառերից, իբրև «վարդերի հանք»։ Հնագույն հիշատակությունն ունի Ձեռ. Թաւր. 103 բ՝ 1457 թ. Գուլքան խաթուն ձևով։ Այնուհետև մի անգամ գտնում եմ գործածված 1660 թ. (Ձեռ. Հալեպի, Ա. 178 բ), նույնը երկու անթվական հիշատակությանց մեջ (Ձեռ. Նոր-Բայազ. 31 ա և Ձեռ. Սևանի 5 բ)։ Վերջապես կա նաև Արևմտահայ տառադարձությամբ՝ Կուլգան, ար. 1703 թ. (Սիւրմէեան, Պատմ. Հալէպի գերեզմ. 33 ա)։ Սրանից է Գուլքանեան ազգանունը (Լոռի)։

*ԳՈՒԼՕ, ար. անշուշտ գործածական է եղել, որից էլ Գուլոյեան ազգանունը (Կովկաս)։ Բայց սա առանձին անուն չէ, այլ Գուլ անվան կոչականը։

*ԳՈՒՆԱՇ, իգ. < թրք. گونش güneš «արեգակ, արև» բառից. գործածված է ԺԴ—ԺԶ դարերում։

— 1. Կունաշ ոմն, Սեբաստիայում հիշված 1350 թ.—Տաշեան, Ցուց. 107 բ։

— 2. Գունաշ, կին Ապտէի և մայր Խասսայի, որ ստացավ մի հին Ավետարան, 1441 թ.—Manus. brit. mus. 3 բ։

— 3. Գունաշ, հոգևոր մայր Յովհաննէս աբեղայի, որ Արբակի Ամփիթան գյուղում ստացավ մի Ավետարան, 1458 թ.—Ձեռ. Թաւր։ 69 բ։

— 4. Գունաշ (սխալ գրված Գունազ) հիշված է նաև 1513 թ. մի տապանագրում՝ Բոստ-Մահմադ գյուղում (Սիսական 42)։

*ԳՈՒՆԴՈՒԶ, ար. < թրք. گوندوز gündüz «կեսօր» բառից, որ նաև այժմ Թուրքերի մեջ գործածական է իբր անձնանուն։ Մեր մեջ հիշատակված է մի անգամ 1513 թ. Կունդուզ ոմն Գանձակեցի (Օրբ. ԺՄ. 46, Սիսական 34)։

ԳՈՒՇԱՐ, ար. ծագումն անհայտ։

— Գուշար հայկազն, Շարայի ցեղից. Վաղարշակը պարգևեց նրան Կանգարք, Ջավախք, Կող, Ծոփ, Ձոր, մինչև Հնարակերտ բերդը. իսկ նրա սերունդին Աշոցք և Տաշիր գավառները.—սեռ. Գուշարայ՝ Խոր. Բ. գ, ը, հը. Ասող. Ա. ե. Սամ. անեց. 48. —իսկ Խոր. Բ. ը Գուշարայ կամ ուղղական է կամ տրական. հայտնապես ուղղական է Գուշարայ՝ Ասող. Ա. ե։

*ԳՈՒԹԲԷԳ, *ար. ըստ իս համառոտված է Գուռջբէգ ձևից. մի անգամ գտնում եմ գործածված Գուռբէկ ձևով, անթվական մի հիշատակարանում՝ Ձեռ. Վասպ. 560։ Համտ. Գուռմելիք և տե՛ս Գուրջիբէգ։*

*ԳՈՒԹՄԵԼԻՔ, *իգ. ըստ իս նախորդի նման համառոտված է* Գուրջիմելիք *«Վրաց իշխան» բառից. տե՛ս Գուրջիբէգ։*

— 1. Գուռմելիք, *կին Կարապետ քահանայի և մայր Դանիէլ սարկավագի, որ օրինակեց Մաշտոցը՝ Կիրակոս քահանայի համար, 1404 թ.—Թորոս աղբ. Բ. 277։*

— 2. Գուռմկլիք, *կին Խաչատուրի և մայր Յովսէփ աբեղայի, որ Մկրտիչ Նաղաշից ստացավ Ամիթում մի Աստուածաշունչ՝ 1449 թ.—Ձեռ. Վենետ. Ա. 115։*

*ԳՈՒԹՋԻԿ, *իգ. < թրք.* گرجی gurǰi *«վրացի» բառից. համտ. Գուրջիբէգ։ Երկու անգամ գտնում եմ գործածված Թանատի վանքի անթվական մի արձանագրության մեջ՝ Սիսական 123—4։*

†ԳՈՒՍԱՆ, *ար. < հյ.* գուսան *«երգիչ» բառից, որ իրանական ծագում ունի։ Իրանցոց մեջ էլ Գուսան գործածվում է իբրև անձնանուն. ինչ.* Kūsān *երգիչ* Maubad *թագավորի* (Justi *169ա*)։

— Գուսան, *հայ, գրավեց Արաբներից Կարինը, որ նվաճել էին Մուավիէ (661—680) ամիրապետի ժամանակ (750 թ).—* Justi *169 ա (ըստ Բելադորի, որ գրում է* Kūsān)։

ԳՈՒՐԲԱՋ, *իգ. ծագումն անհայտ. հիշված է անթվական մի արձանագրության մեջ՝ Սիսական 175* Գիւրբաջ *ձևով։*

*ԳՈՒՐԳԷՆ, *ար. < պհլ.* *Gurgēn *ձևից, որի շարունակությունն է պրս.* گرگین Gurgīn։ *Այս անունով հայտնի է Պարսից Քէյքավուս թագավորի իշխաններից մին (Շահն. 1, 387)։ Բուռն ավելի հին ձևն է Վրկէն < իրան.* *Vurkēn *(տե՛ս առանձին), որ ծագում է զնդ.* vəhrka, *սանս.* vr̥ka, *պրս.* گرگ gurg *«գայլ» բառից և նշանակում է բուն «գայլեղեն, գայլի պես քաջ». համտ. Իրանի Վրկան աշխարհը, ավելի նոր ձևով Գուրգան, որ է հպրս.* Vrkāna, *զնդ.* Vehrkāna, *հուն.* Ὑρκανία, *պրս.* Gurgān, *պհլ.* Gurgān, *սոր.* Gurgān *(նույն* vəhrka, vr̥ka *«գայլ» բառից)։ Ըստ այսմ Գուրգէն անվան համազորներն են գերմ.* Adolf *«ազնվական գայլ», հուն.* Λύκος, *լտ.* Lupus, *հյ. Գայլուկ (որ տե՛ս)։ Վրաց մեջ էլ կա Գուրգասլան թագավոր (որ է պրս.* gurg *«գայլ»+թրք.* aslan *«առյուծ»)։ Իրանական անունը ունինք նաև* Գուրգեն *ձևով, որի հուն. տառադարձությունն է* Γουργένης *թագավոր Վրաց (ըստ Պրոկոպիոսի)։—Հիւբշ. 86,* Justi *355։*

— 1. Գուրգէն իշխան, հայոց 572 թվի ապստամբության ժամանակ մի խումբ հայեր տարավ Բյուզանդիոն, ուր նրանք հպատակվելով հունաց, ընդունեցին նրանց դավանությունը (տես Ակինեան, Կիւրիոն կթղ. 99 ըստ Թէոփ. Բիւզ. էջ 485)։

— 2. Գուրգէն, քարտուղար Հայոց Մեծաց. Յովհաննէս կաթուղիկոսի հրամանով թարգմանեց հունարենից Գիրք հակաճառական ընդդեմ ժողովոյն Քաղկեդոնի (Գիրք էակաց), 627 թ. (տես Սամուէլ Անեցու հրատարակության մեջ, էջ 302, Ակինեան՝ Դասական հայերէնը, էջ 116, Կոնիբիր՝ Քնն. Դաւ. անյ. էջ 17, Ազգապ. 562—3. իսկ ըստ Յղ. մովս. և դաւթի, էջ 87 նույն Գուրգէնը միայն ստացող է էակաց գրոց)։

— 3. Գուրգէն Գնունի, եղբայր Դաւիթ Գնունւոյ. միասին հարձակվեցին Բուղայի վրա, շատ մարդ կոտորեցին, գերիներին ազատեցին, բայց իրենք էլ բռնվելով՝ նահատակվեցին հավատքը չուրանալու պատճառով.—գրված է ուղ. Գորգէն, սեռ. Գորգենայ՝ Յայսմ. մայ. 27 (շփոթված է ներքև հիշված Գուրգէն և Դաւիթ եղբայրների հետ, ինչպես ընդունում է նաև Զամչ. Բ. 1035)։

— 4. Գուրգէն Արծրունի, եղբայր Աշոտի՝ մեծ իշխանի Վասպուրականի. մասնակցեց Մուսէի պատերազմին «851 թ». հաջողությամբ դիմադրեց Բուղային, որ երդումով կանչեց նրան իր մոտ, պատիժներ տվեց, բայց հետո գերի քշեց Բաղդադ «852 թ»։ Գերությունից դառնալով՝ պատերազմի պատրաստվեց Գուրգէն Ապուսեճի դեմ, բայց հաշտվեց։—Արծր. Բ. գ. Գ. ը—ե, ժդ. —սեռ. Գուրգենի՝ Արծր. Գ. ե, ժդ.—Գուրգինայ՝ Արծր. Բ. գ. Գ. դ.—Գուրգինի՝ Արծր. Գ. դ։

— 5. Գուրգէն Արծրունի, տեր Անձևացեաց. սրա հրամանով, 873 թվին, ասորերենից հայերեն թարգմանվեց Աբդլմսեհի վկայաբանությունը.—Զարբ. Հին դպր. 531. Թրգմ. 719. Manus. bibl. nat. 59. Ջեռ. Վենետ. Բ. 381. Տաշեան, Ցուց. 576ա (նույն է նախորդի հետ կամ տակի Գուրգէն Անձևացեաց իշխանի հետ, որովհետև թե սրա և թե նրա կինն է Հեղինէ)։

— 6. Գուրգէն ոմն, Աշոտ Ա թագավորի հետ էր, երբ սա գնաց ազատելու Գրիգոր-Դերենիկին՝ Հասանի ձեռքից.—Արծր. Գ. ի (Մալխասեան, տես Արծր. հրտր. Պատկ. ցանկում՝ համարում է Գրիգոր-Դերենիկի որդին, որ այն ժամանակ 2—3 տարեկան միայն կարող էր լինել. ուստի հարմար չեմ կարծում. բայց թե ով էր և ինչ ցեղից՝ հայտնի չէ)։

— 7. Գուրգէն զորավար Վասիլ կայսեր. մի սուտ մարգա-

րև զուշակել էր թե կայսերական գահին տեր պիտի դառնա։ Ուստի 66 մեծամեծների գլուխն անցած դավադրություն կազմեց կայսեր դեմ։ Անդամներից մեկը մատնեց. Վասիլ կայսրը Գուրգէնին կուրացրեց և բոլորի հետ աքսորեց (886 թ).—Տեր Սահակեան, Հայ կայսրք, Ա. 212, 353։

— 8. Գուրգեն, իշխան Գուգարաց. քեռայր Աշոտ Ա Թագավորի. պատերազմեց Վրաց Ատրներսեհ Թագավորի դեմ Արտանուչի դաշտում, ուր և մեռավ 891 թ. (ըստ Ցուշիկք, Ա. 511).—տես. Գուրգենայ՝ Յհ. կթ. ր։

— 9. Գուրգեն իշխան Անձևացեաց, որդի Ապուպելճի և եղբայր Մուշեղ Ապուպելճի. ժամանակցեց Մուսէի պատերազմին «851 թ». օգնական էր Վասպուրականի Աշոտ իշխանին. Բու ղայի ժամանակ քաշվեց Ցոնահայք, մեծ քաջություններ գործեց, ապա եկավ Վասպուրական, քշեց Արաբներին և տիրեց այդ նահանգին։ Ունեցավ մի քանի պատերազմներ Գրիգոր-Դերենիկի հետ, բայց ապա հաշտվեց։ Ամուսնացավ Անձևացեաց Հեղինէ իշխանուհու հետ և տեր դարձավ Անձևացեաց ու Կանգուար բերդին։ Պատերազմեց Մոկաց Մուշեղ իշխանի դեմ և սպանեց նրան «շուրջ 894 թ»։ Երկու տարի հետո, ձիուց ընկնելով մեռավ (Սմբատ Ա-ի օրով)։ Այս է Ծերենցի «Երկունք» վեպի մեջ դուրս բերված Գուրգէն իշխանը.—Յհ. կթ. լդ. Արծր. Բ. զ. Գ. ժա—ժե, ժէ, իբ.—տես. Գուրգենի՝ Արծր. Գ. ժգ, ժդ.—Գուրգինայ՝ Արծր. Բ. զ. Գ. դ, ժգ, ժե, իբ.—Գուրգենայ՝ Յհ. կթ. լդ. Արծր. Գ. ժգ, ժե. —Գուրգինի՝ Արծր. Գ. ժգ, ժդ, ժէ, ժը։—Մանրամասն մենագրությունը կազմել է Laurent REA 2, 157—188։—Երևի թե սա է «Գուրգէն», հիշված Գէորգ և Հասան Անձևացիների հետ՝ Եղիշէի Անձևացեաց օրինակում. տես Գալֆայեան, Եղիշէ, տպ. Թէոդոսիա 1861, էջ գ—է.—ըստ Ակինեան՝ Եղիշէ Ա. 109 կեղծիք։

— 10. Գուրգեն Բագրատունի, եղբորորդի Տարօնի Դաւիթ կիւրապաղատի. սրա մահից հետո ժառանգեց Տարօնի իշխանությունը. սպանվեց Ահմադ ոստիկանի զինվորներից «894 կամ 895 թ».—Յհ. կթ. լդ. Արծր. Գ. իբ։

— 11. Գուրգեն Մոկացի, եղբայր Գրիգոր իշխանի Մոկաց. երկուսով միացան Գագիկ Արծրունի Թագավորին՝ վանելու համար Յուսուփ ոստիկանի արշավանքները.—գրծ. Գուրգենու՝ Յհ. կթ. ծե.

— 12. Գուրգեն Գնունի, հավատքը չուրանալով նահատակ-

վեց Դուինում, իր Դաւիթ եղբոր հետ՝ Յուսուփ ոստիկանից, Աշոտ Բ-ի ժամանակ («915—930 թ»).—Յհ. կթ. ծա. Ասող. Գ. ե. Վրդ. խզ. Յայսմ. ապր. 16. Մխ. այրիվ. 71։

— 13. **Գուրգէն**, որդի Գրիգոր-Դերենիկի Գ. քեռորդի Սմբատ Ա-ի և եղբայր Գագիկ Արծրունի թագաւորի. ծնվել է 881 թ. Գագիկ Ապումրվան Արծրունու ձեռքով բանտարկվեց եղբորը՝ Աշոտի հետ, որ ապստամբվել էր Սմբատ Ա թագաւորի դեմ։ Օգնական գնաց Սմբատին՝ պատերազմելու Ափխազաց Դոստաս թագաւորի դեմ, որ գերի էր վերցրել արքայորդի Մուշեղին, և հանդուգն հարձակմամբ ոչ միայն ազատեց Մուշեղին, այլ և Դոստասին էլ բռնեց ու Սմբատին հանձնեց։ Աշոտի մահից հետո՝ եղավ մարզպան, հրամանավ Սմբատ Ա-ի։ Միացավ Յուսուփի հետ՝ կռվելու համար Սմբատ Ա թագաւորի դեմ և այնուհետև միշտ գործակից էր իր եղբոր՝ Գագիկին։—Յհ. կթ. լդ, լը, խգ, կդ. Արծր. Գ. ժթ, ի, իը, իգ, իե, իթ, լ. Դ. ա—գ. Հաւաք. 33 (կոչում է Գուրգէն արքայ հանգուարի).—կոչվում է Գորգ՝ Մին. համգ. 31. —**Գորգեն**՝ Սուտ-Շապհ. 64, 71. 81—85.—սեռ. **Գուրգենայ**՝ Օրբ. խբ.—**Գուրգինայ**՝ Արծր. Գ. իբ.—**Գուրգինի**՝ Արծր. Գ. իդ, իե, իթ. —գրծ. **Գուրգենաւ**՝ Յհ. կթ. խը, ծա, կդ, կէ։—Ա՞յս է Գուրգէն իշխանաց իշխան՝ Վրաց պղբ. Ա. 92, 203։

— 14. **Գուրգեն**, իշխան Գուգարաց. սրա մոտ հանգստացավ Աշոտ Երկաթը՝ Վասակ և Աշոտ Գնթունիների ապստամբությունը զսպելուց հետո։ Օգնական զորք տվեց Աշոտին՝ կռվելու համար Շապուհի որդի Աշոտի դեմ «922 թ»։ Միանալով Աբասի հետ՝ դավադրություն կազմեց Աշոտի դեմ, որից սակայն ազատվեց Աշոտը։—Ազգապ. 1052։ Սրա հետ նույն է՝

— 15. Գուրգէն իշխան, սիրելի և գործակից Աշոտ Բ-ի.—Յհ. կթ. ծ, ծէ։

— 16. **Գուրգեն** հայկազն, նշանավոր զորավար հունաց Ռոմանոս Լեկաբենոս կայսեր (920—944)։ Տասներորդ դարի մեծագույն զորավարն է, որին իր ժամանակակիցները Բելիսարիոսից էլ բարձր են համարում։ Մանուէլ հույն պատմիչը գրել է նրա մասին 8 գիրք, որոնք սակայն կորել են։ Իր առաջին գործն եղավ Պոնտոսի նվաճումը։ Այդ ժամանակ Պոնտոսում և Խաղտիքում ուժեղ հայ գաղութ կար։ Այդ երկրների կառավարիչն էր հայազգի Վարդ Բոյլ, որի խորհրդով Տաճատ անունով մեծահարուստ մի հայ, Ադրիանոս Խաղտիացու հետ միացած, ապստամբեց հունաց դեմ, Բաբերդը գրավեց և այնտեղ ամրացավ։

Գուրգէնը՝ որ գտնվում էր Կապադովկիայում, շտապեց նրա վրա, դրավեց Բաբերդը, Սղրիանոսին բռնեց, կուրացրեց, նրա զինվորներին ցրվեց և Տաճատին էլ ձերբակալելով՝ Պոլիս ուղարկեց։ Այնուհետև Գուրգէն գնաց Արաբների դեմ, որոնք կենտրոնացել էին Մելիտինէում, որ շատ ամրացրել էին։ Գուրգէն նախ բոլոր շրջակա գյուղերը կործանեց և կրակի մատնեց. այնպես որ քաղաքի պարիսպներից դիտողը մի բոցավառ ծով միայն պիտի տեսներ չորս դին։ Այսպես քաղաքը գյուղերից զրկելուց հետո, հարձակվեց նրա վրա։ Արաբների զորավարն էր քաջն Աբուխաֆս ամիրան, որ բավական ժամանակ պաշարից ու զինվորական օգնությունից զուրկ մնալուց հետո, ստիպվեց քաղաքի մեծամեծների հետ Գուրգէնի վրանը գնալ և ծունր դրած՝ քաղաքի բանալիները նրան հանձնեց։ Գուրգէնը կյանք խոստացավ նրան, եթե իր զենքը Արաբների դեմ դարձներ։ Աբուխաֆս ընդունեց և դյուցազնաբար կռվեց իր հայրենակիցների դեմ։ Գուրգէն հաղթանակով դարձավ Պոլիս։ Քաղաքը շատ փառահեղ ընդունելություն արեց Գուրգէնին, որի հետևից գալիս էին հայկական և հունական գնդերը, վերջն էլ արաբ շղթայակապ գերիների բանակը։ Աբուխաֆս մեռավ և Արաբները նորից ապստամբեցրին Մելիտինէն։ Գուրգէն, իր հետ վերցնելով Մելիաս հայ զորավարին, հայ գնդերով հասավ Մելիտինէ և նվաճեց (934)։ Այնուհետև Գուրգէնը օգնության գնաց Հայոց Աբաս թագավորին («930—954 թ»), որ նստում էր Կարսում։ Անցնելով Բասէն, Դուին, Ախլաթ և Բաղէշ, այդ քաղաքների մզկիթների վրա խաչ բարձրացրեց։ Ավերելով Տիգրանակերտի շրջակա երկրները և բնակիչներին կոտորելով, հասավ Եդեսիա։ Խոստացավ արաբներին քաղաքը և նրանց բոլոր գերիներին ազատ թողնել, եթե Քրիստոսի դաստառակը իրեն հանձնեն։ Դա քաղաքի մեծագույն սրբությունն էր։ Արաբները ուրախացան այսքան թեթև պայմանի վրա և դաստառակը Գուրգէնին ուղարկեցին։ Գուրգէնը մեծ փառքով և անձամբ փոխադրեց այդ դաստառակը Պոլիս, ուր ժողովուրդն ու պետությունը ամենաշքեղ ընդունելությունը ցույց տվին (944)։ Գուրգէնի վերջին գործն է Ռուսաց դեմ պատերազմը, որ տեղի ունեցավ 941 թվին։ 40,000 զորքով և 2000 նավակներով արշավեցին նրանք Պոլսի վրա՝ հրամանատարությամբ ծովակալ Ինգոր իշխանի։ Հույն նավատորմիղը՝ հունական հուրով զինված դուրս եկավ նրանց դեմ և սկսեց վառել նավակները։ Ռուսները նեղը մնացած և իրենց փախուստի

ճանապարհը ծովից կտրված տեսնելով, ցամաք դուրս եկան։ Այստեղ վրա հասավ Գուրգէնը, որ թշնամու արշավանքը լսելով՝ Հայաստանից ճանապարհ էր ընկել։ Ինգորը սպանվեց, նավատորմիղը խորտակվեց և ռուսները ետ փախան։—Տէր Սահակեան, Հայ կայսրք Բ. 59, 67—75։

— 17. Գուրգէն, իշխան Աղուան. մասնակցեց Դաւիթ Զ կաթողիկոսի ընտրության «962 թ».—սեռ. Գուրգէնայ՝ Օրբ. ծա։

— 18. Գուրգէն Բագրատունի, Վրաց Աշոտ կյուրապաղատի թոռան թոռանը որդին.—Վրք. խղ։

— 19. Գուրգէն Անձևացի. օգնական Աշոտ Գ-ի, երբ սա գնում էր Զմշկիկ կայսեր դեմ.—Սմբ. պատմ. 32 (եթե չէ շփոթած Գուրգէն Անձևացեաց թագավորի հետ. որովհետև նույն տեղում միայն թագավորներն են հիշված և երկրորդ՝ Սմբատ պատմիչի այս հատվածը շատ խառնակ է)։

— 20. Գուրգէն Ա. Բագրատունի, որդի Աշոտ Գ Ողորմածի, եղբայր Սմբատ Բ և Գագիկ Ա թագավորների. ստացավ Տաշիր, Ձորագետ, Կայեն, Կայծօն, Սոմխեթ և այլն։ Կոչվում է նաև Կյուրիկէ Ա կամ Դերենիկ (որ տես)։ Հիմնադիրն է Կյուրիկեան Բագրատունի թագավորության (Ժ դար), որի սկիզբը Մխ. այրիվ. 71 դնում է 981 թվին։ Սակայն ճիշտ չէ այս թիվը։ Մովսէսեան, Լոռիի Կիւր. թգ. 24 Տաշիրքի թագավորության սկիզբը դնում է 979 թ. ըստ հրովարտակի Սմբատ Բ թագավորի։ Այս հրովարտակը, ինչպես և Գուրգէնի մի հիշատակարանը տես անդ։ Մեռել է 989 թ. և թաղվել Սանահնում, ուր ցուում է մինչև այժմ իր գերեզմանը։ Գուրգէնի նկարը՝ քանդակված Սմբատ Բ-ի հետ՝ թագավորական զգեստով, կա Հաղբատի տաճարի պատի վրա. նկարագրությունը տես Արրտ. 1886, 494 > Մովսէսեան, Լոռիի Կիւր. թագ. 31։ Գուրգէնի որդիներն են Դաւիթ Անհողին և Սմբատ։—Մխ. այրիվ. 71. Վրք. խը. Ուռհ. 10, 17.—սեռ. Գուրգէնայ՝ Ասող. Գ. ը. Լաստ. բ. Վրք. խը, ծ, ծբ, կա. Սամ. անեց. 100, 105.—Մովսէսեան, Լոռիի Կիւր. թգ. 21—38։

— 21. Գուրգէն Արծրունի, թագավոր Արծրունեաց. մկրտական անունով կոչվում էր Խաչիկ. էր որդի Աբուսահլի, թոռն Սենեքերիմի, եղբայր Սահակի. իր հրամանով գրեց Նարեկացին Երգ երգոցի մեկնությունը «977 թ»։ Հիմնել է Ապարանից Ս. Խաչը 983-ին։ Ըստ Ասողիկի՝ թագավորեց «990—1003 թ», իբրև հաջորդ Շահնշահի, գահակից ունենալով իր կրտսեր եղբայր Սենեքերիմին։—Ասող. Գ. խզ. Վրք. ծա. Հաւաք. 38. Գր. Նար.

մատ. 387 (Գորգէն ձևով).—բց. ի Գուրգենայ՝ Գր. Նար. մատ. 367. Ասող. Գ. խգ։

— 22. Գուրգէն, վանական Գնդեվանից, ուր կատարեց շատ շինություններ (ԺԱ դար).—Օրբ. խթ։

— 23. Գուրգէն, Թագավոր Անձևացեաց. օգնեց Աշոտ Դ-ին (մ. «1041 Թ») ընդդեմ Յովհաննէս-Սմբատ Թագավորի.—Ուռհ. 8, 17։

— 24. Գուրգէն, որի որդի Գագիկի մոտ եկավ բնակվեց Գրիգոր Բ Վկայասէր կաթողիկոսը («1066—1105 Թ»)՝ Մուտառասուն եղած ժամանակ.—սեռ. Գուրգենայ՝ Ուռհ. 206։

— 25. Գաւրգեն, որդի Ցխատի, ձեռնավոր. իր միջնորդությամբ Իւանէ Աթաբէկը և Խոշակ Թագուհին Շիրակի մի քանի հարկերը վերացրին, 1228 Թ.—Արձ. Շիրակ 10 ա։

— 26. Գուրգէն (կամ Գորկի), ամիր կամ պարոն, որդի Սեֆեդին արքայունի, եղբայր Աղթամարի Ստեփաննոս և Զաքարիա կաթողիկոսների (ԺԳ դար).—Ակինեան՝ Գաւազանագիրք, էջ 42։

— Հետին պարսկական հնչման համեմատ՝ Գուրգէն անունը գրվում է նաև Գաւրգին 1570 Թ. (Ձեռ. Վասպ. 671—2 և անթվական մի հիշատակարանում՝ Ձեռ. Թաւր. 74 բ), ինչպես և Գորգօն, Գօրգուն (որ տես առանձին)։ Կրճատ ձևն է՝ Գուրգօ 1585 Թ. (Ձեռ. Վասպ. 699). բայց չգիտեմ թե նույնի՞ց է նաև Գուրօ կամ Գօրօ՝ 1786 Թ. (Ձեռ. Վասպ. 262, 264), որից էլ Գօրոյեան ազգանունը (Թաւրիզ)։

*ԳՈՒՐԻԱՍ, ար. < հուն. Γουριας անունից, որ ասոր. Գուրիա անվան տառադարձությունն է։ Մեր մատենագրության մեջ ունինք (Ոսկեդարյան թարգմանությամբ ասորերենից) «Յիշատակ դատակնքաց Գուրիա և Շմոնի» (հրատ. Վղրշպտ. 1896), որ հունական ձևով դարձել է Յայսմաւուրքում Գուրիաս և Սամոնաս։ Այստեղից էլ Գուրիաս անունը՝ գործածված 1667 Թ. (Ձեռ. Վասպ. 930). Նրա եղբայրն էլ կոչվում է հենց Սիմոն։ Հիշված է նաև անթվական մի հիշատակարանում (Bodleian 148)։

*ԳՈՒՐԾԻ, անշուշտ նույն է ինչ որ հաջորդը։

— Գուրծի, որդի Վահրամի, գնեց մի Աւետարան և նվիրեց Մաղարդի վանքին, 1173 Թ.—Rapport Arm. 28։ (Նույնը Սիսական 204 ա գրում է Գուրժի)։

*ԳՈՒՐՋԻԲԷԳ, ար. < Թրք. گرجی بك gurǰi-beg «վրացի իշխան»

բառից. գրված է նաև Կուրճիբէկ, Գուռջիբեգ, Կուռճբէկ ևն։ Գործածված է ԺԳ—ԺԷ դարերում։

—1. Գուրջիբեգ Ա. եղբայր Սեֆեդինի Ա և Նուրադինի, հորեղբայր Ստեփաննոս և Զաքարիա կաթողիկոսաց Աղթամարի (ԺԳ դար).—գրված է Կուռճբեկ՝ Արծր. յաւել., Կուրջիբեգ՝ Հաւաք. 38։

— 2. Գուռջիբեգ, ամիր կամ պարոն, որդի Սեֆեդին արքայունի, եղբայր ամիր Գուրգէնի և Ստեփաննոս և Զաքարիա կաթողիկոսաց Աղթամարի (ԺԳ դար).—Ակինեան՝ Գաւազանագիրք 42։ Սրա որդին է Սմբատ Թագավոր՝ օծված 1466 թ.—Ձեռ. Վիեննա. Բ. 418—9։

— 3. Գուրջիբեգ Բ. ամիր, որդի Ամիր Գուրգէնի, եղբոր Զաքարիա կաթողիկոսի Աղթամարայ, եղբայր Սեֆեդինի Ա. և Դաւիթ Բ կաթողիկոսի Աղթամարայ, որ նստել է 1346—1368?—գրված է Ամիր Կուրճբէկ՝ Արծր. յաւել։

—4. Գուռջիբեկ, որդի Կարապետ կրոնավորի, որ օրինակեց մի Աւետարան, 1344 թ.—Թորոս աղբ. Բ. 355։

— 5. Գուռճիբեկ, մեռել է 1376 թ. կինն է Մելիք խաթուն. հավանաբար Աղթամարի Զաքարիա Բ Նահատակ (մ. 1393) կաթողիկոսի ծնողներն են.—Ազգագր. հանդ. Ի, էջ 211 (տապանաքարի վրա), Ակինեան, Գաւազանագիրք 67։

— 6. Կուրճի պեկ (կամ Կուրջի բէկ) որդի Ստեփաննոսի և եղբայր Զաքարիա Գ (1434—1464) կաթողիկոսի Աղթամարի. հայր Ստեփանոս Դ կաթողիկոսի Աղթամարի և Սմբատ Թագավորի. անորոշաբար հիշված է Հաւաք. 41—42 և շատ որոշ է Ակինեան, Գաւազանագիրք 86 ծանոթ։

— 7. Գուռջիբեկ (կամ Կուռճիբէկ), վաղամեռիկ որդի Գաւաշեցի Ղուզիկ Թումայի, որ ստացավ մի Աւետարան, 1444 թ.—Ձեռ. Վասպ. 385, 387—8, 392։

— 8. Գուրջիբեկ կամ Կուռճիբեկ, հայր Ստեփաննոս Գ կաթողիկոսի Աղթամարայ, ինչպես և Ներսէս եպիսկոպոսի, որ Աղթամարում օրինակեց Աւետարանը, 1448 թ, ապա 1460 թ. և ապա 1461 թ.—Նոտարք 159, Ձեռ. Վասպ. 434, 437։

— 9. Գուռջիբեկ, որդի Ջանիբէկի և եղբայր Ջոշկանց Կիրակոս երեցի, որ Բաղէշում սկսեց օրինակել Ճառընտիրը և վերջացրեց Աղթամարում, 1467 թ.—Նոտարք 237։

— 10. Կուրճի բեկ, հայր խոջա Յակոբի, որ Խարբերդի Խուլաու վանքում գրել տվեց մի Յայսմաւուրք՝ 1482 թ.—Bodleian 33։

— 11. Գուրջիբեկ, մեծ հայր Կիրակոս երեց Բաղիշեցու, որ մի Աւետարան գնեց ու նվիրեց եկեղեցուն, 1487 թ.—Ձեռ. Վասպ. 116:

— 12. Գուրջիբեկ, տանուտեր Մաշկադդակի. Նորոգել տվեց մի Աւետարան, 1490 թ.—Ձեռ. Վասպ. 573։

— Գուրջիբեկ անունը հիշված է նաև 1560 թ. (Ձեռ. Վասպ. 661), 1625 թ. (անդ 869), Կուռճի 1637 թ. (Manus. brit. mus. 27 ա), նաև անթվական մի հիշատակարանում (Ձեռ. Վասպ. 285 և Ձեռ. Նոր-Բայազ. 43 բ)։

*ԳՈՒՐՋԻԽԱԹՈՒՆ, իգ.<թրք. گرجی gurǰi «վրացի» բառից +խաթուն։ Գործածված է ԺԴ—ԺԵ դարերում։

— 1· Գուրջի խաթուն, ազգական Յովհաննէս գրչի, որ Վարագայ վանքում արտագրեց մի Ճառընտիր, 1399 թ.—Թորոս աղբ. Բ. 429։

— 2. Գուրջի խաթուն, կին խոջա Աստոմի, որ միջնորդ եղավ, որպեսզի Խաչատուր ոմն Աղթամարում գրել տա մի Աւետարան և նվիրե Աստոմ քահանային, 1418 թ.—Ձեռ. Վասպ. 312։

*ԳՈՒՓՐԱՅ, կա միայն որոշյալ հոլով Գուփրէն ձևով. համարում եմ <արաբ. غفران ġufrān «մեղքերի թողություն կամ քավություն» բառից։ Հիշված եմ գտնում մի անգամ ԺԸ դարում (Ձեռ. Արգ. յովհ. 163)։

+ԳՈԶԻԿ, ար. ըստ իս ոչ թե անուն, այլ մականուն է, իբրև գուզիկ «գոուզ մազերով» և կամ ժղ. գոզիկ «դաշտային մի բույս, ուտելի և համեղ»։

— Գոզիկ Այրիվանեցի, միայնակյաց, նշանավոր երգիչ. հեղինակ է «մեսեդի» կոչված երգերի (ԺԱ դար).—Ալիշան, Շնորհ. էջ 90, Ձեռ. Վենետ. Բ. 854 (փխ. գրելու Այրիվանեցի՝ գրում է «միայնակեաց յՇրիվանս»)։

+ԳՏԱՑ, իգ.<հյ. գտայ «գտել եմ» բայից։ Մի անգամ գտնում եմ գործածված 1585 թ. (Թորոս աղբ. Բ. 368)· ըստ այսմ սրան համազոր է Գդուբիկ (տես էջ 451), որ ծագած եմ համարում ժղ. գտնուբիկ, գտածուբիկ «գտնված» բառից։

*ԳՐԱԿՈՍ, ար.<չէ անշուշտ լտ. Gracchus > հուն. Γράκχος անունից, այլ աղավաղված Գրաքոս ձևից, որ Ցայսմաւուրքի մեջ անցած սրբերից մեկն է (դեկտ. 9)։ Մի անգամ գտնում եմ հիշված մեր մեջ՝ 1661 թ. (Ձեռ. Վասպ. 920)։

*ԳՐԱՄԱՐՏԻԿ, այս անունով հայտնի է Գրամարտիկ Կլայեցի, որ հունադավան դարձավ և պախարակում էր Հայոց կրոնը

*(ԺԱ դար).—Զամչ. Գ. 24։ Անշուշտ տիտղոս է և ոչ թե անուն, ինչպես ունենք Լևոն Գրամատիկ (քերականագետ) պատմիչ հույն։*

**ԳՐԱՄԻԿ**, *ար. ծագումն անհայտ։ Ունենք միայն մի անգամ՝*

— Գրամիկ *ոմն, նվիրատու Ցախացքարի վանքին, 1317 թ. —Սիսական 156։*

***ԳՐԻԳՈՐ**, *ար. < հուն.* Γρηγόριος *անունից, որ բուն նշանակում է «արթուն». ծագում է* γρήγορέω *«արթուն մնալ, հսկել» բայից։ Փոխառությամբ անցել է բոլոր քրիստոնյա ազգերին. ինչ. ասոր.* Grīgōr, *լտ. գերմ.*Gregorius, *անգլ.* Gregory, *ֆրանս.* Grégoire, *ռուս.* Григорий (*փաղաք.* Гриша), *վրաց.* Գրիգոլի, Գիգոլի, *թուշ.* Գրիգոլ *են (Հիւբշ. 334)։ Այս անունով հայտնի են բազմաթիվ եկեղեցական հայրեր. ինչ. Ս. Գրիգոր Սքանչելագործ, աշակերտ Որոգինեսի (մ. 270), Ս. Գրիգոր Նազիանզացի, եպիսկոպոս Կոստանդնուպոլսի, նախագահ Բ տիեզերական ժողովի, աստուածաբան մատենագիր (328—389), Ս. Գրիգոր Նիւսացի, հակառակորդ արիոսականների, անդամ Անտիոքի և Կ. Պոլսի եկեղեցական ժողովների (շուրջ 330—400), Հռոմի 16 պապ և Կ. Պոլսի 7 պատրիարք, որոնք են.—Հռոմի պապեր՝ Ս. Գրիգոր Ա Մեծն 590—604, Ս. Գրիգոր Բ 715—731, Ս. Գրիգոր Գ 731—741, Գրիգոր Դ 827—844, Գրիգոր Ե 996—999, Գրիգոր Զ 1045—6, Գրիգոր Է 1073—1085, Գրիգոր Ը 1187, Գրիգոր Թ 1227—1241, Ս. Գրիգոր Ժ 1271—6, Գրիգոր ԺԱ 1370—1378, Գրիգոր ԺԲ 1406—1415, Գրիգոր ԺԳ 1572—1585, Գրիգոր ԺԴ 1590—91, Գրիգոր ԺԵ 1621—23, Գրիգոր ԺԶ 1831—46։ Կոստանդնուպոլսի հույն պատրիարքներն են՝ Գրիգոր Ա Աստուածաբան 379—381, Գրիգոր Բ 1283—9, Գրիգոր Գ 1443—1450, Գրիգոր Դ 1623, Գրիգոր Ե 1798—8, 1806—8, 1818—21, Գրիգոր Զ 1835—40, 1867—71, Գրիգոր Է 1923—4։—Այս անվան ստուգաբանությունը ծանոթ էր հին Հայոց, որոնք հաճախ թարգմանել են Արթուն, Հսկող։ Նույնը գիտե նաև Տաթևացին, բայց տալիս է հարմարյալ մի ստուգաբանություն ևս։ Դայակը մանուկ Գրիգորին (Լուսաւորիչ) Կեսարիա փախցրած ժամանակ,* գուր-գուր *կամ* դռուն *թռչունը եկավ նստեց ծառի վրա և սկսեց երգել* գո՛ւր գո՛ւր։ *Դայակը կարծեց թե Ս. Հոգին է և երախայի անունը դրավ* Գրիգոր *(Տաթև. ամ. 421)։ Նույն տեղում կցում է դարձյալ հյ.* գրգեալ *և* գիրկ *բառերին։ Վրդն. լս. 80 ունի նույն-*

ջին գլուխը վերնագրված է. «Ի խորոց սրտից խօսք ընդ Աստուծոյ». և բոլոր հաջորդ գլուխներն էլ կրում են «Վերստին յաւելուած կրկին հեծութեան նորին Հսկողի, առ նոյն աղերս մաղթանաց բանի, ի խորոց սրտից խօսք ընդ Աստուծոյ» վերնագիրը։ Այս գեղեցիկ բացատրությունը (Ի խորոց սրտից խօսք ընդ Աստուծոյ) ավելի հետո ուրիշ հեղինակներ էլ գործածում էին։ Տալիս ենք այստեղ առաջին աղոթքի առաջին տողերը՝ կցելով նրանց՝ Թորգոմ եպիսկոպոսի թարգմանությունը.—

Ձայն հառաչանաց հեծութեան սրտի՝ ողբոց աղաղակի քեզ վերընծայեմ, տեսողդ գաղտնեաց. և մատուցեալ եդեալ ի հուր թախծութեան անձին տոչորման՝ զպտուղ ըղձից ճենճերոյ սասանեալ մտացս, բուրվառաւ կամացս առաքել առ քեզ։ Այլ հոտոտեսցիս հայեսցիս, գթած, քան ի պատարագն բոլորապտուղ մատուցեալ ծխոյն բարգութեան։ Ընկալ զսակաւամասնեայ բանիցս յօդուած քեզ ի հաճութիւն և մի ի բարկութիւն։

ԹԱՐԳՄԱՆՈՒԹՅՈՒՆ

Սրտիս հեծեծալից հառաչանքներուն ողբաձայն աղաղակը քեզի կը վերընծայեմ, ո՛վ գաղտնիքները տեսնող Տէր, և այրուող հոգիիս թախծութեան կրակին վրայ դնելով սասանած մտքիս ճենճերող իղձերուն պտուղը, կամքիս բուրվառովը քեզ կը ձօնեմ զայն։ Գթած, հին Օրէնքի ողջակէզին թանձրածուխ զոհէն աւելի, իմ այս պատարագիս նայէ, և հոտոտէ՛ զայն։ Հաճութեամբ և ո՛չ թէ բարկութեամբ ընդունէ այս սակաւամասն խօսքերուն յօդուածքը։

Երեք տեսակ լեզու ունի Նարեկացին. 1) ճոխ, փարթամ, պերճ գրաբար, 2) արդի աշխարհաբարին գրեթե նման պարզ ու հասարակ լեզու, 3) իր ժամանակի գավառական բառերով լցված մի լեզու, որ մեզ համար անհասկանալի է մնում։ Առաջինի օրինակը տվինք, մի մի փոքրիկ նմույշ էլ մյուս երկուսից։

ՎԱՐԴԱՎԱՌԻ ՏԱՂ

Այդ սօս ու տօսախ ծառերդ
Վարդագոյն ոստս արձակեցին.
Այդ նոճ ու բողբոջ սարօսդ
Զարդ առեալ վարդն շուշանին։
Շուշանն շողէր հովտին,
Շողշողէր դէմ արեգական.
Այն հիւսիսային հաւէն,

Հով հարեալ գոհար շուշանին.
Յայն հարաւային լեռնէն,
Քաղցր օդով ցօղէր շուշանին.
Շուշանն շաղով լցեալ,
Շող շաղով և շաղ մարգարտով.
Ծաղկունքդ ամէն շաղ առին,
Շաղն յամպէն, ամպն յարեգակնէն,
Աստեղքն ամէն շուրջ առին,
Դէմ լուսնին գունդ գունդ բոլորին.
Գունդ գունդ խաչաձև գնդակ,
Յօրինուած երկնից շուրջանակ։

—

Յունիցն նրբենից ի մի կից կամար,
Նէճեմ թէ նէճեմ մէջօրէի ժամն։
Ձեռացն եղիշոյ կամարակապ կապէր,
Ատրճաղ պատրճաղ, սողի խողի երգով։
Շուք տարրաշրշոյ զեղ մէջ սոսյ զկէտ,
Կէտ կատարելոց կցորդակցեալ և ճակցեալ մէտ*։

Նարեկի լեզուն այնքան պերճ ու շքեղ է, որ ոչ մի թարգմանություն կարող չէ համնել նրան։ Նալեանը, որին կրկնում է նաև Թորգոմ եպիսկոպոսը, այսպես է կնքում իր մեկնությունը. «Աղամանդէ պալատին խեցիէ դուռ շինեցի»։—Նարեկացին նյութ է դարձել նաև ժողովրդական զրույցների և երգերի. հիշենք այստեղ նախ աղավնիների առասպելը (տես Զարբ. Հին դպր. էջ 539), երկրորդ՝ քրքի հավի պատմությունը, որ հիշում է Սարգիսեան, Ձեռ. Վենետ. Բ. 587, բայց կիսատ. «Օքանչելեացն Աստուծոյ պատմութիւն որ եղև ի ձեռն Գրիգորի Նարեկացւոյն։ Որ յետի ժամանակս քուրդ մի տիրէր Նարեկայ, և հաւ մի այն քրդին՝ իւր շինականն՝ ետ ի Թուխս դնել... և ձագ յարոյց սրբոյն Գրիգորի»։ Իսկ ժողովրդական երգերի մասին տես Տեղեկ. Արմֆանի, 1940, № 4—5, էջ 63—64։—Նարեկացին մեռավ «1003 թ», 53 տարեկան հասակում և թաղվեց Նարեկայ վանքում, ուր այժմ էլ ցույց են տալիս գերեզմանը (Սրուանձտեանց, Հնոց և Նորոց, էջ 14)։—Գրիգոր՝ Գր. Նար. մատ. 268, 367, 422, նաև 420 (իբրև ծայրանուն). Խոսր. պտրգ. 67 (Տաշեան, Ցուց. 1073 բ հիշում է Գրիգոր Անձևացի անունով. իսկ էջ 1073 բ չի հիշում. որից

*) Նարեկացու անծանոթ բառերի բացատրությունը տես իմ «Հայերէն նոր բառեր» Վիեննա. 1913. հտ. Ա. էջ 142–155։

հայտնի է թե տարբեր անձ է ընդունում, բայց ճիշտ չէ)։ Սամ. անեց. 103. Ուռհ. 179. Լմբ. 158. Մոթ. ևագր. 98. Կիր. (68). Պամ. լմբ. 232. Յայսմ. փետր. 27. Մխ. այրիվ. 71. Օրբ. ժմ. 11. Տաթև. ամ. 572, 661. Առաք. Նար. 473, 475. Հաւաք. 37, 59. Առաք. պատմ. 480. Մին. համդ. 116.—Գրիգորիոս՝ Սամ. անեց. 105. Սմբ. պատմ. 81. Առաք. Նար. 474—5.—Արքուն՝ Նար. հր. (Մատ. էջ 186)։—Չսկող՝ Նար. ր—հգ, հզ—ղա և ղգ—ղե՝ գլուխների վերնագրում և հր գլխում (մատ. էջ 186).—Նարեկացին՝ Ամիրտ. անգ. 134.—սեռ. Գրիգորի՝ Գր. Նար. մատ. 1, 271, 371. իբրև ծայրանուն՝ Գր. Նար. մատ. 455, 458, 461, 469. Գիրք թղ. դր. ճշ. 662. Լծ. նար. ա. Մաշտ. 347, 823. Պարզ. 513, (521), 547, 562, 569, 628, 690. Ժմ. 879, 882, 885, 946. Յայսմ. փետր. 27. Լմբ. մատ. 218. Խսւք. յոբ. 283 յիշ. Վրդն. աշխ. 514. ՅՀ. արճիշ. 7, 31. Մեծոփ. 43. Սիմ. ապար. 140. Ջուղ. 5, 106.—Գրիգորիսի՝ Սիմ. ապար. 135.—բց. ի Գրիգորէ՝ Յայսմ. օգոստ. 24. Սիմ. ապար. 139.—Զամչ. Բ. 1022. Զարբ. Հին. դպր. 538—549. Ալիշ. Լիակ. վրք. սրբ. Ե. 321—329. Հայապ. 290։—Նարեկի գրական վերլուծությունը տես Աբեղյան, Ազգագր. հանդ. ԻԶ (1916), էջ 85—136։

— 124. Գրիգոր, հեղինակ խրատների. ոմանք համարում են Նարեկացին, ոմանք Սկևռացին և կամ մի ուրիշ անձ.—սեռ. Գրիգորի՝ Գր. Նար. մատ. 483.—կա նաև Գրիգորի՝ ծայրանուն Ս. Կոյսի ներբողեանի՝ Յայսմ. օգոստ. 31։

— 125. Գրիգոր մագիստրոս Պահլաւունի, որդի Հասանի. իր «պատրոնի բարեխօսութեանն» համար շինել է մի եկեղեցի, ինչպես հիշում է ինքը Կեչառուի մի արձանագրության մեջ՝ 1003 թ. (տարբեր է № 139 Գրիգոր Մագիստրոսից, ըստ Յովսէփեան, Խաղբակեանք 71)։—Տես և Այրարատ 259։

— 126. Գրիգոր, թագավոր Փառիսոսի, որդի Իշխան-Սևադայի և եղբայր Սենեքերիմ թագավորի Փառիսոսի. մեռել է 1003 թ.—Ասող. Գ. խը. Կղկնտ. Գ. իգ (չունի Էմին). Վրդ. ծգ.—սեռ. Գրիգորի՝ Ասող. Գ. ժէ.—Գրիգորոյ՝ Վրդ. ժգ։

— 127. Գրիգոր, պատրիարք Երուսաղէմի 981—1006 թ. (ըստ Աղաւնունի)։

— 128. Գրիգոր Գ. եպիսկոպոս Սիւնեաց, հաջորդ Յակոբ Բ-ի. նստել է «1003—6 թ». ջնջեց ավազականոց Ցուր բերդը.—Օրբ. խէ, ծգ, հա.—սեռ. Գրիգորի՝ Օրբ. խէ, ծգ—ծե.—Գրիգորոյ՝ Օրբ. ծգ։

—129. Գրիգոր Վախրամ պացանին, հիշված է այսպես Գրիգոր Մագիստրոսի մեծ արձանագրության վերջում, Հայոց Թառ, 1013 Թ.—հավանաբար արձանագրությունը փորագրող վարպետի ստորագրությունն է։—Այրարատ 355։

— 130. Գրիգոր Ա Սիսական իշխանաց իշխան, որդի Աշոտի իշխանաց իշխանի, եղբայր Սմբատ Բ Թագավորի Սյունեաց և քեռորդի Վասակ Ա Թագավորի Սյունեաց։ Եղբոր մահից հետո եղավ Թագավոր Սյունեաց։ Հիշվում է իբրև վկա՝ Տաթևի 1019 Թվի կալվածագրում.—Օրբ. ծե, ծէ, ծը.—սեռ. Գրիգորի՝ Օրբ. խդ.—Գրիգորոյ՝ Օրբ. ծթ. Վրդ. ծթ։

— 131. Գրիգոր, հիշատակված է հասպիս քարե մի խաչի արձանագրության մեջ՝ 1027 Թ. խաչը պահվում է Թէոդոսիայի Թանգարանում.—Բժշկեան, Ճանապ. ի Լեհ. 347։

— 132. Գրիգոր վարդապետ, միաբան Մարմաշինու. վանահայր Սոսթենէսի հետ միասին եկան Ցոլհաննավանք՝ կարգավորելու համար երկու վանքերի սահմանային վեճերը (1033). —Ջբր. սարկ. Գ. 10 (տես Առակ)։

— 133. Գրիգոր, Թոռ Զուտասի. հիշված է Շիրակի Նախճաւան գյուղի մի արձանագրության մեջ, 1035 Թ.—Շիրակ 136։

— 134. Գրիգոր երեց, որի որդիներին ժառանգաբար Անիի Ս. Փրկիչ եկեղեցու եկեղեցպան կարգեց Ապլղարիպ մարզպանը, 1035 Թ.—Արձ. Շիրակ 82։

— 135. Գրիգոր Ծաղիկ (սեռ. Գրիգորոյ Ծաղկան), եղբայր Մուկաթլի. Անիում ունեցած իր գանձագին կրպակները նվիրեց Բագնայրին, 1042 Թ.—Արձ. Շիրակ 114։

— 136. Գրիգոր Պահլաւունի, որդի Վահրամ սպարապետի, եղբայր Ապուղամրի և Սմբատ մագիստրոսի։ Այս Գրիգորի առողջության և կյանքի երկարության համար է, որ Աբուղամրը նվիրեց Կառնուտի արտը Առաքելոց եկեղեցուն, 1031 Թ.—Շիրակ 60։—Մեռավ հոր հետ Հունաց պատերազմում՝ ընդդեմ Դուինի ամիրայի և հոր հետ էլ Թաղվեց Մարմաշէնի վանքում («1045 Թ»)։—Սմբ. պատմ. 64.—գրծ. Գրիգորիւ՝ Ուռհ. 98։ Ունի մի գեղագիր տապան Ցեսսէ բժշկից՝ Տաշեան, Ցուց. 601, 1154, Ցովսեփեան, Հետազօտ. նախն. ռամկ. Ա. 136, Բ. 415—420, Մագ. Թղ. յոյշ. էջ իդ։

— 137. Գրիգոր Պահլաւունի (Համզէ մանուկն), որդի Գրիգոր Համզայի և հօրեղբայր Գրիգոր Մագիստրոսի, եղբայր Վահ-

բամ և Տիգրան Պահլաւունեաց. մեռավ մանուկ հասակում.—տես. Գրիգորի՝ Մագ. Թղ. ժա։

— 138. Գրիգոր որդի Իքամի(?). մի խաչքար է կանգնեցրել Գեղարքունիքում, 1046 թ.—Սիսական 73։

— 139. Գրիգոր Մագիստրոս, որդի Հոլում Վասակի, Պահլաւունեաց տոհմից. կոչվում է նաև Գրիգոր-Մարզէն Պահլաւունի կամ Բջնեցի (տես Մագ. Թղ. յոջ. էջ լը, ծանոթ.)։ Հոր մահից հետո, միաբանելով ուրիշ նախարարների հետ, թագավորեցրեց Գագիկ Բ-ին («1043 թ»), որ հետո թշնամացավ նրա հետ։ Գրիգորը թողեց Այրարատը և քաշվեց Տարոն, ուր շինեց Ս. Կարապետը և ուրիշ վանքեր։ Ինքն է շինել նաև Կեչառուի եկեղեցին։ Տարոնից էլ հալածվելով՝ գնաց Պոլիս և մտավ հունաց կայսեր ծառայության։ Իր քաջագործություններով արժանացավ մագիստրոս, դուքս և կիտոնտ*) տիտղոսներին։ Նա աշխատեց Պոլսում հարթել Անիի վեճը և փրկել Գագիկին, բայց անկարելի եղավ։ Անիի գրավումից հետո, իր հայրենի բերդերը (Բջնի, Կայեան, Կայծոն) հանձնեց հունաց, Տարոնի իշխանությունն էլ Թոռնիկ Մամիկոնեանին և քաշվեց Միջագետք։ Այստեղ հալածանք հանեց Թոնդրակեցոց դեմ, 1051—52 թվերին։ Միջագետքում ապրեց մինչև իր մահը՝ «1059 թ»։ Գերեզմանը ցույց են տալիս Բասենու կամ Հասանղալայի վանքում, ուր մի հսկայական դամբան է (Հնոց և Նորոց 14)։ Մագիստրոսը ԺԱ դարի մեր նշանավոր մատենագիրներից է։ Նա նշանավոր է նախ նրանով, որ աշխարհական լինելով հանդերձ, մատենագիր է, ինչ որ հազվագյուտ բացառություն է մեր հին կյանքում։ Երկրորդ, նա նշանավոր է նրանով, որ ոչ միայն հմուտ է կրոնական գիտություններին, այլ և արտաքին գիտություններին, սկսած հունական դիցաբանությունից մինչև բժշկական գիտությունը։ Նա հիմնել էր Բջնիում և Տարոնում «Ճեմարան», այն է արդի բառով «ժողովրդական համալսարան», ուր դասախոսում էր զանազան գիտություններ։ Իր գործերն են՝ Նամականի կամ Թուղթք, տաղեր (հատկապես «Մեծ են գործք»), գանձեր (որոնցից մեկը տես Ձեռ. Դաշեան, Ա. 36 ա), շարականներ, Մեկնութիւն Քերականին, Թարգմանութիւն Պղատոնի Տիմէոս, Եւթիփրոն, Սոկրատայ պատասխանի, Մինովս և Օրէնք, Եւկլիդէսի Երկրաչափութիւն աշխատութեանց,

*Ծանոթ.—Այս տիտղոսը (կիտոնտ) վրիպակով դարձել է «Եփիկտոնացի» Զարբ. Հին. դպր. 575, ըստ նկատողության Ստ. Կանայեանի (իր օրինակի լուսանցքում գրված իր ձեռքով)։

Ներբողեան ի Ս. Խաչն աստուածընկալ են (տես Տաշեան, Ցուց. 1074—5)։ Այն ժամանակ ընդունված սովորության համաձայն, իբր լեզուն է սատրիկ մութ և խրթին. իսկ մի քանի փոքր գրությանց մեջ ուղղակի անհասկանալի։ Այսպես հույն Կիրակոս դպիրին գրած իր «Գամագտականը», որ ժամանակակիցները չհասկանալով, Կիրակոսը ստիպվեց դիմել հեղինակին և խնդրեց նրա բացատրությունը։ Մագիստրոսը «հայերենի» թարգմանեց իր գրվածքը։ Այս թարգմանության առաջին կեսը հասել է մեզ. գտավ ու հրատարակեց Նորայր, Բանասէր 1900, էջ 119—140 այս վերնագրով. «Գր. Մագիստրոսի Գամագտական թղթին մեկնութիւն ի նմին իսկ ի Մագիստրոսէ»։ Գրվածքի երկրորդ կեսի թարգմանությունն էլ տվեց Մէնէվիշեան առանձին գրքով. «Գր. Մագիստրոսի Գամագտականի ամբողջական լուծումը» (Վիեննա 1912)։ Երկրորդ անհասկանալի գրությունն է «Մրգուզ փանաքը», որ լուծեց Աճառեան, Հանդ. ամս. 1923, էջ 241—256։ Անիմանալի է մնում դեռ Բառականը, որ իբրև նմույշ դնում եմ այստեղ.

Բառական բաղդատական բաղաղանեալ բարգաւաճեալ,
Բարառարար բախոհական ներբուն բայի շարամանեալ,
Բարեհամ բուծող հլու բարշոկ դեղոյ ձեզ ընձեռեալ,
Բիզեկ բազմակ բեղուն բակաղեթիւ քեզ նուիրեալ.
Ներուն նամակ նիտան նորին նաքոր անբուժական,
Նախրուն նուէր նիսեան նմին նետիւ անփոփական,
Ներձուն նպաստ նաջան նեռին նարին կիզողական,
Ներլուն նաւթ աննակին նոյեան նմին իւր պահապան։

Նրա և նրա գործերի մասին տես Զարբ. Հին դպր. 572-586, Թրգմ. 616, 720։ Նրա թղթակցությունը Ասորոց պատրիարք Յովհաննէս Ժ Բար-Շուշանի հետ դավանաբանական հարցերի շուրջ՝ տես Տէր-Մինասեանց, Հայոց եկեղ. յարաբ. էջ 237—241։ Նրա բժշկական գիտության մասին՝ տես բժ. Լ. Յովհաննիսյանի հոդվածը Տեղեկ. համալս. № 1, էջ 120—134։ Նրա ընդարձակ կենսագրությունը տես Կ. Կոստանեանց, Մագ. Թղ. յոչ. էջ 26—48։— Գրիգոր՝ Մագ. խչ. 87. Մագ. Թղ. ե, խդ, կէ. ծայրանուն ձե, ձէ թղթերի. Շար. (հիշված սկիզբը՝ իբր հեղինակ). Լաստ. Ժ, Ժգ. Սամ. անեց. 107—8. Ուռհ. 67, 87, 104, 107, 183. Շնորհ. վիպ. 1103. Սմբ. պատ. 67. Վրդ. ծե. Տաթև. հարց. 637, 639. Օրբ. ողբ 59.—Գրիգորիոս՝ Սմբ. պատմ. 58. Վրք. շնորհ. 12.— Մագիստրոս՝ Մագ. քեր. 239. Դաւ. քեր. 79, 100. Լմբ. մատ.

525. Սամ. անեց. 112. Անան. քեր. 137. Օրբ. ողբ 61. Յայսմ. յուլ. 30. Երզն. պտճռ. 87. Ցկ. կր. 20 (ասում է թե Դարմնքի=Հասան-Ղալա Ս. Մարիամ եկեղեցին Մագիստրոսի մայրն է կառուցել).—սեռ. Գրիգորի՝ Մագ. քեր. 223. Մագ. մեծ են. յոջ. էջ 79. Հասա. խա. Շնորհ. վիպ. 1419. Վրք. շնորհ. 18. Ուռհ. 12, 88, 154, 155, 190, 213. Միխ. ա. իթ(=իը). Սամ. անեց. 113. Ոսկ. գծ. 457. Կիր. 54. Վրդ. ծը. Վրդն. աշխ. 508. Մխ. այրիվ. 76. Յայսմ. յուլ. 30. Սմբ. պատմ. 29, 57.—Գրիգորայ՝ Պամ. լմբ. 226.—Գրիգորոյ՝ Մագ. թղ. հ. Գիրք թղ. ծզ (յիշ.). Մխ. անեց. գ. Մխ. այրիվ. 73. Ուռհ. 298, 329. Վրդ. ծթ.—բց. ի Գրիգորէ՝ Մագ. թղ. ա, ծբ.—գրծ. Գրիգորիւ՝ Ուռհ. 11. Սմբ. պատմ. 29.—Այրարատ 260, 271։—Հայապ. 332, 414։—Արձ. Սմբատեանց՝ Գեղարքունի 319, 349։ Զամչ. Գ. 892—968։

— 140. Գրիգոր, եպիսկոպոս Մոկաց և Մանազկերտի. թղթակից Գրիգոր Մագիստրոսի, որ նրան է ուղղել իր լ—լե նամակները.—Մագ. թղ. (լ, լա), լբ, լգ, (լդ), լե։

— 141. Գրիգոր Տէր, եպիսկոպոս, որին շատ խիստ մի նամակ ունի Գրիգոր Մագիստրոսը. հայտնի չէ թէ ով է. բայց թվի թե Յովհաննէս Է Սիւնեաց եպիսկոպոսի հակառակորդներից էր. —Գրիգոր, սեռ. Գրիգորոյ՝ Մագ. թղ. ժգ։

— 142. Գրիգոր Տէր, թղթակից Գրիգոր Մագիստրոսի. հիշված է իբրև ընկեր Ստեփաննոս արքեպիսկոպոսի և այս երկուսին են ուղղված նրա իէ—իթ նամակները. (անձի ստուգման համար տես Ստեփաննոս որդի Խեչենեկի).—Մագ. թղ. իէ—իթ։

— 143. Գրիգոր տեկեսիս Հնձացի, Պահլաւունի ազնվական ցեղից. թղթակից Գրիգոր Մագիստրոսի, որ գրել է նրան իր լզ—լթ նամակները։ Կրոնավոր էր Հնձոց վանքում. քաշվեց Վարագայ սարը։ Մագիստրոսը խնդրեց Կարուց Գագիկ թագավորից (մ. «1081 թ»)՝ իր մոտ անել նրան՝ իբր ուսումնական մարդու. —Մագ. թղ. լզ—խ.—սեռ. Գրիգորի՝ Մագ. թղ. խ։

— 144. Գրիգոր, կրոնավոր Այլաբերից գյուղից. սրան գրեց Մագիստրոսը իր ծէ թուղթը.—Մագ. թղ. ծէ։

— 145. Գրիգոր որդի Հապաստակի, սպաթար կանտիտատ, տանուտեր Անւոյ 1057—64 թվականներին.—Արձ. Շիրակ 70, 101 ա։

— 146. Գրիգոր քահանա Ակոռեցի. Այրարատի Ակոռի գյուղից. որդի Անանիա քահանայի. իր եղբոր՝ Գէորգի հետ սովորեց Փիլիպպոս քահանայի և նրա երկու որդոց՝ Ստեփաննոսի և Սա-

հակի մոտ, որոնք նրանց խնամակալ և ուսուցիչ դարձան։ Վասպուրականի Սենեքերիմ թագավորի հետ գաղթեց Սեբաստիա (1021), ուր Գրիգորը օրինակեց և ծաղկեց սքանչելի մի Ավետարան՝ 1066 թ. (Հացունի, Դաստ. 125), որ հետո անցավ Ներսէս Շնորհալուն. սա էլ նվիրեց իր եղբորորդի Գրիգոր Զ Ապիրատ կաթողիկոսին.—Յովսէփեան, Մի էջ հայ արուեստի, էջ 17, Rapport Arm. 45, Ջեռ. Կարին. 23։

— 147. Գրիգոր, մի խաչքար է կանգնեցրել Դոնավարգի (Արցախ) եկեղեցում, 1071 թ.—Բարխուտարեանց, Արցախ 131։

— 148. Գրիգոր վարդապետ. խաբեությամբ նստավ կաթողիկոսական աթոռը, երբ Գրիգոր Բ Վկայասէր կաթողիկոսը քաշվեց Սև լեռը (1072 թ).—Սամ. անեց. 114։

— 149. Գրիգոր աղա (Ապիրատ), պարոն Անի քաղաքի, 1072 թ. հիշված է ձնթվական մի արձանագրության մեջ, որով Անին ազատում է մի քանի տեսակ հարկերից.—Շիրակ 40, 101ա։

— 150. Գրիգոր որդի Բակուրանի. հունադավան հայ էր. Բիւզանդական պետական և վարչական գործիչ. կոչվում է զորավար Արևելից։ Իշխանն էր Անիի, երբ Ալփասլանը պաշարեց ու առավ Անին (1064 թ)։ Կայսեր կողմից կարգվեց կառավարիչ Կարուց։ Տեր էր նաև Ուխտեաց և Կարնոյ։ Երբ Գագիկը թողեց Կարսի կառավարությունը (1064), Գրիգորն էլ չդիմանալով թուրքերի նեղության, իր իշխանությունը հանձնեց Վրաց Գէորգի Բ թագավորին (1084) և մտավ նրա ծառայության։—Սմբ. պատմ. 76, Այրարատ 84, Վրաց աղբ. Ա. 216 և էջ 220, ծանոթ. 3։ —Շիրակ 97ա։

— 151. Գրիգոր Ապիրատեան Անեցի, իշխան Շիրակի. Պարտաւի ամիրայի կողմից՝ բռնությամբ դեսպան ուղարկվեց Սիւնեաց Սենեքերիմ Ա թագավորին և խաբեությամբ տարավ ամիրայի մոտ, որ և սպանեց նրան (1093 թ).—Օրբ. ծը.—սեռ. Գրիգորի՝ անդ. (Սիսական 16 բ, 295 ա. հմմտ. նաև № 189)։

— 152. Գրիգոր Պահլաւունի, որդի Վասակի և թոռ Ապիրատի. եղբայր Բարսեղ կաթողիկոսի. կիւրապաղատ Արևելից. սպանեց Ելխաղի թուրք ամիրայի եղբորը. Անիի Մանուչէ ամիրան պատվով ընդունեց նրան իր քաղաքը. մեռավ 1094 թ. (ըստ Ուռհ. 1099 թվին գնաց Կաղզուան՝ թուրքերի դեմ, հաղթեց, բայց վերադարձի ժամանակ դարանակալ մի թուրքից նետահար սպանվեց).—Ուռհ. 221, 268—9. Վրդ. ծթ.—բց. ի Գրիգորոյ՝ Վրդ. կգ.—Այրարատ 261, Շիրակ 41 ա, 98 ա։

— 153. Գրիգոր կրոնավոր, գնաց Պոլիս և հույն քահանա Կալոմանի ընկերակցությամբ թարգմանեց Վկայաբանութիւն Ս. Ստեփաննոսի Ուլնեցւոյ և 33 ընկերացն (ԺԱ դար).—Վրք. և վկ. Բ. 323.—Ակգեր. Լիակ. վրք. սրբ. Ե. 90. Զարբ. Թրգմ. 719 (դընում է նախ քան Վկայասէրը)։

— 154. Գրիգոր կրոնավոր, որդի Աբդլմսեհի և եղբայր Թոռնիկ Բ իշխանի և Դաւիթ ու Ստեփաննոս կրոնավորների (ԺԱ դար).—Արծր. Դ. ժբ։

— 155. Գրիգոր մեկնիչ. ունի ի մէջ այլոց Եւագրի մասին կենսագրական (ԺԱ դար).—տես Եւագր Պոնտացի, էջ իե։

— 156. Գրիգոր (կամ Գրիգորիկ), որի որդին Հասան Սիւնեաց Սենեքերիմ Ա թագավորի պատանդներից մին էր (ԺԱ դար).—սեռ. Գրիգորոյ՝ Օրբ. ծթ.—Գրիգորկայ՝ անդ։

— 157. Գրիգոր դուքս Արեւելեան, որդի Ալուզի, որ իշխում էր Ծաղկոտ, Կոգովիտ և Անգեղատուն գավառներին։ Սրա աղջիկը՝ Մարիամ կինն էր Աբդլմսեհ Արծրունու (ԺԱ դար).—սեռ. Գրիգորի՝ Արծր. Դ. ժբ. Հաւաք. 35. Այրարատ 495։

— 158. Գրիգոր Բ թագավոր. Սիւնեաց. որդի և հաջորդ Սենեքերիմ Ա թագավորի Սիւնեաց. գահ բարձրացավ ԺԱ դարի սկիզբը.—Օրբ. ծը—կ. Օրբ. ողբ 38. Ուռհ. 231.—սեռ. Գրիգորոյ՝ Օրբ. ծթ, կ։

— 159. Գրիգոր Ականատես վարդապետ. տեսիլք է տեսել Արագած սարում. բերել է Աշտարակի առուն. գերեզմանը գտնվում է Սաղմոսավանքում և ուխտատեղի է (ԺԲ դար).—սեռ. Գրիգորի՝ Վրդն. աշխ. 506.—Այրարատ 130, 163։

— 160. Գրիգորիս եպիսկոպոս Մարաշի. Պեմունդի հետ պատերազմի գնաց Դանիշմանի դեմ և կռվում սպանվեց («1100 թ»)։—Ուռհ. 273։

— 161. Գրիգոր Բ Վկայասէր, կաթողիկոս Հայոց «1066—1105 թ». Գրիգոր Մագիստրոսի որդին էր և Պահլաւունեաց ցեղից։ Նախապես կոչվում էր Վահրամ (տես և այս անունը)։ Հունաց կողմից պատված դքսական իշխանությամբ, հոր մահից («1059 թ.») հետո ժառանգել էր նրա իշխանությունը և նշանակվել կուսակալ Միջագետքի, Տարոնի և շրջակայքի։ Նա ամուսնացել, բայց իր կնոջ մահից հետո, աշխարհից ձանձրացած՝ վանք էր քաշվել։ Նույն ժամանակ Հայոց կաթողիկոսական աթոռը թափուր էր։ Խաչիկ Բ կաթողիկոսի մահից հետո («1065 թ»), հույները թույլ չէին տալիս կաթողիկոս ընտրել, որպեսզի

Հայոց հոգևոր իշխանությունն էլ քաղաքականի նման կուլ տային և սրանով հեշտացնեին Հայոց ձուլումը իրենց մեջ։ Կարսի Գագիկ թագավորը և Մարխամ թագուհին հազիվ կարողացան շահել հունաց սիրտը և կայսեր թույլտվությամբ գումարել Ծամնդավի ժողովը, ուր՝ քաղաքական պայմանները ի նկատի ունենալով, կաթողիկոս ընտրեցին Վահրամ իշխանին՝ իբրև հունասեր մարդու («1066 թ»)։ Գրիգոր Բ վարչական մարդ չէր. սիրում էր զբաղվել գրական գործերով և վարել ճգնական կյանք։ Ուստի իր փոխարեն ձեռնադրեց Գէորգ Գ-ին («1067 թ») և ինքը դուրս եկավ ճամբորդելու. Գնաց Պոլիս, Եգիպտոս, Երուսաղէմ։ Ամեն տեղ ուսումնասիրում էր ճգնավորների կյանքը և վկայաբանական նյութեր էր հավաքում։ Սրա համար էլ կոչվեց Վկայասէր։ 5 տարի հետո վերադարձավ իր աթոռը («1072 թ»)։ Այդ միջոցին Գէորգը ուզեց բոլորովին իրեն սեփականել աթոռը։ Գրիգորը զրկեց նրան պաշտոնից և հեռացրեց։ Այնուհետև գնաց Անի («1072—76 թ»), ուր իրեն փոխանորդ կարգեց Բարսեղին։ Հայերը ցրված, տեղ տեղ էլ մանր իշխանություններ կազմած լինելով, Գրիգոր իր կամքով մի քանի կաթողիկոսներ կարգեց. այսպես՝ Սարգիս կաթողիկոսին Հոնի («1076 թ»), Բարսեղին՝ Անի («1081 թ») և Գրիգոր եպիսկոպոսին էլ Եգիպտոս։ Երուսաղէմում, «1099 թվին» մասնակցեց Խաչակրաց պատերազմին և ինքն էլ վիրավորվեց։ Որովհետև Ալեքս Ա Կոմնենոս կայսրը (1081—1118) կրոնական նոր հալածանք էր հանել Հայոց դեմ, ուստի Գրիգորը՝ հայ և հույն եկեղեցիները հաշտեցնելու համար՝ նորից Պոլիս գնաց, բայց ոչինչ չօգտվելով և նույն իսկ ինքն էլ հալածվելով՝ վերադարձավ Կիլիկիա, քաշվեց Կարմիր վանքը, ուր և մեռավ «1105 թ»։ Իր թողած գործերն են բազմաթիվ վկայաբանություններ, ներբողյաններ, շարականներ, թղթեր (Վասն Զատկի, Վասն Բաժակի), Կանոն Ոտնլուայի են (տես Տաշեան, Ցուց. 1073 գ և Ձեռ. Վեննա. Բ. 310)։ Իր գրչից է հետևյալ գեղեցիկ հատվածը. «Տառապեալ անձին և խոցալից սրտի, անողջանալի հոգւոյ և գերեալ մտաց խօսք ըստ կարեաց ցաւոց կարեվէր բեկման առ ի միտս՝ Աղերս մաղթանաց շարժեցեալ ըրթանց հեկեկանք բայից գիտողին արկեալ առաջի, որ տէրն է հոգւոց։ Զինչ բարբառեցայց և կամ զինչ ասացից առաջի քո, որ տէրդ ես և գիտող սրտից... Գնայի յաշխարհ, որոց բնակիչքն չար են. հետևեցի յերկիր, որոց իշխանքն անիրաւ են. ընթացայ ի քաղաք, որոյ թագաւորն խաբեբայ է։ Թողութիւն

շնորհեաց» (Ձեռ. Վենետ. Բ. 311)։—Շնորհ. Թղ. 323. Շար. (սկզբում հիշված՝ հեղինակների շարքում). Տաթև. հարց. 638. Վրք. հց. ա. 187. Վրք. շնորհ. 18. Գր. տղ. 76. Ուռհ. 156. Օրբ. հա. Օրբ. ժմ. 15.—սեռ. Գրիգորի՝ Կիր. 55. Ճշ. 205.—այլ ձեւրով՝ Գրիգորիոս՝ Շնորհ. վիպ. 1154, 1217. Թղ. 298. Մ. մաշտ. տպ. 1714, էջ 550. Վրք. և վկ. Ա. 272. Վկ. գէ. 28. Յայսմ. յուլ. 30. —սեռ. Գրիգորիոսի՝ Շնորհ. պտմ. 85.—Գրիգորիս՝ Շնորհ. պտմ. 85, 86. Լմբ. մատ. 525. շն. 472. Ուռհ. 155, 190, 191, 205—7, 210, 211, 300. Կիր. 54—57. Վրդ. ծբ. Մխ. այրիվ. 21. Ոսկ. յհ. բ. յիշ. Ոսկ. գծ. 457. Սամ. անեց. 112—4, 116—117. Սմբ. պտմ. 78. Յայսմ. յուլ. 30.—սեռ. Գրիգորիսի՝ Լմբ. 213, 221. Ուռհ. 191, 205, 213, 277, 280, 287, 298. Վրք. շնորհ. 32, 82. Եփր. յհ. մկ. 129. Երզն. պտմ. 87. Յայսմ. յուլ. 30. Սամ. անեց. 117, 139. Գիրք Թղ. ծղ (յիշ.)—բց. ի Գրիգորիսէ՝ Վրդ. կգ. Օրբ. կէ.—ի Գրիգորիէ՝ Վրք. ոսկ. 1.—յգ. Գրիգորիսեանք «Գրիգորիս և իր հաջորդները» Յայսմ. յուլ. 30. Ժմ. 947 (հիշվում են պատարագում). Վրդն. աշխ. 526.—Գրիգորէս՝ Մխ. անեց. դ.—Իր հիշատակարանը տես Ցհ. իմաստ. էջ 80 և Աւգեր. Լիակ. վրք. սրբ. ԺԱ, էջ ձէ.—Ջարբ. Հին դպր. 596—602, Թրգմ. 159 (1064 թ. այսինքն երկու տարի առաջ քան կաթուղիկոսանալը), 159 (1099 թ.), 459, 461, 472, 616, 664, 719, 720—3. Հայապ. 348—352. Ալիշան՝ Շնորհ. 22—44. Ազգապ. 1273—1334։

— 162. Գրիգոր եպիսկոպոս, քեռորդի Գրիգոր Բ Վկայասէր կաթուղիկոսի և հորեղբայր Ներսէս Շնորհալու. առաջնորդ էր Եգիպտոսի հայոց. Վկայասէրը օծեց նրան կաթուղիկոս (1074 թ)։ Եգիպտոսում թարգմանել է Վարք Ոնոփրիոսի (1110 թ.) և կարգավորել է ճաշոցը՝ Գրիգոր Վկայասէրի և Կիրակոսի հետ. Իր հիշատակարանը տես Աւգեր. Լիակ. վրք. սրբ. ԺԱ. էջ ձը—Ուռհ. 211. Գր. եր. 374. Յայսմ. յուլ. 30.—Գրիգորիոս՝ Շնորհ. վիպ. 1265. Վրք. շնորհ. 23, 24.—Գրիգորիս՝ Սամ. անեց. 118. Վրք. շնորհ. 26, 28.—Գրիգորէս՝ Վրդ. ծը.—սեռ. Գրիգորի՝ Վրք. շնորհ. 30.—Ալիշան՝ Շնորհ. 33, 169. Հայապ. 351—2. Ջամչ. Գ. 394. Ջարբ. Թրգմ. 542։

— 163. Գրիգոր վարդապետ, միաբան Վարագայ վանից, 1111 թ.—Ձեռ. Դաշեան, Ա. 8 բ։

— 164. Գրիգոր, որդի Միքայէլ իշխանի և թոռն Գրիգոր Տարօնացու. կարգվեց պրոտովեստիարիոս և արքունի հազարա-

պետ՝ Յովհաննէս Պերփեռոժէն կայսեր կողմից (1120 թ).— Զամչ. Գ. 11։

— 165. **Գրիգոր** Դ. եպիսկոպոս Սիւնեաց «1058—1116 թ». հաջորդեց Յովհաննէս Է-ին. նորանոր շենքերով զարդարեց Տաթեը և կալվածներով հարստացրեց.—Օրբ. ծգ, ծթ, կ, կբ, հա.—սեռ. Գրիգորի՝ Օրբ. ծթ, կբ.—Գրիգորոյ՝ Օրբ. ծթ։—Իր մի արձանագրությունը ՇԶ=1057 թվից տես Միսական 236։

— 166. **Գրիգոր** եպիսկոպոս, քեռորդի Գրիգոր Գ և Ներսէս Շնորհալի կաթողիկոսների. Գրիգորիսը նվիրակ ուղարկեց նրան Պոլիս, Երուսաղէմ և Ալեքսանդրիա. այս քաղաքում ժողով ունեցավ Յակոբիկների հետ և հավանություն տվեց նրանց (1117). —Ալիշան՝ Շնորհ. 167 (քաղելով արաբ պատմիչներից)։

— 167. **Գրիգոր**, փակակալ կաթողիկէին Անիի. աշակերտ Սարկավագ վարդապետի. սրբակյաց մարդ էր. ուխտի գնաց Սբ Վիրապ. վերադարձին հանդիպեց Դուինի։ Սովորություն ունէր գոչել միշտ «Օրհնեալ է Քրիստոս Աստուած, որդին Աստուծոյ»։ Երբ մոտեցավ այլազգիների բանակին, ընկերը կատակով ասաց նրան. «Այդ օրհնենքը եթե կարող ես այս այլազգիների մոտ ասա. քաղաքում ասելը հեշտ է»։ Գրիգորը բարձրաձայն աղաղակեց օրհներգը. զինվորները բռնեցին և շղթայի զարնելով՝ Անիի Փատլուն ամիրայի մոտ ուղարկեցին։ Փատլունը բանտարկեց նրան և կաթողիկէի բանալիները գրավելով՝ ուզում էր կաթողիկէն կողոպտել։ Գիշերը արհավրալի մի երազ տեսավ. իբր թե բանալիներից հրակերպ անձեր էին դուրս գալիս և խոցոտում նրան։ Սարսափած կանչեց Գրիգորին և արձակեց (1128).—սեռ. Գրիգորոյ՝ Վրդ. կթ.—ավելի ընդարձակ տես Զամչ. Գ. 46։ Սրա հետ նույն է Գրիգոր Անեցի, աշակերտ Սարգսի, որ ի Փառխոսայ, այն է Յովհաննէս Սարկավագ վարդապետ (մ. «1129 թ») և դասընկեր Երեմիա Անձրեւիկի.—Սամ. անեց. 128. Զարբ. Հին դպր. 615. Ցուցիկք Բ. 305։

— 168. **Գրիգոր** վարդապետ Աղուանից. աշակերտ Դաւիթ վարդապետի. դիմեց Գրիգոր Գ Պահլաւունի կաթողիկոսին և Աղուանից թափուր աթոռի համար կաթողիկոս ձեռնադրել տվեց Գրիգորիսին («1139 թ»).—Հայապ. 385 (ըստ Կիր. 101 դիմողն է Գրիգոր վարդապետ որդի Թոքակերի)։

— 169. **Գրիգորիս** կաթողիկոս Աղուանից. հորեղբորորդի Աղուանից Ստեփաննոս Բ կաթողիկոսի, որդի Գէորգի և թոռն Կարապետի. առաջ կոչվում էր Գագիկ. ձեռնադրվեց «1139

թվին». Նրանից առաջ 85 տարի Թափուր էր աթոռը.—Հայապ. 386.—Գրիգորէս՝ Կիր. ը.—որ և Գագիկ՝ անդ։

— 170. Գրիգոր արքեպիսկոպոս Գանձակի. մին էր Գրիգորիսին Աղուանից կաթողիկոս ձեռնադրողներից «1139 թ». հիշված է Սարգիս վարդապետի հետ.—Հայապ. 385 (բայց Կիր. էջ 101 չգիտե այսպիսի անձ. հմմտ. նախորդ երկուսը և հաջորդը)։

— 171. Գրիգոր վարդապետ Գանձակեցի, որդի Թաքակերի. աշակերտեց Հաղբատում Յովհաննէս Սարկավագին, հետո եղավ նույն վանքի միաբան. նշանավոր գիտնական։ Այնքան ընթերցասեր էր, որ մինչև անգամ ուտել-խմելն էր մոռանում. և երբ հարցնում էին «ճաշ ուտես», նա իր գիրքն էր ցույց տալիս, ասելով թե սրանք են իմ կերակուրը։ Իր ընկեր Սարգիսի հետ միասին գետնասույզ եղավ Գանձակի երկրաշարժին 1139 թ.—Կիր. 66, ը. Օրբ. ժմ. 17. Վրդ. (հ). Հայապ. 362. (ըստ Սամ. անեց. 132 դեպքը եղել է ՇՁԸ=1121 թվին!)։—Թվի թե նույն է Գրիգոր Գանձակեցի, որ ունի Մեկնութիւն ՝ընթերցուածոց՝ Տաթև. ձմ. բէ։—Զարբ. Հին դպր. 661. Ալիշան, Շնորհ. էջ 31, 131։

— 172. Գրիգոր, որդի Աղբիզ տիկնոջ, որ իր հոր հիշատակին Բագնայրում շինել է տվել Ս. Գրիգոր եկեղեցին, 1145 թ. —Արձ. Շիրակ 115։

— 173. Գրիգոր իշխան, որդի Վասակի՝ տեառն Խուախան բերդի (Գանձասար), եղբայր Սմբատի. աղջիկը ամուսնացած էր Թուրք Տողան իշխանի հետ։ Գրիգորը սպանվեց Ռավադա Թուրքման իշխանի հետ պատերազմելու ժամանակ (1147 կամ քիչ ուշ).—Հայապ. 387։

— 174. Գրիգոր վարդապետ Իմաստասէր Մարաշեցի կամ Մաշկևոր. միաբան Ցեսուանց մենաստանի կամ Մաշկևոր վանքի, որ ինքն էր հիմնել։ Գրել է «Գիրք վայից և մեղայից», որից երկու էջ արտատպում է Ալիշան, Շնորհ. էջ 217—220։ Ամբողջը 250 տուն է և ողբում է մարդկային կյանքի ունայնությունը՝ շարունակ կրկնելով «Վա՜յ քեզ անձն իմ»։ Այս գիրքը գրել է 1149 թվին, երբ Մասուտ սուլթանը գրավեց Մարաշը։ Թվում է թե իր ինքնակենսագրությունն է։ Bodleian 249 ասում է թե Գրիգոր Մարաշցին ունի Թուրքերի արշավանքի պատմությունը՝ 1149 թվին։ Բայց ինչպես երևում է Ձեռ. Վենետ. Բ. 1014 դրված հատվածից, դա Վայգրքի հիշատակարանն է։ Նույն հեղինակին են պատկանում դարձյալ Խրատ խոստովանութեան, Դաւանութիւն խոստովանութեան և Ով անձն և միտք և սիրտ, խօսիմ

ընդ քեզ սակաւ մի (նրանց վրա տես Ջեռ. Վեննա. Բ. 1009)։ Մարաշի մեծ երկրաշարժի ժամանակ, Քեսուանց վանքի տակ ճալով մեռել է 1114 թ! (այս թվականը սխալ է, ըստ որում հեղինակը Վայգիրքը գրել է 1149 թվին).—Ուռհ. 333. Ալիշան՝ Շնորհ. և պրգ. 217—220, Սիսուան 407, Զարբ. Հին դպր. 662. Ջեռ. Վեննա. Բ. 155. Տաշեան, Ցուց. 1075ա. Նւագր. հրատ. Սարգիսեան, էջ ծ, ճծը. Հացունի, Պատմ. տարազի, էջ 447։

— 175. Գրիգոր, որդի Յակոբոս քահանայի և եղբայր Գէորգ վարդապետի, որ Ծովքում, իր աշակերտ Յովհաննէս գրչին գրել տվեց մի Աւետարան, 1151 թ.—Ջեռ. Վեննա. Ա. 748։

— 176. Գրիգոր արքեպիսկոպոս Սեբաստիայի. քաջալերական գիր գրեց Թէոդորոս աբեղա Սեբաստացուն, որ նահատակվեց 1155 թ.—Նոր վկ. 8; Յայսմ. յունիս 22։

— 177. Գրիգոր, որդի Կատակալոսի՝ որդւոյ Կամենի մեծի, հայր Շահնշահի, որ ամուսնացավ Սասնոյ Վիգեն իշխանի դուստր Կատայի հետ (1160 ական թ).—Թորոս աղբ. Բ. 313։

— 178. Գրիգոր երեց. Քեսունցի էր ըստ Զամչ. Գ. 67. շարունակեց Մատթէոս Ուռհայեցու Պատմութիւնը, որ հասցրեց մինչև «1162 թիվը». սրանից քիչ հետո էլ մեռած պետք է լինի.—Գր. եր. 370. Զարբ. Հին դպր. 670։

— 179. Գրիգորիոս, որդի Վիգեն իշխանի Սասնոյ. Թոռն Զորտուանէլ Բ-ի. վաղամեռիկ եղած էր նախ քան 1165 թ.—Թորոս աղբ. Բ. 311, Հայապ. 393։

— 180. Գրիգոր Գ Պահլաւունի, կաթողիկոս հայոց «1113—1166 թ». Ապիրատ իշխանի որդին էր և Ներսէս Շնորհալու երեց եղբայրը. հաջորդեց Բարսեղ կաթողիկոսին։ Մոտ 20 տարեկան էր, երբ հայրապետական աթոռը բարձրացավ։ Նրա անչափահասությունը պատրվակ բռնելով՝ Աղթամարի Դավիթ եպիսկոպոսը ապստամբեց և հայտարարեց իրեն անկախ կաթողիկոս։ Նա ուզեց ամբողջ հայությունը իր իշխանության տակ առնել, բայց Սև Լեռան ժողովը, ուր 2500 հոգի ներկա էին, մերժեց նրան։ Այնուամենայնիվ Դավիթը չհպատակվեց և հիմնեց Աղթամարի կաթողիկոսությունը։ Գրիգորը իրեն օգնական նշանակելով իր եղբոր՝ Ներսէսին, հոգ տարավ ժողովրդի կրոնական պետքերին, նորոգեց շատ վանքեր, իր քեռի Գրիգոր Վկայասէրի նման թարգմանեց զանազան սրբերի վկայաբանություններ, ընդարձակեց նրա կազմած Տօնամակը, որի համար էլ կոչվեց Փոքր Վկայասէր։ Իր ժամանակ սկսվեց ասորի, լատին և հույն եկեղեցի-

ների հետ միության խնդիրը։ Առաջինի հետ մշակվից բարի հարևանական հարաբերություն։ Լատինների հետ հարաբերության մտնելով՝ Գրիգորը պապից ստացավ պալլիում և գավազան («1143 թ»). միևնույն ժամանակ առաջարկվեց նրան՝ փոխել հայ եկեղեցու ծեսերը։ Գրիգորը անուշադիր թողեց այս կետը։ Իսկ հույների հետ հարաբերությունը հազիվ սկսած՝ վախճանվեց Գրիգոր Գ, անձամբ իրեն հաջորդ ձեռնադրելուց հետո իր եղբայր Ներսեսին։ Իբրև մատենագիր նա թողել է Աստուածածնի ծննդեան և սննդեան գովասանական պատմությունը, Դրուատ գովեստի անօրինական տեղեաց Երուսաղէմի, Շարական Աւետեաց (Խորհուրդն անճառ), Կանոն Բ Ծաղկազարդի (Մեծահրաշ այս խորհուրդ), Տաղ Ջրօրհնեաց (Ով զարմանալի խորհուրդս այս մեծ յայտնեալ), Թերևս և ի պատիվ Լուսավորչի երգուածն (Ի յերս արեւու արև)։ Նրանն են կարծվում նաև մի խումբ աղոթքներ (Ալիշան, Շնորհ. 113)։ Նրա մի վիճաբանության մասին Ասորիների հետ՝ ըստ ասորի Գրիգորիոս Բարհեբրէոսի՝ Եկեղեցական պատմության տես Տէր-Մինասեանց, Հայոց եկեղ. յարաբ. 257—9։—Շնորհ. վիպ. 1501. Վրդ. հե. Մխ. այրիվ. 21, 76? 79. Օրբ. ժա. 17. Միխ. աս. իե(=իդ), իթ(=իը). —սեռ. Գրիգորի՝ Լմբ. շն. 489. Շնորհ. մոթ. 16, սահմ. 287. Պամ. լմբ. 226—7. Միխ. աս. յաւել. Կիր. խը. Վրդ. կդ, հթ (հրատ. էմինի). Մխ. այրիվ. 80. Սկևռ. լմբ. 11. Օրբ. ժա. 22.—այլ ձևերով՝ Գրիգորիս՝ Շնորհ. չփ. 276, պտճ. 85, 107, 109, 110. Թղ. 323. Լմբ. մատ. 535, շն. 472. Վրք. շնորհ. 30, 32, 35, 46, 48, 64, 65. Գր. տղ. 76. Ուռհ. 300, 329, 330. Սամ. անեց. 117, 122, 124, 127, 138. Կիր. 61, 63, 67, ը. Վրդ. կդ. Մխ. այրիվ. 78. Օրբ. կբ, կէ, հա. Սմբ. պատմ. 91. 94, 100. Նանայ յիշատ. 444. Կրպտ. սարգ. յոչ. Յայսմ. յուն. 13, յուլ. 30, օգոստ 5, նոյ. 8. Առաք. պատմ. 335.—սեռ. Գրիգորիսի՝ Շնորհ. չփ. 162, 277, ընդհ. 49. պտճ. 86, 87, Թղ. 240, 296, սրբ. 4, 53. Ողբ եդես. յոչ. Գր. տղ. 5. Ուռհ. 300. Վրք. շնորհ. 31, 32, 49. Գր. եր. 372. Մխ. դտ. Ա. կ. Կիր. ը. Երզն. մոթ. 107. Վրք. և վկ. Բ. 299 (Զարբ. Թրգմ. 724). Սամ. անեց. 124, 139, շար. 144, 164. Սմբ. պատմ. 95, 107, Յայսմ. յուլ. 30, նոյ. 8.—բց. ի Գրիգորիսէ՝ Յայսմ. յուն. 13, օգոստ. 5.—գրծ. Գրիգորիսիւ՝ Յայսմ. յուլ. 30.—Գրիգորիոս՝ Շնորհ. չփ. 224, 361, ընդհ. 2, պտճ. 86, Թղ. 298, մոթ. 16. Լմբ. 213, շն. 480. Իգնատ. ղկ. 2, 494. Յայսմ. յուլ. 30.—սեռ. Գրիգորիոսի՝ Ոսկ. ներբ. լս. 826.—Գրի-

գործը՝ Օրբ. ժմ. 16, 17, 18. Մխ. անեց. դ.—Զարբ. Հին դպր. 618—620, Թրգմ. 348, 625. Ազգապ. 1349—1400։—Դրնդ. 303։

— 181. Գրիգոր եպիսկոպոս Հաւապտկի և Մեծարանց տան. հիշված է 1163 և 1167 թվերի արձանագրության մեջ. իր հաջորդներն են երկու եղբորորդիքը Ցակոբոս և Սարգիս.—Ցովսէփեան, Խաղբակեանք 29—31։

— 182. Գրիգոր Ե. եպիսկոպոս Սիւնեաց՝ «1148—1168». եղբայր և հաջորդ Բարսեղի. Նախապես Մեղրիում ավագերեց էր. կնոջ հորդորով՝ ամուսնացեալ լինելով հանդերձ՝ գնաց եպիսկոպոս օծվեց Գրիգոր Գ կաթուղիկոսից.—Օրբ. կբ, կգ. հա.—սեռ. Գրիգորի՝ Օրբ. կե, հա։—Սա է որ Խարձայ գյուղում մեռնելով՝ թաղվել է Նորավանքում 1168 թ. ըստ Սիսական 184 բ։

— 183. Գրիգոր գրիչ. գնաց Հռոմկլայից Սկեռայ վանքը՝ հանձնարարությամբ Կոստանդին քահանայի՝ սպասավորի Ներսէս Շնորհալու, արտագրելու համար Աւետարանը, որի օրինակը շնորհեց Ներսէս Լամբրոնացին 1173 թ.—Զարբ. Հին դպր. 708, Հայապ. 376, Սիսուան 97, Թորոս աղբ. Բ. 442—3։

— 184. Գրիգոր վարդապետ Սանահնեցի. մին այն հյուսիսայիններից, որոնք գրեցին Գրիգոր Տղային՝ հակառակ միության խնդրին.—Շնորհ. Թղ. 308։

— 185. Գրիգոր գրիչ. Հռոմկլայում Ն. Շնորհալու հրամանով սկսեց գրել շքեղ մի Աւետարան, որ Շնորհալու մահով կիսատ մնաց. Նրա հաջորդ՝ Գրիգոր Տղայ կաթուղիկոսի հրամանով շարունակեց նույնը և ավարտեց 1174 թ.—Թորոս աղբ. Ա. էջ 117։

— 186. Գրիգորիս Արևելցի. կազմեց Ն. Լամբրոնացու ձեռքով գրված մի օրինակ Դիոնեսիոս (Զարբ. Թրգմ. 390) և մի օրինակ էլ Նիւրղի Պարապմանց գիրքը՝ դարձյալ Լամբրոնացու գրած՝ 1175 թ.—Աթան. յոջ. ժե. Սիսուան 101։

— 187. Գրիգորիոս արքեպիսկոպոս Անտիոքի, անդամ Հռոմկլայի ժողովի՝ Գրիգոր Տղայի օրով «1179 թ».—Շնորհ. պտճ. 199 (ըստ Ազգապ. 1468 Գրիգոր Ապիրատն է)։

— 188. Գրիգոր եպիսկոպոս Սամոսատի, անդամ Հռոմկլայի ժողովի «1179 թ».—Շնորհ. պտճ. 199։

— 189. Գրիգոր Ապիրատեան Անեցի. զորավար՝ Վրաց Գէորգի թագավորի ժամանակ (ԺԲ դար). նույն անձը քիչ հետո կոչվում է Գրիգոր Մաժիտարոսեանց.—Օրբ. կե։—Սա պետք է լինի Գրիգոր որդի Ապիրատի՝ եղբոր Բարսեղ կաթուղիկոսի Ան-

ւոյ. հոր հետ մտավ Վրաց Թագավորի ծառայության և սիրելի դարձավ նրան (1174).—Զամչ. Գ. 147։—Ալիշանն էլ գիտե Գրիգոր որդի Ապիրատի (1176), Թոռ Հասան մագիստրոսի, եղբայր Բարսեղ եպիսկոպոսի Անւոյ (մ. 1203), հիշված 1179 Թ.—Շնորհ. և պրգյ. 13։ Հմմտ. № 151։

— 190. Գրիգորիոս եպիսկոպոս Կոկիսոնի, անդամ Հռոմկլայի ժողովի «1179 Թ».—Շնորհ. պտճ. 199։

— 191. Գրիգոր առաջնորդ Գեղարդայ վանից, 1177—1180 Թ.—Այրարատ 343, 344, 349բ, Շահազիզ, Հին Երևանը, էջ 76։

— 192. Գրիգոր, կրտսեր եղբայր և օգնական Ցովհաննէս գրչի, որ էր երեց եղբայր Վարդանի համար օրինակեց մի գեղեցիկ Աւետարան՝ Հոռոմոսի վանքում, 1181 Թ.—Ձեռ. Վիեննա. Ա. 395, Ցովսէփեան, Նիւթեր և ուս. Ա. 15։

—193. Գրիգոր առաջնորդ Հառիճի վանքի առաջին կործանումից 100 տարի հետո (Ալփասլանի ձեռքով), Զաքարիա սպասալարի ձեռնարկած նորոգության ժամանակ, ինքն էլ գործակից կամ շինության վերակացու էր։ Մեռավ ծերացյալ հասակում, 1185 Թ։ Իր հաջորդը՝ Պետրոս և Հառիճեցիք՝ նրա հիշատակին մշտական պատարագ կարգեցին։ Մնում են նրա մի արձանագրությունը, իր տապանաքարը և հայր Պետրոսի և Հառիճեցոց արձանագրությունը՝ 1192 Թվից.—Շիրակ 159, 163։

— 194. Գրիգորիս Խաչենեցի, որդի Վախտանկ իշխանի Խաչենի. առաջնորդ Դադիվանից, եղբայր Խաչենի Հասան իշխանի, որ եկավ նրա մոտ՝ իր կնոջ Մամքայի հետ և կրոնավոր դարձավ 1182 Թ.—Կարապետ եպս.՝ Դօփեանք 48, 49. այս Հասանի որդին է Վախտանգ Խաչենցի, տեր Հաթերքի, որի հետ միասին օգնեցին Մխիթար Գոշին՝ շինելու Նոր Գետիկը 1191 Թ.—սեռ. Գրիգորիսի՝ հիր. ժբ. Արձ. Սմբատեանց՝ Գեղարքունի 173։—Ոսկեան, Մատ. քնն. 131, Կրպտ. եպս.՝ Դօփեանք 48, 49, 59, 60։ Շահխաթ. Բ. 361, 362, Բարխուտ. Արցախ 203, 204։

— 195. Գրիգոր որդի Հասան (կրոնավոր) Խաչենցու, եղբայր Վախտանգի (շինող) և Խոյանդի։ Գոշավանքի մի արձանագրության մեջ՝ 1191 Թվից (որ տես Շահխաթ. Բ. էջ 367 և Բարխուտարեանց, Արցախ 350), այս Գրիգորը կոչված է «խորդ», որ սակայն սխալ է։ Պետք է կարդալ Խոյդան, ինչպես կարդացել է Սմբատեանց, Գեղարքունի 173 և որ հաստատվում է Կիրակոս Գանձակեցու վկայությամբ (Գլ. ժբ)։

— 196. Գրիգորիս, այլ որդի նոյն Հասան Ծաչենցու, եղբայր Վախտանգի, Գրիգորի են։

— 197. Գրիգոր Դ Տղայ, կաթուղիկոս Հայոց «1173—1193 թ». Ներսէս Շնորհալու Վասիլ եղբօր որդին էր և հաջորդեց իր հօրեղբօրը՝ Ներսէսին։ Իրեն իբրև ժառանգություն էր մնացել Հունաց հետ կրոնական միության խնդիրը, որի վրա շարունակ պնդում էր Մանուէլ կայսրը։ Կաթուղիկոսը դիմեց Արևելքի հայերին, որոնք առհասարակ հակառակ էին միության։ Երկար բանակցություններից և թղթակցություններից հետո, Գրիգոր Տղան կարողացավ գումարել Հռոմկլայի ժողովը «1179 թ», ուր ժամանակցում էին նաև Աղուանից կաթուղիկոսը. Ասորոց պատրիարքի ներկայացուցիչը, Արևելյան վարդապետներ, Ներսէս Լամբրոնացին են։ Ժողովը գրեց իր մերժողական պատասխանը։ Այդ միջոցին Մանուէլ կայսրը մեռավ և նրա հաջորդը՝ Իսահակ Փիսիկ սկսեց հալածել հայերին և շատերին բռնի քաղկեդոնիկ դարձնել։ Կաթուղիկոսը դիմեց պապին և նրա օգնությունը խնդրեց հունաց դեմ։ Բայց պապը առաջարկեց միացնել հայ եկեղեցին լատինականի հետ։ Այս առաջարկության համամիտ էր Լևոն Բ, որին Ֆրեդերիկոս կայսրը խոստում էր տալ թագավոր օծելու։ Գրիգոր Տղան սակայն չտեսավ այդ փառավոր օրը և մեռավ «1193 թ. յուլիսին»։ (Սակայն Ձեռ. Վենետ. Բ. 510 մի հիշատակարանում դեռ կենդանի է հիշվում ՈԽԳ=1194 թ)։ Իբրև մատենագիր՝ թողել է մեզ Նամականի (տպ. Վենետ. 1865), Ողբ Երուսաղէմի (հրատ. Dulaurier, Docum. arm. 272—307 ֆրանս. թարգմանության հետ). Ոչ եթե նորոգ եմուտ ի մեզ ուղղափառութիւն (Ձեռ. Վենետ. Բ. 1219)։ Մի քանի ուրիշ անհայտ գրվածքներ էլ ունի, որոնցից նշանավոր են Նարեկի նմանությամբ գրված «Ի խորոց սրտից խօսք ընդ Աստուծոյ» և «Զի՞նչ լոյս և լոյս, զի՞նչ լոյս և անլոյս» (որոնք բոլոր տես Ձեռ. Մաղն. էջ 9—12)։ Վերջինը տպված է Արրտ. 1892, էջ 1097—9, ինչպես և ZAPh 1, 211։ Արարատում կա նաև հետաքրքրական մի գրվածք, որ ամփոփում եմ այսպես.

Իցեն զի ոչ գիտեն եւ գիտեն զի ոչ գիտեն.
Իցեն զի ոչ գիտեն եւ ոչ գիտեն զի ոչ գիտեն.
Իցեն զի ոչ գիտեն եւ գիտեն թէ գիտեն։—

Այս սիրուն առածը ունինք նաև պարսկերեն՝

کسی هست که نداند و داند که نداند
کسی هست که نداند و نداند که نداند
کسی هست که نداند و داند که داند

Թարգմանություն

*Մարդ կա չգիտե և գիտե որ չգիտե.*
*Մարդ կա չգիտե և չգիտե որ չգիտե.*
*Մարդ կա չգիտե և գիտե որ գիտե։*

*Գրիգոր Տղայի գրել տված մի Ավետարանի մասին էլ տես Թորոս աղբ. Ա. 116, Բ. 442։—Գր. տղ. 5. Լմբ. 231. Վահր. ու. 218. Օրբ. կէ, հա. Կիր. 69. Վրդ. հե, հթ, ձ. Սամ. անեց. 139, շար. 164. Լմբ. մատ. 535, 556, յայտ. յիշ. Լմբ. շն. 488. Շնորհ. պատճ. 166, 169, 175, 180, թղ. 307. Մխ. այրիվ. 21. Միխ. աս. իէ(=իզ), յաւել. Օրբ. ժմ. 19. Մ. մաշտ. 336ա. Յայսմ. սեպտ. 25, յունիս 13, օգոստ. 5. Սմբ. պատմ. 105? Առաք. պատմ. 335.—սեռ.* Գրիգորի՝ *Գր. տղ. 5, 53. Լմբ. օր. 5. Մխ. հեր. ներած. Յհ. իմ. խոստ. յիշ. Լմբ. 224. Վրդ. հը, ձբ. Մխ. դտ. նխդր. ժա. Շնորհ. պատճ. 166, 175, թղ. 312. Պամ. լմբ. 229.—*Գրիգորոյ՝ *Վրդ. ձ.—բց.* ի Գրիգորէ՝ *Լմբ. 93. Օրբ. կէ.—*Գրիգորիոս՝ *Լմբ. յայտ. յիշ. Շնորհ. պատճ. 169, 181, 193, 198. Պամ. լմբ. 228, 231.—*Գրիգորիս՝ *Շնորհ. թղ. 307. Սմբ. պատմ. 102, 106. Սկևռ. լմբ. 11. Օրբ. ժմ. 22. Սամ. անեց. 139.—սեռ.* Գրիգորիսի՝ *Շնորհ. պատճ. 85, 181, 192. Օրբ. ժմ. 21.—բց.* Գրիգորիսէ՝ *Վրք. շնորհ. 81.—*Գրիգորիս՝ *Մխ. անեց. գ. Օրբ. ժմ. 21։—Զարբ. Հին դպր. 681—6, Թրգմ. 302, 303, 348, 360, 501, 539, 551, 560, 726, 754, 763. Պալճեան 44—51. Ազգապ. 1445—1496։—Դրնղ. 303։*

*— 198.* Գրիգոր Ե. *Քարավէժ, կաթուղիկոս Հայոց «1193—1194 թ». Գրիգոր Դ Տղայի մանկահասակ քեռորդին էր (աշխարհական անունը Վահրամ), որ Լևոն Բ-ի հրամանով ընտրվեց կաթուղիկոս, իբրև հաջորդ Գրիգոր Տղայի։ Հակառակ գնալով Լևոնի քաղաքականության՝ եկեղեցական հարցերում, նրա հրամանով բանտարկվեց և ապա Կոպիտառի բերդը տարվեց, ուր նրան թունավորելով սպանեցին և մարմինը պարիսպից դուրս գցեցին, լուր հանելով որ իբր թե փորձել է փախչել և գահավէժ է եղել։—Մխ. անեց. գ. Մխ. այրիվ. 21. Օրբ. ժմ. 14? Օրբ. (կէ). Առաք. պատմ. 335.—*Գրիգորիս՝ *Կիր. 69. Վրդ. ձբ. Միխ. աս. յաւել. Սամ. անեց. շար. 143. Սմբ. պատմ. 106. Վահր. ոտ. 218. Օրբ. հա. Օրբ. ժմ. 22 (իսկ Օրբ. ժմ. 21 սխալմամբ Գրիգորիս Տղայն).—սեռ.* Գրիգորիսի՝ *Սամ. անեց. շար. 144. Կիր. 70.—Զարբ. Թրգմ. 448. Հայապ. 412. Ազգապ. 1495—1510։ Դրնղ. 303։*

*— 199.* Գրիգոր *ծաղկող, Պետրոսի հետ միասին ծաղկեցին մի ընդարձակ Տօնական, որ Ստեփաննոս գրիչը օրինակել էր*

Տիւրիկի Նեղկուկ գյուղում, ստացող Կոստանդինի և Ղուկասի համար, 1194 թ.—Manus. bibl. nat. էջ 54. Ջեռ. Վենետ. Բ. 511։

— 200. Գրիգոր միաբան Տիւրիկի Նեղկուկ գյուղում, 1194 թ.—Ջեռ. Վենետ. Բ. 511։

— 201. Գրիգոր վարդապետ, եղբայր Վարդան Հաղբատեցի վարդապետի, միաբան Հաղբատի վանից, հիշված 1195 թ.— Հայապ. 383.

— 202. Գրիգոր գրիչ. գրեց մի Աւետարան՝ Սոսեփաննոս-Աղամի համար, սկսելով Մլիճի վանքում և վերջացնելով Սկևռայ վանքում, 1198 թ.—REA 7, 105։

— 203. Գրիգոր, նկարիչ և ծաղկող, «աննման յանմ արուեստի վկայեալ» և «գեր ի վերոյ և անհաս ի ձեռս մեր„. ծաղկել է Պապառոնի Աւետարանը, 1198 թ.—Սիսուան 74 ա, 518ա։

— 204. Գրիգոր կանչող, ազդարար Իւանէ Աթաբէկի բանակում, Թուրքերի դեմ պատերազմի ժամանակ, 1198 թ.—Օրբ. կե։

— 205. Գրիգոր հայր, որի օգնությամբ Դաւիթ Կիւրիկեանը շինել է Անապատի եկեղեցին, 1198 թ.—Տեղեկ. Արմֆանի 1940 թ. № 4, էջ 168։

— 206. Գրիգոր եպիսկոպոս Փիլիպպուպոլսի, որին Գրիգոր Դ Տղայ կաթուղիկոսը («1173—1193 թ») ուղարկեց Լուկիոս Գ (1181—85) պապի մոտ՝ օգնություն խնդրելու Հունաց Իսահակ Փիսիկ կայսեր (1185—1195) հանած հալածանքի համար Հայոց դեմ։ Պապը պատասխանեց զանազան նվերներով և խաբեբա խոստումներով՝ «1184 թ» ըստ Ազգապ. (իսկ ըստ իս 1185 թ. երբ երեքն էլ՝ Գրիգոր, Լուկիոս և Փիսիկ գահակալում էին)։ Ըստ Ազգապ. 1484 Գրիգոր եպիսկոպոսը հավանաբար Յովհաննէս Ուլթմանի հաջորդն է։—Վրդ. հթ. Հայապ. 430։—Այս նույն անձն է, որ ավելի ուշ ներկա է լինում Լևոն Բ-ի թագադրության հանդեսին «1199 թ».—Սիսուան 470 (գրված է Գրիգոր (այլուր Կոստանդին) եպիսկոպոս Փիլիպոսայ)։

— 207. Գրիգոր եպիսկոպոս Կապանի և տեր Արեգնի. ներկա եղավ Լևոն Բ-ի թագադրության հանդեսին «1199 թ».—Սմբ. պատմ. 111։

— 208. Գրիգոր դպիր, գրիչ Մաշտոցի (ԺԱ—ԺԲ դար).— Տաշեան, Ցուց. 626։

— 209. Գրիգոր վարդապետ, ունի Խրատ ժամակարգութեան. տես հրատ. Սամ. անեց. էջ ժգ, ժե։

— 210. Գրիգոր գրիչ, Հաղբատում օրինակել է Ս. Բարսե-

դի գործերը՝ Բարսեղ եպիսկոպոսի առաջնորդության ժամանակ։ Այս Բարսեղը հիշված է մինչև 1189 Թ. նա Սարգիս գրչին գրել էր տվել Բարսեղի գործերը 1172 թվին, ուստի այս Գրիգորն էլ նույն շրջանում պիտի լինի (ԺԲ դար).—Զարբ. Թրգմ. 344, Աթան. յուշ. ժբ։

— 211. Գրիգոր Երզնկացի, ունի Խրատ մկրտութեան (նույնը նաև Գէորգ վրդ. Երզնկացու անունով).—Տաշեան, Ցուց. 1074 ա (ԺԲ դար)։

— 212. Գրիգոր ճգնավոր տե՛ս Գէորգ Արճիշեցի (ԺԲ դար).—Ցայսմ. մայ. 4։

— 213. Գրիգոր սրբազգեաց, որի խնդրով գրեց Սամուէլ Անեցին իր Պատմութիւնը (ԺԲ դար).—Սամ. անեց. 3, 51.—ըստ Զարբ. Հին դպր. 672 Գրիգոր Գ Պահլաւունի կաթողիկոսն է, իսկ ըստ Ալիշան, Շնորհ. 123 Գրիգոր Տղան է։

— 214. Գրիգոր, որդի Օշին Բ Լամբրոնացու, կրտսեր եղբայր Ներսէս Լամբրոնացու (մ. 1198).—գրծ. Գրիգորիս՝ Պամ. լմբ. 234. տե՛ս նաև Փ. Մուրատ, Ցայտ. յովհ. էջ ժբ և Տաշեան, Ցուց. 333, Զարբ. Թրգմ. 464, 513, Աթան. յուշ. ժգ. Հայապ, 418, Սիսուան 81 ա։

— 215. Գրիգոր, հայր Բարսեղ գրչի, որ օրինակեց Աւետարանը 1200 Թ.—Ձեռ. Վենետ. Ա. 548։

— 216. Գրիգոր իշխան, Ալեքս կայսեր կողմից Տրապիզոնի դուքս նշանակվեց. ապստամբելով հունաց դեմ, շատ նեղեց նրանց. Ալեքս ուղարկեց նրա վրա նրա քեռորդի Յովհան Տարոնեցուն, որ ձերբակալեց Գրիգորին և բանտարկեց։ Բայց հետո միջնորդելով կայսեր մոտ՝ նորից իր առաջին պաշտոնին բարձրացրեց (ԺԲ դար).—Զամչ. Գ. 11։

— 217. Գրիգոր եպիսկոպոս, եղբորորդի Ներսէս Շնորհալու (մ. «1178 Թ»).—նույն է Գրիգոր Տղայ.—Գրիգորիս կամ Գրիգորիս՝ Մխ. աս. իէ (=իզ). ժամանակից եղավ միության ժողովներին.—Զամչ. Գ. 106։

— 218. Գրիգոր, ուղեցույց Գէորգ Աչիկայի. սպանվեց Հունգարիայում. Գէորգը հարություն տվեց նրան (ԺԲ դար).—Վրդ. հե։

— 219. Գրիգոր, հայր Հասանի և պապ Գրիգոր մեծ իշխանի Խաչենոյ (ԺԲ դար).—տես. Գրիգորի՝ Օրբ. կե։

— 220. Գրիգոր սարկավագապետ. գրել է «Ներբողեան Լուսաւորչի». Թվականն անծանոթ է. բայց որովհետև ձեռագիրը

1215 թվից է, ուստի ամենաուշը ԺԲ դար։—Տպված է Սոփերքի Դ հատորում, էջ 129—157, այս վերնագրով. «Գրիգորի սարկաւագապետի և ճգնաւորի խօսք ի Ս. Գր. Լուսաւորիչ, ասացեալ ի Ս. քաղաքն յԵրուսաղէմ».—Զարբ. Հին դպր. 780—781։—Հայապ. 72 դնում է Ը դարի սկզբում և նույն է համարում «Գրիգորէս Սարկաւագէս», որի հունարեն թարգմանությունը մնում է։ Զամչ. Ա. 778 դնում է Զ դարում և Բ. 562 համարում է Աւծրունի։ Տես նաև Զեռ. Վենետ. Բ. 138—9։

— 221. Գրիգոր Մոկացի. ժամենագիր. ունի Աղօթագիրք (Վայք ողբոց), որ հասել է Վիեննայի Մխիթարեանց № 386 ձեռագրով, գրված ԺԵ—ԺԶ դարում, բայց մի ավելի հին գաղափարից.—տես Տաշեան, Ցուց. 838։ Հմմտ. Գրիգոր Մարաշեցի (№ 174), որ Տաշեան տարբեր է համարում։

— 222. Գրիգոր Երուսաղեմացի, նոր և անծանոթ ժամենագիր. ունի «Սահմանք զանազանք արտորոշեալք ըստ սրբոց և ծայրագոյն վարդապետաց, յաղագս տարբերական և այլևայլ անուանց»։ Սրանք քաղվածքներ են Դաւիթ անյաղթից և Գրիգոր Նիւսացուց։ Մնում է էջմ. Գև. № 295 ձեռագրով, որ գրված է 1267 թվին։ Հեղինակն ուրեմն գոնե ԺԲ դարից է։ Տես Գ. Տէր-Մկրտչեան, Անան. շիր. 30։

— 223. Գրիգոր վարդապետ, հայր Հառիճի վանուց. սրա խնդրանոք է որ Մխիթար Անեցին գրեց իր Պատմությունը (ԺԲ դար).—կոչ. Գրիգորիկ՝ Մխ. անեց. ա.—սեռ. Գրիգորոյ՝ անդ։

— 224. Գրիգոր, որդի Հասանի և թոռ Իշխանի. իր սեփական Երգս գյուղը նվիրեց Հոռոմոսի վանքին՝ 1201 թ.—Շիրակ, էջ 23 ա։

— 225. Գրիգոր Զ Ապիրատ, կաթուղիկոս Հայոց «1194—1203 թ». Շնորհալու Շահան եղբոր որդին էր. Տարսոնի ժողովում ընտրվեց հաջորդ Գրիգոր Ե-ի. իբր ծեր, թույլ և համակերպող անձ, ընդառաջելով Լեւոնի ցանկության կրոնական ժողով գումարեց և գիջեց ընդունելու Հույն եկեղեցու, հետո էլ լատին եկեղեցու կարգերը։ Այնուամենայնիվ միության գործը գլուխ չեկավ։ Գրիգոր Զ մեռավ Սսում։ Նրանով վերջացավ քահանայապետությունը Պահլաւունեաց տոհմից, որ տևել էր 140 տարի։ Տես և Ապիրատ № 8։—Գրիգոր՝ Կիր. 70. Սմբ. պատմ. 107, 110, 114—5. Մխ. այրիվ. 21. Վահր. ոտ. 218. Սամ. անեց. շար. 144, 164. Առաք. պատմ. 335.—Գրիգորիս՝ Սմբ. պատմ. 115. Օրբ. ժմ. 21, 22. Օրբ. կէ, հա.—Գրիգորէս՝ Մխ. անեց. գ. Օրբ. ժմ. 14?

Մխթ. աս. յաւել. Վրդ. հե.—Ալիշան՝ Սամ. անեց. շար. 164. Վրդ. ձր.—սեռ. Գրիգորի՝ Սմբ. պամ. 115.—Գրիգորիսի՝ Սմբ. պամ. 115.—բց. ի Գրիգորէ՝ Սամ. անեց. շար. 144. Օրբ. կզ?—Ջարբ. Թրգմ. 606. Աղգապ. 1509—1558.—Կազմել և մեծագին մարգարիտներով ընդելուզել է տվել մի Աւետարան, որ նվիրել էր նրան Ներսէս Շնորհալին (Rapport Arm. 48).—Ապիրատի մի Թուղթը Հռոմի Իննովկենտիոս Գ (1198—1216) պապին տես Գալճեան 52—53. այս Թղթի պատասխանը նույն պապից՝ անդ, էջ 57—59։—Դրնդ. 304։

— 226. Գրիգորէս, ժերձավոր ոմն Առաքել գրչի, որ Կամախի Եղիվանք անապատում օրինակեց Աւետարանը՝ 1203 Թ.—Ձեռ. Վեննա. Ա. 420։

— 227. Գրիգոր. հայր Գիշուկի, որ նվերներ է արել Բագնայր վանքին 1206 Թ.—Շիրակ 120։

— 228. Գրիգոր քահանա Տումարծացի. գրիչ. Կեսարիայում օրինակեց Աւետարանը, Խըտըրպալի համար, 1206 Թ.—Ձեռ. Կես. սարգ. 9 բ։

— 229. Գրիգոր, ընտրվեց առաջնորդ Աստուածընկալ ուխտին, որ նոր էր նորոգվել 1207 Թ.—Այրարատ 255, Բանասէր, 1903, 31։

— 230. Գրիգոր վարդապետ Մոնմոնիկ (կամ Մոնոնիկ), վանահայր Կեչառուաց. մասնակցեց Զաքարէ սպասալարի Լոռիում գումարած եկեղեցական ժողովին՝ «1208 Թ».—Կիր. գ.—սեռ. Գրիգորի՝ Կիր. գ.—Այրարատ 267 ա։

— 231. Գրիգոր վարդապետ Դունեցի. մասնակցեց Զաքարէ սպասալարի Լոռիում գումարած եկեղեցական ժողովին՝ «1208 Թ».—Կիր. գ։

— 232. Գրիգոր վարդապետ Տուտէորդի կամ որդի Տուտայ, յազատ տանէ, ազգական Օրբելեանց. քեռորդի Զաքարէի և Իւանէի. չորրորդ եպիսկոպոս Հաղբատի և առաջնորդ Սանահնի վանից. ձեռնադրվեց Սիւնեաց Ստեփաննոս Գ եպիսկոպոսի (1168—1214) ձեռքով։ Տուտէորդին հաջորդել է Բարսեղ Ա-ին, 1189 Թվից հետո։ Եղել է Յովհաննավանքում, ուր 1154 Թվին ստացել է և կազմել մի ձեռագիր, որի սեփական գրչով հիշատակարանի նմանահանութիւնը տես Այրարատ 167։ Ուժեղ հակառակորդ Կիլիկեան հայոց կրոնական նորմուծութեանց, ստորագրում է այն նամակին, որ Հիւսիսականները գրեցին Գրիգոր Տղային «1178 Թ»։ Ներկա էր Լոռիի ժողովին «1208 Թ», ուր հա-

կառակ կանգնելով Զաքարէի մտցրած կրոնական նորաձևություններին, ենթարկվեց նրա հալածանքին, պաշտոնից հանվեց և բանտարկվեց։—Կիր. 51.—Գրիգորիս՝ Օրբ. կբ. Կիր. 56, գ.— —Տուտեորդին՝ Լմբ. 223, 227, 243.—Գրիգորես՝ Կիր. գ.—սեռ. Գրիգորի՝ Գր. տղ. 5։—Զամչ. Գ. 121—183. Զարբ. Թրգմ. 302, 455. Այրարատ 267. Հայապ. 310. Աճառ. Հայոց գրերը 467. Շիրակ 102 ա, 158 (իր մի արձանագրությունը 1191 թվից, որով մասունքներ է նվիրում Հառիճի վանքին)։

— 233. Գրիգոր, որդի Լևոնի, տեր Բերդուսի. «1199 թվին» ներկա էր Լևոն Բ ի թագադրության հանդեսին, երբ դեռ բերդի տերը ինքը չէր, այլ հայրը։ Գերի ընկավ Խլիճ Ասլանի ձեռքը՝ 1208 թ.—Սամ. անեց. շար. 146. Սմբ. պատմ. 111. Հեթ. ժմնկ.—Զամչ. Գ. 172։

— 234. Գրիգոր քահանա, որի գերեզմանի վրա կանգնած է մի խաչքար՝ Հաղբատ 1207 թ.—Երզնկեանց, Հնախ. տեղագր. 62, Ազգագր. հանդ. VII 413։

— 235. Գրիգոր պարոն Բագարանի, այն է քաղաքապետ կամ կողմնակալ. հիշված է 1211 թ. Բագարանի արձանագրության մեջ.—Այրարատ 67, 69։

— 236. Տէր Գրիգորիս, առաջնորդ Կեչառու վանքի, 1213 թ. —Շահխաթ. Բ. 192, 196, Այրարատ 261 բ. 263։

— 237. Գրիգոր վարդապետ, միաբան Կեչառու վանքի, 1213 թ.—անդ։

— 238. Գրիգոր Ուռեթիլցի (Ուռհայի Շպղթան գավառի), գրիչ. օրինակեց Մաշտոցը՝ Կիրակոս սարկավագի համար, 1214 թ.—Տաշեան, Ցուց. 705։

— 239. Գրիգոր, որդի Վախտանգ իշխանի Խաչենոյ և եղբայր Հասանի։ Հասանը մեռավ Թուրքերի դեմ պատերազմում և նրա մահից երեք ամիս հետո էլ մեռավ Գրիգորը՝ մատաղ հասակում։ Մայրը՝ Արզուխաթուն (տես էջ 274, № 1 և 2, որոնք միևնույն անձն են)՝ կին Վախտանգի, իր ամուսնու և իր այս երկու որդիների գերեզմանի վրա շինեց Խոթավանքի կաթուղիկէ եկեղեցին, 1214 թ.—Նրա սրտառուչ արձանագրությունը տես Շահխաթ. Բ. 356—8, Բարխուտարեանց, Արցախ 204, 207։

— 240. Գրիգոր եպիսկոպոս. իր ազգական Կոստանդին քահանայի հետ միասին՝ Հոռմկլացի Յովհաննէս սարկավագին գրել տվին մի Աւետարան, 1314 թ.—Շահազիզ, Պատմ. պատկ. էջ 120—121։

— 241. Գրիգոր վարդապետ, միաբան Արջոյառիճ ուխտի, 1215 թ.—Շիրակ 122։

— 242. Գրիգոր, հայրն է Դուրթի, որ զորավարն էր Զաքարիա Ամիրսպասալարի, 1214 թ.—Թաղված է Սանահնում և նրա գերեզմանի վրա որդին կանգնեցրել է մի շքեղ խաչքար։—Յովսէփեան, Խաղբակեանք 17, Նիւթեր և ուս. Ա. 33, Այրարատ 112։ —Դուրթը կոչվում է Շոթոռկանց. բայց այս Շոթոռիկը համարում եմ մականուն կամ ազգանուն, և ոչ թե անուն։

— 243. Գրիգոր սարկավագ, որդի Յովհաննէս ճգնավորի. միաբան էր Երուսաղէմի Ս. Աստուածածին տաճարի, որ շինել էր իր պապի եղբայրը՝ Գէորգ քահանա։ Իր հայրը՝ Յովհաննէս՝ նրա համար գրել տվեց մի մեծ Ճառընտիր, 1215 թ.—Ձեռ. Վենետ. Բ. 144։

— 344. Գրիգոր, «մեծահռչակ գրիչ». Սողբոյ վանքում սկսեց օրինակել 1215 թվին մի Աւետարան, որ վերջացրեց Տարոնում, 1216 թ.—Մխսուան 113։

— 245. Տէր Գրիգոր, միջնորդ եղավ Թորոս Գորգացու և Դրազարկի միաբաններից մեկի միջև, որ իր անունը համեստությամբ չի հիշում, գրելու Աւետարանը 1217 թ.—Ձեռ. Վենետ. Ա. 602։

— 246. Գրիգորիս, առաջնորդ Հոռոմոսի վանից, 1218 թ. —Արձ. Շիրակ 23 բ, 28 ա։

— 247. Գրիգոր աւագերեց քահանա, որի որդին՝ Սարգիս շինել է Երուանդաշատի Ս. Աստուածածին եկեղեցին, 1218 թ.—Այրարատ 61։ (Սարգիս որդի Գրիգոր քահանայի հիշված է նաև 1233 թ. № 277. թերևս նույնն է, որ հետո քահանա է դարձել)։

— 248. Գրիգոր վարդապետ, որդի Աբասու. նախապես միաբան և ապա առաջնորդ Սանահնի վանուց 1214—1217 թվերին, իբրև հաջորդ Փիլիպպոսի։ Մեռած պիտի լինի 1217—21 թվերի միջև. իր անթվական շիրիմը մնում է մինչև այժմ Սանահնի եկեղեցում։ Գրել է Պատճառաց գիրքը, նախ քան 1217 թիվը։ Սա մի եզական գործ է հայ մատենագրության մեջ։ Նա եկեղեցական մատենագրության պատմության առաջին փորձն է։ Գիրքը ունի երկու մաս, որոնք արդի բառով կարող ենք կոչել 1) Ներածություն Ս. Գրոց և 2) Հայրախոսություն։ Սրանց մեջ հեղինակը խոսում է առանձին առանձին յուրաքանչյուր մատենագրի մասին, տալիս է նրա կյանքը, գործունեությունը, արտահայտած գաղափարների վերլուծումը, գրական գործերը և նրանց բովանդակությունը։ Այս գրքի ընդարձակ նկարագրությունը տես Տաշեան, Ցուց. 213—233. մանրամասն հետազոտություն հե-

դինակի անձի և գործի մասին ունի Ակինեան, Մատեն. հետազ. Ա. 1—84։—Զարբ. Հին դպր. 779. Սարգիսեան, Եւագր. Ներած. էջ ԺԴ։

— 249. Գրիգոր Սկեւռացի, ժամանակակից և մտերիմ Ներսէս Լամբրոնացու. ինքն էլ Լամբրոնացի, բայց լինելով վանահայր Սկեւռայ վանքի, կոչվել է Սկեւռացի։ Սա պետք է լինի Գրիգոր դիտապետ, առաջնորդ Սկեւռայ, որի քեռորդին և աշակերտն է Գէորգ Լամբրոնացին։ Ներսէս Լամբրոնացու մահից («1198 թ») հետո եղավ ուսուցիչ Սկեւռայ վանքում։ Լամբրոնացին նրան էր հանձնած Սաղմոսի մեկնության արտագրությունը։ Խոստովանահայրն էր Լևոն Բ թագավորի, որ հունարենից թարգմանել տվեց նրան Նիկիայի Վահան կամ Յովհաննէս արքեպիսկոպոսի թուղթը առ Զաքարիա Ձագեցի կաթուղիկոս Հայոց՝ Սիսում, 1203 թվին։ Գրիգորը իրեն օգնական էր վերցրել այս թարգմանության մեջ՝ իր ընկեր Բարսեղին. իսկ թարգմանությունը սրբագրեցին Նիկիֆոռ և Միխայէլ քահանաները, որոնք անշուշտ հույն են, ինչպես երևում է անուններից (Ձեռ. Վենետ. Բ. 1074)։ Լևոնի մահվան ժամանակ տվավ նրան վերջին հոգևոր մխիթարությունը «1219 թ»։ Իր թողած գործերն են Ճառեր, որոնցից հատկապես հիշելու արժանի են՝ Պատմութիւն վարուց Գր. Լուսաւորչի (որ է Ագաթանգեղոս կերպարանափոխյալ), Ներբողեան պատմագրաբար ի վարս Ներսէսի Լամբրոնացւոյ, Ներբողեան Ս. Կուսին, Ի յարութիւնն Քրիստոսի, Կանոն Ծննդեան (Արեգակն արդարութեան), Վարք Գրիգորի Նարեկացւոյ, Եսայեայ՝ Տէր. ո՞ հաւատաց (Սիսուան 103 բ, Ձեռ. Վենետ. Բ. 306, որ գրել է Լամբրոնի տեր Կոստանդին իշխանի խնդրանոք), Աղօթագիրք (տպ. Պոլիս 1742), Մեկնութիւն Եւագրի (սա մի ընդարձակ և ընտիր գործ է, որ հասել է մեզ Վենետիկի № 1552 և Երուսաղէմի ՀԵ № 240 ձեռագրերով. Սարգիսեան, Եւագր, ներած. էջ ԺԾԳ—ԺԾԸ համոզիչ կերպով ապացուցում է, որ Եւագրի մեկնիչ Գրիգորը Սկեւռացին չէ, այլ Գրիգոր Գ կամ Փոքր Վկայասէր կաթուղիկոսը, որովհետև մի տեղ հիշում է թե ինքը կաթուղիկոս է եղած), Ներբողեան ի փոխումն Աստուածածնին (Ձեռ. Վենետ. Բ. 338)։ Այս վերջին գրվածքը, որ դեռ ևս հրատարակված չէ, Հ. Բարսեղ Սարգիսեանը իր Ձեռ. Վենետ. ցուցակում, հտ. Բ. 339, գնահատում է այս ձևով. «Հիանալի է ներբողեանս թէ՛ լեզուին և ոճին բարձրութեան, և թէ՛ խորախորհուրդ վարդապետութեանց համար։ Իր տեսակին մէջ

եղական է, մանավանդ պերճախոսական ձևոց առատութեամբ և դարձուածներով. ինչպես նաև Ս. Գրոց և Հարց գոհարներու ամենաճարտար յեռուածներով։ Կարծէք թե երկրորդ Նարեկացի մ'է և Բեռնարդոս՝ առ ամենասուրբ Կոյսն տածած մշտաբորբոք սիրովն և աստուածային գաղափարականովն։ Գիտաւոր է և սրտաճանոյ կոչը ուղղեալ առ Տիրամայրն՝ ժողովրդեան ամէն դասակարգի, վիճակի և պայմանի համար»։—Շար. (հիշված է սկզբում՝ հեղինակների շարքում), Օրբ. Ժմ. 24. Տաթև. հարց. 514, 638, 687 (ապացույց է բերում Քրիստոսի հարության ժամի մասին. հիշում է նաև նրա Ճառ ի փոխումն Աստուածածնի). Գարականոն շար. 3 (իբր հեղինակ Շարականի).—սեռ. Գրիգորի՝ Սկևռ. աղ. 5, 49, 154, 187. Սկևռ. լմբ. 3. Ջեռ. Օշ. 83 (նրան է վերագրում 16 այուն բոնող մի գեղեցիկ «աղօթք որ ի խորհրդեան ժամու սրբոյ և մեղսաքաւիչ պատարագին մատուցանի»)։—Ջամչ. Գ. 168. Սիսուան 100. Հայապ. 440. Զարբ. Հին դպր. 600, 709, 715—8, Թրգմ. 631, 730. Տաշեան, Ցուց. 1076 ա։

— 250. Գրիգոր վարդապետ, գրել է Մեկնութիւն Եսայեայ (ի խնդրոյ Լամբրոնի Կոստանդին իշխանի) և ի Ս. Զատիկն։ Թերևս Սկևռացին է.—Զարբ. Հին դպր. 781։

— 251. Գրիգոր դպիր, որ Դրազարկի առաջնորդ Բարսեղի հրամանով հունարենից թարգմանեց Մեկնութիւն Կաթողիկեայց, որ հետո նորից խմբագրեց Ներսէս եպիսկոպոսը.—Թերևս Սկևռացին է, ըստ Զարբ. Հին դպր. 707։

— 252. Գրիգոր խուլ, նշանավոր երաժիշտ և գրիչ Սսեցի. ժամանակը ճիշտ հայտնի չէ, բայց Լևոն Բ-ին ժամանակակից էր։ Խուլ մականունը ստացել է նրանից «որ ասեն թե մոմ դնէր յականջն՝ առ ի չլսել զբանս աշխարհականս»։ Վերակազմել է Շարականը, որ իր անունով կոչվել է Խլկցի։ Շփոթվում է Գէորգ խուլի հետ, որ տես էջ 466։ Ալիշանը կարծում է որ Գէորգը Շարականի բնագիրն է կարգավորել, իսկ Գրիգորը՝ եղանակը։—Սիսուան 105—6, 224, 517 բ։

— 253. Գրիգոր կրոնավոր, ծաղկող և կազմարար. Ալէքս պատրոնի ծախսով նորոգեց և նկարազարդեց մի հին Աւետարան՝ 1220 թ.—Rapport Arm. 54, Ջեռ. Կարին. 18։

— 254. Գրիգոր Բ. առաջնորդ Հառիճի. հաջորդից Պետրոսին, 1221 թ. նրան էլ հաջորդում է Յովհաննէսը 1224 թ.—Շիրակ 161, 163։

— 255. Գրիգոր Կեչրորցի, նահատակվել է «1222 Թ».— Նոր վկ. 95, Այրարատ 47 ա, Շիրակ 130։

— 256. Գրիգոր, նորոգել է Վայոց ձորի Ս. Աստուածածին եկեղեցին, 1222 թ. (Արձ. Սիսական 156)։ Նույն անձն է թերևս Գրիգոր որդի Սմբատայ, տեր Ոստնի. նվիրներ է արել Վայոց ձորի Ս. Յովհաննէս եկեղեցուն. հիշված է անթվական մի արձանագրության մեջ՝ Սիսական 156։

— 257. Գրիգոր, որդի Հաղբակի Բ, եղբայր Վասակի, Խաչենցի. Խփչաղների պատերազմում գերի բռնվեց Գանձակում և հավատքը չուրանալով նահատակվեց «1222 Թ»։—Կիր. Ժ. Վրդ. ձգ. Նոր վկ. 97։—Գրիգոր Խաղբակեանի արձանագրությունները, նրա շինարարական գործունեությունը, ինչպես և նրա հուշարձանը «բարձր պատվանդանով մի մեծ խաչքար, ներքևի մասում, ձիու վրա նստած իշխանի հարթաքանդակով, որ կռվում է վագրի դեմ», 1233 թվից, տես Յովսէփեան, Խաղբակեանք 63, 64, 79, 81—84։

— 258. Գրիգոր քահանա Երզնկացի, որի տանը Մոնոմախ գրիչը օրինակեց Իգնատիոս վարդապետի Մեկնութիւն Աւետարանին Ղուկասու՝ 1223 թ.—Անկ. գիրք նոր կտակարանի, յուշ. էջ ժե։

— 259. Գրիգոր, կրտսեր որդի Ջաջուռ Բ-ի Խաղբակեան, եղբայր Հասանի (մ. 1225) և Սմբատի (մ. 1224 թ). Աւանախոսը նվիրեց Վաճառքի Ս. Ստեփաննոս եկեղեցուն. զինակից և մասնակից էր իր եղբոր արշավանքներին.—Յովսէփեան, Խաղբակեանք 33, 79։

— 260. Գրիգոր, սպասավոր Ս. Լուսաւորիչ անապատի, եղբայր Ղազար վարդապետի. հիշված 1224 թ.—Ջալը. Թրգմ. 729. Աթան. յուշ. է։

— 261. Գրիգոր, խարազնազգեստ ճգնավոր. մասունքներ նվիրեց Ս. Լուսաւորչի անապատին՝ 1224 թ.—Ջալը. Թրգմ. էջ 729։

— 262/3. Գրիգոր Ապուղամրենց, այն է որդի Ապուղամրի, հորեղբայր Տէր Բարսեղի, արքեպիսկոպոս մայրաքաղաքին Անւոյ և նահանգին Շիրակայ. հիշված է Շիրակի արձանագրությանց մէջ սկսած 1213 թվից մինչև 1227 թ։ Հիշատակելի է հատկապես Վրաց Եպիփան կաթողիկոսի արձանագրությունը ՈԿԷ=1218 թվից (ИАН 1910, էջ 1439)։—Շիրակ 23, 26, 60,

63, 96, 118, 120—122, 150, 164, 165. Այրարատ 61. Շնորհ. և պըղձ. 13. Օրբելի, Անւոյ աւերակները 57։

— 264. Գրիգորիս Սսեցի, գրիչ և երգեցող. Սանդուլ անապատում օրինակել է Աւետարանը, 1228 թ. Գրիգոր վարդապետի աշակերտ Պօղոսի համար։—Թորոս աղբ. Ա. 63, 64։

— 265. Գրիգոր վարդապետ. Սանդուլ անապատում՝ իր աշակերտ Պօղոսի համար՝ գրել տվեց Գրիգորիս Սսեցուն մի Աւետարան, 1228 թ.—Թորոս աղբ. Ա. 63, 64։

— 266. Գրիգոր հեճուպ, որդի Հասանի, տեր Հոռոմոսի, հիշված է վանքի արձանագրության մեջ 1198 և 1228 թվերին.—Շիրակ 17, 20 ա, 22 ա, 23 բ։

— 267. Գրիգորիս, գրիչ. օրինակեց Գրիգորիս Վկայասէրի կազմած Ճաշոցը կամ Տօնամակը, 1230 թ։ (Ավելի ուշ, Լեոն Գ այս ձեռագիրը նվիրեց Փերուճիայի հայոց եկեղեցուն, 1279 թ).—Ձեռ. Վենետ. Բ. 1208—1210։

— 268. Գրիգոր, Երզնկայի Իշխա գյուղից, որդի Սոսթենէսի և եղբայր Սարգիս և Վարդան քահանաների, որոնք Երզնկայի Կապոսի վանքում գրել տվին մի Տօնամակ՝ 1230 թ.—Ձեռ. Վենետ. Բ. 1214։

— 269. Գրիգոր Անեցի, մեռել է 1231 թ. իր տապանաքար-խաչվէմը տես Շիրակ 130։

— 270. Գրիգոր, որդի Խաչատուր քահանայի, գրիչ և ծաղկող. երկար ժամանակ փնտռում էր նշանավոր Գրիգոր գրիչ Մուրղանեցու օրինակած Աւետարանը, որ վերջապես ձեռք բերելով, օրինակեց Կարինում, և զարդարեց գույնզգույն նկարներով, 1230 թ.—Ձեռ. Վենետ. Ա. 572։

— 271. Գրիգոր Մուրղանեցի, հռչակված իբրև «ճարտարագիծ գրիչ և անյաղթ գիտնական», որի արտագրած Աւետարանը համարվում էր «ամենալաւ օրինակը» և «անգիւտ մարգարիտ»։ Այս օրինակն է, որ արտագրեց նախորդ Գրիգորը (№ 270), Կարինում 1230 թվին։ Մուրղանեցու թվականը հայտնի չէ թե 1230 թվից որչափ հին է։—Ձեռ. Վենետ. Ա. 572։

— 272. Գրիգոր, իր եղբայր՝ Մարտիրոսի հետ միասին շինել են Գոշավանքի Ս. Գրիգոր եկեղեցին, 1231 թ.—Բարխուտարեանց, Արցախ 352, Յարութիւնեան, Ազգագր. հանդ. Ժ. 31։

— 273. Գրիգորիս վարդապետ Խաչենի, եղբայր Եղիայի. ներկա էր Գանձասարի նորաշէն եկեղեցու օծման հանդեսին. մեռել է 1231 թ.—Կիր. ԻԹ։

— 274. **Գրիգոր**, եղբայր Յովհաննէս քահանայի. սրանց գերեզմանի վրա կանգնեցրած է մի խաչքար՝ Հաղբատի գերեզմանոցում 1231 թ.—Երզնկեանց, Հնախ. տեղագր. 63, Ազգագր. հանդ. Է 413։

— 275. **Գրիգոր** աշխատող, այն է բանվոր, որ Խծկոնից 1233 թվի մի արձանագրություն փորագրել կամ տաշել ու գրել է պատին.—Շիրակ 128։

— 276. **Գրիգոր** Մագիստրոս, որդի Վահրամ Պահլավունու, տեր Բագնայրի, հիշված 1233 թ.—Ալիշան, Շնորհ. 14։

— 277. **Գրիգոր** քահանա, որի որդին Սարգիս՝ ավագերեց Ծմակ գյուղի՝ նվերներ է արել Բագնայրին, 1233 թ.—Շիրակ 33 ա, 119։

— 278. **Գրիգոր** մագիստրոս, որդի Ապուղամրի, իշխան Շիրակի, հիշված է Բագնայրի մի արձանագրության մեջ, 1233 թ.—Շիրակ 119։

— 279. **Գրիգոր**, սան Նրջիսի՝ դստեր մեծն Սարգսի. մի Աւետարան նվիրեց Հառիճի վանքին, 1234 թ.—Շիրակ 162 բ։

— 280. **Գրիգոր** հայր, միաբան Խծկոնքի, 1236 թ.—Յովսէփեան, Նիւթեր և ուս. Ա. 26։

— 281. **Գրիգոր** գրիչ, Գանցէ պուրճում օրինակել է մի Շարական, 1236 թ.—Թորոս աղբ. Բ. 416։

— 282. **Գրիգոր**, գրիչ. օրինակել է Ն. Լամբրոնացու Մեկնութիւն Առակացն Սողոմոնի ՈՁԵ=1236 թ.—Ձեռ. Կարին. 145 (տպ. ՌՁԵ. կարծեմ ուղղելի ՈՁԵ)։

— 283. **Գրիգոր** վրդ. Վկայասէր, առաջնորդ Խաչգլուխ լեռան Ս. Սահակայ վանից. ուներ բազմաթիվ աշակերտներ, որոնք խստակրոն ճգնավորներ էին. կոչվել է «հրեղեն լեզու» (1239 թ)։ Սրան աշակերտած պիտի լինի նաև Ստեփաննոս վրդ. Տէր Ցուական-որդի, որ մեռել է «1251 թ».—Պտմ. տէր յուսկ. 218։

— 284. **Գրիգոր** եպիսկոպոս Սեբաստիայի՝ 1239 թ.—Շահազիզ, Պատմ. պատկ. 124։

— 285. **Գրիգոր** եպիսկոպոս, դրան սարկավագ Կոստանդին կաթուղիկոսի. ստացավ մի օրինակ Ճաշոց, 1239 թ.—Տաշեան, Ցուց. 251։

— 286. **Գրիգոր**, որդի Աւագ-Սարգսի, թոռն Իւանէ Աթաբէկի. հորը կողմից ուղարկվեց Չարմաղանի մոտ բանակցության, 1239 թ.—Ջամչ. Գ. 212։

— 287. **Գրիգոր**, որդի Դաւթի Շոթոռկանց և հայր Սմբա-

տի, Արջուկի և Արղուխաթունի. պատրոնաց պատրոն. հիշված է Խծկոնից 1214, 1236 և 1240 թվերի հիշատակարաններում. իր եղբոր՝ Գայլ Շերպարիքի հետ Վահանաւոն գյուղի կեսը նվիրել է Խծկոնից Ս. Սարգիս վանքին, 1214 թ. նախորդի (№ 242) թոռն է.—Ցովսէփեան, Նիւթեր և ուս. Ա. 25, 27, 28, 33, Խաղբակեանք 17, 18, Շիրակ 129, Այրարատ 112։

— 288. Գրիգոր Համկլայեցի. Շնորհալու ձեռագրից օրինակեց Ընդհանրականը՝ 1240 թ.—Տաշեան, Ցուց. 621 ա։

— 289. Գրիգորէս, գրիչ, որ Վարդան Արևելցու ժղլանքը պետի մաքրագրեր Զապել թագուհու համար՝ 1241 թ.—Ալիշան, Յուշիկք Ա. 147։

— 290. Գրիգոր Կապալեցի, վերջացրեց Նոր-Գետիկի եկեղեցու շինությունը՝ 1241 թ.—Կիր. ժե։

— 291. Գրիգոր, որդի Սմբատի. նվերներ է արել Խաչենի Մեծարանց վանքին, 1241 թ.—Բանասէր 1901, 138։

— 292. Գրիգոր գրագիր, օգնեց Յովհաննէս գրչին արտագրելու Տաղարանը, Դրազարկի վանքում, 1241 թ. Արտագրել է հատկապես քարոզները.—Ձեռ. Վեննա. Բ. 1066։

— 293. Գրիգոր Կաղսեցի, քահանա, միաբան Հոռմի Հայոց տան, 1242 թ.—Թորոս աղբ. Բ. 441։

— 294. Գրիգոր երեց, ջանցլեր, այն է պետական ատենադպիր 1243 թ.—Միխուան 485 բ։

— 295. Գրիգոր կրոնավոր, եկել է Հերհերի եկեղեցու աթոռակալ Գագիկ երեցի մոտ և օգնական է դարձել նրան, 1243 թ. —Արձ. Մի սական 112։

— 296. Գրիգորիս, գրիչ. Սսում օրինակեց Ն. Շնորհալու և Գր. Մագիստրոսի թղթերը, 1244 թ.—Թորոս աղբ. Բ. 333—4։

— 297. Գրիգոր, որդի Վահրամի և եղբայր Կոստանդին Ա կաթողիկոսի, հորեղբայր Համկլայու Թորոս քահանայի. արդեն վաղուց մեռած էր 1244 թ.—Նաթանեան, Տեղեկ. Սեբաստ. 83, 84, Թորոս աղբ. Ա. 187, Բ. 359, Ձեռ. Հալէպի, Բ. 140 ա։ Ձեռ. Սեբ.=ՀԱ 1924, 333. Ձեռ. Վեննա. Ա. 651—2, Ազգապ. 5527։

— 298. Գրիգոր, թոռն Խաչենխենց, նվիրատու Առաքելոց վանքի (Կուճէն գյուղ Ղազախի), 1245 թ.—Բարխուտարեանց, Արցախ 379։

— 299. Գրիգոր, որդի Մարծպանի. իր եղբայր Ասլանբէկի հետ շինել է Դսեղի Բարձրաքաշ Ս. Գրիգոր վանքը և զանազան նվերներ է արել նրան. հիշված է 1205, 1241 և 1246 թվերի

արձանագրության մեջ։ Կինն է Մամքան։—Յարությունեան, Ներս. դպր. սանների Ա ճնպրհրդ. էջ 65, 70, 71, Լալայեան, Ազգագր. հանդ. Է. 423։

— 300. **Գրիգոր** արքեպիսկոպոս, եղբայր Վարդան վարդապետի, առաջնորդ Բջնիի, 1246 թ.—Ջամչ. Գ. 229, Այրարատ 273, 276, Սմբատեանց, Գեղարքունի 332։

— 301. **Գրիգոր**, եղբայր Ստեփաննոսի՝ դուռն եպիսկոպոսի, որ ստացավ մի Աւետարան Հռոմկլայում, 1248 թվին, երբ Գրիգորը մեռած էր.—Ջեռ. Հալէպի, Բ. 5, 6։

— 302. **Գրիգոր**, եղբայրն է Հաղբատի առաջնորդ Համազասպ եպիսկոպոսի, կինն է Մամքան. գնեց Մածնաբերդի իշխան Թաղիաթինի որդի Սարգսից Ագուաձորը, որ նվիրեց Հաղբատին 1249 թ.—Մովսէսեան, Լոռիի հիւր. թգ. 79, Երզնկեանց, Հնախ. տեղագր. 25, 55։

— 303. **Գրիգորիս** եպիսկոպոս Դադի վանից. Վարդան վարդապետի հետ միասին նզովեցին և զսպեցին Դաւիթ Ծարեցի մոլորչին՝ «1249 թ».—Կիր. խզ։ (Ջամչ. Գ. 233 կոչում է Գրիգորիս եպս. Դատվանից)։

— 304. **Գրիգոր**, եպիսկոպոս Տարսոնի, 1230?—1250 թ.—Սիսուան 271 բ։

— 305. **Գրիգորիս** վարդապետ, Ստեփան Արճիշեցու հետ (տես այս անունը) ուխտի եկավ Խորանաշատի վանքը և դրամական օգնություն արեց վանքի շինության, 1251 թ.—Արձ. Տեղեկ. Արմֆանի 1940, № 4, էջ 175։

— 306. **Գրիգոր**, մերձավոր Աւիւծ Հոգեորեանցի, որ շինել է Հոռոմոսի խանգարված տուն և նվերներ է արել վանքին, 1251 թ.—Արձ. Շիրակ 25 բ։

— 307. **Գրիգորիս** վարդապետ, եղբայր, աշակերտ և հաջորդ Վանական վարդապետի. սկսեց վարդապետել Խորանաշատի վանքում, 1251 թ.— Կիր. ծա։—Աւգեր. Լիակ. վրք. սրբ. ԺԱ, էջ հդ ունի մի հիշատակարան, որից երևում է, որ այս Գրիգորը եղբայրն է Վանականի և նրա հետ հրամայել է Տէր Իսրայէլին կազմելու Յայսմաւուրքը. «հրամանաւ Վանական վարդապետի և հարազատին Գրիգորոյ՝ Տէր Իսրայելի»։ Միևնույն ժամանակ Բջնիի 1251 թվի արձանագրության մեջ հիշվում են Վանական և Գրիգոր «եպիսկոպոսք Բջնոյ և Ոստանի», որոնք կանոններ են հաստատել կաշառքով ձեռնադրողների դեմ.—Այրարատ 273։

— 308. **Գրիգոր** ոմն, բարեխոսության համար հիշատակված է Հաղբատի մի խաչքարում, 1255 թ.—Երզնկեանց, Հնախ.

տեղագրութ. 69, Ազգագր. հանդ. VII, էջ 417։

— 309. Գրիգոր Վզիկ, գրիչ. Կապոսի վանքի վանահայր Սամուէլի համար օրինակեց Հարցմունք Աթանասի՝ 1255 թ?— Աթան. յոչ. ժղ. Ձեռ. Վենետ. Բ. 322։

— 310. Գրիգոր քահանա, հոգևոր եղբայր Մկրտիչ աբեղայի. միասին շինեցին Արուճի և Փարպիի հնձանները և նվիրեցին Հոռոմոսի վանքին, 1258 թ.—Արձ. Շիրակ 26 բ։

— 311. Գրիգոր, մեծ իշխան Խաչենեցի, հայր Սևադայի, որ մեռել էր 1260 թվի պատերազմում, Մարտիրոսաց քաղաքի առման ժամանակ (Յովսէփեան, Խաղբակեանք 94 մեռնողը սխալմամբ համարում է Գրիգորիսին և ոչ թե Սևադային).—տես. Գրիգորի՝ Վրդ. ղբ։

— 312. Գրիգոր, փակակալ Սանահնի վանից, սրա խնդրանոք գրեց Վարդան պատմիչը իր Մեկնութիւն Հնգամատենի աշխատությունը՝ 1261 թ.—Զարբ. Հին դպր. 742. Յովսէփեան, Նիւթեր և ուս. Ա. 69։

— 313. Գրիգոր, տեր Մաղոտ խաչ բերդի (Կիլիկիա). պատերազմեց Խարամանների դեմ 1261 թ.—Սիսուան 196բ, 294ա։

— 314. Գրիգոր երեց, որդի Մանկիկ երեցի. Բագնայրի Ս. Աստուածածին եկեղեցուն նվիրեց մի քանի ձեռագիր՝ 1262 թ.—Յովսէփեան, Մի էջ հայ արուեստի, էջ 18։

— 315. Գրիգոր քահանա, որդի Գորգ քահանայի, եղբայր Հռոմկլայի Թորոս քահանայի և Ստեփաննոս եպիսկոպոսի, եղբորորդի Կոստանդին Ա կաթուղիկոսի. հիշված է 1244 և 1262 թ.—Թորոս աղբ. Ա. 188, Նաթանեան, Տեղեկ. Սեբաստ. 83, Ձեռ. Հալէպի, Բ. 140ա. Ձեռ. Սեբ.=ՀԱ.1924, 333, Ձեռ. Վենետ. Ա. 651։

— 316. Գրիգոր, որդի՞ կամ ամուսի՞ն Թայիկի, որ իր և նրա հոգուն նվերներ է արել Բագնայրին, 1262 թ.—Սարգիսեան, Տեղագր. 187, Շիրակ 119։

— 317. Գրիգոր, որդի Գրիգորի, եղբորորդի Կոստանդին Ա Կաթուղիկոսի և հորեղբորորդի Հռոմկլայու Թորոս քահանայի. հիշված է 1244, 1256 և 1262 թ., իբրզինուոր և տարաժամ վախճանեալ». Հեթում թագավորի պալատում պաշտոնյա էր.—Նաթանեան, Տեղեկ. Սեբաստ. 84, Թորոս աղբ. Ա. 188, Ձեռ. Հալէպի, Բ. 140 ա. Ձեռ. Սեբ.=ՀԱ 1924, 333, Ձեռ. Վենետ. Ա. 652։

— 318. Գրիգոր վարդապետ, ուղեկից եղավ Վարդան պատմիչին, երբ սա գնաց Հուլաղու խանի տեսության «1264 թ».— Վրդ. ղգ։

— **319.** Գրիգորիս կրոնավոր, գրիչ․ օրինակեց Աւետարանը Մարմանց գյուղում, 1266 թ.—Սմբատեանց, Գեղարքունի 55։

— **320.** Գրիգոր եպիսկոպոս, առաջնորդ տանն Փարզմընայ․ հիշված է նախ քան 1269 թ.—Ձեռ. հես. ածած. 46 ա։

— **321.** Գրիգոր կրոնավոր, միաբան Մաշկաւոր վանքի, ուր սկսեց արտագրել մի Աւետարան, ստացող Ծերունի համար, 1269 թ։ Նույն միջոցին տեղի ունեցավ Կիլիկիայում մի մեծ երկրաշարժ, որ կործանեց Սարաւանդիքարը, Համուսը, Արքակաղինը և այլ շատ վայրեր ու վանքեր, մանավանդ մահմեդականների բազմաթիվ քաղաքները։ Գրիգորն էլ «անտուն անտեղ» շրջում էր, «ոչ ունելով տեղի հանգստեան»։ Ավարտեց գրչությունը Անդրեասանց վանքում։—Ձեռ. Վենետ. Ա. 496։

— **322.** Գրիգոր վարդապետ կամ քահանա, եղբայր Վարդան քահանայի. 1267 թվին, Վիրապում, հիւսիկեցի Գէորգ գրչին գրել տվեց մի օրինակ Տօնապատճառ։ Անդամ Ջագավանից ժողովի 1270 թ։ Վարդան և Գրիգոր քահանաները հոգևոր որդիքն են Գրիգոր արքեպիսկոպոսի Բջնոյ և երեքով ուսուցիչ Գէորգ Սկևռացու, որ վերոհիշյալ Գէորգ գրիչն է.—Գ. Տ-Մկրտչեան, Անան. շիր. էջ 31—32, կանոն. 180, Զարբ. Հին դպր. 718, Ձեռ. Վենետ. Բ. 312։

— **323.** Գրիգոր, արքեպիսկոպոս Արարատեան նահանգի. նստում էր Բջնիում և կառավարում թեմը. ստորագրեց Սսի ժողովի կանոններին «1246 թ». եղել է ուսուցիչ Գէորգ Սկևռացու. գումարել է Ջագավանից ժողովը «1270 թ».—Օրբ. կը. հիր. խա. կանոն. 180, 187.—Այրարատ 10, 276. Գ. Տ-Մկրտչեան, Անան. շիր. էջ 31—32, Զարբ. Հին դպր. 718. Ձեռ. Վենետ. Բ. 312. Ազգապ. 5527. Ջաղ. 23։

— **324.** Գրիգոր վարդապետ Լամբրոնացի, ունի «Ի բանն. Տէ՛ր, Ձ հաւատաց լրոյ մերում» (Ձեռ. հարին. էջ 5).—Թվականն անհայտ։

— **325.** Գրիգոր, որդի Հայրապետի. Լորեկի հետ միասին մի խաչքար են կանգնեցրել Լոր գյուղում, 1271 թ.—Լալայեան, Ազգագր. հանդ. Գ. 162։

— **326.** Գրիգոր պարոն, շինել է տվել մի գեղեցիկ գրակալ 1272 թ. նկարը տես Ցովսէփեան, Խաղբակեանք 161, 164։

— **327.** Գրիգոր, պանդուխտ էր Երիզայում, ուր Ս. Աստուածածնի վանքում, Սիոն կրոնավորի և մյուս միաբանների

խնդրանոք օրինակեց Աւետարանը, 1272 թ.—Ձեռ. Սեբ. (ՀԱ 1924, 514)։

— 328. **Գրիգոր Ա.** կաթուղիկոս Աղթամարի, հաջորդ Դաւիթ Ա-ի և նախորդ Ստեփաննոս Տղայի. ունի միայն Հաւաք. 38. չեն ընդունում Օրմանեան և Ակինեան. ըստ հաշվի պետք է լինի 1185—1272 թվերի շրջանում, երբ Օրմանեան և Ակինեան դնում են անանուն ոմն։ Այդ անանունն է Գրիգոր Ա և ապա Գրիգորիս Բ։

— 329. **Գրիգորիս Բ**, կաթուղիկոս Աղթամարի, հաջորդ Ստեփանոս Ա-ի և նախորդ Դաւիթ Բ-ի՝ ըստ Հաւաք. 59, որ տալիս է նրա մասին հետևյալ անհասկանալի տեղեկությունը. «որ է պատմօղ մեծապսակ եկեղեցւոյ, որ է որդի Հեղենիկ ալքային»։ Այդ միջոցին Ակինեան, Գաւազանագիրք 40 դնում է Անանուն ոմն, 1185—1272։ Այդ անանունն է Գրիգոր Ա (տես վերը) և Գրիգորիս Բ, որ իբրև կաթուղիկոս Աղթամարի հիշված է 1260 թ. (Ձեռ. Դաշեան, Բ. 47 ա)։ Հաւաքարանը համապատասխանում է նրան։

— 330. **Գրիգոր** վարդապետ, միաբան Ականց անապատի (Կիլիկիա). գրիչ. նույն անապատի վանահայր Ստեփաննոսի հրամանով օրինակեց Մաղաքիա աբեղայի Պատմութիւնը՝ 1271 թ. ավելի ուշ՝ Միխայէլ ասորու Ժամանակագրութիւնը՝ 1273 թ.—տես Մաղաք. աբ. տպ. Երուսաղէմ, էջ 71 յիշատ. նաև Տաշեան, Ցուց. 361 և Միխ. աս. Բ. տպ. յոջ. էջ ժ և յաւել. էջ 45։

— 331. **Գրիգոր** քահանա, որդի Կոստանդեայ իշխանի. Լևոն Գ-ի կին Կեռան թագուհու պալատում էր «իշխեցող ի վերայ մեծի և փոքու և որպէս հայր տածող և խնամող ամենեցուն» (1274 թ).—ՀԱ 1898, 247 ա։

— 332. **Գրիգոր** երեց, հոգևոր եղբայր Սսեցի Յակոբ գրչի, որ նրա միջնորդությամբ օրինակեց Մանրուսմունքը՝ Կարապետ դպրի համար. 1274 թ.—Manus. brit. mus. 85 ա։

— 333. **Գրիգոր**, որդի Յովհաննէս իշխանի Երզնկայի և թոռն Սարգիս արքեպիսկոպոսի Եկեղեաց (մ. «1276 թ»), որ 1273 թվին շինեց Ս. Փրկիչ հոյակապ եկեղեցին, ուր փոխադրեց Ս. Ներսէսի մասունքները։ Գրիգորը և նրա եղբայրը Ներսէս հիշված են Ս. Ներսէսի արծաթապատ աջի արձանագրության մեջ, 1273 թ.—Թորոս աղբ. Բ. 294, Ֆ. Մուրատ, Յայտ. յովհ. էջ ՅՀԷ և շար. Խալաթեան, Մնաց. էջ դ, ե։

— 334. **Գրիգոր** Ներկարար, հայր Գրիգորի աբեղայի, որ

օրինակեց մի Աւետարան, Փրկչի վանքում, 1280 թ.—Թորոս աղբ. Ա. 216։

— 335. Գրիգոր աբեղա, որդի ներկարար Գրիգորի՝ գրիչ. օրինակել է մի Աւետարան, Փրկչի վանքում, 1280 թ.—Թորոս աղբ. Ա. 215—6։

— 336. Գրիգոր, կազմող Եզնկայ ձեռագրի, որ գրված է 1280 թվին.—տես Աճառյան, Քննութիւն և համեմատութիւն Եզնկայ նորագիւտ ձեռագրին, Վիեննա, էջ 15։

— 337. Գրիգոր պատմիչ. Կիլիկիայի Ականց անապատից. գրել է «Վասն ազգին Թաթարաց», սկսելով իր Պատմությունը Միխայէլ ասորու թողած կետից և հասցնելով մինչև Կոստանդին Ա կաթուղիկոսը, որ գահակալել է «1221—67 թ».—Ալիշան. յոբ. էջ Է. Հայապ. 110։

— 338. Գրիգոր պայլ, որդի Օշինի՝ եղբոր Հեթում Ա թագավորի. Օշին Լամբրոնացի մարաջախտի քեռորդին էր, եղբայր Օշին իշխանի Կանչոյ, սեննսջալի և գունդստապլի Ռուբինեան թագավորության, և Հեթում պատմիչի։ Լևոն Գ թագավորը կարգեց նրան իշխան Կոռիկոսի և անվանեց պայլ (1277)։ Քիչ ժամանակից Գրիգորը մեռավ և Լևոն Գ-ը Կոռիկոսը տվեց նրա կրտսեր եղբայր Հեթումին (մեզ ծանոթ Հեթում պատմիչն է). —Ջամչ. Գ. 279, Սիսուան 484 ա։

— 339. Գրիգոր, իր Սայեր եղբոր հետ միասին նորոգեցին Առինջ գյուղի եկեղեցին, 1281 թ.—Սմբատեանց, Գեղարքունիք, էջ 246։

— 340. Գրիգոր վարդապետ, առաջնորդ Աշտարակի, 1281 թ.—Այրարատ 186։

— 341. Գրիգոր, որդի Խալիլի. «զուր և զառն մահուամբ ի Քրիստոս փոխեցաւ». եղբայրը Տէրուն՝ մյուս եղբայրների հետ միասին, կանգնեցրեց նրա անվան մի խաչքար Խսեղում, 1281 թ.—Ցարութիւնեանց, Ներս. դպր. սաների Ա ճնպրհրդ. էջ 58—59 և Լալայեան, Ազգագր. հանդ. Ի 349։

— 342. Գրիգոր որդի Վահրամի. մի խաչքար է կանգնեցրել պատերազմում մեռած հոր հիշատակին? Հերհերում, 1282 թ. —Սիսական 112։

— 343. Գրիգոր միայնակյաց, որդի Վարդի. Իտալիայի Salerno քաղաքում, Մատթէոս առաքյալի անվան նվիրված

Հայ-տնում, Գրիգոր գրչին գրել տվեց մի ժողովածու, 1283 թ.— Ձեռ. Մինխ. 10—11։

— 344. Գրիգոր երեց, եղբայր թե մերձավոր Երեմիան քահանայի, որ Կարնոյ կան գյուղում, Ցոմհաննէս երեցին գրել տվեց մի Ավետարան, 1283 թ.—Ձեռ. Վենետ. Ա. 644։

— 345. Գրիգոր, գրիչ. Իտալիայի Salerno քաղաքում, Մատթէոս առաքյալի անվան նվիրված Հայ-տնում, Գրիգոր միայնակյացի համար գրեց մի ժողովածու, 1283 թ.—Ձեռ.Մինխ. 10—11։

— 346. Գրիգոր վրդ. Բջնեցի, գրիչ. օրինակել է Լամբրոնացու Մեկնութիւն 12 մարգարէից, ՉԼԲ=1283 թ.—Ձեռ. Կարին. 152 (երկու թվականները իրար չեն բռնում)։

— 347. Գրիգոր քահանա, հայր Կոստանդին քահանայի, որ Արքակաղնի վանքում, Պօղոս քահանային գրել տվեց մի Ավետարան, 1284 թ.—Ձեռ. Հալէպի, Ա. 57 բ։

— 348. Գրիգոր քահանա, Աստուածատուր քահանային գրել տվեց մի Ավետարան, Հաւարծին վանքում, 1284 թ.—Թորոս աղբ. Բ. 339։

— 349. Գրիգոր հայրապետ, հիշված է Նոր-Բայազետի Գյոլ գյուղի մի արձանագրության մեջ 1284 թ.—Սիսական 54։

— 350. Գրիգոր կրոնավոր, գրիչ. հիշատակագիր 1284 թ. —Ձեռ. Վասպ. 81։

— 351. Գրիգոր, եպիսկոպոս Արցախի Փարզման գավառում, հիշված Գետաշէնի մի արձանագրության մեջ, 1285 թ.—Բարխուտարեանց, Արցախ 267։

— 352. Գրիգոր սարկավագ, Սարգիս Շալուէ վարդապետի հետ միասին, Սսում գրել տվին Սողոմոնի Առակաց գիրքը՝ Ներսէս Շնորհալու օրինակից, 1287 թվին.—Ձեռ. Վասպ. 57։

— 353. Գրիգոր, կանգնեցրեց մի խաչքար՝ Սիսիանի Դաբաբաս գյուղում, 1288 թ.—Լալայեան, Ազգագր. հանդ. Գ. էջ 165։

— 354. Գրիգոր, տաճնորդ Այրիվանից 1288 թ.—Այրարատ 350։

— 355. Գրիգոր վարդապետ Բալուեցի. այրի քահանա էր. սովորեց Վիրապի վանքում, Վարդան վարդապետի մոտ։ Վեց տարի ուսանելուց հետո ստացավ վարդապետական աստիճան և դարձավ Բալու՝ քարոզելու։ Նստավ Ս. Մեսրոպի աղոթանոցում։ Շինեց Ս. Ցակոբի վանքն ու եկեղեցին։ Գնաց Խարբերդ, ուր քարոզեց 5 ամիս։ Այդ միջոցին Դամասկոսի և Հալէպի զորքերը

հարձակվեցին այս երկրների վրա։ Խարբերդի Խարբանդ աղան գնաց նրանց դեմ, բայց հաղթվեց և նրա եղբայրն էլ գերի ընկավ, որին տարին Մարր։ Քաղաքի մեծամեծները ժողով գումարեցին և նրան գերությունից փրկելու համար իբր փրկանք նշանակեցին մի մեծ գումար, որ որոշեցին տուրք դնել ամբողջ ժողովրդի վրա։ Խորհրդակցության միջոցին պալատը փուլ եկավ և բոլոր իշխանները տակը մնացին։ Խոշամալի Թուրքերը չարացած և նախանձելով հայոց վրա, որոշեցին վրեժ լուծել։ Մի շուն մորթեցին, մարմինը կախեցին մզկիթի դռանը. գլուխն էլ դրին մեհրաբում և այս սրբապղծությունը հայոց վրա գցելով, հարձակվեցին եկեղեցու վրա, Գրիգոր վարդապետին իր երկու սպասավորներով (Սիմէոն և Կիրակոս) և հայոց 45 ականավոր անձերի հետ միասին ձերբակալեցին և բանտարկեցին։ Սրա վրա հայերից շատերը այս ու այն կողմ փախան, շատեր էլ գաղտնի տեղեր թագնվեցին։ Տասը դատավոր քաղաքից դուրս հրապարակում դատի նստան, վարդապետին իր երկու արբանյակներով կանչեցին, և պահանջեցին որ մահմեդական դառնան։ Երբ սրանք մերժեցին, պառկեցրին վարդապետին, դալար ճպոտներով 300 հարված տվին փորին ու կրծքին, այնպես որ փորը բացվեց և աղիքներն էին երևում։ Երկու արբանյակներին նահատակեցին՝ գլուխները ջարդելով։ Ուզում էին 45 բանտարկյալներին էլ նահատակել, բայց Թաթղարա անուն Թաթարը ձի հեծած՝ զորքով շտապեց բանտ և բոլորին էլ արձակեց, ասելով թե նրանց կյանքի համար ինքը պատասխանատու է խանի առաջ։ Ամբոխը թափվեց վարդապետի վրա և քարկոծելով սպանեց «1290 Թ»։ Երեքին էլ թաղեցին Ցակոբիկ Ասորոց Ս. Պարսամ վանքում։ Գրիգորի քրոջ որդին՝ Դաւիթ երեցը գրեց նրանց նահատակության պատմությունը, որ տպված է Նոր վկ. 104—118. տես և Այրարատ 438։

— 356. Գրիգոր, հիշված է Զաքէոսի հետ, Գոշավանքի զանգակատունը, եկեղեցիներն ու պարիսպները շինողների շարքում, 1291 Թ.—Արձ. Շահխաթ. Բ. 368, Ցարութիւնեան՝ Ազգագր. հանդ. Ժ. 35, Բարխուտարեանց՝ Արցախ 353։

— 357. Գրիգոր գրակալ, կազմեց այն Ժողովածուն, որ Խաչատուր գրիչը օրինակեց Յովհաննէս քահանայի համար Փերճերի վանքում, 1292 Թ.—Ձեռ. Հալէպի, Ա. 348 բ։

— 358. Գրիգոր քահանա, որդի Սողոմոնի. այս Գրիգորի եղբայրը Յովհաննէս քահանա՝ միաբան Արքայակաղնի վանքի,

ժողոված պատրաստեց մի Ավետարան արտագրելու համար, Մահը վրա հասնելով, մյուս երկու եղբայրները՝ Ստեփաննոս փիլիսոփան և Գրիգոր քահանան նյութը տարին Սկևռայ վանքը, այնտեղի գրիչներին գրել տալու համար։ Մի քանի օրից Ստեփաննոսն էլ մեռավ։ Գրիգորը աղաչեց Ստեփաննոս գրչին, և սա էլ հակառակ իր ծերության, հանձն առավ վերջացնել սկսված գործը և ավարտեց Սկևռայ վանքում, 1293 թ.—Ձեռ. Վասպ. էջ 111—3։

— 359. Գրիգոր արքեպիսկոպոս, առաջնորդ Անաւարզայի Ս. Աստուածածին եկեղեցու, 1293 թ.—Ձեռ. Վասպ. 114։

— 360. Գրիգոր քահանա, որի հիշատակին մի խաչքար է կանգնեցրել իր կինը Գոհար սթի, 1293 թ. (գտնվում է Նախիջևանում).—Ցովսէփեան, Խաղբակեանք 54։

— 361. Գրիգոր երեց, Մելիտինէի Ցամոս գյուղում, 1295 թվին կազմեց մի հին Ավետարան, որ գրել էր Կարապետ գրիչը.—Ձեռ. Սեբ.=ՀԱ 1924, 515։

— 362. Գրիգոր եպիսկոպոս Մաքենեաց և Գեղարքունեաց, 1295 թ.—Սմբատեանց, Գեղարքունի 576։

— 363. Գրիգոր ոմն, որի անունով մի խաչքար է կանգնեցրած Կոթաքար (Ներքին Աղբեսման) գյուղի արևելեան բարձունքի վրա, 1295 թվից.—Սմբատեանց, Գեղարքունի 531, 532, Սիսական 57 և 24։

— 364. Գրիգոր քահանա Խարսալից, հիշատակագիր 1296 թվից քիչ ուշ.—Ձեռ. Վասպ. 122։

—365. Սիր Գրիգոր, անդրանիկ որդի Տարսոնի Ստեփաննոս արքեպիսկոպոսի, որ նախապես ամուսնացած էր. Գրիգորը ծնվել է 1295 թ. սրա էլ որդիքն են Ներսէս և Ճոյան-Ցովհաննէս։—Սիսուան 74։

— 366. Գրիգոր. որդի Խութլուբէկի, որ Ցակոբ աբեղային գրել տվեց մի Ավետարան, Կարսի Գողխ գյուղում, 1297 թ.—Ձեռ. Ագուլ.=Արրտ. 1911, 464։

— 367. Գրիգոր քահանա, ոսկող. ոսկեզօծել է մի Ավետարան, որ գրեց Ստեփանոս գրիչը 1297 թ.—Շահազիզ, Պատմ. պատկ. 115։

— 368. Գրիգոր ոմն, որ Լամբրոնի բերդում մի խաչքար է կանգնեցրել 1297 թ. (այժմ փոխադրված է Տարսոն).—Սիսուան 79։

— 369. Գրիգոր, որդի Հասանի. մայրն է Մամքան, որի

դամբանը գտնվում է Խաթրավանքում, 1298 թ.—Բարխուտարեանց, Արցախ 206։

— 370. Գրիգոր, Գանձարանի հեղինակներից մին. սրա անունով կան զանազան գանձեր, որոնց նախատառերը հոդում են այս անունը (ԺԳ դար).—Մ. մաշտ. 277 բ։

— 371. Գրիգոր եպիսկոպոս Տաթևի, Սիւնեաց մետրապոլիտ Ստեփաննոս Օրբելեանի իշխանության տակ. ազգական Յովհաննէս Թ.-ի. ստորագրում է այն թղթին, որ արևելեան եպիսկոպոսները գրեցին Գրիգոր Անաւարզեցի («1293—1307 թ») կաթուղիկոսին, կրոնական նորմուծությանց դեմ (ԺԳ դար).—Օրբ. կե, կը, հա.—սեռ. Գրիգորոյ՝ Օրբ. հ.—Ջամչ. Գ. 291։

— 372. Գրիգոր քահանա, հայրն է նշանավոր նկարիչ և ծաղկող Սարգիս Պիծակի (ԺԳ դար).—Յովսէփեան, Մի էջ հայ արուեստի, էջ 30։

— 373. Գրիգոր, դասընկեր Յովհաննէսի և աշակերտ Տիրատուրի. իբրև նշանավոր հայրեր՝ բոլորն էլ անցել են Պատարագի հիշատակության մեջ (ԺԳ դար).—սեռ. Գրիգորի՝ Պարգ. էջ 695։

— 374. Գրիգոր տղայ, իշխան Խաչենի. եղավ խնամակալ Աւագի՝ որդւոյ Իւանէ Աթաբէգի և նրա տան վերակացու (հեջուբ)։ Մահվան ժամանակ Իւանէն իր տունը նրան էր հանձնել։ Աւագն էլ, Կայենի բերդում Թաթարներից պաշարված ժամանակ, նրան դեսպան ուղարկեց Ջարմաղանի մոտ՝ հայտնելու իր հպատակությունը։ Նրա մի արձանագրությունը Գոշավանքում, տես Ազգագր. հանդ. Ժ. 28.—Կիր. ժե, իդ, ծզ։—Յովսէփեան, Խաղբակեանք 14, 18—20, 21, 24, 91 (նույն է համարում Հոռոմոսի արձանագրությանց Գրիգոր հեճուպի հետ № 266. բայց ճիշտ չէ այս, որովհետև Հոռոմոսի Գրիգոր հեճուպը, Շիրակ 23բ արձանագրության մեջ կոչվում է որդի Հասանի, իսկ Գոշավանքի արձանագրության Գրիգոր հեջուբը որդի է Սմբատայ)։ Հավանաբար Գրիգոր Տղայի հետ նույն է Գոշավանքի 1237 թվի արձանագրության մեջ հիշված Գրիգոր որդի Ս[մբատա]՝ Ազգագր. հանդ. Ժ. 29։

— 375. Գրիգոր եպիսկոպոս Խաչենի (ԺԳ դար. կենդանի էր 1251 թվին).—Կիր. ծզ։

— 376. Գրիգոր իշխան Մամիկոնեան, որդի Մարզպանի, եղբայր Ասլանբէգի, Սարգսի և Ամիրայի (ԺԳ դար).—Կիր. լ.—սեռ. Գրիգորոյ՝ Կիր. ծզ։—Անշուշտ նույն է Գրիգոր Մարծան-

եանց, Մամիկոնեան ցեղից, անեը Ելիկումի իշխանի Սիւնեաց, որդւոյ Լիպարիտի (ԺԳ դար).—տես. Գրիգորոյ՝ Օրբ. կե։

— 377. Գրիգոր, իշխան Խաչենցի, որդի Դոփի, մորաքեռորդի Հասան Ջալալ իշխանի (ԺԳ դար).—Կիր. ԼԲ, ԼԳ։—Չամչ. Գ. 185 կոչում է Գրիգոր Դոփեանց և դնում է որդի Դաւթի. մայրն է Շուշան։ 1242 թվին Թաթարաց բանակումն էր՝ դեպի Կարին և Կեսարիա արշավելու ժամանակ (Յովսէփեան, Նիւթեր և ուս. 8 ա)։ Կոչվում է նաև Ղարա Գրիգոր՝ Ձեռ. Դաղեան, Ա. 89 ա։ Սրա կինն է Դոփ՝ դուստր մեծ իշխան Սարգսի և քույր Իվանէի և Զաքարէի (Կարապետ եպս.՝ Դոփեանք, էջ 44)։ Իսկ ըստ Յովսէփեան, Խաղբակեանք 20, Գրիգորը որդին է Դոփի և Դոփ կինն է Հասան Ա-ի։

— 378. Գրիգոր վարդապետ Սանահնեցի, փակակալ. սրա խնդրով գրեց Վարդան վարդապետը՝ իր Մեկնութիւն Դանիէլ մարգարէի և Մեկնութիւն Հնգամատենի աշխատութիւնները։ Նրան են ուղղված Վարդանի Խրատները։ Վարդանը կոչում է նրան «եղբայրն մեր Գրիգոր վարդապետն»։—Վրդն. դան. ա, էջ 242.—Տաշեան, Ցուց. 1076 ա։

— 379. Գրիգոր Գ Տղայ, կաթողիկոս Աղթամարի. հաջորդ Դաւիթ Բ-ի և նախորդ Յովհաննէս Բ Աղձնեցու. 20 տարեկան կաթողիկոս ձեռնադրվելով՝ կոչվել է Տղայ (ԺԳ դար).—Հաւաք. 59 (կեղծիք)։

— 380. Գրիգոր վարդապետ. հորինել է «Ճառ ի Յովհաննէս Մկրտիչ և յղութիւն Եղիսաբեթի», որ անցել է Յայսմաւուրքի մեջ՝ հոկտ. 10.—Գրիգոր՝ անդ (անձն ու թվականն անհայտ են մնում)։

— 381. Գրիգոր միայնակյաց, մականուն Պկոտն, առաջնորդ Հայոց տան Իտալիայի Փէրուժ (Perugia) քաղաքի, 1301 թ.—Ձեռ. Վատիկ. (ՀԱ 1892, 342 ա)։

— 382. Գրիգոր աբեղա, Վարդանայ վանքում, Մկրտիչ կրոնավորին գրել տվեց մի Աւետարան, 1303 թ.—Ձեռ. Վասպ. էջ 64։

— 383. Գրիգոր կրոնավոր, եղբայրն է նախորդի.—Ձեռ. Վասպ. 64։

— 384. Գրիգոր, մերձավոր Թովմա քահանայի, որ Զաքարիա գրչին մի Աւետարան գրել տվեց 1304 թ.—Ձեռ. Վասպ. էջ 143։

— 385. Գրիգոր, որդի Աստուածատուրի, եղբայր Մարտիրոսի, որ Տփղիսում Խաչատուր սարկավագին գրել տվեց մի Աւետարան, 1304 թ.—Ձեռ. Վենետ. Ա. 488։

— 386. Գրիգոր, կազմեց մի Աւետարան, որ օրինակել էր Ներսէս գրիչը՝ Վժանի վանքի մենակյաց Սարգիսի համար, 1304 թ.—Ձեռ. Սեանի 8 բ։

— 387. Գրիգոր քահանա, գրիչ. օրինակեց մի Աւետարան 1304 թ.—Ձեռ. Վասպ. 148։

— 388. Գրիգոր քահանա, գրիչ. օրինակեց Շարակնոցը՝ Ստեփաննոս սարկավագի համար, 1305 թ.—Տաշեան, Ցուց. 535։

— 389. Գրիգոր միաբանակյաց, մաքրող և լուսարար Հռոմի «Գլխատման Ս. առաքելոյն Պօղոսի» մենաստանի. հիշատակվում է իր եղբոր՝ Վարդան ճգնավորի (մ. 1305) տապանաքարի վրա, որ ինքն է կանգնեցրել։ Տապանաքարի նկարը, հայերեն արձանագրությամբ հանդերձ՝ տես Պալճեան 56։

— 390. Գրիգոր, հիշված է իբրև գրիչ Տօնականի, Կաֆա 1305 թ. ստացող Աւետիք վարդապետ Խոտաճարակի հետ.—Ձեռ. Վենետ. Բ. 511։

— 391. Գրիգոր Է Անաւարզեցի, կաթողիկոս Հայոց «1293—1307 թ». կոչվում է նաև Տուրքերեցանց կամ Մեծքարեցի, ըստ որում Մեծքարի վանքումն էր սովորել։ Նախապես Անաւարզայի եպիսկոպոսն էր, ընտրվեց հաջորդ Ստեփաննոս Դ կաթողիկոսի։ Աթոռը փոխադրեց Հռոմկլայից Սիս։ Հմուտ հույն և լատին լեզուների, Կիլիկիայի թագավորական աթոռը զորացնելու հույսով բազմաթիվ զիջումներ արեց հույն և լատին եկեղեցիներին, և հայ եկեղեցին բազմաթիվ նորամուտ ծեսերով ապականեց։ Բայց մի կողմից տեսնելով, որ Արևմուտքից օգնություն հույս չկա և մյուս կողմից իր նորմուծությունները մեծ զայրույթ և պառակտում են առաջացնում ազգի մեջ, ետ կանգնեց միության գաղափարից։ Լևոն Դ գահընկեց արեց նրան և աքսորեց։ Անաւարզեցին աքսորի մեջ զղջալով իր թուլության և իր զիջումների համար, մեռավ ասելով. «Հայ եմ և հայ մեռանիմ» («1307 թ»)։ Այս վերջին տողերը տալիս է Չամչեան, Հայ եկեղ. պատմ. Ա. 241, բայց Ազգապ. 1783 չգիտե և ընդունում է, որ Գրիգորը մինչև վերջն էլ հաստատ մնաց իր գահի վրա և լատինացած էլ մեռավ։—Գրիգորի գրական գործերն են՝ Թուղթ առ Հեթում Բ, Թուղթ առ Ինովկենտիոս Ը պապ, Դրուատ գովեստի ամենայն սրբոց, Ներբողեան ասացեալ ի սրբոց վարդապետաց, բազմաթիվ

շարականներ, Գանձ Պետրոսի։ Նրա գրած շարականների մասին տես Ամատունի, Պարականոն շար. էջ 108, 145 և էջ 194 ա ցանկը։ Երկու շարական էլ գրել է Հեթում Բ-ի խնդրանօք և սրա ծայրանունով (տես Պարականոն շար. էջ 152—3)։ Գրիգորը ձևափոխել է նաև Ցայսմաւուրքը, համաձայն հունականի և լատինականի (տես Սիսուան 242, Տաշեան. Ցուց. 1073 բ).—Գրիգոր՝ Մխ. անեց. դ. Մխ. այրիվ. 21. Սամ. անեց. շար. 152—3, 163. Օշն. նմ. 159. Սմբ. պտմ. 126—7. Հեթ. ժմնկ. Օրբ. կէ, կը, հա. Օրբ. հկճռ. ժբ. Անանուն ժմ. 27, 28. Առաք. պտմ. 335, 483.—Գրիգորիոս՝ Օրբ. կը. Օրբ. հկճռ. ժբ.—սեռ. Գրիգորի՝ Սամ. անեց. շար. 152, 158. Օշն. նմ. 160—1. Սմբ. պտմ. 130. Օրբ. հ, հբ. Օրբ. հկճռ. Մեծոփ. յիշ. ա (ըստ Karst, Դատաստ. էջ ե, յիշատ. նստել է 1294 թ). Առաք. պտմ. 483.—Ջամչ. Գ. 290. Ջարբ. Հին դպր. 720, 778—9, Թրգմ. 156, 500, 740, 762. Ազգապ. 1737—1804. Պալճեան, 64, 65. Ցոփանեան, Հետազօտ. նախն. ոմկ. Ա. 249--255։

— 392. Գրիգոր եպիսկոպոս Վահանաշէնի. անգամ Սսի ժողովի «1307 թ».—Ազգապ. 1786, Ջամչ. Գ. 309։

— 393. Գրիգոր կրոնավոր, քեռի Կոստանդին քահանայի, որ Մլիճի վանքում գրել տվեց Պրոխորոն գիրքը, 1307 թ.—Manus. brit. mus. 242 բ։

— 394. Գրիգոր վարդապետ Մեծքարեցի, անդամ Սսի ժողովի «1307 թ».—Ազգապ. 1786։

— 395. Գրիգոր եպիսկոպոս կամ վարդապետ, որին Կոստանդին Գ Կեսարացի կաթողիկոսը նվիրակ ուղարկեց Արևելք՝ հռոմեական ծեսեր ընդունել տալու համար «1307 թ».—Ազգապ. էջ 1806։

— 396. Գրիգոր, որդի Սուքիասի, գրիչ. օրինակեց Տոնականն ու Ցայսմաւուրքը՝ Աւետիք վարդապետի հրամանով, Կաֆայում, 1307 թ.—Manus. bibl. nat. էջ 57, 60։

— 397. Գրիգոր կրոնավոր, մորեղբայր Կոստանդ քահանայի, որ էր գրիչ Մլէճում, 1307 թ.—Սիսուան 74։

— 398. Գրիգոր, դպիր Անաւարզեցի, գրիչ. օրինակեց Ցայսմաւուրքը՝ Կոստանդին Գ Կեսարացի կաթողիկոսի համար, Օշին Թագավորի ժամանակ, 1309 թ.—Աթան. յոջ. ժէ. Արերկ. էջ թ։

— 399. Գրիգոր կրոնավոր, իր ծախսով գրել տվեց Պօղոսի Թղթերը՝ Դանիէլ կրոնավորին, Աղթամարում, 1309 թ.—Ձեռ. Սեբ.=ՀԱ 1923, 73։

— 400. Գրիգոր Խուցէս (կամ նաև Խուղիկ), հարկահավաք կամ դատավոր էր Անիում. (այլուր կոչված առաջնորդ Անւոյ), կինն է Շնաֆոր. որդիներն են Պարոն, Ասիլ և Մխիթար։ Պարոնը նորոգել է Բագնայրի նշանավոր Ավետարանը՝ 1308 թ. Ասիլը հիշված է 1357 թ.՝ իբրև նորոգիչ Կեռան Թագուհու Ավետարանի. իսկ Մխիթարը կնքահար էր Անիում, 1276 թ.—Շիրակ 62 բ, 101 աբ. Ցովսէփեան, Խաղբակեանք 15, Նիւթեր և ուս. Ա. 16, Ձեռ. Կարին. 16։ (Բայց որովհետև երկու եղբայր չեն կարող իրարից 100 տարի հետո ապրած լինել 1276—1357, ուստի կամ Մխիթարը նույն Գրիգորի որդին չէ և կամ ավելի հավանաբար թվականը սխալ է)։

— 401. Գրիգոր, նորոգեց Գնդեվանից տաճարը 1309 թ.—Սիսական 105 բ։

— 402. Գրիգոր, իր հոր՝ Աղբայրանի, իր մոր՝ Գոհարի և իր եղբոր՝ Բէկի հիշատակին մի խաչքար է կանգնեցրել Վայոց ձորում, 1309 թ.—Սիսական 107։

— 403. Գրիգոր, հայր Կարապետ քահանայի, որ Երզնկայում օրինակեց Ավետարանը 1310 թ. երբ Գրիգոր արդեն մեռած էր։—Ձեռ. Վասպ. 156։

— 404. Գրիգոր գրիչ. Դարանաղեաց գավառի Ս. Գրիգոր վանքում գրեց մի Ավետարան, 1310 թ.—Թորոս աղբ. Բ. 445։

— 405. Գրիգոր քահանա, Տարսոնի 1311 թվի ժողովում ընտրվեց եպիսկոպոս Սալմաստի.—Ձեռ. Հալէպի, Բ. 31 ա։

— 406. Գրիգոր դպիր, գրիչ. սկսեց գրել Շարակնոցը, որ և ծաղկեց ու զարդարեց. ապա քահանա ձեռնադրվելով և Ականց անապատի վանահայր դառնալով, նույն ձեռագիրը շարունակեց և վերջացրեց Ներսէս գրիչը՝ Թորոս վարդապետի համար, 1312 թ.—Manus. brit. mus. 95 աբ։

— 407. Գրիգոր վարդապետ, վանահայր Ակներայ վանքի. օրինակեց Եփրեմի Ճառերը՝ 1313 թ.—Ձեռ. Կարին. 77 (Ձեռ. էջմ. № 902)։ Նույնից են արտագրված Վենետիկի Մխիթարեանց և Վիեննայի № 257 օրինակները.—Տաշեան, Ցուց. 661. Զարբ. Թրգմ. 466 (համարում է Սկևռացին). իսկ Ալիշան՝ Սիսուան 154բ նույն է դնում № 431-ի հետ։

— 408. Գրիգոր, հայր Ավետիս քահանայի, որ Հարք գավառի Դանեվանք գյուղում, Ցովհաննէս քահանային գրել տվեց մի Ավետարան, 1316 թ.—Ձեռ. Վենետ. Ա. 464։

— 409. Գրիգոր որդի Աւետիսի, նախորդի (№ 408) թոռն է.—Ձեռ. Վենետ. Ա. 465։

— 410. Գրիգորիս վարդապետ Ծաղմանեցի, կամ Խարբերդցի, կոչված նաև Երզնկացի. փոքր հասակից վանական դարձավ. եկավ Երզնկա և մտավ Տիրաշէն վանքը, ապա Սեպուհ լեռան վրա գտնված Լուսաւորչայ վանքը՝ աշակերտելու Կիլիկեցի Մովսէս վարդապետի մոտ, 1316 թ։ Ունի մի գեղեցիկ ձեռագիր՝ 1314 թվից, Լուծմանց գիրք.—Իր ձեռագրի նմանահանութիւնը տես Սիսական 137։—Հայապ. 525, Սիսուան 106։

— 411. Գրիգորիս, վրդ. կաթուղիկոսարանի. անդամ Սսի «1307 թ» և Ադանայի «1317 թ» ժողովների.—Ազգապ. 1787, 1819, Սիսուան 258 բ։

— 412. Գրիգորիոս, եպիսկոպոս Մարաշի, անդամ Սսի «1307 թ» և Ադանայի «1317 թ» ժողովների.—Ազգապ. 1784—5, 1818, Սիսուան 258 բ։

— 413. Գրիգոր, վարդապետ Գերմաղբերցի, անդամ Սսի «1307 թ» և Ադանայի «1317 թ» ժողովների.—Ազգապ. 1786, 1819, Այրարատ 258։

— 414. Գրիգոր քահանա, հայր Վարդան քահանայի, որ օրինակեց Աւետարանը, Խուրինանց գյուղի Ս. Աստուածածին եկեղեցում, 1317 թ.—Թորոս աղբ. Ա. 218։

— 415. Տէր Գրիգոր, առաջնորդ և իշխեցող Որնոյ գաւառի Բատոնց գյուղի, 1317 թ.—Թորոս աղբ. Բ. 419։

— 416. Գրիգոր կրոնավոր, Որնոյ գավառի Բատոնց գյուղում գրել տվեց մի Նարեկ, 1317 թ.—Թորոս աղբ. Բ. 419։

— 417. Գրիգորէս, հոգևոր եղբայր Սարգիս աբեղայի, որին օգնում էր, երբ սա օրինակում էր Ոսկեփորիկը՝ 1317 թ.—Ձեռ. Վենետ. Բ. 857—8։ Սրա կինն է Մամախաթուն. երկուսի մեծադիր նկարը տես Սիսական 133։

— 418. Գրիգոր Բ. Դօփեան, կոչված «բարի», որդի և հաջորդ Հասան Բ-ի, թոռն (Ղարա) Գրիգորի և քրոջ թոռ Իւանէ Աթաբէգի. իշխան Խաչենի. կինն էր Ասփա, որ Տարսայիճ Օրբելեան իշխանի դուստրն էր. Ասփան մեռավ 1311 թ. և նրա մահվան վրա Գրիգորը գնելով գյուղեր և այգիներ, նվիրեց Խաթարի, Ամաղու և Հերհերի վանքերին։ Մեռել է 1317 թվից քիչ ուշ.—սեռ. Գրիգորոյ՝ Օրբ. կե.—Կարապետ եպս.՝ Դօփեանք, 45, 60, 72—77, Ձեռ. Դաշեան, Ա. 89 ա, Յովսէփեան, Խաղբակ-

հանք 20, Սիսական 198 (Արձ. 1312 թվից) և էջ 116 (Արձ. 1317 թ), Նոտարք 40, Շահխաթ. Բ. 360, 362—4, Բարխուտ. Արցախ, 194, 196, 205, 206, 405, 407. Այրարատ 273 (Արձ. 1303 թ)։

— 419. Գրիգոր որդի Շիրինշահի, եղբայրն է Յովհաննու վանքի առաջնորդ Ներսէսի, հիշված 1318 թ.—Այրարատ 172։

— 420. Գրիգոր, միաբան Փոսի վանից. Թուղթ էր կոկում Ստեփաննոս գրչի համար, որ արտագրում էր Ավետարանը, 1319 թ.—Ձեռ. Սեր.=ՀԱ 1924, 517։

— 421. Գրիգոր, հորեղբայր Պօղոս քահանայի, որ Փոսի անապատում գրել տվեց մի Ավետարան, 1319 թ.—Ձեռ. Սեր.= ՀԱ 1924, 516։

— 422. Գրիգոր քահանա, հայր Սարգսի, որ ծաղկել է Յովհաննէս գրչի արտագրած Աստուածաշունչը՝ 1319 թ.—Ձեռ. Վենետ. Ա. 20։

— 423. Գրիգոր, որդի Սարգիս ծաղկարարի, որ ծաղկեց Յովհաննէս գրչի օրինակած Աստուածաշունչը՝ 1319 թ. նախորդի թոռն է։—Ձեռ. Վենետ. Ա. 20։

— 424. Գրիգոր սիր, որդի Ստեփաննոս արքեպիսկոպոսի Տարոնի (մ. 1320). հիշատակագիր Մաշտոցի.—Սիսուան 74։

— 425. Գրիգոր եպիսկոպոս Կարնոյ. սրա դեմ ոխ ունեին քաղաքի դատավորը, ուստի գնաց Կեսարիա և Դաժուր Տաշ զորավարից հրաման հանելով՝ եկավ Կարին և պահանջեց որ հայերը մահմետական դառնան։ Զարչարեցին եպիսկոպոսին, երկաթե բիրերով կուրծքն ու թիկունքը ջարդեցին, վերքերի մեջ աղ լցրեցին և 20 օր անսվաղ պահելուց հետո, սրով նահատակեցին, «1321 թ».—Նոր վկ. 121—8։

— 426. Գրիգոր ճգնավոր, առաջին վանահայր Սպիտակավոր Աստուածածնի վանքի. հիշված է 1322 թվի մի արձանագրության մեջ. մեռել է 1340 թվից առաջ. իր ճգնավորական կյանքով մեծ հեղինակություն էր ստացել և մահվանից հետո էլ նրա գերեզմանը սրբավայր էր հռչակվել։—Յովսէփեան, Խաղբակեանք 189, 208։

— 427. Գրիգոր, եղբայր Ներսէս քահանայի և Յովհաննէս գրչի, որ Մաշկևոր անապատում օրինակեց մի Շարակնոց, 1322 թ.—Ձեռ. Սանաս. 14 բ։

— 428. Գրիգոր երեց, գրիչ. Սսում օրինակեց Աստուածաշունչը 1323 թ.—Դրնդ. 618։

— 429. Գրիգոր, որդի Վահրամ քահանայի և եղբայր բար-

սեղ երեցորդու, որ Հալէպում գնեց մի հին Աւետարան, 1323 թ.—Ձեռ. Կես. ածած. 64 բ։

— 430. Գրիգոր, հաստուածեալ երեց ի Տրապիզոն. սրան է գրել Մովսէս վրդ. Երզնկացին (մ. 1323) իր պատասխանը (տես Մովսէս Երզնկացի)։

— 431. Գրիգոր, որդի Վահրամի. գրիչ. Ակների վանքում օրինակեց Ոսկեբերանի Մեկնութիւն թղթոցն Պօղոսի, 1325 թ.—Սիսուան 155 ա, 535 ա. Ձեռ. Վենետ. Բ. 572։ Նոյն է Ձեռ. Կարին. 163 հիշված Գրիգոր քահանան, որ Ակներում օրինակել է Ոսկեբերանի Մեկնութիւն թղթոյն Տիմոթէոսի և Տիտոսի, ՉՀԴ =1325 թ։

— 432. Գրիգորիս, եղբայր Մխիթար քահանայի, որ Ներսէս գրչին գրել տվից մի Աւետարան, 1325 թ.—Թորոս աղբ. Բ. էջ 295։

— 433. Գրիգոր, կուսակրոն քահանա, միաբան Ակների վանից. թուղթ էր կոկում Գրիգոր գրչի համար, 1325 թ.—Սիսուան 535 ա։

— 434. Գրիգոր Տարոնացի, 7 տարի ամբողջ կույր էր երկու աչքով. «հրաշքով» բացվեցին. (ուրեմն սպիտակ ջուր էր իջել աչքերին). սրա համար նվիրեց իրեն հոգևոր ծառայության, 1326 թ.—Սմբ. պատմ. 141. Չամչ. Գ. 325։

— 435. Գրիգորիս եպիսկոպոս Կարնոյ. հակառակ էր կաթոլիկության. բաժակի մեջ ջուր խառնելու համար սպանվեց մահմեդականների ձեռքով «1326 թ».—Սամ. անեց, շար. 167։

— 436. Գրիգոր երեց. գրիչ. շարունակեց գրել Աւետարանը, որ Մխիթար սարկավագն էր սկսել, բայց մահը վրա հասնելով՝ Սարգիս քահանան շարունակեց և վերջացրեց՝ 1326 թ.—Rapport Belgique 87։

— 437. Գրիգոր Տիվրիկցի, որդի դերձակ Ճուանիսի. գրել տվեց մի Աւետարան, որի վրա աշխատել էին Մխիթար սարկավագը և Գրիգոր երեցը, և վերջացրեց Սարգիս քահանան, 1326 թ.—Rapport Belgique 87։

— 438. Գրիգոր քահանա ոմն, հիշված 1327 թ.—Ձեռ. Ագուլ.=Արրտ. 1911, 460։

— 439. Գրիգոր Սիփիոյ? Կաֆայի Թադէոս եպիսկոպոսի հետ դեսպան ուղարկվեց պապին՝ Լեոն Թագավորի կողմից, 1327 թ.—Սիսուան 558 բ։

— 440. Գրիգոր քահանա, որդի Վահրամ քահանայի և եղ-

բայց Ներսէս վարդապետի, որ Յովհաննէս գրչին օրինակել տվեց Մանրուսմունքը՝ 1328 թ. երբ Գրիգոր քահանան մեռել էր արդեն.— Manus. brit. mus. 87 ա։

— 441. Գրիգոր քահանա, իր և իր երկու որդիների՝ Թադէոսի և Սարգիսի գործածության համար, Փոսի վանքում, Ներսէս գրչին գրել տվեց մի Աւետարան, 1329 թ.— Ձեռ. Սեբ. =ՀԱ 1924, 518։

— 442. Գրիգոր որդի Սուքիասի. գրիչ. Կաֆայում օրինակել է Վկայաբանութիւնը (Ձեռ. Պարիզի № 118), Սիմէոն և Աւագ գրիչների հետ, Աւետիք վարդապետի համար, 1310—30 թ։

— 443. Գրիգոր վարդապետ Ապրակունեցի, ունիթուական, միաբան Քռնիի վանքի, «1330 թ».— Ձեռ. Ներս. 32 բ. Ազգապ. էջ 1845։

— 444. Գրիգոր որդի կամ այլ մերձավոր Դեղիկի, որ Արճէշում, Դէոսկորոս քահանային գրել տվեց մի Աւետարան, 1331 թ.— Ձեռ. Վասպ. 178։

— 445. Գրիգոր, Թորոս Հռոմկլայեցու 1331 թվին, Դրազարկում գրած Աւետարանի մեջ ավելացրեց Համաբարբառները, գլխահամարները ու Նախադրությունները, 1332 թ.— Ձեռ. Վիեննա. Ա. 437—8։

— 446. Գրիգոր, կազմարար. կազմեց նախորդ Աւետարանը՝ 1331 կամ 1332 թ.— Ձեռ. Վիեննա. Ա. 437։

— 447. Գրիգոր գրիչ. օրինակել է Ոսկեբերանի Մեկնութիւն Աւետարանին Յովհաննու, Կիլիկիայի «Անդրունին բերդում», 1332 թ.— Ձեռ. Կարին. 157։

— 448. Գրիգոր քահանա, փեսա ձիավոր պարոն Բարթուղիմէոսի. գրել տվեց Սարգիս Պիծակին մի գեղեցիկ Աւետարան և նվիրեց Սսի Ս. Սարգիս եկեղեցուն, 1332—4 թ.— Յովսէփեան, Մի էջ հայ արուեստի, էջ 30։

— 449. Գրիգոր, որդի Վահրամի, գրիչ. Կիլիկիայում, Պօղոս քահանայի համար օրինակեց Աւետարանը 1334 թ.— Ձեռ. Վիեննա. Ա. 698։

— 450. Գրիգոր, ամուսին Աղբրայցի՝ քրոջ Պօղոս քահանայի, որ Կիլիկիայում գրել տվեց մի Աւետարան 1334 թ.— Ձեռ. Վիեննա. Ա. 698։

— 451. Գրիգոր կրոնավոր, ստացավ մի Ճաշոց, որ Սիմէոն գրիչը օրինակեց Խոզկերտի եկեղեցու համար, 1335 թ.— Սիսուան 119։

— 452. Գրիգորէս, Խարտբերդցի, ապրում էր Երուսաղէմ 1335 թ. սրա մի մատնութիւնը տես Ներսէս Կրակացի։—Ձեռ. Վենետ. Բ. 350։

— 453. Գրիգոր վրդ. վանահայր և առաջնորդ Թիւրքթի վանքի. անդամ Սսի ժողովի «1307 թ»։ Հիշված է 1334 թ. Մանուէլ գրչին գրել ավեց մի Շարական, 1335 թ.—Թորոս աղբ. Բ. 449, 450, Զարբ. Հին դպր. 714. Ազգապ. 1787. Սիսուան 156։

— 454. Գրիգորիս, որդի Հայրապետ քահանայի. գրիչ. Մարմանց գյուղում օրինակել է մի Աւետարան, 1336 թ.—Ձեռ. Նոր-Բայազ. 25 բ։

— 455. Գրիգոր, հայր Սարգիս քահանայի, որ Սսում, Անդրէաս քահանայի համար արտագրեց Աւետարանը 1336 թ.—Ձեռ. Վասպ. 185։

— 456. Գրիգոր վարդապետ Մեծոփեցի, գրիչ. օրինակեց Մխիթար Սասնեցու գործերը 1334 թ. (տես Յովսէփեան, Մխ. Սասնեցի, էջ 25)։ Ավելի ուշ՝ սրբագրեց Դանիէլի «Բան գովեստի Մխիթար Սասնեցւոյ» 1337 թ.—Տաշեան, Ցուց. 75։

— 457. Գրիգոր, հայր Ներսէս րաբունապետի, որ էր մերձավոր Սիւնեաց Սարգիս մետրապոլիտի, 1337 թ.—Ձեռ. Բեռլինի, 27 ա։

— 458. Գրիգոր, հոռեղբայր Առաքել գրչի, որ Մոկսի Դաշտ գյուղում օրինակեց Աւետարանը 1338 թ.—Ձեռ. Վասպ. 198։

— 459. Գրիգոր, ուսուցիչ Սարգիս «մեծ րաբունապետի». գրիչ. Հերմոնի վանքում օրինակեց Դիոնեսիոս Արիսպագացու գիրքը՝ 1338 թ.—Սիսական 125 բ։

— 460. Գրիգոր, եպիսկոպոս Կիպրոսի. ժամանակցեց նույն եպիսկոպոսների ժողովին, 1340 թ.—Բակուրան, Կիպրոս կղզի, էջ 117։

— 461. Գրիգոր, իր եղբայր Մխիթարի հետ միասին մի խաչքար են կանգնեցրել Եղեգիսում, 1340 թ.—Սիսական 147 և 152։

— 462. Գրիգորէս քահանա, որի որդին Ներսէս քահանա՝ ստացավ Ճանրուսմունքը, 1340 թ.—Տաշեան, Ցուց, 499 բ։

— 463. Գրիգորէս, որդի Ներսէս քահանայի. նախորդի թոռն է.—Տաշեան, Ցուց. 499։

— 464. Գրիգոր, եպիսկոպոս Սուլտանիայի, 1341 թ.—Ձեռ. Վենետ. Ա. 94 (Հ. Բ. Սարգիսեան, անդ՝ էջ 88 համարում է Բաղդադ)։

— 465. Գրիգոր քահանա, Սուլտանիայ քաղաքում, իր որդի Եփրեմ քահանայի համար, Կարապետ գրչին 1341 թվին գրել տվեց մի Աստուածաշունչ, որ նկարազարդեց Աւագ դպիրը.— Ձեռ. Վենետ. Ա. 94. Անկ. գիրք հին կտ. յիշ. ժե։

— 466. Գրիգոր քահանա Սուդաղցի, հայր Ստեփաննոս արքեպիսկոպոսի, որ էր առաջնորդ Հայոց Ղրիմի, 1341 թ.— Շահազիզ, Հին Երևանը, էջ 72։

— 467. Գրիգոր պարոն, թարգման էր Կապանի Յակոբ եպիսկոպոսի, երբ սա դեսպան ուղարկվեց Յովհաննէս ԻԲ պապին, Օշին թագավորի կողմից, 1317 թ։ Նույն անձը գտնում ենք 25 տարի հետո, երբ Հռոմ ուղարկվեց Դանիէլ վարդապետ Սսեցու հետ, պապին ներկայացնելու համար Հայոց պատասխանը Ներսէս Պալենցի ամբաստանությանց դեմ, 1342 թ.—Չամչ. Գ. 315, 345. Բիւրքճեան, Հայկական Կիլ. էջ 26, Սիսուան 558 ա։

— 468. Գրիգորիս քահանա, գրիչ. Երզնկայում օրինակել է Տոմար Հայոց, 1342 թ.—Ձեռ. Կարին. 209, Շիր. տեղ. յիշ. XIV։

— 469. Գրիգոր, հայր Վասիլի, որ Վահրամ Աթաբէգի հրամանով եկավ Անի և նորոգեց Ս. Փրկիչ եկեղեցու գմբեթը, 1342 թ.—Շիրակ 86։

— 470. Գրիգորիս քահանա, որդի Մկրտիչ քահանայի, գրիչ. Երզնկայում Աստուածատուր կրոնավորի համար օրինակեց մի մեծ Ճառընտիր, 1343 թ.—Ձեռ. Վենետ. Բ. 174—6։—Նույն է արդյոք նախորդի հետ (№ 468)։

— 471. Գրիգոր եպիսկոպոս Տիանայի, անդամ Սսի ժողովի «1343 թ».—Ազգապ. 1869, Սիսուան 173 ա։

— 472. Գրիգոր եպիսկոպոս Ատանայի, անդամ Սսի ժողովի «1343 թ».—Ազգապ. 1869, Սիսուան 269։

— 473. Գրիգոր եպիսկոպոս Գերմանիկէի, անդամ Սսի ժողովի «1343 թ».—Ազգապ. 1869։

— 474. Գրիգոր եպիսկոպոս Մաշկևորի, անդամ Սսի ժողովի «1343 թ».—Ազգապ. 1869. Սիսուան 408։ Սա պիտի լինի այն Գրիգորը, որ կրոնական խնդրով կի թագավորից ուղարկվեց Հռոմի պապի մոտ 1344 թ։

— 475. Գրիգոր եպիսկոպոս կաթուղիկոսարանի, անդամ Սսի ժողովի «1343 թ».—Ազգապ. 1869։

— 476. Գրիգոր գրիչ. Ֆրանգաց Սայլեռն քաղաքում օրի-

նակեց Վարք հարանցը 1343 թ. (այժմ գտնվում է Մոնակոյում). —Զարբ. Թրգմ. 553։

— 477. Գրիգորէս, որդի Յուսամ քահանայի. օգնեց Սիմէոն երեցին օրինակելու Աւետարանը՝ Սուրխաթ 1343 թ.—Ձեռ. Վենետ. Ա. 755։

— 478. Գրիգոր աբեղա, իր եղբօր՝ Վահան աբեղայի հետ միասին՝ Նատիր գրչին գրել տվին մի Աստուածաշունչ, Ղրիմի Սուրխաթ քաղաքում, 1346 թ.—Թորոս աղբ. Բ. 426։

— 479. Գրիգոր քահանա, Ղրիմի Սուրխաթ քաղաքում. իր Աւետարանը տվեց Կիրակոս ավագ սարկավագին՝ արտագրելու համար, 1346 թ.—Գովրիկեան, Դրանսիլուանիոյ Հայոց Մետրապոլիսը, էջ 331։

— 480. Գրիգոր, Սուրխաթում օգնեց Սիմէոն երեցին՝ կազմելու Աւետարանը 1347 թ.—Ձեռ. Վենետ. Ա. 755։

— 481. Գրիգոր ոսկերիչ. զարդարել է Հռոմոսի վանքին նվիրված մի Աւետարանի կազմը՝ 1347 թ.—Յովսէփեան, Մի էջ հայ արուեստի, 37, 42.

— 482. Գրիգոր քահանա, գնեց մի Աւետարան՝ իր որդի Սեթեկի համար. որդին վաղամեռիկ եղավ և հայրը նրա հոգուն ի հիշատակ՝ Աւետարանը նվիրեց Գաղիտոյ Ս. Գէորգ եկեղեցուն, 1348 թ.—Ձեռ. Ազուլ.=Արրտ. 1911, 564։

— 483. Գրիգոր աբեղա, միաբան Գաղիտոյ Ս. Գէորգ եկեղեցու, 1348 թ.—Ձեռ. Ազուլ.=Արրտ. 1911, 564։

— 484. Գրիգոր, հայր Ստեփաննոս քահանայի, որ մի հին Աւետարան գնելով, նորից կազմել ու ծաղկել տվեց 1348 թ.—Manus. brit. mus. 8 բ։

— 485. Գրիգոր աբեղա, գրիչ. օրինակել է Խաղգիրքը՝ ՊՃԵ =1351 թ.—Ձեռ. Կարին. 41 (թվականների համեմատությունը այլանդակ է)։

— 486. Գրիգոր, գրիչ. օրինակեց Ն. Շնորհալու Տաղաչափությունները, 1351 թ.—Տաշեան, Ցուց. 1020։

— 487. Գրիգոր, գրիչ. օրինակել է Ժամագիրքը՝ Ղրիմում, 1352 թ.—Ձեռ. Կարին. 36։

— 488. Գրիգորիս քահանա, հայր Քրիստոսատուր կրոնավորի, որ Սուրխաթում (Ղրիմ) գրել տվեց մի Աստուածաշունչ, 1352 թ.—Ձեռ. Վասպ. 7։

— 489. Գրիգոր Սուքիասեանց, գրիչ. օրինակեց Աւետարա-

նը, Թորոս քահանայի համար, Սուրխաթ քաղաքում, 1354 թ.— REA 10, 41։

— 490. Գրիգոր, որդի Անդրէասի, գրիչ. Աղթամարում օրինակեց Աւետարանը՝ Մուրատի համար, 1355 թ.—Ձեռ. Վասպ. էջ 203։

— 491. Գրիգոր քահանա, գրիչ. օրինակեց Աւետարանը՝ Ղրիմ քաղաքում, 1356 թ.—Manus. bibl. nat. էջ 7։

— 492. Գրիգոր քահանա, գրիչ. Տիրատուր պատանու համար օրինակեց Եսայի և Թուղթք Պօղոսի, 1356 թ.—Տաշեան, Ցուց. 394։

— 493. Գրիգոր քահանա, հայր Յոհան վարդապետի, որ Սուրխաթում Ստեփանոս գրչին գրել տվեց Եսայի և Թուղթք Պօղոսի, 1356 թ.—Ձեռ. Բեռլինի 4 ա։

— 494. Գրիգոր, հայր Ժահանսի Խնտուլի, որ Կարապետ գրչին գրել տվեց մի Աւետարան, 1357 թ.—Ձեռ. Վասպ. 213։

— 495. Գրիգոր կրոնավոր, որդի Գանձիի, Երուսաղէմում, Տիրաւագ գրչին գրել տվեց մի Աւետարան և Ճաշոց, 1358 թ.—Ձեռ. Հալէպի, Ա. 118 ա։

— 496. Գրիգոր Գ պատրիարք Երուսաղէմի. հաջորդեց Բարսեղին 1356 թ. և 9 ամիս գահակալելուց հետո՝ մեռավ, ըստ Ֆ. Մուրատ, Յայտ. յովհ. ՅԻԷ։ Իսկ ըստ Աղաւնունու գահակալել է 1356—63 թ։ Հիշված է 1360 թ.՝ Թորոս աղբ. Բ. 437։

— 497. Գրիգոր, կուսակրոն քահանա, հորեղբայր Ստեփաննոսի, որ ստացավ մի Ժողովածու, 1360 թ.—Բօսեան, Հայք ի Զմիւռնիա, Բ. 83։

— 498. Գրիգոր քահանա, փակակալ Երուսաղէմի Ս. Յակոբայ եկեղեցւոյն. օգնեց Ստեփաննոս կրոնավորին արտագրելու Աւետարանը՝ 1360 թ.—Թորոս աղբ. Բ. 438։

— 499. Գրիգոր, գրիչ. օրինակել է Գանձարանը՝ 1361 թ. —Manus. bibl. nat. էջ 37։

— 500. Գրիգոր եպիսկոպոս Նահանգին Խաղտեաց, 1362 թ. —Զարբ. Թրգմ. 389։

— 501. Գրիգոր քահանա, հայր Ներսէսի, որ առաջնորդն էր Երուսաղէմի Ս. Փրկիչ վանքի, 1363 թ.—Ձեռ. Վասպ. 18։

— 502. Գրիգոր տիսալար, «փառօք ի փառսն բարձրացեալ», հիշվում է Մոկաց երկրում, Աստուածատուր և Յակոբոս տիսալարների հետ, 1369 թ.—Թորոս աղբ. Բ. 427։

— 503. Գրիգոր մատնիչ, դավաճանությամբ սպանեց Կոս-

տանդլին Ե Թագավորի զորավար Հեթումին («1370 թվից քիչ հետո»).—Ազգապ. 1928, Սիսուան 184 ա։

— 504. Գրիգոր քահանա Թորոսեանց, գրիչ. Խրիմի Սուրխաթ քաղաքում օրինակել է Աստուածաշունչը 1371 թ. վերջում կա ընդարձակ Գաւազանագիրք.—Ձեռ. Կարին. 13։

— 505. Գրիգոր սարկավագ, սպասավոր բանի. մականունն է Խուբլուշ. աշակերտ Յովհաննու Որոտնեցւոյ, որի հրամանով Եկեղեաց գավառի Ս. Լուսաւորիչ անապատում օրինակել է մի Աւետարան, 1373 թ.—Թորոս աղբ. Բ. 325—7։

— 506. Գրիգոր եպիսկոպոս, առաջին առաջնորդ Իլվովի կամ Լեհահայոց. ձեռնադրվել է Մեսրոպ կաթողիկոսից «1364 թ.». Կաղիմիր Գ Մեծի հրամանով աթոռը փոխադրեց Լեմբերգ 1367 թ. վերահաստատվեց Կոստանդին կաթողիկոսից «1374 թ». Իր վատ արարքների համար վտարվեց Թէոդորոս կաթողիկոսից.—Ազգապ. 2175, Տան՝ Արևել. հայք 3, Ալիշան՝ Կամենից, էջ Է և 4—13, 215—6։

— 507. Գրիգոր քահանա, որդի Նորհատի. գնեց մի Աւետարան, 1375 թ.—Տաշեան, Ցուց. 277։

— 508. Գրիգոր, որդի Խոցադեղի և Թոռն Շահինշահի, որ ստացավ մի Աւետարան, 1378 թ.—Տաշեան, Ցուց. 692։

— 509. Գրիգոր, որդի Շիրինշահի, մի խաչքար է կանգնեցրել Եղեգիսում, 1379 թ.—Արրտ. 1888, 441 և Սիսական 149։

— 510. Գրիգոր աբեղա, միաբան Երուսաղէմի. բրածեծ նահատակվեց Եգիպտացիներից՝ Մկրտիչ Բ պատրիարքի ժամանակ («1366—1381 թ»).—Ազգապ. 1931։

— 511. Գրիգոր եպիսկոպոս Գետաքարեցի, առաջնորդ Խաչենի Մեծկողմանց եպիսկոպոսարանի, 1383 թ.— Յովսէփեան, Խաղբակեանք 30. Նիւթեր և ուս. Ա. 44։

— 512. Գրիգոր քահանա, գրիչ. օրինակել է Երզնկայում՝ Յովհան Որոտնեցու Դիւանութիւն հաւատոյ, 1386 թ.—Ձեռ. Կարին. 30։

—513. Գրիգոր, քահանա Գաւաշ գյուղի, 1389 թ.—Ձեռ. Ագուլ. (Արրտ. 1911, 765)։

— 514. Գրիգոր վարդապետ, գրիչ. Սուխարայ կամ Խառաբաստի վանքում, Զաքէոս վանահոր հրամանով արտագրեց մի Ժողովածու, 1391 թ.—Ձեռ. Վենետ. Բ. 1072։

— 515. Գրիգոր Դ Եգիպտացի, պատրիարք Երուսաղէմի, հաջորդեց Յովհաննէս Դ-ի և նստավ 1386—1391 թ. (ըստ Ազաւ-

նունու)։ Բայց հիշված եմ գտնում 1372 թ. Ձեռ. Վասպ. 217։

— 516. Գրիգոր քահանա, որդի Թորոսի, գնեց մի Ցայսմաւուրք՝ Տիրատուր քահանայից, 1394 թ.—Manus. bibl. nat. էջ 100։

— 517. Տէր Գրիգոր, առաջնորդ Երզնկայի, 1394 թ.—Թորոս աղբ. Բ. 368, Նոտարք 6։

— 518. Գրիգոր մահտեսի, Եաշի հայ եկեղեցու հիմնադիրներից մեկը, 1395 թ.—Տան, Արևել. հայք 8.

— 519. Գրիգոր Դ կաթուղիկոս Աղթամարի, հաջորդ Սարգիս Ա-ի և նախորդ Թադէոս Ա-ի (ԺԴ դար).—Հաւաք. 60 (կեղծիք)։

— 520. Գրիգոր, վանահայր Կամրջաձորի, հաջորդեց Խաչատուրին (ԺԴ դար).—Այրարատ 549։

— 521. Գրիգոր, դասընկեր Յովհաննէսի և աշակերտ Մխիթարի կամ Կարապետի. իբրև նշանավոր հայրեր՝ անցել են պատարագի հիշատակության մեջ (ԺԴ դար).—տես. Գրիգորի՝ Պարգ. էջ 695։

— 522. Գրիգոր վարդապետ Մեսեւլյարոյց. աշակերտ Եսայի Նչեցու (մ. «1333 թ»)՝ ըստ Տաշեան, Ցուց. 1032 կամ Յովհաննէս Համշէնցու, ըստ Մ. մաշտ. 336 բ։

— 523. Գրիգոր վարդապետ Արծկեցի. տաղասաց. իր տաղերից մի քանիսը հիշված են Ձեռ. Հալէպի, Ա. 141 ա, 143 ա, 144 ա, 149 բ, 203 ա, 204 բ, 208 բ երկու Գանձարաններում, որոնցից հնագույնը 1497 թվից է։ Տաղերից լավագույնն է թըվում «Գանգատ ունիմ անել քեզ, Թագաւոր իմ Յիսուս Քրիստոս»։ Այս վերջինը այլուր Խլաթեցունն է (տես վարը), ուստի և այս երկուսը նույն անձերը չե՞ն արդյոք։—Տարբեր է Գրիգոր վարդապետ Ոստանցի, որի մի տաղը տես Ձեռ. Հալէպի, Ա. 203ա (1630 թ. գրված մի Գանձարանում)։

— 524. Գրիգոր քահանա, հորեղբայր Յովհաննէս գրչի, որ Խիզանում, Յովհաննէս քահանայի համար գրեց մի Աւետարան, 1402 թ.—Ձեռ. Վասպ. 289։

— 525. Գրիգոր կրոնավոր, հոգևոր եղբայր Յակոբ վարդապետի, որ իր քրոջ որդի Աստուածատուրին գրել տվեց Ոսկեփորիկը. Գրիգորն էլ թուղթ էր հայթայթում նրան, 1403 թ. Թվի թե Անձնապատի կրոնավորներից էր.—Ձեռ. Վեննա. Բ. 931։

— 526. Գրիգոր վրդ. Տաթևացի. օրինակել է Տաթևի վան-

քում, Մովսէս քերթողի Քերականութիւնը՝ 1403 թ.—Ջեռ. կարին. 224։—Նույն ինքն Տաթևացին չէ՞ (№ 533)։

— **527. Գրիգոր** տանուտեր, մերձավոր Դանիէլ սարկավագի, որ օրինակեց մի Մաշտոց Աղթամարում, 1404 թ.—Թորոս աղբ. Բ. 277։

— **528. Գրիգոր** քահանա, Կիլիկեցոց մեծ գաղթականության առաջնորդներից՝ դեպի Կիպրոս կամ Իտալիա «1404 թ»։ —Ազգապ. 2007։

— **529. Գրիգոր** քահանա, որդի Ստեփաննոսի և հայր Ստեփաննոս նշանավոր գրչի (Տշող գյուղում) և Առաքել ու Յովհաննէս քահանաների։ Երիտասարդ հասակում մեռավ 1404 թվին, երբ մահապաժամը «կոտորէր զամենայն առհասարակ և զաղխ ծնողացն զոլարեցուցանէր և զուակացն՝ ի վերայ հարցն և մարցն խարշէր առաւել»։—Նոտարք (21), 22, 45, 50, 59։ Հիշված է իբր նշանավոր գրիչ (Նոտարք 38), բայց իր ձեռագրերը հայտնի չեն։

— **530. Գրիգոր** երեց, որդի Խաղաղութիւնի (սեռ. Խաղաղութենայ), քահանա Խայիք գյուղի (Երզնկա) եկեղեցու, 1404 թ.—Թորոս աղբ. Ա. 66, 67։

— **531. Գրիգոր** պատանեակ, եպիսկոպոս Բաբերդի՝ 1405 թվին.—Ջեռ. Կարին. 18։

— **532. Գրիգոր**, գրիչ. օրինակել է Խաղգիրքը Աւագ վանքի անապատում, 1405 թ.—Ջեռ. Կարին. 41, Նոտարք 23։

— **533. Գրիգոր** (սուրբն) Տաթևացի, որդի Ամիր Սարգսի, որ Քաջբերունեաց գավառի Արճէշ քաղաքից էր։ Ծնվել է «1346 թ» Վայոց ձորում, սովորել է Յովհաննէս Որոտնեցու մոտ՝ 28 տարի։ Նրա հետ գնաց Երուսաղէմ և այնտեղ օծվեց վարդապետ։ Հաջորդեց իր ուսուցչին «1388 թվին» և նստավ Ապրակունեաց վանքը։ Այստեղ նա մեծ անուն հանեց իր հմտությամբ և քաջաբան քարոզչությամբ։ Մեծոփեցին գովաբանելով նրան՝ ասում է. «Քրիստոսածաւալ աղբիւրն և անմատ արեգակն, երկրորդ Լուսաւորիչն» (էջ 17), «վարդապետն ամենայն Հայոց, երկրորդ Լուսաւորիչն և աստուածաբանն՝ գեր ի վերոյ գոլով ամենայն իմաստասիրաց և վարդապետաց հնոց և նորոց» (էջ 50)։ Տաթեւացին հմուտ էր ոչ միայն Ս. Գրոց գիտության և աստուածաբանության, այլ և հունաց արտաքին փիլիսոփայական դպրոցներին և աշխարհիկ գիտություններին։ Այս բոլորով զինված՝ նա կռվի դուրս եկավ Ունիթոռական շարժման դեմ և ազդու կերպով

պաշտպանեց հայ ազգային եկեղեցու անկախությունը՝ պապական ստրկական լծից։ Տաթևացին երկու տարի մնաց Ապրակունեաց վանքում, որից հետո փոխադրվեց Տաթևի հռչակավոր վանքը «1390 թ»։ Տաթևում շարունակեց իր ուսուցչական գործունեությունը՝ մինչև «1408 թ»։ Այս թվին, Տաթևացին վերցրեց իր աշակերտների խումբը և գնաց Մեծոփի վանքը, ուր շարունակեց իր ուսուցչությունը։ 11 վարդապետ և 80 աբեղա հավաքվեցին իր շուրջը։ Մեծոփի վանքը այս առթիվ շատ ծաղկեց։ Այստեղ Տաթևացին երկնեց Հայոց հայրապետության միության գաղափարը։ Նա մեծահանդես ժողով գումարեց Մեծոփում և Աղթամարի աթոռը բանադրանքից արձակեց։ Իր ծրագիրն էր Սսի գահակալին փոխադրել Աղթամար, գահընկեց անելով Աղթամարի Դավիթ կաթողիկոսին։ Այս վերջին կետը բնականաբար պիտի զայրացներ Դավիթին, որ ամբողջ ուժով զինվեց նրա դեմ։ Տաթևացին փախավ նորից Տաթևի վանքը, ուր մեռավ և թաղվեց «1410 թ»։ Տաթևացին հասցրել է բազմաթիվ աշակերտներ, որոնց մեջ նշանավոր է Առաքել Սյունեցին՝ հեղինակ Ադամգրքի, որ և իր ուսուցչի վրա ունի մի ներբողեան (տպ. Տաթև. ամ. 716—719)։ Բազմաթիվ են Տաթևացու աշխատությունները, որոնցից հիշատակում ենք. Գիրք հարցմանց (գրել է 1397 թվին, խոսում է բոլոր տեսակի գիտությանց մասին և իր ժամանակի համար մի տեսակ հանրագիտարան է։ Սրա հորինման մասին հեղինակը տալիս է հետևյալ տեղեկությունը.—«Բացայայտեցի զբանս հարցմանց ի լուսաւոր բանից վարդապետաց եկեղեցւոյ, ի խնդրոյ ումեմն բանասիրի Առամ ուղղափառի, որ ի վաղուց հետէ բազում թախանձէր, և ես վասն խմոյ տկարութեանս և ժամանակիս վրդովման՝ զխնդիրն յապաղէի։ Եւ ապա ի սէր և յանձուկ ժտելոյ նորին, ապաստանեալ ի Նայն, որ զօրացոյց զտկարս, ձեռն ի գործ արկեալ աւարտեցաւ բազում միջոցաւ և փախստեամբ ի տեղիս և մեծ ջանիւ փոխացեալ։ Որ և ոչ ժամանեաց ի կատար բանիս վերոյ ասացեալ խնդրողն, այլ ի հասարակ գրոյս (գրքի կեսին) և նա զկեանս առօրեայ հասեալ, ի գանձն իմաստից և յաղբերն գիտութեանց, որոյ յիշատակն օրհնութեամբ եղիցի ամէն։ Արդ՝ եղև գրաւ բանիս ի շրջագայութեան Հայկազեան տումարի ՊԽԶ (=1397) թուի, ընդ հովանեաւ երկնահանգէտ մեծարգոյ ուխտի Սիւնեաց նահանգի, առաքելական աթոռոյ սուրբ առաքելոյս (Տաթևի վանուց) և այլ շրջակայ հրեշտակաբնակ սուրբ մենաստանացս, որոց խնամօք

ամրացեալ փրկեսցուք յամենայն փորձութեանց. ամէն: Իսկ լուծումն հարցմանց այսոցիկ ոչ ամենեքն օտարաձայն աւելորդս խուզեալ, և ոչ գեղջուկ իմն աշխարհական խօսից յարմարեալ, այլ զպիտանին եկեղեցւոյ և վարդապետաց ոգեշահ խնդիր հոգտարեալ: Որ և աղաչեմ զբարեմիտ հանդիպողս եղբայրական սիրով հաւանեալ՝ զպակասն լնուլ և զաւելին կշռել և պիտանեաց փառս վերընծայել այնմ, որ փառաւորեալ է ի պարգևս իւր: Իսկ զանպիտանս ներել ձերոյ փոքրընկալ անօթոյ և դանդաղկոտ փութոյ: Դարձեալ յերես անկեալ արտասուալից դիմօք հոգս և փոշի սուրբ դարշապարաց ձերոց, աղերսեմ ի խորոց սրտէ զհարազատ գութ հարց և եղբարց մեր հոգևորաց, զի կաթիլ մի արտասուաց ի կաթիլ դուլէ ձերդ մաղթանաց ցօղեսցէ: Այլ և վարժապետին իմոյ և մեծ հռետորի Հայոց՝ Յովհաննու Որոտնեցւոյ եղիցի ի սմա յիշատակ մաղթանաց մասին օրհնութեանց և վիճակի ժառանգութեան սրբոյն ի լոյս: Զի ծնաւ զմեզ ըստ բանի բազմաջան երկօք կրթեալ ի մանուկս վարժարանի և ի յոյսն կենդանիս» (Նոտարք 8—9)։ Ոսկեփորիկ, որի հօրինման աւթիվ Տաթևացին տալիս է հետևյալ տեղեկությունը.—«Հաւաքեցի զգիրս Աստուածաբանութեան, որ անուանեալ կոչի Ոսկեփորիկ: Արդ գրեցաւ սա ընդ հովանեաւ Ս. Առաքելոցս, առաքելական աթոռոյն Եւստաթէի, և այլ բազմահաւաք սրբութեանց, ի նեղ և ի նվազեալ ժամանակի, թուականութեան մերոյ ազգի ՊԾԶ= 1407 երրորդի: Ի խնդրոյ ումեմն բարեպաշտ խոճայ Մասուդշահի, բնակութեամբ ի սեպուհ արանց Դաւրէժ քաղաքի: Զոր խնդրեաց բազում անգամ գրով և բանիւ, գրել յաղագս սրբոյ Երրորդութեան և յաղագս Քրիստոսի աստուածութեան: Եւ ես տկարս ոգւով և ծերեալս մարմնով՝ գրեցի և հաւաքեցի ի սրբոց զճշմարիտն և զուղիղն կարճառօտ բանիւք. և ի չորս հատորս բաժանեցի վասն դիւրութեան ընթերցողաց.—Նոտարք 27)։ Դաւանութիւն հաւատոյ, Քարոզգիրք (բաղկացած է երկու հատորից, որոնք կոչվում են Ամարան և Ձմրան. պարունակում են 200-ից ավելի քարոզներ. ըստ Ձեռ. Դաշեան, Ա. 92ա Ամարան հատորը գրված է 1407 թվին, իսկ Ձմրան հատորը 1410 թվին.—սրանք թարգմանված են վրացերենի՝ ըստ Մառ, Հայ-Վրաց. յարաբերութ. էջ 44)։ Լուծմունք Ստորոգութեանց Արիստոտելի, Պերիարմենիասի և Պորփիւրի (գրված 1383 թ. ըստ Ձեռ. Դաշեան, Ա. 92 ա— Պորփիւրի Ներածութեան Լուծմունքը տպված է ի «Գիրք Պորփիւրի որ կոչի Ներածութիւն», Մադրաս 1793, էջ 325—390),

Լուծմունք Պարապմանց գրոց Կիւրղի, Ծաղկաքաղ մեկնութիւն Եսայեայ «ի լուսաւոր բանից տեառն իմոյ և վարժապետին Յովհաննու Որոտնեցւոյն» (Ձեռ. Վենետ. Բ. 730, 741), Լուծմունք Յոբայ կամ Համառօտ Լուծմունք դժուարիմաց բանից ի մեկնութիւն գրոցն Յոբայ և ի բանս մեկնչաց (որի հորինման մասին հեղինակը հետևյալն է գրում. «Ի վաղուց հետէ փափագէի բոլոր Մեկնութեան Յոբայ. և ի Թուականութեանս հայոց ՊԾԷ (=1408) ամի, եկեալ մեր յերկիրս Բաջբերունի, և ձմերեալ ի հրեշտակաբնակ վանս Մեծոփայ, ի սպասու դամբարանաց վարդապետացն սրբոց, և ընթերցմամբ հաւաքեցի զդժուարալոյծ բանս Յոբայ, և զմեկնողաց նորա, և այլ սակաւ ինչ Լուծմամբ Արիստակէսի և Գէորգայ ի խրատս գրչութեան, ընդ նմին և զԲաղուածոյ մեկնութեան Յովհաննու Աւետարանչի, և ընծայեցի ի պատիւ սուրբ տեղւոյս ուսումնասէր անձանց» (Նօտարք 29)։ Այս գրքի մի այլ ձեռագիրը տես Ձեռ. Հալէպի, Բ. էջ 70. հեղինակի՝ այն է Գրիգոր Տաթևացու հիշատակարանն է, որ գրված է նույն էջում, միայն Թվականը վրիպակով գրված է ՈԾԷ (=1208), որ պետք է ուղղել ՊԾԷ=1408 Մեծոփայ վանք), Բաղուածոյք մեկնութեան Սաղմոսացն Դաւթի (որի հորինման մասին Տաթևացին հետևյալ տեղեկությունն է տալիս. «Հաւաքեցի... ի նեղ և տառապանաւոր ժամանակի, որում բռնակալն Թամուր Թոյլատուութեամբ վերին խնամոց տիրեալ բազում աշխարհի և աւերեալ և կործանեալ յայսմ ամի ՊԾԴ (=1405) Թուի։ Եւ պատճառ շարժութեան (շարժառիթ) վերատին քաղուածոյս՝ նախ մեծին Վարդանայ համառօտ և խորին տեսութիւն, որ անյայտ մնայր միշտ, հոգացայ յայտնի և ընդ արձակ ցուցանել։ Երկրորդ՝ զի զառաջին քաղուածոյն կարի կարճ ու պակաս Թուէր.—Նօտարք 23—24)։ Առակաց և Երգ երգոցի (1405 Թվից՝ ըստ Ձեռ. Ներս. 39 և Ձեռ. Դաշեան, Ա. 92 ա) և Լուծմունք դժուարիմաց բանից և քաղուածոյ Սաղմոսացն Դաւթի (Ձեռ. Հալէպի, Բ. էջ 94 բ և Ձեռ. Դաշեան, Ա. 61 բ), Քաղուածոյ մեկնութիւն Մատթէոսի Աւետարանի (6 հատոր՝ ըստ Ձեռ. Դաշեան, Ա. 92 ա. տես և Թորոս աղբ. Բ. 448 (երկու ձեռ.) և Ձեռ. Հալէպի, Բ. էջ 51—55 և հատկապես էջ 53 ա, ուր հեղինակի անունը դրվում է «Ջուարթուն... աշակերտ Յովհաննու Որոտնեցոյն»), Լուծմունք Աւետարանին Մատթէոսի (Manus. brit. mus. 202—3), Լուծումն համառօտ դժուարիմաց բանից ի գիրս դրչութեան Արիստակէս հռետորի (Ձեռ. Դաշեան, Ա. 92 ա և Manus. brit. mus. 306 բ.

այս է որ հիշատակված է Հարցմանց գրոց տպագրության հիշատակարանում, էջ 791), Լուծումն համառօտ ի խրատ գրչութեան Գէորգեայ վարդապետի (անդ, 306 բ), Գիրք փոքր հարցմանց ի խնդրոյ Գէորգայ Երզնկացւոյ (Ձեռ. Դաշեան, Ա. 92 ա, գրված 1408 թ), Վասն աթոռոյն Աղթամարայ (Աղգապ. 2021), Թուղթ Գր. Տաթևացւոյ առ կաթուղիկոսն ի Կիլիկիա (Ձեռ. Վեննա. Բ. 730), Սահմանադրութիւն դաստիարակութեան նորածնեալ մանկանց, որք հրաւիրելոց են յաստիճան քահանայութեան (տպ. Մ. մաշտ. էջ 337 ևն), Թէ որպէս պարտ է քաղել պշարականս, ի վերայ արարողութեան, Աղօթք արձակման, Ժամանակագրութիւն (տես Տաշեան, Ցուց. 1076 `բ), Մեկնութիւն գովեստից, տօնից տէրունականաց, ի պատիւ սրբոց, ի պատճառ գիտութեան ալխմարաց, մանաւանդ ի յաղբիւրս արտասուաց՝ անձանց թաղծեալս, յաւէտ ի ճշմարտութիւն կարգաց ուղղափառաց և յեղծումն բարբանջմանց չարափառաց (Ձեռ. Վեննա. Բ. 737)։ Սրանց վրա ավելացնենք «Գրիգորի լուծմունք համառօտ ի տեսութիւն Դաւթի Ներգինացւոյ, ազգաւ հայ, իմաստութեամբ հելլենացի» Ձեռ. Երև. մատ. № 4268 (ինչպես տեղեկացնում է Վ. Զալոյանը), Ընդդէմ Տաճկաց (տպ. ՀԱ 1925—7)։ Տաթևացին արտագրել է նաև մի Ճառընտիր 1399 թ. (Ձեռ. Վեննա. Բ. 1296), նաև մի Աւետարան, որի մասին հետևյալն է ասում մի գրիչ. «Գեղեցկայարմար գրուատով ունէր յինքեան զամենայն արուեստ գրչութեան, քանզի զարդարեալ էր սա ի մեծ վարժապետէն և ի քաջ քարտուղարէն, մեծ րաբունապետէն և քաջ հռետորէն Գրիգորի մեծի, որ ձեռամբ բազկի իւրոյ գրեալ ունէր զօրինակ զսուրբ աւետարանիս՝ կետօք և ստորակետօք, վանկօք և շեշտօք և պարոյկաւ. Նաև դարձագրօք և քմակից գիրքն ի տեղի իւր կարգեալ իմաստասիրապէս և համարայքն և ճապաղ ցանկն՝ ուղղագրեալ և ներքնագրոշմեալ կարմրադեղով» (Ձեռ. Վեննա. Ա. 734)։—Տաթևացու ինքնաձեռագիր մի գործն էլ գտնվում էր Շուշի, Ա. Բահաթրյանի մոտ, բայց Շուշվա հրդեհին հրո ճարակ եղավ։—Գրիգոր՝ Մ. մաշտ. 336բ, 337բ. Տաթև. հարց. 772. Մեծոփ. 33, 50, 55—56, 59, 60, 69. Ցայսմ. ապր. 27. Տաթև. ամ. 720. Աղամ. 229, 271. Առաք. տաթև. էջ 716—717 և էջ 719. Մեսր. տաթև. 719—720. Առաք. պատմ. 301, 340. Չքր. ագուլ, 42. Դրնդ. (Ժամանակագրութիւն) 373, 435, 437, 584, 587. Գրիգորիս՝ Առաք. տաթև. 717.—Գրիգորիոս՝ Մեծոփ. 17. Ցայսմ. ապր. 27. Աղամ. 322, 325. Առաք. տաթև. 719. Մեսր. տաթև. 726.—պարզապես Տաթև-

ացի՝ *Մեծոփ.* 85.—սեռ. Գրիգորի՝ *Տաթև. ոսկեփ.* 1, 9, 561. *հարց.* 1, 4, 6, 93, 773. *Մեծոփ.* 33, 74. *Տաթև. լծ. պորփ.* 327. *Առաք. լծ. սահմ.* 147. *Մութ. ներբ.* 148. *Տաթև. ամ.* 9, 417, 711. *Մ. մաշտ.* 171 բ, 172 ա, 251 բ, 260 բ, 281 ա. *Ծշ.* 121. *Պարգ.* 690. *Ժմ.* 947. *Եփր. խոստ.* 23. *Լծ. պրպմ.* 529. *Ցայսմ. նոյ.* 17, *ապր.* 27. *Աղամ.* էջ ժդ. *Տաթև. ձմ.* ա, գ, իե, լ (և հաջորդ գլուխների սկիզբը հաճախ). *Ձեռ. Թուր.* 46բ.—Գրիգորիոսի՝ *Ցայսմ. ապր.* 27.—բց. ի Գրիգորէ՝ *Տաթև. լծ. պորփ.* 325։—Կենսագրությունը տես *Ձեռ. Սևանի* 41 բ, *Ձեռ. Աբգ. յովհ.* 172, *Ձեռ. Վենետ. Բ.* 972. *Զարբ. Նոր մատենագր.* 215—8 (ուր ազգային այս մեծ դեմքը դուրս է բերված իբրև մի ողորմելի անձնավորություն, միմիայն այն պատճառով՝ որ կարողացել է հզոր կերպով կռվել պապական խարդախության դեմ)։—Տաթևացու մասին քննական մի հոդված ունի մեր Համալսարանի դոցենտ Տիրան Ղազանչյանը, «Գրիգոր Տաթևացու տարրաբանական հասկացությունների մասին» վերնագրով (տես Համալսարանի Գիտ. աշխատություններ, հտ. XXII)։ Այս հոդվածով հեղինակը երևան է հանում Տաթևացու ծանոթությունը նյութի անվախճանության մասին (ըստ Տաթևացու՝ «շրջաստեղծության» միջոցով), մարմինների գոյությունը 4 տարրերի բաղկացությամբ, եթերը՝ իբր տարրերից ամենակատարյալը, հատկությունների փոխանցումը մարմնից մարմին, այրման երևույթի բացատրությունը ևն։ Հեղինակը գտնում է, որ Տաթևացին այս բոլորի մեջ հետևում է Արիստոտելի ուսմունքին, բայց ոչ թե նա կրկնում է նրա գաղափարները մեքենաբար, այլ «շարադրում է ինքնուրույն ձևով, երբեմն ավելի կոնկրետ ու ավելի հակիրճ և այդ դեռ բավական չէ, հաճախ բերելով ինքնուրույն և տեղական օրինակներ՝ ավելի հասկանալի լինելու համար. և որ ավելի կարևոր է, միևնույն երևույթները բացատրելով ավելի նոր տեսություններով, օրինակ ջերմուկների տաքությունը՝ ծծումբի՝ որպես կրակի պրինցիպի երակների առկայությամբ երկրի ընդերքում»։—Տաթևացու փիլիսոփայական գաղափարների ուսումնասիրությամբ զբաղվում է նաև մեր հայտնի բժիշկ Գաբրիէլ Հարությունյանը, որ իմ խնդրանքով, հատկապես իմ այս գրքի համար, գրեց հետևյալ ամփոփումը.—«Գրիգոր Տաթևացին իր «Վասն կազմութեան մարդոյ» հատորի մեջ տալիս է իր տեսությունը մարդու ծագման և էության մասին։ Նա հերքում է աստվածաբանների այն տեսակետը, որ իբր թե առաջ ստեղծվել է հոգին և ապա

մարմինը։ Նա համարում է որ այդ տեսակետը հիմնված է Պլատոնի այն սխալ գաղափարախոսության վրա, որ իբր թե հոգիները բնակվում են մի այլ աշխարհում և հարկ եղած դեպքում գալիս մտնում են մարդու մարմնի մեջ։ Տաթևացին հերքում է նաև հակառակ տեսակետը, այն որ որպես թե նախապես ստեղծվել է մարմինը և ապա հոգին, առարկելով, որ եթե ամեն ինչ գոյանում է չորս տարրերից (օդ, ջուր, հուր և հող), այն է մարմինը—նյութը, ապա որտեղից է հոգին։ Տաթևացին այն տեսակետի վրա է կանգնած, որ հոգին և մարմինը--նյութը ծագմամբ անբաժանելի են իրարից և ծագում են միաժամանակ։ Բուսական և կենդանական աշխարհում ամեն ինչ, ինչպես և մարդը, գոյանում է սերմից։ Նախ գոյացել է ավելի անկատարը՝ աճականը—բույսը, հետո զգայականը—կենդանին և ապա բանականը—մարդը, ըստ որում ամեն ինչ զարգանում է անկատարից դեպի կատարյալը։ Սերմի նյութի մեջ կամ սկզբնական նյութի մեջ արարչի հրամանով գոյացել է «կազմողական զորությունը»։ Շնորհիվ այդ զորության երեք հատկությունների (ջերմության, շարժողության և ներգործության), նյութը ստանում է կենսական (կենդանական) ուժ, որ է հոգի։ Եթե նյութը այդ զորությունը իր մեջ չի պարունակում, նա մեռյալ է, քար է։ Նյութը այդ զորության շնորհիվ կարող է աճել, զարգանալ և բազմանալ։ Երբ նյութը սպառվում և պակասում է, «կազմողական զորությունը» նրա սերմի մեջ պահպանվում է։ Այդպիսով «կազմողական զորությունը» չի ոչնչանում, այսինքն հոգին անմահ է։ Մարդու հոգու հատկություններն են՝ միտքը, հիշողությունը, կամքը, երևակայությունը են։ Տաթևացին համաձայն չէ այն փիլիսոփաների հետ, որոնք գտնում են, որ հոգու այդ հատկությունները անջատ են մարմնից։ Նա գտնում է, որ այդ հատկությունները կամ հոգու զորությունը անբաժան են մարդու մարմնից։ Մարդու հոգու այդ զորությունները (միտքը, հիշողությունը, կամքը են) թեպետ դրված են մարդու մարմնի մեջ սկզբից (ժառանգականություն), բայց նրանք ենթակա են փոփոխությունների՝ շնորհիվ կյանքի պայմանների, կլիմայի, կրթության և այլ արտաքին ազդեցությունների»։—Հիշենք վերջապես Վազգեն Չալոյանի ռուսերեն աշխատությունը История развития философской мысли в Армении, որ շուտով հրատարակվելու է История фолософии աշխատության 5-րդ հատորում և ուր Տաթևացուն նվիրված է ամբողջ 20 էջ։

— 534. Գրիգոր Արարատեան, աշակերտ Գրիգոր Տաթեւացու՝ 1390—1409 թվերին.—Մեծոփ. 50. Ցայսմ. ապր. 27 (գրում է Գր. Արատան), Ազգապ. 1997 (կոչված Գր. Արարատեցի)։

— 535. Գրիգոր Ջուղայեցի, աշակերտ Գրիգոր Տաթեւացու 1390—1409 թվերին.—Մեծոփ. 51. Ցայսմ. ապր. 27։

— 536. Գրիգոր Բ եպիսկոպոս, եղբայր Յովհաննէս եպիսկոպոսի, որին հաջորդեց իբրև առաջնորդ Լեհահայոց։ Աբեղա էր դեռ, երբ իր եղբոր հետ ուխտի գնաց Երուսաղէմ։ Սսից անցնելով՝ ի տեսութիւն Յակոբ Գ կաթողիկոսի, վերադարձավ Իլվով։ Երևի նույն միջոցին մեռավ Յովհաննէսը և Գրիգորը հաջորդեց նրան՝ 1409 թ.—Կամենից, էջ ե և 222։ (Կենդանի էր դեռ 1421 թ. ըստ Նոտարք 66 մի հիշատակարանի)։

— 537. Գրիգոր, որդի Գորգի և եղբայր Մարտիրոս քահանայի, որ Դուքից գնեց մի հին Աւետարան, 1410 թ.—Ձեռ. Վասպ. 164։

— 538. Գրիգոր, որդի նույն Մարտիրոս քահանայի, 1410 թ.—Ձեռ. Վասպ. 164, 166։

— 539. Գրիգոր վանահայր Մոկաց Ս. Խաչ վանքի, 1410 թ.—Ձեռ. Վասպ. 298։

— 540. Գրիգոր ամուլավար Կուալու վանից, 1410 թ.—Նոտարք 38։

— 541. Գրիգոր կրոնավոր, միաբան Կուալու վանից. նորոգեց մի հին Աւետարան, 1410 թ?—Նոտարք 37։

— 542. Գրիգոր կրոնավոր, գրիչ. օրինակեց Գր. Տաթեւացու Հարցմանց գիրքը Եղիվարդ գյուղի Ս. Յակոբի վանքում, 1411 թ.—Ձեռ. Կարին. 50. Նոտարք 39։

— 543. Գրիգոր, կրոնավոր, մեն այն կրոնավորներից, որոնք միացան Ռշտունեցի Ստեփաննոս վարդապետին և վերաշինեցին Ս. Յակոբի ավերակ վանքը, 1412 թ։ Գրիգորը՝ Յովհաննէս կրոնավորի հետ՝ ճարտարապետն էր շինության։ Երկուսն էլ մեռան մի քանի տարի հետո։—Նոտարք 41, 138։

— 544. Գրիգոր, գրիչ ոմն, որ օրինակել է Նարեկը՝ ՊԿԲ =1413 թ.—Ձեռ. Կարին. 173։

— 545. Գրիգոր, միաբան Խիզանի Ս. Խաչ վանքի. 1402 թ. դեռ սարկավագ էր և թուղթ էր խազում. հիշված է նաև 1413 թ.—Նոտարք 17, 42, 43։

— 546. Գրիգոր, աշակերտ Յովհաննէս գրչի. միաբան էր Խիզանի Ս. Խաչ վանքում. մեռավ 1413 թ.—Նոտարք 43։

— 547. Գրիգոր գրիչ, միաբան Հերմոնի վանից, ուր Սիմէօն վրդ. Սիւնեցու հրամանով օրինակեց Ն. Լամբրոնացու Մեկնութիւն ԺԲ մարգարէից, 1414 թ.—Սիսական 125 բ։

— 548. Գրիգոր, ուղարկվեց Լեհաց թագավոր Վլադիսլաւ Եագելլոնի կողմից իբրև իրավարար (arbitre) Հունգարիայի և Թուրքիայի միջև (1414).—REA 7, 53։

— 549. Գրիգոր եղբայր Յովհաննէս վարդապետի և Վասիլի. հորեղբորորդի Վարդանէս գրչի, որ Կոճերայ վանքում օրինակեց Լամբրոնացու գործերը՝ 1415 թ.—Լմբ. առակ. 428։

— 550. Գրիգոր, գրիչ. օրինակել է Կափոսի վանքում (Երզնկա) Գր. Տաթևացու Քարոզգիրքը, 1416 թ.—Ձեռ. Կարին. 215, Նոտարք 47։

— 551. Գրիգոր քահանա, պաշտոնակից Սարգիս եպիսկոպոսի, որ օրինակեց Աւետարանը 1416 թ.—Ձեռ. Թաւր. 31 բ։

— 552. Գրիգոր վարդապետ. գրիչ. օրինակել է Գր. Տաթևացու Մեկնութիւն Աւետարանին Մատթէոսի, ՊԿԶ=1417 թ. —Ձեռ. Կարին. 156։

— 553. Գրիգոր Ը Խանձողատ, կաթուղիկոս Հայոց «1414—1418 թ». հաջորդեց Յակոբ Գ-ին, որին սպանելով գահ բարձրացավ. իր կեղտոտ բարքի պատճառով գահազուրկ եղավ և Սսի բերդում բանտարկվեց, ապա աքսորվեց.—Սամ. անեց. շար. 172. Առաք. պատմ. 336. Ազգապ. 2037—46, 5528։ (Մի գրիչ 1420 թվին դեռ գահի վրա է կարծում Գրիգորին. տես Նոտարք 62)։

— 554. Գրիգորիս ոմն, պապ. հիշված 1420 թվից առաջ.—Տաշեան, Ցուց. 666 ա։

— 555. Գրիգոր, որդի Հազարշահի, հիշված 1420 թվից առաջ.—Տաշեան, Ցուց. 666 ա։

— 556. Գրիգոր, եղբայր Հայրապետի, Կարապետի և Վարդի, նախ քան 1420 թիվը.—Տաշեան, Ցուց. 665։

— 557. Գրիգոր, որդի Յովհաննէսի և եղբայր Վարդան կրոնավորի, որ Աղթամարում, Թումայ աբեղային գրել տվեց մի Աւետարան, 1420 թ.—Ձեռ. Վասպ. 322։

— 558. Գրիգոր, գրիչ. օրինակել է Գր. Տաթևացու Մեկնութիւն հինգ գրոցն Մովսիսի են, 1420 թ.—Ձեռ. Կարին. 143 (Կարինեանն ասում է որ Գր. Տաթևացու «ինքնաձեռագիրն է». բայց Տաթևացին մեռել է 1410 թ. ուստի կամ սխալ է այդ կարծիքը և կամ հետո հավելումներ են եղած)։

— 559. Գրիգոր սարկավագ, եղբորորդի Թումայ կրոնավո-

րի, որ Վարդան աբեղային գրել տվեց մի Աւետարան, 1421 Թ.—Ձեռ. Վասպ. 331։

— 560. Գրիգոր, որդի Յովհաննէս քահանայի, որին է վայելումն Կարապետ երեցը գրեց մի Աւետարան՝ Վան 1421 Թ.—Ձեռ. Վասպ. 342։

— 561. Գրիգոր դպիր, «հոգևոր որդեակ» Յակոբ աբեղայի, որ Բերկրիի Եղավանք կոչված վանքում արտագրեց Աւետարանը, 1422 Թ.—Ձեռ. Վասպ. 349։

— 562. Գրիգոր, մեծ հայր Յովհաննէս կրոնավորի, որ Յակոբ աբեղային գրել տվեց մի Աւետարան, Բերկրիի Եղավանքում, 1422 Թ.—Ձեռ. Վասպ. 347։

— 563. Գրիգոր, հորեղբորորդի նույն Յովհաննէս կրոնավորի, 1422 Թ.—Ձեռ. Վասպ. 348։

— 564. Գրիգոր աբեղա, Մկրտիչ և Կարապետ գրիչների ընկերակցությամբ, Ատոմ աբեղայի առաջարկությամբ օրինակեց Յայսմաւուրքը, Վանում 1422 Թ.—Նոտարք 68։

— 565. Գրիգոր ճգնավոր, ուսուցիչ Սողոմոն քահանայի, որ օրինակեց Շարականը՝ 1423 Թ. երբ Գրիգորը արդեն մեռած էր։—Ձեռ. Հալէպի, Բ. 50 բ։

— 566. Գրիգոր (Ամիր—), հայր Ղազարոսի, որ գնեց մի հին Աւետարան, 1424 թվին, երբ Գրիգորը արդեն մեռած էր.— —Ձեռ. Վենետ. Ա. 645։

— 567. Գրիգոր (Ամիր—), թոռն նախորդի և որդի նույն Ղազարոսի.—Ձեռ. Վենետ. Ա. 645։

— 568. Գրիգոր Խլաթեցի Ծերենց. ծնվել է 1350 Թ. Խլաթ քաղաքում և Ծեր անունով մարդու որդին է։ (Մի Յայսմաւուրք զարմանալի կերպով կոչում է նրան Խէրխաթիթայ որդի Ծերին, ըստ Նոտարք 75)։ Աշակերտեց նախ Արծկէի Ցիպնավանքում, Վարդան ճգնավորի մոտ, 6 տարի։ Ապա գնաց Յովհաննէս Որոտնեցու մոտ, դասընկեր ունենալով Գրիգոր Տաթևացուն։ Ութ տարի էլ նրա մոտ սովորելուց հետո, երբ Որոտնեցին մեռավ և երկիրը Լենկթիմուրից ավերվեց, դարձավ իր գավառը և աշակերտեց Սարգիս վարժապետին, Բաջբերունեաց Սուխարավանքում։ Այստեղ մնաց 10 տարի և ստանալով վարդապետական աստիճան, հաստատվեց Արծկէի Ցիպնավանքում, ուր հավաքեց բազմաթիվ աշակերտներ, պարապեց գրական գործերով և 50 տարի ամբողջ ձեռագրեր օրինակելով՝ կամ նվիրում էր եկեղեցիներին և կամ վաճառելով՝ արդյունքը բաշխում էր աղքատնե-

ջին։ 70 տարեկանից անց էր, ուխտի գնաց Երուսաղէմ, ուր 2 տարի մնալուց հետո, վերադարձավ նույն տեղը։ Այդ միջոցին տեղի ունեցավ քրդերի հարձակումը Արծկէի և Ցիպնավանքի վրա, ուր Գրիգորին էլ բռնեցին և հավատքը չուրանալու պատճառով նահատակեցին, «1426 Թ»։ (Նօտարք 166 ծան. տալիս է նաև նրան նահատակողի անունը՝ Ռօժկան, որ երեւի քուրդ բէկ է)։ Ճլաթեցու գրական գործերն են՝ Մեկնութիւն Ծննդոց, Ճառ ժամատեղաց, Գովութիւն Սաղմոսի, Հանելուկներ (որոնցից մի նմուշ տես Ջեռ. Մաղն. 14), Եօթնաւուր արարողութիւն (Ջեռ. Հալէպի, Ա. 292 բ), Յիշատակարան աղետից, Թերեւս նաև Պատմութիւն Լենկթիմուրի յաջորդաց՝ Սև և Սպիտակ ոչխարաւորաց (Այրարատ 325. Հայապ. 124)։ Բայց իր կարևորագույն գործերն են Յայսմաւուրքը և Գանձարանը։ Առաջինը վերակազմել է՝ 1401 Թ. (Նօտարք 12 և 152) ավելացնելով նորանոր վկայաբանություններ և հներն էլ սրբագրելով։ Այսպեսով ստացվել է Յայսմաւուրքի մի նոր խմբագրություն, որ կոչվում է իր անունով «Ծերենց», որ և արտագրողները համարում են լավագույն օրինակը. «Ի լաւ և ընտիր օրինակէ որ ասի Ծերենց» (Ջեռ. Հալէպի, Ա. 291)։ Վերակազմեց նաև Գանձարանը՝ ավելացնելով նոր երգեր ու գանձեր էլ։ «Այլ և ժողովեալ զյառաջասացեալ գանձերսն յառաջին վարդապետացն՝ զոր անընդունակ և անպէտս անկեալ կայր, և սրբագրեալ ճարտարաբանեաց և արար զգիրս Գանձարանին, տաղով և մեղեդով, յուրախութիւն և ի ցնծութիւն մանկանց եկեղեցւոյ. և այնպիսի անուշաձայն եղանակաւ պայծառացոյց զգիրս սուրբ եկեղեցեաց, մինչ զի լուսեղէն զուարթնոցն պարակցութիւն ի յերկրի երևիր, զի ոչ էր եղեալ այնպիսի ուրախութիւն հոգևոր եկեղեցեաց Հայաստանեայց յաւուրս մերոց իշխանացն և թագաւորացն»։ Իր տաղերից հիշատակելի են Գանգատ ունիմ առ քեզ, Թագաւոր իմ Յիսուս Քրիստոս, և Ողբ մեռելի։ Յովհ. Մկրտչի տաղը գրել է 1420 Թ. (Նօտարք 60)։ Իր արտագրած ձեռագրերից հայտնի է մի Աւետարան, որ Կարապետ քահանայի խնդրանոք օրինակել է Ճլաթի Մատնեվանքում, 1402 Թ. (Բանասէր 1900, էջ 100)։ Նրա նահատակության պատմությունը գրեց Թովմա Մեծոփեցին (տպ. Նոր վկայք, էջ 264—272)։ Մի ճառ (տես Նօտարք, էջ 77) և մի Եղերերգութիւն էլ իր աշակերտը՝ Առաքել Բաղիշեցին (տես Նոր վկ. էջ 274—279)։—Մեծոփ. 41, 43, 52, 71, 85, Այրիվ. 6. Նոր վկ. 264—281. Հայապ. 561. Ճլաթ. յիշ. 1, 23. Ջեռ. Մաղն.

*13. Ձեռ. Դաղեան, Ա. 42 ա։ Նոտարք 4—5 ունի նրանից պատմական մի տաղ, էջ 53 Ծիպնայ վանքի աշակերտներից մի հիշատակություն։*

— *569.* **Գրիգոր** *Արծկեցի Էլմելիքենց, կրոնավոր, գրիչ. Շամբբձոր գավառում, Մաղարդի վանքում, Աբրահամ կրոնավորի խնդրանքով և նրա հոգևոր որդի Դանիէլ կրոնավորի համար արտագրել է մի Աւետարան, 1427 թ.—Ձեռ. Վենետ. Ա. 413—4, Սիսական 518։*

— *570.* **Գրիգոր** *«հանգուցեալ» հայրապետ Գուգարքի Ընկուզագոմ վանքի, որին հիշում է Սարգիս եպիսկոպոսը իր օրինակած Ցայսմաւուրքի հիշատակարանում, 1427 թ.—Նոտարք 85։*

— *571.* **Գրիգոր** *Տիւրիկցի, միաբան Ջորեհանգիստ վանքի. օրինակեց Մաշտոցը նույն վանքում, 1429 թ.—Նոտարք 92։*

— *572.* **Գրիգոր,** *գրիչ. Լանկթամուրի որդի Շահռուխի արշավանքների ժամանակ, փախել էր Այրիվանքը, ուր՝ ի նշան շնորհակալության իր տեսած հյուրընկալության, գրեց կցուրդների մի գիրք* (antiphonaire), *1429 թ.*—Manus. bibl. nat. *էջ 25։*

— *573.* **Գրիգոր,** *որդի Յակոբ քահանայի և եղբայր Յովսէփ կրոնավորի, որ Կիւրղի վանքում օրինակեց մի Աւետարան, 1432 թ.—Ձեռ. Սեբ.=ՀԱ 1926, 47։*

— *574.* **Գրիգոր,** *որդի Ուփիկի և եղբայր Ներսէս քահանայի, որ Թումայ կրոնավորին գրել տվեց մի Աւետարան, Կարճկանի Ուրանց գյուղում, 1433 թ.—Ձեռ. Վասպ. 364, 366։*

— *575.* **Գրիգոր** *կրոնավոր, որդի Յակոբ քահանայի և եղբայր Յովհաննէս սարկավագի, որ Արղնիի Բագուր գյուղում օրինակեց Մաշտոցը՝ 1434 թ—Թորոս աղբ. Բ. 413, Նոտարք, էջ 103։*

— *576.* **Գրիգոր** *քարագործ և փորագրիչ, որ շինել է Աղթամարի Զաքարիա կաթողիկոսի կանգնեցրած խաչքարը 1434 թ.—Նոտարք 103։ (Այս խաչքարի արձանագրությունը ունին նաև Սարգիսեան, Տեղագր. 278, Էփրիկեան, Բազմ. 1898, 516, Լալայեան, Ազգագր. հանդ. Ի. 210 և բոլորն էլ դնում են ՊԺԳ=1364։ Բայց այս թվին Աղթամարի կաթողիկոսն է Դաւիթ և ոչ Զաքարիա։ Ուղիղ է միայն Նոտարք, որին հետևել եմ և ես)։*

— *577.* **Գրիգոր,** *որդի Հայրապետի և եղբայր Արիստակէս երեցի, որ ստացավ մի Աւետարան, 1435 թ.—Ձեռ. Թաւր. 13ա։*

— *578.* **Տէր Գրիգոր,** *որդի տանուտեր Դաւթի, որ Թացու*

գյուղում Յովսէփ գրչին գրել տվեց մի Աւետարան, 1437 թ.—Ջեռ. Վասպ. 380։

— 579. **Գրիգոր**, որդի Իսաւի, հորեղբայր Բարթուղիմէոս առաքյալի վանուց առաջնորդ Յովհաննէս արքեպիսկոպոսի, որ ստացավ մի Յայսմաւուրք, 1438 թ.—Ջեռ. Թաւր. 41 ա։

— 580. **Գրիգոր** կրոնավոր, գրիչ. Արգելան վանքում օրինակեց Աւետարանը, 1439 թ.—Առաք. պատմ. 321։

— 581. **Գրիգոր** աբեղա, դասագլուխ Դարանաղեաց գավառի Աւագ վանուց, 1439 թ.—Տաշեան, Ցուց. 49։

— 582. **Գրիգոր**, կազմեց այն Աւետարանը, որ Յովհաննէս վարդապետը և Յովսէփ միայնակյացը գրեցին Լիմ անապատում, 1439 թ.—Ջեռ. Վասպ. 382։

— 583. **Գրիգոր** կրոնավոր, գրիչ. օրինակեց Աւետարանը՝ Արգելան վանքում, 1439 թ.—Նոտարք 118։

— 584. **Գրիգոր** երեց, որդի Մխիթար սարկավագի և եղբայր Մովսէս քահանայի, որ Երզնկայի Աւագ վանքում գրել տվեց մի Յայսմաւուրք 1439 թ.—Տաշեան, Ցուց. 49, 50։

— 585. **Գրիգոր** Հանեցի, կաթուղիկոս Աղուանից, որին օրհնության գիր գրեց Կիրակոս կաթուղիկոս Վիրապեցին 1441 թ.—Ջամչ. Գ. 488։

— 586. **Գրիգոր**, երկու համանուն միաբաններ Գեղարդայ վանքի 1441 թ.—Այրարատ 346։

— 587. **Գրիգոր**, որդի Պարոնի և եղբայր տանուտեր Մըկըրտչի, որ Աղթամարում Դանիէլ քահանային գրել տվեց մի Աւետարան, 1441 թ.—Ջեռ. Վասպ. 382։

— 588. **Գրիգոր** վարդապետ և եպիսկոպոս Հաղբատի. անդամ էջմիածնի ժողովի «1441 թ».—Մեծոփ. յիշատ. ա. Նոտարք, էջ 122։

— 589. **Գրիգոր** վարդապետ Գլակայ վանքի, թղթակից անդամ էջմիածնի ժողովի «1441 թ».—Մեծոփ. յիշ. ա։

— 590. **Գրիգոր** վարդապետ և եպիսկոպոս Թադէոս առաքելոյ վանից (Մակու). անդամ էջմիածնի ժողովի «1441 թ». հակառակորդ Կիրակոս կաթուղիկոս Վիրապեցու, որին ինքն էր ձեռնադրել.—Մեծոփ. յիշատ. ա, գ. Դրնդ. 314. Նոտարք 122։

— 591. **Գրիգոր** վարդապետ Սիւնեաց. հակառակորդ և տապալող Կիրակոս կաթուղիկոս Վիրապեցու «1443 թ».—Մեծոփ. յիշատ. գ։

— 592. **Գրիգոր** Համշէնցի, միաբան Սեպուհ լեռան Ս. Լու-

սաւորիչ վանքի, 1444 թ։—Նօտարք 135։ (Այս վանքի 1444 թվի միաբանների անունները հիշված են նաև անդ, էջ 129. Նրանց մեջ չկա Գրիգորը, ուստի ավելի ուշ մտած պիտի լինի)։

— 593. Գրիգոր քահանա, գրիչ. Ծերունի Բարսեղի առաջարկով, Աղթամարում օրինակեց Մաշտոցը 1444 թ.—Նօտարք, էջ 134։

— 594. Գրիգոր, ծաղկող. Խարբերդում ծաղկել է մի Յայսմաւուրք, որ գրել էր Մինաս դպիրը՝ Տղապարոն քահանայի համար, 1444 թ.—Manus. bibl. nat. էջ 101։

— 595. Գրիգոր պարոն, որդի Գորգի մելիքի, եղբայր Յովհաննէս քահանայի և եղբորորդի Թովմա վարդապետ Մեծոփեցու. հիշված է 1445 թ.—Նօտարք 147։

— 596. Գրիգոր քահանա, եղբորորդի Թովմա Մեծոփեցու. հիշված է 1445 թ.—Նօտարք 147 (նախորդից տարբեր անձ)։

— 597. Գրիգոր Կարպեցի, ուներ մի Յայսմաւուրք, որ օրինակելու համար տվեց Երզնկայի Ս. Կիրակոս վանքի աբեղաներին, 1446 թ.—Նօտարք 149։

— 598. Գրիգոր քահանա, եղբորորդի Կարապետ Եւդոկիացի կաթողիկոսի Սսոյ, 1446 թ.—Հայապ. 575։

— 599. Գրիգոր Աղնեցի, որդի Ստեփանի և եղբայր տանուտեր Թովմայի, որ Իսրայէլ գրչին գրել տվեց մի Աւետարան, Մոկաց Փառավանք գյուղում, 1447 թ.—Ջեռ. Վասպ. 400; Նօտարք 156։

— 600. Գրիգոր եպիսկոպոս, եղբորորդի Կարապետ կաթողիկոսի Կիլիկիայի, առաջնորդ Ծարիկու վանքի, 1447 թ.—Նօտարք 157։

— 601. Գրիգոր, մերձավոր Աստուածատուրի, որ Վանում գրել տվեց մի Գանձարան, 1448 թ.—Նօտարք 158։

— 602. Գրիգոր կրոնավոր, որդի Յակոբ քահանայի և եղբայր Յովհաննէս կրոնավորի, որ Թուրվանդայ խաթունի համար օրինակեց Աւետարանը 1448 թ.—Ջեռ. Վասպ. 404։

— 603. Գրիգոր, տնտես Ապահունեաց վանքի, 1449 թ.—Թորոս աղբ. Բ. 296։

— 604. Գրիգոր քահանա, գրիչ. Աղթամարում օրինակեց Աւետարանը Թուրվանդա տիկնոջ համար, 1449 թ.—Ջեռ. Վասպ. էջ 404։

— 605. Գրիգոր Թ. Մուսաբէգեանց, կաթողիկոս Հայոց «1439—1441 թ». հաջորդից Կոստանդին Զ-ին. սրա օրով աթոռը

*փոխադրվեց Սսից Էջմիածին, ուր հրավիրվեց նաև Գրիգոր Թ-ը. բայց սա չուզենալով գնալ այնտեղ, մնաց իբր մանավոր կաթուղիկոս Սսոյ 1441—1451 թ։—Մեծոփ. յիշ. ը. Առաջ. պատմ. 323, 336. Դրնդ. 309. Աղգապ. 2091—2112.—սրա մի թուղթը Հռոմի պապին՝ գրված 1450 թ. տես Պալճեան, 149—151։*

— 606. Գրիգոր, *«զեւարուսիկ» որդի տանուտեր Կարապետ Մանկարոնի՝ փեսայի Փաշա տիկնոջ, որ Վանում, Կարապետ երեցին գրել տվեց մի Ավետարան, 1451 թ.—Ձեռ. Վասպ. 412։*

— 607. Գրիգոր *աբեղա Երզնկացի. նոր վկայ։ Այս անծանոթ նահատակի մասին ունինք այս համառոտ տեղեկությունը, որ տալիս է Նոտարք 166, քաղելով Յայսմաւուրքներից։ «Երզնկացի Գրիգոր աբեղայն վասն Քրիստոսի աստուածութեան և վասն ճշմարիտ հաւատոյս մերոյ՝ հրով ողջակիզեալ նահատակի յամսեան սեպտեմբերի յԵրզնկայ քաղաքի, որպէս գրի յընդարձակ պատմութեան իւրում։ Թվ. Ջ=1451»։ Վերջին բառերից երևում է, որ կա այս նահատակի ընդարձակ վկայաբանությունը, բայց ինձ ծանոթ չէ։*

— 608. Գրիգոր *ոմն, որի դուստրը՝ Գոհար քարավէժ եղավ Ջռայլի բերդից (Մոկք), 1451 թ.—Նոտարք 168։*

— 609. Գրիգոր, *եղբայր Խութլուպէյի, որ Թէոդոսիայի Ս. Սարգիս եկեղեցում մի հիշատակություն է թողել 1451 թ.—* Кучук-Иоаннесов, Стар. арм. над... юго-зап. Руси 36։

— 610. Գրիգոր *քահանա, որդի Խաչիկի. գրիչ. Աղթամարում օրինակեց Ավետարանը՝ 1452 թ. Սուլթան-մելէք տիկնոջ համար, որ նվիրեց Ոստանի եկեղեցուն.—Ձեռ. Վասպ. 414, 415։*

— 611. Գրիգոր, *որդի Վարդան քահանայի, որ Վանում նորոգեց մի հին Ավետարան, 1453 թ.—Ձեռ. Վասպ. 138։*

— 612. Գրիգոր, *միաբան Վարագայ վանից, 1454 թ.—Նոտարք 176։*

— 613. Գրիգոր *քահանա, որդի Աղախանի, գրիչ. Աղթամարում գրեց մի Ավետարան՝ Առոմ քահանայի համար, 1454 թ. —Ձեռ. Բուլգ. (ՀԱ 1937, 580)։*

— 614. Գրիգոր *գրիչ. Աղթամարում օրինակել է Ավետարանը 1454 թ. (Տաշեան, Ցուց. 891)։*

— 615. Գրիգոր, *պապի հայրն է Յովհաննէս քահանայի, որ Մոկաց Փառավանք գյուղում, Իսրայէլ քահանային գրել տվեց մի Ավետարան, 1455 թ.—Ձեռ. Վասպ. 421։*

— 616. Գրիգոր, *նախորդի թոռն է, որդի Աբրահամի և*

հորեղբայր նույն Յովհաննէս քահանայի, 1455 թ.—Ջեռ. Վասպ. էջ 421։

— 617. Գրիգոր միակեաց, հիշված է 1456 թ. տեղն անհայտ.—Ջեռ. Վասպ. 425։

— 518. Գրիգոր եպիսկոպոս, ուսուցիչ Աստուածատուր սարկավագի, որ Կամախում, Ս. Լուսաւորիչ վանքում, արտագրեց Մաշտոցը՝ իր ուսուցչի օգնությամբ, 1457 թ.—Նոտարք 187։

— 619. Գրիգոր, «գրոց աշակերտ», եղավ «ձեռնտու և օգնական» Սարգիս գրչին, երբ արտագրում էր սա Գանձարանը, Երուսաղէմ 1457 թ.—Ջեռ. Հալէպի, Ա. 165 բ։

— 620. Գրիգոր, «մականուն Պալալ», թոռ Փաշամէլէքի, որ իր ամուսնու՝ Ստեփաննոսի և իր որդու՝ Յովհաննէսի հիշատակին գրել տվեց մի Աւետարան, Կեցանայ ձորի Սարավանք գյուղում, 1458 թ.—Ջեռ. Վասպ. 431։

— 621. Գրիգոր աբեղա, ուսուցիչ Թովմա վարդապետի, որ Խնդրակատար վանքում արտագրել է մի Աղօթամատոյց, 1458 թ.—Նոտարք 189։

— 622. Տէր Գրիգոր, որդի Խութլուշայի. մի Յայսմաւուրք գրել տվեց Յովհաննէս գրչին, 1458 թ.—Նոտարք 190։

– 623. Գրիգոր աբեղա, որդի Յակոբ քահանայի և եղբայր Յովհաննէս գրչի, որ Բաղէշում օրինակեց Յայսմաւուրքը 1459 թվին։ Գրիգորը կենդանի է հիշվում 1443 թ. իսկ 1459 թվին արդեն մեռած էր։—Նոտարք 132, 191։

— 624. Գրիգոր Անգեղակոյթեցի, որդի Թէոդորոսի և Սիմիկի, եղբայր Շաշիկի և Կուլիկի, գաղթեց Ջաւախէթ, ուր օրինակեց Աւետարանը՝ Կիկէթում, 1459 թ.—Սիսական 212։

— 625. Գրիգոր որդի Պաղտինի և եղբայր Լևոնի, աղնվական ոմն, նորոգեց Անցմնցուկ գետի կամուրջը 1450—1460 թվերի միջոցին։—Սիսուան 538 ա։

— 626. Գրիգոր, հայր տանուտեր Յովհաննէսի, որ գնեց մի հին Աւետարան, 1461 թ.—Ջեռ. Վասպ. 226։

— 627. Գրիգոր քահանա, որ Աղթամարում գրեց մի Ճառընտիր՝ խնդրանոք Երաշխաւոր Ս. Աստուածածին վանքի հայրապետ՝ Շահմելիքենց Աստոմ կրոնավորի, 1461 թ։—Նոտարք էջ 199։

— 628. Գրիգոր աբեղա, միաբան Բաղէշի Ամիրդոլայ վանքի? հիշված 1461 թ.—Նոտարք 199։

— 629. Գրիգոր քահանա Գորեցի, որդի Գոզալբէկի, գտավ և գնեց մի հին Աւետարան, 1462 թ.—Ձեռ. Վասպ. 172։

— 630. Գրիգոր եպիսկոպոս, վանահայր էր Կտուց անապատի, 1462 թ.—Նոտարք 207։

— 631. Գրիգոր քահանա, «արտադանկար», որդի Շնորհաւորի և եղբայր Անդրէաս երեցի, որ Նեղոկիայում գրեց մի Աւետարան, 1463 թ.—Ձեռ. Սեբ. (ՀԱ 1925, 133)։

— 632. Գրիգոր կրոնավոր, որդի Յակոբ քահանայի և եղբայր Յովհաննէս գրչի, որ Արծկէում օրինակեց Աւետարանը, 1463 թ.—Ձեռ. Վենետ. Ա. 621։

— 633. Գրիգոր, հիշված է Բաղէշի Ս. Գէորգ եկեղեցու քահանաների շարքում, 1463 թ.—Նոտարք 215։

— 634. Գրիգոր քահանա, գրիչ. Աղթամարում օրինակեց Մաշտոցը՝ 1463 թ.—Սեդրակեան, Հայ. եկեղ. պատկերյարդութիւնը, էջ 106։

— 635. Գրիգոր, գրիչ. Աստուածածնի Աւագ վանքում օրինակեց Դիոնեսիոս Արիսպագացու գործերը, 1464 թ.—Ձեռ. Կարին. 5։

— 636. Գրիգոր, որդի Վարդան երեցի, որ Վանում օրինակել է 3 Յայսմաւուրք և 3 Աւետարան։ Սրանց մեջ Գրիգորը հիշված է 1452, 1453 և 1465 թվերին։—Նոտարք 169, 171, 222։

— 637. Գրիգոր Ժ Մակուեցի, կաթողիկոս Հայոց «1443—1465 թ». որդի պարոն Ջալալբէգի, որով կոչվում է նաև Ջալալբէգեանց. հաջորդեց Կիրակոս Վիրապեցուն, իրեն աթոռակից ընտրելով Արիստակէսին, «1448 թ»։ Նույն ժամանակ Սարգիս եպիսկոպոս և Աղթամարի Զաքարիա կաթողիկոսը Ջհանշահի օգնությամբ վտարելով Գրիգորին և Արիստակէսին, իրենք սկսան վարել կաթողիկոսական իշխանութիւնը «1460 թ»։ Հաջորդ տարին Գրիգոր և Արիստակէս նորից ձեռք ձգեցին գահը՝ Ջըհանշահի որդի Հասանի պաշտպանությամբ։ ՋԺԵ=1466 թվին դեռ հիշվում է իբր ամենայն Հայոց կաթողիկոս (Նոտարք 226)։ Գնեց Սեյիդ բեգից Վաղարշապատ գյուղը՝ իբրև կալված էջմիածնի։ Իր մի կոնդակը տես Նոտարք 139—145 և մի ուրիշ կոնդակ Մաղարդայ վանքին՝ տես Շահխաթ. Բ. 289։—Սամ. անեց. շար. 175. Առաք. պատմ. 336—7, 485. Դրնդ. 315. Ջբր. սարկ. Գ. 31. Ազգապ. 2129—2172։

— 638. Գրիգոր Տիվրիկցի, նկարարար, հայր Գրիգոր կրո-

նավորի, որ նրա հիշատակին գրել տվեց մի Ավետարան՝ Կիւրղի վանքում, 1467 Թ.—Ձեռ. Վասպ. 448—9։

— 639. Գրիգոր, փակակալ նույն Կիւրղի վանուց. հիշված է 1467 Թ.—Ձեռ. Վասպ. 448։

— 640. Գրիգոր(իոս) աբեղա, որդի Տիվրիկցի ներկարար Գրիգորի. Կիւրղի վանքում, իր հիշատակի համար, Ստեփաննոս եպիսկոպոսին գրել տվեց մի Ավետարան, որ և ինքը կազմեց 1467 Թ.—Ձեռ. Վասպ. 448—9։

— 641. Գրիգոր քահանա, ծաղկեց և կազմեց մի Ավետարան, որ Ոստանում օրինակեց Կարապետ քահանան, 1467 Թ.—Ձեռ. Սեբ.=ՀԱ 1925, 259։

— 642. Գրիգոր, եղբորորդի Մկրտիչ քահանայի, որ Բիւրականում օրինակեց Ժողովածու քերթուածոց, 1469 Թ.—Ձեռ. Վենետ. Բ. 1113։

— 643. Գրիգոր, հորեղբորորդի Նորմանուկի, որ գրել տվեց մի Ավետարան 1469 Թ. Լերդկայ երկրեց էր այս Գրիգորը և Աւագ վանքին նվիրեց Թաւշյա մի շուրջառ.—Ձեռ. Վենետ. Ա. 752=Թորոս աղբ. Բ. 364։

— 644. Գրիգոր վարդապետ, միաբան և քարոզիչ Տեղերի վանքում, 1469 Թ.—Ձեռ. Վենետ. Բ. 1113։

— 645. Գրիգոր, միաբան Տեղերի վանուց, արդեն մեռած էր 1469 Թ.—Ձեռ. Վենետ. Բ. 1113։

— 646. Գրիգոր, աբեղայ Բիւրականում, 1469 Թ.—Ձեռ. Վենետ. Բ. 1114։

— 647. Գրիգոր, միաբան Գամաղիէլի վանքի, հիշված է 1468 Թվին, նույն վանքի այլ միաբանների շարքում, առաջնորդ Յովհաննէս վարդապետի և Դաւիթ եպիսկոպոսի հետ (Ձեռ. Վասպ. 452)։ Հաջորդ տարին, 1469 Թվին, կրկնվում է նույն վանքի միաբանների անունների շարքը, բայց պակասում է Դաւիթ եպիսկոպոսը և հասարակ միաբան Գրիգորի տեղ կա Գրիգոր եպիսկոպոս։ Սրանից ենթադրում եմ որ Դաւիթ եպիսկոպոսը մեռել է և նրան է հաջորդել Գրիգորը՝ ձեռնադրվելով եպիսկոպոս՝ 1469 Թվին (Ձեռ. Վասպ. 454)։

— 648. Գրիգոր, հայր Յակոբ քահանայի, որ Խարբերդում օրինակեց Ավետարանը, 1469 Թ.—Bodleian 8։

— 649. Գրիգոր աբեղա, գրիչ. օրինակել է Ավետարանը Գորիում, 1469 Թվին.—Ձեռ. Կարին. 18։

— 650. Գրիգոր, որդի Ստեփաննոս քահանայի, որ Հերմոնի

վանքում մի Աւետարան գրել տվեց Անանիա աբեղային, 1469 թ.—Ձեռ. Թաւր. 132 բ։

— 651. Գրիգոր, հայր կոչկակար Մարտիրոսի, որ Անկիւնաց վանքում, Զաքարէ աբեղային գրել տվեց մի Աւետարան, 1470 թ.—Ձեռ. Վենետ. Ա. 588։

— 652. Գրիգոր, եպիսկոպոս Աշոտոց երկրի. Անկիւնաց վանքի միաբան Զաքարէ աբեղային հորդորեց գրել Աւետարանը, 1470 թ.—Ձեռ. Վենետ. Ա. 588։

— 653. Գրիգոր վարդապետ, վանահայր Խարբերդի Սափ... վանքի, 1470 թ.—Bodleian 9։

— 654. Գրիգոր աբեղա, որդի Սէթի, գրիչ. Աղթամարում, Զուլալ տիկնոջ համար օրինակեց Աւետարանը, 1470 թ.—Ձեռ. Վասպ. 459, 460։

— 655. Գրիգոր, կրոնավոր, միջնորդ եղավ սույն Զուլալ տիկնոջ և Գրիգոր գրչի միջև նույն Աւետարանի գրության համար.—Ձեռ. Վասպ. 460։

— 656. Գրիգոր, եպիսկոպոս Գաբեղենից. նստում էր Վարդինհէր ավանում, 1470 թ.—Այրարատ 46։

—657. Գրիգոր քահանա Խարբերդցի, հայր Դաւիթ Խարբերդցու, որ նահատակվեց «1474 թ».—Նոր վկ. 306. Ջամչ. Գ. 515, Սամ. անեց. շար. 175. Առաք. պատ. 486. Տաշեան, Ցուց. 871։

— 658. Գրիգոր, որդի Սահակի կամ նրա եղբոր Առոմի, որոնք Խիզանում, Յովհաննէս քահանային գրել տվին մի Աւետարան, 1474 թ.—Ձեռ. Վասպ. 470։

— 659. Գրիգոր աբեղա, ուսուցիչ Գրիգոր կրոնավորի, որ Արծկէում, Ղազար քահանային գրել տվեց մի Ցայսմաւուրք, 1475 թ.—Ձեռ. Մաղն. 36։

— 660. Գրիգոր քահանա, հայր Մարգարէ քահանայի, որ Բալուի Ներքի գյուղում օրինակեց Աւետարանը 1475 թ.—Ձեռ. Վենետ. Ա. 624։

— 661. Գրիգոր կրոնավոր, որդի Նզիազարի, Արծկէում Ղազար քահանային գրել տվեց մի Ցայսմաւուրք, 1475 թ.—Ձեռ. Մաղն. 35։

— 662. Գրիգոր քահանա, հայր Թումայ քահանայի, որին սովորեցրեց գրչության արվեստը. Թուման Աղթամարում արտագրեց Աւետարանը տանուտէր Սատաղայի համար, 1476 թ.—Ձեռ. Վասպ. 482։

— 663. Գրիգոր եպիսկոպոս, առաջնորդ Աշտաձորի Ան-

կունեաց վանքի,հիշված է 1471 թ. (Այրարատ 52) և 1477 թ. —Ձեռ. Ագուլ.=Արրտ. 1911, 220։

— 664. Գրիգոր եպիսկոպոս, գրիչ. օրինակեց Մաշտոցը Յովհաննավանքում, 1477 թ.—Ձեռ. Կարին. 139։ Թերևս նույն է հաջորդ № 668-ի հետ։

— 665. Գրիգոր րաբունապետ, առաջնորդ Իչմայի վանքի, 1478 թ.—Ձեռ. Բեռլինի, 30 բ։

— 666. Գրիգոր աբեղա, գրիչ. Իչմայի վանքում օրինակեց Շարականը՝ 1478 թ.—Ձեռ. Բեռլինի, 30 բ։

— 667. Գրիգոր եպիսկոպոս Աշտարակցի, առաջնորդ Բջնոյ՝ սկսած 1461 թվից. օրինակեց Աւետարանը 1478 թ.—Այրարատ 274։

— 668. Գրիգոր եպիսկոպոս Բջնեցի, առաջնորդ Յովհաննավանից՝ 1477 թ.—Բջնիի դղյակում գրել է մի Աւետարան և նվիրել Աշտարակի Ամենափրկիչ եկեղեցուն՝ 1479 թվին.—Զքր. սարկ. Գ. 31, Այրարատ 172, 174, Սմբատեանց, Գեղարքունի, էջ գ։

— 669. Գրիգոր ավագ սարկավագ, որի հիշատակին Ստեփաննոս եպիսկոպոսը գրեց մի Աւետարան և նվիրեց Երից մանկանց եկեղեցուն, 1480 թվին.—Ձեռ. Կես. սարգ. 11 ա։

— 670. Գրիգոր Ձաղրոց, քահանա, վարպետ Ձօր գրչի, որ օրինակեց Աւետարանը Տիւրիկում, 1480 թ.—Թորոս աղբ. Ա. 231։

— 671. Գրիգոր րաբունապետ, առաջնորդ Խոյալու վանքի, 1481 թ.—Թորոս աղբ. Բ. 444։

— 672. Գրիգոր վարդապետ, վանահայր Խարբերդի Խուլաու վանից, 1482 թ.—Bodleian 33։

— 673. Գրիգորիս, որդի Արղուշայի և Թոռ Արղուան Արծկեցու, որ Յովհաննէս գրչին գրել տվեց մի Աւետարան, 1482 թ.—Ձեռ. Պետերբ. (ՀԱ 1892, 85 ա)։

— 674. Գրիգոր, գրիչ. Քաջբերունեաց Ականց գյուղում օրինակեց Նարեկը՝ 1482 թ.—Ձեռ. Կարին. 176։

— 675. Գրիգոր վարդապետ, միաբան Երուսաղէմի, 1484 թ.—Manus. brit. mus. 25 բ։

— 676. Գրիգոր աբեղա, Յովհաննէս քահանայի առաջարկությամբ օրինակել է Աւետարանը 1484 թ.—Ձեռ. Թաւր. 15—16։

— 677. Գրիգոր քահանա, որդի Շնոֆոր պարոնի, նկարող. Սեբաստիայում, Փիլիպպոս եպիսկոպոսին գրել տվեց մի Աւե-

տարան և նվիրեց Ս. Մինաս եկեղեցուն, 1485 թ.—Ձեռ. Վենետ. Ա. 598։

— 678. Գրիգորիս, որդի Կարապետ քահանայի, բարունապետ Սեանի, 1486 թ.—Արձ. Սմբատեանց, Գեղարքունի 120։

— 679. Գրիգոր քահանա Ոստանի, հիշված 1486 թ.—Ձեռ. Վասպ. 502։

—680. Տէր Գրիգոր, «փոքր հայրապետ», շնորհեց իր Յայսմաւուրքը Մխիթար գրչին՝ արտագրելու համար, Սեբաստիա 1487 թ.—Ձեռ. Սեբ.=ՀԱ 1927, 434։

— 681. Գրիգոր, հորեղբայր Մխիթար քահանայի, որին Յովհան միայնակյացը շնորհեց մի Աւետարան՝ գրված 1487 թ. և Մխիթարն էլ նույնը նվիրեց Տիրուհի Աստուածածնի վանքին։ —Ձեռ. Վասպ. 506։

— 682. Գրիգոր վարդապետ Կաֆացի, գրել է Աստուածատուր Կաֆացու նահատակության վրա (1488) մի տաղ, որ սկսում է

Լոյսն անճառական, Բանն անեղական,
Կենդանի փառաց Թագաւոր անմահ 'ւ անվախճան.

տպված է Նոր վկ. 329—331։

— 683. Գրիգոր եպիսկոպոս, առաջնորդ Բաբերդի? 1488 թ.—Bodleian 16։

— 684. Գրիգոր, հայր խոջա Ջալալի, որ Յովհաննէս աբեղային գրել տվեց մի Աւետարան, 1490 թ.—Ձեռ. Վասպ. 513—6։

— 685. Գրիգոր, քահանա Վենետիկի հայոց. վերադարձավ իր հայրենիքը՝ 1490 թ.—Հայ-Վենետ. 197։

— 686. Գրիգոր, որդի Աստուածատուրի և հորեղբորորդի Դովլաթխաթունի, որ Աղթամարում օրինակել տվեց մի Աւետարան՝ Հայրապետ աբեղային, 1490 թ.—Ձեռ. Նոր-Բայազ. 12։

— 687. Գրիգոր, հայր Վարդանի, որ Շատախում, Իսրայէլ քահանային գրել տվեց մի Աւետարան, 1491 թ.—Ձեռ. Վասպ. էջ 517։

— 688. Գրիգոր աբեղա, գրիչ. Աւագ վանքում օրինակեց Աւետարանը՝ Մովսէս երեցի համար, 1494 թ.—Ձեռ. Բուլգ. (ՀԱ 1937, 576)։

— 689. Գրիգոր կրոնավոր, միաբան Կապոսի անապատի (Երզնկա). Խաչատուր աբեղային գրել տվեց մի Ոսկեփորիկ, 1495 թ.—Ձեռ. Վենետ. Բ. 622։

— 690. Գրիգոր աբեղա, գրիչ. Վայոց ձորի Եղեգիս գավա-

ռում, Վերի Նորավանս ուխտում արտագրեց Աւետարանը Աբրահամ վարդապետի համար, 1495 թ.—Ձեռ. Վասպ. 522։

— 691. Գրիգոր, որդի Մատթէոս քահանայի, որ Եղեգեաց անապատում գրել տվեց մի Աւետարան, 1496 թ.—Ձեռ. Նոր-Բայազ. 7 բ։

— 692. Գրիգոր Աղթամարցի, գրիչ. Ս. Խաչ եկեղեցում օրինակեց Աւետարանը, ստացող Ստեփաննոսի համար, 1497 թ. —Bodleian 11։

— 693. Գրիգոր, հայր Ստեփանոսի, որ Աղթամարում Գրիգոր գրչին գրել տվեց մի Աւետարան, 1497 թ.—Bodleian 11։

— 694. Գրիգոր, որդի Աւագ կամ Տիրաւագ քահանայի, որ Վրթանէս կրոնավորին գրել տվեց մի Գանձարան, Երուսաղէմ 1497 թ.—Ձեռ. Հալէպի, Ա. 150 բ։

— 695. Գրիգոր, որդի Մարտիրոսի և եղբայր Կիրակոս քահանայի, որ Ամ գյուղում գրել տվեց Աւետարանը, 1497 թ.—Ձեռ. Նոր-Բայազ. 16 բ։

— 696. Գրիգոր, որդի Ղազարի, որի կինը՝ Բուզ, Խիզանում գրել տվեց մի Աւետարան՝ 1499 թ.—Ձեռ. Վենետ. Ա. 577։

— 697. Գրիգոր Ե կաթողիկոս Աղթամարի. հաջորդ Ներսէս Բ-ի և նախորդ Սահակ Բ-ի (ԺԵ դար).—Հաւաք. 61 (կեղծիք)։

— 698. Գրիգոր Զ կաթողիկոս Աղթամարի. հաջորդ Դաւիթ Զ-ի և նախորդ Մովսէս Բ Արտօնեցու (ԺԵ դար).—Հաւաք. 61 (կեղծիք)։

— 699. Գրիգոր Է կաթողիկոս Աղթամարի, հաջորդ Սիմոնի և նախորդ Դաւիթ Է-ի (ԺԵ դար).—Հաւաք. 62 (կեղծիք)։

— 700. Գրիգոր, որդի Մելիքի, եղբօրորդւոյ Մանուէլ քահանայի, որ Գեղարքունեաց Կած գյուղում, Յովհաննէս Արծկեցուն գրել տվեց մի Ճաշոց (ԺԵ դար).—Ձեռ. Սեւանի 18։

— 701. Գրիգոր վարդապետ Արճիշեցի, մականվանյալ Զորթան. աշակերտել է Յովհաննէս Համշէնցուն (շուրջ 1500 թ)։ Սրա եղբայրն է Մկրտիչ, որ Աղթամարի Աթոռ կաթողիկոսի ժամանակ եղավ վանահայր Տէր Յուսկան որդի վանուց (Նօտարք 101).—Առաք. պատմ. 301, 340, Տաշեան, Ցուց. 431. Թորոս աղբ. Բ. 483։

— 702. Գրիգոր բարունապետ, ուսուցիչ Գրիգորիս Աղթամարցու, նախ քան 1519 թ.—Աղթամ. 91։

— 703. Գրիգոր Աթաբէգեանց, աստվածաբան և հռետոր. ծաղկել է Աղթամարում, ԺԶ դարի սկիզբը.—Ազգապ. 2212։

— 704. Գրիգոր Ա. Աղթամարցի. կաթողիկոս Աղթամարի 1512—1544 թ. (այսպես ըստ Ակինեան, Գաւազանագիրք, էջ 125. իսկ ըստ Ազգաւ. 2249 նստել է մինչև «1542 թ»)։ Որդին էր Խսկենդերի և թոռ Սմբատ թագավորի։ Մայրը կոչվում է Շահում։ Աշակերտել է Գրիգոր բարունապետին (տես № 702) և Զաքարիա կաթողիկոս Աղթամարցուն։ Նախ միաբան էր Վարագայ վանքի։ Ընտրվելով կաթողիկոս՝ հաջորդեց Յովհաննէս կաթողիկոսին և նախորդն է Գրիգորիս Բ-ի։ Նշանավոր տաղասաց ԺԶ դարու. Նրա կյանքն ու նրա տաղերի հավաքածոն հրատարակեց Կոստանեան, Թիֆլիս 1898։ Այստեղ կան 1515, 1519, 1523 և 1569! թվերից տաղեր։ Մնացյալը տես Տաշեանի Ցուցակը։ Մի տաղ էլ ավելացնում է այժմ Գիտական նյութերի ժողովածու, № 1, էջ 174բ։ (Աղթամարցու տաղերից է Աստուածատուր Խթայեցին, երեք լեզվով՝ հայերեն, պարսկերեն և թուրքերեն, որ արտատպել եմ ես էլ Նոր վկ. էջ 353—358, օտարալեզու տողերի թարգմանությամբ։ Այստեղ, էջ 353, մշդեհ բառը անծանոթ էր մնացել և տեղից դատելով՝ մեկնել էի «թուլ դէնք խնչ» (տես 789 էջի բառացանկը).

Անդ է նահատակեալ առաքեալն Թումայ,
Հարեալ ի մըշդեհէ. այսպես գրեալ կայ։

Այժմ գտնում եմ, որ այս Մշդեհը Հնդկաց թագավորի անունն է. հմմտ. Ձեռ. Վեննա. Բ. 344. «Պատմութիւն սրբոյ առաքելոյն Թովմայի և վկայութիւն նորին... իսկ մարդասէր տէրն եւ Մժդեհի դյոյս իւր...)։ Աղթամարցուն են պատկանում նաև Աղեքսանդրի վարուց կաֆաները (Տաշեան, Ուս. ստ. Կալիսթ. էջ 133—137)։ Այս առթիվ շատ կարևոր է հետևյալ հիշատակարանը, որ գրել է Մարգարայ Արճիշեցին, Խառաբաստ 1526 թ. արտագրած Ալեքսանդրի պատմության վերջում. «Յիշեցէք ի Քրիստոս զԳրիգորիս կաթողիկոսն Աղթամարցի, որ զօրինակն շնորհեաց. զոր ստուգեալ և սրբագրեալ էր ինքն՝ բազում աշխատութեամբ՝ ի սխալ յօրինակէ, և ասացեալ ի յառատ մտացն։ Բէբ։[NB. չիմացանք այս բառի իմաստը]։ Թող զայն որ վանգով և երկու վանգով պակասէր, զթերին ելից. վասն որոյ յիշման արժանի արասջիք զինքն՝ իւր ծնօղօքն, ամէն։ Եւ զծաղկագիրն անձանձիր ուսոյց ծառայիս և զգիրքս նկարեց» (Ձեռ. Վեննա. Բ. 1098)։ Ըստ Bodleian 211 և Տաճար 1912, էջ 595 Գրիգորիս Աղթամարցին է դարձյալ Պղնձէ քաղաքի թարգմանիչը, որ ըստ Տաշեան, Ցուց. 354 և 1144 Առաքել Սիւնեցին է. իսկ ըստ Գի-

*տական նյութերի ժող. № 1, էջ 175, Աղթամարցին ավելացրել է 43 տող և « երկու վանքն և զմէկն ինքն է արարեր»: Նրանք չէ սակայն, այլ Գրիգոր Գ կաթուղիկոսին է պատկանում «Ո՛վ զարմանալի խորհուրդ» ջրօրհնեաց երգը:—Ըստ Հաւաքարանի՝ Գրիգոր կԹ. Աղթամարցին նստել է 1509—1534 թ. հաջորդելով Ատոմ կաթուղիկոսին (Ազգապ. 2212):—*Գրիգոր՝ *Աղթամ. 53, 78. —*Գրիգորիս՝ *անդ 46, 54, 74, 77, 85, 91.—ըց.* ի Գրիգորէ՝ *անդ 59. Ճշ. 19.—*Աղթամարցի՝ *Աղթամ. 43, 53, 59, 64, 69:*

*— 705.* Գրիգոր *Վաղարշապատցի, պատրիարք Պոլսի «1526 —1536 թ». հաջորդեց Մարտիրոս պատրիարքին. ինքը Զաքարիա Բ կաթուղիկոսի եղբօրորդին էր. 1536 թվին ընտրվեց կաթուղիկոս Էջմիածնի՝ Գրիգոր ԺԱ անունով. Օրմանեանը կոչում է նրան Գրիգոր ԺԱ Բիւզանդացի և իբր կաթուղիկոս դնում է նրան « 1536—1545 թ», իբրև հաջորդ Սարգիս Դ-ի, աթոռակից ունենալով Ստեփաննոսին, որին ընտրեց «1541 թ»:—Առաք. պատմ. 337. Ազգապ. 2225, 2231:—Նկատելի է սակայն, որ Ձեռ. Վասպ. 647 Էջմիածնի կաթուղիկոս է դնում Գրիգորիսը՝ 1534 թ. (արդյոք շփոթելով Աղթամարի հե՞տ):*

*— 706.* Գրիգոր *Կաֆայեցի. «մեծ բաբունապետ». համարվում է հեղինակ Գանձարանի՝ 1561 թվին գրված մի Գանձարանի հիշատակարանում.—Թորոս աղբ. Ա. 227:*

*— 707.* Գրիգոր *կաթուղիկոս Աղուանից. Խաչէնի տէր Մէհրաբ բէգի որդին էր. հաջորդեց Սարգիս Ղշլաղեցուն՝ որ մեռել էր 1554 թ. գահակալել է 1556 թվին և հավատքը ուրանալով՝ մահմեդական է դարձել: Նրան հաջորդեց Դաւիթ՝ 1573 թ. —Ձեռ. Դաղեան, Ա. 89 բ: 1560, 1562, 1563—4 և 1571 թ.թ. դեռ հիշվում է իբր կաթուղիկոս (անդ՝ էջ 49 բ և 44 բ). Բարխուտարեան, Աղվանից երկ. 177, 208, Ձեռ. Թաւր. 68 բ:*

*— 708.* Գրիգոր *տաղասաց. ունի 60 տողանի պատմական տաղ Շահ Իսմայիլի և Շահ Թահմազի վրա (1500—1575 թ).— Խլաթ. յիշ. էջ 30:*

*— 709.* Գրիգոր *սարկավագ, անշուշտ Կաֆայեցի, որի խընդրանոք Աբրահամ Անկիւրացին գրեց իր ողբը Կաֆայի առման վրա ՌԼԲ=1583 թվին.—Նշխ. մատ. 66:*

*— 710.* Գրիգոր *Բ Սէֆէտինեան, Աղթամարցի (փոքր), կաթուղիկոս Աղթամարի, 1544—1586 թ. (ըստ Ակինեան, Գաւազանագիրք 125. մինչ Ազգապ. դնում էր «1542—1610 թ»). հաջորդել է Գրիգորիս Ա. Աղթամարցի տաղասաց կաթուղիկոսին,*

որ ըստ այժմ կոչվում է «մեծ», զանազանելու համար Բ-ից։ Տէվ-կանց, Հայերդ և Սրուանձտեանց, Թորոս աղբարի մեջ շփոթում են մեծի հետ (ըստ Կոստանեանց, Աղթամ. էջ 8)։ Ուսումնասեր էր և ուսումնական անձանց պաշտպան. ուստի և կոչվել է «իմաս-տասէր» և «ջատագով իմաստութեան»։—Ազգապ. 2259։

— 711. Գրիգոր ԺԲ Վաղարշապատցի, կաթուղիկոս Հայոց «1576—1590 թ»։ Սկսած «1557 թվից» աթոռակից էր Ստեփան-նոս Սալմաստեցուն և Միքայէլ Սեբաստացուն, որի մահից հետո ընտրվեց կաթուղիկոս, աթոռակից ունենալով Թադէոս Բ եպիս-կոպոսին և Առաքել Ա Վաղարշապատցուն «1576 թ». (բայց իբր կաթուղիկոս հիշված է ՌԻԴ=1575 թ. Rapport Belgique 24)։—Առաք. պատմ. 338. Ազգապ. 2246, 2264, 2267—88։

— 712. Գրիգոր Ը կաթուղիկոս Աղթամարի. հաջորդ Ներ-սէս Ե-ի և նախորդ Եղիազարի (ԺԶ դար).—Հաւաք. 62 (կեղ-ծիք)։

— 713. Գրիգոր Թ, կաթուղիկոս Աղթամարի. հաջորդ Աւե-տիս Կարմիրի և նախորդ Աբրահամ Գ-ի (ԺԶ դար).—Հաւաք. 63 (կեղծիք)։

— 714. Գրիգոր վարդապետ, հեղինակ զանազան հանելուկ-ների (ԺԶ դար).—Տաշեան, Ցուց. 480։

— 715. Գրիգոր Տարօնացի, աշակերտ Թորոս վարդապետի և ուսուցիչ Յովհաննէս Տիրակ վարդապետի. նշանավոր վարդա-պետ ԺԶ դարու.—Մ. Մաշտ. 336 բ. Առաք. պատմ. 340։

— 716. Գրիգոր ԺԳ, կաթուղիկոս Հայոց «1603—1606 թ». տես Սրապիոն անվան տակ.—Առաք. պատմ. 7։

— 717. Գրիգորիս Գ կթղ. Աղթամարի 1586?—1612?. կոչ-վել է փոքր Գրիգորիս. հաջորդել է Գրիգորիս Բ-ին. հայրը կոչ-վում է Սեդեն (=Սեֆեդդին), մայրը Ղրիմխաթուն. նորոգել ու զարդարել է Աղթամարի վանքը. հիշված է արդեն 1587 թ. (Ձեռ. Սեբ.=ՀԱ 1925, 260). 1602-ին գնացել է Երուսաղէմ ուխ-տի. իրեն աթոռակից են հիշվում Ստեփաննոս 1600 թ. և Մար-տիրոս 1609 թ. որոնք չի ընդունում՝—Ակինեան, Գաւազանա-գիրք 126—131։ (Ակինեան թեև Գրիգորիսի թվականը դնում է 1586°—1612°, բայց Վանում գրված մի ձեռագիր Գրիգորիսին 1573 թվին կոչում է «նորընծայ կաթուղիկոս» (Ձեռ. Վասպ. 679). իսկ Ձեռ. Վասպ. 850 էլ Գրիգորին դեռ կենդանի է հիշում 1615 թ։

— 718. Գրիգոր Արփայեցի. Վայոց ձորի Արփա գյուղից էր և վերաբնակվում էր Փերիայի Խոյեկան գյուղը. բազմաթիվ

անգամներ դիմելով Պարսից շահին՝ կարողացավ վերջապես քրիստոնեից կրոնական ազատության հրովարտակ հանել և Պարսից կողոպտած եկեղեցական գրքերը ետ ստանալ։ Պարսիկները չարացան։ Մի Թուրքի դիակ գցեցին նրա այգին, գրպարտեցին իբր մարդասպան և հավատքը չուրանալու պատճառով նահատակեցին նրան «1622 Թ»։—Առաք. պատմ. 127—8, Չամչ. Գ. 586—7, Պատմ. Նոր-Ջուղ. Ա. 71—72, Նոր վկ. 434—6, Սիսական 184 ա։

— 719. Տէր Գրիգոր նահատակ, «որ հրով այրեցին յԱմիթ քաղաքի վասն անուանն Քրիստոսի», 1630 Թ.—Թորոս աղբ. Բ. 451։

— 720. Գրիգոր վարդապետ Կեսարացի. ավագ աշակերտ Սրապիոն Ուռհայեցու և ուսուցիչ Մովսես կաթուղիկոսի. այր գիտուն և բանիբուն։ Կեսարիայի առաջնորդ էր. վճարեց Երուսաղեմի պարտքը և վանքը ազատեց։ Գահազուրկ արեց Յովհաննես Խուլին և խլեց Պոլսի պատրիարքական աթոռը «1601 Թ»։ Այնուհետև Խուլը և Կեսարացին իրարից խլխլեցին աթոռը։ Եղել է Լեհաստանում, ուր ընդհարվեց Նիկոլ Թորոսովիչի հետ։ Վերջին անգամ եղավ պատրիարք Պոլսի «1632 Թ» և մեռավ գահի վրա «1636 Թ»։ Հմուտ էր մաթեմատիկական գիտության. գրել է Թուականք և պատմութիւնք (սկսած Ադամից մինչև իր օրերը). շինել է հայ լեզվով մի երկրագունդ։ Հորինել է նաև տաղեր ու գանձեր։ Ազգային շահերի աննկուն պաշտպանն էր կաթոլիկական ոտնձգության դեմ։—Առաք. պատմ. 5, 217—9, 282—6, 340—341. Ազգապ. 2308—2432, Հայապ. 133, Ազգ. մատ. ՀԸ, էջ 4։ Չամչ. Գ. 535—7, 611, 631—3։ Նրա կենսագրությունը առանձին գրքով հրատարակեց Ա. Ալպոյաճեան, Երուսաղեմ 1936 (չեմ տեսած)։

— 721. Գրիգոր վրդ. Դարանաղցի (կամ Կամախեցի), մականուն Բուք. ծնվեց Կամախ «1576 Թ». փոքր էր դեռ, երբ ծնողները մեռան և նա Սեպուհ լեռան մի վանքում տավարած դարձավ։ Թշվառ ապրեց։ Այդ միջոցին նա հանդիպեց Պարոն անուն ճգնավորին, մի դժբախտ մարդ, որ 5 ամսվա մեջ երկու անգամ ամուսնացել և իր երկու կանանց էլ կորցնելուց հետո, աշխարհից հուսահատ, վանք էր քաշվել և ճգնական կյանք էր վարում։ Արդեն 20 տարի էր, որ նա ճգնում էր և աշակերտներ հավաքելով, դաս էր տալիս նրանց։ Բարի ճգնավորը խղճաց Գրիգորին, որդեգրեց նրան և ոչ միայն խնամեց իբրև հայր, այլ և եղավ նրա առաջին ուսուցիչը։ Գրիգորը շուտ սովորեց, այնպես որ ուսուցիչը

արեղա ձեռնադրել տվեց նրան, դեռ 14 տարեկան պատանի հասակում։ Գրիգորը Պարոնի մոտ մնաց մինչև 1597 թիվը, երբ հրաժարվելով վանքից, գնաց Բաբերդ, աշակերտելու նշանավոր Սրապիոն վրդ. Ուռհայեցուն, որ սովորեցնում էր Վահանաշենի վանքում։ 1598 թվին պայթեց Ջալալիների ապստամբությունը։ Սրանք Տաճկաստանի ասիական գավառների ցեղապետներն էին, որոնք իրենց հեծելազորային խմբերի գլուխն անցած, ասպատակում էին ամբողջ Փոքր-Ասիան ու Հայաստանը, կողոպտում, գերում ու հարստահարում։ Կարնոյ նահանգը ամենից ավելի ենթակա եղավ այս հարստահարության. և ժողովուրդը գունդագունդ սկսեց գաղթել Երզնկայից, Կամախից, Ակնից ու Տիվրիկից՝ Պոլիս, Ղրիմ, Եվրոպական Թուրքիա, Ռումինիա և Լեհաստան։ Հաջորդ տարին (1599) տեղի ունեցավ սոսկալի մի երաշտ, որին հետևեց 1600 թվականի սովը՝ ամբողջ Տաճկաստանի Ասիական գավառներում։ Սովի երեսից, մնացյալ ժողովուրդն էլ սկըսեց ցրվել ու գաղթել ամեն կողմ։ Գրիգորն էլ Բաբերդից անցավ Կովկաս և մտավ Սաղմոսավանք, ուր մնաց 3 տարի։ Այդ միջոցին է պատահում Էջմիածնի երկու կաթողիկոսների (Դավիթ և Մելքիսեդեկ) վեճը և Պարսիկների հարկապահանջությունը։ Գրիգորը որքան կարող էր, աշխատում և նպաստում է ազգային շահերի պաշտպանության։ Հրաժարվելով Էջմիածնից, Գրիգորը նորից գնում է Բաբերդ, ուր իր ուսուցիչ Սրապիոն վարդապետը դեռ շարունակում էր իր ուսուցումը։ Նա տալիս է Գրիգորին վարդապետական աստիճան։ Վրա են հասնում քաղաքական ավելի ծանր օրեր։ Ջալալիները սաստկացնում են իրենց արշավանքը. նրանք Բաբերդն էլ են գրավում և շատերի հետ Վահանաշենի միաբաններն էլ փախչում են այս ու այն կողմ։ Գրիգորը ուզում է դարձյալ անցնել Սաղմոսավանք, բայց Շահաբասի արշավանքը, հետո էլ ամբողջ ժողովուրդի գերեվարությունը անհնարին են դարձնում այդ ծրագիրը։ Գրիգորը փախչում է Տրապիզոն, այդտեղից էլ Ղրիմ և այնուհետև թափառում է անվերջ երկրից երկիր և քաղաքից քաղաք՝ Պոլիս, Կիպրոս, Երուսաղեմ, Եգիպտոս ևն։ Շինել է եկեղեցիներ, նորոգել է վանքեր, հասցրել աշակերտներ, արտագրել ձեռագրեր, որոնցից մի քանիսը մնում են դեռ Երուսաղեմում, իսկ մեկը՝ Կիրակոս Գանձակեցու Պատմությունը գտնվում է Պարիզի Bibl. nationale-ում (տես Manus. bibl. nat. էջ 122)։ Նա եղավ ԺԷ դարի առաջին կեսի ազգային եռանդուն գործիչներից մեկը։ Պոլսում մաս-

նակցեց պատրիարքական հաջորդության կռիվներին, իր վրա վերցնելով միշտ ժողովրդի շահերի պաշտպանության դժվարին գործը։ Առաջնորդեց իր Կամախի հայրենակիցների գաղթականությունը դեպի Ռոտոսթօ (Թէքիրտաղ). եղավ առաջնորդ Ռոտոսթոյի, ուր և մեռավ «1643 թ»։ Իր գրական գործերն են՝ 1) Թարիխ տաճկաց, որ հրատարակված է Սամ. անեց. էջ 200—203. սա պատմական մի փոքր գրվածք է, որ պարունակում է 1252—1603 թվերի դեպքերը։ 2) Հարանց վարք, որ է Սեպուհ լեռան, Մաքեննաց և Թեղենեաց վանքերի հայ ճգնավորների կյանքը։ Այս աշխատությունը, նույն իսկ հեղինակի կենդանության ժամանակ, նախանձորդները գողացել և անհետացրել են։ 3) Ժամանակագրութիւն, որ Գրիգոր Դարանաղցու ամենից ընդարձակ գործն է և հրատարակված է Երուսաղեմում, 1915 թ. Մեսրոպ վրդ. Նշանեանի աշխատությամբ։ Երկու մասից է բաղկացած գիրքը։ Առաջին մասում հեղինակը շատ համառոտ կերպով տալիս է 1018—1592 թվերի թուրք-թաթարական արշավանքների ժամանակագրությունը։ Այս թվից սկսած հետզհետե մանրամասնում է իր պատմությունը և տալիս է Օսմանցոց Մեհեմմեդ Գ. (1595—1603), Ահմեդ Ա. (1603—1617), Մուսթաֆա Ա. (1617), Օսման Բ (1618—1622) և Մուրադ Դ (1622—1640) սուլթանների, Ջալալիների, Եաղիճիների, Կարնոյ Ապազա փաշայի և այլ Թուրք և քուրդ մեծ ու փոքր ապստամբների ապստամբության, Շահաբասի արշավանքի, Պոլսի «սուրկունի» (գաղթականներին ետ քշելու), 1622 թվի մանկաժողովի և Երուսաղեմի հայ-հունական կրոնական վեճերի պատմությունը՝ միացած մեծ մասամբ իր անհատական կյանքի դեպքերի և իր կենսագրության հետ։ Երկրորդ մասում տալիս է Էջմիածնի Դավիթ, Մելքիսեթ և Մովսես կաթողիկոսների, ինչպես նաև Սսի կաթողիկոսների և Երուսաղեմի պատրիարքների պատմությունը։ Բուզանդ Փավստոսի նման տալիս է այնուհետև ժամանակակից բոլոր նշանավոր վարդապետների, ինչպես նաև խաբեբա կրոնավորների խարդախության, չարաշահության և անառակության գործերը։ Վերջանում է գիրքը երկրորդ «սուրկունի», մի քանի նահատակների, Սուլթան Մուրադ Դ-ի և պալատական եղեռնագործության, Բաղդադի գրավման և Ճիզվիթ Փիրոմալլիի պատմությամբ։ Այս բոլորի մեջ մեծ տեղ են բռնում Հայոց ազգային-եկեղեցական ժամանակակից պատմությունը, ժողովուրդի նիստուկացը, (տես հատկապես Ջուղայեցի վաճառականների անկարգ, զեխ ու անառակ կյանքի պատմությու-

նը, էջ 457 և շար.) և այլն։ Լեզուն ստորին գրաբար, հաճախ ռամիկ բառերով, ոճը միամիտ, բայց միշտ աշխուժ, կենդանի և հետաքրքիր է։—Գրիգ. ժմ. 203, Մ. մաշտ. 336 բ, Նշխ. մատ. 72, Տաշեան, Ցուց. 409—410, Այրարատ 164, Ազգապ. 2309, 2494, Ազգ. մատ. ՀԸ, 6, Ջեռ. Վիեն. 15 բ, Գիտ. նյութերի ժող. № 1, էջ 214. իսկ ընդարձակ կենսագրությունը տես Նշանեանի առաջաբանը, Ժամանակագրութ. էջ Թ—ՀԳ։

— 722. **Գրիգոր** կաթուղիկոս Աղուանից. հաջորդեց Յովհաննէսին՝ 1634 թ. (Ջեռ. Դադեան, Ա. 89 բ)։ Հիշվում է դեռ կենդանի՝ 1645 թ. (անդ՝ Բ. 46 բ)։

— 723. **Գրիգոր Ե** Պարոնտէր, Գանձակեցի. պատրիարք Երուսաղէմի «1613—1645 թ». Գանձակի Սպիտակաշէն գյուղից էր, Վարդանեան ազգատոհմից։ Ծնողների ուխտական զավակ՝ «1581 թ» գնաց Երուսաղէմ և Դաւիթ Բ Մէրդինցի պատրիարքին օգնական նշանակվեց։ Նրա հրաժարումից հետո ինքը հաջորդեց նրան։ Վանականները տեսնելով նրա գնահատելի ծառայությունները, էջմիածնից հրավիրեցին Աւետիս կաթուղիկոսին, որ բազմաթիվ վարդապետներով գնաց Երուսաղէմ և Գրիգորին մեծ հանդեսով եպիսկոպոս ձեռնադրեց։—Առաք. պատմ. 218. Ազգապ. 2319, 2394—5։ Կենսագրությունը ընդարձակ գրել է իր ժամանակակիցներից Նազարէթ դպիրը «Պատմութիւն և վարք Պարոնտիրի» վերնագրով, որի մագաղաթյա ձեռագիրը գտնվում է այժմ Երուսաղէմի մատենադարանում (№ 322. տես Դրնդ. յաջ. էջ ԽԳ)։

— 724. **Գրիգոր** Տաթևացի, նոր վկա. գեղեցիկ պատանի էր. Տաթև գյուղից ուխտի գնաց Մշու Ս. Կարապետի վանքը. այլազգիները բռնեցին նրան և պահանջեցին մահմեդական դառնալ. և երբ մերժեց, երկար չարչարելուց հետո՝ գլխատելով նահատակեցին «1676 թ». մարմինը թաղվեց վանքի գերեզմանատանում.— Չամչ. Գ. 655. Ազգապ. 2630, Նոր վկ. 503։

— 725. **Գրիգոր** Կանցի (Կարնոյ Կան գյուղից). 20 տարեկան պատանի էր և ինչպես ասում են, բռնակիր էր Պոլսում. հավատքը չուրանալով նահատակվեց 1682 թ. Մինաս Ամդեցին նրա գլուխը թաղեց Սամաթիա թաղի Ս. Գէորգ եկեղեցու խորանի տակ.—Չամչ. Գ. 656, Նոր վկ. 520. Կարապետեան, Յիշատ. Սամաթ. 85. Երեմ. չէլ. օրագր. 463 (կոչում է «Աթհամալի աննշան մանուկ մատաղ» և տալիս է հետևյալ տեղեկությունը. «Տեսեր զաթհամալին աննշան մանուկն մատաղ, միայն ի ծնողաց լուեալ թէ ի հաւատս Քրիստոսի եմք, և ոչ լուեալ զքարոզ

և ոչ զկերպ քարոզութեան, ոչ զԵրրորդութեան քննութիւն և ոչ զմարդեղութեան Տեառն տաւայ տալապայ՝ թէ Քրիստոս երկու բնութիւն իցէ թէ մի... այլ միայն թէ Քրիստոս։ Ես կարծեմ թէ զաստուածութիւն այլ չգիտէր, այլ միայն վկայեաց հաւատոյն իւրոյ, թէ ինձ ճշմարիտ է և զձեր մարմնաւորն ես չեմ ընդունիր։ Խոտեաց զփառսն, անարգեաց զկենդանութիւն, մեռաւ կամաւորապէս վասն հաւատոյն իւրոյ ի մէջ բազմամբոխ քաղաքիս առաջի աշխարհական բռնաւորաց, որ աչօք բացօք զսուրն սրեալ ի ձեռն դահճին՝ տեսանէր զի գայր ի վերայ պարանոցին»)։— Այս նահատակի մասին առանձին հոդված ունի Նշանեան, Սիոն 1932, էջ 122—3, որ չեմ տեսած։

— 726. Գրիգոր Ծործորեցի, Նախիջևան գավառի կաթոլիկ հայերից. ունիթոռական վարդապետ, ապա եղավ գավառահայր. հմուտ էր լատիներեն լեզվին. գործել է Հայաստանում և շատ տարիներ անց է կացրել Եվրոպայում։ Թարգմանել է մի քանի լատինական եկեղեցական գրքեր։ 1648 թվին, երբ Հռոմումն էր, պրոպագանդայի ժողովի հրամանով քննեց և հաստատեց Կ. Կալանոսի Միաբանության գիրքը։ 1671—73 թվերին, իտալերենից թարգմանեց մի քանի Դոմինիկեան սրբերի վարքը (ձեռագրի մասին տես Manus. bibl. nat. 106)։ 1675 թվին դարձյալ Հռոմումն էր, ուր նոր հավելումներ է արել սրբոց վարքի մեջ։ 1672 թ. Վենետիկումն էր և հետամուտ էր ստանալու իր գավառի վանքերի դրամագլխի տոկոսները։ 1673-ին Ապարաններումն էր, ուր թարգմանեց Դոմինիկեան սրբերի վարքը՝ հինգ օրվա մեջ. «Փութով ի կէր արկեալ և աւուրս հինգ կատարեցի ի մէջ բազմազիմի զբաղմանց և արգելմանց՝ որ յարեան ի վերայ իմ»։ 1686-ին, լատիներենից թարգմանեց կաթոլիկ եկեղեցու Պատագամատոյցը (որ նախապես ուրիշները թարգմանել էին) և նոր սրբերի տոներով ճոխացրեց (տպ. 1714 թ)։—Սիսական 397, Տաշեան, Ցուց 305 և Ձեռ. Վիեն. էջ 14 բ։

— 727. Գրիգոր դպիր Վարագեցի, ժամանակակից էր Եղիազար կաթուղիկոս Հռոմկլայեցու (1682—91). արտագրել է մի Ցայսմաւուրք, որի լուսանցքների վրա գրել է իր ժամանակի Տարեգրությունը, որից հատվածներ ունի Նոտարք, էջ 123, 171, 207 և 227։ Տարեգրությունը գնում է 1308-ից մինչև 1682 թ. և շատ բան է պարունակում Վանի պատմության մասին (Ձեռ. Դաշեան, Բ. 58 բ)։

— 728. Գրիգոր(իս) վարդապետ, որ իրեն կոչում է «ըստ-

րուկ, պանդուխտ, Նժդեհ, սէֆիլ». ունի մի խումբ կրոնական տաղեր, որոնցից մեկը 1695 թվից.—Ձեռ. Հալէպի, Բ: էջ 61—63 և 101:

— 729. **Գրիգոր** աբեղա, ժամանակագիր. ունի Տարեգրութիւն (ԺԷ դար).—Զամչ. Գ. 535—6, Հայապ. 597:

— 730. **Գրիգոր** Ջուղայեցի, 18 տարեկան երիտասարդ էր և իր դեմքի գեղեցկության համար կոչվում էր «Լույս Գրիգոր»: Ծառայում էր Սպահանում, Անգլիացի մի վաճառականի մոտ: Հորը շորի քղանցքը մի օր մի պարսկի ջրամանին քսվելով՝ պարսիկը բարկացած ծեծում ու վիրավորում է նրան: Որդին իր հետ առնելով երկու անգլիացի ծառայակիցներին, գնում է շուկա և պարսիկին ծեծելով՝ քաշ է տալիս անգլիացի վաճառականի դուռը: Ամբոխը հավաքվում է և զրպարտելով թե Գրիգորը մահմեդական կրոնն է հայհոյել, պահանջում է ուրանալ հավատքը: Այդ միջոցին անգլիացի վաճառականը մեռնում է. Գրիգորը մնում է անպաշտպան. պարսիկները չարաչար տանջելուց հետո, նահատակում են նրան 1703 թ:—Պատմ. Նոր-Ջուղ. Ա. 210—221, Նոր վկ. 539—551, Ազգապ. 2747:

— 731. **Գրիգոր** Պիծակ Ատանացի, կաթողիկոս Սսոյ «1689—1691 թ», հաջորդեց Սահակ Մէյխանէճիին: Այս թվին Աստուածատուր Սասունցին խլեց աթոռը և Գրիգորը թափառում էր աստանդական: «1693 թվին» Հռոմ գնաց, պապից որևէ նպաստ ստանալու հուսով, բայց անօգուտ: Դարձավ Պոլիս և «1703 թվին» Երուսաղէմի Մինաս պատրիարքին օգնական նշանակվեց:—Ազգապ. 2647, 2723:

— 732. **Գրիգոր** Դ. Գաւաշեցի, կաթողիկոս Աղթամարի «1707—1711 թ». հաջորդ Հայրապետ Ա-ի և նախորդ Յովհաննէս Հայոցձորեցու (ըստ Ակինեան, Գաւազանագիրք 146): Իսկ ըստ Հաւաք. 63՝ Գրիգոր Ժ Գաւաշցին Յովհաննէս Ժ Հայոցձորեցու հաջորդն է և Թովմա Բ Ամկեցու նախորդը:

— 733. **Գրիգոր** Հասան-Ջալալեան, որդի Մուլքի բէգի (մ. 1716). մելիք Խաչենի. խելացի և ճարտարախոս անձ էր. իր շէկ գույնի պատճառով կոչվում էր Սարի-մելիք. գործել է զանազան քաջություններ. ի վերջո հրաժարվեց իշխանությունից և Գանձասարի վանքը մտնելով՝ վարդապետ ձեռնադրվեց.—Րաֆֆի, Խամսայի մելիքութ. 20—21:

— 734. **Գրիգոր** ԺԱ Խիզանցի, կաթողիկոս Աղթամարի, հաջորդ Ղազար Բ Մոկացու և նախորդ Բաղդասար Բաղիշեցու

(ըստ Հաւաք. 63).—ըստ Ակինեան, Գաւազանագիրք 147 նստել է 1725 թ. իբրև հաջորդ Յովհաննէս Հայոցձորեցու։

— 735. Գրիգոր Կեսարացի, մականունը Ուղուրլու, կաթուղիկոս Սսոյ «1721—1727 թ». հաջորդեց Յովհաննէս Հաճընցուն։—Ազգապ. 2867։

— 736. Գրիգոր Սարու (դեղին) Շահկերտցի, քաջ և հսկա մարդ. տասը ընկերներով գնաց կործանեց Պարսից աշտարակը, երբ Հայդար խանը պաշարել էր Շահկերտը՝ 1748 թ.—Ջամչ. Գ. 846, Սխտաչան 363։

— 737. Գրիգոր Զ Շիրվանցի, Շղթայակիր, պատրիարք Երուսաղէմի, աշակերտ էր Բաղէշի Ամրդոլու վանքի, դասընկեր ունենալով Յովհաննէս Կոլոտին։ Եղավ առաջնորդ Մշու Ս. Կարապետ վանքի։ Երբ Կոլոտը ընտրվեց Պոլսի պատրիարք և նրան առաջարկվեց ընտրել ամենից արժանավորին իբրև պատրիարք Երուսաղէմի, Կոլոտը նշանակեց Գրիգորին «1715 թ», որ գահ բարձրացավ «1717 թ»։ Սոսկալի էր այդ ժամանակ Երուսաղէմի Հայոց վանքի դրությունը. «լեռնակուտակ ծովասարաս» պարտքերի տակ ճնշված, բոլոր կալվածները և նույնիսկ վանքը գրավի տակ էր դրված։ Գրիգորը երկաթե ծանր շղթա անցկացրեց վզին, «փակեաց զայն աղխիւք ամրագունիւք» և ուխտեց չհանել այդ շղթան մինչև բոլոր պարտքերը չվճարե և վանքը չազատե։ Տոն օրեր եկեղեցու դռանը կանգնած այդ շղթայի լուծի տակ, «գերեսարաս» (գերիի պես) ողբում էր շարունակ, իբրև Երուսաղէմի բերանից. «Ողորմեցարուք, ողորմեցարուք ինձ, հաւատացեալքդ Քրիստոսի, զի տունն իմ ի գրաւի է և որդիք իմ հեռացեալ յինէն, և ես մատնեալ եմ ի գերութիւն. ողորմեցարուք ինձ»։ Գրիգորը հավատարիմ մնաց իր ուխտին. տարիներով գիշեր ցերեկ կրեց այդ շղթան իր վզին, պարտքերը վճարեց, Երուսաղէմը ազատեց և ապա մեկնեց իր աթոռը «1720 թ»։ Նա Երուսաղէմի մեծագույն բարերարն է և իր անունը վանքում ամեն օր հիշվում է պատարագի ժամանակ։ Գահակալեց մինչև իր մահը «1749 թ»։ Կոչվում է «շղթայակիր (կամ Թրք. զէնճիրլի») իր կրած այդ շղթայի համար։ Ցավալի է որ այդ թանկագին հնությունը պահված չէ։—Աբր. կրետ. էջ 1. Ազգապ. 2812 շար. Ջամչ. Գ. 770—863։

— 738. Գրիգոր Զ. կաթուղիկոս Աղթամարի «1751—1761 թ» (ըստ Հաւաքարանի Գրիգոր ԺԲ). հաջորդ Նիկողայոս կաթուղիկոսի և նախորդ Թովմա Բ-ի։ Ջընդունեց էջմիածնի հպա-

տակութիւնը.—Ակինեան, Գաւազանագիրք 151—152, Հաւաքարան 64, Ազգապ. 2955, 2999։

— 739. Գրիգոր Յարութիւնեան, Հնդկահայ. Նախապէս դգեստի վաճառական էր և ապա դարձաւ քաջ և անվանի զինվորական։ Նրան էր հպատակվում Հնդկաց թագավոր Միր-Կասըմի ամբողջ բանակը։ Նա ստացավ Գուրգին խան անունը և մեծ հռչակ էր վայելում Բենգալի երկրում։ Թագավորի սիրելին և միակ խորհրդականն էր։ Բոլորը նրանից սոսկում էին։ Երեք տարվա մեջ կարողացավ իր շուրջը հավաքել 15,000 ձիավոր և 25,000 հետևակ զորք, որոնց տվեց անգլիական զինվորական կրթություն։ Հիմնեց նաև թնդանոթի ձուլարան և վառոդարան, ուր պատրաստված ռազմամթերքը կարող էր մրցել Անգլիայի արտադրության հետ։ Արշավեց երկրի չորս կողմը և թշնամիների ուժը խորտակեց։ Մեծ քաջություն ցույց տվեց մանավանդ Անգլիացոց դեմ, որոնք պատերազմի էին դուրս եկել Միր-Կասըմի դեմ։ Մի անգամ այնպիսի չարաչար հաղթություն տարավ Անգլիացոց դեմ, որ նրանք անճարացած՝ ուզեցին կաշառել Գուրգին խանին։ Բայց նա մերժեց և վեհանձնաբար պատասխանեց թե ինքը միշտ հավատարիմ կմնա Միր-Կասըմին, ինչպես իր եղբայրը (Աղա Պետրոս)՝ Անգլիացոց։ Սրանից հետո պատերազմը ավելի սաստկացավ. Անգլիացիք իրենց բոլոր ընդունակ զորավարներին Գուրգինի դեմ ուղարկեցին։ Դժբախտաբար հպարտ Գուրգինը անխոհեմությամբ իր հայ հազարապետներին արհամարհեց և նրանց պատերազմական խորհրդի չկանչեց։ Բանակին էլ հրամանատար նշանակեց Սմրու անունով թուլամորթ մի հնդիկի։ Հայերը այս բանից վիրավորված, պատերազմին չմասնակցեցին, ուստի Գուրգինի բանակը հաղթվեց, քայքայվեց և Բենգալը գրավվեց։ Գուրգին խանն էլ եղեռնագործ մի հնդիկի ձեռքով սպանվեց 1763 թ։

— 740. Գրիգոր Պասմաճեան, պատրիարք Պոլսի «1764—1773 թ», հաջորդեց Յակոբ Նալեանին, որ ծերության և հիվանդության պատճառով հրաժարվել էր աթոռից։ Ամիրաների ստնձգության պատճառով դժվարությամբ կառավարեց աթոռը և վերջապես ստիպվեց հրաժարվել «1773 թ»։ Պոլսից հեռանալով դարձավ առաջնորդ Կիպրոսի, բայց այդտեղից էլ գոհ չմնալով՝ անցավ Իտալիա, գնաց Վենետիկ, Հռոմ, Անկոնա, Թրիեստ, ուր և մեռավ «1791 թ»։ Գրել է Ցիշատակարան, Ողջունագիր իբր պատմողօրէն, Ազդեցութիւն պատմողօրէն առ ազգն Հայոց որք

են ի Ստամպոլ, Աթոռայնոց բոլորից։ Այս բոլորը իր ժամանակի պատմական հիշատակարաններն են, առաջինը տպված է Բանասէր հանդէսում, 1905 թ.—Ազգապ. 3090, 3131—35, Ջամչ. Գ. 873—877։

— 741. Գրիգոր Խամսեցի, պատրիարք Պոլսի. հաջորդեց գահընկեց Յովհաննէս Բաբերդցուն «1801 թ» և սուլթանի հրամանով պաշտոնանկ եղավ «1802 թ»։—Ազգապ. 3306, 3322։

— 742. Գրիգոր-Պետրոս Ե Քիւրքչեան, կաթուղիկոս կաթոլիկ Հայոց «1788—1812 թ». հաջորդ. Բարսեղի.—Ազգապ. 3187։

— 743. Գրիգոր եպիսկոպոս Մանուչարեանց, Արցախի Հախում գյուղից. վանահայր Նոր-Բերդի Ս. Նշան վանքի. 500 կտրիճների գլուխն անցած, մի քանի անգամ մասնակցեց ռուս-պարսկական պատերազմներին և շքանշաններ ստացավ Ռուս պետությունից։ Շուշի քաղաքի պաշարման և Գանձակի պատերազմին էլ մասնակից էր Մադաթեանի բանակի հետ «1826 թ»։—Ազգապ. 3492։

— 744. Գրիգոր-Պետրոս Զ. կաթուղիկոս կաթոլիկ հայոց «1812—1841 թ». հաջորդեց Գրիգոր Ե-ին։—Ազգապ. 3616։

— 745. Գրիգոր-Պետրոս Ը Տէր-Աստուածատուրեան, կաթուղիկոս կաթոլիկ Հայոց «1843—1865 թ». հաջորդեց Յակոբ Պետրոս Է-ին.—Ազգապ. 3764, 3973, 4185։

†ԳՐԻԳՈՐԱՏՈՒՐ, ար. < Գրիգոր+տուր բառերից, իբրև Գրիգորի տվածը. հմմտ. Աստուածատուր, Տիրատուր, Խաչատուր են. բայց այս Գրիգոր բառով պետք է հասկանալ ոչ թե Ս. Գրիգոր Լուսավորիչի անձը, այլ Խոր Վիրապի վանքը, իբրև նրա ուխտական գավակը, որ ուրիշ ձևով կոչվում է նաև Վիրապատուր։ Անսովոր անուն է։

— Գրիգորատուր Անձախաձորեցի, «այր ուղղափառ հաւատովք և զօրութեամբ արուեստիւք». բազմաթիվ հունադավան հայեր դարձրեց. խափանեց Յովհան Մայրագոմեցու աղանդը (Է դար).—Տաշհ. 249. Ջամչ. Բ. 331. Ջարբ. Հին դպր. 429. Սեդրակեան, Հայ եկեղ. պատկեր. 344 (համարում է կեղծիք)։

*ԳՐԻԳՈՐԻԿ, ար. և իգ! < Գրիգոր անվան փաղաքշականն է։

— 1. Գրիգորիկ, հայր Պուհայ վանից (Գեղարքունիք) (Է դար).—բց. ի Գրիգորիկայ՝ Կղկնտ. Բ. ծ. Սխակեան 524 ա։

— 2. Գրիգորիկ, կին! որ տիրացել էր Ամարասի Ս. Գրիգոր վանքին Երուսաղէմում.—Կղկնտ. Բ. ծէ (հրտր. Էմինի)= Գրիգորի (իբր ուղղական հոլով՝ հրտր. Շահն.)։

— 3. Գրիգորիկ, նվիրատու Տիկորի վանքի, 989 թ.—Արձ. Շիրակ 133։

— 4. Գրիգորիկ, Վայոց ձորում կանգնեցրել է մի խաչքար, 990 թ.—Սիսական 110։

— 5. Գրիգորիկ, մի այգի է տնկել Հալիձորում 1265 թ.—(Թուականը անհասկանալի).—Ազգագր. հանդ. Դ. 41։

— Գրիգորիկ տես Գրիգոր՝ հայր Հասանայ. № 156։

*ԳՐԻԳՈՐՈՒՀԻ, իգ. կազմված է Գրիգոր անունից՝ իգական -ուհի մասնիկով։ Անսովոր անուն։

— Գրիգորուհի, կին գրիչ. օրինակել է Հարանց վարքը Առքոջ գյուղում, ՌՂԹ (տպ. ՌՂԲ)=1650 թ.—Ձեռ. Կարին. 49։

†ԳՐՈՑ. ար. < հյ. գիր, գրոց բառից։ Անսովոր, բայց զուտ հայկական անուն, որ մի անգամ գտնում եմ գործածված անթվական (բայց 1311 թվից ուշ գրված) մի հիշատակարանում, Ձեռ. Թավր. 74 ա (Գրոց որդի Սիրունի. մայրն էլ Հայոց է կոչվում)։

ԳՕԳԵԱՆ, ար. ծագումն անհայտ. (այս անունով մի գյուղ կա այժմ Թավրիզի և Մարաղայի միջև. նշանավոր է իր արտադրած կարմրահող կուժերով, որոնք ջուրը սառն պահելու հատկությունն ունեն)։

— Գոգեան Արծրունի, հաջորդ Շավարշ Արծրունու (Ն. Ք. Գ դար).—Արծր. Ա. զ։

ԳՕՏԵՋՈՒ, ար. ծագումն անհայտ։

— Գոտէճու, որդի Գէորգի Քութաթեցու, որ Մինգրելների ձեռքից մի Ավետարան է փրկել և նվիրել Քութայիսի Ս. Աստվածածին եկեղեցուն, 1682 թ.—Ձեռ. Վենետ. Ա. 391 (գրված է Գոտէճուն, բայց ուղղականն է թե սեռական)։

ՎԵՐՋ Ա. ՀԱՏՈՐԻ

ՎՖ 03778, պատ. № 363, տիրաժ 1000

ԼԺԿ Գիտամանկավարժ. հրատ. տպարան, Աբովյան 104

[3300 դր.]

## ՆԿԱՏՎԱԾ ՎՐԻՊԱԿՆԵՐ

| Էջ | Տող | Տպված է | Պետք է լինի |
|---|---|---|---|
| 4 | 22, 25 | 1010 | 1013 |
| 36 | 14 | եղբայր | որդի |
| 40 | 1 | հայր | աներ |
| 54 | 12 | որդի | քեռորդի |
| 64 | 15 | 1397 թ. | թիվը անհայտ |
| 68 | 17 | Հաւաքումն բանից նախնեաց | Տօնական |
| 68 | 20 | 267 | 262, 267 |
| 85 | 10 ն. | Ա | Բ |
| 280 | 18 | մայր | զոքանչ |
| 235 | 11 ն. | վենետ. | վենետ. Ա. |
| 247 | 19 | հայր | հորեղբայր (ջնջել Բր թե իր կնոջ) |
| 327 | 18 | Վասպ. | Վենետ. |
| 334 | 12 ն. | անհայտ | Մկրտիչ |
| 358 | 14 | 933, 936 | 233, 236 |
| 395 | 1 ն. | Գրիգոր | Գրիգոր Սկեռացի № 249. |
| 443 | 16 ն. | Բիրթուէլ | Բերթուէլ |
| 445 | 11 ն. | 1814 | 1214 |
| 453 | 18 ն. | 324 | 224 |
| 466 | 2 | վենետ. | վենետ. Բ. |
| 472 | 10 ն. | Ա. 1635 | Ա. 132 |

